**CALOUSTE GULBENKIAN FOUNDATION**
**ARMENIAN LIBRARY**

ՀԱՅԿԱԿԱՆ ՄԱՏԵՆԱՇԱՐ ԳԱԼՈՒՍՏ ԿԻՒԼՊԷՆԿԵԱՆ
ՀԻՄՆԱՐԿՈՒԹԵԱՆ

# ԳԻՐՔ ԹՂԹՈՑ

ԵՐԿՐՈՐԴ
ՀՐԱՏԱՐԱԿՈՒԹԻՒՆ




ԵՐՈՒՍԱՂԷՄ
ՏՊԱՐԱՆ ՍՐԲՈՑ ՅԱԿՈԲԵԱՆՑ
1994

ՀՐԱՄԱՆԱՒ

ՊԱՏՐԻԱՐՔԻ ԱՌԱՔ. Ս. ԱԹՈՌՈՅՆ ԵՐՈՒՍԱՂԷՄԻ

ՏԵԱՌՆ ԹՈՐԳՈՄԱՅ ՍՐԲԱԶԱՆ ԱՐՔԵՊԻՍԿՈՊՈՍԻ





# ԽՕՍՔ ԳՆԱՀԱՏԱՆՔԻ

----------

Քաջալերանքովը Գալուստ Կիւլպէնկեան Հիմնարկութեան Նախագահ Տիար Ռոպերթօ Կիւլպէնկեանի, որոշեցինք վերատպել «Գիրք Թղթոց»ը, որ Քաղկեդոնի Ժողովի (451) երկաբնակութեան հարցին առնչութեամբ թղթակցութեանց հաւաքածոյ մը նկատուած է։

Ձեռքի տակ ունէինք 1901ին Թիֆլիս տպուած օրինակ մը՝ Թորգոմ Պատրիարք Գուշակեանի գիրքերէն, Վանուցս Կիւլպէնկեան Մատենադարանը փոխադրուած։ Այս՝ Յովսէփ Իզմիրեանցի կտակագրով (1874) «Սահակ Մեսրոպեան Մատենադարան» անունով հաստատուած մրցանակին եւ հրատարակութեանց Ե. հատորն է, որուն Նախաբանին մէջ յանձնաժողովը դիտել կու տայ. «Հարկաւ լաւ կը լինէր, որ Թղթոց Գիրքին հրատարակութիւնը պարունակէր միանգամայն քննական եւ քննադատական տեսութիւններ, լուսաբանութիւններ եւ բաղդատութիւններ, սակայն այսպիսի աշխատութիւն մը Յանձնաժողովոյ գործառնութեանց շրջանակէն դուրս ըլլալով հանդերձ՝ միւս կողմանէ թերեւս տարապայման պիտի յապաղէր հրատարակութիւնը, եթէ օրինաւոր աշխատասիրութեան մը լրման սպասուէր»։

Նոյն մտահոգութիւնը մենք ունեցանք։

Ո՞վ պիտի վերահսկէր աշխատանքներուն վերա-

տպուելիք Գիրք Թղթոցի հրատարակութեան։

Անվարան, կարելի միակ անձի մը մասին կրնայինք մտածել։ Եւ նա, իննսունամեայ եւ ֆիզիքական մարմնի տկարութեանց հետեւանքով իր սենեակի շրջափակէն հեռանալու անկարող Ծովականն էր, Գեր. Տ. Նորայր Արքեպս. Պողարեանը։ Նա մեր ձեռագիրներու լեզուն հասկցող մասնագէտն է, գրաբարի եւ աստուածաբանութեան հմուտ եւ մեր մատենագիրները ուսումնասիրող գիտուն պատմագէտը։

Բարեբախտաբար՝ տկար մարմինին մէջ արթուն էր միտքը, եւ աշխոյժ էր կամքը։ Եւ ինք եւս անվարան եւ սիրայօժար յանձն առաւ վերահսկել Գիրք Թղթոցի վերահրատարակման աշխատանքին։

Այս հատորին մէջ իր ներկայացուցած Ծանօթութիւնները (էջք 669 - 674) եւ Բացատրականը (էջք Զ - Է), մինչեւ անգամ Ցանկ Յատուկ Անուանցը (էջք 675 - 711), ինքնին ցոյց կու տան ահագնութիւնը աշխատանքին, արժանիքը մասնագէտ աշխատասիրողին, եւ բծախնդրութիւնը բանասէրին։ Այս հատորին արժանիքը պէտք է նկատել միութիւնը նպատակին որուն այնքան նախանձախնդրութեամբ հետամուտ եղած է Ծովական։ Ինչպէս կ՚ըսեն. "Ամէն ինչ ինք իր ձեռքով կատարած է"։ Դասաւորումը նիւթերու, ստուգումը պատմական տուեալներու, բաղդատութիւնը բնագիրներու, նկատառումը այլ բանասէրներու նկատողութեանց, եւ մինչեւ անգամ տպարանային անշահ աշխատանքները ձեռագիրներու յանձնումին, փորձերու սրբագրութեանց, ցանկեր կազմելուն (օժանդակութեամբ համակարգիչով արձանագրող Տիկին Նուէրին եւ մեր միաբանութեան երիտասարդ անդամներէն Տ. Աւետիս Աբեղայ Իփրաճեանին)։



Դարձեալ Գալուստ Կիւլպէնկեան Հիմնարկութեան քաջալերանքով, 1993ին վերատպեցինք Գրիգոր Տաթեւացիի «Գիրք Հարցմանց» հատորը Կոստանդնուպոլիս տպուած 1739ին, անոր կցելով հասկնալի պատճառներով դուրս ձգուած «Ընդդէմ Տաճկաց» գլուխը, որ Բաբգէն Եպս. Կիւլէսէրեանի ուսումնասիրութեամբ տպուած էր Վիէննայի մէջ, 1930ին։ Գիրք Հարցմանցը (մօտ 1070 էջ) եւ Գիրք Թղթոցը (727 էջ) Հայաստանեայց Առաքելական Ուղղափառ Եկեղեցւոյ դաւանութեան սկզբնաղբիւրներ կը ներկայանան, զորս կ՚ընծայենք մեր եկեղեցւոյ զաւակներուն, իբրեւ հոգեւոր սնունդ եւ "Վահան ամրութեան որով կարասցեն զամենայն նետս մուխս չարին շիջուցանել"։

ԹՈՐԳՈՄ ԱՐՔԵՊՍ. ՄԱՆՈՒԿԵԱՆ

19 Յունիս 1994
Երուսաղէմ

# Բ Ա Ց Ա Տ Ր Ա Կ Ա Ն

---------

Ն. Ամենապատուութիւն Հայոց Երուսաղէմի Պատրիարք Տ. Թորգոմ Արքեպս. Մանուկեանի յանձնարարութեամբ ձեռնարկեցինք Թղթոց Գիրքի նոր հրատարակութեան մը։ Այս նոր հրատարակութիւնը նոյնութեամբ կրկնութիւնը չէ առաջին տպագրութեան։ Կատարած ենք զանազան փոփոխութիւններ։

Ա.- Նիւթերը դասաւորած ենք ժամանակագրական կարգին համաձայն։

Բ.- Այն Թուղթերը որ թերի էին լրացուցած ենք զանազան ձեռագիրներու եւ տպագիրներու հետեւելով։

Գ.- Կատարած ենք շատ մը սրբագրութիւններ մասամբ այլոց օգնութեամբ եւ մասամբ մեր կողմէ։ Երկար պարբերութիւնները մասերու բաժնած ենք ըստ յարմարութեան։

Դ.- Օգտագործած ենք մեծանուն բանասէր Եղիշէ Եպս. Դուրեանի օրինակը, որուն մէջ անուանի բանասէրը կատարած էր բազմաթիւ ուղղումներ։

Ե.- Զեղչած ենք հետեւեալ գրութիւնները.

1.- Բացայայտութիւն, էջ 413 - 482, նկատելով որ Թուղթ մը չէ այն. եւ մտադրութիւն ունենալով հրատարակելու զայն առանձին։

2.- Զրոյցք Կոմիտասայ. անվաւեր գրութիւն մը՝ որ սակայն կը պարունակէ կարեւոր տեղեկութիւններ ալ (էջ 483 - 497)։



3.- Բանք Խրատականք. էջ 510 - 525։

4.- Վարդանայ Վարդապետի ասացեալ վերնագրով հատուած մը, էջ 526 - 529։

5.- Տեսիլ Յովհաննու Գառնեցւոյն. էջ 530 - 532։

6.- Բան Հաւատալի, Վանական Վարդապետի. էջ 533 - 535։

7.- Այլ Բան Վանական Վարդապետի, էջ 536։

Ե.- Մեր կողմէ աւելցուած գրութիւններն են.

1.- Թուղթ Տեառն Մովսիսի Հայոց Կաթուղիկոսի առ Կիւրոն Վրաց կաթուղիկոս (ԽԷ)։

2.- Պատասխանի Թղթոյն Տեառն Մովսիսի Հայոց Կաթուղիկոսի ի Կիւրոնէ Վրաց կաթուղիկոսէ (ԽԸ)։

3.- Պատճառք Թղթոյն Հայոց Կաթուղիկոսի եւ Պատասխանւոյն Կիւրոնի՝ եթէ ո՞ւր գտաւ եւ որպէս (ԽԹ)։

4.- Տեառն Աբրահամու Հայոց Կաթուղիկոսի Խոստովանութիւն (ՁԳ)։

5.- Պատասխանի Թղթոյն մետրոպոլտին Սեբաստիոյ, գրեալ հրամանաւ Տեառն Խաչկայ Հայոց Կաթողիկոսի (ՂԴ)։

Թուղթերէն ոմանց մասին հատորիս վերջը տուած ենք հակիրճ Ծանօթութիւններ։

Մեզի օգնական ունեցանք Հոգշ. Տ. Աւետիս Աբղ. Իփրաճեանը՝ որուն կը պարտինք շնորհակալութիւն։

Նորայր Արքեպս. Պողարեան

3 Յունիս, 1994
Երուսաղէմ

----------

# Ն Շ Ա Ն Ա Գ Ր Ե Ր

---------

Ա =Գիրք Թղթոց, Թիֆլիս, 1901։
Բ =Կնիք Հաւատոյ, Ս. Էջմիածին, 1914։
Գ =Պատմութիւն Հայոց, Ուխտանէս, Վաղարշապատ, 1871։
Դ =Կանոնագիրք Հայոց, Բ։ Վ. Յակոբեան, Երեւան, 1971։
Ե =Գիրք Պարապմանց, Կիւրեղ Աղեքսանդրացի, Կ. Պոլիս, 1717։
Զ =Սիոն, 1964, էջ 256 - 257. Ն. Ե. Ծ.։
Է =Վանատուր, Ն. Արք. Ծովական, Երուսաղէմ, 1993։
Ը =Սիոն, 1962, էջ 309 - 311. Ն. Ե. Ծ.։
Թ=Ճառք Յովհաննու Մանդակունւոյ, Վենետիկ, 1836։
Ժ=Սամուէլ Անեցի, Վաղարշապատ, 1893։
ԺԱ =Պատմութիւն, Ստ. Օրբէլեան, Ա., Փարիզ, 1859։
ԺԲ = » » Ասողիկ, Ս. Պետերբուրգ, 1885։
ԺԳ =Պատմութիւն, Մ. Կաղանկատուացի, Երեւան, 1983։
ԺԴ =Արարատ, 1902, էջ 566 - 568։
ԺԵ = » 1896, էջ 477 - 488։ 531 - 536։
ԺԶ =Մ. Ցուցակ Ձեռ. Ս. Յակոբեանց, Բ. 1953, էջ 32 - 33։
ԺԷ =Ձեռ. Ս. Յակոբեանց, Թիւ 858։



ԺԸ =Ձեռ. Ս. Յակոբեանց, Թիւ 999։
ԺԹ = » » » » 775։
Ի = » » » » 898։
ԻԱ = » » » » 1138։
ԻԲ =Մ. Ցուցակ Ձեռ. Ս. Յակոբեանց, Գ. 1968, էջ 521 - 525։
ԻԳ =Արարատ, 1892, էջ 946 - 954։
ԻԴ =Բազմավէպ, 1893, էջ 59 - 64, 113 -119։

----------

## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹԻՒՆ

----------

----------

# ԳԻՐՔ ԹՂԹՈՑ

## Ա

### ԵՐԱՆԵԼԻՈՅՆ ՄԱԿԱՐԱՅ՝ ՍՐԲՈՅ ՔԱՂԱՔԻՆ ԵՐՈՒՍԱՂԷՄԻ ՀԱՅՐԱՊԵՏԻ ԿԱՆՈՆԱԿԱՆ ԹՈՒՂԹ Ի ՀԱՅՍ

ՎԱՍՆ ԿԱՆՈՆԱԴՐՈՒԹԵԱՆ ԿԱԹՈՂԻԿԷ ԵԿԵՂԵՑԻՈՅ ԿԱՐԳԱՑ, ԶՈՐ ՉԷ ԱՐԺԱՆ ԸՆԴ ՍԱՀՄԱՆ ԵՒ ԸՆԴ ՀՐԱՄԱՆ ԱՆՑԱՆԵԼ, ԳԼՈՒԽՔ Թ

*Ահա վասն ահին եւ երկիւղին Աստուծոյ եւ ի փափագ սիրոյ բարեպաշտութեան ձերոյ փութացայ զարթուցանել զբարեսէր եւ զպարզամիտ սիրտս ձեր ի խնդիր ուղիղ բարեպաշտութեան ճշմարիտ կանոնադրութեան կաթողիկէ եկեղեցւոյ եւ կարեւոր կարգաց Աստուծոյ, զոր պարտ է բազում զգուշութեամբ ստանալ, եւ աներկեւան հաւատով պահել ամենայն երկիւղածաց Աստուծոյ։ Յորս եւ դուք ոչ յապաղեալ հեղգացուցիչ ինչ դանդաղանաւք ծուլացարուք, այլ փութացեալք շնորհաւք Սուրբ Հոգւոյն՝ ջերմութեամբ եւ աստուածային սիրոյն բաղձանաւք. որ ոչ միայն*

--------

*Բնագիր, Դ – էջ 216 - 229։ Հմմտ. Ա. էջ 407 - 412։*

ի մերձաւորացն յաւժարեցուցանէ ժտել խնդրել զհոգեւոր աւգտութիւնն, այլ եւ ի տար աշխարհ փութացուցանէ հասանել մեծաւ փափագանաւք եւ ըղձալի տենչանաւք յաղագս աստուածահաճոյ խընդրոյ եւ հոգւոց փրկութեան, զմտաւ ածելով զասացեալսն, թէ՝ «Մի՛ դանդաղեսցիս երթալ հեռի ճանապարհ, թէ պիտանացու ինչ ուսուցանել ոք խոստանայցէ»։ Որ եւ զսոյն փափագ հոգեւոր վաստակոց յանձինս ձեր երեւեցուցեալ վասն մեծաշահ աստուածային գանձուցն հոգեւորաց, առաքեցէք գիր ի հեռաբնակ աշխարհէ ի կողմանցդ Արեւելից ի սուրբ քաղաքս Երուսաղէմ, որ ի ձեռն երկիւղածաց քահանայից մատուցաւ առաջի բազմութեան եպիսկոպոսացս, որք մի մի ժողովեալք յիւրաքանչիւր քաղաքաց, որոց առաջի անկեալ հոգեւոր մաղթանաւք խնդրեցին զգրոյն պատասխանիս։ Զոր թէպէտ եւ ոչ կամէաք, ծանրացեալ տկարութեամբ հրամանատուութեանս մեծամեծ կրաւնիւք եկեղեցւոյ, սակայն հոգեւոր ժտութիւն եւ փոյթ աստուածասէր քահանայիցս հարկաւորեաց զմեզ գրել եւ տալ ձերում կամայաւժար բարեպաշտութեանդ զգլուխ կարեւոր կարգաց եկեղեցւոյ՝ զհաստատութեան հաւատոյ, ոչ մի ինչ երկբայութեամբ, եւ զամենայն կանոնադրութիւնս սրբոյ ժողովոյն որ վասն հերձուածողացն եղեւ, զորս կարեւոր է ընդունել ամենայն բարեպաշտաց, որ եղեւ վասն դրութեան կարգաց եկեղեցւոյ։ Այլ եւ տեսեալ զբազմազգուշալի կարգաւորութիւն կենարար մկրտութեան սրբոյ քաղաքիս, հիացեալ զարմացան, թէ կողմանք Արեւելից թերի են ըզգուշութեամբ յայսպիսիսս բազում ինչ իրաւք։ Զի ի տեղիս տեղիս աւազան կարգաւոր ոչ ունին, եւ յորպէտ ամանի մկրտեն. եւ է որ սարկաւագունք



մկրտութիւն առնեն, եւ եպիսկոպոսք եւ քահանայք առանձնակ ձէթ աւծման աւրհնեն. եւ զձէթ կնքոյ որ յառաքելոցն եւ այսր պահի, յաւելուածով ոչ ունին, եւ զբոլոր զգայարանս մանկան ոչ աւծանեն։ Եւ է զի զժողովոյն կարգեալսն ոչ ասեն ուրեք ուրեք քահանայքն ի ժամ մկրտութեանն։

Եւ ձեռնադրութեամբ ժառանգաւորքն միապատիւ հաւասարին եւ ոչ ընդ աւելեաւքն հնազանդին։ Եւ բազում եւ այլ չփոթութիւնք հպարտութեամբ եւ ծուլութեամբ, զոր ի կարգս եկեղեցւոյ մուծեալ են մարմնասէրք, զոր ծանուցին մեզ եկեալքս։ Ընդ որ հիացեալ մեծապէս զարմացաք եւ վասն երկիւղին Աստուծոյ ոչ հեղգացաք գրել փութանակի ես Մակարիոս արքեպիսկոպոս Երուսաղէմի եւ ամենայն բազմութիւն եպիսկոպոսացս որ ընդ իս են՝ [եւ] առաքել ի կողմանսդ Արեւելից առ քրիստոսասէր եւ երկիւղած եպիսկոպոսապետդ Վրթանէս եւ առ համաւրէն եպիսկոպոսս եւ քահանայս Հայոց։ Բազում զգուշութեամբ եւ երկիւղիւ կատարել զկարգաւորութիւնն մեծի խորհրդոյն Աստուծոյ որ կատարի ի կաթողիկէ եկեղեցւոջ, որով պարգեւի ի շնորհաց հոգւոյն մեղաց թողութիւն եւ ոգւոց փրկութիւն մկրտելոցն ի սուրբ աւազանին։ Եւ Հոգին Սուրբ ոչ արհամարհէ զցանկացողս բարեպաշտութեան, այլ խոնարհեալ իջանէ եւ սրբէ ուղիղ դաւանութեամբն ի ձեռն սրբոյ ջրոյ աւազանին։ Եւ յայսմ ամենայնի չէ պարտ ծուլալ եւ դանդաղել եպիսկոպոսացն եւ երիցանցն ի մկրտել զայնոսիկ, որք կամին մերձենալ ի բարեպաշտութիւն աստուածպաշտութեան։ Զի այն է փոյթ քահանայից եւ գործ կարեւոր առաջնորդաց եկեղեցւոյ՝ զկամողսն բարեպաշտութեան խրատել եւ ուսուցանել բանիւ եւ վարդապետութեամբ,

մերժել ի սատանայէ եւ ընծայեցուցանել Աստուծոյ սրբոյ աւազանին լուսաւորութեամբ, եւ մի՛ ումեք լինել պատճառք կորստեան անհնազանդութեամբ եւ թերակատար ինչ կարգաւք մկրտութեան, վասն դանդաղութեան իւրոյ առ ոչ ածել զամենայն կարգաւորութիւն ի վերայ մատուցելոցըն ի մկրտութիւն սուրբ աւազանին, զոր բազում զգուշութեամբ եւ ցնծալից դողութեամբ առանց դանդաղելոյ կատարէ ընդհանրական եկեղեցի Աստուծոյ։ Եւ արդ՝ եկեալ ի խնդիր ստուգիւ ըստ նախասացեալ գլխոցն՝ արասցուք սկիզբն ի գրոց հաստուցեալ զոր պահանջէք։

ՌՄԽԸ (ՌՄԽ) Ա· Թէ արժա՞ն իցէ սարկաւագաց մկրտութիւն առնել, եւ կատարեա՞լ իցէ խորհուրդն։

Գիտութիւն լիցի քրիստոսասէր եղբայրութեան ձերոյ, զի եպիսկոպոսաց եւ քահանայից միայն է իշխանութիւնս այս· եւ սարկաւագաց զայս առնել չէ արժան, քանզի սպասաւորք են· եւ խափանեալ է այս առ ի նոցանէ։ Եւ աւելի է խնդրելն, թէ կատարե՞ալ է առ ի նոցանէ մկրտեալն· բայց պարտ է նախ քննել, թէ սովորութի՞ւն իցէ գաւառին այնմիկ սարկաւագացն մկրտել· եւ եթէ գտցի ոք արարեալ, ընդ անմեղութեամբ է վասն անգիտութեան կարգաց եկեղեցւոյ· զի սովորութեան գաւառին զհետ չոգաւ։ Իսկ եթէ գիտէր զկարգս եկեղեցւոյ եւ անց զնոքաւք, եղիցին ի վերայ նորա պատիժք ըստ կարգի յանցանացն։

ՌՄԽԹ (ՌՄԽԱ) Բ· Եթէ աւազան սրբեալ ոչ ունին, եւ յորպէ՞տ ամանի մկրտեն։

Զի եթէ ոչ էր մերձ եկեղեցի չինեալ ի փառս



Աստուծոյ եւ ի մուտս ժողովրդոց, առանց մեղադրելոյ արդեաւք էր· եւ եթէ եկեղեցիս ունիմք, պարտ է եւ մկրտատունս առնել եւ աւազան, յորում մկրտէ որ գայցեն յուղիղ հաւատս բարեպաշտութեան։ Ապա եթէ դիպեսցի ոք հիւանդ, ուր ոչ իցէ եկեղեցի եւ կարգաւոր աւազան, չէ արժան արգելուլ որ կամիցին մկրտել, այլ կատարել ըզմկրտութիւնն առանց կարգաւոր աւազանի՝ վասն ի հարկէ պիտոյիցն, զի մի՛ գտցի պարտական փըրկութեանն՝ խափանելով զմկրտութիւնն։ Զի Հոգին Սուրբ ըստ մաղթողին տայ զշնորհն, եւ ըստ ամանին ոչ լինի արգելեալ· եւ յամենայն ժամ փափագեալքն բաւականանան շնորհի Հոգւոյն։ Եւ ոչ ի գլխաւոր տաւնսն միայն է կատարելութիւնն· զի առաքեալքն ոչ ըստ ընտրութեան տաւնիցն մկըրտէին, այլ ըստ բաւականի եկելոցն լուսաւորէին ի ջուրցն վերստին ծնանելով։ Եւ երեքկին ընկղմամբըն թաղեալ ի ջուր սուրբ աւազանին, զերեքաւրեայ թաղումն Տեառն նշանակեմք յանձինս մկրտելոցն։ Զոր եւ աստուածային առաքեալն յայտնապէս ցուցանէ ասելով, թէ՝ «Թաղեցաք ընդ նմա մկրտութեամբըն, նմանողք եղիցուք նմանութեան մահու նորա, զի նորոգութեամբ յարութեանն հաղորդ լինիցիմք նմա ի կեանս յաւիտենից»*։ Եւ այսպէս ուղիղ դաւանութեամբ ձեռս ի վերայ դնելով՝ պարգեւեալ լինի Հոգին Սուրբ ի փրկութիւն մեզ, լուսաւորել զկոչեցեալսն յորդեգրութիւն։ Եւ հաւատովք աւծանիմք յիւղ սրբութեան։ Եւ այսպէս ըստ իւրաքանչիւր եդեալ մասանց կարգք սրբոյ եկեղեցւոյ յաւրինին, ոչ ելանելով ըստ եդեալ սահման եւ գլխաւորեալ, ըստ երկնաւորացն դասուց,

--------

*Հմմտ· Հռոմ· Զ, 4 - 6

*որպէս ուսաք ի հարցն հոգեւորացն՝ յաշակերտաց առաքելոցն սրբոց։*

*ՌՄԾ (ՌՄԽԲ) Գ. Եւ զի՞արդ կարգք եկեղեցւոյ սրբոյ յաւրինին։*

*Վերատեսուչք ըստ կարգեալ կայենիցն կալցին իշխանութիւն ուղղել ի բարին, որոց կոչեցան ի վերակացութիւն. եւ առեալ ի նոցանէ՝ մի՛ փքասցին ամբարհաւաճութեամբ զանձինս առ իմաստունս ունելով, եւ անկցին յիմարութեամբ, եւ անկցին ի չարութիւն։ Զի թէպէտ միապէս տուեալ են շնորհքն ի հաւատացեալքն, այլ ոչ միապատիւ ամենեքեան։ Եւ թէպէտ եւ փոքրկացոյց զինքն անբաւն, այլ զփառս աստուածութեանն ոչ ընդ նմին կորոյս. եւ առաքելոցն ամենեցուն յետ յարութեանն երեւեալ Կենարարին, այլ զոմանս գեր ի վերոյ կարգէ։ Եւ նոյն սկզբնաւորեալ ի մեզ հաստատեցաւ. զոր եւ Պաւղոս ոչ հրամայէ զմիմեամբք ելանել ասելովն. «Իւրաքանչիւր ոք յոր կոչումն կոչեցաւ՝ ի նմին կացցէ»*։*

*ՌՄԾԱ (ՌՄԽԳ) Դ. Եւ ո՞րպէս հրամայեցի բաւականանալ իւրաքանչիւր յեդեալն կարգի։*

*Արդ՝ միաբանութեամբ ժառանգաւորացս՝ եպիսկոպոսաց եւ քահանայից եւ սարկաւագաց, ես Մակարիոս արքեպիսկոպոս սուրբ քաղաքիս Երուսաղէմի, աւանդեմ զկանոնադրութիւնս զայս ձեզ, ուսեալ յառաքելոցն պատմութեանց. եւ աւանդութեամբ հարցն առ մեզ հաստատեալ հիմնանայ։ Զի զսուրբ մկրտութեանն ձեռնադրութիւնն, որպէս յառաջագոյն ասացաք, եպիսկոպոսաց եւ քահանա-*

------

*Ա. Կոր. Է, 20



*յից միայն է կատարել։ Եւ զիւղ սրբութեան՝ եպիսկոպոսապետն աւրհնեսցէ. եւ վասն հեռաւորութեան եւ կարեւոր պիտոյից, հրամանաւ արքեպիսկոպոսին երկու եւ երեք միաբանեալ եպիսկոպոսք. եւ սարկաւագունք՝ սպասաւորք սրբութեանն։ Եւ զիւղըն աւծման մեռելոցն եւ հիւանդացն եւ մկրտելոցն առանձնակ աւրհնեսցեն քահանայքն եւ եպիսկոպոսքն։ Զայս սահմանեցին սուրբ հարքն մեր, եւ մի՛ ոք իշխեսցէ փոխել զուղիղ եդեալ սահման, զի մի զնոցին կապանք նզովիցն ընկալեալ որոշեսցի յԱստուծոյ։*

*ՌՄԾԲ (ՌՄԽԴ) Ե. Եւ ո՞րպէս մերձեսցուք առ սեղանն սուրբ եւ կենդանարարն խորհուրդ։*

*Առ այդ անմահութեան բաժակ՝(1) մի՛ ոք երկմտութեամբ եւ մի՛ թերահաւատութեամբ եւ մի՛ գործովք անարժանութեամբ մերձ լինել յանդգնեսցի, զի մի՛ զկամս Աստուծոյ բարկութեանն յամենայն երկիր շարժեսցէ, եւ ինքն լուիցէ զասացեալսն՝ «Դու ընդէ՞ր բնաւ պատմես զարդարութիւն իմ, զի ատեցեր զխրատ իմ»*։ Այլ ուղիղ գնացիւք եւ ճշմարիտ հաւատով մատուցեալ՝ լուսաւորեսցի, եւ այլոց ինքեամբ գործեսցէ փրկութիւն։*

*ՌՄԾԳ (ՌՄԽԵ) Զ. Եւ զիա՞րդ է արժան զխորհուրդն կատարել։*

*Զփրկականն խորհուրդ մարմնոյ եւ արեանն Տեառն պարտ է երկիւղիւ եւ զգուշութեամբ կատարել, եւ ուղիղ դաւանել խոստովանութեամբ՝ ուրոյն ի հերձուածողացն փորձիչ խորհրդոց. զի մի՛*

------

(1) Տպ. ունի վիճակ։
* Սաղ. ԽԹ, 16 - 17

*արիանոսացն մերձ լինելով, ըստ առաքելոյն՝ անունն Աստուծոյ եւ ճշմարտութիւնն հայհոյեսցի*։*

*ՌՄԾԴ (ՌՄԽԶ) Է. Եւ որպիսի՞ աւրինակաւ նուէրք սրբութեանն յաւրինեսցի։*

*Հանել ի սեղանն զհացն սուրբ՝ ջերմ, ըստ առաքելոցն աւանդութեան, եւ անապակ, առանց իրիք խառնման, զի ոչ ապականացու իւիք փրկիմք, այլ անապական մարմնով ամբիծ եւ անարատ գառինն։ Եւ զայս միայն(2) ի սեղանն սարկաւագունքըն յաւրինեսցեն· եւ զկատարեալն ի վերայ քահանայքն կատարեսցեն։*

*ՌՄԾԵ (ՌՄԽԷ) Ը. Եւ զի՞րդ եկեսցէ ի ձեւ սեղանն խորհրդոյն եւ այլ եւս կարգքն։*

*Սեղանն քաւութեան ընդ վարագուրաւն, յորում Հոգին Սուրբ իջանէ, եւ աւազանն յետոյ առ նմին տամբ, եւ պատուով հաստատեալ յաջմէ։ Եւ ժառանգաւորքն իւրաքանչիւր աշտիճանաւ պաշտեսցեն, եւ ժողովրդականքն արտաքոյ վարագուրին, եւ երախայքն առ դրունսն ունկնդրութեամբ· զի մի՛ ընդ միմեանս ելանելով եղծցին կարգքն, այլ իւրաքանչիւր կայանիւ անարատ մնասցէ։*

*ՌՄԾԶ (ՌՄԽԸ) Թ. Զայս աւանդեմ ձեզ պատուիրան հաւատոյ եւ կարգաց եկեղեցւոյ՝ ըստ խընդրոյ աղաչանաց ձերոց· նզովեմք ի վերայ այսոցիկ զայլաձեւսն խորհեցեալսն, զի ի միմեանց ընկալեալ ձեռնադրութեամբ զշնորհս՝ ոչ բերեմք պակասութիւն։ Եւ միապատիւ ոչ իրաւունս վար-*

------

* Հմմտ. Հռոմ. Բ, 24

(2) Տպ. ունի մինչեւ։



*կանիմք զկարգեալսն ուղղապէս եկեղեցւոյ· եւ զփառամոլ անձինս կշտամբեմք, որք խորհին հակառակ՝ որպէս պատմեալ եղեւ մեզ զՏուրգեայ Բասենոյ եւ Բագրեւանդայ եպիսկոպոսէ որ սակաւուք ընդ արիանոսս միաւորեալ է եւ դարձեալ խղճեալ։ Եւ արդ՝ եւ այլ եւս յանդգնագոյնս խորհի· եպիսկոպոս միայն աթոռաւ, եւ ընդ արքեպիսկոպոսին ինքեամբ անձին տայ պատիւ, զոր չէ արժան ընդունել, զի եւ ոչ հարքն աւանդեցին այսպիսի ինչ հակառակութիւնս յեկեղեցի մուծանել· եւ անվայելուչ է համարել հաւասար, մինչեւ կոչմամբ ի պատիւ աթոռոյն ժամանեսցէ։ Եւ արդ պարտ է զայնպիսին քաղցրութեամբ ի հնազանդութիւն կոչել· եւ եթէ ի նոյնն մնասցէ՝ խորշել իբրեւ յաւտարէ։*

*Ողջոյն տան ձեզ ամենայն եկեղեցիք։ Ողջ լերուք ի Տէր հաստատուն եւ ուղիղ հաւատով· ամէն։*



## Բ

### ՍՐԲՈՅՆ ԿԻՒՐՂԻ ԵՊԻՍԿՈՊՈՍԻ ԱՌ ՆԵՍՏՈՐ· ԶԻ ՏԱՅՐ ՆՄԱ ՏԵՂԻ ԱՊԱՇԽԱՐՈՒԹԵԱՆ ՅԱՌԱՋ ՔԱՆ ԶՄԵՐԺԵԼ ՆՈՐԱ ՅԵՊԻՍԿՈՊՈՍՈՒԹԵՆԷՆ,(1) ԶԻ ԶԵՒ ԵՒՍ ԷՐ ԼԵԱԼ ՍՈՒՐԲ ՍԻՒՆՀՈԴՈՍՆ ՈՐ ԿԱՄԱՒՔՆ ԱՍՏՈՒԾՈՅ ԺՈՂՈՎԵՑԱՆ ՅԵՓԵՍՈՍ։ ԹՈՒՂԹ ԿԻՒՐՂԻ ԱՌ ՆԵՍՏՈՐ։

*Առ սուրբ եւ աստուածապաշտ եւ պաշտաւնակից մեր Նեստոր· Կիւրղոս եւ ամենայն որք ժողովեալ են ընդ մեզ յԱղեքսանդրիայ՝ ի կողմանց եւ ի բնակութենէ Եգիպտացւոց, ողջոյն։*

*Փրկչին մերոյ ասացեալ է յայտնապէս, եթէ՝ Որ սիրէ զհայր իւր կամ զմայր առաւել քան զիս, ոչ է ինձ արժանի։ Զի՞նչ արասցուք մեք որ յաստուածապաշտութենէդ քումմէ պահանջեմք առաւել սիրել զքեզ՝ քան զփրկիչն ամենայնի Յիսուս Քրիստոս։ Ո՛ կարասցէ փրկել զմեզ յաւուր դատաստանի, եւ կամ ո՛րպիսի պատասխանի գտանիցեմք, որ այսչափ յերկարեցաք որ ի քէն հայհոյութիւն լինէր զնմանէ· զի թէ միայն յանձն քո լինէր մեղանչականութիւնն այսպիսի մտաց եւ վարդապետութեան, փոքր ի՛նչ էին հոգքն արդեաւք· այլ վասն զի զամենայն եկեղեցիս գայթակղեցուցեր, եւ իբրեւ խմոր հերձուածոց վնասակար եւ աւտարաւտիս արկեր ի ժողովուրդս, եւ ոչ առ այնոսիկ միայն՝ որ մերձաւորք էին քո, այլ յամենայն տեղիս հասին սուտ պատմութիւնք գրոց քոց։ Զիա՛րդ եւս հնար լիցի լռել մեզ եւ ոչ ի հարկէ յիշել զասացեալսն Տեառն Քրիստոսի, եթէ՝ Մի՛ համարիք եթէ եկի արկանել խաղաղութիւն յերկիր, ոչ եկի արկանել խաղաղութիւն՝ այլ սուր, եկի քակել զայր ի հաւրէ եւ զդուստր ի մաւրէ։ Զի եթէ վնասել հաւատոյն ընդունայն եւ անաւգուտ է, պատիւ ծնաւղաց եւ երկիւղ դադարեալ են՝ եւ աւրէնք գթոյ եւ խնամոյ առ եղբարս եւ սիրելիս, եւ աստուածապաշտից լաւ համարեալ է մահ քան զկեանս, զի առաւելութեանն արժանի լիցին հասանել, որպէս եւ գրեալ է։*

*Եւ ահա մեծ սիւնհոդոսն որ եղեւ, որ ժողովեցան ի Հռոմէ, յորում էր սուրբ եւ աստուածապաշտ եղբայրն մեր եւ պաշտաւնակից Կելեստինոս եպիսկոպոս· արդ երրորդեմք զայս բան եւ դնեմք վկայութիւն եւ գրեմք եւ լինիմք քեզ խորհրդակից, ուղղել քեզ ի վրիպեալ մտացդ եւ ի գայթակղեցուցիչ կրաւնիցդ, զոր իմանասդ եւ ուսուցանեսդ, եւ գալ քեզ յուղիղ հաւատս որ տուեալ ի սկզբանէ յեկեղեցիս, ի սրբոց առաքելոց եւ յաւետարանչաց, որ ինքնատես եւ սպասաւորք եղեն Բանին։ Զի եթէ զայդ ոչ արասցէ աստուածպաշտութիւնդ քո, որպէս սահմանեցաւ քեզ ժամադրութիւն ի թուղթսն զոր յառաջագոյնն յիշեցաք, եւ սրբոյ եւ աստուածապաշտի եպիսկոպոսի Կելեստինոսի գործակցի մերոյ, զի գիտասցես զանձն քո, եթէ՝ ոչ ունիս ընդ մեզ բաժին եւ ժառանգութիւն ի քահանայութեան Աստուծոյ եւ յեպիսկոպոսութեան։ Զի ոչ է հնար մեզ անտես առնել*

------

*Բնագիր Ա· էջ 396-406։ Հմմտ. Ե· էջ 460-474։*

*(1) յեպիսկոպոսութենէն (Զեռ. Ս.Յ.Թ. 1138, էջ 682բ)։*

զխռովութիւնս եկեղեցւոյ եւ զգայթակղութիւնս ժողովրդոց եւ զանարգութիւնս ուղիղ հաւատոյ, եւ ի գերութիւն մատնիլ ի քէն հաւտից՝ որ պարտ էին կենաց, զոր պարտ էր քեզ ընդ մեզ ուղիղ փառաւորութեան լինել ցանկացող, եւ գնալ զկնի սուրբ հարցն ընդ շաւիղս աստուածպաշտութեանն։

Արդ զայս գիտասջիր, որ միանգամ մերժեցանն եւ անարգեցանն ի քէն վասն հաւատոցն, ի ժողովրդոցն կամ ի քահանայութենէն, ամենեքեան նոքա ընդունելի են, եւ մեզ հաւասարորդ համարիմք. զի ոչ է մարթ թէ որ միանգամ ուղիղ մտաւք եւ ճշմարտութեան խոստովանութեամբ կացին, թէ անարգեսցին եւ խոտեսցին ինչ քո վկայութեամբ այնոքիկ՝ որ բարիոքն արարին եւ ընդդէմ կացին քո, վասն որոյ եւ գրեցերն իսկ դու ի մեծ քաղաքն Հռոմ, եւ ցուցեր թղթովն քով սրբոյ եպիսկոպոսակցին մերոյ Կելեստինոսի։ Զի ոչ եթէ այնչափ միայն պիտոյ է աստուածապաշտութեանդ քում զի խոստովանեսցիս ընդ մեզ, այլ եւ նշանակ հաստատութեան հաւատոցն ունել յանձին, որ եղաւ ժամանակաւք սուրբ Հոգւովն յընդրեալ եւ մեծ սիւնհոդոսին որ ժողովեցան ի քաղաքն Նիկիայ, զոր դու թիւր իմացար եւ անարժան թարգմանեցեր։ Զի թէպէտ եւ խոստովանիս լոկ զբարբառն բանիւք, այլ պարտ է քեզ ըստ կարգի աւրինացն գրով տալ զխոստովանութիւն, զի նզովեսցես զապականեալ եւ զանարժան կրաւնս վարդապետութեան քո, եւ իմասցիս ուղիղ, եւ ուսցիս իբրեւ զմեզ ամենեսեան։ Որպէս յարեւմուտս եւ յարեւելս եպիսկոպոսք եւ վարդապետք, եւ առաջնորդք ժողովրդոց, որպէս եւ կարգեցին ի Հռոմ սուրբ սիւնհոդոսն, եւ մեք ամենեքեան, որպէս ուղիղ եւ անվրէպ եւ անսխալ գրեցաւ ի թուղթսն առ աստուածպաշտութիւնդ քո



յեկեղեցւոյն Աղեքսանդրացւոց, կարգեցաք ի թուղթսըն մեր թէ զիա՛րդ աւրէն է ուսուցանել, եւ յորմէ՞ հեռանալն պարտ իցէ։ Զի այս են կաթուղիկէ եւ առաքելական եկեղեցւոյ հաւատք, որում միաբանին ամենայն արեւմտեայք եւ արեւելեայք, եւ թէ սիւնհոդոսք։

Հաւատամք ի մի Աստուած, ի Հայր ամենակալ, ամենայն երեւելեաց եւ աներեւութից արարիչ։ Եւ ի մի Տէր Յիսուս Քրիստոս, Որդի Աստուծոյ, ծնեալ ի Հաւրէ, Միածին, այսինքն է ի բնութենէ Հաւր, Աստուած ճշմարիտ յԱստուծոյ ճշմարտէ, ծնեալ եւ ոչ արարեալ, բնակից Հաւր՝ որով ամենայն եղեւ յերկինս եւ յերկրի։ Որ վասն մեր մարդկան եւ վասն մերոյ փրկութեան էջ եւ մարմնացաւ եւ մարդացաւ, մեռաւ եւ յարեաւ յաւուր երրորդի, եւ ել յերկինս, եւ գայ դատել զկենդանիս եւ զմեռեալս։ Եւ ի Հոգին սուրբ։ Եւ որք ասենն թէ էր երբեմն զի չէր, եւ թէ յոչընչէ եղեւ, կամ յայլմէ զաւրութենէ եւ ի բնութենէ, կամ փոփոխելի եւ այլայլելի զՈրդին Աստուծոյ, զայնպիսին նզովէ կաթուղիկէ եւ առաքելական եկեղեցի։

Արդ ամենայնիւ երթամք զհետ խոստովանութեան սրբոց հարցն՝ որովք խաւսեցաւ սուրբ Հոգին, եւ զկնի մտաց նոցա արասցուք զնայեցուածս գնացից մերոց, իբրեւ զարքունի ճանապարհ գնասցուք եւ ասասցուք, թէ նոյն ինքն Միածին Աստուծոյ Բանն, որ ի նոյն Հաւր բնութենէ իսկ է ծնեալ, Աստուծոյ ճշմարտէ ճշմարիտ Աստուած, ըգլոյսն ի լուսոյ, որով ամենայն եղեւ յերկինս եւ յերկրի։ Որ վասն մերոյ փրկութեան էջ եւ ունայնացոյց զանձն իւր, մարմնացաւ եւ մարդացաւ, այսինքն մարմին ի սուրբ կուսէն՝ իւր միացոյց, եւ յարգանդէ ըստ մերում նմանութեան ծնաւ, եւ երե-

ւեցաւ մարդ ի կնոջէ, ոչ անկեալ ի բնութենէ իւրմէ որ էրն, այլ թէպէտ եւ եղեւն հաւասար մարմնոյ եւ արեան, սակայն եւ այնպէս կայ մնայ որ էն Աստուած, յայտ է, եթէ բնութեամբ եւ ճշմարտութեամբ։ Եւ ոչ զմարմնոյ ասեմք եթէ փոփոխեցաւ ի բնութիւն աստուածութեանն, եւ ոչ ի բնութիւն մարմնոյ զանճառ Բանին Աստուծոյ իջուցանել զբնութիւն. զի անշարժ է եւ անփոփոխելի ամենայնիւ։ Նոյն կայ մշտնջենաւոր ըստ գրոց։ Երեւեցաւ տղայ եւ ի խանձարուրս պատեցաւ եւ ի գոգ ծնաւղին իւրոյ սրբոյ կուսին, եւ յերեւելն մանուկ, սակայն լնու զամենայն արարածս իբրեւ Աստուած, եւ աթոռակից է ծնաւղին զի աստուածութիւնն անչափ է եւ անսահման. եւ սահմանել չընդունի։ Միացեալ ի մարմնի բնութեամբ՝ հոգւով բանաւորութեամբ խոստովանիմք զԲանն. միում Որդւոյ երկիր պագանեմք՝ Տեառն Յիսուսի Քրիստոսի, եւ ոչ զատանեմք եւ բաժանեմք մարդ յԱստուծոյ մերձաւորութեամբ ի միմեանս պատւով եւ յարգանաւք ինչ միութեան. զի այսպիսի միտք եւ բանք՝ ընդունայնութիւնք են եւ ոչ այլ ինչ։ Զի ոչ ուրոյն անուանեմք Քրիստոս. որ յԱստուծոյ բանն, եւ ուրոյն դարձեալ Քրիստոս՝ որ ի կուսէն, այլ մի միայն գիտեմք Քրիստոս որ յԱստուծոյ Հաւրէ Բան իւրով մարմնով. եւ յորժամ մարդկաւրէն աւծանիւր ըստ մեզ, եւ սակայն սրբոց իւրոց նոյն իսկ տայ զհոգին եւ ոչ չափով, որպէս ասէ երանելի աւետարանիչն Յովհաննէս։ Այլ եւ ոչ զայն ասեմք, եթէ բնակեաց Բանն որ յԱստուծոյ իբրեւ ի լոկ մարդ՝ որ ի կուսէն ծնեալն, զի մի՛ իբրեւ աստուածազգեստ մարդ իմանայցի Քրիստոս։ Զի թէպէտ եւ բնակեաց ի մեզ Բանն, ասի եւ ի Քրիստոս բնակեալ ամենայն լրումն աստուածութեանն մար-



մնապէս, այլ այսպէս իմանամք թէ մարմին եղեւ։ Ոչ եթէ որպէս եւ ի սուրբսն բնակել ասի, ըստ նմին հաւասար եւ ի նմա ասիցեմք զբնակելն, այլ միութիւն բնութեամբ, եւ ոչ ի մարմին փոխել, այսպէս ասի բնակութիւն, որպէս ինչ ասի եւ վասըն ոգւոյ մարդոյ ի մարմնի իւրում։

Այսուհետեւ մի է Քրիստոս՝ Որդի եւ Տէր, ոչ իբրեւ մերձաւորութիւն լոկ պատւոյ միութեան, եւ կամ իբրեւ համարձակութիւն ունել մարդոյ առ Աստուած. զի ոչ կարէ միացուցանել զբնութիւնսն հաւասարապատուութիւնն։ Զի ահա Պետրոս եւ Յովհաննէս հաւասարապատիւք են միմեանց, զի առաքեալք եւ աշակերտք, սակայն չեն մին երկուքն. եւ ոչ յառելութեան մերձաւորութեան կարգաւք ինչ իմանալ։ Զի չէ մարթ այսպիսի իրաւք իմանալ բնութեամբ միութիւն. եւ ոչ ընդունելութիւն խնամոց, որպէս մերձենամք առ Տէր, որպէս եւ գրեալն է, եւ լինիմք մի հոգի ի նա։ Մանաւանդ ի մերձաւորութեանդ անուանէ ամենեւին հրաժարիմք, զի չէ բաւական նշանակել զմիութիւնն։ Այլ եւ ոչ Աստուած կամ Տէր Քրիստոսի անուանեմք զԲանն որ յԱստուծոյ Հաւրէ, զի մի դարձեալ յայտնի յերկուս բաժանիցեմք զմի Քրիստոս զՈրդի եւ զՏէր, եւ ի հայհոյութիւն պարտաւորութեան անկանիցիմք, յորժամ Աստուած եւ Տէր իւր անուանիցեմք զնա։ Այլ որպէս յառաջագոյն ասացաք, միացաւ Բանն Աստուած ի մարմնի բնութեամբ, եւ է ամենեցուն Աստուած, եւ տիրէ ամենայնի, եւ ոչ ինքն իւր ծառայ է, եւ ոչ ինքն իւր տէր։ Այլ անմարթ եւ անարժան է եւ լի հայհոյութեամբ իմանալ զայս եւ ասել. զի թէպէտ եւ ասէ Աստուած իւր զՀայր, սակայն Աստուած է ինքն բնութեամբ, եւ ի բնութենէ նորա։ Այլ ոչ եթէ անգիտացաք ինչ

այնմ, զի հանդերձ աստուածութեամբն եւ մարդ եղեւ։ Եւ որ ընդ Աստուծով իցէ ըստ մարդկութեան կարգացն բնութեան, այլ ինքն իւր տէր ի՞բր լինիցի Աստուած կամ Տէր։ Այսուհետեւ իբրեւ ըզմարդ, որչափ վայել է ըստ ունայնանալոյն կարգաց ընդ մեզ, զինքն ընդ Աստուծով ասէ, այսպէս, Եղեւ ընդ աւրինաւք, եւ սակայն զաւրէնքն ինքն խաւսեցաւ, եւ աւրէնսդիր իբրեւ Աստուած։ Հրաժարեմք դարձեալ, եւ զայն ասել վասն Քրիստոսի, եթէ վասն զգենլոյն զգեցեալն պաշտեմ, եւ վասն աներեւութին երկիր պագանեմ երեւելոյն։ Արհաւիրք եւ դողումն են, եւ դարձեալ ի վերայ այնորիկ եւ զայս եւս ասել. թէ որ առաւն, վասն առնլոյն Աստուած յորջորջի, զի որ զայն ասէ. բաժանէ դարձեալ յերկուս զՔրիստոս, եւ մարդ ուրոյն անուանէ, եւ Աստուած դարձեալ ուրոյն. եւ ո՞ւր ունի զխոստումն միութեանն։ Վասն զի մարթ իսկ է եթէ ընկեր յընկերէ երկրպագիցի ոք, եւ ոչ յորջորջի Աստուած, այլ մի իմանալի է Աստուած Քրիստոս, Միածին Որդի, միով երկրպագութեամբ պատուի հանդերձ մարմնով իւրով։

Եւ խոստովանիմք եթէ նոյն ինքն որ յԱստուծոյ Հաւրէ ծնեալ Որդի եւ Աստուած Միածին, որ իւրով բնութեամբն անվիշտ էր, մարմնով իւրով մեռաւ վասն մեր ըստ գրոց, եւ էր ի խաչ ելեալ ընդ մարմնին իւրում, եւ անվշտութեամբ իւրացոյց զվիշտս մարմնոյն, շնորհաւք Աստուծոյ, վասն մեր զմահ ճաշակեաց։ Ետ մահու զմարմին իւր՝ այն որ բնութեամբն է կենդանի, եւ նա ինքն է յարութիւն, զի անհաս զաւրութեամբն կոխեսցէ ըզմահ, եւ իւրով մարմնովն եղիցի անդրանիկ ի մեռելոց եւ պտուղ ննջեցելոցն, եւ արասցէ ճանապարհ բնութեան մարդկան յանապականութիւն



վերանալ. եւ որպէս այժմ ասացաք, շնորհաւքն Աստուծոյ վասն ամենեցուն զմահ ճաշակեաց, եւ յարեաւ յաւուր երրորդի, եւ առ յաւարի զդժոխս։ Արդ թէպէտեւ ասի թէ ի մարդոյ եղեւ եւ յարութիւն մեռելոց. այլ իմանամք զԲանն Աստուծոյ որ եղեւ մարդ եւ լուծաւ նովաւ զաւրութիւն մահու։ Գայ դարձեալ ի ժամանակի իւրում մի Որդի եւ Տէրն փառաւք Հաւր, զի դատեսցէ զտիեզերս արդարութեամբ իւրով, որպէս եւ գրեալ է։ Յիրաւի եւ զայն եւս յաւելցուք թէ պատմեմք եւ աւետարանեմք զմահն Միածնի Որդւոյն Աստուծոյ, այսինքն Յիսուսի Քրիստոսի, եւ զյարութիւնն ի մեռելոց եւ զվերանալն յերկինս։

Խոստովանիմք զպատարագս աւրհնութեան կատարեալ յեկեղեցիս այսպէս. մերձենամք ի խորհուրդն աւրհնութեան, եւ սրբիմք յորժամ կցորդիմք սուրբ մարմնոյն եւ պատուական արեանն փրկչին ամենայնի Քրիստոսի, եւ ոչ եթէ իբրեւ զլոկ մարմին ընդունիմք, քա՛ւ լիցի, եւ ոչ իբրեւ զմարդոյ սրբեցելոյ եւ մերձեցելոյ ի Բանն իբրեւ ի պատիւ միութեան, եւ կամ իբրեւ զաստուածութիւնն բնակիչ ունել յինքեան, այլ իբրեւ զկենդանարար ճշմարտութեամբ եւ Բանին մարմին, զի կենդանի է բնութեամբ իբրեւ զԱստուած, եւ վասն զի միացաւ ի մարմին իւր՝ կենդանատրեցոյց զնա։ Զի թէպէտ եւ ասիցէ ցմեզ, եթէ՝ Արդարեւ ասեմ ձեզ, եթէ ոչ կերիցէք զմարմին Որդւոյ մարդոյ եւ ըմպիցէք զարիւն նորա ոչ իբրեւ զմարդոյ՝ որ իբրեւ զմի ի մէնջ համարիցիմք։ Քանզի զիա՛րդ էր հնար եթէ մարդոյ մարմին, որ բնութեամբ իբրեւ զմեզ իցէ, եթէ կարիցէ լինել կենդանարար,

այլ ճշմարտութեամբ միացոյց իւր վասն մեր մարմին եւ եղեւ մարդ, եւ յորջորջեցաւ Որդի մարդոյ։ Եւ յաւետարանի փրկչին մերոյ ի բարբառս ոչ յերկուս զաւրութիւնս եւ ոչ յերկուս երեսս բաժանեալ տեսանեմք, եւ ոչ է իսկ մին· մինաւոր Քրիստոս յերկուս երեսս բաժանեալ։ Զի թէպէտ եւ յերկուց ի բաց երեւի, այլ ի միութիւն յանբաժին միացեալ, որպէս մարդ իմանալի՝ է ի շնչոյ եւ ի մարմնոյ, եւ ոչ կրկին ոք ասի, այլ մի՛ յերկոցունց։ Այլ ըստ մարդկութեանն եւ ըստ աստուածութեանն իբրեւ զմիոջէ իմասցուք ուղղութեամբ· զի յորժամ աստուածաբար ասիցէ զինքենէ ասէ, թէ՝ Որ ետես զիս՝ ետես զՀայրն իմ, եւ թէ՝ Ես եւ Հայր իմ մի եմք, զաստուածութենէ եւ զանհասութենէ նորա իմանամք· զի մի է առ Հայրն իւր, վասն նոյն էութեանն բնութեան, զի պատկեր եւ կերպարան եւ ծագումն փառաց նորա է։

Դարձեալ եւ յորժամ զմարդասիրութեան կարգըս ոչ անարգէ եւ խաւսի ընդ Հրեայսն ասէ· Այժմ խնդրէք զիս սպանանել, այր՝ որ զճշմարտութիւնն ձեզ խաւսեցայ։ Դարձեալ ոչինչ նուազագոյն երեւի ի ճշմարտութենէն եւ ի հաւասարութենէն Հաւր Աստուածն Բան, յորժամ ի կարգս մարդկութեանն տեսանիցեմք։ Եւ յիրաւի եւ հաւատալի է թէ որ Աստուածն էր բնութեամբ՝ եղեւ մարմին, այսինքն մարդ, հոգւով եւ մտաւք բանաւորութեամբ։ Եւ զի՞նչ մարթ իցէ արդեւք ամաւթ համարել ուրուք զբարբառս նորա, թէ ասասցի որպէս մարդկան վայել է, զի եթէ հրաժարեալ էր յայնմանէ, որ ըստ մարդկութեան վայել էին բանքըն, ո՛վ էր որ ստիպէր զնա լինել իբրեւ զմեզ մարդ, այն՝ որ իջոյց զանձն իւր կամաւք ի խո-



նարհութիւն վասն մեր, վասն որո՞յ պատճառանաց հրաժարէր յայնցանէ՝ որ ըստ խոնարհութեան իրացն վայել էին բանքն։

Այսուհետեւ միում երեսաց եւ միում զաւրութեան զբարբառն աւետարանի վայել է դնել, այսինքն Բանին մարմնացելոյ, զի մի Տէր է Յիսուս Քրիստոս ըստ գրոց։ Զի թէպէտ եւ անուանի առաքեալ եւ քահանայապետ խոստովանութեան մերոյ, իբրեւ զքահանայանալ Աստուծոյ եւ Հաւր, որ վասն մեր Հաւրն իւրոյ մատուցանէ զհաւատս խոստովանութեան մերոյ։ Եւ ի Հոգին սուրբ դարձեալ զնոյն ասեմք որ յԱստուծոյ բնութենէն ծնեալ է Որդի Միածին, եւ ոչ իբրեւ զմարդոյ ուրոյն համարիմք զքահանայութեանն անուն, այլ նոյն ինքըն եղեւ միջնորդ Աստուծոյ եւ մարդկան եւ փըրկանք, ածել ի խաղաղութիւն, տալ զանձն իւր ի հոտ անուշից Աստուծոյ եւ Հաւր։ Քանզի եւ ասէ, Զոհս եւ պատարագս ոչ կամեցար, զողջակէզս եւ զվասն մեղաց ոչ հաճեցար, մարմին հաստատեցեր ինձ, յայնժամ ասացի ահաւասիկ գամ ես, ի գլուխս գրոց գրեալ է վասն իմ առնել զկամս քո Աստուած։ Մատոյց զմարմին իւր ի հոտ անուշից վասն մեր եւ ոչ վասն իւր։ Ո՛րպիսի զոհից եւ պատարագաց կարաւտ էր արդեւք նա, այն որ հեռին եւ ի վեր է քան զմեղս, իբրեւ զԱստուած։ Զի թէ ամենեքին մեղան եւ նուազեալ են ի փառացն Աստուծոյ որով գայթակղեալ անկան ի վիշտս, եւ ախտացաւ բնութիւն մարդկան ի մեղս, այլ նա ոչ այսպէս, եւ մեք նուազեալ եմք ի փառաց նորա։ Եւ զիա՞րդ ասիցի արդեւք եթէ զենաւ զառն ճշմարիտ· եթէ ասիցէ՞ ոք արդեաւք եթէ մատոյց զանձն իւր վասն իւր, եւ ոչ վասն մեր։ Ոչ երբեք կարել խաւսել ի պարտաւորութենէ ամպարշտութեանն իւրեանց, զի

եւ ոչ իւիք իրաւք գտանի յանցուցեալ, զի եւ ոչ արար մեղս։ Արդ՝ ո՞րպիսի պատարագաց լինէր կարաւտեալ, յորում ոչն էին մեղք՝ կարաւտ պատարագացն ի քաւութիւն։ Եւ յորժամ ասիցէ վասն սրբոյ Հոգւոյն, եթէ՝ Նա զիս փառաւոր առնէ, իմասցուք ուղիղ, զի ոչ եթէ Նա փառաց ինչ կարաւտ է յայլմէ առնուլ, մի Որդի Քրիստոս եւ կամ ի Հոգւոյն սրբոյ փառս գտանել, զի ոչ եթէ ի վեր քան զնա գտանիցի Հոգի նորա, այլ վասն յայտնութեան աստուածութեանն իւրոյ, եւ վասն հանդիսի մեծամեծ գործոցն որ իւրով հոգւովն ցուցանէր, փառաւորել ի նմանէ ասի։ Զոր աւրինակ եւ ըստ մեզ իսկ, յորժամ ասիցէ ոք վասն զաւրութեան իւրոյ կամ իմաստութեան թէ որովք փառաւորիմն ես, զի թէպէտ եւ հոգին առանձինն անձնաւորութեամբ եւ իմանի յանձն իւր եւ ի Հոգի սուրբ, եւ ո՛չ Որդի, այլ ոչ է աւտար ի նմանէն, զի հոգի ճշմարտութեան անուանի, եւ Քրիստոս ճշմարտութիւն, եւ երեւի նովաւ, որպէս յԱստուծոյ ի Հաւրէ։

Ազդէր եւ Հոգին ի ձեռն սրբոց առաքելոցըն եւ առնէր փառաւորեալս, եւ յետ վերանալոյն Տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի յերկինս, եւ փառաւորէր զնա զի հաւատարիմ է թէ Աստուած էր բնութեամբ։ Դարձեալ եւ ինքն ազդէր հոգւովն իւրով, վասն որոյ եւ ասէն իսկ թէ, Յիմմէն առնու եւ պատմէ ձեզ, եւ ո՛չ եւս ասեմք թէ իբրեւ առնլով Հոգին ընդունիցի զիմաստութիւն եւ ըզզաւրութիւն, զի կատարեալ է ամենայնիւ, եւ անկարաւտ ամենայն բարութեանց, վասն զի ի Հաւր զաւրութենէն եւ յիմաստութենէ Որդւոյ, Հոգին ինքն իմաստութիւն էր եւ զաւրութիւն։ Եւ վասն զի Աստուած միացեալ ի մարմնի բնութեամբ,



սուրբ կոյսն ծնաւ ըստ մարմնոյ, զսա եւ Աստուածածին ասեմք, ոչ եթէ բնութեան եւ էութեան բանին սկիզբն ունիցի ի մարմնոյն, զի էր ի սկզբանէ, եւ Աստուած էր Բանն, եւ Նա ինքն արարածոց արարիչ մշտնջենաւորակից Հաւր եւ արարիչ ամենայն արարածոց։ Այլ որպէս յառաջագոյն ասացաք, վասն զի բնութեամբ միացոյց իւր զմարդկութիւնն, եւ առ յանձն ծնանիլ յարգանդէ ըստ մարմնոյ, ոչ իբրեւ կարաւտեալ ինչ յիւր բնութիւնն՝ եւ ընդ ժամանակաւք եւ ի վախճանի աւուրց ծնանիլ, այլ զի զծննդեանն մերոյ աւրհնեսցէ զսկիզբն։ Եւ ի ծնանելն նորա ի կնոջէ միացեալ մարմնովն, այնուհետեւ լռեցուսցէ յամենայն ազգացս մարդկութենէ զերկրաւոր մարմինս մեր, եւ որ ի տրտմութեանն որդիս ծնեալ ասացաւ, նովա՛ւ խափանեսցի։ Եւ ճշմարտեսցէ զբարբառ մարգարէութեանն՝ որ ասէ, Զաւրացաւ մահ եւ եկուլ։ Եւ դարձեալ. Եհատ Աստուած զամենայն արտաւսր յամենայն երեսաց։ Վասն այսպիսի պատճառանաց ասեմք զտեսչութիւն նորա։ Եւ զի կոչեսցի սրբովք աշակերտաւքն հանդերձ եւ երթիցէ ի հարսանիս ի Կանա Գալիլեացւոց եւ աւրհնեսցէ զհարսանիսն. Զայս ուսուցանել ուսաք ի սրբոց աւետարանչացն եւ առաքելոցն, եւ յամենայն աստուածաշունչ գրոց եւ յերանելի հարցն ի ճշմարիտ խոստովանութենէն։ Այսմ ամենայնի պարտ է եւ քում երկիւղածութեանդ հաւասարել եւ վկայել առանց ամենայն նենգութեանց, եւ զոր ինչ պարտ է նզովել երկիւղածութեանդ քում կարգեալ է ի թղթիդ մերում.

Ա։ Եթէ ոք ոչ խոստովանեսցի Աստուած ըստ ճշմարտութեանն զԷմմանուէլ, եւ վասն այսորիկ եւ Աստուածածին զսուրբ կոյսն, ծնեալ ըստ մարմնոյ զմարմնացեալ Բանն Աստուած՝ նզովեա՛լ եղիցի։

Բ։ Եթէ ոք ոչ խոստովանեսցի բնութեամբ միանալ ի մարմնի Բանին Աստուծոյ Հաւր, եւ մի Քրիստոս հանդերձ մարմնովն իւրով զնոյն Աստուած միանգամայն եւ մարդ· Նզովեա՛լ եղիցի։

Գ։ Եթէ ոք զմի Քրիստոս բաժանեսցէ յերկուս դէմս յետ միանալոյն, եւ միայն մերձաւորութիւն յարելութեան ասիցէ իբրեւ պատւով, կամ ճոխութիւն եւ զաւրութիւն գտեալ, եւ ոչ միութիւն բնութեամբ· Նզովեա՛լ եղիցի։

Դ։ Եթէ ոք յերկուս երեսս եւ կամ յերկուս զաւրութիւնս զաւետարանացն եւ զառաքելոցն ըզգրեալսն եւ զբարբառսն բաժանեսցէ, եւ կամ ըզՔրիստոսի ասացեալսն սրբովք իւրով, եւ կամ զոր իւր իսկ վասն իւր իցէ ասացեալ, եւ զոմանս իբր մարդոյ ուրոյն ի Բանէն Աստուծոյ՝ իբր յարելութեամբ իմանայցէ, եւ զոմանս դարձեալ աստուածաբար միայն՝ որ ի Բանէն Աստուծոյ Հաւր· Նզովեա՛լ եղիցի։

Ե։ Եթէ ոք իշխեսցէ ասել մարդ աստուածազգեաց զՔրիստոս, եւ ոչ Աստուած ճշմարիտ՝ իբրեւ զմի Որդի բնութեամբ, որ եղեւ Բանն մարմին եւ հաւասարեաց մեզ արեամբ եւ մարմնով· Նզովեա՛լ եղիցի։

Զ։ Եթէ ոք ասիցէ եթէ, Աստուած եւ Տէր է Քրիստոսի որ յԱստուծոյ Հաւրէ Բանն, եւ ոչ խոստովանեսցի զնոյն Աստուած եւ մարդ միանգամայն ի լինել Բանին մարմին ըստ գրոց· Նզովեա՛լ եղիցի։

Է։ Եթէ ոք ասիցէ իբրու մարդ զաւրութիւն գտանէր ի յԱստուծոյ Բանէն Յիսուս, եւ զՄիածնին փառս մերձեցուցանէ իբրեւ յայլ ոք քան զնա, Նզովեա՛լ եղիցի։

Ը։ Եթէ ոք իշխեսցէ ասել, եթէ վերացելոյ



մարդոյն արժան է երկրպագութիւն առնել ընդ Բանին Աստուծոյ, եւ փառաւորակից լինել եւ անուանակից ընդ Աստուծոյ իբրեւ այլ յայլում· զի յորժամ ընդ ումեք ասիցէ ի հարկէ երկուս իմացուցանէ, եւ ոչ միով երկրպագութեամբ պատուեսցէ զԷմմանուէլն, եւ մի փառաւորութիւն տացէ նմա՝ որով եղեւ Բանն՝ մարմին, Նզովեա՛լ եղիցի։

Թ։ Եթէ ոք ասիցէ զմիոյ Տեառն Յիսուսէ Քրիստոսէ եթէ փառաւորեցաւ ի Հոգւոյն իբրեւ յաւտար զաւրութենէ, եւ նովաւ առաւելութիւն զաւրութեան ի վերայ այսոց պղծոց կատարել ի մարդիկ զնչանս աստուածագործ, եւ ոչ նորին իսկակից զՀոգին՝ որով ունէր զԱստուածագործ նըշանս, Նզովեա՛լ եղիցի։

Ժ։ Առաքեալ եւ Քահանայապետ խոստովանութեան մերոյ լինել ասեն զՔրիստոսէ աստուածաշունչ գիրք, եւ մատուցանել զանձն իւր վասն մեր ի հոտ անուշից Աստուծոյ Հաւր։ Արդ՝ եթէ ասիցէ ոք, առաքեալ եւ քահանայապետ խոստովանութեան մերոյ, ոչ զայն որ յԱստուծոյ Հաւրէ Բանն էր, եղեւ մարմին եւ ընդ մեզ մարդ, այլ ուրոյն ի նմանէ մարդ ի կնոջէ, եւ կամ եթէ ասիցէ ոք եթէ վասն իւր մատոյց զանձն իւր պատարագ, եւ ոչ միայն վասն մեր, զի ոչ էր կարաւտ պատարագի, որ ոչ գիտէր զմեղս· Նզովեա՛լ եղիցի։

ԺԱ։ Եթէ ոք ոչ խոստովանեսցի զմարմինն Տեառն կենդանարար, եւ իւր իսկ Բանին որ յԱստուծոյ, այլ որպէս այլոյ ուրումն արտաքս քան զնա մերձեցելոյ ի նա պատուով, եւ կամ որպէս բնակեցելոյ ի նա աստուածութեամբն, եւ ոչ կենդանարար, որպէս ասացի, զի եղեւ իւր Բանին մարմին՝ որ զամենայն կարող է կենդանացուցանել· Նզովեա՛լ եղիցի։

*ԺԲ։ Եթէ ոք ոչ խոստովանեսցի զԲանն որ յԱստուծոյ· չարչարեալ մարմնով, խաչեալ մարմնով, եւ զմահ ճաշակեալ մարմնով, եւ լեալ անդրանիկ ի մեռելոց, որ է կենդանարար, որպէս զԱստուած· Նզովեա՛լ եղիցի։*





## Գ

## ԵՐԱՆԵԼՈՅՆ ԿԵԼԵՍՏԻԱՆՈՍԻ ԵՊԻՍԿՈՊՈՍԻ ՀՌՈՄԱՅ, ԹՈՒՂԹ ԱՌԱՋԻՆ ԱՌ ՆԵՍՏՈՐ։

*Ոչ գիտեմ ուստի ի մերս հասանել լսելիս, իբր թէ հաւատ իմն հեղեալ ի քէն նորաձեւս, որ է արտաքոյ բարեպաշտութեան, այլ զլուր քոյոց հաւատոցդ անտես արարաք, քանզի զարմացումն մերձ է առ մեզ, եթէ դու որ յիմաստութիւնսն մեծագոյնս խորհեցեալ, եւ վայելչիցս գիտութեան բարձրութիւն բարձրացեալ, զիարդ այդպէս վաղվաղակի յանգիտութեանց ընկղմեցար խորխորատ։ Իսկ եթէ այսպէս որպէս բանս հաստատէ, թշնամանեալ լինի ուրեմն ի քէն Երրորդութեանն համագոյութիւն, ուրացեալ լինի եւ արժանաւոր պատիւ Աստուածածին Մարիամա։ Վասն որոյ պատշաճաբար համարիմ ըստ քեզ եւ առ քեզ եւ ընդդէմ քո զասացեալն որ գոչելով աղաղակէ, եթէ բազում դպրութիւնքդ զքեզ ի մոլորութիւն դարձուցին։ Բայց ես ոչ դարձուցին միայն ասեմ այլ եւ զանցուցին եւս։ Քանզի ձգեցեր զձեռս քո առ ի յաստուածամարտութիւն, եւ զօտի ածեալ տարեալ եղեր ուր ոչն կամէիր, եւ ոչ գիտէիր, զի թէ էիր, ոչ արդեաւք զԱստուած խորհէիր առնել ընդդիմամարտ, եւ կամ ընդդէմ խթանի աքացել, որ ոչն էր քեզ կարողական։*

------

*Բնագիր Զ, էջ 256 - 257, քննական։ Հմմտ· Ա· էջ 241 - 242.*

Ուստի եւ վայելուչ կարծեմ յաղագս քո առնուլ զՄովսէսեանն ձայն փոխ, եւ սուղ ինչ այլաբանելով ընդ քո յեղափոխութեան հաւատոցդ, մանաւանդ թէ յանհաւատութեանդ կամաց, ասեմ, այս այր յիմար եւ ոչ իմաստուն, ո՞չ սա ինքն է հայրն քո որ ստացաւ, արար եւ ստեղծ զքեզ, եւ դու զայդ Տեառնդ հատուցանես· քանզի Աստուած գոլով ըստացաւ զքեզ, եւ էած յանգոյութենէ ի գոյութիւն, իսկ դու անստացար զբազմագին մարգարիտն Քրիստոս, եւ ոչ Նաբովթայ արեանն գոչելով յերկրէ զնոյն գունակ ի քեզ բերելով նմանեցուցեր։ Քանզի նա ի հայրենի ժառանգութեանցն զրկել ոչ առնոյր յանձն, եւ զմահ յաղագս այնորիկ կրէր, իսկ դու զհարցն նախասահմանեալ ի քեզ հաւատս ի բաց մերժելով զրկեցար, եւ փախստական եղեր իբրեւ զամբարիշտն ոչ հալածեալ։

Եւ այժմ մեր այսչափ աղաչելովս եւ նախակոչելովս զքեզ, ոչ կամիս դառնալ որպէս զնմանին քո Ասայէլ, որ երբեմն հալածելով զԱբեններ յուսացեալ ի յիւրոցն արագութիւն ոտից, ոչ կամեցեալ լսել աղաչանացն մինչեւ զանլսողութեանն ժողովեաց զվարձ, նոյն ժամայն խոցեալ՝ կայր մեռեալ յերկրի հանդերձ մատնչօքն իւրովք ոտիւք։ Վասն որոյ եւ ես քեզ խրատ տամ, ոտիցդ քոց ոչ հաւատալ զքեզ· քանզի օձն դարանակալ է հարկանել զգարշապարսդ, այլ մանաւանդ գլխոյդ՝ եթէ իցէ Քրիստոս, յորմէ ամենայն մարմինն յաւդիւք եւ խաղալեաւք տարաբերեալ եւ խառնեալ աճէ զաճումն Աստուծոյ։

Ապա թէ ոչ հաւանեսցիս դառնալ յընդունայն եւ յանսուրբ մոլորութենէդ, մեք ընդդէմ քո զվճիռ շնորհին արտաձայնեսցուք· քանզի չէ պարտ զսրբութիւնս շանց տալ, եւ կամ արկանել ըզմար-



գարիտն առաջի խոզից։ Քանզի ո՞յր արդեւք ըզքեզ տեսանելով ի բարեպաշտութենէն յամբարշտութիւն հաստատեալ, եւ ոչ զարմասցի, եւ կամ ո՞յր զայդպիսի լսելով համբաւ, եւ ոչ երկոքին հնչեսցին ականջքն։ Քանզի զիս տակաւին արտասուք պաշարեն, տեսանելով զհովիւդ այլայլեալ (գայլ եղեալ?), եւ զիարդ կերեալ զհաւտ, ոչ մարմինս ի հոգոց պահանջեալ այլ զհոգի ի մարմնի սպանեալ· դարձեալ եւ զվարդապետդ անզգամ զնախամարտիկդ, այժմ պատերազմող եկեղեցոյ, զերբեմն արբանեակդ Քրիստոսի, այժմ բնակարան նեռինն, զերբեմն հայրապետդ, այժմ հերձուածողապետ, որ ի կորուստ մատնեցեր· նաեւ ոչ Յուդայի այնքան մեղադրեմք մատնելով զՔրիստոս Հրէիցն, որքան քեզ՝ կործանելով զհաւատդ։ Քանզի նա կաշառաւութեամբ յայնպիսի յանդգնեցաւ գործ, իսկ նանրութեամբ իմաստնացեալ այդպիսի գտար դրժող· փոքր միւս եւս յուսամք թէ արդեւք [դարձցիս?], ապա եթէ ոչ մեկնեսցիս այդպիսի յամառութենէ, գոչեմք առ Աստուած ասելով· Տէր ի քաղաքի քում զպատկերս քո արհամարհեա, զի բարձցի ի միջոյ մերմէ որ զայդպիսիդ յանդգնեցաւ գործել։

Արդ եղիցի քեզ դառնալ յառաջին հաւատն, եւ յայդմանէ փախչել, եւ լաւագունին հանդիպել, եւ որոշողութեանդ լուծումն առնուլ, եւ Քրիստոսի հաղորդութեան արժանաւոր լինել, եւ մերոյ մխիթարութեանս ընդունող· քանզի ոչ կամի Աստուած զմահ մեղաւորին որպէս զդառնալ նորա ի չար ճանապարհէն եւ կեալ։

# Դ

## Ի ԹՂԹՈՅՆ ԵԶՆԿԱՅ ԿՈՂԲԱՑԻՈՅ ԹԱՐԳՄԱՆՉԻ, ԶՈՐ ԳՐԵԱՑ Ի ԿՈՍՏԱՆԴՆՈՒՊՈԼԻՍ, ԱՌ ԵՐԱՆԵԼԻՆ ՄԱՇՏՈՑ ՎԱՐԴԱՊԵՏ, ՅԵՏ ԱՌԱՋՆՈՅ ԺՈՂՈՎՈՅՆ ԵՓԵՍՈՍԻ ՅՈՐՈՒՄ ԼՈՒԾԻՆ Ի ՊԱՏՈՒՈՅ ՋՆԵՍՏՈՐ ԿՈՍՏԱՆԴՆՈՒՊՈԼՍԻ ԵՊԻՍԿՈՊՈՍ։

1

*Եւ վասն հաստատութեան եկեղեցեաց, զոր կարծեաց յարուցանել հողմ մոլորութեան եւ չարժել, սուրբ աղօթիւք ձեր դադարեաց, եւ ի միաբանութիւն եկին ամենայն եպիսկոպոսք Հոռոմոց՝ ունել հաստատուն զառաջին երեքհարիւրոցն հաւատըս, եւ նզովեցին, զի մի ոք իշխեսցէ նորած[ին] ինչ եւ աւտարոտի հաւատս, այլ ի նորին վերայ շինել եւ զնոյն ուսուցանել. խոստովանել ըզՔրիստոս՝ Աստուած ճշմարիտ եւ Որդի Աստուծոյ եւ Միածին, ծնեալ ի Հօրէ յառաջ քան զյաւիտեանս, եւ Տէր արարիչ ամենայն արարածոց, եւ զնոյն Բանն Աստուած ի վախճան ժամանակաց զգեցեալ մարմին եւ եղեալ վասն մեր մարդ, առանց շըրջելոյ եւ անկանելոյ յիւր աստուածական բնութենէն, եւ ծնեալ ի սուրբ Կուսէն, Աստուած՝ ըստ մարմնաւոր ծննդեանն մարդ կատարեալ. եւ կոչի եւ է Կոյսն Տիրածին եւ Աստուածածին, եւ ծնեալն Աստուած եւ մարդ կատարեալ։*

------

*Բնագիր Բ. էջ 130։ Հմմտ. Ա. էջ 1 - 2։*



## ԵԶՆԿԱՅ ԿՈՂԲԱՑԻՈՅ՝ ԹԱՐԳՄԱՆՉԻ Ի ՀԱՅՍ։

2

*Մի Աստուած խոստովանիմք՝ յանդիմանութիւն բազմանուն չաստուածոցն, ինքնակաց, անպատճառական, պարզական, անյաւդական, արարիչ, ամենակալ, ամենազօր, ամենագործ, հաստիչ եւ կազմիչ երեւելեաց եւ աներեւութից։ Եւ ի նմանէն եւ ընդ նմա եւ առ նմին մի Ծնունդն՝ անսկզբնակից, արարչակից, համազաւր, համագործ։ Եւ մի Հոգի Սուրբ Աստուծոյ, մշտնջենաւոր բղխեալ եւ ընդ նմին եւ առ նմին՝ արարչակից եւ զաւրակից Հաւր եւ Որդւոյ։ Այսպէս կատարեալ Սուրբ Երրորդութիւնն դաւանի [ի] սուրբ եւ ի համաշխարհական եկեղեցիս, անմարմին, անզննական, անտարրական, կանխագէտ, յառաջիմաց քան զամենայն արարեալս եւ հաստեալս,(1) ի մի թագաւորութիւն եւ ի մի աստուածութիւն՝ յերիս անձինս կատարեալս։ Զի ո՛չ անձն Հօր է անձն Որդւոյ. քանզի ոչ իւրոյ անձինն է Հայր, եւ ո՛չ անձն Որդւոյ է անձն Հօր. քանզի ոչ եթե իւրոյ անձինն է Որդի, եւ ո՛չ անձն Սուրբ Հոգւոյն է անձն Հաւր կամ Որդւոյ, զի ո՛չ եթե իւրոյ անձինն է Հոգի, այլ Աստուծոյ Հոգի։*

------

*(1) Տպ. հաստատեալս։*

----------

# Ե

## ԹՈՒՂԹ ՊՐՈԿՂԵԱՑ ԵՊԻՍԿՈՊՈՍԻ ԱՌ ՍՈՒՐԲՆ ՍԱՀԱԿ ՀԱՅՐԱՊԵՏ ՀԱՅՈՑ ԵՒ ԱՌ ՍՈՒՐԲՆ ՄԱԺԴՈՑ։

Աւգնեա՛ Հոգի սուրբ տկար Աորոգողիս:

------

Երանի որ հանապազորդ լինիցին ի քաղցրահայեաց տեսիլ աստուածագեղ երեսացդ· եւ զի՞ ասեմ հանապազ, ա՛յլ գոնեա յաւուրս, կամ յամիսս, կամ ի տարեկանս։ Ասասցէ եւ իմ անձն սառնացեալ, ո՞ առնէր զիս արժանի հասանել անկանել յոտըս աւետարանիչս եւ ասել· Մեղայ յերկինս եւ առաջի քո, եւ չեմ արժանի եթէ անուանեցայց քո որդի, այլ համարեաց քոյով բազմագութ ողորմութեամբդ իբրեւ զմի ի վարձկանացդ։ Եւ ուստի՞ ինձ այդ լինիցի, բայց եթէ յաղաւթից սրբոյդ· զոր մեծ պատերազմաւ միշտ ի վերայ արժանեաց եւ անարժանեաց, ամենասուրբն Աստուծոյ մատուցանես։

Եւ վասն հաստատութեան եկեղեցեաց, զոր կարծեաց յանկարծ յարոյց հողմ մոլորութեան չարժել՝ յաղաւթից քոց տեառն սրբութեան դադարեաց· եւ ի միաբանութիւն եկին ամենայն եպիսկոպոսք Հռոմոց, ունել հաստատուն զառաջին երեք հարիւ-

------

Բնագիր Ա· էջ 1 - 8։



րոցն հաւատս, եւ նզովեցին զի մի՛* ոք իշխեսցէ դնել նորածին ինչ եւ աւտարոտի հաւատս· այլ ի նորին վերայ շինել եւ զնոյն ուսուցանել։ Խոստովանել զՔրիստոս Աստուած ճշմարիտ, Որդի Աստուծոյ, եւ միածին, ծնեալ ի Հաւրէ յառաջ քան զամենայն արարածս, եւ Տէր արարիչ ամենայնի։ Եւ զնոյն Բանն Աստուած ի վախճան ժամանակաց զգեցեալ մարմին, եղեալ վասն մեր մարդ առանց շրջելոյ եւ անկանելոյ եւ խախտելոյ յիւրոյ աստուածային ինքնութենէն, եւ ծնեալ ի սուրբ կուսէն Աստուած՝ ըստ մարմնաւոր ծննդեանն մարդ կատարեալ· եւ կոչի եւ է կոյսն Տիրածին եւ Աստուածածին· եւ կատարեալն Աստուած՝ ասի մարդ կատարեալ, վասն զի կատարեալ անդամովք, եւ չնչապատեաց զիւր սուրբ մարմինն· եւ ոչ իբրեւ մարդ· Եւ յայտ արասցեն հակառակողքն, եւ հանապազ իւրեանց բարբանջանացն զոստայնս հենցեն, ապա թէ այս նոյն է հասարակ բուսոյն ծննդեանն սկիզբն։ Իսկ Աստուած Բանն ճշմարտիւ եղեւ մարդ· վասն է՞ր է, զի խոստովանին զբնութիւնն, եւ բամբասեն զանցս անցից ծնընդեանն։ Արդ մի ի յերկուց անտի ընդրեսցեն· կամ ամաչեսցեն յանցս անցից անտի ծննդեան· ուրասցին ի բարուց բնութենէ անտի, եւ զախտն հիւանդացեալ Մանիքեցւոցն ընդ ամբարիշտսն համարեսցին· կամ թէ յարեն յանձինս իւրեանց զաւգուտն մարդանալոյն· եւ խոստովանին զբնութենէ անտի, մի ամաւթ համարեսցին զանցս անցից բուսոյ ծննդեանն։

Արդ ես զարմացեա՛լ եմ ընդ պակասամտութիւնն որ նոր ճանապարհս խոտորս ձեւեն· զի իմ զմինն գիտացեալ եւ ուսեալ բարեպաշտութեամբ

------

* Յօրինակին որ·

*Որդին, եւ մի խոստովանութիւն ունիմ զմարմնացելոյն Աստուծոյ Բանին զաւրութիւն: Իսկ արդ զի մի է որ անցից անցից համբերութեամբ յանձն առ, զմեծասքանչ զաւրութիւնսն կատարեաց. արդ ընդէ՞ր զաստուածեղէնս լռեալ՝ զվատթարագոյնսն յերկարեալ բարբաջեն. զի նա ինքն իբրեւ կամեցաւ թէ հաւատարիմ արարիչ Աստուած եմ եւ Բան, հաստատեցաւ՝ կաց որ էրն, իսկ եղեւ մարմին եւ մանուկ եւ մարդ, ոչ միով իւիք քա. . . .թեամբ զխորհուրդն թշնամանեաց. Նոյն ինքն եւ զմեծասքանչ զաւրութիւնսն առնէր, եւ նոյն ինքն ընդ չարչարանաւքն մտանէր: Նշանաւքն եւ արուեստիւքն կալ եւ մնալ յայնմ որ էրն իսկ՝ երեւեցուցանէ. իսկ չարչարանաւքն որ եղեւն զինչ ստեղծն՝ հաստատէ: Արդ՝ մի եւ զնոյն մշտնջենաւոր ի սկզբանէ եւ ի կատարածի մարմնացեալ խոստովանեսցուք Որդի եւ մի՛ ինչ այլ ամենեւին յաստուածութեանն բնութիւնդ աւտարոտի եւ խոտան խառնեսցուք, զի ոչինչ այլ աւելորդ գոյ յայն աթոռ:*

*Իսկ արդ ապաքէն ի միւս եւս այլ ի բազում հռչակաւոր խորհուրդս նիւթեալ տողեն տկարագոյն քան զսարդի ոստայնս: Եթէ Երրորդութիւնն, ասէ, միազաւր է, Երրորդութիւնն առանց անցից անցից չարչարանաց է. ապա թէ Երրորդութիւնն առանց անցից չարչարանաց է, ապա թէ Աստուած Բանն առանց չարչարանաց է, գտանի որ ի խաչն ել այլ ոմն քան զԱստուած Բանն որ առանց չարչարանացն է: Արդարե՛ւ ճշմարիտ սարդի ոստայն հենուն որ զայդպիսիս խաւսին, եւ ի վերայ ջուրց գիր հանեն, ո՛ր զընդունայն խորհուրդս զայս վարեն. ասեն բա՛յ իմաստունք ե՛ն. եւ մորոսեցան եւ խաւարեցան անմտութեամբ սիրտք իւրեանց. զի աչք բժաբերք զարեգական ճառագայթս սուրս ընդունել չկարեն, եւ միտք հիւանդացեալք ի հաւատոց բարձրութիւն անդր հայել չկարեն: Արդ զինչ ասեմք մեք, եթէ լո՛ւր բանին աստուածութեանն. Երրորդութիւնն միազաւր է եւ առանց չարչարանաց, արդ ոչ եթէ զի ասեմք զՈրդին մտեալ ընդ չարչարանաւք, ըստ բանի աստուածութեանն ասեմք եթէ չարչարանք հասին նմա, զի առանց զամենայն չարչարանս ընդունելոյ է բնութիւն աստուածութեանն. այլ խոստովանիմք զԱստուած Բանն՝ որ մի յԵրրորդութենէ անտի է՝ մարմնացեալ. եւ տամք մեք պատճառս իմաստութեան գտանել այնոցիկ որք հաւատովքն հարցանեն վասն որոյ մարմնացաւ: Քանզի կամեցաւ Աստուած Բանն խափանել զչարչարանս ամենայն ցանկութեանց, որոյ վախճան էր մահ. եւ թողուլ դարձեալ զչարչարանսըն ի տեղոջ՝ անմահ բնութիւնն ո՛չ առնոյր յանձն. զի եթէ ամենայն չարչարանք հակառակութիւն է եւ կռիւ է կցկցեալ արարածոց, իսկ որ անհիւթանիւթն է ոչ մի կցկցութիւն ի նա ժամանելոց է չարչարանաց, քանզի ոչինչ կցկցութիւն ի նմա չըգոյր: Արդ կամեցաւ նա որ բռնադատէին զբանաւոր մարմինն չարչարանքն՝ խափանել, որպէս եւ յառաջն ասացաք, որոց գլուխն ինքնին է մահ: Մարմնացաւ նա ի կուսէ անտի, որպէս գիտէ Աստուած Բանն, եւ կերպարանեցաւ իբրեւ զմարդ, զի այս ինքն կամք էին նորա, եւ ինքն զինքն յինքն ամփոփեաց. ի կերպարանս ծառայութեան եղեւ. ոչ մի ինչ պակասութիւն աստուածութեանն արար, եւ այնպէս փրկեաց զամենայն ազգս մարդկան, եւ մարմնով իւրով խափանեաց զամենայն չարչարանս, ողջ եւ անարատ զաստուածութիւնն պահեաց: Վասն*

այսորիկ եւ Գաբրիէլ ի տալ զաւետիս ծնընդեանն զինքնիշխան զաւրութիւնն կոչէ առ Մարիամ· Նա ինքն, ասէ, փրկեսցէ զժողովուրդ իւր յամենայն անաւրէնութեանց նորա։ Իսկ արդ ժողովուրդ ոչ լինի մարդոյ այլ Աստուծոյ, եւ ոչ զաշխարհ ոք կարէ փրկել ի մեղաց որ ինքն ապականութեամբ յերկիր անկեալ, եւ ոչ իցէ սկիզբն ծննդեան իւրոյ առանց արատոյ· ապա՝ յայտ է եթէ նոյն Աստուած է եւ մարդ, ոչ եթէ բաժանեալ ինչ յերկուս, այլ կայ եւ մնայ մի եւ նոյն։

Ծնանելն ի կնոջէ յայտ առնէր՝ եթէ մարդ էր, իսկ առանց ամուսնութեան կոյս պահել զմայր՝ յայտնի վկայեալ թէ Աստուած է· զի ապրեցոյց զաշխարհ Յիսուս, որ Քրիստոսն է, որ եկն յերկիր եւ ընդ մարդկան շրջեցաւ։ Ապա թէ Քրիստոս դոյգըն մարդ ոք է, եւ ո՛չ ինքն Աստուած Բանն· զի՞րդ ստեղծ նա ի սկզբանէ զամենայն, մինչդեռ չէրն· զի եթէ կրտսեր ամենայն արարածոց է մարդըն, յայտ է եթէ որ յառաջն էին քան զնա, նոցա զկենդանութիւն չէ շնորհեալ Քրիստոսի, իբրեւ կրտսերոյ արարածոց, իբրեւ դուզնաքեայ ինչ մարդոյ։ Իսկ զի՞րդ Պաւղոս գոչէ· Մի է Տէր Յիսուս Քրիստոս, որով ամենայն ինչ եղեւ· զի եթէ ի Քրիստոս է ամենայն ինչ, յայտ է եթէ Քրիստոս Աստուած է Բանն, որպէս գոչէ աւետարանիչն· Ի սկզբանէ էր Բանն եւ Բանն էր առ Աստուած, եւ Աստուած էր Բանն, նա՛ էր ի սկզբանէ առ Աստուած, ամենայն ինչ նովաւ եղեւ։ Եւ Պաւղոս զնոյն քարոզէ եւ ասէ· Մի է Տէր Յիսուս Քրիստոս որով ամենայն, յայտ է եթէ Քրիստոս Աստուած է Բանն։ Ապա եթէ բերեն ի մէջ որ ի սուրբ գիրս բարբառք են, յորում անուանեալ մարդ, զի Պետրոս ասաց զՅիսուսն որ ի Նազարեթէն՝ այր, եւ Պաւղոս աղա-



ղակէ, յառն անդր յորում հաստատեաց զհաւատսն։ Եւ նոյն իսկ Տէրն ասաց· Զի՞ խնդրէք զիս սպանանել զայր մի· գիտասցեն նոքա եթէ կամ վասն վատթարութեան հեղգութեան տգիտութեան պակասեցան ի գրոցն խորհրդոց, եւ կամ վասն խորամանգութեան խարդախութեան խոտորեն զգեղեցիկ գրեալն· զի ասէ մարդ իսկ է ճշմարտիւ Քրիստոսն· այլ ամենայն նովաւ եղեւ· ոչ եթէ յառաջ ինչ էր մարդ, բայց միայն Աստուած էր· զի զոր աւրինակ Աստուած ոչ ստեղծանելով է, եւ նոյն մա՛րդ երեւելով· եւ զոր աւրինակ Հաւրն ըստ աստուածութեանն միազաւր է, սոյն աւրինակ եւ կուսին ըստ մարմնոյ հոմատոհմակ է· յամենայնի ճշմարտութեան խորհրդոյն ճառագայթեալ, եւ յամենայն խաբէութեանց դատարկացեալ· ապա թէ՝ ոչ ծնաւ զԱստուած Կոյսն, եւ ոչ բազում զարմանալեաց արժանի է, որ առանց ամուսնութեան ծնաւ· զի բազում եւ այլ կանայք պտղաբեր եղեն արդարոց յաշխարհ։ Ապա թէ մարգարէիցն լեզուք զանճառ խորհուրդն յառաջագոյն փող հարեալ գոչեն· Ահաւասիկ կոյս յղասցի եւ ծնցի որդի եւ կոչեսցեն զանուն նորա Եմմանուէլ, զոր թարգմանեաց Գաբրիէլ՝ ասէ, Ընդ մեզ աստուած· արդ ընդէ՞ր վասն ծննդեանն խոնարհման, զփառս ծնելոյն շուրջ յապաւէն։

Դարձեալ ընդդէմ դնեն զայս· ամենայն ծընունդ համատոհմակ է ծնելոյն, զի եթէ մարդ է որ ծնաւն, ապա յայտ է եթէ մարդ է զոր ծնաւն։ Զայս բարուոք ասացէք այսպիսիք· Նա յայնժամ համատոհմակ ծնանի, որ երկնայն,* երբ ըստ բուսոյն բարուց ծննդեամբ ծնունդն երեւեսցի, իսկ բուսոյ

------

* Երեւի· երկնէն։

բարուց ծննդեան սկիզբն խառնակութիւն ամուսնութեանն է. քանզի խառնակութիւն յառաջագոյն լինի քան զապականութիւնն, իսկ ուր թշնամանացըս այսոցիկ բնաւ եւ ոչ զմտաւ ածելով, անդ ամենեւին ժամանակ երեւի, այլ յանկարծակի համառաւտ որ ի վերինսն է, քան զասել մեծասքանչ զարմանալիքն, իսկ որ ի վեր է քան զբոյս բարուցն՝ անդ ծնունդն ինքն Աստուած:

Արդ խոստովանիմք այսուհետեւ եթէ նա ինքըն է որ զաշխարհ արար, եւ զաւրէնսն ետ, եւ ի մարգարէսն շնչեաց, եւ ի կատարածի մարմնացաւ, եւ զառաքեալսն ի փրկութիւն հեթանոսաց եւ ժողովրդոց որսացաւ. փախիցուք ի պղտորչաց անտի, եւ ի խոհերական խաբէութեան հեղեղաջուրց անտի: Զի ընդ աստուածամարտ հերեսիութիւն խոստմանցն ասեմ, զԱրայ, Մաթեայ, Մարաթովնայ* մոլեգնութիւնսն ասեմ, որ ի մէջ մատուցեալ ի մէջ անբաժին երրորդութեանն, բաժինս արկանեն. զԵւնոմեայ ժպրհութիւնսն ասեմ, որ չափէ լուրջ գիտութեամբ զանհաս բնութիւնն, զՄակեդովնի կատաղութիւնն, որ քակէ յաստուածութենէ անտի զանքակ բղխումն Հոգոյ. եւ զնորակերտ զնորաձայնս զայս ասեն զնոր ընդունայն հայհոյութիւնսըն, որք բազմապատիկ հայհոյութիւն հրէութեան խորհրդովք, բազմապատիկ անցանեն զանցանեն ըստ նոցա հայհոյութիւնսն, զի նոքա զՈրդին անարգելով զլանան զարմատ շառաւեղին, սոքա քան զճշմարիտն, որ էր՝ միւս եւս այլ ի ներքս մատուցանեն, թշնամանեալ նշկահեն իբրեւ զբազմածին զանարատ բնութիւնն: Արդ մեք եկայք ասասցուք Պաւղոսիւ հանդերձ. Քրիստոս է խաղաղու-

------

* Այսպէս ի ձեռագրին:



թիւն մեր, որ արար զերկոսին մի, եւ զհրեայս եւ զհեթանոսս ի մի նոր մարդ ստեղծ, միաբանեաց հաւանեցոյց զաւրութեամբն, այն որ մեկնեալ էին ի միմեանց գործովք գնացիւքն իւրեանց. արդ սոսկասցին ի դատապարտութենէ անտի, որ զնորաձայն ամպարշտութիւնն ի ներքս արկանեն, զի եթէ որ այլոց պատառմանցն ի միաբանութիւն հաւանութեան եղեւ արարիչ եւ որ հաւանեցոյց եւ միաբանեաց, ինքն յերկուս բաժանեալ գտանիցի ըստ նոցա բանիցն ասացեալ: Բայց արդ այսուհետեւ զերկայնութիւն բանիցս թողեալ ի համառաւտ անդըր եկեսցուք ուղղութեան հրամանին:

Եթէ ոք կամեսցի գիտել ճշմարտութեամբ թէ սա ինքն է մի եւ միայն Որդին, որ յառաջ քան զԱբրահամն էր, եւ ի կատարած հաս մարմնոյն հասակաւ, զի կայ միշտ յաստուածութեան անդ կատարեալ, հարցջիր ցՊաւղոս եւ նա որոտասցէ զաստուածապաշտութիւնն ցուցեալ. զի Աստուած էր յաւիտենից եւ եկն ի հրէից մարմնով, զի վասն Հեբրայեցւոցն ասաց զկերեւուրաց եւ զաստուածամարտաց ազգն զորս յարգէրն վասն արմատոյն, զԱբրահամն եւ զզաւակն որ է Տէր Յիսուս Քրիստոս. զի այսպէս ասէ, Որոց, ասէ, որդեգրութիւնն էր. ինքն Աստուած կոչէ ի բերանոյ մարգարէիցն. Որդի իմ անդրանիկ Իսրայէլ, եւ փառքն, զի անչափ փառս շահէ զանգիտելոցն, մի զմիով արկեալ էր զսքանչելիսն. զկտակարանս ասէ, որ առ Աբրահամն էին. զբազմութեան զաւրհնութիւնն յերաշխեալ, զաւրինադրութիւնն ասէ, որ ի լերինն մատամբն Աստուծոյ գրեալ էր, եւ զաւետիսն ասէ, զերկրին Պաղեստինեայ, եւ ի զաւակէ անտի ասէ Աբրահամու աւրհնեալ զամենայն հեթանոսս. ուստի հարքն՝ ոյք ի մոլորութեան գիշերին ծագեցին

իբրեւ լուսաւորք հաւատովքն, ուստի եւ Քրիստոսն է ըստ մարմնոյ զի յայտնեսցէ զծնունդն։ Եւ ոչ եթէ կացոյց այսուհետեւ Պաւղոս զբանն, զի ոչ եթէ յորմէհետէ ծնունդն Մարեմայ է՝ յայնմհետէ սկիզբն անսկզբնականին գոյութեան, այլ թափեաց վաղվաղակի եւ ասէ ըստ մարմնոյն յայտնութեան, այլ ոչ եթէ ըստ աստուածութեանն ծնունդն։ Արդ ո՞վ է այս· ինքն Քրիստոս որ ի կուսէ անտի ծնաւ, որում այրք եղեն բաւական, զոր ինքն միայն գիտէ, որ ի մսուր անդ բազմեցաւ, որ ի ժամանակի ըստ մարմնոյ աճեաց, որ մինչ ի ստորինս երկրի էջ, որ զամենայն անցս մարմնոյ համբեր· զի հաւատարիմ արասցէ ճշմարտութեամբ եթէ եկն եղեւ մարդ, ոչ եթէ այլ ոմն է քան զայն որ էջն, այլ նա ինքն է որ էջն եւ որ ելն· զի ոչ եթէ ել նախ, այլ էջ, իբր ոչ եթէ ուրուք ձեռամբ ինչ յառաջ ածելով է Աստուած· քա՛ւ լիցի· այլ վասն գթութեան իւրոյ եկն եւ եղեւ մարդ, զի այսուիկ իսկ էաք մեք կարաւտ։

Արդ մի՛ յինէն ուսանիր զայդ կամ յայլմէ ումեքէ, այլ ի Պաւղոսէ· որ ի Հաւրէ յայտնութեամբ ուսաւ զՈրդի եւ ասէ· Այլ յորժամ հաճոյ թուեցաւ Աստուծոյ, որ ընտրեաց զիս ի միջոյ մաւր իմոյ, եւ կոչեաց զիս ի ձեռս շնորհաց իւրոց յայտնել զՈրդին իւր յիս, նա ուսուցէ քեզ ճշմարտիւ՝ Ո՛ է Յիսուս Քրիստոս· զի ինքն աղաղակէ եւ ասէ· Ուստի Քրիստոսն է ըստ մարմնոյ որ է ի վերայ ամենայնի Աստուած աւրհնեալ յաւիտեանս։ Զինչպիսի սպրդութիւնս հայհոյութեան մարդկան ոչ քակեն Պաւղոսի բանքն բամբասասէր մարդկան։ Ասաց զնա բա՛յ Քրիստոս, զի յայտ արասցէ եթէ ճշմարտիւ եղեւ մարդ։ Ասաց զնա ի հրէից ըստ մարմնոյ, զի յայտ արասցէ, զի ոչ եթէ



յորմէհետէ մարմնացաւ, յայնմհետէ միայն է։ Ասաց զնմանէ թէ էր, զի անսկիզբն երեւեցուցեալ որոտասցէ Պաւղոս։ Ասաց զնա ի վերայ ամենայնի, զի արարածոց ամենայնի Տէր զնա քարոզեսցուք։ Ասաց զնա Աստուած, զի մի՛ որք վասն չարչարանացն եւ կերպարանացն շլմորեալ զանսատակման նորա՝ ուրասցուք զբնութիւնն։ Ասաց զնա աւրհնեալ, զի իբրեւ ամենակալի երկիր պագցուք նմա, եւ ոչ իբրեւ զծառայակից մեր բամբասեսցուք։ Ասաց զնա յաւիտեանս, զի յայտ արասցէ, թէ որ բանիւ արար, միշտ մշտնջենաւոր ի մէջ նոցա իբրեւ Աստուած փառաւորի։ Արդ ունիմք զՔրիստոս որ էրն, եւ Աստուած է, եւ աւրհնեալ է, նմա երկիր պագցուք, եւ ասասցուք ցայլանդակսն յայտնապէս, Եթէ ոք զհոգի Քրիստոսի ոչ ունի, սա չէ նորա, զի մեք զմիտս Քրիստոսի ունիմք· քանզի եւ ակն ունիմք գալստեան երեւելոյ փառաց մեծին Աստուծոյ, եւ փրկչին մերոյ Յիսուսի Քրիստոսի, որ հատուցանէ բարեպաշտիցն զյաղթութեան փառաց պարգեւս, եւ ժխտողացն անհնազանդիցն ժպրհութեան պատիժս։

Եւ զի այս ամենայն (զի) գրեցաք առ ձեր սէր այդր, զի լու եղեւ մեզ, եթէ արք ոմանք ժանդախաւսք ցնորախաւսք, անկան ի յաշխարհ այդր, եւ կամին ժանդաժող իմն գրովք, հակառակութեամբ, ստաբան խստախորհուրդ գիտութեամբ, խոտորել զպարզամտութիւն, զանպաճոյճ, զանմեքենայ, զուղղափառ գեղն հաւատոյն, բայց ես զերանելոյն Պաւղոսի զառաքելոյն դարձեալ ասեմ ձեզ· Զգոյշ լինիջիք, գուցէ իցէ ոք, որ զձեզ կապուտ կողոպուտ թողուցու ճարտարմտութեան բանիւք, եւ ընդունայն խաբէութեամբ վարդապետութեան, ընդունայն խորհուրդն մարդկան, եւ ոչ ըստ վար-

*դապետութեանն Քրիստոսի. զի հիմն սրբութեան հաւատոյ, այլ ինչ ոք ոչ կարէ դնել քան զայն որ եդեալն է, այսինքն է Յիսուս Քրիստոս։ Արդ կացէք հաստատուն ի մի հոգի, եւ ի մի անձն, նահատակակիցք եղեալ հաւատովք աւետարանիս, եւ մի՛ խրտուցեալք ընդոստնուցիք, մի՛ յիմիք ի չարեաց թշնամւոյն, եւ մի՛ ի նզով եւ ի կորուստ մատնիջիք ընդ Նեստորեայ, եւ ընդ Թէոդորեայ, որ վարդապետն լեալ էր նորա, եւ որ զչար բոյսն երեւեցոյց եւ չարաբան՝ նորաձայն, որ անցուցին զանցուցին ըստ ուրացութիւն հրէութեան եւ ըստ հերեսիութիւն առաջին Արիանոսացն, Թեանցն, եւ Մարեթոնեաց* եւ այլոցն, որ խոտորեցան ի փառացն սրբութենէ եւ յուղիղն հաւատոց, նզովեցան նոքա յամենայն ժողովրդոց, եւ այրեցան որ վատի խորհրդոց գիրք էին նոցա, յանդիման ամենայն ժողովրդոց, յորմէ եւ դուք պահեսջիք զանձինս, եւ զնոյն գործ գործեսջիք զոր սուրբ ժողովք եպիսկոպոսացն գործեցին, եւ մի ոք զառժամանակեայ ամաւթն, ամաւթ անձին համարեալ, զյաւիտենից ամաւթն ժառանգեսցէ, եւ ընդ նոսա դատապարտեալ ի դժոխս կործանեսցի։ Այլ պահեսջիք դուք զվարդապետութիւնն, զոր ընկալեալ ի հարցն սրբոց որ ի Նիկիա սինհոդոսն էր ժողովոյն, եւ զուղիղ սուրբ փառս հաւատոցն հաստատեցին։ Եւ զոր վարդապետութիւն սուրբքն երանելիք, Բասիլիոս, եւ Գրիգորիոս, եւ որ միանգամ նման են նոցա, որ սրբութեամբ եւ հաւանութեամբ սուրբ հաւատս ի կեանս իւրեանց հաստատեցին, որոց անուանքն գրեալ են ի դպրութեան կենացն։ Ողջ լերուք ի տէր եւ շնորհեալ լիջիք մեզ աստուածասէր եղբարք։*

գրեալ յամի Տեառն
435

------

** Այսպէս ի ձեռագրին։*



## Զ

## ՊԱՏԱՍԽԱՆԻ ԹՂԹՈՅՆ ՊՐՈԿՂԻ ԵՐԱՆԵԼՈՅ, Ի ՍԱՀԱԿԱՅ ԵՒ Ի ՄԱՇԴՈՑԷ, ՍՈՒՐԲ ՎԱՐԴԱՊԵՏԱՑՆ ՀԱՅՈՑ.

------

*Առ ճշմարիտ եւ աստուածասէր պատուական տէր մեր եւ հայր՝ սուրբ եպիսկոպոս Պրոկղոս. ի Սահակայ եւ ի Մաշդոցէ ողջոյն։*

*Ծառագայթք մշտնջենաւոր յաւիտենական լուսոյդ որ առ մեր տկարութիւնս երեւեցան ի ձեր լուսաւոր սրբութենէդ, յոյժ ի ծագել իւրեանց զաւրացուցին զմեր տկարութիւնս, եւ զմեր տկար խորհուրդս բազմապատիկ զաւրացուցին, եւ մեծապէս զկողմն տկարացեալ անդրէն արծարծեալ նորոգեցին. զի անդէն վաղվաղակի թուեցաւ մեզ որպէս նոր ինչ անցք ի վերայ հասանել բազում անձկալի գթոյն զոր աւրինակ անցք անցանիցեն ընդ քաղցրաբեր բոյսս արտոցն քաղցրութեան ցաւղոցն ի վերայ իջանելով եւ զտապ տառապոյն հասկալից բուսոյն ի ջերմախառն յանբարեխառն աւդոցն՝ իւրով քաղցրութեամբն յառողջութեան բժշկութիւն դարձուցանելով։*

*Արդ ցայս վայր գեղեցիկ իմն ցանկալի եւ ուխտիւք խնդրելի էր մեզ լսել եւ ասել զզաւրութիւն թղթոցդ ի միջի՝ որ զերանելի պատգամս ի*

------

*Բնագիր Ա. էջ 9 - 13.*

ձէնջ առ մեզ հասուցանէին՝ եւ մեր աղաւթք հա-
նապազորդէին արժանի լինել յամենայնի՝ ընդու-
նել եւ վայելել յաւրհնութիւնս հոգեւորս ձերոյ
մեծասքանչ սրբութեանդ։ Զի քաղցրացեալ էր մեզ
կա՛լ մնալ մեզ աստէն ի սմին ընտանացեալ տր-
գիտութեան՝ որպէս ի բե՛րդ ինչ ամուր եւ յաչ-
տարակ հզաւր՝ փախստեայ անկեալք յանգիտու-
թիւնս։ Արդ պահպանութիւն զմեւք առեալ զաւ-
գնականութիւն աղաւթից ձերոյ սրբութեանդ, հաս-
տատեալք եւ զաւրացեալք պահել զհաստատութիւն
հաւատոյ, զոր ի սկզբանէ ի ձեր ճշմարիտ վար-
դապետութենէդ ընկալեալ ունեաք, մի՛ պղտորու-
թիւն ընդունել ի վերայ մկրտութեան տգիտու-
թեան պարզամտութեան մերոյ, եւ բնաւ ամենեւին
չընդունել զզո՛ւր կորստական մոլորութիւնս, մա-
նաւանդ զվնասակա՛ր նորաբա՛ն նորաձա՛յն ըզհերե-
սիութիւնս, զոր այլանդակաչատ ամբարշտութիւն՝
տակաւին զբոյսս դառնութեան սերմանցն ցանէ
ի վերայ սրբութեան սերմանեաց՝ որոմնախառն
ուսումնն, որք ի հանճարավնաս սատանայախառն
սովորեալ են։ Արդ որովհետեւ մոլարն առաջին
եւ գլխաւորն ի չարիս զիւր ժանգ աղտեղութեանն
կարկառեալ սերմանել ժպրհեցաւ, զա՛յս մե՛ր մե-
ղաց գործ համարեցաք, եւ ընդ մեծամեծ բազում
եւ անչափ ձերում թղթոցդ տրտմակից եղեալ՝ ըստ
մերում տկարութեանս ողբացաք, եւ յամենայն
տեղիս որ չուրջ զմեւք բնակեալ էին յղեցաք,
մեծ եւ պատուհասալից պատուիրանաւ՝ մի՛ լսել
բնաւ ամենեւին զայդպիսի բարբարոսս, մի ըն-
դունել ամենեւին զվնասաբեր կորստական մոլո-
րական հերեսիութեանն վարդապետութիւնն։

Այլ մեք հաւատամք ի մի Աստուած, Հայր
ամենակալ, արարիչ երկնից եւ երկրի, երեւելի եւ



աներեւելի արարածոց։ Եւ ի մի տէր Յիսուս Քր-
րիստոս, ի միածին Որդին Աստուծոյ, այսինքն է
էութիւն յէութենէ, էութիւն ծնեալ՝ որով ամենայն
եղեւ, Աստուած յԱստուծոյ, լոյս ի լուսոյ, ծնեալ եւ
ոչ արարեալ, իսկակից Հաւր, որ վասն մեր մարդ-
կութեան էջ եւ մարմնացաւ, յանձն առ չարչարա-
նըս, յարեաւ յերիր աւուր, եւ ել յերկինս, եւ գայ
դատել զկենդանիս եւ զմեռեալս։ Եւ ի սուրբ Հո-
գին հաւատամք։ Իսկ որք ասենն՝ էր երբեմն զի
չէր, եւ մինչչեւ ծնեալ էր չէր, եւ ասեն ի չէու-
թենէ եղեւ, եւ յայլմէ իմեմնէ եւ զաւրութենէ, եւ
կամ եղծանելով եւ փոփոխելով, զայնպիսիսն նզո-
վեմք· զի միշտ Հա՛յր, միշտ Որդի, միշտ սուրբ
Հոգի, Հոգի Աստուծոյ Հոգի սուրբ, կատարեալ,
բարեխաւս, անստեղծ, անեղծ, որ խաւսեցաւ աւրի-
նաւք եւ մարգարէիւք եւ առաքելովք, որ էջն ի
Յորդանան։

Եւ վասն մարմնազդեցութեան Որդւոյ այսպէս
հաւատամք· զի առ յանձն լինել մարդ կատարեալ
յաստուածածին Մարիամայ սրբով Հոգւով, առեալ
շունչ եւ մարմին ճշմարտիւ եւ ոչ կեղծեաւք, այս-
պէս եւ կատարեաց փրկել զմեր մարդկութիւնս, եւ
ճշմարտիւ չարչարեցաւ· ոչ եթէ ինքն պարտէր
չարչարանաց, զի ազատ է աստուածութիւնն ի
չարչարանաց, այլ վասն մեր էառ յանձն զչարչա-
րանս, խաչեցաւ եւ թաղեցաւ եւ յերիր աւուր յար-
եաւ, եւ յերկինս համբարձաւ, եւ ընդ աջմէ Հաւր
նստաւ, եւ գալոց է ի դատել զկենդանիս եւ ըզմեռ-
եալս։ Այլ առ կատարման հաւատոց՝ հաւատամք ի
մի մկրտութիւն ապաշխարութեան, եւ ի մի կա-
թուղիկէ եկեղեցի· եւ ի յարութիւն մեռելոց, եւ
յարքայութիւնն երկնից եւ ի դատաստանսն յա-
ւիտենականս։ Եւ աստուած խոստովանիմք զՀայր

եւ զՈրդի եւ զսուրբ Հոգին, մի Աստուածութիւն սրբոյ Երրորդութեանն, զի Հոգի է Աստուած, եւ կամաւք երեւեալ, խաւսեալ աւրինաւք եւ մարգարէիւք եւ առաքելովք։

Հաւատամք ճշմարտիւ անգիտութեամբ եւ անհասութեամբ, զի ամենայն մարդ ըստ պատկերի Աստուծոյ, այլ թէ ո՞րպէս կամ զի՞րդ, Աստուծոյ միա՛յն է գիտել. բայց զարմացեա՛լ եմ ընդ այնս որք աւելի քան զինքեանց չափն ջանան եւ նկրտին ըմբռնել զանհասն զառանց ըմբռնելոյն։ Բայց կարծեմք զայնպիսիսն, իբրեւ ի մեր տգիտութեան կարծեաց, թէ այնպիսիքն ոչ գիտեն ամենեւին ըզգիրս, եւ ոչ զզաւրութիւն հոգոյն, որ ի գիրս է, բայց եթէ հրեարէն, միայն զմուրն նկատիցեն։ Եւ որպէս գողացեալ համարիմք զնոցա միտս ի Թըշնամոյն, զի արբեցեալ են զչար հիւանդութեան արբեցութիւն, որոց ի բազում եւ ի թանձր արբեցութենէն զգայութիւն ճաշակելեացն թարշամեցուցեալ է, եւ ոչ ճաշակելեացն անգամ կարեն առնուլ զհամ գինոյն. ի բազում կիզմանն զայրութենէ զզգայութիւնսն կորուսեալ է. եւ կամ զայս իմանամք ի կարծել մերում, թէ ի զո՛ւր տարապարտուց է գիտութիւն բազում ուսմանն, զի ի սատանայութեան մոլորութիւնն կործանեալ են. հասանել անհաս չափոցն ժպրհին. զի ոչինչ է այլ տգիտութիւն, այլ խաւար խորհրդեան եւ ամենայն կեղծաւորութեան խորամանգութիւն, եւ գործ սատանայութեան։ Երկուս որդիս եւ երկուս տաճարս մեքենայեն գտանել ընդ միտս իւրեանց, խորհել աներկիւղութեամբ եւ անամաւթութեամբ, զամաւթ իւրեանց լրբութեամբ յայտնապէս պատմեն. զի եւ Տէր մեր Յիսուս Քրիստոս կամաւք Հաւր գթացաւ ի վերայ մոլորութեան մարդկան։ Բանն



որ ի սրտէ Հաւր բղխեալ, կամեցեալ հաճոյ առնել, հովանի լինելով Սրբոյ Հոգւոյն, մարմին լինել յարգանդի Կուսին սրբութեան, եւ ընդունել զմարմին հնացեալ, որ ըստ խաբէութեան սատանայի յապականութիւն դարձեալ էր, նորոգե՛լ մարմնով շնչով եւ հոգւով, զի առանց ապականութեան ստեղծուածն առաջին ի միւս անգամ ծննդեանն յարութեան մեռելոց երեւեսցի. զի ճշմարիտ մարմին զգեցաւ վասն մեր, եւ սերմանեաց ի մեզ հաւատով զաստուածութիւնն, եւ արար նշանս եւ արուեստս, զի նորա Աստուածութեամբն հաւատարմասցուք։ Ինքն յանձն էառ քաղց եւ ծարաւ, աշխատութիւն եւ քուն, իբր ոչ եթէ աստուածութիւնն ի մարմնոյն չարչարանաց ի պարտութիւն մատնեալ էր, այլ զի խցցէ զանամաւթ բերանս եւ անաւրէնութեամբ սրեալ զլեզուս, որ արդէն իսկ յաւժարեալ են հայհոյութիւնս խաւսել. որք ասենն՝ ոչ ճշմարտութեամբ այլ կեղծեաւք ի ցնորս առ աչաւք երեւելով զալուստն եղեւ, համբեր յանձն առեալ ապտակս եւ անարգանս, խաչ եւ մահ, իբրեւ ոչ եթէ ինքն պարտական եւ արժանի էր այսմ. եւ ոչ մահուն արժանի էր զոր մեռաւ, զի անմահ է Աստուածութիւնն, այլ զի զմեր անարգանս որ ի մեղաց մերոց եղեւ, սրբով Աւետարանաւ եւ պատուական արեամբն ջնջել ի մէնջ եւ լուանալ արժանի արասցէ։

Եւ որ ի փայտէն գայթագղութիւն եղեւ ի դրախտին՝ ի մէջ միջնաժողով ժողովրդոց զխաչն կանգնեաց՝ փայտ առ փայտ, եւ ծառ առ ծառ. եւ զպտուղն կենաց, փոխանակ ապականաբեր պտղոյն զկենդանաբեր փայտէն կախեաց, կամաւք կամակարութեամբ, եւ ոչ ակամայ կամաւք զանձն մատնեաց. ինքն զինքն եդ, եւ անդրէն ինքն զինքն

*յանձն իւր ընկալաւ, զսուրբ մարմինն եւ զպատուական արիւնն պաշար կենաց մեզ (որք ճշմարտութեամբ հաւատացաք) յաշտիճանաւոր ճանապարհն որ յերկինսն է, սիրելեա՛ց իւրոց պատրաստեաց։ Այլ վասն տարապարտ եւ անաւգուտ, մանաւանդ վասն նզովեալ մոլորութեան նոցա, զի՞ պարտ է զբազում բանիւք անկանել, եւ զսուրբ ազատութեանն լսելիս, զանարատ մտաց հաստատութիւն մեզ իշխել աղտեղել. զի որ միանգամ մոլորական եղեն ի ճշմարտութեան ճանապարհէն, եւ յուղեղ հաւատոյն վրիպեալք ընկեցան։*

*Այլ զի՞նչ խորհիցին, կամ զի՛նչ խաւսիցին, թէ ո՛չ որ ի հուր գեհենին պատրաստեալ հատուցումն նոցա է. զի մեք աստ, որ զայնպիսի իշխեն յանձն առնուլ. եւ կամ ուրեք ուրեք ի տեղիս այնպիսի գտանիցի խորհել կամ խաւսել, ոչ միայն չընդունիմք կամ հալածեմք, այլ բազում եւ մեծամեծ պատիժ պատուհասի առնել ոչ դանդաղիմք։ Ո՛րչափ եւս առաւել պարտ եւ պատշաճ է ձեզ, որ ի մեծամեծ իշխանութիւնդ վայելէք, նախանձել զնախանձ Աստուծոյ եւ ի գլուխ վարել զայնպիսին նախանձու վրիժուց հատուցմունս, եւ ոգով եւ մարմնով ջանալ զի բարձցին ի միջոյ եկեղեցւոյ Քրիստոսի ա՛նուանարկ անաւրէն ամբարշտութեանն գայթագղութիւնք։ Մանաւանդ զի թագաւորս ունիք, որ զհոգ Աստուծոյ յանձին բարձեալ բերեն, եւ հաւասարութեան Երրորդութեանն սրտի մտաւք ընդանեցեալ են, կարող են զփուշն ի միջոյ սրբել, զի բոյսն սուրբ սերմանեաց հաւատոյն, բարձրացեալ ծաղկալից պարարտացեալ, լի արմտեացն քաղցրութեամբ՝ զանկեալ զհատն սերմանողացն մատուցէ ատոքացեալ, բազմապատիկ զբերրի զպտուղն մատուցանել մարթասցէ, եւ ու-*



*րախ արասցէ զտէրն արդիւնարարաց, եւ զմշակն արդարապէս հատուցման պարգեւաց արժանի արասցէ։*

*Զի եթէ որ երկրաւոր թագաւորաց սպասաւորք իցեն, դուզնաքեայ ինչ բանք, մա՛նաւանդ որ վասն ծիրանեաց լինին, ո՛չ յանձն առնուն դատարկացուցանել, թէ ոչ մեծապէս պատժիւ եւ պատուհասիւ մեծապէս վրէժ խնդրեսցեն, ո՛րչափ եւս առաւել պարտ եւ պատշաճ է որ զանեղծ եւ զանարատ հաւատն յապականութիւն դարձուցանել ջանան, եւ որ անհասն է՝ հասանել ի նա ժպրհին, եւ յաւիտենական լուսոյն գեր ի վերո՛յ լինել յաւժարեն, եւ սրբոյ զանճառ զանքնին Երրորդութեանն քննութիւնն ջանան ընդ խնդիր արկանել, առաւել եւս նոցա ընդունել պատիժս պատուհասի ըստ իւրեանց խորհրդոց, զի սրբութիւն Երրորդութեանն անմատոյց հրեշտակաց եւ աներեւելի քերովբէից եւ սրովբէից, լոկով միայն փառաւորութեամբ եւ աւրհնութեամբ պաշտի։*

*Արդ տէր մեր եւ ճշմարիտ աստուածասէր հայր մեր, եւ ամենայն եկեղեցւոյ Աստուծոյ ընդունելի, եւ ի սուրբ աղաւթս քո յիշել զմեզ հանապազ անգարշ լինիջիր, եւ զմեր տկարութիւնս զաւրացուցանել մի դանդաղիցիս. եւ եթէ ինչ ըստ չափ թղթոյդ առ տգիտութեան վրիպեալ իցէ, ուղղել անգա՛րշ լինիջիր։ Եւ որ Թէոդորեայ Մամուեստացւոյ աշակերտեալք իցեն՝ առ ժամանակս ի շնորհացն աստուծոյ այնպիսի ինչ աստ չեւ է յայտնեալ, ապա թէ իցէ ծածկեալ ի ժանգոյ աղտեղութեան, ի հարկէ ջան լիցի մեզ խլել զխոչն, եւ զգայթագղութիւնն զայն ի միջոյ ի բաց կորուսանել, զի միաբանութիւն որպէս ի ձերում միջի փառաւորի, եւ զմեզ ի նմին հաւասարութեան փա-*

*ռաւորութիւն առ Աստուած հաստուցանել արժանի
արասցէ։*

*Ամենայն ուխտի, որ ընդ ձերով սրբութեամ-
բըդ են, մեք եւ եղբարք, որ ընդ մեզ են, ողջունի
թղթովդ աղաչեմք, զի աղաւթիցէք ի վերայ եղ-
բայրութեանս հասարակաց։*





## Է

## ԹՈՒՂԹ ՅԱԿԱԿԱՅ ԵՊԻՍԿՈՊՈՍԷ ՄԵԼԻՏԻՆԱՑԻՈՑ, ԱՌ ՍՈՒՐԲՆ ՍԱՀԱԿ ՀԱՅՈՑ ՀԱՅՐԱՊԵՏ·

*Որ ամենայնիւ աստուածասէրդ ես եւ լի սըր-
բութեամբ տէր իմ եւ գործակից, ըստ նմանու-
թեան միոյ մարմնոյ յաւդապատեալ, այսպէս բա-
զում ազգս ի միաբանութիւն հաստատեաց ըստ
Պաւղոսեան բանին թէ, Որ ոչ գոյ հրեայ, եւ ոչ
յոյն այլովքն՝ բայց յամենայնի Քրիստոս· ցուցա-
նէ այս զմիաբանութիւն հաւատոյն, զոր չարժեա՛ց
չար աղանդն Նեստորի, որ էր նա ի քաղաքի Կոս-
տանդինեայ եպիսկոպոս, եւ ապա հերետիկոս գըտ-
եալ կործանէ՛ր յաշտիճանէն, որով ծանեաք զգայլն
յափշտակող յարձակեալ ի վերայ սուրբ եկեղեց-
եաց, եւ ուրեք ուրեք զպարզամիտս յիւր դար-
ձուցեալ ի չարակամութիւնն։ Ջահի հարեալ թէ
գուցէ եւ ի ձեր եկեղեցիսդ արա[ւ?]տ գտեալ ճա-
րակեսցի, լաւ համարեցաք ազդել առ ձեզ զհասա-
րակաց աւգուտն խորհելով, զի ոչ ուստեք են դէմ-
քըն այլ ի հրեարէ՛ն ախտն զանգեալ գտանին· զի
սխալեն ի խոնարհելոյն Տեառն եւ ընդ բնաւ կիրս
մարդկաւրէն անցա՛նելոյն բա՛ց ի մեղաց։ Ժպրհին
զլանա՛լ զերկրպագութիւնն Տեառն, ընդ ամենայն*

------

*Բնագիր Ա.* էջ 14 - 15.

գիրս հակառակ եղեալ· ոչ ընդ այն հայեցեալ, որ ի ծնէ կոյրն բժշկեցաւ ի Տեառնէ, եւ հարց ցնա եւ ասէ· Դու հաւատա՞ս յՈրդի Աստուծոյ· եւ պատասխանի եւ ասէ· Տէր ո՞վ է զի հաւատացից ի նա· եւ ասէ Տէր· Եւ տեսեր զնա եւ որ խաւսիդ ընդ քեզ՝ նա՛ է· խոնարհեալ երկիր պագանէր ասելով, Հաւատա՛մ Տէր· Իսկ փրկիչն ասէ· Ի դատաստանս եկի յաշխարհս, զի որք ոչն տեսանեն՝ տեսցեն, եւ որք տեսանենն՝ կուրասցին։ Ոչ աւելի առնեն զնա քան զառաքեալսն եւ զայլ սուրբսն։ Պա՛ւղոս լցեա՛լ աստուածային զաւրութեամբն բարբառէր· Թէ զփորձ ինչ առնուլ կամիք զՔրիստոսի, որ ինեւս ընդ ձեզ խաւսի, եւ բոլոր սուրբքն զոր ինչ արարին սքանչելիս, ոչ իւրեանց զաւրութեամբ, այլ աստուածութեանն շնորհիւ։ Յաղագս նորին եւ Տէրն ասէր ցմատուցեալսն, Հաւատա՞յք եթէ կարող եմ զայդ առնել· յայտ արար զանձնէ եթէ ոչ է մարդ ղուզնաքեայ, այլ Ա՛ստուած ճշմարիտ։

Բերեն ի մէջ ասելով զբանն, թէ Մարմին ինչ ո՛չ աւգնէ։ Իսկ զի՞րդ տէր ասաց, Եթէ ոչ կերիջիք ի մարմնոյ իմմէ եւ արբջիք յարենէ իմմէ ոչ ունիք կեանս յանձինս ձեր։ Արդ այս բան՝ է՛ յանդիմանիչ եւ կշտամբիչ նոցա անաւրէնութեան, որչափ պատշաճ է ըստ չափոյ թղթոյդ առաջի արկեալ։ Բայց եւ զայն եւս պարտ է ասել որով նախատեն զմեզ, եւ գիտուն առնել սիրոյդ ձերում, զի բամբասեն զմեզ իբրեւ թէ Աստուած զայն պաշտեմք որ ընդ չարչարանաւք է։ Իսկ մեք ոչ միայն չընդունիմք զիմաստս նոցա, այլ եւ նզովեմք որ զայս իշխեն ասել թէ ի բնէ իսկ էր Աստուած ընդ չարչարանաւք· մահկանացու զանմահն, եւ եղծանելի զանեղծն եւ զանարատն համարին· ոչ հային ի գիրս սուրբս, եւ ոչ ի վարդապետութիւնն ՅԺԸ



եպիսկոպոսացն որ ի Նիկիացւոց քաղաքին։ Այլ մեք հաւատամք եւ հաստատիմք, եւ ի վկայութիւն հասանեն մեզ վարդապետք սուրբք եւ գիրք աստուածաշունչք· Բանն, ասէ, մարմին եղեւ, ոչ եթէ եղծաւ ինչ յիւրմէ բնութենէն, կամ փոփոխեցաւ, այլ ըստ անհաս զարմանալեաց մարդկային մտաց եւ խորհրդոց եկաց ի նմին որպէս էրն իսկ, եւ եղեւ զինչ կամեցաւ։ Որպէս եմուտ ընդ չարչարանաւք, ոչ լոկով մարդկութեամբն, այլ եւ Աստուածութեամբն, ըստ բարբառոյն Թումայի, որ իբրեւ շաւշափեաց զվէրսն, ասաց մեծաձայն· Տէր իմ եւ Աստուած իմ· ոչ ասաց եթէ՝ այրդ Աստուծոյն իմոյ ըստ ամբարշտացն մտաց։

Արդ իբրեւ առնուցուք զթուղթդ, ի վերայ իմոյ տկարութեանս աղա՛ւթս անպակաս մատուցջիք Աստուծոյ։ Բայց մեզ երկիւղ է, թէ գուցէ ի Թէոդորեա Մամուեստեայ ուսմանէն աշակերտեալ ոք գտցի եւ ի չար ժանգէն Նեստորին, ի միամի՛տ անձինս ազդիցէ։ Զի զնորա մնացեալ գրեանն իբրեւ խնդիրս այս յայտնեցաւ, եւ մանաւանդ որ վասն մարմնախառինն գրեալ էր, վճիռ հրամանի ետուն սուրբ աշխարհաժողով եպիսկոպոսացն, որ յԵփեսացւոց քաղաքին եղեւ, ի մի վայր ժողովել զբնաւ գրեանն եւ այրել։ Արդ փոյթ լիցի ձեզ առանց պղտորութեան զհաւատն պահել, զի կատարեալ զարդարութիւնն անապական ընկալջիք։

--------

## Ը

## ՊԱՏԱՍԽԱՆԻ ՏԵԱՌՆ ՍԱՀԱԿԱՅ, ԹՂԹՈՅՆ ԱԿԱԿԱՅ։

Առ ճշմարիտ եւ աստուածասէր տէր մեր եւ հայր՝ սուրբ եպիսկոպոս Ակակ, ի Սահակայ ի Տէր ողջոյն։

Ծառագայթք մշտնջենաւոր յաւիտենական լուսոյդ, որ առ մեր տկարութիւնս երեւեցան ի ձեր լուսաբեր սրբութենէդ, յոյժ ի ծագելն իւրեանց զաւրացուցին զմեր տկարութիւնս, եւ ըգնուազ խորհուրդս մեր աճեցուցին, զոր աւրինակ տապ ինչ ջերմագին յանխառն աւդոց հասեալ ի բոյսս արտոց, եւ զկնի նորա ցաւղ քաղցրութեան հասեալ՝ փութով յառողջութիւն դարձուցանէ, այնպէս գեղեցիկ իմն ցանկալի եւ ուխտիւք խնդրելի էր մեզ լսել զերանելի պատգամս ի ձէնջ առ մեզ հասեալ։ Մեր աղաւթք հանապազորդ էին արժանի լինել յամենայնի ընդունել եւ վայելել յաւրհնութիւնսդ հոգեւորս ձերոյ մեծասքանչ սրբութեանդ զի քաղցրացեալ էր մեզ կալ մնալ աստէն ի սմին ընդանացեալ տգիտութեան, իբրեւ ի բերդ ինչ ամուր փախստեայ անկեալ յանգիտութեանս։ Արդ պահպանութիւն զմեւք առեալ զաւգնականութիւն

------

Բնագիր Ա, էջ 16 - 18, ըստ Ե. Ե. Դուրեանի օրինակին, մասամբ.- Պարբերութեանց բաժանումը՝ մեր կողմէ։



աղաւթից ձերոց, պահել զհաւատսն ճշմարտութեան որ ի ձեր ի սուրբ վարդապետութենէդ ունէաք եւ անպղտոր լեալ տգիտութիւն եւ պարզամտութիւնս մեր, մանաւանդ ի նորաբան հրէութեանն զոր այլանդակքն տակաւին զբոյսս դառնութեան եւ աղտեղութեան սերմանեացն ցուցին եւ ցանեցին ի վերայ սուրբ սերման զորոմնախառն ուսմունսն, որ ի հանճարավնաս սատանայէ խառնման ուսեալ սովորեալ են։ Արդ որովհետեւ մոլարն առաջին գլխաւորաւքն չափ գիւր ժանդ աղտեղութիւնն(1) սերմանել ժպրհեցաւ, զայդ մերոց մեղացն գործ համարեցաք, եւ յո՛յժ ձերում թղթոյդ տրտմակից եղեալ ողբացաք, եւ ընդ բնաւ տեղիս մերոյ նահանգիս մեծաւ պատուհասալից պատուիրանաւ արձակեցաք՝ մի՛ լսել(2) ամենեւին այնպիսի բարբարոսացն, մի՛ ընդունել զչար հերեսիութեանն բարբաջանս։

Բայց ես զարմացեա՛լ եմ ընդ այնոսիկ որ աւելի քան զաւրինացն չափն ջանան եւ նկրտին ըմբռնել զանըմբռնելին. այլ կարծեմք զայնպիսեացն չգիտել ամենեւին զգիրս եւ զզաւրութիւն նորին, բայց եթէ հրէարէն միայն զմուրն նկատիցեն։ Եւ իբրեւ գողացեալ իմն համարիմք զմիտս նոցա ի թշնամոյն եւ ախտացեալ ի չար հիւանդութիւն, արբեալ ի թանձր արբեցութենէ, եւ զգայութիւնս ճաշակացն թարշամեցուցեալ չկարէ առնուլ զհամ գինոյն, ի սաստիկ կիզմանէ ընկղմին միտքն ի թմբիրն խելագարութենէ. Թէ զոր տարապարտ գիտութիւն բազում ուսմանն ի սատանայութիւն զառածէ, որ հասանել անհաս չափոցն ժպրհին։ Քան-

------

(1) տպ. աղետութիւնն։

·հնել։

*զի ոչ գոյ այլ գիտութիւն խաւարահեղց, քան երկուս որդիս կամ երկուս տեարս անուանել ի Քրիստոս· աներկիւղաբար անամաւթաբար զլրբութիւնն իւրեանց յայտնապէս պատմեն։ Այլ զի խցցին անամաւթ բերանքն, եւ անաւրէնութեամբ սրեալ լեզուքն, ճշմարիտ մարմնացաւ բանն առ ի նորոգել միւսանգամ մարմնով, շնչով եւ ոգւով, զմարդն հնացեալ զապականեալն ի մեղաց· եւ զի ի փայտէ գայթակղութիւն եղեւ եւ մահ, փայտ կենաց առ փայտն կանգնեաց, եւ ծառ առ ծառն բարձրացոյց, պտուղ կենդանարար փոխանակ այնր մահածին պտղոյն պարգեւէր, ինքն զինքն եդ, եւ ինքն զինքն անդրէն յանձն իւր ընկալաւ, զսուրբ մարմինն եւ զպատուական արիւնն պաշար կենաց մեզ հաւատացելոցս յաշտիճանաւոր ճանապարհն պատրաստեաց։*

*Եւ արդ որ միանգամ լայն(3) ի ճանապարհէ եւ յուղիղ հաւատոյն վրիպեցան, հուր գեհենին պատրաստեալ պահի նոցա· եւ մեք աստ եթէ յանկարծ յայնպիսեացն գտցուք, ոչ միայն չընդունիմք կամ հալածականս առնեմք, այլ եւ ընդ մեծ պատժովք արկանել ո՛չ դանդաղիմք։ Որչափ եւս պարտն է ձեզ որ ի մեծամեծ իշխանութեանդ վայելէք նախանձել զնախանձն Աստուծոյ, եւ մարմնով եւ հոգւով ջանալ բառնալ ի միջոյ զխոչդ(4) եկեղեցոյ Քրիստոսի, մանաւանդ զի թագաւորս ունիք, որ զհոգ Աստուծոյ յանձինս իւրեանց բարձեալ բերիցեն, կարող են զխոչդ ի միջոյ խլել, եւ զբոյս սուրբ սերմանց հաւատոցն պարարտացեալ արմտեացն քաղցրութեամբ զանկեալ հասկն սեր-*

------

*(3) տպ· յայն։*

*(4) տպ· չխոչդ։*



*մանաւղաց, նմա մատուսցէ ատոքացեալ, բազմապատիկ զբերրի պտուղսն հատուսցէ, եւ ուրախ արասցէ զտէրն արդիւնարարաց, եւ զմշակն առատապէս պարգեւաց արժանի արասցէ։ Զի թէ որ երկրաւոր թագաւորաց սպասաւորք իցեն, եւ դուզնաքեայ ինչ բանք մանաւանդ որ վասն ծիրանեաց լինի, ոչ յանձն առնուն դատարկ անցուցանել՝ եթէ ո՛չ մեծապէս պատուհասիւ զվրէժն խնդրիցեն· ո՛րչափ եւս պարտ է որ զանեղծ եւ զանարատ հաւատսն յապականութիւն դարձուցանեն, եւ յանհասն հասանել ժպրհին եւ մշտնջենաւոր լուսոյն գեր ի վերոյ լինել յաւժարեն, զանքնին Երրորդութեանն քննութիւն ջանան ընդ խնդիր արկանեն։ Պարտ եւ պատշաճ է առաւե՛լ եւս նոցա ընդունել պատիժս պատուհասի։ Քանզի սրբութիւն Երրորդութեանն անմատոյց հրեշտակաց եւ աներեւոյթ քրովբէից եւ սրովբէից, լոկով միայն փառաւորութեամբ եւ աւրհնութեամբ միայն պաշտի։ Արդ տէր մեր եւ հայր յընդունելի եւ ի սուրբ աղաւթս քո յիշել անգարշ լինիջիր, եւ եթէ ինչ ըստ չափոյ թղթոյդ առ տգիտութեանս վրիպեալ իցէ ուղղել կամեսջիր, եւ զտկարութիւնս զաւրացուցանել մի՛ դանդաղեսցիս։ Այլ յաղանդոյն որ գրեցեր գարշել, առ ժամանակս ի շնորհս Աստուծոյ այսպիսի ինչ չեւ է հասեալ· ապա եթէ իցէ ինչ ծածկեալ ի ժանդոյ անտի, ի հարկէ ջան լիցի խլել զխոչն ի միջոյ զի միաբանութեամբ փառաւորեսցուք զՔրիստոս։*

---------

## Թ

## ԹՈՒՂԹ ՅԱԿԱԿԱՅ ԵՊԻՍԿՈՊՈՍԷ, Ի ՀԱՅՍ·

Պատուական եւ առաքինի նախարարք Հայոց, սիրելիք եւ ծառայք Քրիստոսի, մեծամեծք եւ փոքունք, յԱկակայ եպիսկոպոսէ Մելիտինէ· ի կըրտսեր ծառայէ խոնարհութեամբ եւ սիրով ողջոյն·

Վասն դիմադարձացն ճշմարտութեան, որ ըզկնի գնացին ամբարշտութեանն Նեստորի եւ Թէոդորի, եւ ոչ հեղգացան գովիչք լինել ամպարշտութեան նոցա, եւ մինչ ի սահմանս ձեր փութացան առաքել զթունաւոր եւ զապականիչ վարդապետութիւնն, անմարթ եւ անկարգ համարեցաք լռել, որք ունին զճշմարիտ վարդապետութեան քարոզութիւն, եւ եթէ յայսպիսի ժամանակի ոչ ճգնեսցուք ցուցանել ձեզ, որոց ընկալեալ զճշմարիտ հաւատոյն քարոզութիւն, աւգնել անձանց անմեղաց եւ յստակամիտ մարդկան, զի մի վնասեսցին ի խարդախամտացն եւ ի նենգաւոր մշակացն։ Արժանի եւ իրաւ համարեցաք գրել առ ձեր աստուածսիրութիւնդ, զի տացի ձեզ շնորհիւն Աստուծոյ· եթէ սուրբ եւ ճշմարիտ վարդապետքն ձեր հաստատուն եւ անշարժ կան ի վերայ հիման ճըշմարիտ հաւատոյ, եւ ոչ տան տեղի յափշտակող գայլոյն, ունել ժամանակ գողանալ զոք ի հաւտէ Քրիստոսի· զի արդ լցեալ է ժամանակն զոր յառա-

------

Բնագիր Ա· էջ 19 - 21։



ջագոյն ասաց երանելին Պաւղոս, եթէ գիտեմք զի եկեսցեն առ ձեզ գայլք յափշտակողք որք ոչ խնայիցեն ի հաւտ Տեառն, զի եւ ի ձէնջ յարիցեն որ խաւսիցին անարժանս, ձգել զոմանս յաշակերտելոցն զկնի իւրեանց։ Արդ կատարեցաւ եւ այն մարգարէութիւնն որ ասէր· դարձեալ ասէ թէ՝ Գալոց է նախ ապստամբութիւնն, եւ ապա յայտնեսցի որդին կորստեան, մարդն անաւրէնութեան, հակառակորդն հպարտացեալ ի վերայ ամենայնի, որ ասի աստուած կամ պաշտաւն, ի գալ մտանել նմա ի տաճարն Աստուծոյ, եւ նստել որպէս աստուած եւ ցուցանել զանձն իւր թէ աստուա՛ծ իցէ։

Ահա՛ ժամանակ ապստամբութեան, ահա ժամանակ գայլոց, ահա՛ ժամանակ որ խաւսիցին խոտորնակս· արդ աղաչեմ զսէր ձեր, մի՛ խաբեսցեն զձեզ բանք սնոտիք, մի՛ նայիք ընդ պատուականս պատուականութեան մարդկան, եւ մի՛ ընդ բազմութիւն որ միաբանիցին լինել ընդդէմ իւրեանց կենարարին Քրիստոսի եւ ճշմարիտ հաւատոյ· զի պարտ է կատարել ասացելոյ բանին Տեառն որ ասէ, թէ Եկեսցէ որդի մարդոյ, գտանիցէ՞ արդեւք հաւատս յերկրի։ Զի բազմութիւն որ ի չարիս եւ յամպարշտութիւնս միաբանին, չէ պարտ պատւոյ արժանի համարել քան զճշմարտութիւն· այլ գիտել պարտիմք զի ժամանակս փորձութեան է եւ ապստամբութեան, ձգել զբազումս յամպարշտուտութիւն։ Այլ երկիւղածաց Աստուծոյ պարտ է պահել զկրաւնս հարցն, եւ զուսումն ՅԺԸ իցն եպիսկոպոսաց սրբոց, զհաստատութիւնն որք մեծաւ ճշմարտութեամբ եւ խորհրդիւ եւ հրամանաւ սըրբոյ Հոգւոյն առաքելութեան եւ աւետարանութեան վարդապետութեամբ ուսուցին մեզ հաւատ, զոր

ասեմք հանապազ ի սուրբ եկեղեցիս։ Ըստ այնմ հաւատոյ սուրբ եկեղեցիք զկոչեցեալսն մկրտեն մինչ ի ժամանակս անաւրէն Նեստորի եւ չյիշելի անուանն Թէոդորի վարդապետութեանն, զոր ամպարիշտն Նեստորիոս յայտնեաց եւ բազումք գընացին զկնի նոցա ամպարշտութեան։ Սակայն զուսումն ճշմարտութեան յերկուս ցուցանել ոչ կարացին ի սիւնհոդոսին եւ ի ժողովսն որ եղեն յԵփեսոս. Մ. եւ թէ սակաւ աւելի կամ պակաս, որք ժողովեցան սուրբ եպիսկոպոսքն յամենայն տիեզերաց, եւ եկին միաբանութեամբ, բաց յԱնտիոքացւոյն, զնոյն ուսումն հաստատեցին որք գայցեն ի հաւատս եւ ի մկրտութիւն։ Եթէ ոք արտաքս քան զայն ուսուցանիցէ, եւ երկուս որդիս քարոզիցէ, մի որ ի Մարիամայ, եւ միւս որ յԱստուծոյն Բան, կամ շրջելի եւ այլայլելի ոք ասիցէ զԱստուած ի մարմնանալն՝ նզովեսցի, որ ոք եւ իցէ, զի ոչ մեք նզովեմք զայնպիսիսն. այլ սուրբն Պաւղոս ասէ. Եթէ ես կամ հրեշտակ յերկնից աւետարանեսցէ ձեզ աւելի քան զոր ընկալայքն, նզովեալ լիցի։ Եւ մեք Երրորդութիւն ընկալաք, եւ զխաչեալն ի սուրբ Երրորդութենէն գիտեմք, եւ մահուամբ նորա մկրտիմք, որպէս եւ ասաց. Մկրտեցէք զնոսա յանուն Հաւր եւ Որդւոյ եւ Հոգւոյն սրբոյ. ոչ ասաց որդւոց; այլ Որդւոյ, եւ երանելին Պաւղոս թարգմանեաց թէ զինչ է անուամբ Որդւոյ մկրտել. որ միանգամ, ասէ, մկրտեցաք Քրիստոսիւ Յիսուսիւ, մահուամբ նորա մկրտեցաք. թէ ի թշնամութեան մերում հաշտեցաք ընդ Աստուծոյ, մահուամբ Որդւոյն նորա։

Աղաչեմք մի ոք զձեզ խաբեսցէ, մի՛ պատուականութիւն երեսաց, մի՛ բազմութիւն, մի՛ թողացուսցուք զճշմարիտ հարցն կրաւնս եւ զհաւատ



որով հաւատացայքն, որով ապրեցայքն, զայս հարկեցայ գրել առ սէր ձեր. զի ի գալ առ մեզ սիրելեաց մերոց երիցանց, Հոնայ, Քոթայ, Անձնայ, պատմել մեզ զբարի գործսն զոր գործեցէք, զի զգրեալսն Թէոդորի(1) կապեցէք կնքեցէք։ Արդ մի՛ ոք հաւանեցուսցէ զձեզ տալ անդրէն զայնոսիկ որք փութով եւ ախորժելով ստանան զայն ի կործանումն ստացաւղաց նոցա եւ լսաւղաց. զի եթէ Նեստորիոս վերացաւ յամենայն եկեղեցեաց՝ զիա՞րդ Թէոդորն(2), գիրքն եւ ուսումն ընդունելի իցէ որք զնոյն միտս եւ վնասակարութիւն ունին։ Զայնպիսիսն գիտասջիք, զի են նոքա սուտ մարգարէք, մշակք նենգաւորք, կերպարանեալ կերպարանաւք պաշտաւնէից Քրիստոսի. յայնպիսեացն ըզգուշասջիք, եւ նզովեալս համարեսջիք. եւ մի՛ ընդունիցիք զսուտ համբաւս նոցա զոր բերեն առ ձեզ ի կողմանցն արեւելեայց։ Այլ ես թէպէտ եւ խոնարհ եւ զձուձ եմ քան զամենայն մարդիկ, սակայն վասն փրկութեան ձերոյ հոգալ ոչ դադարիմ։ Եւ ես երկնչիմ գուցէ զոք շարժիցէ ի ձէնջ պատրանք մոլորութեանն. եդի զայս վկայութիւն առաջի Աստուծոյ եւ Յիսուսի Քրիստոսի եւ սրբոյ Հոգւոյն եւ ընդրելոց հրեշտակաց։ Արդ ձեր է գիտել, զի ոչ ունի պատճառս յաւուրն յայնմ, որ երթայցեն զկնի մոլորութեանն։ Այլ դուք զգուշացարուք անձանց եւ ընկերաց ապրել ի մոլորութենէ եւ ի պատրանաց վրիպելոցն, լինել պատճառք կենաց եւ առաջնորդք ժառանգութեան գոգոյն Աբրահամու եւ բնակիչք արքայութեանն երկնից։ Ողջ լերուք Տէրամբ ամենայն սիրելիք նորա, սուրբ ծառայք Քրիստոսի։

------

(1) տպ. Դիոդորի։ (2) տպ. Դիոդորն։

---------

ԺԱ

## ՀԱՒԱՏԱՐՄԱԳՈՒՆՆԻ ԵՒ ԻՄԱՍՏՆԱԳՈՒՆՆԻ ԵՒ ԱՍՏՈՒԱԾԱՍԻՐԱԳՈՒՆՆԻ ԵՂԲԱՒՐ՝ ՈՂՈՐՄԵԼԻՍ ՊԵՏՐՈՍ(1) ՏԵՐԱՄԲ ԽՆԴԱԼ։

-------

Աւրհնեալ է Աստուած՝ որ ամենայն բարւոյ տուիչն է, եւ ամենայն կատարեալ պարգեւաց լըցուցիչն եւ պահաւղն, ըստ գրեցելումն, որ ետ իմաստութիւն մարդոյ՝ խնդրել զինքն եւ հաւատոյ աչաւք հասանել, եւ հաստատութեամբ ի նմա կալ մնալ յուսով կենացն յաւիտենականաց, զոր խոստացաւ անսուտն Աստուած, ըստ որում ասէ աստուածայինն առաքեալ· Յառաջ քան զժամանակն յաւիտենից, բայց յայտնեաց այժմ ի ձեռն յայտնութեան Միածնի Որդւոյն իւրոյ Յիսուսի Քրիստոսի Տեառն մերոյ։ Աւրհնեալ է Աստուած որ ետ մեզ ուրախութիւն կատարեալ հոգեւորական առ միմեանս՝ սիրովն եւ հաւատովք ուղղափառութեան, զոր սիրեցեր ի մանկութենէ՝ եւ սննդակից քեզ արարեր· եւ ամենեցուն մեզ առաւել նախապատիւ՝ Ո՛վ Աստուատասէրդ ըստ իմաստնական Սողոմոնի խրատտուութեան։ Եւ վկայէ բանիցս այսոցիկ յառաջեալ քո վարքն, եւ վկայեն այժմուքս իրք· քանզի ի բացուստ լինելդ քեզ ի նոյն նախանձ եւ յուղղափառ տարփաւղացն ի միջի Թողանիլ, յորոց ոչ նմանապէս զայս սիրողաց եւ նմին ունել զգուշութիւն եւ համարձակութիւն։ Այս զաննմանի քո ցանկութեանն առ Աստուած բերէ ճշմարիտ նշանակ եւ զհաստատութեան առ աւետարանն՝ յորում պարտ է կալ մեզ պինդ եղեալս եւ անշարժս· ըստ որում ասէ Աստուածային գիրն· պատրաստ միշտ առ պատասխանատրութիւնս ամենայնի որ խնդրիցէ ի մէնջ բան յաղագս որ ի մեզ ուղղափառութեան հաւատոյն· այլ հանդերձ հեզութեամբ ցուցեալք։ Զի ոչ յաղագս փոքունց մեզ է հանդէսս, եւ ոչ յաղագս դիւրաբար արհամարհիլ կարացելոց, այլ յաղագս տիրականագունին՝ որոց ի մարդիկ բարեաց, եւ առանց որոյ անկարելի՛ է ապրել։

Քանզի Առանց հաւատոյ, ըստ գրեցելումն, անհնար է հաճոյ լինել Աստուծոյ։ Բայց գիտեմք զի եւ հոգեւոր իմաստութեամբն՝ մեծատուն է քո կատարելութիւնդ, եւ ոչ եւս աշխատեսցի առ ի ցուցումն ուղիղ եւ ճշմարիտ բանին, ունելով մարտակից՝ նախ առաջին զԱստուածային շնորհն, եւ առ այսուիկ եւս զսրբոց հարանցն խոստովանութիւն, զոր իբրեւ զխարիսխ ունիցիմք, զգուշաւոր եւ հաստատուն առ ի հերձուածոցն առարկուածս, որոց զաւրէն յանդուգն ալեաց ի վերայ եկելոց ընդդիմասցուք· տրտմեալք ի վերայ ըստ ժամու ժամու անտեղաբար շարժմանց ընդդէմ ուղիղ հաւատոյ։ Եւ սակայն ոչ աւտար կարծեցեալք, յաղագս յառաջագոյն լսելոյն յաստուածային գրոց հանդերձեալ լինել հերձուածս, զի ընդիրքն երեւելիք լինիցին պայծառացեալք լուսով բարեպաշտութեանն իբրեւ զլուսաւորս յաշխարհի, բան կենաց ունելով ըստ պատկերի առաջնոցն հաւատովք հաճոյացելոց, զոր Թուէ մեզ աստուածայինն առաք-

-------

Բնագիր Ա· էջ 99 - 107։

(1) Անտիոքացի։ Տես, Վանատուր· էջ 80 - 81։

եալ, սակաւս ըստ Թուոյն ի մէջ բազմութեանն
անչափի. եւ ազգաց յաւիտեանց։ Բայց մեծս եւ ա-
ռաւելս վասն առաքինութեանն եւ առ ի յԱստու-
ծոյ պատուոյն, եւ զգալի զստացուածս զայսոսիկ
յաղթութեամբըն, քանզի ասէ գիր. Զորս ոչ արժէ
աշխարհ. վասն զի ճշմարտութեամբ ոչ ի բազմու-
թենէ կերպարանաց բարեպաշտութիւն, այլ ի պաշ-
տամանցն ճշմարտութենէ. եւ առ պաշտաւենն փու-
թո՛յ եւ յարակայութեան՝ ցուցանելով զառ ի
Տէրն սէր։

Քանզի հաւատոյն փրկական եւ ինքն ծնաւ-
ղացն մերոց բազում անգամ լինի պարգեւ դեռ
եւս մեզ տղայոց երեւեցեալ։ Իսկ առ Տէրն ցան-
կութիւն՝ յետոյ ի վերայ եղեալ առանձինն իւրա-
քանչիւրում գործէ զկատարելութիւն, բաժանելով
զփոյթն ի յուղացելոյն, եւ զճշմարիտ հաւատաց-
եալն ի լոկ եւ ի միայն եւ յանպտուղ անուանն ու-
նաւղէ. ապա ուրեմն թէեւ Թողանին յԱստուծոյ՝
փորձութիւնք լինել, եւ հերձուածոցն զանազան-
մունք վասն այնորիկ Թողանին, զի ընդիրքն՝ ե-
րեւելիք լիցին, արժանիք եղեալք հանդերձելոցն
նոցա տուելոց պսակացն՝ յերանելում եւ յանմահ
կեանսն։ Այլ վասն զի մեզ եւ արթնոց պէտք են
խորհրդոց բարեպաշտից եւ փութոց, քանզի անցա-
նեմք ընդ մէջ որոգայթից ըստ առակողին, եւ ի
վերայ մահարձանաց գնամք, անընդհատ մեզ պէտք
են աղաւթից առ ի պահիլ ի հզաւրացն ձեռանէն,
որպէս զի մի յեղեալ անկցուք ի վարս պեղծս եւ
կամ ի չարահաւատութեան մեղադրութիւն։ Եւ որ-
չափ մեծագոյն այժմ հաւատոյ ընդդէմ աճեաց
զայթակղութիւնն, այսչափ պնդագոյնս զարթուցա-
ցանել զմեզ պարտ է առ ի պահպանութիւն եւ ի
փոյթ Աստուածայնոցն աղանդոց, մի՛ գուցէ եթէ



գաղտնաբար զմեզ չարահաւատութեանն նետք վի-
րաւորեսցեն։

Արդ յառաջնումն յորժամ եկեղեցեաց խա-
ղաղութիւն քաղաքավարիւր եւ զատեալք էին գայ-
թակղութիւնքն, ոչինչ մեզ վնաս էր պարզամտու-
թիւն բաւական եղելոյ խաղաղութեանն սրբոց ե-
կեղեցեաց ի զգուշութիւն իւրաքանչիւրում տալ։
Իսկ այժմ վասն զի.վնաս ի ներքս եղեւ եկեղեցւոյ
եւ կալաւ ամենայն ուրեք, սկսեալ ի Նեստորի մո-
լորութենէն եւ հաստատեալ ի Քաղկեդոնի ժողո-
վին, վասն այսորիկ ցայժմ ոչ պարզամտութեան
մեզ պէտք են, այլ իմանող սրտի. քանզի գրեալ
է, Զամենայն ինչ փորձեցէք, եւ զբարին ընկալա-
րուք։ Քանզի այսպէս ճշմարտութեամբ բարին՝
եղիցի ի բարի, յորժամ անխառն իցէ ի չարէ։ Եւ
զի զայս ո՛չ ընդունայն ասեմք. այլ ծածկեաց ճըշ-
մարտապէս մոլորութեամբ զեկեղեցիս Քաղկեդոնի
ժողովն. եւ զվաղուցն դատապարտեալ Նեստորի ա-
ղանդն՝ ի նմա հաստատեաց. ոչ է դժուարին ցու-
ցանել ի յեդելոց, որոց ի նմին իսկ ի ժողովին
կացելոց բանիցն, եւ յորոց Նեստորի եւ յորոց
միախորհ նմա աղանդոցն, սոցա զհամաձայնութիւն
յանդիմանողաց մեր՝ եւ զնորին մտաց զիմացուած։
Իսկ զսրբոցն հարանց մերոց զընդդէմ սոցա կռիւ,
եւ զ՝ի բաց շրջումն զԱթանասի ասեմ զմեծին, եւ
զՅուլիոսին զՀռովմայեցւոց առաջնորդին, եւ ըզ-
Բարսղի զիմաստնոյն, եւ զսքանչելեացն Գրիգո-
րանց, եւ զՅովհաննու, եւ զԿիւրղի յաղագս հաւա-
տոց ճգնեցելոցն եւ զայլոց զամենեցուն, որք մեզ
զկնի առաքելոցն առաջնորդք փրկութեան եղեն։
Ոմանք առ Յ. եւ ԺԸ. ից սրբոց հարցն ժողովոյ
պայծառացեալք. իսկ ոմանց զկնի յայլ ժողովս,
այլ զի ըստ մասին առնուլ յաղագս այսոցիկ՝ եր-

կայնագունից է բանից։

Եւ ունի քո աստուածսիրութիւնդ զամենապատուականին եւ զերանելւոյ հաւրն մերոյ Տիմոթէի զգիրս, որ ընդդէմ Քաղկեդոնի ժողովին, յանդիմանելով զայս ամենայն յայտնապէս. յաղագս այսորիկ զայլն ամենայն թողեալ՝ միոյ որպէս գլխաւորի յիշեցից ժողովականի նորա՝ քան ամենեցուն։ Սուրբ հարքն մեր զտնաւրէնութեան եւ զմարմնանալոյն Աստուծոյ Բանին զանասելին պատմելով բան, մի ասացին հաւատալ պարտ է, եւ խոստովանել զԱստուծոյ Բանին բնութիւն զմարմնացելոյն կատարելապէս, եւ ոչ երկուս բնութիւնս կամ երկուս ներգործութիւնս, ըստ որում եւ յայնժամ ոմանց թուէր հերձուածողաց, զի մի՝ երկաւորութիւն որդոց՝ ի ներքս ածիցեմք։ Որպէս ոչ եղեւ ի մարմնանալոյ Միածնին յաւելուած Որդւոյ. ո՛չ ընկալելոյ Աստուծոյ Բանին, այլ ունայնացելոյ թափեցելոյ զինքն անյեղաբար յաղքատութեան չափս. կցորդութիւն առեալ մարմնոյ եւ արեան յԱստուածածին Մարիամայ. ըստ որում ասէ առաքեալ մերձաւորութեամբ մեզ եւ իմանալի անձին, զի ըստ ամենայնի զառ ի մեզ նմանութիւն ցուցցէ յինքեան ճշմարիտ առանց մեղաց մնացեալ, որպէս եւ էրն Աստուած Բանն, նորոգելով յինքեան զմեր բնութիւնն յաղագս առ մեզ ազգակցութեան հնարաբար ունաւղացս մեզ լինել վասն զաւրացելոց մեղացն, եւ զյարութեանն յոյս պարգեւելով՝ որոց զնմանէ ա՛ռ մարմին ի վեր քան զապականութիւն եւ զմահ եղեալ վասն տնաւրէնութեան։

Իսկ Աստուածաբար զմեզ ապրեցուցանելով վասն բնական իւրոյ անչարչարական բնութեանն եւ իշխանութեանն։ Քանզի անփոփոխելի ոչինչ



նուազ եւ անայլայլելի մնայ, ըստ որում ինքն է եւ եղեալ մարդ։ Քանզի ա՛յս է մեծ բարեպաշտութեան խորհուրդն, որպէս զի մեզ, մի եւ զնոյն խոստովանել՝ եւ յորս սքանչելագործէն՝ եւ յորս չարչարին, եւ զխոնարհութեանցն կրէ, ունելով ի մարմնանալոյն զպատճառս խոնարհութեան։ Իսկ որք ի Քաղկեդոնի ժողովին՝ երկուս բնութիւնս ներգործել ի Քրիստոսի կամի առանձնակի, եւ ըստ մասին միոյն զխոնարհականսն խաւսեցելոյ, իսկ միւսոյն զԱստուածայինսն գործաւղի. եւ զայս բան ամենայն գործեցելովքն ի նա զդիմացն երկաւորութեան գաղտնաբար ի ներքս ածեալ աղանդ՝ պարկեշտական ձայնի բնութեանցն. զի ստուարացեալ եղիցի վնասն։ Եւ բազում անգամ զի եւ յայտնապէս իսկ զայս խաւսին կերպարանաց ներգործութիւնս, եւ երկուց ոմանց հաղորդութիւնս ի ներքս ածեալք, եւ ոչ որպէս յաղագս միոյ ուրուք Տեառն խաւսեցեալք, այլ որպէս յաղագս երկուց չարամանեցելոց միմեանց պատւոյ եւ անփառութեան, եւ այլոց ամենեցունց, ըստ որում եթէ ոք թողացուսցէ ճշմարիտ լինել՝ որչափ ի նոսա եկն, ոչինչ եղիցի աւտար եւ կամ զարմացման արժանի տնաւրէնութիւնն Տեառն։ Այլ եւ ոչ թափման ճշմարտապէս, եւ ոչ խոնարհութեան համբերեալ երեւեսցի Աստուծոյ Բանն, եւ ոչ Հաւր զՄիածին Որդին իւր յաղագս մարդկան փրկութեան տուեալ, ա՛յլ եւ ոչ փառաց Տէր լինել խաչեցեալն։

Զի թէ զխոնարհականսն մարդկային բնութիւնն ըստ ինքեան ներգործէր, իսկ Բանին դարձեալ ըստ ինքեան զԱստուածայինսն գործաւղի, որ-

պէս ոչ սրբոց հարցն մերոց եւ ոչ կչռող բանի
ճշմարիտ թուեցաւ լինել բնութեամբն՝ ընկալեալ
Աստուած Բանին զմարդեղութիւնն. եւ ա՛յսպէս
իւր անձինն արարեալ զչնչական մարմինն որպէս
իւրաքանչիւրում մարդոյ առանձին իւր մարմինն։
Զի այսպէս ամենայնի միոյ դիմաց անբաժանաբար
վերագրեսցի, եւ միում էացելոյ Աստուծոյ Բա-
նին մարմնացելոյ։ Իսկ որք յառաջ ասացելոյ ըն-
դունայնաբանութեան զհետ երթեալք, բովանդակ
կոչելում տումարին համաձայնութեամբ նմա ա-
րարին արտադրեցին սահման հաւատոյ, յորում եւ
յայտնապէս ընդդէմ հարցն բերեալք եղեն բարե-
պաշտութեան ի բաց քարոզեալք։

Զոր ասեն մի բնութիւն գոլ Տեառն մերոյ
Յիսուսի Քրիստոսի եւ ոչ երկուս, ոչ պատկառեալք
ոչ ի մերձաւորագունից լուսաւորեցելոց եպիսկո-
պոսաց պատուոյ որպէս ի Կիւրղէ Աղէքսանդրաց-
ւոյն ասեմ, եւ յԱկակայ, որ ի Հայոց աշխարհին
քահանայապետ եղելոյ, եւ ոչ յորոց Կիւրեղ նոյն
յորս առ Սեկունդոս եւ Վաղերիանոս թուղթսն, եւ
ոչ միայն յաշխատացելումն, յորում վերագրեալն
է, թէ մի է Քրիստոս, զյաղագս այսոցիկն ար-
տադրէ բան, եթէ պարտ է մեզ ասելով մի բնու-
թիւն զԱստուծոյ բանին մարմնացելոյ խոստո-
վանել՝ եւ ոչ երկուս բնութիւնս ի ճշմարիտ միու-
թիւն երկաւորութեան բան ոչ մնացելոց։

Իսկ Ակակ միւսն, յորում առ Անդրէաս աշ-
խատութիւնսն, յորում առ երանելին Կիւրղի թըղ-
թի, զնոյն ունի բան. եւ զի եւ այլոց բազմաց
եպիսկոպոսաց են յաղագս այսոցիկ պէտք, գիտէ
քո իմաստութիւնդ յառաջասացելոց գրոցն երա-
նելոյն Տիմոթէոսի։ Բայց ուստի որք քաղկեդո-
նացւոց ժողովն յայսոսիկ յառաջ եկին ի բանս՝



Թէոդորիտոս, եւ Իբաս առաջնորդք նոցա, որք
Նեստորի խորհրդակիցք էին համախորհուրդք, եւ
զուգութեան նորա լուծման յեպիսկոպոսութենէն
հասեալք, եւս առաւել եթէ նորին նզո՛վից որք
մնացեալք եղեն մինչեւ ի Քաղկեդոնի ժողովն առ
ի բազմաց վնաս. զի եւ յայլ փոխադրեսցեն յըն-
տանեկան մոլորութենէն, եւ որպէս բազմաց հաւա-
տարմացուցին զմեզ բանք. եթէ կենդանի եւս էր
Նեստոր յաքսորն մինչդեռ ժողովին ժողովեցելոյ,
եւ առաքեցան վերստին ածաւղք զնա Մագիս-
տրիանոսք հանդերձ բազում պատուով, եւ ուսեալ
զայս Նեստորի պարծէր ի վերայ Աստուածածնին,
որպէս թէ արդարապէս ոչ(1) արժանի արարեալ
զնա այսմ անուանակոչութեան թէ չէր Աստուա-
ծածին Մարիամ, ասէր։ Եւ ասաց հայհոյութիւն ի
բարկութեան Աստուծոյ, արդարապէս վայել է ի
լեզուն յորմէ յառաջ զհայհոյութիւնն եբեր, քան-
զի լուծելոց՝ որք ի ներքուստ ունաւղաց անդա-
մոցն երկայնացեալ բազում յատամանց արտաքս
վազեաց. եւ վիրաւոր ի ժանտահոտ թարախով՝
բղխեցելոյ որդանց բազմութեան, եւ այս աւրի-
նակաւ թշնամանելի մատնեալ մահու՝ արգելաւ
աթոռակից ժողովոյն։ Եւ այս առաւել յայտնի
ի վերայ ամպարշտութեանն լինի, որպէս զի մի
այնոցիկ որ զնորայն իմանան ընդդիմաբանու-
թեան տեղի թողցի, զոր իմացեալ որք զոյգ նորա
չարահաւատութեան էին՝ առ մին միայն հայեց-
եալք, եթէ ո՞րպէս զիւրեանց աղանդսն հաստա-
տել կարասցեն, եւ եկեղեցեաց սերմանել։ Խորհին
այնուհետեւ զնա նզովել, առ ի խաբէութիւն պար-
զամտաց, զի զիւրեանցն ի ներքս ածելով հեր-

------

(1) Տպ. որ։

ձուածս՝ ոչ մի ինչ վնաս կրել կարծեցեալք յիւրեանց աղանդն ի նորա երեսացն մերժմանէ. եւ վասն այնր բանի՝ ի նմին իսկ ժողովին՝ զայրն հայհոյեալք՝ զնորին հերձուածս հաստատեցին։

Արդ ո՞ց բարի խորհաւղաց ոչ ընդրելի է ի նոցա փախչել հաղորդութենէ, թէ եւ հարկ լիցի ի բիւր ըմբռնել չարիս։ Քանզի գրեալ է. Ո՞վ մեկնեսցէ զմեզ ի սիրոյն Քրիստոսի, նեղութիւն թէ անձկութիւն, եւ որ զկնի այսոցիկ։ Ապա թէ ոք ասիցէ յաղագս պիտոյից Եւտիքեայ աղանդոյն, ուրացողին զԱստուծոյն ճշմարիտ մարմնանալն, ա՛յսպէս հարկաւորութեամբ չարագրելն զտումարըն, բազում այսպիսին պարտական է անմտութեան, քան զի զոր աւրինակ բժշկաց՝ մանգունք, յորժամ հիւանդացելոց անդամոց հոգ տարցին, ո՛չ է հարկ զիւրեանցսն վիրաւորել մարմինս՝ զի այլոց առողջութիւն տայցեն։ Քանզի զի՞նչ աւգուտ է հիւանդացելումն յընկերին վիրաց, այլ պիտանացուաւք վարիլ դեղովքն յաւգնականութիւն հիւանդին։ Այսպէս եւ ոչ սոցա հարկ էր ըմբռնիլ յաղանդից՝ ի բաց դառնալ կամեցելոց զմիւսն, այլ որպէս կարգաւոր է ուղիղ համառաւտաւղաց զբանն ճշմարտութեան. դադարեցուցանելով զնա ի մոլորութենէն, զի լցեալ են Աստուածային գիրք, եւ լիք եւ սրբոց հարցն շարագրութիւնք, առողջ եւ փրկական բանիւք, յորոց է դիւրաբար զամենայն հերձուածողս յանդիմանել։ Այլ որպէս յառաջեալ ասացաք, մի եղեւ սոցա փոյթ եւ ոչ այլ ինչ զիւրեանց հերձուածսն աղանդել՝ ժամանակ գտեալք ի հաստատութիւն այսոցիկ. զի աւգնականութիւն այնորիկ որ յայնժամ առ ժողովն Քաղկեդոնի բոլոր իրաց իշխէր, որ յոյժ ջերմութեամբ յարեալ ի Նեստորի աղանդն։



Այլ վասն զի բազումք առ պատասխանատուութիւն ասացելոցս չարեացս՝ վասն գիտութիւն եղելոցս՝ առաջի արկանեն. եւ այլք դարձեալ ըզդատապարտութիւն չարեացս մինչեւ ի յանցուցեալսն որոշեն, եւ ոչ մի ինչ զինքեան ասացեալ վնաս կրել յայլոց յանցանացն, հարկ եղեւ զնոցա զանմտութիւնն՝ քում Աստուածսիրութեանդ՝ յաղագս անմեղացն ուղղութեան, ցուցանելով նոցա յիւրեանց յանդգնութենէն զվնաս։ Քանզի նախ առաջին ոչ յանուրջս եղեն չարիքս, եւ ոչ սակաւուց մարդոց զի մի մոռասցի եղեալս, այլ ի մեծագունին եւ ի պայծառագունին քաղաքին, եւ յայսչափ եպիսկոպոսաց՝ գրեթէ յամենայն աշխարհաց ժողովելոց, որպէս զի մի՛ ինչ ի գործելոցն անլուր լինել հաւատարիմ եպիսկոպոսացն՝ հեծելով զեղեալն, եւ բռնութեամբ յայնժամ ունաւղացն զչարիսն վերագրելոցն։ Բայց եւս եւ այսպէս՝ եւ ոչ լռութեան իսկ իրքս մատնեցելոցն ընդդէմ ասեմ, եւ ի նմին իսկ ի Թագաւորական քաղաքին, եւ յայլս երեւելիս քաղաքս ժողովրդոց պատրաստաբար միշտ զժողովն զայն նզովաւղաց, յորժամ ըզփոքր ինչ պատճառաց բուռն հարցեն. զի ամենայն իրաւք եւ զայս գիտացեալք, զի եւ ի բաց եւ քաղաքավարութեան չարիք՝ եւ խտրութիւնք պատերազմաց անդուստ զսկիզբն առին, որպէս զի եւ զառաջինն զայն՝ զԹագաւորականն զՀռովմայեցւոց՝ յորմէ կոչեցեալ տումարն առաքեցաւ՝ չարեաց զփորձ առնուլ։ Քանզի ի ժամանակէն յայնմանէ առանց Թագաւորի եւ բազմառիկ եղեալ եւ կցորդութիւն ընկալան, ոչինչ նուազ եւ այլ քաղաք չարեաց՝ որպէս զի ժամ լինել Տեառն ձայնին ասացելոց. Հանդերձեալ էք, ասէ, լսել պատերազմունս եւ համբաւս պատերազմաց. քանզի որ-

*պէս ի վերայ զգուշաւոր ամրութեան զաւրաւորի որ առ դաւաճանութիւն թշնամւոյն է յորժամ ի ներքուստ բնակաւղացն՝ մասն ինչ ի սմանէ հատցի դիւրելակ թշնամեացն առնէ զելն, եւ փոքր մի սորա ի վերա ելեալք մինչեւ ի կատարեալ առումն։*

*Այսպէս են ուղիղ հաւատոյն մատնեցելոյ, որ քան զամենայն է զգուշութիւն, եւ մերոց անձանց եւ այլոց իրաց պահպանաւղ, ճանապարհ եգիտ թշնամին առ ի մեզ, եւ ի հասարակաց իսկ նենգութեան, եւ վասն այսորիկ ամենայն ուրեք խռովութիւնս ծաւալեցոյց։ Այլ զայս եւս խորհիլ պարտ է, զի Տեառն ասացեալ է անորոշաբար՝ եթէ Որ ոչ է ընդ իս՝ հակառակ իմ է. հարկ է ամենայնի ընդ այնոսիկ կարգիլ, ընդ որս եւ հաղորդութիւն ունին թէ գիտիցէ եւ թէ ոչ գիտիցէ։ Քանզի որպէս որք ուղղափառութեան հաւատոյն են գլուխ, եւ փրկիչ ունելով իւրեանց զՏէրն, միմեանց անդամք յայտնին շաղկապաւ հաւատովն եւ սրբոյ Հոգւոյ զաւրութեամբ՝ որչափք եւ իցեն, կամ թէ ուր եւ վարեցին. կամ որ չափում հասակի, այսպէս եւ ի վերայ առանց ուղիղ հաւատոյն հարկ է ընտրել, եւ որպէս ի վերայ այլոց հերձուածոյն դատիմք. եւ մանաւանդ զի բիւրացելոց ի նոսա անգիտից զհերձուածոցն չարութիւն. կամի այսուհետեւ զմեզ բանն ճշմարտութեանս ստոյգ լինել եւ արթունս, ըստ որում յառաջագոյն ասացաք յաղագս ուղղափառ հաւատոյ։ Վասն զի չարիքն ոչ մինչեւ յարարաւղսն հաստին՝ այլեւյայլս տարեալ լինին, որք նոցա հաղորդութեանն կցորդ եղեալք, յաղագս միաւորութեան բանին, զոր պարտ է մեզ առ միմեանս ունել՝ որք ի նոյն պատարագս վայելեմք։*



*Զայսոսիկ գիտացեալք, մանաւանդ թէ ուսեալք յԱստուածաշունչ գրոց, ի հարցն վարդապետութեանց՝ ի ձեռն Աստուծոյ մարտակցութեանն պահեսցուք զմեզ, ոչ եղեալք հաղորդ պատրանաց այսոցիկ, այլ աղաւթելով զսուրբ հաւատն անբիծ պահել եւ անշաղախ մինչեւ ի գալուստն Տեառն, որում սպասեսցուք. ոչինչ մեծ կարացեալք զմերձակայսս։ Քանզի անցցէ ձեւ աշխարհիս այսորիկ, իբրեւ զտաղաւար լուծեալ, յորժամ ճշմարտութիւնն՝ առ միշտ հաստատուն կացեալսն մերձեսցի, յորժամ երանելի եղիցի ուղղափառութեան հաւատովն, Որդին Աստուծոյ եկեալ երեւեսցի գլտցէ զնա, եւ ամբիծ վարուք, յորս եւ զքոյդ աղաւթեմք եւ հաւատամք լինել Աստուածսիրութիւն՝ համբերութեամբ առ նա սիրովն, եւ այսու առ Աստուած սէրն, ասէ Աստուածաբանն Յովհաննէս, զի ըստ պատուիրանաց նորա գնասցուք։ Քանզի բազում սուտ մարգարէք ելին յաշխարհ, ոմանք ուրացեալք, մարմին համագոյական առնուլ մեզ ընդ Տեառնն՝ որպիսի լինել ասեն զԵւտիքոսի տգիտի. իսկ ոմանք բնութեան երկաւորութիւն, երկուս բնութիւնս առանձինն գործով ներգործել ի Քրիստոս, ասացեալ, երկաքանաչիւրոցն առանձնակի եւ կատարելապէս զընտանեկան գործաւղաց, որ է բաժանումն անասելի Աստուծոյ Բանին, որպիսիս լինել ասացաք զորս ի Քաղկեդոնին, եւ որք յարեւելս ցարդ եւս եպիսկոպոսք պնդաբար աւգնական են նորոգաձեւութեան այսպիսեացս աղանդից։*

*Քանզի ուսաք եւ որ ի Մծբին զաթոռն ունի եպիսկոպոսութեան՝ յայտնապէս զՆեստորին զովել անամաւթաբար զամպարշտութիւն զգայռելով. յորոց մեզ ի բաց կալ բովանդակ ամենայն իրաւք. եւ որչափ է զաւրութիւն, քանզի ասէ գիր. Ելէք ի մի-*

ջոյ նոցա եւ մեկնեցարուք, եւ ի պիղծս մի՛ մերձենայք, եւ ես ընկալայց զձեզ։ Բայց դու ո՞վ Աստուածասէրդ՝ յայսոսիկ յառաջատեա՛, եւ որք քեզն հաւանին, բարի խորհելով պահեա՛, եւ զոր անխըտրաբար ամենեցուն հաղորդել յանձին ունին՝ յորում եւ իցեն յերկրի․ քանզի նմին ամբաստանութեան եւ սոքա արժանիք են, որոց եւ յանցուցեալք են, զի կատարեալ զհամբերութեան վարձն քո ի բաց առցես։ Քանզի ինքն ասաց ի ձեռն մարգարէին․ Կա՛ց մնա՛ ինձ յաւուրն յանդիմանութեան իմոյ․ աղաչեա՛ զՏէր, եւ զմեզ զամենայն ուղղափառս՝ պահել ի յուսացելումս յա՛յսմիկ յերանելի հաւատիս, եւ հոգալ պիտանացու վարուց՝ զի արժանի լիցուք հասարակաբար ընդ սուրբս հասանել ողորմութեանն Աստուծոյ՝ սուրբ զառ ի նա պաշտաւնն պահեցեալք․ ամէն։

Եւ զմեզ տառապեալքս, որ գրեցաք զայդ, յիշելոյ արժանի արարէք, ո՛ ոք եւ կարդասցէ․ եւ եթէ ոք ի մէնջ կոչեսցէ՝ պատրաստ եմք վասն նորին հաւատոյ պատասխանի առնել, եւ եթէ իցէ յումեք ճշմարիտ նախանձ հաւատոյն Քրիստոսի՝ յայտ արարէք՝ կարդալով զԹուղթդ զայդ, եւ մի՛ լոկ պարծեսցի Քրիստոնեայ լինել, զի ոչ բանիւք արքայութիւնն Աստուծոյ, այլ գործով։

Զամենանուաստ եւ զանպիտանս զԹումաս,
եւ զծնաւղսն իմ, յիշեցէք ի սուրբ աղաւթս ձեր,
ո՜վ դասք ուղղափառաց:



# ԺԱ

## ԱՌԱՋԻՆ ԹՈՒՂԹ ՊԵՏՐՈՍԻ ԱՌ ԱԿԱԿ

ԹՈՒՂԹ ԱՌԱՋԻՆ, ՊԵՏՐՈՍԻ ՊԱՏՐԻԱՐԳԻ ԱՂԷԿՍԱՆԴՐԱՑՈՑ, ԶՈՐ ԳՐԵԱՑ ԱՌ ԱԿԱԿ Ի ԿՈՍՏԱՆԴԻՆՈՒՊՕԼԻՍ ՎԱՍՆ ՄԻԱՒՈՐՈՒԹԵԱՆ. ԳՐԵՑԱՒ ԱՌԱՋԻՆ ԹՈՒԽԹ ԽՈՐՀՐԴԻՒ:

Երանելին Յուլիանէ սարկաւագն իմ եկն ի գիշերի առ իս կրսեր Պետրոս պատրիարգ աղէկսանդրացոց, եւ ունէր ի ձեռին սուրբ զաւետարանիչսն, ուր էր թագուցեալ ի փոքր մի սենեկի վասն ահին եւ հալածանացն անողորմ արքային Զենոնի, եւ խօսեցաւ ընդ իս զբանս զայսոսիկ, եթէ մինչ դեռ ի Կոստանդինուպօլիս շրջէի վասն իրաց իմոց, Ակակ հայրապետ եպիսկոպոսաց որ են ի Կոստանդինուպօլիս, զՔրասիարոս զպաշտօնեայ եւ զսենեկապետն իւր առաքեաց տարաւ զիս յեպիսկոպոսարանն ի սենեակն իւր եւ ասէ ցիս․ աղօթե՞ս ընդ իս սարկաւագ Յուլիանէ թէ ոչ։ Եւ ես ասեմ ցնա․ զիարդ մարթի այդմ լինել մինչ չեւ է ուղղափառութիւնն։ Եւ յորժամ ոչ մատուցի ընդ նմա աղօթս, հրամայեաց ինձ նստել, եւ ոչ զոք եթող ի սենեակն, եւ առ ի սնարիցն զսուրբ աւետարանիչսն, եւ երդուաւ ինձ եթէ երթ յԱղէկսանդրիա, եւ

------

Բնագիր Ը․ էջ 309 - 311, քննական։ Հմմտ․ Ա․ էջ 243։

հարց թէ ուր թագուցեալ է տէրն իմ Պետրոս, եւ երդուիր նմա յիմ անձնէ, որպէս ես քեզ այժմ երդնում. եթէ նոյն աւետարանիչքդ գիտեն, եթէ մինչ եկն յաւուրն առ Բաղիսիոս ի Կոստանդինուպօլիս երանելին Տիմոթէոս հայրապետն Աղէկսանդըրի առաքեցի ի տուն Բասիլիսկոսի, ուր էին օթեւանք երանելոյն Տիմոթէոսի զՔրասարիոս պաշտօնեա եւ սենեկապետն իմ, եւ գրեցի ի քարտիսի առ երանելին Տիմոթէոս խնդրուած ձեռնադրութեամբ իմով, եթէ զղջանամ եւ նզովեմ զտումար ամբարշտին Ղեւոնի, զերկուս բնութիւնսն ասացողըն որոշաբար, եւ զԵւտիքոս եւ զամենայն հերետիկոսս։

Եւթօգտիարէ որոյ յայնժամ մագիստռոս էր, եւ ընդունէր զԵւտիքոս, դիպեցաւ արտաքս ի տանէն Բասիլիսկոսի, եւ յորժամ ետես զպաշտօնեայն իմ զՔրասարիոս, հրամայեաց քննել զնա, եւ մինչ եգիտ առ նա զքարտէսն եւ կարդաց զայն որ նզովեցի ես զտումարն եւ զԵւտիքոս եւ զամենայն հերետիկոսս, զքարտէզն ի նմին ժամու պատառեաց, եւ հրամայեաց զսարկաւագն զան հարկանել։ Եւ եկն առ իս սարկաւագն իմ մինչ զգանն էր արբեալ, եւ զայդ ամենայն ոչ գիտաց երանելին Տիմոթէոս, քանզի ի ներքս էր յեպիսկոպոսարանին իւրում, որպէս ես ուսա ի մանգանէն։

Եւ արդ առաջի Աստուծոյ խնդրուածս մատուցանեմ, եւ պատրաստ եմ ամենեւիմբ զտեառնդ զկամսդ կատարել, եւ նզովեմ զտումարն զայն որ ամբարշտութեամբ զերկուս բնութիւնս խոստովանի բաժանեալս, եւ զամբարիշտն զԵւտիքոս, եւ ընդունիմ զուղիղ հաւատս, թէեւ կարծիք իցեն սրբութեանդ քում թէ նենգութիւն ինչ արարի վասըն քո, որպէս զի գտցիս յարքայէ Զենոնէ, կամ



յԵգնոստեա Ոքսագիոսէ, կամ ի գլխաւորաց աստի կամ ի զինուորաց, կամ ցուցանէր զայր մի զանձն քո։ Բայց նիստ ուր եսդ ի թագստի, եւ հրամայեա ինձ թուղթս առնել առ քեզ գաղտնաբար, ձեռնարկութեամբ իմով, կնքել նշանաւ սուրբ խաչին. նոյնպէս եւ դու գրեա քով ձեռնարկութեամբ, եւ այլ ոք զայդ մի գիտասցէ, բայց միայն Աստուած եւ մեք, եւ այնք որք. պաշտեն զմեզ։ Եթէ եւ կամակիցք լինիմք ընդ միմեանս վասն բանիցս այսոցիկ, զոր ես ընդ ձեզ խօսիմ եւ դու ընդ իս, փառք Աստուծոյ։ Եւ եթէ վասն մեղաց իմոց ոչ լսեմք միմեանց, մի ոք զընկերն մատնեսցէ, բայց նըստցուք յիւրաքանչիւր տեղոջ խաղաղութեամբ։

Եւ ես կրսեր հայրապետ Աղեքսանդրացւոց Պետրոս, մինչ զայս ամենայն երկեա, թէ գուցէ պաշտօնեայն իմ Յուլիանէ կաշառօք խաբեցաւ եւ կամի գիս մատնել, եւ ասեմ ցնա, երդուիր ինձ թէ ոչ գուցէ յիմ նենգութիւն, եւ թէ արդարեւ այնպէս երդուաւ քեզ Ակակ, մինչ առ ի ձեռն իւր զսուրբ աւետարանիչս։ Եւ ասէ ցիս Յուլիանէ, եթէ նոյն աւետարանիչքդ գիտեն, տէր Պետրոս, զի արտասուօք բազմօք ասաց ցիս Ակակ հայրապետ, թէ յորժամ եկն երանելին Տիմոթէոս յայս քաղաք եւ առաքեցի առ նա զՔրասարիոս սարկաւագ եւ սենեկապան իմ ընդ տումարին ընդ այնմ զոր յայնժամ նզովեցի, զոր Օգտիստէն մագիստռոս պատառեաց, եւ զան եհար զսարկաւագն, ապա ի նմին ժամու գոհացա եւ երկեա յերանելոյն Տիմոթէոսէ, եթէ գուցէ ընդ նոսին եւ զիս նզովիցէ. խափանեցի նզովել զտումարն, զի եղիցի միաւորութիւն եկեղեցեաց։ Այլ այժմ զղջանամ եւ նզովեմ զտումարն. նոյն աւետարանիչքդ գիտեն զի այսպէս առաքեաց առ սրբութիւնդ քո։

*Արդ եթէ ոչ կամիցիս ընդունել զԹուխթս իմ եւ քննել զկամս իմ, առաջի ահաւոր բեմին դատեցայց ընդ քեզ, քանզի դու միայն կարող ես բժշկել զաշխարհս ի չարեացն, զոր սերմանեաց սատանա ի մէջ եկեղեցեաց։*

*Եւ մինչ զամենայն զայդ լուա, ես կրսեր Պետրոս, երկեա յոյժ ի դատաստանէն Աստուծոյ, եւ ասեմ ցՅուլիանէ սարկաւագ իմ. Թէ արա ընդ իս հաստատութիւն, եւ մի ոք գիտասցէ զխորհուրդդ զայդ, մինչ կատարեսցին կամքն Աստուծոյ։ Եւ երդուաւ ինձ։ Յայնժամ վստահացա եւ գրեցի Թուխթ իմով ձեռնարկութեամբ, եւ ետու ցՅուլիանէ զնոյն բան զոր ասաց ցիս թէ գրեա քով ձեռնարկութեամբ, եւ արձակեցի զնա եւ ասացի թէ կոչէ զքեզ եւ տա Թուխթ, ի ձեռն մարդոյ որ քոզ հաւատարիմ Թուրի տուր բերել։ Նոյնպէս եւ ես ի նորա ձեռն տամ բերել, եւ երդումն տուր նմա զի նա մի այլ ումեք պատմեսցէ զխորհուրդդ զայդ։*

*Եւ ասէ ցիս սարկաւագն Յուլիանէ եթէ է իմ ծառա որպէս զիս անձն հաւատարիմ. եւ մոյծ զնա յեպիսկոպոսարանն իմ եւ երդմնեցուցի ի սուրբ աւետարանիչսն, եւ հրամայեցի ցսարկաւագն իմ Յուլիանէ, զի նստցի ի Կոստանդինուպօլիս, եւ եղիցի միջնորդ Թղթոցն զոր ես եւ նա գրեմք առ իրեարս ի ձեռն մանգանն իւրոյ Թէոդոսիոսի։ Եւ կացեալ յաղօթս արձակեցի զնա ի նմին ժամու։ Եւ եմուտ ի նաւ, այն որ Աստուծոյ հաճոյ եւ մարդկան գրեաց առ իս փաղփաղակի, եւ զԹուխթն իմ ետու բերել առ քեզ կնքով եւ ի վերոյն չգրեցի, մինչեւ ուսանիմ ի քէն Թէ որպէս են կամք քո առ իս, եւ կնքեցի զԹուխթ իմ խաչիւ ի վերուստ։*

---------



# ԺԲ

## ԵՐԿՐՈՐԴ ԹՈՒՂԹ ՊԵՏՐՈՍԻ ԱՌ ԱԿԱԿ

------

*Պետրոս հայրապետ Աղեքսանդրացւոց առ Ակակ։*

*Յութսուն աւուրց կատարելոց ելանելոյ աստի Յուլիանէ սարկաւագին իմոյ, ետ բերել առ իս Թուղթ ի ձեռն Թէոդոսի մանկան իւրոյ, որ ի ձէնջ գրեցաւ առ իս, եւ մինչ տեսի որպէս գրեալն էր ի վերայ, ոչ առի յանձն բանալ զնա եւ կարդալ՝ վասն գրոյն որ ի վերայն գրեալ էր։ Քանզի գրեալ էր այսպէս. Տացի Թուղթս այս առ երանելի եպիսկոպոս եւ հայրապետն Աղեքսանդրացւոց Պետրոս, յԱկակայ եպիսկոպոսէ, որ է հայրապետ ի Կոստանդնուպաւլիս։ Ո՞ւմ կոչես հայրապետ, ասա՛ ինձ. այն որ յառաջագոյն լի էիր բարկութեամբ ի վերայ նորա։ Քանզի հայրապետ եմ որպէս ասացերն, եթէ կամաւ եւ եթէ ակամայ։ Քանզի Աստուծոյ պահեցի եւ պահեցից զհաւատս իմ եւ ոչ ուրացայ. բայց դու զքեզ զի՞արդ հայրապետ անուանեցեր, եւ ոչ ցաւեաց սիրտ քո թէ ո՞վ ես դու՝ որ այդպիսի չարիւք կործանեցեր զերկիր, զայդ յիշեա՛ ո՛վ մարդ, եւ գիտեա՛ յանձն քո, թէ*

------

*Բնագիր Ա. էջ 244.*

*զամենայն չարժումն հաւատոյս ի ձեռաց քոց խնդրելոց է դատաւորն արդարութեան։ Մինչեւ տեսի զթուղթն զայն որ ի քէն գրեցաւ, ոչ լուծի եւ ոչ կարդացի որ ի ներքս ի քարտիսին գրեալ էր։ Բայց ի նմին ժամու դարձուցի անդրէն քո կնքովն որպէս եւ առ իսն եհաս։*





## ԺԳ

## ԹՈՒՂԹ ԱՌԱՋԻՆ ԱԿԱԿԱՅ ԱՌ ՊԵՏՐՈՍ ՊԱՏՐԻԱՐԳ

*Իմաստունք բժշկաց՝ զանդամս ապականեալս ի ձեռն երկաթոյ սրոյ սովոր են հատանել. նոյն աւրինակ եւ դու, հայր իմ իմաստուն, ի ձեռն հոգեւոր սրոյ հատեր զկամս ամպարշտութեան եւ ցուցեր արդարութեամբ սկիզբն բժշկութեան, վասն այսորիկ եւ ես աւելի եւս վստահացայ. եւ հաւատամ յԱստուած յայն՝ յոր հաւատացեր դու ի նա։ Եթէ զամենայն ցաւս եւ վէրս խղխայթեալս սպեղանաւք կակղաւք աւծցէ ի ձեռն քո եւ ողջացուսցէ Յիսուս Միածին Որդին Աստուծոյ, եւ զաւրացուսցէ եւ կանկնեսցէ զանդամս կոտորեալս եկեղեցւոյ իւրոյ, եւ նորոգեսցէ Տէր Աստուած միւսանգամ ի ձեռն քո, Հայր մեր, զայն հաւատ զոր էր յառաջագոյն, զոր ի մոլորութենէ լեզւոյ իմոյ ուրացայ, եւ անգիտութեամբ նզովեցի զսրբութիւն քո, այժմ զղջանամ եւ դառնամ որպէս յայնժամ Պետրոս գըլուխ առաքելոցն սրբոց, զուրացումն իւր որ եղեւ վասն Քրիստոսի, եւ ի ձեռն տրտմութեան վաղվաղակի դարձաւ։*

*Եւ այժմ խնդրեմ ի քէն, հայր իմ հոգեւոր, եթէ հաղորդութեամբ ընդ ձեզ լինիցիմ, չարչարանաց խնդութեամբ համբերեցից, միայն այս աւ-*

-------

*Բնագիր Ա· էջ 245 - 246.*

տարութիւն բարձցի հարսինն եկեղեցւոյ Քրիստոսի։ Քանզի պարտ է ինձ չարչարանս կրել իմով մարմնով, որպէս եւ գրեալ է, եւ զՔրիստոս չահեցայց, յորմէ ցայժմ զրկեցի զանձն։ Զգեցիր այսու հաւատով, Հայր, զողորմութիւն քաղցրութեան, եւ հեշտալի զառաքելոյն Պաւղոսի, եւ ասա՛ առ մեզ ամենեսեան, Որդեակք իմ, զորս դարձեալ վերստին´երկնեմ մինչեւ նկարեսցի Քրիստոս ի ձեզ։

Այլ բարիոք արարեր, որ ոչ բացեր եւ կարդացեր զառաջին Թուղթն, քանզի որպէս ասացեր, չէր բարիոք գրեալ ի վերայն, բայց ի ներքս այսպէս գրեալ էր։ Ծագեցաւ լոյս ուղղափառութեան, որոց այժմ ծածկեալ էր, եւ լուսաւորեաց որք ի խաւարի եւ ի ստուերս մահու նստէաք. ապա ուրեմն առ մեզ աղաղակէ երանելին Դաւիթ թէ՝ Ամենեքեան խոտորեցան ի միասին եւ անպիտանացան, ոչ ոք է որ առնէ զբարի, եւ չէ ոք մինչեւ ի մի։ Այն որ ասաց թէ՝ բայց մի ասաց մարգարէն, առ ո՛ ասաց, այսինքն առ Աստուծոյ մերոյ։ Բայց թուի ինձ այժմ ասել է վերայ սրբութեան քում, քանզի դու միայն արդարութեամբ պահեցեր զճշմարտութիւն ի մէջ քահանայից. զի ամենայն քահանայք, ըստ բանի Եղիայի մարգարէին, թողաք զԱստուած եւ գնացաք զհետ ամպարիշտ թագաւորաց։ Քանզի ըղլոյս ուղղափառութեան, որ հանապազ լուսաւորէ ի փառս, անպիտանութեամբ փոխեցաք, եւ արդ ի նեղութիւն եւ ի չարչարանս կամք։ Այլ յայտնեա զանձն քո, ճառագայթ ծածկեալ ուղղափառութեան, եւ լուսաւորեա՛ ի վերուստ, որք ի խաւարի եւ ի ստուերս մահու նստէին։ Լապտերդ բազմալոյս ուղղափառ առաքինութեան, լե՛ր նման



Ստեփանոսի առաջին մարտիրոսին, եւ գոչեա՛ առ Աստուած փոխանակ մեր, զի հալածեցաք զքեզ, եւ ասա՛ Հա՛յր, թո՛ղ նոցա, զի ոչ գիտեն զի՛նչ գործեն։



## ԺԴ

## ԵՐՐՈՐԴ ԹՈՒՂԹ ՊԵՏՐՈՍԻ ԱՌ ԱԿԱԿ ՀԱՅՐԱՊԵՏ։

*Պետրոս Հայրապետ Աղեքսանդրացւոց առ Ակակ։ Զգրեալսդ որ ի ձէնջ առ մեզ ետուր բերել, տրտմութիւն ի վերայ տրտմութեանց յաւելին յանձն իմ, քանզի մինչեւ ցայժմ մի տրտմութիւն էր անձին իմոյ, թէ ո՛րպէս արժանացայց հրաժարել յայսմ աշխարհէս ուղղափառութեամբ եւ արդարութեամբ, եւ առից զպսակն ուղղափառութեան, եւ ամբիծ եւ անարատ կացից առաջի ահաւոր բեմբին Աստուծոյ մերոյ Յիսուսի Քրիստոսի։ Այժմ, ո՛վ սիրելի, զի՛նչ կոչեցից զքեզ ոչ գիտեմ, զի ի շղթայս, ուստի ոչ եմ զերծանելոց, փակեցեր զիս։ Եւ արդ զի՛նչ գործեցից ոչ գիտեմ, ննջել ոչ կարեմ, քանզի ոչ եմ ննջաւոր Քրիստոսի։ Տրտմութիւն որ եղեւ ձեզ, ձեր կամաւորութեամբ, բժշկել չեմ արժանի, քանզի ԼԱ ամ զհաւտոն Քրիստոսի անողորմաբար սպանէք անհաւատութեամբ ձերով, զի որք ոչն եղեն ձեզ կամակից, զնոսա սրով եւ ազգի ազգի չարչարանաւք ամպարիշտ թագաւորացն զրկեցէք յայսմ կենաց, եւ զգեղեցկութիւն եկեղեցւոյն, որում փոխանակ Քրիստոսն մեռաւ, մինչ էրն ընդ Հաւրն եւ առ Հաւր՝ ուրացայք, եւ ձեռնարկութեամբ տումարին Լեւոնի ապականեցէք, երկու բաժանեալ բնութեամբքն,*

------

*Բնագիր Ա· էջ 247 - 248։ Հմմտ· ԺԷ, էջ 473։*



*նմանելով առիւծոյ անողորմի, եւ որպէս կերակուր յատամունս ձեր զհաւտոն աւձտեալ պատառեցէք։ Քանզի բաժանեցէք ամպարշտութեամբ ձերով զանբաժանելին Աստուած։ Եւ արդ՝ զի՛նչ գործեցից ոչ գիտեմ· զի տրտմութիւնդ ձեր, որ եղեւ կամաւորութեամբ, բժշկել ոչ կարեմ, քանզի այր մի մեղաւոր եմ ես եւ մահկանացու, բայց խնդրուածս մատուցէք Աստուծոյ, յորմէ ուրացարուքն, եւ մի դադարէք, որպէս զի դարձցի եւ ողորմեսցի եւ փրկեսցէ զձեզ։*

*Սո՛ւգ առցեն ընդ մեզ ամենայն դասք սրբոցն։ Սո՛ւգ առցեն ընդ մեզ բազմութիւնք երկնաւորացըն, զի մերկացաք զփառս նոցա։ Սո՛ւգ առցէ ընդ մեզ եւ դրախտն, որ վասն մեր տնկեցաւ, այն որ ոչ ընդունի զմեզ վասն մերոյ թերահաւատութեան։ Սո՛ւգ առցէ արեգակն, այն որ ոչ կամեցաւ տեսանել զչարչարանս Տեառն իւրոյ, բայց խաւար փոխանակ լուսոյ զգեցաւ, զի յանդիմանեսցէ զթերահաւատսն որք յայնժամ էին։ Եւ այժմ սո՛ւգ առցեն ընդ մեզ ամենայն ժողովք արդարոց՝ երեւելիք եւ աներեւելիք։ Սո՛ւգ առցեն ընդ մեզ ամենայն զաւրըք վերնայինք, եւ խնդրուածս մատուսցեն Աստուծոյ մարդասիրի Գաբրիէլ եւ Միքայէլ՝ գլուխք վերին զաւրացն հրեշտակաց, խնդրուածս մատուսցեն փոխանակ մեր Քերովբէք եւ Սերովբէք բազմահայեացք· կառք աւետեաց, այն որ զԵրրորդութիւնն սուրբ փառաբանեն զանսկզբնականն Աստուած· զի զողորմութիւնն իւր սրսկեսցէ ի վերայ մեղուցեալ ժողովրդեանս։ Այլ այսու ամենայնիւ խրատել զձեզ ոչ դադարեմ, զի զԱստուած՝ զոր ուրացայքն, նմա աղաչանս եւ խնդրուածս մատուցանել մի դադարէք, մինչեւ դարձցի առ ձեզ եւ ողորմեսցի։*

--------

## ԺԵ

## ԹՈՒՂԹ ԵՐԿՐՈՐԴ ԱԿԱԿԱՅ ԱՌ ՊԵՏՐՈՍ

ՅԱկակայ առ Պետրոս հայրապետ Աղեքսանդրացւոց։

Ես այժմ ինձ արդար համարիմ զանձն իմ, քանզի տեսի զքեզ զի յանձն առեր զտրտմութիւնս մեր, եւ զսուրբ զաղաչանսդ զոր մատուցանես փոխանակ մեր առ Աստուած, որ ոչ ուրացար ի նըմանէ։ Արդ ես երանեցից իմ անձինս զի խըրատեցայց ի քո բարի վարդապետութենէդ, եւ այժմ ծանեայ եթէ աշակերտ ես սեպհական Յիսուսի Քըրիստոսի· զի ըստ յանցաւորութեանս մերում ոչ արարեր մեզ, այլ խրատիչ բարի ամենայն մարդկան երեւեցար յԱստուծոյ։ Քանզի բարիոք ուսուցանես թէ առ այն Աստուած, զոր դուքն ուրացարուք, վայել է ձեզ անդադար խնդրուածս մատուցանել, զի դարձցի եւ ողորմեսցի եւ փրկեսցէ ըզձեզ։ Այլ զտումար այնր ամպարշտին՝ այսինքն Լեւոնի, կամակից եղեն հարքն մեր, որ յառաջ քան զմեզ էին, ամպարշտի արքային Մարկիանոսի, նոյնպէս եւ մեք որ յետ նոցա եղաք, ուրացաք գրով ի միածին Որդւոյն Աստուծոյ ի Տեառնէ մերմէ Յիսուսէ Քրիստոսէ։ Այլ զտումարն զայն ամպարշտութեան առաջի երկնաւորաց եւ երկրա-

------

Բնագիր Ա. էջ 249.



ւորաց եւ սանդարամետականաց նզովեմ ի թղթիս յայսմ զոր գրեաց ձեռն իմ։

Այլ այժմ, ո՛վ հայր սուրբ, նայեաց յողորմութիւնն որ տուեալ է քեզ յԱստուծոյ, եթէ բարկանայցես եւ մատնեսցես զմեզ, եւ եթէ հատուցանիցես փոխանակ չարի չար, այլ հատո՛ բարիս փոխանակ չարի որպէս հաւատարիմ Քրիստոսի։ Եթէ թողուցուս զմեզ յայսմ կապանս ուրացութեան, եթէ ոչ ընդունիցիս զայնոսիկ որ ապաշխարիցեն, եթէ ոչ լուծցես իշխանութեամբ որ տուաւ քեզ յԱստուծոյ՝ զայս կապանս որ ի վերայ մեր է, այլ ձեռնարկութեամբ իմով նզովեցի զամպարշտին տումար, յայսմ թղթի զոր գրեաց ձեռն իմ։ Եւ այժմ լռեցի մինչեւ խնդրուածս մատուցից Աս-
մարդասիրի եւ վարդապետութեան քում։



## ԺԶ

## ԹՈՒՂԹ ՉՈՐՐՈՐԴ ՊԵՏՐՈՍԻ ՀԱՅՐԱՊԵՏԻ ԱՌ ԱԿԱԿ

*Պետրոս Հայրապետ Աղեքսանդրացւոց։*

*Լուեա՛, սիրելի, ո՛րչափ աշխատ առնես զանձն իմ։ Լուեա՛ այն որ ցայժմ դատապարտէիր զանձն իմ. քանզի որպէս զամպարիշտ ի մահ մատնէիր զիս, եւ զսուր Թագաւորին հանէիր ի վերայ իմ։ Բայց այժմ տեսանեմ զքեզ զի պատերազմող երբեւիս. յառաջագոյն յապականիչ մարդկան ի նեղութիւն եւ ի չարչարանս կամէիր ընկենուլ, այլ այժըմ որ Աստուծոյ աղաչանս մատուցանես վասն իմ՝ ի հոգեւոր սուրն այն որ զանձն եւ զմարմին կարէ սպանանել՝ ընկեցեր զիս։ Այլ ինձ քա՛ւ լիցի հատուցանել չար փոխանակ չարի, այլ փոխանակ չարին զբարի, եւ եթէ թողի՞ց, եւ եթէ յամեցի՞ց, եւ եթէ ոչ ընդունիցի՞մ զայնոսիկ որ ապաշխարեն։ Այլ այժմ գիտեա՛, ո՛վ սիրելի, եթէ ամենայնիւ աւտար համարիմ զքեզ։ Այլ ինձ քա՛ւ լիցի հատուցանել փոխանակ բարւոյ չար։ Եթէ Աստուած ույժ տայ ինձ ոչ յամեցից եւ ոչ թողից, այլ ընդունիմ զայնոսիկ որ ապաշխարեն։ Այլ ես մինչ կարդացի զթուղթն զայն, որ ձեռնարկութեամբ ձերով գրեալ էր, որ նզովեցեր ի նմա զտումար ամպարշտին, զարմացայ, եւ ի զարմանալոյ ոչ դադարեմ՝ եթէ ո՛չ գիտես ո՛վ մարդ եթէ ո՛չ գիտեմ զի՞նչ արարեր, քանզի յորժամ նզովեցեր զտումարն, նըզովեցեր զհարսն քո զայնոսիկ, որ ի տումարին ձեռնարկ արարին, որք եւ զքեզն քահանայացուցին։ Քանզի նզովեցան նոքա ի քէն, եւ դու զքեզ նզովեցեր, քանզի դու ի նոցանէ քահանայացար. աւտար ես այսուհետեւ յեպիսկոպոսութենէդ։ Եւ զի մի սրտմտեցուցանիցեն զքեզ բանքս այսոքիկ, քանզի զարդար խաւսել ոչ ամաչեմ, եթէ հատցէ ոք զգլուխս իմ։*

------

*Բնագիր Ա. էջ 250.*





# ԺԷ

## ԹՈՒՂԹ ԵՐՐՈՐԴ ԱԿԱԿԱՅ ԱՌ ՊԵՏՐՈՍ

*ՅԱկակայ առ Պետրոս հայրապետ Աղեքսանդրացւոց։*

*Մի ժամ ասացից, եւ այլ ոչ յաւելից խաւսել այսուհետեւ։ Ո՛վ Հայր սուրբ, նայեաց ի շնորհս որ տուեալ են քեզ յԱստուծոյ, եթէ յամիցես եւ եթէ թողուցուս, եթէ ոչ ընդունիցիս զայնոսիկ որ ապաշխարենն, եթէ այժմ որ նզովեցի գրով զտումար ամպարշտին, եւ զիս նզովեցի, եւ խնդամ զի ոչ խնայեցի յանձն իմ, զի այսպէս զՔրիստոս շահեցայց։ Այսուհետեւ զանձն իմ Աստուծոյ մարդասիրին եւ վարդապետութեան քում յանձնեցի։ Բայց նայեաց յողորմութիւնն որ յԱստուծոյ տուեալ են քեզ փոխանակ եկեղեցւոյ իւրոյ։ Եթէ եւ ամենայն եպիսկոպոսքն նզովեն որպէս զիս զամպարշտին զտումար, գտանին եւ նոքա ընդ նզովիւք լինել։ Ո՞ւր իցեն աղբիւրք ողորմութեանն Աստուծոյ մերոյ, զի՞արդ եւ զգիրն ընդունիցիմք խոստովանեա՛ զմեղս քո, զի արդարասցիս. ապա ուրեմն գտանի սա, եթէ ոչ վասն թողութեան լինի ապաշխարութիւնս այս, այլ կործանումն ամենայն ժողովրդեան։ Սեղանք, որ արհամարհեալ են ի բազմութենէ քահանայիցս այսոցիկ, մինչ տրտմին վասն որդւոց մարդկան ապականութեան, որ յան-*

------

*Բնագիր Ա. էջ* 251 - 252։



*կարծ որբ մնացին ի նոցանէ եւ բազմութիւն բարբարոսական ժողովրդոց խառնակեցին, եւ հերետիկոսք ծաղր արասցեն զհարսն Քրիստոսի. եւ եղիցին վերջինքն՝ չար քան զառաջինսն։ Բայց այժմ լո՛ւր ինձ, հա՛յր իմ, եւ կաց զաւրութեամբ մինչեւ հաշտեցուցանես զԱստուած, որ ոչ ուրացար ի նըմանէ, զի ջնջեսցէ ի մէնջ ի քահանայիցս, որ ապաշխարեմք զձեռնարկութիւն ուրացութեան մերոյ, եւ դարձուսցէ առ մեզ զուղղափառութեան պսակն։*

*Գոչեա՛ եւ դու, ո՛վ հայր, առ Աստուած, այն որ ոչ ուրացար ի նմանէ, որպէս զերանելին Մովսէս որ ասէր՝ Եթէ թողուցուս դոցա զմեղս թո՛ղ, թէ ոչ եւ զիս ջնջեա՛ ի դպրութենէ քումմէ։ Նոյնպէս եւ Ահարոն քահանայապետ ընդ ժողովրդեանն մեղաւ, քանզի պաշտեաց ընդ նոսա զկուռսն. բայց ի խնդրուածոց երանելւոյն Մովսէսի ուրախացաւ ի բժշկութեանն, որ յԱստուծոյ եղեւ նմա ի նմին ժամու, եւ ոչ աւտարացաւ ի քահանայութենէն այլ եկաց եւ նովիմբ պաշտեաց զԱստուած մինչեւ ցըմահ։ Նոյնպէս եւ դու, հա՛յր մեր, նմանեա՛ երանելւոյն Մովսէսի, եւ գոչեա առ Աստուած, որ ոչ ուրացար ի նմանէ. եւ ասա. Եթէ թողուս դոցա զմեղս՝ թող, եթէ ոչ եւ զիս ջնջեա՛ ի դպրութենէ քումմէ. այսպէս ասելով հաշտեցուսցես ընդ մեզ զՔրիստոս, եթէ կամեսցիս միայն բուռն հարկանել կորուսելոցս ի ձեռք քո, եւ մի ամենեւին կորիցուք։ Էջ առ մեզ վաղվաղակի եւ յափշտակեա զմեզ ի վերայ վիմին հաստատութեան որ է Յիսուս Քրիստոս, որպէս ասէ սուրբ առաքեալն. թէ վէմն է ինքն Քրիստոս, այն որ ոչ յաղագս այլ ինչ իրաց մարդացաւ, այլ զի փրկեսցէ զազգս*

որդւոց մարդկան։

Եւ այժմ հաստատուն կաց, ո՛վ հայր, քանզի հաւատացի յայն, որ այժմ հաւատամ յԱստուած զի ոչ արգելու զքեզ։ Մի դադարեր այսուհետեւ փոխանակ մեր յանցաւորացս խնդրուածս մատուցանել, քանզի տուան քեզ շնորհք յԱստուծոյ մինչեւ ընկալցիս շնորհս յԱստուծոյ փոխանակ մեր, քանզի՝ Զկամս երկիւղածաց իւրոց առնէ Տէր, ասէ սաղմոսարանն, եւ զխնդրուածս նոցա լսէ եւ փրկէ զնոսա։ Վասն այսորիկ զաղաչանս զայս Աստուծոյ մարդասիրի եւ ողորմութեան քում մատուցի։ Նայեա այսուհետեւ, ո՛վ հայր, յողորմութիւնն որ տուեալ են քեզ փոխանակ եկեղեցւոյ իւրոյ սրբոյ, միանգամ ասացի եւ այսուհետեւ լռեմ եւ ոչ խաւսիմ· բայց զի մեղա՛յ, Թող ինձ։





# ԺԸ

## ԹՈՒՂԹ ՀԻՆԳԵՐՈՐԴ ՊԵՏՐՈՍԻ ԱՌ ԱԿԱԿ

Պետրոս հայրապետ Աղեքսանդրացւոց առ երանելի Ակակ հայրապետ որ ի Կոստանդնուպաւլիս։

Նեղութիւն է ինձ յամենայն կողմանց եւ որոգայթք մահու սփռեցան ի վերայ իմ, զի յայդպիսի յեղբաւրէ զապաշխարութիւն լուայ, որ ի վեր է քան զորդւոց մարդկան։ Եթէ ոչ կացից ընդ ձեզ եւ չարչարեցայց, եւ կեցից ընդ ձեզ, եւ ընդ ձեզ մեռայց, զի կեցից ընդ ձեզ, եւ ընդ ձեզ թագաւորեցայց· եւ թէ փակեմ զդուրս առաջի այնոցիկ որ ապաշխարեն, յորոգայթս ամպարշտին Լեւոնի անկանիմ, այլ ընտրեմ ինձ այժմ, եթէ ընդ բազումս որ ապաշխարեն մեռայց, զի ուրախ եղէց յողորմութիւնս Աստուծոյ մերոյ։

Լո՛ւր այսուհետեւ, Հայր, լուր զխորհուրդս Աստուծոյ մերոյ, զքառասուն աւր պահեսցուք ես եւ դու մինչեւ այլ ոք ոչ գիտէ, բայց միայն Աստուած, որ յիմ ձեռն հրամայեաց քեզ։ Այլ զայդ քառասուն աւուրս մի՛ գիտասցեն քահանայք եւ ժողովրդականք, զպատճառս հիւանդի ընկալցիս, եւ մի՛ մտանիցես ի սուրբ սեղանն Աստուծոյ մինչեւ ցլնուլ հրաման կանոնին, եւ փոխանակ ամենայն

------

Բնագիր Ա. էջ 253 - 255։

ժողովրդեանն ուղղափառաց աւրհնութեան արժանի եղիցիս. որպէս զի փոխանակ ամենայն մարդկան արգելցիս. զի փոխանակ ամենեցուն ընկալցիս ըզթողութիւն: Քանզի զամենեսեան դու գայթակղեցուցեր, քանզի խափանեցեր յաւուրս Բասիլիսկոսի լինել միաւորութիւն եկեղեցեաց: Այլ զայդ զԽ աւուրս կանոնի, զոր Աստուած ամենայնի Յիսուս Քրիստոս, յիմ ձեռն հրամայեաց քեզ, պահեսցուք խորհրդիւ ես եւ դու միայն, փոխանակ ամենայն ժողովրդեան եկեղեցւոյ սրբոյ: Հաց ըստ կամաց ոչ կերիցուք, եւ իւղով ոչ աւծցուք, զգինի եւ զաւղի մի՛ արբցուք, բայց յընդոց ինչ երկրի, եւ լալով եւ արտասուաւք լուասցուք զմարմինս մեր մեղաւորս զցայգ եւ զցերեկ, եւ անդադար խնդրուածս մատուսցուք Աստուծոյ մերոյ, զի նայեսցի ի խընդրուածս մեղաւորիս փոխանակ քո, եւ փոխանակ ամենայն քահանայից որ ապաշխարեն, եւ փոխանակ ամենայն ժողովրդեան, զի Աստուած ողորմութեամբ իւրով դարձուսցէ զքահանայսն որ ապաշխարեն ի նորոգութիւն աւծման առաջին ուղղափառութեան, եւ Հոգին սուրբ, որ ի Հաւրէ յիս բնակեալ, ըստ ողորմութեան իւրում ի վերուստ իջցէ ի վերայ քո, եւ ի վերայ քահանայիցդ որ ապաշխարեն:

Այլ յայն նզովից, որ դու զքեզ նզովեցեր, եւ զքահանայութիւն քո, եւ վասն ողորմութեան Տեառըն Աստուծոյ մերոյ Յիսուսի Քրիստոսի, այն որ հրամայեաց ինձ Հոգւովն սրբով, արձակեմ զքեզ, եւ եղիցիս արձակեալ, եւ այսք ամենայն նոյնպէս եղեն, եւ կատարեցաւ Հոգւով սրբով, ամէն:

Այլ յորժամ Աստուած մեծ եւ հզաւր հրամայեաց ինձ, զի կանոն եդից քեզ զայսչափ աւուրս. մինչեւ ես մարդ մահկանացու զԱստուած աղաչեցից, զի ողորմեսցի ի վերայ իմ փոխանակ ամենայն ժողովրդոցս, կամ վաղվաղակի ջնջեսցէ զիս յառաջ քան զձեզ: Այլ այժմ ահիւ եւ դողութեամբ ընկալցիս զկանոնս, քանզի հաւատամ յողորմութիւն նորա, թէ ընդ ձեզ ամենեսին կեցից. զի ինքն ի սուրբ Աւետարանին իւրում աղաղակէ եւ ասէ. Եկայք առ իս ամենայն աշխատեալքդ, եւ ես հանգուցից զձեզ:



Այլ վասն այնոցիկ, որ յուրացութեան մեռան տումարին հաւանեալք եւ ոչ ապաշխարեցին, մի՛ իշխեսցես դու, եւ ոչ ես, եւ ոչ այլ ոք, վասն նոցա պատարագ մատուցանել, քանզի ոչ ընդունի Տէր Աստուած մեր զպատարագսն վասն նոցա, զի ուրացան ի նմանէ, այլ դնէ ընդդէմ նոցա զդրունս արքայութեանն՝ Յիսուսի Քրիստոս Աստուածն ամենայնի, այն որ ասաց իւրով բերանովն. Ամէն ամէն ասեմ ձեզ, եթէ՝ որ ուրասցի զիս առաջի մարդկան, ուրացայց եւ ես զնա առաջի Հաւր իմոյ որ յերկինս է: Բայց եւս առաւել ասեմ քեզ վասն այնոցիկ, որ զպատարագս նոցա արարեր ապիրատութեամբ, այսինքն Մարկիանոսի եւ Պողքերայ թագաւորաց հերետիկոսաց, եւ Պողինայ(1) եւ Անտեղիսեայ(2) եւ Եգնադիտեայ(3), որ յառաջագոյն եպիսկոպոսք էին հերետիկոսք, եւ Շմաւոնի վանաց երիցու, եւ այլոց սարկաւագաց եւ անապատաւորաց: Այլ զայդ ամենայն պարտ էր քեզ ծանուցանել ինձ վասն նոցա առաջի Աստուծոյ. զի վասն հաւատոց ասեմ զոր ինչ ասեմս. մի՛ եթէ թողացեալ ինչ՝ ոչ քննիցեմք զայդ ամենայն եւ անկանի-

-------

(1) իմա Փլաբիանոս (447 - 449):

(2) Որ է Անատոլիոս (449 - 458):

(3) Որ է Գեննադիոս (458 - 471):

ցիմք։ Քանզի ոչ չարչարեցաք ինչ վասն հաւատոց, գուցէ լինիցիմք տգէտք եւ հաղորդիցիմք ի պատարագս հերետիկոսաց։

Ո՛ղջ լեր Տերամբ եղբայր իմ սիրելի։





## ԺԹ

## ԹՈՒՂԹ ՉՈՐՐՈՐԴ ԱԿԱԿԱՑ ԱՌ ՊԵՏՐՈՍ

Ակակ հայրապետ, որ է ի Կոստանդնուպաւլիս, առ Պետրոս հայր իմ, եւ հայրապետ Աղեքսանդրացւոց։

Ամենայն ինչ ըստ աղաւթից իմոց կատարեցաւ առ իս, եւ այժմ յանձն իմ գիտեմ թէ կոչիմ ես ի փառաւորելոյն որ յերկինս է յողորմութենէն Աստուծոյ մարդասիրի, որ հրամայեաց քեզ խոնարհել եւ խնդրել ի նմանէ փոխանակ մեր, որ էաք ի մոլորութեան։ Այլ վասն նզովից այնոցիկ որ գիս նզովեցի, լուծումն կատարեալ ընկալայ ի Յիսուսէ Քրիստոսէ, որ ի ձեռն քո խաւսեցաւ հոգւով սրբով։ Եւ վասն պահոցն զոր խորհրդիւ ի ձեռըն քո հրամայեաց ինձ Աստուած, եթէ կամեսցի Տէր, կատարեցից որպէս սահման եդեր աւուրց քառասնից ըստ քում հրամանի։ Այլ վասն այնոցիկ, որ ձեռնարկ արարին ի տոմարին, եւ ոչ ապաշխարեցին, եթէ ոչ մատուցից փոխանակ նոցա պատարագ, ոչ կարեմ առնել։

Քանզի ահա եպիսկոպոս Գեննադիոս(1), որ յառաջ քան գիս էր, մեծապէս մատուցանէր զպատարագս փոխանակ նոցա, մանաւանդ Շմաւոնի երիցու եւ վանականի։ Եւ արդ ես գի՛րդ կարիցեմ

------

Բնագիր Ա. էջ 256 - 257։

(1) Տպ. Գնադիոս։

*յետ այսչափ ամաց արգելուլ զժողովուրդս զայս, քանզի թէ արգելում՝ ի նմին ժամու հրով այրիմ ի նոցանէ, այսինքն ի թագաւորաց եւ յեպիսկոպոսաց եւ յերիցանց եւ ի ժողովրդականաց։ Քանզի ասեն ցիս այսպէս. եթէ այն ամենայն ժողովուրդք կորեան, եթէ ամենայն ժողովուրդ որդւոց մարդկան, որք յառաջագոյն ննջեցին ի Մարկիանոսէ մինչեւ ցայս աւր կորնչել ասեմք, լինի խառնակութիւնք մեծ ամենայն եկեղեցեաց։ Բայց զգուշացիր եւ քննեա, ո՛վ Հայր, գուցէ անդրէն դարձցին ամենայն ժողովուրդքս ի տոմար ամպարշտին Լեւոնի, որպէս յայնժամ Իսրայէլն դարձաւ յԵգիպտոս. եւ որպէս յառաջագոյն ասացի՝ լինի յետինս չա՛ր քան զառաջինն։ Բայց որպէս այժմ վասն մեր եցոյց քեզ Աստուած, որ կենդանիքս եմք, սոյնպէս եւ վասն այնոցիկ որ մեռանն, յայտնեսցէ քեզ, որք ձեռնարկ արարին ի տումարին ամպարշտին Լեւոնի։ Նայեաց այսուհետեւ, ո՛վ Հայր, ի շնորհսն որ տուեալ են քեզ յԱստուծոյ փոխանակ եկեղեցւոյ իւրոյ։ Վասն այսորիկ առողջութեամբ պահեցար մինչեւ ցայժմ ի մարդասիրէն Աստուծոյ, զի ի ձեռն քո լուծցէ զամենայն քահանայս իւր Տէր Աստուած քո, եւ զամենայն ժողովրդեանս զուրացութիւնս։ Քանզի այն որ կարողն է արձակել եւ ազատեցուցանել ի կապանաց, դիւրաւ կարող է արձակել զայնոսիկ որ ի կապանս իցեն։ Այլ նայեաց այսուհետեւ, ո՛վ Հայր, յողորմութիւնն որ տուեալ է քեզ յԱստուծոյ փոխանակ կաթուղիկէ եկեղեցւոյ իւրոյ սրբոյ։*

--------



# Ի

## ԹՈՒՂԹ ՎԵՑԵՐՈՐԴ. ՊԵՏՐՈՍԻ ԱՌ ԱԿԱԿ

*Պետրոս հայրապետ Աղեքսանդրացւոց առ Ակակ հայրապետ որ է ի Կոստանդնուպաւլիս։*

*Քանզի զամենեսեան որ Աստուծոյ հաճոյ են եւ ընդունելի ընկալայ, այսինքն զապաշխարութիւն քո եւ զայլոց քահանայից որ կենդանի են, եւ ամենայն ժողովրդեան բժշկութիւն վաղվաղակի ընկալայ. վասն որոյ յայտնելոց են ի ձեզ։ Այլ վասըն այնոցիկ որք մեռան անաւրէն ձեռնարկաւ տումարին հրէականի, այն որ երեւեցաւ յամպարշտէն Լեւոնէ, չէ պարտ մեզ, եթէ զպատարագս նոցա առաջի Աստուածութեանն մատուսցուք, զի մի եւ մեք ընդ նոսին կորնչիցիմք։ Եթէ երանելին Մովսէս, հեզն քան զամենայն որդիս մարդկան, մատոյց երբեք պատարագս փոխանակ Կորխայ եւ Դադանայ եւ Աբիրովնի, ապա եւ մեզ պարտ է փոխանակ նոցա պատարագս մատուցանել։ Եւ վասն առաքելոցն սրբոց զի՛արդ ոչ ասեմք, եթէ Պետրոս գլուխն առաքելոցն սրբոց՝ Սիմոնի մոգի, որ մըկըրտեցաւն եւ անդրէն դարձաւն, մատո՞յց երբեք պատարագ նորա փոխանակ, ապա ուրեմն եւ մեք պարտիմք մատուցանել։ Եթէ երանելին Պաւղոս*

------

*Բնագիր Ա. էջ 258 - 263 (թերի). լրացում, ԺԷ. էջ 486 - 488։*

փոխանակ Հիմենայ եւ Աղեքսանդրոսի, այնոքիկ
որ ի ճշմարիտ հաւատոցն ուրացան, մատո՞յց եր-
բեք պատարագ, ապա եւ մեք պարտիմք փոխանակ
նոցա մատուցանել պատարագ։ Եթէ ամենայն ժո-
ղովք առաքելոցն սրբոց, փոխանակ ամենայն հերե-
տիկոսաց որ մեռանն, այսինքն Պրոտէի կամ Աւ-
ղոսի մատուցին պատարագս, ապա ուրեմն եւ մեք
պարտիմք մատուցանել։ Եթէ ամենայն ուղղափառ
հայրապետք եւ եպիսկոպոսք զպատարագս հերե-
տիկոսաց ընկալան, այսինքն Արիանոսաց Պոտէի*),
ապա եւ մեք պարտիմք ամենեւին զհետ հարցն
մերոց գնալ եթէ կամաւ եւ եթէ ակամայ։ Եւ վասն
այսորիկ ոչ կարես ինձ ցուցանել, ո՛չ յԱստուածա-
յին պատուիրանաց, եւ ո՛չ յառաքելոցն սրբոց, եթէ
մատուցին պատարագս առաջի Աստուածութեանն
փոխանակ հերետիկոսաց։

Այսուհետեւ լո՛ւր յինէն կրտսերոյ հրամանի
քեզ յԱստուծոյ, զոր ինձ՝ որպէս թէ հաւատամ յո-
ղորմութիւնս նորա՝ իշխանութիւն յանձնեաց եկե-
ղեցւոյ իւրոյ։ Եւ վասն այնորիկ զոր ասացեր թէ
ոչ կարեմ չառնել զպատարագս նոցա վասն ժողո-
վրդեանս, զի մի եղիցի աղաղակ եւ խառնակու-
թիւն եկեղեցեաց սրբոց։ Պարտ է մեզ այսուհետեւ
հրամանաւ Աստուծոյ պատուէր տալ սրբութեան
քում, եթէ յորժամ առնիցես զպատարագս նոցա,
այսինքն Մարկիանոսի եւ Պողքերայ ամպարիշտ
թագաւորաց, եւ Պեղինեայ, եւ Անտեղիսեայ եւ Գը-
նադիսեայ(1), որ յառաջ քան զքեզ եպիսկոպոսք
էին հերետիկոսք, եւ Շմաւոնի երիցու եւ վանակա-
նի, եւ այլոց քահանայից եւ անապատականաց,
յորժամ սարկաւագն զանուն միոյ ի նոցանէ քարո-
զէ ի պատարագամատուցին, յայնժամ դու հայրա-

------

*) Այսպէս յօր·
(1) Հմմտ· էջ 93· Տնթ·



պետդ, ի պատարագին յայնմ զոր մատուցանես,
գոչեա՛ խորհրդիւ առ Աստուած, որ քննէ զծած-
կեալս· Տէր Աստուած ամենակալ, մի՛ արհամարհեր
զպատարագս վասն անուանցն որ քարոզեցաւ ի
սարկաւագէն, զի անունն այն յիւր մասն գնայ, զի
առաջի արդար դատաստանի քո մարդ ոչ կարէ
կալ, այսուհետեւ ընկալ Տէր Աստուած մեր զպա-
տարագս զայս սուրբ, ի վերայ սուրբ սեղանոյ
քո յերկինս, փոխանակ այնոցիկ որ ուղղափառու-
թեամբ ննջեցին, վասն անուանդ քո սրբոյ եւ մար-
դասիրի։

Այսուհետեւ փոխանակ Պողինէի եպիսկոպոսի
հերետիկոսի, մատո՛ զպատարագն քո առաջի Աս-
տուածութեանն վասն Դէոսկորոսի հայրապետի որ
էր յԱղեքսանդրիա, այն որ վկայեաց յաւուրս
Մարկիանոսի թագաւորի հերետիկոսի։ Եւ փոխա-
նակ Անտեղիսեայ եպիսկոպոսի հերետիկոսի, արա
զպատարագն երանելոյն Թէոդոսի եպիսկոպոսի Ե-
րուսաղէմի, այն որ վկայեաց յաւուրս Մարկիանո-
սի արքայի հերետիկոսի։ Եւ փոխանակ Գնադիոսի
եպիսկոպոսի հերետիկոսի, արա՛ զպատարագն երա-
նելոյն Տիմոթէոսի հաւատարիմ Հաւր մերում հայ-
րապետի Աղեքսանդրացւոց։ Եւ փոխանակ Շմաւոնի
վանաց երիցու հերետիկոսի, արա զպատարագն ե-
րանելի եղբաւրն Տիմոթէոսի, այսինքն Անտեղիս
երիցու, այն որ վկայեաց ի Գանգրա յաւուրս Լե-
ւոնի արքայի հերետիկոսի։ Եւ փոխանակ Մարկիա-
նոսի արքայի հերետիկոսի, արա զպատարագն ե-
րանելոյն Եւսեբի երիցու եղբաւր մերում որ վը-
կայեաց յԱղեքսանդրիա։ Եւ փոխանակ Պողքերայ
թագուհոյ հերետիկոսի, արա զպատարագն երա-
նելոյն Եւդոկեայ թագուհւոյ ուղղափառի։ Եւ փո-
խանակ ամենայն ժողովրդեանն եւ հերետիկոս ե-

պիսկոպոսաց որ մեռանն, արա՛ զպատարագն ամենայն ժողովրդեան փոխանակ որ կենդանի են այժմ, եւ ուղղափառ եպիսկոպոսաց, եւ քահանայից, եւ անապատականաց, եւ շինականաց։

Այլ զայդ ամենայն, ո՜վ սուրբդ Աստուծոյ, մինչ խորհրդիւ կատարես, զամենայն ժողովուրդդ անարատ պահես եւ ամբիծ, եւ փրկես ի ձեռաց հերետիկոսաց, եւ պատարագն այն որ ի քէն Տեառն Աստուծոյ մատչի, սուրբ անարատ եւ անխտիր ընդունի։ Եւ սուրբ պատարագն որ ի քէն մատչի մարդասիրի Աստուծոյ մերում, վասն այնր զի զանուանս հերետիկոսացն ոչ յիշեցեր. ո՜չ բարկանայ։ Լե՛ր այսուհետեւ առ Տեառն Աստուծոյ մերում յահեղ ժամուն, յորժամ զաւրք ամենայն վերնայինք ահիւ եւ դողութեամբ շուրջ զքեւ կան, եւ նային ի Յիսուս Քրիստոս Որդին Աստուծոյ, որ ի քէն հայրապետէ պատարագի փոխանակ կաթուղիկէ առաքելական եկեղեցւոյ իւրոյ սրբոյ։ Գոչեա՛ այսուհետեւ խորհրդիւ ի սրտի քում առ Աստուած ամենայն շնորհաւք որ տուեալ են քեզ, եւ ասա. Ոչ յիշեցից զանուանս նոցա ի շրթունս իմ, բայց յիշեցից զայնոսիկ որ վասն անուան քում ուղղափառութեամբ մարտիրոսացան, զի եւ մեք ընդ նոսա արժանաւոր լիցուք ժառանգաւոր լինել արքայութեան քում։ Եւ Հոգին սուրբ լուիցէ քեզ եւ իջցէ ի վերայ պատարագի քո, եւ իւրով Աստուածային զաւրութեամբն սրբեսցէ զքեզ քահանայ, եւ զայնոսիկ, որ շուրջ զքեւ կան զաւրք երկնայինք, այնք որք յառաջագոյն շուրջ կային զքեւ, եւ զամենայն քահանայս, եւ զամենայն ժողովուրդս, որ ի խընդրուածոց քոց կան. քանզի հանգեաւ Հոգին սուրբ, այն որ հաւասար է զաւրութեամբ եւ իշխանութեամբ ընդ Հաւր եւ ընդ Որդւոյ, նոյն Հոգին



սուրբ զաւրութեամբ Աստուծոյ իջցէ եւ լցցէ զամենայն խորանն, այսինքն զսուրբ սեղանն, յորոյ վերայ Քրիստոս ի քէն քահանայէ պատարագի, եւ բաշխի կոչեցելոց եւ ընտրելոց։ Ինքնին իսկ Հոգին սուրբ իջցէ ընդ քեզ քահանայապետի եւ ծածկեսցէ զամենայն խորանն, եւ մեծաւ իշխանութեամբ եւ կարողութեամբ իւրով դարձուսցէ եւ արասցէ ըզհացն զայն մարմին Որդւոյն Աստուծոյ Յիսուսի Քրիստոսի, նոյնպէս զբաժակն՝ զգինին արկեալ՝ դարձուսցէ եւ արասցէ իւրով Աստուածային իշխանութեամբն արիւն Տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի Միածին Որդւոյն Աստուծոյ, այն որ ել եւ հեղաւ յԱստուածային կողիցն ի քաւութիւն եւ ի թողութիւն մեղաց։ Քանզի յայնմ Աստուածային արեան լուացաք եւ սրբեցաք եւ փրկեցաք. եւ թագաւորէ կաթուղիկէ առաքելական սուրբ եկեղեցի իւր մինչեւ ի տիեզերս երկրի։ Այսպէս ճշմարիտ հաւատովք ուղղափառութեան, քահանայքս Տեառն ամենակալին զամբիծ եւ զանարատ առնուցումք զմարմին եւ զարիւն Տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի. այլ նմա փառք եւ պատիւ եւ յաղթութիւն եւ արքայութիւն յաւիտենից ընդ Հաւր եւ ընդ կեցուցիչ սուրբ Հոգւոյն այժմ եւ միշտ եւ յաւիտեանս ամէն։

Այլ վասն այնոցիկ, որ ի բազում եկեղեցիս ուղղափառ եպիսկոպոսք, եւ այլ քահանայից սրբոց, որոց պատարագ առնեն այնոցիկ, որ ձեռնարկ աբարին ի յամպարշտին տումարին եւ անապաշխար մեռան, քանզի ոչ կարէ ամենայն մարդ խելամուտ լինել պատուիրանին Աստուծոյ՝ յորմէ ոչ լինի աղաղակ եւ խառնակութիւն, վասն զի չեն արժանի խորհրդեանն Աստուծոյ, այն որ ասաց Աստուած ի մէջ երկուց վկայից, այսինքն իմ եւ քո։ Այլ վասն

այնոցիկ, որք առնեն զպատարագս հերետիկոսաց, այսպէս յայտնեաց Յիսուս Քրիստոս որդին Աստուծոյ ի ձեռն իմ, կրսերոյ Պետրոսի Աղեքսանդրացւոյ հայրապետի, եթէ ուրեք յերկրի իմաստունըս, կամ յեկեղեցիս, եպիսկոպոսք ուղղափառք, կամ քահանայք տգիտութեամբ աղօթս մատուցանիցեն կամ պատարագ փոխանակ այնոցիկ, որ ձեռնարկ արարին ի տումարին Լեւոնի, եւ առանց զղջանալոյ մեռան, քահանային այնմ որ հաղորդեցաւ տգիտութեամբ՝ թողութիւն յԱստուծոյ վասն այնր յանցանաց. քանզի տգիտութեամբ աղօթեաց եւ մատոյց պատարագ վասն հերետիկոսաց, եւ տգիտութեամբ հաղորդեցաւ ի պատարագս նոցա։ Եւ եթէ ոք յուղղափառ քահանայից գիտէր զայնոսիկ, որ ձեռնարկ արարին ի տումարին եւ մեռան անապաշխար, եւ ոչ մատուցէ Տեառն զպատարագս նոցա, մեծ վարձս եւ օրհնութիւն ընկալցի ի Տեառնէ Աստուծոյ ամենակալէ։

Նոյնպէս սարկաւագք եւ անապատաւորք եւ ժողովրդականք, եթէ գիտասցեն զոմանս եթէ ձեռնարկ արարին յամբարշտին տումարի եւ ոչ ապաշխարեցին, եւ ի պատարագս նոցա ոչ հաղորդեցան, թողութիւն մեղաց ընկալցին ի Տեառնէ յաւուրն դատաստանի. զի նայ ուղղութեամբ դատի զերկիր, եւ աւրհնութիւն ընկալցին։ Եւ թէ ոմանք յեպիսկոպոսաց եւ կամ ի քահանայից եւ յանապատաւորաց եւ ի ժողովրդականաց թերահաւատ իցեն ի միտս իւրեանց վասն այնոցիկ, որ ձեռնարկ արարին ի տումարին, եւ ոչ գիտիցեն թէ ապաշխարիցեն, մինչդեռ խտրութեամբ է մատուսցէ քահանայն պատարագ վասն նոցա, մի ընկալցի պատարագն այն առաջի Տեառն զօրութեանց. վասն այնր զի խղճիւ մատոյց քահանայն զպատարագն զայն։



Քանզի պղծեցաւ ի հարուածս բաժանութեան, եւ ուսանիմք զայս յերանելոյն Յակոբայ առաքելոյն, որ քարոզեաց մեզ թէ՝ որ երկմիտն է նման է հողմակոծեալ ալեաց ծովու. մի ակն կալցի մարդն այն առնուլ ինչ յԱստուծոյ։

Նոյնպէս թէ ոմանք ի քահանայից եւ յանապատականաց, այր կամ կին, եթէ երկմտութեամբ իցեն, վասն այնոցիկ որ ձեռնարկ արարին ի տումարին եւ ոչ գիտիցեն թէ ապաշխարեցին, եւ եթէ ո՛չ ապաշխարեցին, եւ երկմտութեամբ մատուցին զպատարագն նոցա, մի սրբեսցին, քանզի ի հարուածս երկմտութեան պղծեցան։ Լուիցեն եւ նոքա առաքելոյն Պաւղոսի, որ վկայեաց վասն նոցա եւ ասէ. Որ խղճիւ ուտիցէ դատապարտեալ է, քան ոչ եթէ հաւատովք ուտէ։ Եւ եթէ ոմանք յեպիսկոպոսաց ուղղափառաց կամ ի քահանայից, եւ յանապատականաց եւ ի ժողովրդականաց գիտիցեն զոմանս, որ ձեռնարկ արարին ի տումարն ամբարշտին, եւ ոչ ապաշխարեցին եւ մեռան, եւ ընդունեցին զաղանդ նոցա, եւ արասցեն պատարագս փոխանակ նոցա, տանջանք եւ լալումն անանց պատրաստեսցի նոցա ի Հօրէ եւ յՈրդւոյ եւ ի Հոգւոյն սրբոյ. ամէն։

Այլ զայդ ամենայն պարտ էր ընդունել քեզ, սիրելի իմ, եւ վաղվաղակի ձեռն արձակել քեզ ի թղթին իմում, զոր ես իմով ձեռնարկութեամբ գրեցի եւ զաւրութեամբ Հոգւոյն սրբոյ անքննելի Աստուծոյ ամենակալի երեւելեաց եւ աներեւելեաց, եթէ ընդունիմ այսուհետեւ զայս ամենայն որ յայսըմ թղթի գրեալ են։ Եւ մինչ դու ձեռնարկ առնես ի ներքս, տո՛ւր բերել վաղվաղակի առ իս, զի եւ ես յորժամ տեսից զձեռնարկն քո, որ ի նմա

գրեալ է, փառաւորեցից զԱստուած, զի այսուհետեւ ընկերակից իմ ես։ Այլ յորժամ ընդունիմ ըզթուղթն քո զուղղափառութեամբ, որ վկային յամենայն ուղղափառ եպիսկոպոսաց եւ քահանայից եւ յանապատականաց, եւ առաքեմ ի նմին ժամու խնդրուածս եւ աղաչանս մատուցանել արքային Զենոնի· քանզի այսուհետեւ, յայտնապէս ամենայն մարդկան, նզովեսցի տումար ամպարշտին զի եղիցի միաւորութիւն եկեղեցեաց։

Այլ դու, ո՛վ սիրելի, պատրաստեա՛ զանձն քո, զի յորժամ ի Թագաւորէն կոչեսցիս, զի՛արդ պատասխանի արասցես հեզութեամբ եւ հանդարտութեամբ, որպէս թէ ոչ գիտիցես զիրս զայս, զի մի անկանիցիս ի փորձութիւն։ Եթէ գիտիցէ զխորհուրդս մեր ամենեւին եւ ասիցէ ցքեզ, ցայժմ եւ զիս մոլորեցուցանէիր եւ զժողովուրդս, քանզի ա՛սէիր ամենայն մարդոյ, թէ Պետրոս Աղեքսանդրացի հերետիկոս է, զիա՛րդ այժմ ուղղափառ համարիս դու զնա, վասն այսորիկ հրամայեմ սրբութեան քում, եթէ բազում իմաստութեամբ խաւսեսցիս ընդ արքայի, միթէ անկանիցիս, եւ ի բանից քոց դատապարտեսցիս։ Այլ Աստուած, որ յուսացար ի նա, այն որ ընկալաւ զապաշխարութիւն քո, նա՛ տացէ զաւրութիւն եւ իմաստութիւն սրբութեան քում, եւ եղիցի միաւորութիւն եկեղեցեաց անշարժ եւ հաստատուն հաւատոյն։

Այսուհետեւ եթէ ընդունի արքայ զաղաչանս մարդկան, սրբասէրք որ այդր կան եւ կամեսցին ընդ ուղղափառութիւն մեր, յայնժամ եւ դու այնուհետեւ աներկիւղ խնդրուածս եւ յայտնապէս աղաչանս մատոյ արքայի, զի արասցէ իւր ձեռամբ գիր, զի դարձցի եւ նզովեսցէ զամենայն հերետիկոսս, եւ զամպարիշտ կործանաւղն ամենայն ժողովրդոց, որ



կոչեցաւն Պոտէ Լեւոնի եպիսկոպոսին Հռովմայ հրէական տումարն, այն որ ի Քաղկեդոնի ամպարշտութեամբ եղեւ ընկալեալ վասն Թերահաւատին Եւտիքեայ։ Եւ զթուղթն Թագաւորին մինչ ուղղափառութեամբ լինի գրեալ յարքայէ Զենոնէ եւ ի սրբասիրութենէդ քումմէ, տուր բերել առ իս եւ կարդացից զնա, եթէ նմանիցէ հաւատոյ առաքելոցն սրբոց, եւ հարցն մերոց սրբոց, որ ի Նիկիա ՅԺԸ· եւ որք յետ նոցայն ժողովեցան ՃԾ· որ ի Կոստանդնուպաւլիս, եւ Մ· որ յԵփեսոս ժողովեցան վասն ամպարշտին Նեստորի, ապա եւ ես ի նմին ժամու ձեռնարկ արարից ի գիրսն, եւ յայտնեցից զանձն իմ։ Եթէ կամք իցեն Տեառն Աստուծոյ մերում, դարձայց անդրէն յաթոռ սրբոյ աւետարանչին Մարկոսի· եւ առից զհարցն իմոց, զոր Աստուած ինքնին ետ ինձ որպէս եւ ես հաւատամ ի նա, եւ այնուհետեւ լինի միաբանութիւն եկեղեցեաց սրբոց եւ հաւատ Քրիստոսի արածեսցի ի միասին խաղաղութեամբ եւ խնդութեամբ, զմին կեցուցանող ճարակ ի մէնջ որ յԱստուծոյ ընդրեցաք հովիւք, եւ խնդութիւն կատարեալ, եւ ուղղափառութիւն Թագաւորէ ի մի միաբանութիւն սուրբ եւ կաթուղիկէ առաքելական եկեղեցւոյ։

Յորժամ մեր աղաւթք կատարին վասն ամենայն հովուաց եւ հաւտից, այսինքն զքառասունսն զայն, որ հրամայեցաւ քեզ Ակակայ հայրապետի յինէն կրսերոյ Պետրոսէ հայրապետէ Աղեքսանդրացւոց, ի Հաւրէ եւ յՈրդւոյ եւ ի Հոգւոյն սրբոյ միասնական Աստուծոյ մերոյ, մինչեւ կատարեսցուք խորհրդիւ որպէս եւ հրամայեաց ինձ Տէր Աստուած զպահս զայս սուրբ ապաշխարութեան եւ փրկութեան ի կատարել Խ աւուրց՝ յաւուր կիւրակէի, յայնժամ ինքն Տէր Աստուած յայտնապէս ե-

կեսցէ, որպէս եւ յայտնեաց ինձ ի գիշերի, եւ հաւատամ ի նա, ինձ ասա, եւ քեզ այդր ժողովրդեամբ հանդերձ ի նոյն կիւրակէի, յերրորդ ժամու, մինչ մատուցանեմք զսուրբ նշխարսն զանապական եւ զանքննելի, եւ փառաւորեմք զսուրբ զԵրրորդութիւնն ընդ զաւրս երկնային, եւ բազմահայեաց սերովբէք եւ քրովբէք, յայնժամ երեւեսցի քեզ այդր, եւ ինձ ասա, ինքնին Աստուած Յիսուս Քրիստոս, սուրբ եւ զարմանալի նշան որ լինիցի այսպէս։ Զի զՄիածին Որդին Աստուծոյ տեսանիցես փառաւք իւրովք յայտնապէս, ի կերպարանս մանկան, որ զգեցեալ է պարեգաւտս կտաւի, եւ բազմեալ ի վերայ սկհոյն եւ մաղզմային՝ որ ի վերայ սրբոյ սեղանոյն եդեալ է։ Եւ ձգեսցէ զձեռն իւր ի վերայ քո, եւ բարձցէ ի քէն զահ եւ զերկիւղ, եւ ասիցէ քեզ այդր, եւ ինձ ասա· Քաջալերեցարուք, քանզի ջնջեցի ի ձէնջ քահանայիցդ որ ապաշխարեցիք, եւ յամենայն ժողովրդոց որ ապաշխարեցին, զխափանումն եւ զուրացութիւն, որ ի ձէնջ եղեւ վասն իմ ի տումարին հրէականի, եւ այսուհետեւ մի՛ տեսցես դու զնա, մինչեւ յերկրորդ անգամ գալուստն։





# ԻԱ

## ՁԵՌՆԱՐԿ ԶՈՐ ԱՐԱՐ Ի ԹՂԹԻՆ ԱԿԱԿԻՈՍ ՀԱՅՐԱՊԵՏ, ՈՐ Է Ի ԿՈՍՏԱՆԴՆՈՒՊԱՒԼԻՍ

Կարդացի եւ ընդունիմ զամենայն որ ինչ յառաջագոյն գրեալ էր, եւ յայսմ Թղթի, զոր գրեաց ձեռն քո Պետրոս Հայր եւ գլուխ եպիսկոպոսաց եւ հայրապետ Աղեքսանդրացւոց, ուղղափառ եւ հաւատարիմ, եւ խնդամ եւ փառաւորեմ զԱստուած որ ի քեզ բնակեցաւ, Հայր իմ սուրբ· Ի նմին Թղթի, զոր գրեաց ձեռն քո, գրեցի եւ ես իմով ձեռնարկութեամբ, եւ հաւատամ յանուն Հաւր եւ Որդւոյ եւ Հոգւոյն սրբոյ։ Այսպէս հաւատամ զամենայն աւուրս կենաց իմոց, եւ այսպէս հաւատ պահեմ զսահմանս զայս՝ զոր եդի, մինչեւ եկեսցէ Յիսուս Քրիստոս Աստուած մեր դատել զաշխարհ արդարութեամբ, այն որ խաւսեցաւ ի ձեռն քո զայդ ամենայն ուղղափառութիւն մինչեւ յաւիտեան։ Զի նմա վայել է փառք եւ մեծութիւն եւ երկրպագութիւն ընդ Հաւր, եւ ընդ Հոգւոյն սրբոյ, այժմ եւ միշտ եւ յաւիտեանս յաւիտենից· ամէն։

------

Բնագիր Ա· էջ 264։

----------

## ԻԲ

## ԹՈՒՂԹ ՀԻՆԳԵՐՈՐԴ ԱԿԱԿԱՅ ԱՌ ՊԵՏՐՈՍ

Ակակ հայրապետ, որ է ի Կոստանդնուպաւլիս եպիսկոպոս, ցՊետրոս հայր իմ, եւ հայրապետ Աղեքսանդրացւոց։

Որպէս զճարտարապետ իմաստուն ընկալար յԱստուծոյ հիմն ապաշխարութեան հաստատուն եւ անշարժ՝ յանձն առեալ զշինութիւն եկեղեցեաց սրբոց, ոչ եթէ քարամբք եւ երկրաւ եւ կրով հաստատեցեր յերկրի զհիմն հաւատոյ, այլ բանիւք հոգեւորաւք լցար յերկնից յԱստուածային իմաստութենէն, այն որ ինքն միայն է Աստուած իմաստուն։ Քանզի ուղղափառ խոստովանութեամբ զամենայն մարդ խրատեցեր, որպէս Մովսէս եղեւ յայնժամ, որպէս Պաւղոս զհեթանոսս· զի ընդ ամենեսին ամենայն եղեր եւ զամենեսին շահեցար։ Եւ ո՛չ գիտեմ զինչ կոչեցից զքեզ· քանզի այլ երկրորդ Պետրոս կոչեցից զքեզ· այն մեծն եւ առաջինն առաքելոցն, յորժամ առաքեցաւ յԱստուծոյ առ Կուռնելիոս, զայս ասէր· Եւ ինձ Աստուած եցոյց ոչ զոք ի մարդկանէ խառնակ ինչ կամ անսուրբ ասել։ Նա գլուխ էր առաքելոցն դասու սրբոց եւ դու գլուխ ես ուղղափառաց եւ քահանայից որ նորոգեցան· քանզի եւ դու արարեր զայն զոր նա արարն, զի ընկալար զյանցաւորս յապաշխարութիւն։

------

Բնագիր Ա· էջ 265 - 266։



Քանզի որպէս Պետրոս զՍիմոն մոգ, աղաւթիւք կործանեալ ջնջեաց, նոյնպէս եւ դու, ո՛վ հայր, աղաւթիւք եւ արտասուաւք եւ խնդրուածովք գոչեցեր առ Աստուած վասն մեր եւ ջնջեցեր զԼեւոն եւ զտումարն, զոր եհան ամպարիշտ բերանովն, զոր նզովեցին հարքն մեր։ Այսուհետեւ եւ դու, ո՛վ հայր եւ քահանայ, ողորմութեամբ զամենայն ոք ընկալար, զամենեսին փրկեցեր։ Բայց յողորմութիւն կոչեմ զԲանն Աստուած, այսինքն զՔրիստոս, այն որ ի ձեռն քո խաւսեցաւ զապաշխարութիւն քահանայից, եւ ամենայն ժողովրդոց։ Վասն այսորիկ ընդունիմ զամենայն զոր ինչ ի թղթի աստ գրեաց ձեռն քո։ Հաւատամ եւ ընդունիմ զամենայն, որ ինչ գրեալ է ի թղթիս, եւ խընդամ եւ ուրախանամ եւ փառաւորեմ զԱստուած, զայն որ բնակեալ է ի քեզ, հայր իմ սուրբ, այն որ երեւեցոյց քեզ զզարմանալիս որպէս եւ հաւատայիր, նոյնպէս եւ ինձ անարժանիս ասաց թէ ցուցանեմ։

Եւ որպէս զայդ ամենայն ընդունիմ եւ հաւատամ, գրեցի ի ներքս ի թղթիս ձեռնարկութեամբ իմով· եւ հաւատամ յամենասուրբ Երրորդութիւնն զամենայն աւուրս կենաց իմոց, եւ այնպէս պահեցի, որպէս հրամայեցեր ինձ, մինչեւ եկեսցէ Յիսուս Քրիստոս Աստուած մեր դատել զաշխարհս արդարութեամբ։ Եւ ետու բերել առ սրբութիւնդ քո ըզթուղթն քո յորժամ արարի ի նմա զձեռնարկն քո։ Այլ որպէս ի սուրբ թղթին ձեր ասացէք առ մեզ՝ ի նմին ժամու առաքեցէք ուղղափառ եւ զսուրբ հարսն առ բարերար արքայ Զենոն, զի աղաչանս եւ խնդրուածս մատուսցեն վասն միաւորութեան եկեղեցեաց սրբոց· զի այսուհետեւ եւ յայտնապէս նզովեսցի յամենայն մարդկանէ գրով տոմար ամ-

պարշտին։ Քանզի յուսամ յԱստուած իմ, զի բանայ զբերան իմ զաւրութեամբ Հոգւոյն սրբոյ, զի զամենայն ինչ որպէս Աստուծոյ հաճոյ է՝ խաւսեցայց ընդ Թագաւորին։ Զի որպէս եւ զձեր հրամանն եւ զգիրն արասցէ արքայն Զենոն, եւ ես ըստ նմին, եւ վաղվաղակի տաց բերել սրբութեանդ քո։ Բայց զայս խնդրեմ ի Տեառնէ զի հանապազ յիշեսցես զիս, որ պաշտաւնակիցս եւ կամակիցս եմ քո։





## ԻԳ

## ԹՈՒՂԹ ԵՒԹՆԵՐՈՐԴ ՊԵՏՐՈՍԻ ԱՌ ԱԿԱԿ

Պետրոս հայրապետ Աղեքսանդրացւոց առ Ակակ գլուխ եպիսկոպոսաց որ ենն ի Կոստանդնուպաւլիս։

Զթուղթն իմ զոր ետուր բերել ցիս, զոր իմով ձեռնարկութեամբ գրեալ էր, յորժամ ընկալայ յերանելի Թէոդոսիս մանկանէ, փառաւորեցի ըզմարդասէրն Աստուած մեր, զի տեսի եւ կարդացի, եւ ընդունիմ ի նմա զձեռնարկն քո, այն որ ամենայնիւ հաւասար է ուղղափառութեան։ Ո՞ւստի արդեւք իցէ այս, զի կամակից եւ պաշտաւնակից եղեր դու ինձ առաջի Աստուծոյ, բայց զերանելիսս որ ընդ իս են եպիսկոպոսունք եւ երիցունք, եւ որք ընդ Աստուծոյ խաւսին անապատականք, առաքեցի զի աղաչանս մատուսցեն առ բարերարի արքայի Զենոնի վասն քակման ամպարշտին տումարի եւ վասն միաւորութեան եկեղեցեաց սրբոց։ Այլ վաղվաղակի գրեա առ իս, ո՛վ երանելի, եւ զգիրն որ գրեալ է ուղղափառութեամբ յարքայէ Զենոնէ, եւ ի սրբութենէ քումմէ, տացես ինձ բերել, եւ աղաւթեա վասն մեր սուրբ եւ սրբասէր ընկերակից եւ պաշտաւնակից հայր իմ Ակակիոս։

------

Բնագիր Ա. էջ 267։

----------

## ԻԴ

## ԹՈՒՂԹ ՎԵՑԵՐՈՐԴ ԱԿԱԿԱՅ ԱՌ ՊԵՏՐՈՍ

*Ակակ հայրապետ եպիսկոպոսաց որ ենն ի Կոստանդնուպաւլիս, ցՊետրոս հայր իմ, եւ հայրապետ Աղեքսանդրացւոց։*

*Յորժամ եկին յայս քաղաք Թագաւորութեան, երանելիք եւ սրբասէր եպիսկոպոսք եւ քահանայք եւ անապատականք, զամենայն ինչ սքանչելապէս արար Աստուած զարմանալիս· քանզի ի նմին ժամու արքայ Զենոն երանելի ետ զանձն իւր եւ ըզմարմին յուղղափառութիւն, եւ ի նմին ժամու առաքեաց եւ կոչեաց զիս, զորս մի մի ի մէնջ չէ՛ պարտ ասել· քանզի ուսանիս զամենայն ինչ ի սրբասէր արանցդ՝ զորս առաքեցերդ առ իս։ Զի ի նմին ժամու հրամայեաց առնել զգիրն, այն որ ի նմա նզովեաց զտումար ամպարշտին, եւ զամենայն հերետիկոսս եւ զամպարիշտն Եւտիքէս, եւ խոստովանի զհաւատս ուղղափառութեան, զոր յանձնեցին մեզ սուրբ առաքեալքն։ Եւ վաղվաղակի գալոց են առ ձեզ, նոյն սուրբ հարքն զոր առաքեցեր այսր, եւ պայծառացեալ մեծութեամբ իւրով Պըրեգմիոս Ագստղիոս մեծ քաղաքի Աղեքսանդրիայ, այն որ զգիրսն երանելոյ արքայի Զենոնի յիմ ձեռաց էառ, զի բերցէ վաղվաղակի առ քո սրբութիւնդ։ Այլ զայն գիր մինչ ընդունիս, ո՛վ երանելի, ի նմին ժամու ձեռնարկ արասցես ի նմա եւ (զի) յայտնեսցի այսուհետեւ ճառագայթ ուղղափառութեան որ ծածկեալ էր, եւ լուսաւորեսցէ զամենայն մարդ, յորժամ արձակես զմեզ յուրացմանն կապանաց, որ ի խաւարի եւ ի ստուերս մահու նստէաք, եւ առցես յԱստուծոյ զաթոռ քո եւ ըզհարսն քո՝ զսիրելի զսուրբ զեկեղեցին Աղեքսանդրացւոց։*

*Ընկալ այսուհետեւ, ով հաւատարիմ, Աստուծոյ զպսակն ուղղափառութեան, որ տուաւ քեզ յԱստուծոյ՝ ի դատաւորէն ուղղութեան, ի Հաւրէ եւ յՈրդւոյ եւ ի Հոգւոյն սրբոյ, այն որ նմա վայել են փառք եւ պատիւ յաւիտեանս յաւիտենից· ամէն։ Եւ աղաւթս արա՛ ի վերայ իմ ընկերակից եւ պաշտաւնակից հայր իմ։*



------

*Բնագիր Ա. էջ 268։*

## ԻԵ

## ՄԻԱՒՈՐՈՒԹԵԱՆ ԳԻՐ՝ ՈՐ ՏՈՒԱՒ ԲԵՐԵԼ Ի ՁԵՌՆ ԵՐԱՆԵԼՈՅՆ ՊԵՐԳՄԻՈՍ ԱԳՍՏԵՂԻՈՍԻ Ի ԲԱՐԵՐԱՐ ԱՐՔԱՅԷ ԶԵՆՈՆԷ, ԵՒ ՅԱԿԱԿԱՑ ԳԼՈՒԽ ԵՊԻՍԿՈՊՈՍԱՑ՝ ՈՐ ԵՆ Ի ԿՈՍՏԱՆԴԻՆՈՒՊԱՒԼԻՍ ԱՌ ԵՐԱՆԵԼԻՆ ՊԵՏՐՈՍ ԳԼՈՒԽ ԵՊԻՍԿՈՊՈՍԱՑ ԵՒ ՀԱՅՐԱՊԵՏ ՀԱՒԱՏԱՐԻՄ ՔԱՂԱՔԻՆ ԱՂԵՔՍԱՆԴՐԱՑԻՈՑ

Ինքնակալ կայսր Զենոն բարեպաշտ եւ յաղթող եւ նշանաւոր մեծ եւ միշտ բարի եւ Աւգոստոս աշխարհակալ, որք յԵգիպտոս եւ յԱղեքսանդրիա եւ ի Լիբիու, եւ ի Պենտապաւլիս, երկիւղածաց եպիսկոպոսաց եւ ուխտաւորաց միայնակեցաց եւ այլոց ամենեցունց ի Տէր խնդալ։ Զիշխանութիւնս եւ զընդդիմութիւնս, զզաւրութիւնս եւ ըզգէնս անկռուելիս մերոյ Թագաւորութեանս։

Գիտացէք զի է՛ ճշմարիտ ուղղափառ հաւատն, զոր ի ձեռն Աստուածային գալստեանն եղին, որք ի Նիկիա ժողովեալք ՅԺԸ սուրբ հարքն, եւ հաստատեցին դարձեալ ՃԾքն նմանապէս սուրբ հարքն որ ի Կոստանդինուպաւլիս ժողովեցան։ Ի տուէ եւ ի գիշերի ամենայն աղաւթիւք եւ փութով եւ աւրինաւք խնդիր առնեմք բազմանալ եւ աճել ի ձեռն հաւատոյս այսորիկ ամենայն ուրեք զսուրբ եւ զկաթուղիկէ եկեղեցի առաքելական, զանապական

------

Բնագիր Ա. էջ 269 - 271։



եւ զանմահ մայրն մերոյ գաւազանիս ի խաղաղութեան, եւ առ Աստուած միաբանութեան զբարեպաշտ ժողովուրդս կալ եւ մնալ, ընդունելով ի Թագաւորութենէս մերմէ հաստատական աղաչանս, զոր մատուցանեմք հանդերձ ճշմարիտ եպիսկոպոսապետաւքս եւ աստուածապաշտ ուխտաւորաւքս եւ վանականաւք եւ անապատականաւք, Փրկչաւն մերով Յիսուսիւ Քրիստոսիւ, որ ի սուրբ եւ յԱստուածածին կուսէն Մարիամայ մարմնացեալ եւ ծնեալ· զի միաձայնական փառաբանութիւնս եւ զպաշտաւնն զովելով պատրաստ եմք յընդունել, զի հակառակորդացն ազգ փշրեսցի եւ ի բաց ջնջեսցի։ Ամենեցուն աստուածութեանն զիւրաքանչիւր պարանոց խոնարհեցուցեալ ընդ մերով իշխանութեամբ, զի խաղաղութիւն եւ բարութիւն ի սմանէ եղիցի, աւդոց բարեխառնութիւն, պտղոց բարեբերութիւն եւ այլ ինչ, որ եթէ աւգտակար իցէ մարդկան, մեծապէս շնորհեսցի։

Արդ՝ այսպէս ամբիծ եւ անարատ հաւատոյս, զմեր եւ զՀռոմոց գիրս ապրեցուցանել, աղաչանք եւ պաղատանք մեզ մատուցանել յաստուածասէր վանականաց եւ անապատականաց եւ յայլ պարկեշտ մարդկանէ, հանդերձ արտասուաւք աղաչել զմիաւորութիւն սուրբ եկեղեցեաց առնել, եւ ժողովել զանդամս առ իւրաքանչիւր անդամս, զոր բարիատեաց բանսարկուն ի բազում ժամանակս որոշել եւ բարժանել փութացաւ։ Գիտասցեն զայս, զի եթէ ոք ընդ միաբան եւ ընդ ողջանդամ մարմնոյ սուրբ եկեղեցւոյ մարտիցէ, ի պարտութիւն մատնեսցի։ Վասն զի դիպեցան յայսպիսի իրաց ազգաց անբաւից եւ անհամարից վնասք մեծամեծք, ո՛րքան ժամանակս, յայսքան ամս կենաց մերոց որ անցին, զոմանս ի փրկական եւ ի վերստին ծնըն-

դենէն գրկեալս, եւ զոմանս յաստուածային աւրինացն եւ ի հաղորդութենէն ոչ ընկալեալ, առ մարդկային անխնայ պառակտելի վախճանն հասանել, մահունս բազում անգամ իշխեցեալ գործել՝ հեղմամբ արեամբ պղծեալ զերկիր, եւ ոչ զերկիր միայն, այլ եւ զաւդս։

Արդ՝ զայս ո՞ ոք ոչ աղաւթիցէ առ բարին փոփոխել, եւ զմիաբանութիւն տեսանել։ Յաղագս այսոցիկ ծանուցանել ձեզ փութացաք, զի ամենայն ուրեք ուղղափառ եւ սուրբ եկեղեցւոյ միաբանութիւն եղիցի։ Բայց այլ հաւատ կամ ուսումն կամ սահման հաւատոյ, քան զասացեալս յառաջագոյն սուրբ հաւատն, ՅԺԸ սուրբ հարանցն, զոր հաստատեցին ՃԾ սուրբ հարքն, ժողովեալք յառաջագոյն յիշեցեալքն, որ ի Կոստանդինուպաւլիս, ո՛չ ունէաք եւ ոչ ունիմք եւ ոչ կալցուք։ Եւ ոչ եթէ ունիցի ոք եւ գիտեմք, եւ թէ ունիցի ոք, աւտար զնա ի մէնջ համարիմ՛ք։ Այսու միայն քաջալերիմք, որպէս յառաջագոյն ասացաք, եւ այսու համարիմք կենդանի պահել զմեր թագաւորութիւնս, եւ միաբան զամենայն ժողովուրդս, որ փրկական մկրտութեանն արժանաւորք եղեն, զմի եւ զնոյն ընկալեալ, նովին լուսաւորին մանաւանդ, որք յԵփեսոս ժողովեցան։ Որոց եւ զհետ իսկ չոգան ամենայն սուրբ հարքն, որք լուծին եւ ի բաց հերքեցին զանաւրէնն Նեստորիոս, եւ որք յետ նորա զնորայն խորհին եւ ունին, զոր եւ մեք զՆեստորիոս միանգամայն ընդ Եւտիքեայ հակառակս իրերաց մտածեալս, եւ որք զնոցայն խորհին եւ մտածեն, եւ կամ մտածեսցեն, նզովե՛մք։ Ընկալեալ զԺԲ գլուխսն, զասացեալսն յԱստուածասիրէն Կիւրղէ, այն որ եղեւ գլուխ եպիսկոպոսաց սրբոյ եկեղեցւոյն Աղեքսանդրացւոց։

Քանզի հաւատամք եթէ Միածին Որդին Աստուծոյ, Աստուած է ճշմարտութեամբ. այն որ մարդացաւ Տէր մեր Յիսուս Քրիստոս, այն որ ի բնութենէ Հաւր յԱստուածութեան իւրում, եւ ի բնութենէ մերմէ եղեւ մարդկութիւն իւր. այն որ էջ եւ մարմնացաւ ի սուրբ կուսէն Մարիամայ Աստուածածնէ Հոգւովն սրբով. քանզի մի է որդի եւ ոչ երկու։ Խոստովանիմք զի մի է Միածին Որդին Աստուծոյ, եւ նորա են սքանչելագործ զաւրութիւնքն եւ չարչարանքն, զոր կամաւորութեամբ կրեաց մարմնով իւրով։ Այլ զայնոսիկ որ բաժանեն, եւ կամ փոփոխելի ասեն, կամ այլայլելի, զայնպիսիսն ոչ ընդունիմք։ Քանզի ճշմարիտ մարմնաւորութիւն, անապական եւ առանց մեղաց, որ յԱստուածածնէն եղեւ, յաւելուած Որդւոյ ոչ արար, այլ եկաց մնաց Երրորդութիւնն՝ Երրորդութիւն, մինչ կամեցաւ եւ մարդացաւ մի յԵրրորդութենէն Բանն Աստուած(1)։



------

(1) Յոյն բնագիրն յաւելու ի վերջ հրովարտակին. "Իսկ զայնպիսիս, որ օտար ինչ խորհեցան կամ խորհին, կամ այժմ կամ այլ ուրեք եւ կամ ի Քաղկեդոնի, կամ յորո՛ւմ եւ իցէ ժողովի, նզովեմք" (Ե. Ե. Դ)։



## ԻԶ

## ԹՈՒՂԹ ՈՒԹԵՐՈՐԴ ՊԵՏՐՈՍԻ ԱՌ ԱԿԱԿ

Պետրոս հայրապետ Աղեքսանդրացւոց առ Ակակ սիրելի իմ, եւ գլուխ եպիսկոպոսաց որ են ի Կոստանդինուպաւլիս:

Ի տասն եւ ինն ամսոյն որ կոչի Փիքոն, եւ ըստ Հռովմայեցւոց համարոյ ի տասն եւ չորք ամսոյն Մայիսի, որ կոչի ասորերէն Իյար, եւ ըստ Հայերէն բարբառոյ կոչի Մարգաց ամիս: Մինչ եկին առ իս՝ որ առաքեցանն ի Կոստանդինուպաւլսոյ, ընկալայ զնոսա, Տէր, զսուրբ եւ զպաշտաւնակիցս իմ զեպիսկոպոսս եւ զքահանայս, զպաշտաւնեայս եւ զսուրբ հարսն անապատականս, որ ընդ Աստուծոյ խաւսին: Եւ մինչ տեսի զնոսա փառաւորեցի զԱստուած մեր մարդասէր, որ զարթոյց զերանելի արքայ Զենոն, զի արասցէ ի ձեռն սրբութեան քո զգիրս զայս, զոր ընկալայ ի ձեռն երանելի Պրեգմիոսի Ագստղիոսի: Եւ զայդ մինչ առի եւ կարդացի գիտացի զի նզովէ զամպարշտին տումար, որ եղեւ ընկալեալ ի Քաղկեդոնի. եւ զամպարիշտն Եւտիքոս եւ զամենայն հերետիկոսս: Տեսի թէ ամենայնիւ հաւասար է գիրս այս հաւատոյն ՅԺԸ եպիսկոպոսացն որք ի Նիկիա ժողովեցան սուրբ Հարքն, եւ ՃԾիցն որ ի Կոստանդինուպաւլիս ժողովեցան, յաղագս այնոցիկ որ ընդդէմ Հոգւոյն սրբոյ մարտնչէին: Եւ սուրբ ժողովն որք յԵփեսոս ժողովեցան, Մքն ընդ սուրբ Հաւրն մերոյ Կիւրղի, գլուխ եպիսկոպոսաց եւ հայրապետ մեծի եկեղեցւոյն Աղեքսանդրացւոց: Այսուհետեւ փառաւորեցից զԱստուած մինչ ընկալայ եւ ձեռնարկ արարի ի գիրս, եւ խնդամ եւ ուրախանամ եւ երկիր պագանեմ Հաւր եւ Որդւոյ եւ Հոգւոյն սրբոյ, էական Երրորդութեանն անձնաւորութեանց, եւ միաւորեալ Աստուածութեանն: Եւ առի յողորմութենէն Տեառն զաթոռ իմ զսրբոյ աւետարանչին Մարկոսի եւ նստիմ ի վերայ սորա ընդ հարս հոգեւորս, յանընդունակ պղծութեան սուրբ եկեղեցւոջս Աղեքսանդրիայ. այլ յաւուր ուրբաթու, ի տասն եւ ինն ամսոյն Փիքոն, եւ ըստ Հռովմայեցւոց ի տասն եւ չորք ամսոյն որ կոչի Մայիս, եւ ասորերէն Իյար եւ ըստ Հայոց Մարգաց:

------

Բնագիր Ա. էջ 272 - 273:



Ընկալ այսուհետեւ, ո՛վ երանելի, ահիւ եւ դողութեամբ ի Հաւրէ եւ յՈրդւոյ եւ ի Հոգւոյն սրբոյ, այն որ յիմ ձեռն կրտսերոյ հրամայեցաւ քեզ, ընկալ այսուհետեւ զսահման քառասնից աւուրցն պահոց, որ տուաւ մեզ խորհրդաբար, այն որ լինի փոխանակ քո, եւ փոխանակ ամենայն քահանայից որ ապաշխարեն, եւ փոխանակ ամենայն ժողովրդեան որ ապաշխարեն յաղագս թողութեան: Վասն որոյ սրբութեամբ ընկալցիս զաւրհնութիւն եւ զկրկին նորոգումն եւ զաւծութիւն եւ զգեղեցկութիւն, որ էր յառաջագոյն հաւատարիմ քահանայութիւն, այն զոր յառաջագոյն յանձնեաց մեզ Միածին Որդին Աստուծոյ Յիսուս Քրիստոս Աստուածըն ամենայնի ի ձեռն առաքելոցն եւ հարցն սրբոց:

Եւ արդ սկիզբն առնեմք ի սուրբ պահսն ըստ մեր համարոյ ի վեցերորդ աւուր ամսոյն որ կոչի

Թովթ, եւ ըստ Հռովմայեցւոց յառաջին ամսոյն յերեքն որ կոչի Սեպտեմբեր, եւ Ասորերէն Իլուլ, եւ Հայերէն Կթոց, եւ կատարեսցուք զսուրբ պահսն մինչեւ ցչորեքշաբաթի աւր զգուշաւոր խորհրդիւ։ Եւ յաւուր կիւրակէի ի մեր համարուէ ի տասն եւ հինգ ամսոյն Փողի, եւ ըստ Հռովմայեցւոցն ի տասն Հոկտեմբեր, եւ Ասորերէն Թշրին կտիմ, եւ ըստ Հայոց Տրեկանի։ Այսպէս կատարեսցուք ըզսուրբ պահսն ես եւ դու, ո՜վ սիրելի, փոխանակ մի մարմնոյ սրբոյ եկեղեցւոյ։





# ԻԷ

## ԵՕԹՆԵՐՈՐԴ ԹՈՒՂԹ ԱԿԱԿԱՅ ԱՌ ՊԵՏՐՈՍ

Ակակ գլուխ եպիսկոպոսաց որ են ի Կոստանդնուպաւլիս, ցՊետրոս Հայր իմ եւ Հայրապետ Աղեքսանդրացւոց։

Սուրբ եւ հաւատարիմ, քանզի Պետրոս կոչեցից զքեզ զքարոզիչդ ուղղափառութեան, քանզի ի զարմանալոյ ոչ դադարեմ, վասն զաւրութեան եւ տեսութեան եւ գիտութեան որ յԱստուծոյ տուաւ քեզ, Հայր իմ, այն որ ի վեր է քան զորդւոց մարդկան։ Եւ արդ զի՞նչ կոչեցից զքեզ՝ ոչ գիտեմ. զգովութիւն քո ոչ կարեմ ասել, զի կամակից ես սիրելի Աստուծոյ. քանզի ճշմարտութեամբ գիտացի այժմ զի սրբութեամբ եւ արդարութեամբ պաշտես, եւ մատուցանես պատարագ առաջի Աստուծոյ, եւ տեսանող լինիս մեծութեան զաւրութեան նորա։ Քանզի տեսի եւ ես, տեսի զամենայն ինչ՝ զոր ասացեր, ո՜վ հայր սուրբ, յայնժամ յորժամ կատարեցան Խ· աւուրք պահոցն, որ ի քէն հրամայեցաւ ինձ խորհրդաբար, եւ կատարեցաւ որպէս հրամայեաց սուրբ բանք մարգարէութեան քո յաւուր կիւրակէի, մաւտ յինն ժամն, որպէս եւ ասացէք, մինչդեռ կայի ահիւ եւ դողութեամբ, եւ մատուցանէի զսուրբ պատարագն Տեառն Աստուծոյ ի վերայ սեղանոյ նորա, եւ մինչդեռ փառաբանէի

------

Բնագիր Ա· էջ 274 - 275։

*զսուրբ զԵրրորդութիւնն, յանկարծակի ծագեաց ինձ լոյս, այն՝ զոր ոչ երբեք տեսի՝ լոյս մեծ եւ անճառելի, եւ ծածկեաց զիս ընդ սուրբ սեղանովն, եւ տեսի ճշմարտութեամբ եւ արդարութեամբ։*

*Եւ տեսի զՏէր մեր Յիսուս Քրիստոս ի մանկան կերպարանս, եւ զգեցեալ էր պարեգաւտ սպիտակ կտաւի։ Տեսի ի նմա եւ զնշան բեւեռացն, եւ բազմեալ էր որպէս ի գահոյս ի վերայ սկհոյն եւ մաղզմային, որ ի վերայ սուրբ սեղանոյն էր եդեալ։ Եւ եբարձ յինէն զահ եւ զերկիւղ ի նմին ժամու, եւ ելից զիս խնդութեամբ, եւ այնպէս կարծէի թէ չեմ ի յերկրի, եւ լուայ զձայնն որ ասէր ցիս, որպէս ինքն Աստուած գիտէ, քաջալերեցարո՛ւք քահանայք, քաջալերեցարո՛ւք ժողովուրդք իմ, քանզի բարձի ի ձէնջ զնախատինս ուրացման ձեռնարկութեան ամպարշտին տումարի Լեւոնի անիծելոյ, եւ այլ ոչ տեսի զնա, եւ ոչ զձայն նորա լուայ, եւ զլոյսն պայծառացեալ ոչ եւս տեսի։ Եւ վասն այսորիկ փառաւորեմ զսքանչելագործ Աստուածն մեր։ Եւ ծանուցի զայդ ամենայն սրբութեան քում, զի յամենայն ժամ աղաւթս մատուցանիցես վասն իմ, այնմ զոր սիրեցեր, եւ ոչ ուրացար ի նմանէ, այսինքն յԱստուծոյ։ Քանզի խոստովանեցար զնա առաջի դատաւորաց եւ իշխանաց զԱստուած մեր Յիսուս Քրիստոս։ Այնմ որում ոչ էի արժանի, տեսի զնա ճշմարտութեամբ եւ արդարութեամբ. զի նմա վայել է փառք եւ թագաւորութիւն յաւիտենից, ընդ Հաւր եւ ընդ Հոգւոյն սրբոյ. այժմ եւ միշտ եւ յաւիտեանս յաւիտենից ամէն։*

--------



# ԻԸ

## ԹՈՒՂԹ ԻՆՆԵՐՈՐԴ ՊԵՏՐՈՍԻ ԱՌ ԱԿԱԿ

*Պետրոս հայրապետ Աղեքսանդրացւոց առ Ակակ պաշտաւնակից իմ եւ ընկերակից, եւ հայրապետ եպիսկոպոսաց որ են ի Կոստանդնուպաւլիս։*

*Ահա արժանի եղեր, սուրբ հայր իմ, տեսանել զփառս Տեառն մերոյ. եւ լսել զբանս յԱստուծոյ մարմնացելոյ, զոր եւ ես ի կատարման պահոցն խորհրդեան յաւուր կիւրակէի, ի մաւտ յերրորդ ժամն մեծ, մինչդեռ մատուցանէաք յեկեղեցւոջն զսուրբ պատարագն Աստուծոյ մերոյ մարդասիրի, նոյնպէս եւ ես տեսի, եւ նոյնպէս լուայ որպէս եւ գրեցեր առ իս ի թղթին, որ քոյով ձեռնարկութեամբ գրեալ էր, եւ ոչ աւելի եւ ոչ պակաս ինչ տեսի կամ լուայ, որպէս ինքն իսկ Աստուած գիտէ։*

*Այսուհետեւ պահեա խորհրդիւ զուղղափառութիւն, վասն որոյ տեսաք զՅիսուս Քրիստոս Աստուած մեր, այն որ վասն ազգի որդւոց մարդկան անփոփոխելի եւ անայլայլելի եւ անբաժանելի, ինքըն միայն մարմնացաւ եւ եկն ի ծնունդ ահաւոր եւ զարմանալի։ Եկն ի ծնունդ Աստուածածնին Մարիամայ, չարչարեցաւ եւ խաչեցաւ եւ թաղեցաւ, եւ յարեաւ ի մեռելոց յաւուր երրորդի, եւ զաւուրս քառասունս ընդ սուրբ աշակերտս իւր շրջեցաւ, եւ հաղորդեցաւ ընդ նոսա, եւ ապա վե-*

------

*Բնագիր Ա. էջ 276։*

*րացաւ յերկինս եւ նստաւ ընդ աջմէ Հաւր ի բարձունս· եւ դարձեալ ի վախճանի աշխարհիս այսորիկ գայ յերկնից, փառաւք զաւրութեան իւրոյ, դատել զկենդանիս եւ զմեռեալս։*

*Զի նմա վայել է փառք եւ պատիւ եւ յաղթութիւն եւ թագաւորութիւն այժմ եւ միշտ եւ յաւիտեանս յաւիտենից· ամէն։*





# ԻԹ

## ՅՈՎՀԱՆՆՈՒ ՄԱՆԴԱԿՈՒՆԻՈՅ ՀԱՅՈՑ ԿԱԹՈՒՂԻԿՈՍԻ

*Արդ՝ վասն զի ի պահոց քառասնորդսն կոչի աւր մի ուրբաթ՝ չարչարանք խաչելութեանն Տեառըն, եւ առիթ կոչման չարչարելոցն յաշխարհիս, ունել յանձին զաւրինակ չարչարանացն Տեառն՝ առ ի փրկութիւն հոգւոց չարչարակցացն Տեառն, եւ առ ի պահպանութիւն անձանց պատուիրանապահացն Տեառն, առ ի լինելոյ չարչարակից խաչելութեանն Տեառն, փառակից յարութեանն, եւ առիթ կոչման մեղաւորացն յապաշխարութիւն։ Արդ՝ յայսըմ քառասներորդի, որպէս զի աւրէն է զշաբաթ եւ զկիրակէն որպէս զուրբաթ եւ զչորեքշաբաթ պահել զհետ աւրինացն առնելոյ։ Եւ յայնմ քառասներորդի որ կոչի կիւրակէն՝ կոչի աւր առաջին, եւ սկիզբն աւուրց յարութեան, եւ ուրախութիւն աշխարհի, եւ աւետիք արքայութեան, լի ամենայն ուրախութեամբ անձանց պատուիրանապահացն արդարութեան· աւրէն է զուրբաթն եւ ըզչորեքշաբաթի իբրեւ զկիւրակէն եւ զշաբաթն ուտել։ Քանզի զոր աւրինակ ի զատկէն մինչեւ ցըվերացումն Տեառն կիւրակէ կոչի, այսպէս ի բարեկենդանէ մինչեւ ցզատիկն՝ ուրբաթ։ Արդ՝ քեզէն ա՛ծ զքեզ ի հաւան, եւ զուգեա զայս քառասուն քա-*

-------

*Բնագիր Ա· էջ 239 - 240։ Հմմտ· Թ· էջ 204 - 206։*

ւութեան եւ զայն քառասուն ուրախութեան։ Կը-
շըռեա՛ զքառասուն ընդ քառասնի, եւ զուրբաթ եւ
զչորեքշաբաթ՝ ընդ շաբաթու եւ ընդ կիւրակէի, եւ
գտանես հաւասարակ. ոչ ի սմա յագումն եւ ուրա-
խութիւն, եւ ոչ ի նմա պահք եւ տխրութիւն։ Այս
քառասուն առիթ քաւութեան մեղաց տարւոյն, եւ
այն քառասուն յաջորդ ուրախութեանց տարւոյն։

Արդ՝ աւրէն է զայս պահոց քառասնորդս հար-
թիկ պահել ի բարեկենդանէն մինչեւ ցզատիկն,
քանզի քաւիչ եւ թողիչ մեղաց տարւոյն կոչի։ Այլ
գինի եւ իւղ, ձու, ձուկն, պանիր, կոգի, կաղտի,
բածին, չճուկ, կաթն, խեր, եւ ձկան մորէ, զայս
ընաւ ամենեւին չէ աւրէն, եւ ոչ վայել է ճաշակել
ամենայն ումեք մեծի եւ փոքու, արդարոյ եւ մե-
ղաւորի։ Շատ են մեզ այլ կամակքն քառասուն ա-
ւուրն, կանեփհատ, կտաւատ, փոխինդ, հատ, սամ-
թաջուր։

Արդ այսու քառասնորդաւ Տէրն ի լերինն
փորձութեան տարաւ յետս զփորձիչն սատանայ,
որ է աւրինակաբեր յաղթութեան ամենայն հաւա-
տացելոց։ Միթէ Աստուծոյ պահել ինչ պիտոյ էր,
ո՞չ ապաքէն վասն աւրինակի մարդկան առնէր
զայն։ Արդ եթէ զհանապազաւրն մեռանել ոչ կա-
րեմք, ըստ բանին Պաւղոսի, այլ գոնեա՛ քառասուն
աւուրբքս լինել հաղորդ չարչարանացն Քրիստոսի
ջանասցուք. զի բագ անկեալ(1) մեղք տարւոյն, քա-
ռասուն աւուրբքս ընկեսցուք յանձանց։ Ոչ գիտես,
զի որ միտեալ մտաւք չարչարակից լինին չարչա-
րանացն Քրիստոսի, նոքա միայն կարեն լինել փա-
ռակից յարութեանն։ Քանզի ասէ թէ ո՛չ միայն

------

(1) Տպ. զբագանակեալ։ Ե. Ե. Դուրեան կ'ուղղէ, հան-
գանակեալ։



հաւատալ ի Քրիստոս, այլ վասն անուան նորա
չարչարանս ընդունել արժան է։

Արդ՝ այս քառասունք չարչարանք խաչելու-
թեանն Տեառն, եւ այն քառասունք յարութեան
կենդանութեան Տեառն։ Այս քառասուն քացախ եւ
լեղի չարչարանացն Տեառն, եւ այն քառասունք
խորիսխ մեղու, եւ ձկան խորովելոյ մասն յարու-
թեանն Տեառն։ Այս քառասունք զինուորացն կնքով
պահել զգերեզման Տեառն, եւ այն քառասուն հրեշ-
տակացն զաւետիսն տալ Մարիամանցն զյարու-
թեան Տեառն։ Այս քառասուն միջնորդ ապաշխա-
րութեան, եւ այն քառասուն երաշխաւոր թողու-
թեան։ Այս քառասուն քաւիչ յանցանաց, եւ այն
քառասուն թողիչ մեղաց։ Այս քառասուն լալոյ եւ
արտասուաց, եւ այն քառասուն ցնծութեան եւ ու-
րախութեան։ Այս քառասուն սերմանելոյ ցաւովք
եւ տրտմութեամբ, եւ այն քառասուն ժողովելոյ
փառաւք եւ զովութեամբ։ Արդ՝ այս քառասնորդաւ
մեծ մարգարէն Մովսէս ետ զաւրէնս ժողովրդեա-
նըն, եւ այն քառասնորդաւ քաւեաց Մովսէս ըզ-
յանցանսն Ահարովնի եւ զյանցանս ամենայն ժո-
ղովրդեանն։ Այս քառասնորդաւ չոքաւ Եղիա ի
լեառն Սինէական՝ առնուլ հրաման ի Տեառնէ ըզ-
վերանալոյն իւրոյ յերկինս։ Այսու պահաւք ապրե-
ցան երեք մանկունքն ի բարձրաբերձ բոցոյ տոչո-
րական հրոյն սատակմանէ։ Այսու պահաւք լուծին
Նինուէացիքն զվճիռ մահուան զՏէրունական հրա-
մանին՝ առ ի լինելոյ ընդունելական պահք ապաշ-
խարութեան նոցա, եւ արագաթող լինելոյ մեղք
յանցանաց նոցա։

--------

# Լ

## ԵՐԱՆԵԼՈՅՆ ՅՈՎՀԱՆՆՈՒ (ՀԱՅՈՑ)(1) ԵՊԻՍԿՈՊՈՍԱՊԵՏԻ, ԱՊԱՑՈՅՑ ՅԵՐԿՈՒՑ ԲՆՈՒԹԵԱՆՑ ԱՍԵԼ ԶՓՐԿԻՉՆ ԵՒ ԿԱՄ ՄԻ ԲՆՈՒԹԻՒՆ։

*Եւ քանզի առաքելականն եւ մարգարէիցն կտակքն ո՛չ ուրեք յիշատակեն զերկուց բնութեանց այլութիւն, ապա պարտ է անդրդուելի խոստովանութեամբ դաւանել ի սուրբ Երրորդութեանն զԲանն Աստուած զմարմնացեալ։ Որք ալեկոծութեան յաղթողք լինիցին, եւ բազմապատիկ առաքինութեամբ պայծառացեալք, բոլորովիմբ նուիրելով զինքեանս մաքրութեանն՝ ընկալեալ զհոգի որդէգրութեանն շնորհի, բաւակա՛ն լիցին ասել զինքեանս քրիստոնեայս. քանզի գրեալ է, եթէ Ոչ ոք համարձակիցի ասել Տէր զՅիսուս եթէ ոչ Հոգւովն սրբով։ Իսկ եթէ Հոգւով սրբով է գիտութիւն վայելչապէս խոստովանողացն զՔրիստոս, մի ոք յաւակնեալ մոլեգնութեամբ զնորայն յափշտակել զպատիւ, որ եւ զդիւացն զանց առնէ զամպարշտութեամբ։ Հոգին զամենայն քննէ, ասէ, եւ զխորս Աստուծոյ. ապա ուրեմն թէ ոք լկնելով ժպրհիցի խնդիրս յուզել խորոցն Աստուծոյ, վաղվաղակի հեղձամղձելով մատնի սատակման։ Զարքունի ճանապարհ գնասցուք, ոչ խոտորելով յաջ*

------

*Բնագիր Ա. էջ 29 - 30 = Հմմտ. Բ. էջ 130 - 133։*
(1) *Տես Վանատուր, էջ 101 - 103։*



*կամ յահեակ. քանզի հմուտ նաւաստին ոչ երբեք բաղձայ ստերիւրելով անկանել ի յորձանուտն, այլ անսայթաք մաղթանաւք ցանկայ հանդիպել յապահովական նաւահանգիստն։ Իսկ մեզ զի՞նչ գուցէ այլ փափաքելի կամ խաղաղաւէտ նաւահանգիստ՝ եթէ ոչ անսասանելի ճշմարիտ հաւատոց ամրութիւն, յառաքելոցն եւ ի մարգարէիցն աւանդեալ. հաւատալն ի Հայրն ամենակալ, եւ յանսկզբնական Բան նորա եւ ի Հոգին սուրբ։ Աստանաւր յաւէտ զգուշանալով յոլովայեղանակ զաղփաղփուն մըտաց մերոց, զսուրբ Հոգին ձայնեսցուք ի թիկունս աւգնականի զի մի կործանեսցուք զանկանգնելին։ Քանզի ասեմք Ամենակալ զՀայրն եւ յաղթեմք. ոչ առնլով ի միտ այսպիսի ինչ. զի ամենակալն զընաւս պարունակէ, ինքն անբովանդակելի մնալով։ Արդ զի զբոլոր գոյացեալսն լնու յերկնի եւ յերկրի արարչական Բանիւն եւ էակից Հոգւովըն, հաւատամք. բայց թէ ո՛րպէս, ո՛չ առնումք ի միտ. այլ անհետազաւտելի արարչութեանն նուիրեմք զկարաւղութիւնն։*

*Խոստովանիմք զգալն(*) ընթանուրս երկըրպագելով երիցն իսկապէս անձնաւորութեանցն, եւ միում աստուածութեանն։ Ունիմք զաւանդութիւնս զայս, սիրելիք, յերջանիկ առաքելոցն եւ ի ճշմարիտ հարցն, որք ամենակալ քարոզեցին զՀայրն, եւ մի Տէր զՅիսուս Քրիստոս, առ ի զերկոսին աղանդսն ի բաց կտրել, մանաւանդ թէ զբազմապատիկսն։ Քանզի ամենակալն բարբառելով՝ զբազմաստուածութիւնն եւ որք յոլով զյաւիտեանսն առասպելաբանելով տողեն, առ հասարակ տապալեալ*

------

(*) *Թերեւս զգոլն*

կործանեցին, եւ մի Տէր զՅիսուս Քրիստոս վարդապետելով՝ վիրաւորեցին անբժշկելի վիրաւք, որ զանբժշկելին մոլեգնեալք բաժանեն. ա՛յլ ոմն զՅիսուսն գոլով ախտակրելի, եւ ա՛յլ զՔրիստոսն, անախտ եւ անչարչարելի, միշտ մնալով առանց հաղորդութեան երկաքանչիւրոցն, զոր իսկապէս տապաստելով, նշան կանգնեալ յաղթութեան հռչակեցելումն ընդ տիեզերս կաթուղիկէ եկեղեցւոյ։ Եւ նմա զվայելչականսն իմանալ եւ զխոնարհագոյնսըն, զի ճշմարտութեամբ եղեւ մարմին խոնարհութեան մերոյ՝ Բանին Աստուծոյ մարմին. վասն որոյ անորոշաբար յերկնաւորաց եւ յերկրաւորաց, եւ ի վայր սանդարամետիցն ընդունի երկրպագութիւն։ Զի թէ անջրպետութիւն գոյր յանբաժ հաղորդութեանն ոչ վերծանէր Բանն՝ որդի մարդոյ գոլ զինքն, կամ խոնարհական մերկ մարդն՝ Որդի Աստուծոյ զանձն ճոխաբանել, համեմատական ձայնիւ՝ Ես եւ Հայր բա՛յ մի եմք. եւ թէ՝ Որ ետես զիս՝ ետես զՀայր իմ. եւ դարձեալ թէ, Ծանիջիք եւ տեսջիք զի ես ի Հայր եւ Հայր յիս է։

Տեսանե՞ս, զի կերպարան զինքն բացայայտէ, ի լուսոյն ծագեալ մեզ ճառագայթ, եւ ոչ երբեք զերկուց ոմանց չարընթացութիւնս ճառէ կամ զուգաճանապարհութիւն՝ տարբերութեամբ երկաքանչիւրոցն՝ որպէս Պետրոս եւ Յովհաննէս չարընթանալով ի ճանապարհակցութեան կէտն. եւ անյարմար է զերկեակսն մի թարգմանել։ Իսկ փրկաւղին զմեզ Տեառն բազմաւորական անուանքն, ոչ յոլով երեսս կամ զանազան բնութիւնս, այլ մի Տէր ըզՅիսուս Քրիստոս վարդապետելով՝ հանդերձ մարմնովն։

Բայց կամիմ փոքր ի շատէ անցանել բանիւ յաղագս ճառի բնութեանցն, զոր ոմանք չարաչար



ի կիր առեալ վարեցան, զամպաստանութիւնսն ի վայելչապէս ճառաւղսն կամելով թափել։ Բայց նախ ճանաչել պարտ է, զի ոչ յիշատակեցաւ բնութեանցդ անուն՝ ի դէմս քրիստոսասէր ուղղափառաց, այլ չարաչարն պատառմամբ խոստովանողաց, զորս անվրէպ գոյ ասել, քան զբնաւս անաւրինագոյնս եւ տարագրեալս յուխտէ աւետեացն, որք ըստ գոյացութեանց իմն բնախաւսելով, զէակս քննել առին ի կիր, զերկրիս խորհելով ընդ նոյն շաղեալք, ի խլրդենի կուրութեան հաղբս։ Իսկ լուսաշաւեղ պատգամ վարդապետական սահմանին ի նուիրականն առաքելոյ ընկալեալ խրատ, գիտեն լինել ընդ անաւրէնս՝ որպէս զանաւրէն, ըստ հնարաւորութեան ճարտարապետ բժշկաց, որ ի դժընդակ եւ ի խիստ այտմունս մարմնոյ, կամ պէս պէս ախտիցն խղխայթելոց, զվիրացն միայն նկատելով զապաքինութիւն, զհատանողականն եւ զխարմանն եւ զյուժգնակի կսկծեցուցիչ դեղսն, նա եւ յանսրբոցն, առ հասարակ առեալ ի կիր։ Իսկ կազդուրեցելումն եւ յաւէտ առողջականին ոչ եւս նոյնպէս, զի անկարգ է եւ չամբուշ յիմարութեան ձեռնարկութիւն։

Արդ ճշմարիտ վարդապետացն յաղագս այնպիսի իմն գաղափարի տուեալ զանձինս ի ջան, որք բնութեանց պատճառաւ վարէին, զի զմոլեկանաց սոյն աստուածաբանութիւն ի մահ ծնկելոցն յանդիման կացուցանելով, թերեւս շահեսցի զանգիւտն կորուսեալս։ Վասն այսորիկ իսկ զիւրաքանչիւրոցն փութացեալք տալ ապացոյց լինելոցն, ըզբնութիւն տրտմական եւ ախտակիր հոգւոյս մերոյ խոցումն ընդունաւղ շաւշափելի մարմնոյս եւ զիշխանական մտացն։

Քանզի յոլովք ուրացեալք զփրկիչն մեր եւ

զՏէր՝ ունել զճառեցեալս, որպէս Ապաւղինարի թուի եւ նորին հետեւեցելոցն, զորոց փորձ ձախողակի մաքառմանց ի նոցին հակառակութեանց դիւրաւ գոյ ուսանել, զի բոլորովին գտանին տարագրեալք ի հրաշալի փրկութենէն մեզ պարգեւեցելում: Ապա ուրեմն վասն զարտաքինսն պապանձեցուցանել նոցին մարտուցեալք տրամիմացութեամբ, ըստ առաքելական սահմանադրութեանըն լինել ընդ հրեայս, իբրեւ հրեայ, ոչ որպէս ոմանք ի հերետիկոսացն՝ հրէիցն հաւասարել խըտրութեանց եւ հեթանոսաց կռամոլ զոհից, այլ ուղղակի ծանուցեալ զխրատն, ընդ հրեայս՝ նոցին գրովք պատերազմել, ընդ հեթանոսս՝ անհաւաստի կարծողական մատենիւքն: Եւ մի չարաչար զբարիոք գրեցեալս յեղանակել, կամ ընդ սուրբ Կտակացն համեմատելով ճառել զճառս նոցա:

Քանզի բազում ինչ գտանեմք ասացեալ այլուստ երջանիկն Պաւղոսի, զԿրետացիսն հանապազասուտս, զԱրին որ ննջեսդ, եւ զՂուկանացւոցն առասպելաբանութիւն, եւ զայլն եւս: Սակայն ոչ ոք համարձակի ի ճշմարիտ քրիստոնէից, յաղագըս զուգապատուութեան(*) յիշատակել, այլ պիտակապէս. եւ մանաւանդ զանզգամսն, անզգամացն մատենիւք յանդիմանել. զի մեծարանաւք ասել զընդունելն ի պատասխանիս վարդապետութեանն, յանբաւ կործանմանէ ամպարշտութեանն, ի միտսն հայելով ճառիցն՝ նովին կանոնաւ զբնութեանցն պարտիմք ճանաչել ձեռնարկութիւնս, որպէս նոցին իսկ բացայայտեն առաջարկութիւնք: Զի որք զհոգի եւ զմիտս մարդկային ժխտէին ունել ըզփրկիչն մեր, կամ մարմին յոլով բնութեամբք

------

(*) Յօր. զուգապատուութեան.



եղեալ մարտ կռուէին, ամբիծ հաւատոյն ախոյեանի, զանազանութիւնս որոշելով զիւրաքանչիւրոցն: Քանզի այլ բնութիւն է մարմնոյ, եւ այլ հոգւոյ, նոյնպէս տիրական մտացն: Սակայն առ հարկի հիւանդացելոցն ի հաւատս, քննեալ լինիւր այս ամենայն:

Այլ բնախաւսութեամբ ո՞ ոք ի մարդկանէ զաւրեսցէ յանդիման կացուցանել զորչափութիւն մտաց եւ ոգւոց եւ զտարրացոյց երկաքանչիւրոցն յեղանակի, կամ զկապակցութիւն ի մարմնին, զի մի, եւ ո՛չ բազում ասի մարդն: Տեսանե՞ս, քննեալն անքննելի մնայ, ի բազում տարակուսանս արկանելով զքննաւղն: Քանզի ոչ ոք զինքն տեսանեն միտքն, որպէս առաքելականն ստուգաբանէ յայտարարութիւն, թէ Ոչ ոք է որ ճանաչէ զմարդոյն բայց հոգին որ ի նմա իցէ. ապա եթէ յանդգնեալ համարձակեսցի ոք ասել ճշդիւ գիտել, ուրեմն եւ զխորսն Աստուծոյ քննէ, քանզի յերկոցունց է հրաժարեցուցեալ, անկարելի գոլով զխնդրելն. այլ որպէս վերագոյնն ասացաք յաղագս ախտացելոցն ի հաւատս զանասելին խաւսել: Զի թէ չէ հնար ի յոլովից մի եղեալ զմարդն քննել, կամ զմերձակայ ընկերն, կամ զինքն իսկ զլխովին, զիա՛րդ արարչին ոք բաւիցէ լինել հասու, սահման դնելով անհետազաւտելի տնտեսութեանն խորհրդոյ. թէ այդպէս է խորհուրդն, ոչ եւս է խորհուրդ: Տի նա ճոխ եւ վեհագոյն պարտի ասել զինքն սահմանադիր խնդրաւղն, քան զայն որ սահմանն ընկալաւ. զի մեծ է հասու եղեալն քննաւղ սահմանադիրն, քան զայն որ ընդ չափովն անկեալն սահմանըն ընդունի: Տեսանե՞ս զնաւաբեկութիւն անուղղայ հայցման, զայսպիսեաց ասէր երանելին Պաւղոս, թէ նաւակոծեցան ի հաւատսն. քանզի ոչինչ

պարտիմք աւելի ածել զմտաւ, բայց միայն խոստովանել զնա յամենայնի կարող, եւ արարիչ, եւ Տէր։ Եւ զարարչութեանն իսկ աւրինակ, որպէս զմեզ յանէութենէ ի գոյութիւն ստեղծանէ, ինքն միայն գիտէ։ Քանզի չեն բաւական միտք մեր նըկատել զբովանդակն։ Վասն որոյ եւ անվրէպ գոյ ճանաչել զհարցն. զի եւ առ հարկի հիւանդացելոցն ի հաւատս՝ քննեա՛լ լինիւր այս ամենայն, զոր վայելչապէս գոյ ի նոցին տեղեկանալ անստգիւտ վերասացութեանցն։

Քանզի ՅԺԸքն ի Նիկիա գումարեալքն յարիանոսացն ի քակտումն, ոչ կալան փոյթ երկուց կամ յոլո՛վ եւս բընութեանց առնել ընդրութիւն զանազանութեամբ, այլ ըստ վիրաց վիրաւորելոյն բարբառեալ վաղվաղակի, կտրելով զարմատ ժահահոտ փտութեանն, մի բնութիւն ասացին՝ նպատակ ուղղափառութեան կանգնելով յաղթութիւն յերեսս լրբենի լկնողաց, որք ուրացան զՈրդի յէութենէ Հաւր՝ յաղքատութիւն եւ յապականութիւն իջուցին տաժանեալք. նոյն բնութիւն Բանի(*) Հաւր որով ամենայն եղեւ. եւ այս առաւել իմն դիպողագոյն, զի բնութիւն Բանին աստուածութիւնն է, բոլորեցունց դաւանելի է։ Քանզի չէ ոք ի սուրբ Երրորդութեանն յայլմէ էութենէ կամ ի գոյութենէ, մի նետիւ երեքսայրեան սլաքաւորաւ սպանանեն զթշնամին արդարութեան՝ աւետարանելով ըզյաղթութիւն, հանդերձ հրաշալի տնտեսութեանն ճրիւք.(2) Իջեալ, ասէ, մարմնացաւ եւ մարդացաւ եւ ծնաւ կատարելապէս ի Մարիամայ ի սուրբ կուսէն։ Դարձեալ աստանաւր զիջանելն. ոմանք կեր-

------

(*) Յոր. բան։

(2) տնաւրէնութեանն կրիւք, (Բ. էջ 131)։



պարանաւք, եւ ոչ ճշմարտութեամբ վարկանին, զի տեղեացն ի տեղիս փաստաբանելով փոփոխումն, հաճութեամբ իմն եւ կամաւք, զխոնարհմանն տան աւրինակ, եւ ոչ գիտեն թէ որով զայլսն բամբասեն՝ ինքեանք վարմին նովին, յայտ առնելով թէ միով վայրաւ բովանդակին։ Եւ վասն այնորիկ իսկ զայլսն դատապարտեն, հայհոյիչս գոլով ամենայնի, եւ զայն ոչ իմանան թէ տարրական նիւթեղինաց այնպիսի իրք ուրեմն լինել, եւ ի հեռաձիգսն կամաւ միայն մատչելի եւ հաճութիւն ունել անարդիւնաւոր՝ որ ոչ զաւրէ զբոլորն աւարտել։ Իսկ անբովանդակելի էութեանն՝ ո՞ կարէ առնել որոշումն վայրաւք զանազանելով. յայտ է թէ ամբարի՛շտն։ Ո՞չ ապաքէն զերկինս եւ զերկիր ես լնում, ասէ Տէր, եւ երկինք աթոռ իմ են եւ երկիրս պատուանդան ոտից իմոց։ Եւ հեզն Դաւիթ բողոք բարձեալ յուժգնագոյնս գոչէ. Մի մոլորիք, ասէ. զի Աստուած մե՛ծ յերկինս եւ յերկրի է, ի ծովս եւ յա՛մենայն խորս. եւ այս իսկ է ամենակալ. ապա թէ անկարելի գոլ թուի բնութեամբ մարմնանալն եւ յընթանուրսն լինել, գիտասցէ զի եւ հաճութիւն՝ ի հաճելումն աւարտի, ոչ եւս ուրեք բաւելով, բայց ճշմարիտ քրիստոնէին ոչ է պարտ ընդ այնպիսի տղմուտ խոհերս դեգերելով թաթաւել, քանզի մահ գործէ։ Եւ որք ժպրհեցան քննել զխորս Աստուծոյ, իսկապէս չահեցան զսատակումն, այլ հաւատալ մարմնացելում բանին Աստուծոյ եւ ապա զարմացմամբ փառաւորել, որ զծառային կերպարանս առնլով երեւեցաւ եւ է ի վեր քան զհրաշս խոնարհութիւնն։

Այլ Բանն յաշխարհի էր, որպէս աւետարանագիրն իսկ ասէ, եւ աշխարհ նովաւ եղեւ, եւ որպէս էրն, է՛ միշտ ծածկատեսն։ Միայն յայտնի էական

աւետաւոր պատգամացն, եւ մարգարէիցն գուշակութեան երթիցուք զհետ, եւ մի՛ բնութեամբք գուպար եղեալ զանճառելիսն բա՛ցասելով չարաչար աւցտիցեմք։ Իսկ արդ եթէ չէին մոլեգնեալ դասք հերձուածողացն, որք յառաքելոցն ընկալան զքարոզութիւն, արդեաւք չէ՛ին քրիստոնեայ. քանզի բնութեանդ անուն եւ յականջաւլուրս ուրուք չէ՛ր հասեալ, այլ նորին հակառակն։ Կեա՛նքն յայտնեցան, ասէ, եւ տեսաք եւ վկայեմք. քանզի որ էրն առ Հաւր, եւ երեւեցաւ մեզ։ Ո՛վ սքանչելի առաջի եղեալ նպատակիս, որ առաւե՛լ իմն ուշմնագոյնս տայ ընթանալ ի կէտ կոչմանն Աստուծոյ. զի որք զմարմնոյն միայն տեսանէին կերպարան, որպէս էր իսկ ճշմարտիւ եղեալն մարդ, որդի Յովսէփու կոչէին, այլ եւ սամարացի եւ հայհոյիչ։ Իսկ զիմանալին ունաւղք զհոգեւորական աչս՝ Լոյս փառաց եւ նկարագիր էութեան անսկզբնականի Հա՛ւրն խոստովանէին։ Քանզի լուան ի կենսատու փրկչէն, եւ հաւատացին թէ Ես ի Հայր եւ Հայր յիս է։ Ապա զինչ ասիցէ աստանաւր բնութեանցն խնդրաւղ, որ քրիստոնեայ զինքն անուանէ, զո՞ր բնութիւն տեսին աշակերտքն, զաստուածութեանն եթէ զմարմնո՞յն. յայտ է զի զմարմինն տեսին։ Այլ թէպէտ բիւր անգամ կամիցին ուրանալ(3) զիրն բողո՛ք բարձեալ աղաղակէ՝ թէ Շաւշափեցէք զիս եւ տեսէք, զի ոգի, մարմին եւ ոսկերս ոչ ունի, որպէս եւ զիս տեսանէք զի ունիմ, զոր էառն ի զաւակէ Դաւթի։ Քանզի հայեին ի նա որպէս ի մի ոք ի մարդկանէ, այլ Բանն միացեալ էր ի մարմընին, բառնայ ի բաց զխտրութիւնն անջրպետութեան։ Քանզի ոչ ասաց թէ՝ Որ ետես. զաստուա-

------

(3) Տպ. ուսանել։



ծութեանն բնութիւն կամ զմարմնոյն, այլ անորոշաբար ասէ թէ՝ Զիս։ Եւ դարձեալ՝ թէ Ոչ ոք ել յերկինս եթէ ոչ որ էջն յերկնից որդին մարդոյ որ էն յերկինս. ո՞ւր էր որդին մարդոյ յերկինս զորմէ իջանելն ասէ, աղէ ցուցցե՛ն։ Զի թէ երկնուստ էր մարմինն, ոչ յորջորջիւր Որդի մարդոյ, եւ թէ յերկրէ եւ ի զաւակէ Աբրահամու, որպէս խոստովանիմ իսկ պանծալով, զիա՛րդ էր յերկինս, եթէ ոչ ուղղակի իմասցուք յաղագս անբաժ միաւորութեանն։

Արդ եթէ ստուգիւ հաւատամք ասացելում փրկչին եւ Տեառն՝ ի բաց թողցուք զխտրութեանն բաժանմունս, զի մի նմանեալք լիցուք փարիսեցւոցն, թէ Դու մարդ ես, եւ զանձն քո Աստուած առնես։ Զի եթէ որոշութիւն գոյր տարբերութեան, ընդէ՛ր դատապարտին հրեայք, զի նոքա ի մարդն արկին ձեռս՝ նախանձ ունելով յաղագս անտեսանելի եւ անըմբռնելի աստուածային բնութեանն։ Եւ զի լուեալ էր յահեղ ցուցականութենէն՝ թէ Ո՛չ ոք տեսանէ զերեսս իմ եւ ապրի. եւ Տեսիլ նորա անարգ նուազեալ քան զամենայն որդւոց մարդկան, եւ այլ եւս. զի զհրապուրաւղսն պաշտել զաստուածըս աւտարս, յանխնայս հրամայեն սպանանել աւրէնքն, որչափ եւս առաւե՛լ որ զինքն լոյս կոչէ աշխարհի համեմատ Հաւրն, թէ Ես եւ Հայր իմ մի եմք։ Թէ այդպէս իցէ, քան զամենայն նախնեացն բարեպաշտագոյն էր հրեիցն զԲարձն ի մէնջ ասել եւ հան ի խաչ։ Որպէս զայր մի ի հարուածսն գիտէր համբերել ցաւոց, այլ դիրք ընդդէմ սմին ասեն. զի իբրեւ զայր մի որ կայր ի հարուածսըն. նոյն ինքն տեսանողն ասէ. Նորա վիրաւքըն բժշկեցաք ամենեքին, յայտ առնելով զվիրացն Տեառն գերազանցութիւն։ Զազգատոհմն նորա, բայ,

ո՛ պատմեսցէ, զի բառնան յերկրէ կեանք նորա։ Եւ եկեղեցւոյ փողն Պաւղոս, փառաց Տէր կոչեաց ըզխաչելեալն, զոր մարգարէն կանխաւ գուշակեաց, թէ Ինքնին եկեսցէ եւ փրկեսցէ զմեզ. եթէ Ոչ պատգամաւորք եւ ոչ հրեշտակք, այլ Ինքնին Տէր փրկեաց զմեզ։ ԶՔրիստոսի գալուստն գրեթէ ակն յանդիման տեսանելով, մատամբ ցուցանէին, Ահաւասիկ ասէ Աստուած մեր։ Ո՛վ բանի զաւրութիւնն, որ առհասարակ տապալէ զդասս բաժանող երկաբնակ աղանդոյն։ Ո՛չ ասաց, թէ ահաւասիկ աստուածային բնութիւնն՝ կամ մարմնոյն՝ կամ հաճութեանն ասպնջական՝ կամ մարգարէն, այլ անորոշաբար գոչէ. Ահաւասիկ Աստուած մեր, եւ բարիոք ասէ՝ մեր. զի որք մարգարէին լինին ձայնակիցք խոստովանութեան, նոցա՛ է Աստուած եւ Հայր հանդերձելոյ աշխարհին, իսկ պատառաւղացն ըզտնաւրէնութեանն պատմուճան, հատուցանողն զդատաստանս, եւ հատուսցէ։ Վասն որոյ վկայութիւն դնէ վաստակաւքն առաւելեալ նահատակն պահել զպատուիրանն ամբիծ անարա՛տ մինչեւ ի յայտնութիւն Տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի՝ զոր յիւր ժամանակս ցուցցէ, երջանիկն եւ միայն հզաւրեղ Թագաւոր թագաւորաց եւ Տէր տէրանց, որ միայն ունելով, ասէ, զանմահութիւն բնակեալ ի լոյս անմատոյց։

Դարձեալ եւ աստանաւր պապանձեցուցանէ զանջրպետութեանն զանազանաւղս. քանզի Կորնթացւոցն գրէ, զոր ինքն ընկալաւ, թէ Քրիստոս մեռաւ վասն մեղաց մերոց, եւ աստ թէ Միայն ունի զանմահութիւն։ Երկո՞ւս արդեաւք Քրիստոսս քարոզիցէ, զայն ի՛նքն իսկ դաւանեալ կնքէ, թէ մի Տէր Յիսուս Քրիստոս։ Կամ բնութեամբք ինչ վարդապետեսցէ, եւ ո՛չ երբեք, քանզի յոյժ հեռագոյնս



կամին փախչել յայսոսիկ բարբառոյ առաքելոցն եւ մարգարէիցն դասք, զմի Տէր գիտեն զմեռեալն եւ անմահ մնացեալն, որպէս ի միում մարմնի անդամս բազումս ունիմք զանազանեալս գործով։ Զի ոչ աչք լսեն, եւ ոչ ականջք տեսանեն. եւ ոչ ձեռք զլեզւոյն պատկանեն զպատգամաւորութիւն, եւ միանգամայն իսկ անդամքն զնոյն ունին աւրինակ, այլ ո՛չ ոք հակառակեալ, ցկարի իսկ անարգագոյնն ասիցէ եթէ, Զես ինձ պիտոյ. որպէս առաքելականն ստուգէ ցուցականաբար։ Վասն զի բազում անդամովք աւարտեալ մարմին՝ կոչի մարդ. քանզի բազումքն մի մարմին են եւ մարդ։ Ա՛յսպէս զփրկչին մերոյ եւ տեառն իմասցուք՝ որպէս հաւատոյն ուսուցանէ կարգ։ Բանն Աստուած մարմնացաւ եւ մարդացաւ ասէ, զի միաւորեաց աստուածավայելչաբար զմարմինն խոնարհութեան մերոյ բովանդակ զհոգի եւ զմարմին, զի ճշմարիտ եղեւ մարմին Բանին Աստուծոյ։ Վասն այնորիկ ասի անտեսանելոյն տեսանիլ, եւ անշաւշափելոյն շաւշափիլ, խաչիլ, թաղիլ, եւ յառնել յաւուր երրորդի. քանզի ինքն էր չարչարելին եւ անչարչարելի, անմահ, եւ որ զմահն ընկալաւ։ Ապա թէ ոչ, զի՞արդ լինէր տուեալ Հաւր զՄիածինն, կամ փառաց Տէր գոլ խաչեցելումն։ Այս է ի բազում անդամոցն մի՛ մարմին, թէպէտ եւ զնոյն գործ չունին։ Զի ոչ հոգի ըստ ինքեան խոցումն ընդունի, եւ ոչ մարմինն տրտմութիւն, եւ Բանն զերիվերոյ եւ անընդունակ երկաքանչիւրոցն։ Եւ է ամենայնիւ տարեալն եւ անտանելին, եւ վասն այնորիկ ասի մարդ եւ Աստուած, ընդունելով սահման Աստուած մարդացեալ։ Ապաքէն թէ զմի ինչ ի բաց բառնայցեմք յանդամոցն անջրպետելով, կրճատութիւն է թշնամանելի։ Մի թշնամանեսցուք որպէս հրեայք, տա-

բաւրէն անջատմամբ՝ զաստուածավայելչաբար միութիւնն։ Ցիսուն ամ չեւ՛ եւս է (բան) քո եւ զԱբրահամ տեսե՞ր, եւ փոխանակ զընդդիմագոյնսն լուան· Յառաջ քան զլինելն Աբրահամու եմ ես։ Արդ ո՞ւմ տայցեմք իրաւունս բաժանորդ լինելով մասին· աւետարանչի՞ն, որ զտէրունականն երկրորդէ զպատասխանիս, թէ հրէի՞ցն։ Քանզի մարդ տեսին, զծնունդն անգամ գիտելով, վասն ա՛յնորիկ իսկ փութացեալ, մատնել ի սպանդ խաչի, զի Աստուած զինքն քարոզէր։

Իսկ եթէ Բանն էր մարմին եղեալ բնութեամբ եւ Բան ինչ էր մարմինն, նոքա զմարդն ուրացան մահու մատնելով։ Բարեպաշտագոյն պարտ է համարել զգործն, զի ունէին հրամանս Տեառն Աստուծոյ միայն երկիր պագանել եւ պաշտաւն մատուցանել· զՄի առնիցես քեզ նմանութիւն յերկնի եւ յերկրի, եւ ի ջուրս։ Ի յերկինս ասելով՝ ի լուսաւորաց հրաժարեցուցանէ, եւ յայլ եւս զաւրութեանց պաշտամանէ· իսկ յերկրի՝ ի մարդոյ եւ առհասարակ ի սմա բնակելոցս, շնչական եւ անշունչ արարածոց տարերբն հանդերձ, համազոյգ նմին եւ ջրոց· թէ որ ինչ միանգամ ի դոսա է նմանութիւն համարելով արարչին եւ երկրպագել անաւրէնութիւն է· Այլ ասեն իւր համարէր զերկրպագութիւն Բանն· Նոյնպէս եւ զթշնամանս կամաւք եւ ոչ բնութեամբ գոլով ի մարմնի, որ ի վերայ այլոց սրբոցն կան մեծարանք։ Ոչ զձեզ անարգեցին, ասէ Աստուած ցՍամուիէլ, այլ զիս մերժեցին· եւ զՄովսէս, ասէ, Աստուած Փարաւոնի, եւ զնոսա առ որս բանն Աստուծոյ եղեւ, Ես ասէի թէ աստուածք իցէք, եւ Տէրն ցաշակերտսն, թէ Որ զձեզ ընդունի զիս ընդունի։ Այս է համարելն, որք յորջորջանս միայն ընկալան, եւ ոչ եւս գտանեմք ուրեք Աս-



տուած քարոզեալ զնոսա։ Զի Մովսէս, գլուխ գոլով մարգարէիցն, եւ բոլոր մարգարէքն, որ ի Մովսէսէ եւ այսր խաւսեցան, ոչ աստուած, այլ հաւատարիմ ծառայ զնա կոչեցին։ Զի որ պիտակաբարն ընկալաւ անուն յորջորջանաց վրէժ առնուլ ի Փարաւոնէ, փոխարկի դարձեալ հաւատարիմ մարգարէ· Նա զի ընկալաւ իսկ պատիժ պատուհասից յաղագս բամբասական ջուրցն, ոչ մտանել յերկիր պարգեւացն։

Իսկ ծնիցեալն ի կուսէն, Եմմանուէլն Ա՛ստուած եւ հզա՛ւր, իշխա՛ն, եւ ոչ գոլ ումեք կարողութիւն զնորայն պատմել զազգատոհմ, եւ լոյս Երուսաղէմի, եւ ծագումն փառաց Տեառն, եւ ի քեզ Տէր յայտնեսցի, եւ ի գալ անդր արանց Սաբէացւոց, ի քեզ աստուած է, եւ սա է Աստուած մեր, ընդ որում ոչ համարեսցի ա՛յլ, տուաւղն զիմաստութիւն Յակովբայ, այսինքն բարեպաշտելի աւրէնս։ Եւ զնոյն ասէ յերկրի երեւելով ընդ մարդկան շրջել· եւ ահաւասիկ Աստուած մեր երեւեալ արեգակն ի բարձանց, ունելով բժշկութիւն ի թեւս, լուսաւորել զխաւար մեր, եւ ոգի երեսաց մերոց Տէր Քրիստոս, որ վերծանէ զփչումն առաջին մարդոյն։ Նաեւ ի մառնամուտ եւ ի վիմափոր դբին զնոյն ազդէին զՅարիցէն Աստուած, եւ Զարթիր ընդէր ննջես Տէր, եւ Զարթիր սաղմոսարան եւ քնար· եւ Զարթեաւ որպէս ի քնոյ Տէր։ Քանզի Տէր զմարդացեալն եւ ամենակալ գիտէին մարգարէքն։ Ահաւասիկ ես եկից եւ բնակեցայց ի միջի քո, ասէ Տէր ամենակալ եւ Ծանիջիք թէ Տէր ամենակալ առաքեաց զիս։ Ամենակալ զԱմենակալ առաքէ, այսինքն, Հայր զՈրդի։ Տեսանե՛ս, զի ոչ է ասացեալ թէ ամենակալն առաքեաց զամենակալն համարեալ, եւ ո՛չ զՏէրն համարեալ, եւ ո՛չ զԱս-

տուածն։ Թէ պա՛րզ բազմապատիկն ոք քննեսցէ զճառս, որ յաղագս փրկչին մերոյ, մարգարէականն պարունակէ ասացեալ, նոյնպէս եւ առաքեալքն, որոց խաւսեցաւ թէ Որ զձեզ ընդունի, զիս ընդունի, ոչ ուրեք տեսանեմք համեմատել զինքեանս անհամեմատական էութեանն։ Ո՛չ եթէ զանձինս ինչ քարոզեմք, ասեն, այլ զՅիսուս Քրիստոս Տէր, եւ զմեզ ծառայս ձեզ վասն Քրիստոսի· եւ թէ Նա՛ է ճշմարիտ Աստուած եւ կեանք յաւիտենականք, եւ Ակն ունիմք յայտնութեան մեծին Աստուծոյ եւ փրկչին Յիսուսի Քրիստոսի, եւ Յորոց Քրիստոս ըստ մարմնոյ, որ է ի վերայ ամենեցուն Աստուած, հանդերձ մարմնովն գիտելով զնա Աստուած, եւ լոյս փառաց եւ նկարագիր էութեան նորա, եւ չըհամարել ումեք յափշտակութիւն զգոլն հաւասար Աստուծոյ։ Զի թէ համարելով է կամ յափշտակութիւն է, բռնագբաւսութեամբ կամ պարգեւական տուր, եւ զերկաքանչիւր յաստուածային էութեանն իմանալ մեծագո՛յն ամպարշտութիւն է։

Այլ գիրք զսորին հակառակն ասեն, էակից Հաւր ցուցանելով թէ Բանն է՛ր առ Աստուած, եւ իսկոյն զարարչականն յարէ ի նոյն, թէ Աստուած էր Բանն եւ Զնա Հայր կնքեաց Աստուած, այսինքըն սքանչելի վկայութեամբն, որ ահեղ որոտմամբն բարբառեցաւ, զի վկայել՝ կնքել փոխարկի։ Եւ Թովմաս զ՛ի հրէից խոցեալն Տէր եւ Աստուած խոստովանեաց, զիշխանականն եւ զարարչութեանն անուն եւ չգտանե՛մ ուրեք զհամարեալդ դասակից։ Զի համարեալդ՝ զերկուց կերպարանաց ցուցանէ ընդրութիւնն, որպէս այն թէ Որ զիս ընդունի, զառաքիչն իմ ընդունի, եւ ահա առաքիչ հանապազ զՀայր ծանուցանէ, թէ Որ առաքեացն զիս Հայր ընդ իս է. եւ չասաց երբեք թէ Որդի առաքեաց։



Արդ մեք զի՛նչ ասասցուք կամ զո՛ր ընտրիցեմք, մարգարէի՞ցն եւ առաքելոցն հաւանիցիմք պատգամաց, որք Աստուած եւ Տէր փառաց եւ ամենակալ դաւանել ուսուցանեն մեզ զխաչեալն, թէ կռուասէր պոռոտաբան, Աստուծոյ քայքայութեանց եւ խնդրոց, եւ սոսկալի բաժանմանց։ Այլ մի՛ լիցի· քանզի Բանն մարմնոյն է բան, եւ մարմինն՝ Բանին մարմին· ոչ կարծեաւք կամ համարելով՝ պատւոյ միայն ճոխութեամբ, այլ ճշմարիտ միաւորութեամբ։ Քանզի հանապազ քարոզի ընթանուր ի կաթուղիկէ եկեղեցիս, թէ Գալոց է նովին մարմնով, զոր երանելի առաքեալքն տեսին երթեալ յերկինս, եւ զոր տեսինն՝ աւետարանագիրն վկայէ, թէ Ի սկզբանէ ականատեսք եւ սպասաւորք եղեն Բանին։ Ընդ որս եւ մեզ եղիցի զերանաւորական պատգամսն լսել, թէ Երանի՛ որոց ո՛չ իցէ տեսեալ զիս եւ հաւատասցեն։

Եւ այս է հաւատն, եթէ զոր տեսին առաքեալքըն եւ շաւշափեցին զԲանն կենաց, Նա՛ է ճշմարիտ Աստուած եւ կեանք յաւիտենականք, զոր ցանկային տեսանել գոնեա ընդ աղաւտ հրեշտակքն։ Եւ որք ոչ հաւանին այսմ, զխնդիրսն յուզաւղքն, եւ ոչ զտընտեսութիւնն Աստուծոյ հաւատովք, փախիցո՛ւք ի ստանուն գիտութենէ նորաձայն բանից նոցա՝ զարշելի՛ եւ պե՛ղծ համարելով, եւ մի եղիցուք հաղորդք չար գործոց նոցա, զի յերեւել փրկչին մերոյ հայրական փառաւքն, արժանաւորս արասցէ գթութեամբ իւրով որպէս եւ էն, ըստ աւետարանչին, ընդունելով ի բաւական աջոյն զանվախճան պարգեւացն զեղմունս, եւ միշտ փառաւորել զանսկիզբն Հայր՝ էակից Որդւովն, եւ սուրբ Հոգւովն յաւիտենից յաւիտեանս· ամէն։

---------

## ԼԱ

## ԹՈՒՂԹ ԶՈՐ ԱՐԱՐ ԱՆԱՍՏԱՍ ԹԱԳԱՒՈՐՆ ԸՆԴԴԷՄ ԱՄԵՆԱՅՆ ՀԵՐՁՈՒԱԾՈՂԱՑ

*Քանզի մի է սահման հաւատոց զոր ունիմք յ· ՅԺԸ սուրբ հարցն որք ի Նիկիա ժողովեցան· այն որ ցուցանէ մեզ թէ մի ի սուրբ Երրորդութենէն էր Տէր մեր Յիսուս Քրիստոս Բանն Աստուծոյ, այն որ մարմնացաւն ի սուրբ եւ յԱստուածածին կուսէն Մարիամայ եւ մարդ եղեւ։ Զայս սահման ընկալան եւ սուրբ Հարքն ՃԾքն, որ ի Կոստանդինուպաւլիս ժողովեցան վասն սրբոյ Հոգւոյն։ Ըստ նմին եւ երանելի ժողովն որ յԵփեսոս ժողովեցան եւ նզովեցին զՆեստորիոս հերձուածող եւ զամենայն որ ըստ նմա խորհին եւ հաւատան, որպէս եւ Թուղթ որ կոչի Հենոտիկոն Զենոնի ուղղափառ թագաւորի, նոյնպէս եւ Թուղթն երանելոյն Յովհաննու եպիսկոպոսապետին Աղեքսանդրի՝ որ ցուցանեն այսպէս· յորում նզովէ զտումարն Լեւոնի եւ զժողովն Քաղկեդովնի, որ անցին ընդ նոյն սահման, եւ երկուս բնութիւնս զկնի միաւորութեանն սահմանեցին վասն Քրիստոսի։*

*Եւ մեք որպէս ընկալաք ի սուրբ ճշմարիտ հարցն, ոչ ասեմք երկուս բնութիւնս, բայց յերկուց մի բնութիւն, որ մարմնացաւ Աստուածն Բանըն խոստովանիմք, եւ նզովեմք զժողովն Քաղկե-*

------

*Բնագիր Ա· էջ* 277 - 278։



*դոնի եւ ընդ նմին եւ զԼեւոն եւ զտումարն նորա եւ զայնոսիկ որ երկուս Քրիստոս եւ երկուս որդիս ասեն, մի յառաջ քան զյաւիտեանս, եւ միւս՝ որ ի վերջին ժամանակս։ Եւ որք ասեն զկնի խոստովանելոյ զմիաւորութիւնն՝ երկուս բնութիւնս, եւ երկուս դէմս, եւ երկուս աւրինակս, եւ երկուս յատկութիւնս, եւ երկուս զանազանութիւնս, եւ կամ երկաքանչիւր բնութեան գործք, խոտե՛մք եւ նզովե՛մք, վասն զի ընդդէմ երանելոյն Կիւրղի երկոտասան գլխոցն գտանին։*

*Նզովեմք զՊաւղոս Սամուստացի, եւ զԴէոդորոս, եւ զԹէոդորիոս, եւ զՆեստորիոս, եւ զԹէոդորիտոս, եւ զՂուլթարիս, եւ զԱնդրէաս, եւ զՀիբաս, եւ զԿիւրէ, եւ զՅոհան Եգեացի, եւ զԲարծումա, եւ զԱկակ պարսիկ, եւ զԱպողինարիս, եւ զԵւտիքոս, եւ զՍաբելլիոս, եւ զԱրիոս, եւ զԵւնոմիոս, եւ զՄակեդոնիս, եւ զՄանի, եւ զՄարկիոն, եւ զԲարդէծան, եւ զպիղծ ուսումս նոցա, եւ որք որպէս զնոսայն հաւատան՝ եթէ ոչ ապաշխարիցեն, եւ զամենայն աղանդս որք մարտեան եւ որք մարտնչին ընդդէմ ուղիղ հաւատոյ կաթուղիկէ առաքելական եկեղեցւոյ, եւ զամենայն որ ոչ խոստովանին եթէ Աստուածածին է Մարիամ սուրբ կոյսն, եւ ի նմանէ մարմնացաւ եւ եղեւ մարդ անփոփոխելի եւ անմեկնելի, այն որ հաւասար եւ Որդի է էութեանն Աստուծոյ Հաւր, եւ Որդի բնութեան մերոյ նոյն ըստ մարմնաւորութեան։ Եւ մի է որ յառաջ քան զմարմնաւորութիւնն, նոյնպէս եւ զկնի մարմնաւորութեանն, որպէս յառաջըն ասացաք· մի բնութիւն մարմնացելոյ Աստուծոյ Բանին խոստովանիմք։ Զարչարեցաւ որպէս զմարդ, եւ իւր չարչա-*

*րանաւքն եբարձ զչարչարանս մեր. եւ մեռաւ, եւ մահուամբ իւրով սպան զմահ. եւ մնաց անչարչարելի եւ անմահ որպէս զԱստուած: Նմա եւ Հաւր որ առաքեաց զնա, եւ սուրբ Հոգւոյն փառք յաւիտեանս յաւիտենից ամէն:*

**Զմեղապարտ գրողս զԹումաս եւ զծնաւղսն իմ յիշեցէք ի Քրիստոս Աստուած. ո՞վ դասք ուղղափառաց:**

--------

Ի լուսանցս գտանի գրեալ.

*Մինչդեռ գրեցաւ Թուղթս այս զՄաւրկայ Գժաներորդ ամն Թագաւորութեանն ՁԹ ամ է. եւ ի Քաղկեդոնի ժողովոյն ՃԽԴ ամ էր(1) || ի հայրապետութեան Հայոց Գէորգեայ, եւ ի Թուին ՅԻ իշխանաց իշխա . . . Ա. . . .*

--------

(1) *Ըստ այսմ սոյն Թուղթը գրուած [=ընդօրինակուած] է 595 Թուին: Անաստաս Թագաւոր գրած էր զայն 506 Թուականին: ---- Երկրորդ մասը կը վերաբերի Փոտի Թուղթին:*

  



## ԼԲ

## ԹՈՒՂԹ ՀԱՅՈՑ Ի ՊԱՐՍՍ, ԱՌ ՈՒՂՂԱՓԱՌՍ

*Սրբասէր եւ ճշմարտասէր, եւ սուրբ հաւատոց, եւ առաւել Քրիստոսին ծառայեցելոց, տէրանց մերոց եւ եղբարց սրբոց հաւատակցաց: Տէր Դանիէլ Քարմա եպիսկոպոս, եւ Մաղքայ եւ Շաւտայ քորեպիսկոպոսունք, եւ Աբայ եւ Մարի երիցունք, Միհրորմիզդ եւ Աբդահայ սարկաւագունք, եւ ազատ մարդիկ, Արտաշիր եւ Բրատոկ, եւ այլ քրիստոնեայք սուրբ հաւատացեալք յՌըմբան շահաստանի, ի Գարմեկան շահաստանի, ի Կարմենանան նահանգ: Յոհան երիցապետ, եւ ազատ մարդիկ, եւ Վարազպանդակ ի Մաղոկան, տաճկաց պահապետ, եւ Հարթայ ի Մուշեղեան, եւ այլ քրիստոնեայք սուրբ հաւատացեալք, որք ի Պերոզշապուհ ի տաճկաց քաղաքի՝ Յովնաթան անապատաւոր, եւ այլ սուրբ հաւատացեալք քրիստոնեայք յԱսորեստանի եւ ի Խուժաստանի, եւ ի Հերթ եւ ի Նոնաբարսադէ, Որիկնի անապատաւոր, եւ Սահակ՝ Բղադ շահաստանի, քորեպիսկոպոս. Յակոբ Բեղ՝ եւ կաթարա, եւ որ այլ սուրբ հաւատացեալ քրիստոնեայք յԱսորեստան ի Մծբին նահանգ, եւ Բասադէ Իմաթեան անապատաւոր, եւ ազատ մարդիկ, Գնիբա, եւ այլ հաւատացեալ քրիստոնեայք, Նոշիրականին ի Նինուէ նահանգ, եւ առ ամենայն եպիսկոպոսունս,*

------

*Բնագիր Ա. էջ 41 - 47:*

եւ առ քորեպիսկոպոսունս, եւ առ երիցունս, եւ առ սարկաւագունս, եւ առ անապատաւորս, եւ առ աշխարհականս, առ ազատս, եւ առ գեղջաւագս, առ մեծամեծս եւ առ փոքունս, եւ առ ամենայն հաւատացեալս Պարսից աշխարհի, որ ընդ Կաւատայ արքայից արքայի ընդ իշխանութեամբ էք։

Ի Մեծաց Հայոց ի Բաբգենայ ի Հայոց Եպիսկոպոսապետէ, եւ ի նորին աթոռակցաց, ի Մերշապհոյ Մամիկոնէից եպիսկոպոսէ, ի Ներսեսէ Մարդպետական եպիսկոպոսէ, ի Տեառնտրոյ Հարքայ եպիսկոպոսէ, ի Սամուելէ Բզնունեաց եպիսկոպոսէ, ի Փովկասայ եւ ի Սամուելէ Բասենոյ եպիսկոպոսաց, ի Թաթլոյ Արշարունեաց եպիսկոպոսէ, ի յԱղանայ Խոռխոռունեաց եպիսկոպոսէ, ի յԱտատեայ Տայոց եպիսկոպոսէ, ի Տաճատայ Արշամունեաց եպիսկոպոսէ, ի Դանիելէ Ռշտունեաց եպիսկոպոսէ, ի Յափկանէ Մոկաց եպիսկոպոսէ, ի Խաբբայ Արծրունեաց եպիսկոպոսէ, ի Շահեէ Ամատունեաց եպիսկոպոսէ, ի Սահակայ Պալունեաց եպիսկոպոսէ, ի Պաւղոսէ Գնունեաց եպիսկոպոսէ, ի Մովսեսէ Զարեհուանի եպիսկոպոսէ, ի Դաւթայ Տմորեաց եպիսկոպոսէ, ի Դանիելէ Անձեւացեաց եպիսկոպոսէ, ի Թէմրայ Մեհնունեաց եպիսկոպոսէ, զնոյն համարձակապէս բերելով զողջոյն, յաստուածապաշտ եւ յուղղափառ ճգնաւորաց եկեղեցւոյ, երիցանց եւ վանականաց, եւ միայնացեալ մոնազանց, եւ ի բարեպաշտ պետաց եւ իշխանաց Հայաստան աշխարհիս, որ բերեն զուղղափառ հաւատ յինքեան, Վարդ Մամիկոնեան, Սահակ Կամսարական Արշարունեաց տէր, Սպանդիատ Հայոց ասպետ, Արտաշիր Հայոց մախազ, Ջիկ Վանանդայ տէր, Մանգեն Ամատունեաց տէր, Տիրոտ Պալունեաց տէր, Վարազներսեհ Դաշտակարանի տէր,



Վստամ Ապահունեաց տէր, Գնէլ Գնունեաց տէր, Բաշխեն Վահեւունեաց տէր, Արտաշիր Սիւնեաց տէր, Ատրներսեհ Ռշտունեաց տէր, Արտաշիր Առաւեղինից տէր, եւ յա՛յլ յամենայն յուղղափառ իշխանաց ի մեծաց եւ ի փոքունց, եւ որք ընդ նոցին իշխանութեամբ են, ի սուրբ կաթուղիկէ եւ յառաքելական եկեղեցւոյ, որք զճշմարիտ հաւատս ունիմք, ի Հայր, եւ յՈրդի, եւ ի սուրբ Հոգին, յամենայն Հայաստան աշխարհէս, յեպիսկոպոսաց, յերիցանց, եւ ի վանականաց, յազատաց եւ ի շինականաց, առ ձեր ուղղափառ սրբութիւնդ, սիրովն Քրիստոսի ուրախանալ։

Վասն զի ութեւտասաներորդ ամի Կաւատայ արքայից արքայի, մինչդեռ ես Բաբգէն Հայոց եպիսկոպոսապետ, ամենայն եպիսկոպոսաւք եւ վանականաւք եւ նախարարաւք ժողովեալ էաք յԱյրարատ գաւառ, յոստանն Հայաստան աշխարհիս ի Դուին քաղաք, եկեալ հասին առ մեզ արք ոմանք, որք ասացին զինքեանս լինել ի կողմանցդ յայդցանէ, ի Տեսբոնէ եւ ի Գարմիկանէ, եւ ի Վեհարտաշիր նահանգէ, ծանուցանելով մեզ ստուգագոյն զանուանս եւ զտեղիս բնակութեան իւրեանց, Սամուիէլ Մահարձոյ վանաց երէց ի Կարմիկան նահանգէ, Շմաւոն Բերդոշմայ երէց, եւ Ախայ երէց, ի Պերոզշապուհ ի Տաճկաց քաղաքէ, ի Վեհարտաշիր նահանգէ, եւ Մարայ դպիր, եւ այլ ընկերք նոցին։ Եւ կացեալ յատենի յանդիման ամենեցուն, ունէին գիր ի ձեռս՝ որով խոստովանէին ի վերայ ուղիղ հաւատոյ, ընդ բազում աշխատութեամբ զանձինս արկեալ, առ ի գտանել զճշմարիտ եւ զուղղափառ հաւատ սրբոյ Երրորդութեանն։ Եւ վասն նորին համարձակութիւն առեալ Թագաւորական հրովարտակ, զԿաւատայ արքայից արքայի, յորում առեալ

իշխանութիւն, զի ըստ կամաց եւ խնդրոյ ստուգութեան քրիստոնէութեան, հաւատ յանձինս հաստատեսցի ըստ կանոնի եւ գիտութեան աշխարհին Հոռոմոց եւ Հայոց, Վրաց եւ Աղուանից, եւ մի՛ վայրապար բանիւք եւ աւելորդ իմացուածովք խրամատեսցի եւ սահման առ ի Քրիստոս հաւատացելոց: Եւ զպատճառս գալոյն առ մեզ ուսուցին ա՛յսպէս. եթէ ծառա՛յ եմք մեք Կաւատայ արքայից արքայի, եւ վասն ամենայն բարւոյ թագաւորին եւ որք ընդ թագաւորութեամբ նորա, հանապազ փոյթ ունիմք յանձինս ըստ կարի մերում խնդրել յԱստուծոյ զառողջութիւն եւ զխաղաղութիւն եւ զերկայնակեցութիւն, եւ որ միանգամ այսպիսի բարիք են, զի շնորհեսցի յԱստուծոյ: Եւ հաւատ ունիմք զայս ի նախնեաց հարց մերոց զճշմարիտ երեք հարիւր տասն եւ ութիցն ի Նիկիայ ժողովելոցն, ի ժամանակս թագաւորութեան երանելոյն Կոստանդիանոսի, զոր ամենայն տիեզերք ընկալան, եւ ի նոյն հաստատեցաւ սուրբ եւ ընթանրական կաթուղիկէ եկեղեցի, զոր եւ ի սկզբանն իսկ տերունեան բարբառն վարդապետեաց աշակերտելոցն ասելով. Գնացէք այսուհետեւ աշակերտեցէք զամենայն հեթանոսս, մկրտեցէք զնոսա յանուն Հաւր եւ Որդւոյ եւ սրբոյ Հոգւոյն, որ բարձր եւ հռչակաւոր կնիք եդաւ ի վերայ ամենայնի: Զայս հաւատս ստուգեալ ունէր աշխարհս մեր միաբանութեամբ, եւ ոչինչ ամենեւին արատաւորութիւն յայտնի երեւեցաւ, մինչեւ ի քսաներորդ եւթներորդ ամին թագաւորութեանն Պերոզի: Իսկ ի ժամանակին յայնմիկ երեւեցաւ խմոր չարութեանըն, որ էր ծածկեալ յանձինս անսուրբս, որք եւ սկսան այնուհետեւ պղտորել զյստակ հաւատ ճշմարիտ Երրորդութեանն, պատրել զանձինս անհաս-



տատս մարմնասէր ցանգութեամբք, եւ տարածեցաւ երկբայութիւնն, եւ հիւանդացան բազումք զախտ անհնարին, մինչեւ ի տեղիս տեղիս ժողով արարեալ գլխաւորաց հայհոյութեան հերձուածոյն, երբեմն ի Գունտշապուհ, երբեմն յԱսորեստանի, Ակակ եւ Բարծումա, եւ Մանի, եւ Յոհանան, եւ Պաւղէ, եւ Միքա, եւ այլք նոցին հաղորդք, զՆեստորի եւ զԴիոդորի. եւ զԹէոդորոսի միաձայնելով զմի ասացուածս եւ զամպարշտութիւնս անձանց. եւ այսու ձեռնարկութեամբ յամենայն ժամ առաջի իշխանաց եւ դատաւորաց բազում աշխատութիւն եւ վտանգս հասուցանեն յանձինս մեր, եւ այլոց ամենեցուն ուղղահաւատից, որ յաշխարհին մերում են: Եւ ոչ կարացեալ մեր տանել այնպիսի չարահնար(1) եւ դառն հայհոյութեան, փութացաք առ թագաւորս ցուցանել, հասաք եւ առ ձեզ վասն նորին վտանգի եւ նեղութեան, գտանել աւգնականութիւն վկայութեամբ աստուածային գրոց, որպէս զի հաստատուն կացցեն եւ անշարժ՝ սրբոց հարցն աւանդութիւնք եւ պատուէրք, եւ մի՛ հանապազորդ նեղութիւնք, հոգեկան եւ մարմնական տարակուսանաւք վասն այդպիսի իրաց, տառապեցուսցեն զմեզ:

Տեղեկացեալք զայս ամենայն առ ի դոցանէ, է ինչ որ բանիւ, եւ է ինչ որ գրով, զոր եւ ինքնատեսք եղաք, երանելիս այսուհետեւ համարիմք զանձինս ձեր, ո՛վ աստուածասէրք, որք զբարի նախանձ նախանձեցայք, եւ զերանելի եւ զցանկալի կեանս անձանց ընտրեցէք ուղղափառ հաւատով եւ կատարեալ վարուք առաքինութեան, որք զփափաքելի զբարբառ փրկչին զանազա՛նս իրողութեամ-

------

(1) Տպ. չար անհնար:

բըն զԱստուած երեւեցուցէք տեսաւղաց։ Եթէ անարգելով զընչիցն փափաք, եթէ արհամարհելով զփառս մարդկեղէնս, եթէ աղքատանալ վասն Քրիստոսի, եթէ սրբութեամբ սրտի տեսաւղ լինել Աստուծոյ, եւ եւս որ առ նոսին կատարելագոյնք ի Քրիստոսէ, եւ քրիստոսասիրաց աւետարանել։ Արդ հարկաւոր է եւ մեզ զըղխումն սրբոյ հաւատոյն, զոր երանելի հարցն ի Նիկիա ժողովելոցն, ՅԺԸ եպիսկոպոսացն ընկալեալ պարկեշտութեամբ, եւ առանց գայթակղութեան զսոյն աւետարանել, ընդ որս պատահեաց ըստ աստուածային շնորհաց ի սուրբ ժողովին, երանելի հայրապետն մեր Առիստակէս, եւ ընկալեալ ի սուրբ հարցն բոլորովիմք զհաւատն ճշմարտութեան, եբեր յաշխարհս ճշմարտութեամբ։ Զոր առեալ ի նմանէն Հայոց, եւ նովին հաւատովք լուսաւորեցաք, եւ ի նմանէ յաջորդեցաւ մինչեւ ցայժմ ձեռնադրութիւն քահանայապետութեան աշխարհիս Հայոց, եւ կամք հաստատուն ի նմին։ Եւ այսպէս, հաւատա՛մք ի մի Աստուած· Հայր ամենակալ, ամենեցուն երեւելեաց եւ աներեւութից արարիչ, եւ ի մի Տէր Յիսուս Քրիստոս, յՈրդին Աստուծոյ, ծնեալ ի Հաւրէ, Միածին, այսինքն է ի գոյութենէ Հաւր։ Աստուած յԱստուծոյ, լոյս ի լուսոյ, Աստուած ճշմարիտ յԱստուծոյ ճըշմարտէ, ծնեալ եւ ոչ արարեալ· նոյն էութիւն Հաւր, որով ամենայն ինչ եղեւ յերկինս եւ յերկրի։ Որ վասն մեր մարդկան, եւ վասն մերոյ փրկութեան, էջ եւ մարմնացաւ ի սրբոյ կուսէն Մարիամայ· չարչարեցաւ վասն մեղաց մերոց· մեռաւ եւ յերրորդ աւուր յարեաւ· ել յերկինս, նստաւ ընդ աջմէ Հաւր· գայ դատել զկենդանիս եւ զմեռեալս։ Եւ վասն այնոցիկ ոյք ասեն, էր երբեմն զի չէր, եւ մինչչեւ ծնեալ էր՝ չէ՛ր, եւ զի յոչնչէ եղեւ, կամ



իբրեւ յայլմէ էութենէ կամ ի գոյութենէ համարին թէ իցէ, կամ փոփոխելի, կամ անցանելի զՈրդին Աստուծոյ, զնոսա նզովէ՛ կաթուղիկէ եւ առաքելական եկեղեցի։

Այսպէս հաւատացաք, որպէս մկրտեցաք, եւ սուրբ հարքն կանոնեցին, եւ այլ սահման՝ արտաքոյ այսորիկ կանոն ոչ է, եւ ոչ ընկալաք, եւ ոչ ընդունիմք։ Քանզի եւ վարդապետն երկնային Սաւղոս յո՛յժ զգուշացուցանէ զմեզ յերկրաւոր իմաստից մարդկան եւ ի մոլար խաբէութենէ։ Բազում են վկայութիւնք սուրբ գրոց, յոլովագոյն եւ սրբոց հարց ուղղափառաց լուսափայլ վարդապետութիւնք, որով լուսաւորեալք լուսաւորին, եւ զգենուն մխիթարութիւն վհատեալքն հոգւով, ի սէր, եւ ի յոյս, եւ ի հաւատս սրբոյ Երրորդութեանն, հիմնաւորեալ որ կենդանութիւն է, եւ պաշտպանութիւն հոգւոյ եւ մարմնոյ։ Զայս հաւատ Հոռոմք եւ մեք Հայք եւ Վիրք եւ Աղուանք ունիմք։ Բայց որպէս ասացին առ մեզ առաքեալքն առ ի ձէնջ եղբարք Սամուէլ վանական, Շմաւոն երէց, եւ այլ նոցին ընկերք, եթէ Բաբէ՝ Ասորեստան կաթուղիկոս, եւ այլ որ եպիսկոպոսք են նեստորիանոսք՝ զայս խաւսին· երկուս Որդիս ասեն լեալ Աստուծոյ, զմին Աստուածն Բանն հաւասար Հաւր, որ էջն յերկնից, եւ այլն Յիսուս՝ մարդ մահկանացու նման մեր, որ ծնաւն ի Մարիամայ, եւ վասն զի արդարացաւ աւելի քան զամենայն մարդ՝ պատուեցաւ, եւ շնորհաւք կոչեցաւ Որդի Աստուծոյ, անուամբ միայն, եւ ոչ Որդի Աստուծոյ, եւ ոչ հաւասար Հաւր· այլ մարդ էր արարեալ մահկանացու որպէս զմեզս։ Եւ վասն զի աւգնեաց նմա Հոգին սուրբ, կարաց յաղթող լինել սատանայի եւ ցանկութեանց, եւ վասն արդարութեան նորա եւ վասն բարի գործոց

*արժանի եղեւ շնորհի, լինել տաճար Աստուծոյ Բանին։ Եւ ասեն. Թէ արժանի է բաժանել եւ ասել յայտնապէս՝ Աստուած կատարեալ եւ մարդ կատարեալ, այսինքն է, Աստուած կատարեալ էառ մարդ կատարեալ զՅիսուս Քրիստոս. եւ վասն զի սիրեաց զնա, արժանի արար զնա պատուել ընդ իւր յերկրպագութիւն, եւ պատուեցաւ մարդն որ էառ շնորհս յինքն։ Եւ նշանս եւ սքանչելիսն զոր առնէր բանիւն աստուծոյ՝ որ էջն յերկնից եւ բնակեաց ի նմա, այսինքն է ի Յիսուս, եւ զաւրացան ի նմա սքանչելիքն զոր առնէր, եւ զամենայն ցաւս եւ զխոնարհութիւն ունէր յինքեան, եւ գտաւ մահկանացու որպէս զմեզ, լեալ ի մարդկան ազգէս, հաւասարիւր Բանիւն Աստուծոյ, որդի Աստուծոյ։ Եւ ասեն ոչ վասն Յիսուսի եկն ձայնն յերկնից ի Յորդանան՝ Դա է որդի իմ սիրելի ընդ որ հաճեցայ, այլ ի Բանն Աստուծոյ էջ որ է հաւասար Հաւր, որ էջ յերկնից եւ բնակեաց ի նմա։ Եւ ասեն, դրաւքն փակելովք յորժամ եմուտ առ աշակերտսն, ոչ էր փակեալ զդուրսն, այլ աշակերտացն յերկիւղէ հրեից ի բաց թողեալ էր զդուրսն։ Եւ ասեն հերձուածողքն, թէ Յիսուս Քրիստոս մարդ էր մահկանացու, արարեալ հաւասար մեր, եւ ոչ յերկնից իջեալ, եւ ոչ յերկինս ելեալ, այլ որպէս Եղիա եւ Ենովք վերացան յաւդս եւ չեւ՛ եւս տեսեալ զԱստուած, եւ ոչ տեսանեն զնա մինչեւ լինի յարութիւն։ Զայս ասեն նեստորիանոսք ընդդէմ մեր, ուժաւորութեամբ գրոց Դիոդորի եւ Թէոդորի եւ Նեստորի եւ Թէոդորիտի եւ Հաբայի*(2), *եւ ի կանոնէ, զոր եդին Ակակ եւ Բարծումէ եւ Մանի եւ Պաւղի, եւ այլ ընկերք նոցուն։ Եւ ա՛յդպէս ա-*

------

(2) *Իմա՝ Իբա, Իբաս։*



*սեն, թէ Հռոմք, եւ Հայք, եւ Վիրք, եւ Աղուանք զնոյն կանոն եւ զհաւատ ունին զոր մեքս ունիմք։ Զայս լուաք ի սոցանէն թէ ասեն նեստորիանոսքն։*

*Եւ զի կամեցայք ի մէնջ վասն նորին իրաց ուսանել, ծանուցանեմք ձեզ եթէ Հռոմք եւ մեք Հայք, եւ Վիրք, եւ Աղուանք զհայհոյութիւնս զայս ո՛չ ընկալաք, եւ ոչ ընդունիմք, եւ ոչ հաղորդիմք, եւ ոչ հաւատամք, այլ եւ նզովեմք որ այսպէսն ասեն եւ ուսուցանեն. որպէս Պաւղոս առաքեալ ասաց. Եթէ ոք աւետարանեսցէ ձեզ աւելի քան զոր առէքն, նզովեալ լիցի, եւ դարձեալ զնոյն երկրորդելով ասէ. Այլ թէ մեք կամ հրեշտակ յերկնից աւետարանեսցէ ձեզ աւելի քան զոր աւետարանեցաքն ձեզ, նզովեա՛լ լիցի։ Եւ զնոյն հաստատեցին աստուածային շնորհաւքն լցեալ երանելի հարքըն ՅԺԸ եպիսկոպոսունքն ժողովեալ ի Նիկիայ։ Միաբանեցին նմին կանոնի եւ Ճ եւ Ծ եպիսկոպոսունք ուղղափառք ժողովեալ վասն նորին խնդրոյ ի Կոստանդիանուպաւլիս, որոց մեք միաբանեալ նզովեմք զհակառակորդսն այն ճշմարիտ հաւատոյ եւ կատարեալ աստուածաշնորհ կանոնի։*

*Եւ զայս խնդիր ճշմարիտ հաւատոյ գրեցաք եւ կնքեցաք, Ես Բաբգէն Հայոց Կաթուղիկոս ամենայն եպիսկոպոսաւք, իշխանաւք եւ նախարարաւք Հայաստան աշխարհիս։ Եւ Սերգիս որում Բաբգէն անուն է Աբդիշոյեան, խուժիկ, ի Շոշտրի շահաստանէ, ի նմին յանջմնի՝ առաջի մեր ամենայն Հայոց ասաց թէ այդ այդպէս է։ Լսեմ յաղագս այդ իրաց եւ ի Խուժաստանի հերձուածք են, եւ յայսմ հաւատոյ ինձ հաւատոյ նամակ պիտի, եւ հաւատոյ նամակ հաստատ եւ ճշմարիտ եւ զանշա՛րժ արարէք։ Եւ ես Բաբգէն Հայոց կաթուղիկոս եւ ամենայն եպիսկոպոսունք, եւ Վարդ Մամիկոն-*

*եան, եւ այլուր միանգամ իշխանք եւ նախարարք էաք, գրեցաք հայերէն եւ պարսկերէն, եւ կնքեցաք մերով մատանեաւ· եւ Սամուէլի, եւ Շմաւոնի, եւ Աջհայի, եւ Մերայի, եւ այլ ընկերակցաց առեալ ի մէնջ էր, զոր ի ձեռն Սերգեսեայ ետուն, եւ զայս հաւատոյ նամակ ընդ իւրեանս առին յաշխարհ իւրեանց։*

**Զնուաստ եւ զանարժանս յամենայնի զԹումաս եւ զծնաւղսն իմ յիշեցէք ի Քրիստոս, ով դասք ուղղափառաց։**





## ԼԳ

## ԹՈՒՂԹ ՀԱՅՈՑ, Ի ՊԱՐՍՍ ԱՌ ՈՒՂՂԱՓԱՌՍ

*Եղբարց մերոց սիրելեաց ուղղափառաց եւ հաւատարմաց, մտերիմ ծառայից Աստուծոյ, եպիսկոպոսաց եւ վիճակաւորաց, վանականաց եւ ժողովրդականաց, Բաբգէն Հայոց Եպիսկոպոսապետ, Մերշապուհ եպիսկոպոս Տարաւն գաւառի ի Հայս, եւ այլոց եպիսկոպոսաց հայոց, որք ըստ գաւառաց եւ ըստ տանց, եւ յամենայն ուխտէ սրբոյ եկեղեցւոյ մերոյ, եւ յիշխանա՛ց ի Վարդայ Մամիկոնից Տեառնէ եւ ի Հայոց Մարզպանէ, եւ ի Սահակայ Կամսարականէ եւ յԱրտաշրէ Մաղխազէ, եւ յամենայն ազատաց մեծամեծաց եւ փոքունց, սիրովն Քրիստոսի Աստուծոյ մերոյ ուրախանալ։*

*Քանզի եկեալ երկրորդ անգամ ի ձէնջ առ մեզ Սիմոն երէց աշխատասէր եւ անձանձրոյթ յամենայն ժամ ի խնդիր հաւատոյ, որ պատմեաց տակաւին զմարտ պատերազմի նորոգելով միւսանգամ Նեստորի, ո՛չ ընդունելով զգրեալսն ձեզ յամենայն ուղղափառաց յաղագս ճշմարիտ հաւատոյ, ընդ նմին եւ զառ ի մէնջն՝ զի ապրեսցին· այլ զի թերեւս կարասցէ շարժել զհաստատութիւն սրբոյ եկեղեցւոյ նսեմացուցանելով զհաւատս ուղղափառութեան յաշխարհի ձերում· եւ թէ որպէ՛ս աճեցեալ տակաւին եւս առ նոսին մոլորութիւն վտան-*

------

*Բնագիր Ա· էջ 48 - 51։*

գեցուցանէ զճշմարիտ հաւատ եղբայրութեան ձեր, որպէս սովորեաց նախանձ խանտանաց ի սկզբանէ, որով տարագիր եղեւ ազգ մարդկան յաստուածայնիցն բարեացն, եւ ոչ դադարեաց մինչեւ ցայսաւր ժամանակի, ալեկոծեալ սուրբ եկեղեցի, ի ժողովոյն Քաղկեդովնի զաւրացեալ։ Սկիզբն առնելով ի Նեստորէ չարիմաց խորհեցաւղէ, յաղագս սրբոյ Երրորդութեանն, բաժանելով զմարմնանալն Տեառն ի սրբոյ կուսէն Մարիամայ, որ իսկապէս մարդ միանգամայն եւ Աստուած խոստովանիմք եւ երկրպագեմք հանդերձ Աստուածութեամբն ընդմարմնաւորութիւնն, եւ հանդերձ մարմնաւորութեամբն զԱստուածութիւնն· Նովին աւանդութեամբ խոստովանիմք եւ մեք զոր ընկալաք ի սուրբ ժողովոյն որ ի Նիկիա, Յ եւ ԺԸ եպիսկոպոսաց, եւ նոցին խորհրդոց հաղորդիմք ի կանոնացն շարագրեցելոց, քանզի է ճշմարիտ արդարեւ աստուածային գործակցութեամբ։ Եւ փախչիմք ուրացեալ զ՚ի Քաղկեդոնին ստութիւն Նեստորի եւ այլոցն նմանից, զոր գիտեմք կեղծաւորութեամբ փախուցեալ ի հեթանոսութենէ, եւ ի հրէական մոլորութենէ, եւ զնոյն խոստովանին զհեթանոսութիւն, միանգամայն եւ զհրէութիւն, պատրել ի մոլորութիւն զմիտս անմեղաց՝ որ է տգիտաց, վրիպեցուցանելով ի ճանապարհէ զկոյրս, որով սահմանեցաւ ի սրբոյ Հոգւոյն մարգարէին հատուցումն նոցին, զոր սուրբ հարքն միաբանութեամբ իւրեանց ի Նիկիա յանդիմանեալ խզեցին զընթացս չար խորհրդոց նոցա ի սրբոց գրոց՝ նզովելով զՆեստորիոս, եւ զԱրիոս, եւ զԴիոդորոս, եւ զԹէոդորիտոս, եւ զԵւտիքոս, եւ զՊաւղոս Սամուստացի, եւ զնմանս նոցին, որ խառնակութիւն զանգուածոյ զմարդանալն քրիստոսի ասել իշխեցին, իբր զլոկ մարդ, ո՛չ կատարեալ



Աստուած ի մարմնի կատարելում։ Զոր եւ մեծն Ամպեղիս եպիսկոպոս Քերսոն քաղաքի, ճշմարիտ հաւատոյ սիրաւղ եւ սպասաւոր, գրեաց ճշտիւ, ճշմարտապէս, յորում փութացեալ ոչ վերջացաւ։ Նմին գրոյ նախանձաւոր լեալ երէցն բարեպաշտ Անատոլիս Կոստանդիանուպաւլսի վկայեալ՝ սրբոյ եպիսկոպոսի Ամպեղի գրոյ, յաւելուած սրբոյ Երրորդութեանն ոչ գիտացեալ՝ զ՚ի սրբոյ կուսէն զծնունդն Որդւոյ, այլ զնոյն ինքն Աստուած եւ Բան մարդացեալ անախտաբար՝ մնաց նոյն, որ յառաջ քան զյաւիտեանս երկրպագի ընդ Հաւր եւ ընդ սուրբ Հոգւոյն։ Ճշմարտապէս գրեաց սուրբ քահանայապետն Քերսովնացւոց Ամպեղիս, հանդերձ երկոտասան գլխովք Կիւրղի եպիսկոպոսի երանելւոյ, ի նոյն յարելով եւ զԹուղթն Զենոնի բարեբանելոյ Թագաւորին Հոռոմոց, ստուգութեամբ վկայեաց երէցն աստուածասէր Անատոլիս։ Քանզի սրբոց հարանցն է աւանդութիւնս այս, մըշակա՛ցն առաքինութեան, որոց ստուգիւ զհետ գընացեալ արդարութեան հալածեցին զստութիւն։

Հաւանեալ եմք ամենայն իրաւք գրելոցն առ ի նոցանէ եւ նովին վարիմք հաւատովք, ի սրբոց ՅԺԸ· իցն ժառանգեալ եւ ի ՃԾ· իցն հաստատեալ։ Իսկ որք ոչն խոստովանին այսպէս՝ ուրանալով զՈրդի, նոքա մոլորեալք ի տուընջենէ, մոռանան զՀայր, զորս յիրաւի ձայնէ առաքեալն· Ծառս պտղակորոյսս խլեալ արմատաքի, աստեղս մոլարս, որոց վիհ խաւարին յաւիտենից պատրաստեալ մնայ, յաղագս որոց Քրիստոս Տէրն փառաց զուր մեռաւ։ Քանզի զգեղեցիկ բանին Աստուծոյ ճաշակեցին զքաղցրութիւն, եւ հնազանդեցան կարծեաց աւտարաւտեաց։ Յաղագս որոյ յամառեալ, ոչ գիտեն զինչ խաւսին, եւ յորում պնդեալն են· վասն զի աստուած

*աշխարհիս այսորիկ, ըստ ասացելումն, Կուրացոյց զմիտս նոցա, զի մի ծագեսցէ ի նոսա լուսաւորութիւն աւետարանի փրկչին արարածոց, զոր յամենայն ժամ ընթերցեալ, եւ երբեք ոչ ծանեան։ Քանզի ոչ խոստովանելով զՈրդի ուրանան եւ զՀայր, զոր ասաց ուրանալ եւ ինքն Քրիստոս առաջի Հաւր, եւ պատուիրեաց եւ մեզ հրաժարել ամենեւին ի նոցանէ, եւ ատել մինչեւ բանիւ անգամ զողջոյն նոցա։ Արդ զի եւ յայտնագոյն եղիցի խոստովանութեանս մերոյ բան, որպէս հաւատամք մեք Հայք ի Հայր եւ յՈրդի եւ ի սուրբ Հոգին, յորոյ վերայ շինեալ եւ հաստատեալ է սուրբ եկեղեցի· Խոստովանիմք զՀայր, եւ զՈրդի զծնեալն ի Հաւրէ յառաջ քան զյաւիտեանս, անսկիզբն, մարմնացեալ ի սրբոյ կուսէն Մարիամայ, ի փրկութիւն արարածոց, անքննելի անարատ ծննդեան աւրինակաւ, կոյս մնալով մաւրն· եւ ի սուրբ Հոգին յանեղն եւ ի կատարեալն։ Աստուած զՀայր, Աստուած զՈրդի, Աստուած զսուրբ Հոգի, յորում մկրտեցաքն եւ մկրտիմք, ոչ հրէաբար պակասեցուցանեմք, եւ ոչ հերձուածողաւրէն վրիպեալ յաւելուածով, եւ ոչ նուազ եւ առաւել քան զմիմեանս։ Այլ երկրպագեմք զերիսն ի միութեան փառաւորելով, եւ զմին յերրորդութեան։ Այսպէս հաւատամք որպէս աւանդեցին մեզ սուրբ հարքն ՅԺԸ եպիսկոպոսքն ի Նիկիա, նահատակք ճշմարտութեան, եւ որք յԵփեսոս· եւ նզովեմք զՆեստորիոս, եւ զԱրիոս, զԹէոդորոս, զԴեւոդորոս, զԹէոդորիտոս, զԵւտիքոս, ըզՊաւղոս Սամուստացի, զԻբա, զԱկակ, զԲարծումէ, զԲաբէ, որք ի Պարսից աշխարհի զնոցուն զկանոնս եւ զհաւատ, զարմատսն դառնութեան ի վեր երեւեալս, յորոց բազումք նեղեալ արտաքս հալածեցան ի ճշմարտութենէն սերման, որոմամբք առ ի նո-*



*ցանէ մշակեալք։ Զոր եւ աստուածանշան արանցն առաքինեաց, եւ երիցս երանելեացն նմանիցն նոցուն, Իգնատիոս, որ յառաքելոցն տունկ բարեպտուղ, Աթանասիոս ճառագայթն լուսոյ աշխարհի, Բարսիլիոս Կապադովկացւոց եկեղեցւոյն, [Աստուածաբան] կոչեցեալ Գրիգորիոս մեծն, եւ երկուն եւս նորին համանունք, եւ Յուլիոս զարեւմտացն ճանապարհին կենաց առաջնորդ, եւ Ամբրոսիոս, Յովաննէս, եւ Ատտիկոս, եւ Թէոփիլոս, եւ Կիւրղոս, եւ Պրոկղոս, եւ չքնաղ հայր մեր Առիստակէս, զաւակն արդարութեան սրբոյն Գրիգորի, եւ զՀայոց եղեալ սկիզբն եւ պատճառս աստուածային սիրոյն եւ հաշտութեան։ Սոքա ամենեքեան ժողովեալ սրբոց, ասպնջական Երրորդութեանն, հաստատեցին վկայութեամբ հին եւ նոր կտակարանաց ընթանուր ի կաթուղիկէ եկեղեցւոյ։ Այսուիկ վարիմք հաւատովք զոր եւ գրեցաք իսկ ձեզ յառաջագոյն, Վրաց եւ Աղուանից միաբանութեամբ իւրաքանչիւր աշխարհի գրով։ Եւ այժմ զնոյն երկրորդեցաք, ի ձեռն հասարակաց եղբաւր ըստ հաւատոյ Սիմէովնի նախանձաւոր երիցու, զի մի ոք համարձակեսցի յայսմ հակառակել եւ ընդդիմանալ պատճառաւ առ ի մէնջ։*

*Այլ զի եւ այսու եւս խզեսցի յանդուգն եւ ախտաւոր խորհուրդ հերձուածոյ նոցա, եւ աղաւթեսցուք հասարակաց, զի նոյն ինքն Երրորդութիւնն խափանեսցէ զթշնամիս իւր, զհակառակորդըս ճշմարիտ հաւատոյ, եւ զաւրացուսցէ զպաշտաւնեայս եւ զերկրպագուս անուան իւրոյ։ Եւ զայս եւս ծանիցէ եղբայրութիւն ձեր, թէ որք ատեցին զՀայր՝ ուրացան զՈրդի՝ ո՛չ հնազանդեցան*

սուրբ Հոգւոյ նորա, ոչինչ են զարմանք, թէ եւ զգրեալսն ի բարւոյ խորհրդոյն ուղղափառաց եւ ի մէնջ ոչ ընկալսն, զի ելցեն յաչաց ամենեւին ամաւթալից եղեալ յորժամ եկեսցէ Տէր առնել վրէժխնդրութիւն ի վերայ այսորիկ եւ յայտնել զգաղտնիս խաւարի եւ զծածուկս սրտից նոցուն ի դատապարտութիւն եւ ի զղջումն տարաժամ։ Եւ վասն Թղթոյն սրբոյ Ամպեղի եպիսկոպոսի, եւ Անատոլեայ երիցու, հրամայեցաք աստ գրել։ Եւ եթէ հերձուածողաց ոք գայ եւ դառնայ ի մեր սուրբ հաւատս, ընդունե՛լ արժան է զնոսա, վասն զի դուռն ողորմութեան Աստուծոյ հանապա՛զ բա՛ց է խոստովանողաց եւ ապաշխարողաց։





# ԼԴ

## ԵՐԱՆԵԼՈՅՆ ՄԵԾԻ ՔԵՐԴՈՂԱՀԱՒՐՆ ՄՈՎՍԷՍԻ (ԽՈՐԵՆԱՑԻ) ԵՊԻՍԿՈՊՈՍԻ.

Յաղագս ի յոլովից կատարեալ կենդանի՝ ընդէ՞ր մի բնութիւն, այլ միոյ կենդանւոյն հարկ է եւ բնութիւն մի լինել։ Ահա եւ արարչական բանին տնաւրէնութեանն մի՛ բնութիւն ասի ըստ աստուածային գրոց եւ եղծ զբաժանողացն զանքննելի աստուածութեանն գործ, նախախնամաւղ արարչութեանն ո՛ կարասցէ հասու լինել պատմե՛լ, սահմանադիր լինել բանիւ, զի անգիտելի՛ նշանակեցաւ որպէս զոսկերս յորովայնի յղեացն։ Եւ լինելութեանն իսկ ծանուցումն մեծի մարգարէին՝ սանձահարելով դադարեցուցանէ առաւե՛լ քան զչափ խորհաւղսն, զի անխոնջ իմն եւ հրաշալի հրամանաւ զբոլոր գոյացելո՛ցն պատմէ յարմարութիւնս եւ զկազմութիւն տիրական մարդոյն, եւ զորպիսութիւն ընդհանուր կենդանեացն լռելով, բանականաւն միայն պատուեցելոյ իմանալի ձեռաւք, զի ի հողոյն ասէ կառուցանել մարմին եւ փչել շունչ եւ հոգի, եւ զո՞ւստն եւ զի՞նչն ոչ հոլանէ, զի փոքրն անճառութեամբ ուսուցանելով պատմել, կարճեսցէ ի վեհագոյն պատճառէն, զտարապատկան խնդիրըս յուզել, բաւական համարելով զաստուածաշունչ գրոց զյայտարարութեան կէտն։

------

Բնագիր Ա. էջ 22 - 28։ Հմմտ. Ժ. էջ 255 - 261։

*Արդ զի զամենայն զստեղծեցելոցն ճշդիւ եւ համառաւտաբար կատարէ զվերծանութիւնն, ազդարարական շնորհիւ սուրբ Հոգւոյն, երեւելի է. բայց արդեամբք զշինութեանն յարմարութիւն չըհամարի՛ իրաւացի ուսուցանել։ Ընդէ՞ր արդեաւք, զի կարծողական եւ շարժուն վարկանի զառաջադրութիւնն։ Քանզի վարժեալ էր բովանդակ եգիպտական քննութեանցն խրատուք, եւ գիտէր զգուպարս ստեղծմանցն որ ի նմա եւ եղծից, վասն այնր ոչ ճոխաբանէ յինքենէ ինչ, կամ ի շահեալն պիտակաբա՛րն հրահանգաց։ Մանաւանդ թէ չթողացուցանէ իսկ պարգեւաւք վերակացութեանն զգետնաքարշիցն ի կիր առնուլ վսամախոհութիւն։ Այլ անսայթաք եւ ճշմարիտ սահմանաւ աստուածային հաճոյիցն, սքանչելի նորակերտութեան ցուցանէ հաստատութիւն, եւ աններհական զնոյն մարգարէից եւ առաքելոցն, վկայեալ մատեանքն մեծարին ի տիեզերական եկեղեցիս, ըստ արժանի վայելչականն ընդունելութեանն։ Բայց ունի եւ ինչ յունական հետազաւտութիւնն, եւ առ սուրբ կտակարանսըն փոքր մի յանկութիւն։ Քանզի ընկալան որպէս յաւետախաղաց աղբերէ, յերջանիկն Մովսէսէ աւգուտ ի տիրական պարապմանցն իւրեանց, եւ է, զոր քատակելով իմաստասիրութեանն, հաւանականըս խաւսեցան։ Զի զմարդ ի չորից նիւթոց բնաւորեցին, ի հողոյ, եւ ի ջրոյ, եւ յաւդոյ, եւ ի հրոյ, յաղագս ջերմութիւն եւ ցրտութիւն եւ խոնաւութիւն եւ ցամաքութի՛ւն ի նմա համեմատելով. եւ զանձն եռամասն, եւ զոյ հնար դատողութեամբն յաւելուլ եւ պակասեցուցանել ըստ մասանցն, որ ի շնչականսն եւ ի զգայուն կենդանոջն եւ ի բանականումն եւ յանհատին հարցափորձի բնութեան անուամբն յեղանակելով։ Զի այսքանեացս կատա-*



*րելութիւն մարդոյն, ընդէր ասի մի բնութիւն. զի առ հասարակ սեռին անստգտանելի է սահմանդ։ Իսկ ի վերայ անհատին առաւե՛լ պարսաւելի, եւ ե՛ւս յոլովիւքն մաքառիցիմք։ Քանզի մարմին իսկ չէ հոգի, եւ ոչ անձն մարմին, եւ կիրք այլ եւ ա՛յլ երկաքանչիւրոցն, եւ անզանգ եւ անշփոթ է կցորդութիւնն, եւ յայտնի այն ի բաժանմանն։ Այլ զի անճեղքելի եւ անանջատ պատկանեալ յարդարեցաւ տեսակն, թերեւս անբաղայաբար կոչեցաւ։ Մի զի՛ յիմանալի ի բա՛ցարձակութենէն, զարմազան ունի անբաժանութիւն, եւ ի զատուցմանն ոչ եւս կարէ անուանիլ նոյն։ Այսպիսի ուրեմն գաղափարաւ եւ արարչական Բանին իմանի տնաւրէնութիւնն։ Թէպէտ եւ ո՛չ զաւրէն հասու լինելով միտք մեր զի համանգամայնիւքն գերազանցեալ եւ անյա՛նդ է առեցումն ի մէնջ անչափ իսկութեանն. չգո՛յ հուն յերկուանալ ումեք, այլ զի ա՛նդր ե՛ւս քան զհրաշս է խոնարհելն, զծառային ընդունելով պատկեր՝ ոչ յեղլով կամ սպառելով ի բաց բարձութեամբ միոյն զմիւսն, այլ անմեկնելի՛ հաղորդութեամբըն։ Վասն որոյ ի դէպ եւ յո՛յժ ճահողագոյն թուի խոստովանողաց մի բնութիւն ասելով. զի եւ յաջմէ նստեալն համեմատութեամբ մի՛ տէր քարոզի։ Ապա եթէ հակառակս ինչ վարկանիցին ոմանք, զպատասխանեալդ անկարելի համարելով, որպէս թէ երկուս բնութիւնս պատշաճ իցէ ասել, գիտասցեն զի զնոյն զանհնարութիւն եւ ի մարդումն զոյ հնար նկատելով ճանաչի ոչ միայն ի փիլիսոփայական ստորոգութիւնսն, այլ եւ սուրբ գիրք աստուածաշունչք։ Թէպէտ եւ բնութեանց վարդապետութեամբ ոչ վարին, որպէս նոյն ինքն տեղեկացուցանեն պատմութիւնքն, սակայն պատուականն յաւէտ յարգանաւք, եւ արհամարհքն բազում միջոց ունին*

տարբերութեամբ։ Զի մարմին յանարգ կաւոյ ըստեղծանիլ զեկուցին՝ եւ շունչ եւ հոգի անեղին փչումն։ Ծանուցանէ եւ նուիրականն առաքեալ ըստուգիւ գիտելով գիւրաքանչիւրոցն զանազանութիւնս, եւ աղաւթէ՝ Անբիծ պահել զհոգի եւ զմարմին եւ զշունչ մինչեւ ի գալուստն Տեառն։ Լուսաւորագոյնս եւ փրկչին վարդապետութիւն յայտնէ՝ զհոգին առաւել ասելով քան զմարմինն, եւ այլք բազմապատիկք յաղագս նորին։

Արդ զո՞ ի նոցանէ կանգնիցէ ընկեր, զերկուս կամաւղսն ցուցանել բնութիւնս Ապողինարի լինելով ջատագով եւ նորին հետեւեցելոց, որ են աղճատանք, եւ շամբուշ յիմարութեան ձեռնարկութիւն։ Զի թէ չէր ըստ պատկերի դումարութեանըն մի, բոլորեցունց ծանաւթանայ այլ եւ այլ գոլ։ Բայց թերեւս ասիցեն եթէ մարմնոյ կազմութիւն արարածական է՝ եւ թէպէտ յոքունց գոյ հընար, մի ասել։ Իսկ անբաղդատելի արարաւղին ո՛չ եւս նոյնպէս։ Թէ այդպէս իցէ ուրանալ պարտին եւ զմարդանալոյն վկայութիւնս։ Բանն մարմին եղեւ ասէ, եւ զծառայի առնու զնմանութիւն, զի զայն ուսուցանէ առնուլ՝ զոր ոչն ունէր, յոր չըբռնադատեցա՛ւն յումեքէ, եւ ո՛չ ամաւթ վարկաւ· յոր չէաք յանկ եղբայրութեան, եղբարս անուանեաց։ Ապա թէ այնչափ անկարելի համարեսցին զմիաւորութիւնն, պարսաւելով զքաղցրութեամբըն խոնարհաւղ յանչփոթութիւն եւ զանգումն փաստաբանելով մի՛ եւս վարեսցին ձայնիւ միաւորութեանն՝ մանաւանդ դիմացն։ Որ ի կերպարանս Աստուծոյ էր ասէ, զկերպարանս ծառայի էառ։ Տեսանե՞ս, զի կերպ եւ կերպ ասէ, զո՞ր արդեաւք կերպարան զանգեալ եղծանիցեն ըստ նոցա դաւանութեանն, զի թէ զբովանդակին հպաւորութիւն



խառնակումն պատճառին՝ զնոյն եւ դիմացն պարտին իմանալ· ծաղո՛ւ արժանի են բանքն· զպատուականն, ոչ զանգիտես, ըստ նոցա աղմկեալ(1) եւ խառնափնդորեալ վարկի՝ յանձն առնուլ, եւ զայլսն եւս սարսափեալ քստմնին· Զի ըստ առասպելական բարբաջմանցն, զգլուխն մի գոլ ստեղծցեն եւ ըզտտունս երկաքանչիւր։

Աւա՛ղ թշնամանացն որ լի է դառնագոյն ամպարշտութեամբ· մինչդեռ զմեզ բամբասէին, տըխմարս եւ հայհոյիչս գոլ յաղագս զմարդկայինն նաւթճել անզատանելի, ինքեանք ոչ զտնտեսութեանըն լոկ պատառեալ անջատեցին զսքանչելի փըրկութեանն անքակութիւն, այլ զնորին իսկ էակից Հաւր Բանի բնութիւն։ Քանզի զԱստուածային զդէմն, այլայլելի՛ բացայայտեցին, միաւորութեամբըն զանգեալ եւ շփոթեալ, որպէս իւրեանց լեզուքն վկայեն, եւ զայլն ամբողջ պահել, զի առանց կերպարանի հնարեցին ցուցանել զանձնաւորութիւնն Որդւոյ։ Նոյնպէս եւ զմարդոյն՝ ի խելայեղ բարբաջանս ընկղմին, եւ զյաւիտենական կորուստն ժառանգեն, զայսպիսի սոսկալի պղտորութիւնս զգայռելով։ Ոչ գիտեմք ուստի՞ եկին յայս, զի հաւատ որ ընդ տիեզերս տարածեալ բարեբանի, յետ զմարմին եւ զհոգի եւ զմիտս ստանալոյ Բանին, մի Տէր զՅիսուս Քրիստոս քարոզեն· ի կենդանարար բերանոյն բղխեալ պատգամս ոչ դոյզն ինչ մարդոյ, այլ որ ի ծոցոյ անսկզբնականի Հաւրն է, նմա՛ վկայեն պատմել, եւ զխրագործականսն եւ զաղքատութիւնն նմին մարմնովն ծագեցելում, անքակելի բարբառին։ Եւ ճշմարտիւ գոյ զնոյնս յարաբարդեցելումն տեսանել· զի եթէ մո-

------

(1) Տպ. շմկեալ։

լեգնեալ ըստ ոմանց, քարկոծե՛լ ոք փութասցի, մարդ է, եւ թէ նշանս խնդրել բարեպաշտաբար յորդորիցի, Աստուած իսկապէս։ Քանզի մի՛ եւ ո՛չ երկուս անձնաւորութիւնս տեսին ի Տեառնէ ապաքինեալքն, եւ զերանութիւն ընկալեալք։

Զինչ եւ աստանաւր կամիցիս, ո՛վ անջրպետողդ. ուրեմն աստուածային դէմն ի մարդկային յանհաւասար բնութեանն միաւորեալ անարգութիւն կրեաց, միշտ մնալով յանպատուելն. եւ թարց պատկերի մնացեալն զգերազանցութեանն ընկալաւ ճոխութիւն։ Քստմնի՛մ յաւէժ սարսափմամբ յամպարշտութեանս յամելով թշնամանս. քանզի պարտ է կամ ըստ արժանի միաւորութեան ի բաց թողուլ զանոպայ բաժանմունս, կամ ամենեւին իսկ ուրանալ։ Ընդէ՞ր իսկ կրճատել սիրէք կիսով հաղորդութեամբդ, որպէս թէ երկու կատարեալ, ոչ կարէ մի կատարեալ լինել. զայդ հարկաւորութիւն իմաստուն եւ առաւել բարգաւաճեալն հովիւ ուսոյց Բասիլիոս՝ յամաւթ առնելով զժպիրհ ախոյեանն, եւ կատարեալ անշփոթ տնաւրէնութեանն Աստուծոյն եւ մարդոյ մի բնութիւն ասել՝ զնոյն զմի զտնաւրինական եղելութիւնն։ Եւ Յովհան Կոստանդնուպաւլսի այցելուն ի փիլիպեցւոց թղթին ընդդէմ հերձուածողացն դաւանեաց. Մի՛ շփոթեսցուք ասէ, եւ մի անջրպետ ի մէջ արկցուք, վասն զի միութի՛ւն խոստովանիմք, եւ ո՛չ քայքայութիւն ինչ եւ լուծումն, այսր բնութեան յայն, կամ այնր յայս, այլ միացեալ ասեմ եւ մի լեալ։ Նոյնպէս եւ մեծն Յուլիոս՝ ի թղթին որ առ երջանիկն Դիոնիսիոս Աղեքսանդրացի։ Եւ Կիւրղոս յԱղեքսանդրացւոց քաղաքին պայծառացեալ՝ յերկրորդում ճառին, որ առ Սուկենոս Դիոսկուրացի, եւ յորս առ Նեստորն, եւ որ ի մեկնութեան հաւատոյ



երեք հարիւրոցն, եւ Երեքթեայ երանելոյ Անտիոք Պիսիդեայ եպիսկոպոսի, ի յաստուածայայտնութիւնսն, ի Կոստանտինոյպաւլիս. եւ Գրիգորիոս Նեոյկեսարացի, յորում ըստ մասին հաւատոյն. եւ Եփրեմ ի ճառին որ ի սուրբ երրորդութիւնն. եւ Գրիգորիոս Նազազացի, աստուածաբանութեամբըն մեծարոյ, յոլովագոյնս ասելով ժամանակի զարմանս եւ այլ անթիւ հովիւք ուղղափառութեան համաբարբառք սոցին մի Տէր, եւ մի զնորին բնութիւն գիտելով՝ անբաժ միաւորութեամբըն աւետարանեալ յաշխարհի, հաւասարելով առաքելոց եւ մարգարէից պատգամաց, որք վայելչական լծակցութեամբ աւարտեն զխորհուրդ միաւորութեանն։

Զի աստուածափառ նախամարգարէն, զ՚ի փայտէն կախեալ կեանս կոչէ։ Եւ որդին որոտման Յովհաննէս, ճշմարիտ Աստուած եւ կեանս յաւիտենականս։ Սերովբէից տեսաւղն Եսայիաս, զ՚ի կուսէն ծնիցեալն ընդ մեզ Աստուած լինել ճոխաբանէ։ Եւ Տարսոնացի փողն բարեձեւագոյնս գոչելով հնչեցուցանէ զբարբառն՝ Մի՛ կարծէք, ասէ, ի ժամանակեան կուսէն առնուլ զսկիզբնն. զի Աստուած առաքեաց զՈրդին իւր, որ եղեւ ի կնոջէ, եւ եմուտ ընդ աւրինաւք զաւրինաւորսն ապրեցուցանելով։ Եւ դարձեալ նոյն տեսանաւղ, հանդերձ միւսովն, թէ Ոչ պատգամաւոր ոք եւ ոչ հրեշտակ ոք, այլ ինքնին Տէր փրկեաց զմեզ. զոր ինքնին իսկ կենարարն ուսոյց, ի խաւարէն բուժեցելում կուրին ասելով. Դու Հաւատա՛ս յՈրդի Աստուծոյ, եւ նորա զարմացեալ, զՈվն առաջի դնէր, եւ նա ասէ. Եւ տեսեր զնա, եւ որ խաւսիդ ընդ քեզ նա՛ է։ Եւ Երեմիա ասէ. բայ, Սա՛ է Աստուած մեր ընդ որում ոչ համարեսցի այլ, որ ետ զիմաստութիւն Յակովբայ. յետ այսորիկ ի յերկրի երեւեցաւ եւ

*ընդ մարդկան շրջեցաւ։ Երեւեալն յաշխարհի աղաղակէր, զնոյն հաստատելով, թէ Որ առաքեացն զիս Հայր ընդ իս է, եւ որ տեսանէ զիս, զՀայրն իմ տեսանէ, զի ես եւ Հայր իմ մի՛ եմք։ Եւ թէպէտ եւ զբազմապատիկսն եւս քննեսցուք կամ քննեսցէ ոք յաղագս այսորիկ՝ յայտարարութիւնս ի սուրբ գիրս՝ ոչ ուրեք գտանի երկուց բնութեանց բաժանելոց հանկանակաւ բաշխել տալ, այլ եզում մարմնով յայտնեցելում, նոյն հովիւ եւ ոչխար, քահանայ եւ պատարագ, ճանապարհ եւ դուռն, լոյս եւ ճշմարտութիւն։ Իսկ եթէ ըստ արտաքին փիլիսոփայիցն պանծացեալ, մարտնչել պէս պէս բնութեամբդ՝ թէպէտ աւտար է նոցայն բազում իւիք յաստուածապարգեւ պատուիրանէն՝ բե՛ր, աղէ՝ անցուսցուք ի հանդիսի, քողայայտելով զխղխայթեալսդ։ Քանզի նշանակեցաւ ի մէնջ փոքր մի եւ յառաջագոյն, զի մարմին չէ հոգի, եւ ոչ շունչս որ ի մեզ՝ մարմին. Թողցուք զայլսն եւս։ Արդ մի բնութիւն բանին աստուածութիւնն է, իսկ միւս եւս ընկեր շարայարմարութեանն կամ զուգաճանապարհորդութեանն, ըստ անուղղայ բարբաջմանցըն. զո՛ կանկնիցեն ի մարդկային բնութենէն՝ ըզհոգի՞ն առանց մտաց, թէ զանզգա՞յ մարմինն, զի ոչ եւս զո՛յ հնար յաղագս այդորիկ ճոռոմել, մի բնութիւն ասելով զմարմին եւ զանձն։ Ա՛յդ ուրեմն է բարձրայաւն աղանդոյն խորհուրդ, որ նման է գերեզմանաց բռելոց. զարտաքոյսն գեղեցիկ կեղծաւորելով, եւ ծածկեցելոյն փեռեկումն՝ ժահահոտութիւնս բղխէ։*

*Աստանաւր անբաւ տարակուսանաւք ունին պապանձել պարտութիւն յանձն առնլով, զի թէ երկուս ասել մաքառին, զմարդկային բնութիւնն աւցտեն, զրկելով զհոգին կամ զմարմինն ի փրկութենէ առաւղին։ Նոյնպէս եւ զաստուածայինն հատանեն յերկուս, զդէմն ընդ մարդկային դիմին միաբանելով. եւ թէ հաւանեսցին միաւորութիւն խոստովանելով, որպէս էն իսկ, ո՛չ եւս այլ համարձակեսցին անդուռն բերանովք երկուց ձայնիւ ղաւղանջել։ Այլ մեք, ո՛վ սիրելիք, յամենայնի կարող եւ բաւական զանսկզբնական էութիւնն Հաւրն երկնաւորի փառաբանեսցուք, որ իմանալի ձեռաւքն զմարդոյն յարմարեաց կազմութիւն. այսինքն Որդւովն եւ սուրբ Հոգւովն, ո՛չ որիշ զարտաքին կամ ըզներքին մարդն ասել, այլ մի։ Եւ զարարչական Բանին զտնաւրէնութիւնն ի Մարդ եւ յԱստուած, մի յաւակնեալ բաժանեսցուք ամպարշտաբար, զի խորհուրդ է անքննելի. զուցէ ի փայլակնացայտ մեծի աւուր գալստեանն, եւ զմեզ հրամայեսցէ կտրել ընդ մէջ յառաջ՝ հետեւող հրոյն ընդ կեղծաւորսն տալով բաժին. այլ ամբիծ հաւատով հանդիպել նմա, զի մի տէրութեամբ եւ կերպարանաւք ծագելոց է արեգակն ի բարձանց փառաւք Հաւր եւ ոչ երկուք։ Եւ յայնժամ հայեսցին ի նա բաժանաւղքն, որպէս որ խոցեցինն, սաստիկ ամաւթ կըրելով յաւիտեան եւ յաւիտեանս յաւիտենից։*

*Զայս քեզ փոքր ի շատէ պատճառ յանդիմանութեան, յաղագս բաժանեալ ուսման այլանդակացն, զի ծանիցես, ո՛վ աստուածասէր, յոմանց փախչել, եւ բաղձալ անսասանելի եւ անշուշտ հաւատոյ դաւանութեան ի մարգարէիցն տնկեալ, եւ յառաքելոցն զարդարեալ, պայծառացուցանելով ընդ տիեզերս, զի ընդ նոսին եւ պարգեւացն հասանիցեմք, շնորհաւք եւ մարդասիրութեամբ տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի, ընդ որում Հաւր եւ Հոգւոյն փառք յաւիտենի՛ց յաւիտեանս։*

---

## ԼԵ

## ԹՈՒՂԹ ԱՍՈՐԵԱՑ ՈՒՂՂԱՓԱՌԱՑ Ի ՀԱՅՍ

*Լաւա՛ց ճշմարտի՛ց եւ աստուածասիրա՛ց, հովուաց արդարոց, եւ հարանց հոգեւորա՛ց, որ էք լոյս աշխարհի եւ սիւնք հաւատո՛յ, քարոզիչք արդարութեան, եւ աշակերտք առաքելո՛ց, ընկերք սրբոց, եւ բարեկամք արդարոց, սիրելիք Քրիստոսի, եւ պահապանք խաչին նորա։ Տէր Ներսէս Կաթուղիկոս Հայոց Մեծաց, եւ Մերշապուհ եպիսկոպոս Տարաւնոյ եւ Մամիկոնենից, եւ այլ աթոռակցաց, եւ իշխանաց աշխարհիդ· Սամուէլ քորեպիսկոպոս, եւ Դանիէլ վանից երէց եւ Սիւնական Սարեբայի, Գաբրիէլ վանից երէց Ովփեսի, եւ Եղիա սիւնական եւ վանից երէց Սուսինայի, եւ Շապուհ վանից երէց Գնիսթայի, եւ Յազդեն վանից երէց Գումայի, եւ Դանիէլ վանից երէց Բրդնայի, եւ Բդեշխ վանից երէց Սաղիմայի, եւ Մեղքի վանից երէց Յովդամնայի, եւ Դաւիթ վանից երէց Սոքփոնեի, եւ այլ երիցունք եւ սարկաւագունք գաւառիս եկեղեցեաց, եւ վանից սպասաւորք, եւ ամենայն ժողովրդականք ուղղահաւատք ի Քրիստոս Յիսուս ի Տէր մեր՝ Ողջոյն։*

*Գիտեմք մեք, ո՛վ ճշմարիտք, զի հարք արդարք եւ հաւատացեալք էք, եւ բժիշկք իմաստունք հիւանդաց, եւ վասն այսորիկ որպէս որդիք որ*

------

*Բնագիր Ա· էջ* 52 -54։



*խնդրեն ի հարանց, նոյնպէս եւ մեք խնդրեմք զկարաւտութիւն մեր ի ձեր հայրութենէ։ Եւ որպէս հիւանդք որ ցուցանեն զցաւս իւրեանց բժշկաց, նոյնպէս եւ մեք ցուցանեմք զմեր ցաւս առաջի սրբութեան ձերոյ։ Ծանուցանեմք ձեզ, զի եմք մեք յաշխարհի հերձուածողաց, եւ բնակեալ եմք ի մէջ սոցա որպէս գառինք ի մէջ գայլոց, եւ համարեալ եմք սոցա թշնամիք, զի քարոզեմք զճշմարիտ հաւատս, եւ կրեմք ի սոցանէ զբազում չարչարանս, զկապանս, զհարուածս, եւ զհալածականութիւնս եւ զաւարառութիւնս կենաց· եւ վասն այսորիկ աղաչեմք զճշմարտութիւն ձեր· եթէ աւգնեցէ՛ք տկարութեանս մերում, եւ տուք ձեռն եկեղեցւոյ Քրիստոսի ի ժամանակի նեղութեան, կացուցանել մեզ հովիւ որ ժողովէ զմեզ, եւ հայր եւ ուսուցիչ մեզ· զի մի յափշտակեսցուք ի գայլոց յափշտակողաց, եւ մի՛ երթիցուք զկնի թշնամեաց արդարութեան։ Հայր էք դուք մեր արդարութեան, եւ մեք որդիք եմք ձեր հաւատովք, զի հաւատ մեր եւ ձեր մի է, զոր քարոզեցին մարգարէք եւ առաքեալք, եւ ուսուցին հարք ճշմարիտք Յ եւ ԺԸ եպիսկոպոսքն, որ ժողովեցան ի Նիկիա քաղաք եւ ՃԾքն այն որ ժողովեցան ի Կոստանտնուպաւլիս, եւ Մ·քն որք ժողովեցան յԵփեսոս։*

*Զայս հաւատս ունիմք, եւ զայս երիս ժողովս· եւ Հաւատամք եթէ սուրբ Մարիամ կոյս, աստուածածին է, զի ի նմանէ մարմնացաւ Աստուած Բանն ստուգապէս ի մարմնոյ եւ յոսկերաց, եւ մարդացաւ կատարելապէս, մինչ էառ ի կուսէն մարմին ճշմարիտ եւ անձն եւ միտս· չարչարեցաւ, խաչեցաւ եւ մեռաւ վասն մեր որպէս եւ կամեցաւ, ստուգապէս եւ ոչ կարծեաւք· եւ ապականութիւն բնաւ ոչ գտաւ ի նմա, զի մարմինն, որ ի մեզէ*

առաւ, անապականութիւն էր եւ փառաւոր ի նմանէ միութենէ, եւ նովին մարմնով յարեաւ, եւ նստաւ ընդ աջմէ Հաւր։ Եւ այսպէս փառաբանեմք, սուրբ Աստուած, սուրբ եւ հզաւր, սուրբ եւ անմահ, որ խաչեցար վասն մեր, ողորմեա մեզ։ Եւ նզովեմք զՆեստորիոս պեղծ. եւ զԹէոդորոս, եւ զԴեւոդորոս, եւ զգիրս իւրեանց, եւ զխորհրդակիցս նոցա, եւ զԲարծումա, Հնծիհնա(*) եւ զպեղծ կանոնս նոցա, եւ զԹէոդորիտոս, եւ զժողովն Քաղկեդոնի, եւ ըզտումարն Լեւոնի, եւ զԱպաւղինարիս, եւ զԵւտիքոս, եւ զՍեւերոս, եւ զգիրս իւրեանց ապականութեան, եւ զՊաւղոս Սամուսատացի, եւ զՄանի, եւ զՄարկիովն, եւ զԱրիոս, եւ զամենայն խորհրդակիցս նոցա։ Եւ որ ընդունի մի յայդ դիմաց եւ յուսմանէ, ընդ նմա ոչ հաղորդիմք, զի գիտեմք եթէ դուք զայս հաւատս ունիք, եւ զայն հերձուածողսն նզովէք, եւ ընդ խորհրդակիցս նոցա ոչ հաղորդիք. վասն այսորիկ ի ձեզ ապաւինեցաք յետ Աստուծոյ, եւ ընդրեցաք արս ի մէնջ եւ առաքեցաք առ ձեզ, եւ Թուղթս աղաչանաց, որ ծանուցանեն զսիրտս մեր եւ զխորհուրդս. եւ արս զոր առաքեցաք առ ձեզ, անուանքն են այսոքիկ. Ահարոն վանից երէց Մարհալայի, Դաւիթ վանից երէց Խափայի, Յակոբ քահանայ ի վանաց Սարեբայի, Նոյ վանից երէց Կենայի, Բրիխիսոյ քահանայ միայնակեաց, Սէթ պաշտաւնեայ Տամոքա, Դաւիթ վանից երէց Փարթնայի, եւ Եղիա, եւ Յովսէփ ի նմին վանաց Սարեբայի, եւ Դաւիթ սարկաւագ ի վանից Բըղնայի, եւ Սերգիս երէց գեղջ Մարտի։

Զայդ եղբարս եւ միապաշտաւնս որ տան ձեզ

------

(*) այսպէս յօր. Թերեւս Մծբնայ.



զԹուղթս աղաչանաց, եւ մատուցանեն առաջի ձեր կամաւք մեր, եւ կամաւք սրբոյ Հոգւոյն, զհեզ այրդ Աբդիսոյ երէց, ի վանաց Սարեբայի, մեք խնդրեմք ի ձեզէ, ողորմութեամբն Աստուծոյ, զի իշխանութեամբ զոր ընկալայք ի Քրիստոսէ տացէք ձեռնադրութիւն դմա որ ընդրեցաւ, եւ առաքեցէք առ մեզ զդա զարդարեալ լուսով Աստուծոյ, ի ձեռն ճշմարտութեան ձերոյ, եւ դարձցի առ մեզ վառեալ ի ձեռն գրոյ ձերոյ եւ պինդ հրամանաւ ընդ եղբարս իւր, որ առաքեցան ընդ դմա, եւ ծանուցէք ստուգապէս, թէ հաւասար է հաւատս մեր ընդ հաւատոյդ ձերում, եւ ցուցանել այնոցիկ որք կամին ճանաչել զհաղորդութիւն մեր ընդ ձեզ։ Եւ եղիցի ձեռնադրութիւն ձեր զոր տայք, որպէս կանոնք եկեղեցական, եւ յերկբայս ինչ մի լինիցիք վասն դորա, զի վառեալ է ճշմարիտ հաւատով եւ սիրովն Աստուծոյ ի կարգ հեզ եւ խոնարհ, եւ ունի զբան վարդապետական, եւ կարող է աւգնել ուժովն Քրիստոսի խաչինս, որ փրկեալ է արեամբն Աստուծոյ, զի նմա փառք յաւիտեանս ամէն։

Հարցանեմք զողջոյն սրբոյ եկեղեցւոյդ ամենայն հաւատացեալք ի Քրիստոս Յիսուս. շնորհք Տեառն ընդ մեզ աղաւթիւք ձերովք, եւ ընդ ձեզ Հոգւովն սրբով յաւիտեանս. ամէն։

Զթումաս յիշեա ի տէր։

# ԼԶ

## ՊԱՏԱՍԽԱՆԻ ԹՂԹՈՅՆ ԱՍՈՐԵԱՑ, Ի ՆԵՐՍԷՍԷ ՀԱՅՈՑ ԿԱԹՈՒՂԻԿՈՍԷ, ԵՒ Ի ՄԵՐՇԱՊՀՈՅ ՄԱՄԻԿՈՆԷԻՑ ԵՊԻՍԿՈՊՈՍԷ։

*Ի բազում ժամանակաց լուեալ զեղբայրութեանդ ձերոյ ուղղափառութիւն համբաւով, իսկ այժմ ընկալաք գրով առ ի ձէնջ աներկբայանալ ի սրբոյ հաւատոյ հաստատութիւն, որպէս ունին ճըշդաբար ընդ ամենայն տիեզերս եկեղեցիք Քրիստոսի Աստուծոյ մերոյ, ըստ քարոզութեան սրբոց առաքելոց, եւ վկայութեան սրբոց մարգարէից, որ առաք ի ձեռաց եղբարց եկելոցդ առ մեզ, Աբդիսոյ երբեմն քահանայի, իսկ այժմ շնորհիւն Քրիստոսի եպիսկոպոսի, եւ այլոց ընդ նմա ուղեւորելոց գործակցաց· Ահարոն վանից երէց Մարհալայի, եւ Նոյ վանից երէց Կենայի, եւ Բրխիսոյ քահանայ միայնակեաց, եւ Սէթ պաշտաւնեա Դամոքայ, եւ Դաւիթ վանից երէց Փարթնայի, եւ Եղիայ եւ Յովսէփ ի նմին վանից Սարեբայի, եւ Դաւիթ սարկաւագ ի վանից Բղնայի, եւ Սարգիս քահանայ ի գեղջէ Մարտի, եւ Դաւիթ վանից երէց Խափայի, եւ այլ հաւատարիմ վանաց երիցունք, եւ քահանայք, եւ սարկաւարգք(*), գիր որ ունէր այսպէս ըզկնի բանիցն ողջունականաց, թէ հաւատ մեր այս է,*

------

*Բնագիր Ա. էջ 55 - 58։*
(*) *Այսպէս յօր.*



*որ միաբանեալ է ընդ ձեր լուսաւոր հաւատոյ ուղղափառութեանդ, զոր քարոզեցին մարգարէք եւ առաքեալք, եւ ուսուցին հարք ճշմարիտք Յ եւ ԺԸ եպիսկոպոսքն որ ժողովեցան ի Նիկիա քաղաք, եւ ՃԾքն ի Կոստանտնուպաւլիս, եւ Մ·քն որ ժողովեցան յԵփեսոս։ Զայս հաւատ ընդունիմք եւ զայս երիս ժողովս, եւ հաւատամք եթէ սուրբ Մարիամ կոյս աստուածածին է, զի ի նմանէ մարմնացաւ Բանն Աստուած ստուգապէս ի մարմնոյ եւ յոսկերաց, եւ մարդացաւ կատարելապէս, մինչ էառ ի կուսէն մարմին ճշմարիտ եւ անձն եւ միտս, չարչարեցաւ, խաչեցաւ, մեռաւ վասն մեր որպէս եւ կամեցաւ, ստուգապէս եւ ոչ կարծեաւք, եւ ապականութիւն բնաւ ոչ գտաւ ի նմա, զի մարմինն որ ի մեզ էառ անապականութիւն էր, եւ փառաւոր ի նմանէ միութենէ· եւ նովին մարմնով յարեաւ, եւ նստաւ ընդ աջմէ Աստուծոյ Հաւր· եւ այսպէս փառաբանեմք, Սուրբ Աստուած, սուրբ եւ հզաւր, սուրբ եւ անմահ, որ խաչեցար վասն մեր, ողորմեա մեզ։*

*Եւ նզովեմք զՆեստոր պեղծ, եւ զԹէոդորոս, եւ զԴեւոդորոս, եւ զգիրս իւրեանց եւ զհաղորդս նոցին, եւ զԲարծումայ Ընծիհնայ, եւ զպեղծ կանոնս նոցա, եւ զԹէոդորիտոս, եւ զժողովն Քաղկեդոնի, եւ զտումարն Լեւոնի, եւ զԱպաւղինարիս, եւ զԵւտիքոս, եւ զՍեւերիոս, եւ զգիրս իւր ապականութեան, եւ զՊաւղոս Սամուստացի, եւ զՄանի, եւ զՄարկիոն, եւ զԱրիոս, եւ զամենայն խորհրդակիցըս նոցա։ Զայդ ամենայն հաւատ ստուգիւ լուեալ զհաստատունս, եւ տեսեալ զփախուստ ձեր ի դաւաճանող որոմանն սերմանեաց՝ թշնամեաց խաչին*

*Քրիստոսի, որք ուրանան ամենեւին զմարմնանալըն Տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի Աստուծոյ ի սրբոյ կուսէն Մարիամայ, ապախտ առնելով անձանց իւրեանց զամենայն կիրս ըստ մարմնոյ, բայց ի մեղաց, զոր մեք ըստ գրեցելոց եղբայրութեան ձերոյ, խոստովանիմք եւ հաւատամք իսկապէս զմարդանալն կատարելապէս ամենայնիւ, ըզկաթնաբոյծ լինելն, զսնանիլն, զչարչարանսն ի վերայ խաչին, զմահն, զթաղումն զերեքաւրեայ, զյարութիւնն՝ որպէս կամեցաւ աստուածաբար, նովին մարմնով փառաւք զհամբարձումն, զնստելն ընդ աջմէ Հաւր· յաղագս ամենայն տիեզերաց, ըզգալուստն նովին մարմնով եւ փառաւք, դատել զկենդանիս եւ զմեռեալս, յաւիտենական թագաւորութեամբ, եւ նովին հաւատով եւ յուսով երկրպագեմք եւ փառաւորեմք զԱստուածութիւնն հանդերձ մարմնաւորութեամբն, եւ զմարմնաւորութիւնն հանդերձ Աստուածութեամբն· եւ երիցս սըրբասացութեամբ զխաչիլն խոստովանիմք։*

*Եւ նզովեմք եւ մեք հանապազ, զուրացողսն, եւ զՆեստորիոս չարագտաւղն հնարաւորութեան հերձուածողութեան, եւ զնմանս նորին, եւ զԹէոդորոս, եւ զԴիոդորոս· եւ զԵւտիքոս, եւ զԱրիոս, եւ զամենայն գիրս ապականութեան, եւ զԱպողինարիս, եւ զտումարն Լեւոնի, զՊաւղոս Սամուսատացի, եւ զՄանի, եւ զՄարկիովն, եւ զԲարծումա, եւ զՍեւերիոս, եւ զԻբա, եւ զԱկակ, եւ զպիղծ ժողովն նոցա, եւ զստանուն կանոնս նոցա, եւ զԹէոդորիտոս, եւ զանաւրէն ժողովն Քաղկեդոնի, եւ զթշնամանաւղ եւ զանյիշելի բռնադատեալ կանոնսն ի նոցանէ, զորս նզովեաց եւ ժողով սրբոցն ՅԺԸիցն ի Նիկիա, եւ Ճ եւ Ծ·իցն ի Կոստանդինուպաւլիս, եւ Մ·իցն յԵփեսոս, զոր հնազանդեալ ունին եկեղեցիք Քրիստոսի կարգաւորեալ։ Այղ եւ զամենայն իսկ պիղծ եւ արհամարհելի հերձուածս, հեռացեալս ի ճշմարտութենէն, ուրացաք եւ ուրանամք եւ միշտ ուրասցուք· մի՛ լինիլ հաղորդ անպտղութեան գործոց նոցա, եւ մի՛ լսել հրապուրող եւ չարաթոյն բանից նոցա մահաբերաց, որ հանապազ վառեն անձանց զհուր գեհենին, սնուցանեն զորդն անվախճան, թանձրացուցանեն զխաւարն շաւշափելի։ Զնոսա որոշեաց առաքեալն մանկունս անիծից, եւ զնոցին կորստական վարդապետութիւնն անուանեաց ամպս անջրդի՛ս, վարեալս ի մրրկէ ի կորուստ, ծառս գաւսս պտղակորոյսս, նիւթս կիզման յաւիտենականի։ Եւ հրամայեցաւ մեզ ճշմարիտ հաւատացելոցս ի սրբոյ աւետարանչէն Յովհաննէ, ամենեւին չընդունել ի տունս, եւ ոչ ողջունել բանիւ, զի մի՛ ոք ի մէնջ լիցի հաղորդ չար գործոց նոցա։*



*Ճշմարիտ գտաք զձեզ հաւատով, եւ հաւատարիմ ծառայս Աստուծոյ, գրեցաք ձեզ հաստատուն ունել զնոյն ամենայն քաջութեամբ, ոչ երկնչել ի սպառնալեաց նոցա, համբերութեամբ տանել, եթէ դիպեսցի, զկապանս, զբանդս, որով լցան խնդութեամբ սուրբ առաքեալքն, ցուցեալ մեզ աւրինակ բարի քաջալերութեան, կամաւք եւ յաւժարութեամբ ընդունել զյափշտակութիւն ընչից ապականելեաց ժամանակեան կենցաղոյս, արհամարհել զամենայն նեղութիւնս եկեալս ի վերայ վասըն անուանն Քրիստոսի։ Եւ մեք գոհանալով յուսամք ի ձեր հաստատութիւն հոգւոյ, եւ հաղորդիմք կամաւք եւ խորհրդովք, կարեկցեալ ամենայն կարեաց ձերոց, եւ խնդրեմք ի տուողէն բարեաց, զինքնայորդոր յաւժարութիւն ձեր յաւելուածով պահել, աւր ըստ աւրէ աւգնականութեամբ եւ*

*շնորհիւ փրկչին Քրիստոսի Աստուծոյ մերոյ։ Հընազանդեցաք եւ հաւանեցաք հրամանի ձերում, եւ վկայութեամբ ձերով ձեռնադրեցաք զայրդ ընտրեալ ի ձեզէ զԱբդիսոյ, ի մեծապատիւ աշտիճան քահանայապետութեան, ամենայն եպիսկոպոսաւք աշխարհիս, հանդերձ քահանայիւք եւ վանականաւք եւ ուխտիւս սրբոյ եկեղեցւոյ, կամաւք ազատաց աշխարհականաց, եւ համաւրէն ժողովըրդականաց, եւ առաքեցաք առ ձեզ։*

*Աղաւթեմք եւ մեք ի մեր եկեղեցւոջ, լերուք մեզ աղաւթակիցք եւ դուք միանձնութեամբ հաւատոյ՝ հայցել յԱստուծոյ, զի աստուածատուր շնորհիւ դորա, եղիցի խաղաղութիւն աշխարհի, հաստատութիւն սրբոյ եկեղեցւոյ, զաւրութիւն ուղղափառութեան։ Եւ ձեր հնազանդութիւն եղիցի առ դա ստոյգ, որպէս առ հրեշտակապետ Աստուծոյ, ողջամիտ պահել զվկայութիւն ձեր ի վերայ դորա, զի բաւական եղիցի կարգաց սրբոյ եկեղեցւոյ, վարուց ուղղութեան, պաշտաման եւ աղաւթից պայծառութեան, եւ փութոյ եղբայրութեան, զի ամենայնաւք զարդարուն եղեալ՝ ձեր թելադրութեամբ եղիցի ձեզ պարծանք՝ եւ մեզ ուրախութիւն երկնաւոր· որով փառաւորեսցի հասարակաց սուրբ Երրորդութիւնն Հաւր եւ Որդւոյ եւ սուրբ Հոգւոյն, ամէն։*





# ԼԷ

## ՅԱԲԴԻՍՈՅԷ ԵՊԻՍԿՈՊՈՍԷ ԱՍՈՐԵԱՑ ԱՌ ՏԷՐ ՆԵՐՍԷՍ ՀԱՅՈՑ ԿԱԹՈՒՂԻԿՈՍ ԹՈՒՂԹ ՈՂՋՈՒՆԻ

*Հա՛յր հոգեւոր, կարգի՛չ իմաստուն, հովի՛ւ արթուն, անձն լուսաւոր, նահատա՛կ արդարութեան, գանձաւոր այր արդա՛ր հաւատոց, ընկե՛ր առաքելոց, հաւասա՛ր վարդապետաց, որոյ է պարծանք խաչն, եւ նովի՛ն պարտես զպատերազմունս, հալածես զգունդս թշնամոյն, լոյս պայծառ, զոր գըրեաց Աստուած յեկեղեցւոջ լուսաւորել հոգեւորութեամբ զամենայն աշխարհս, Տէր Ներսէս, ողորմութեամբն Աստուծոյ կաթուղիկոս Հայոց Մեծաց, եւ այլ աթոռակցաց, եպիսկոպոսակցաց, երիցանց, եւ սարկաւագաց, եւ այլ իշխանաց աշխարհիդ, եւ ամենայն ուխտի սրբոյ եկեղեցւոյ· յԱբդիսոյէ շընորհիւն աստուծոյ եպիսկոպոսէ ասորեաց, եւ որդի սրբութեան ձերոյ, ի Քրիստոս Յիսուս ի Տէր մեր ողջոյն։*

*Նախ քան զամենայն աղաչեմ զձեզ աղաւթել ի վերայ մեր փրկիլ մեզ յայնցանէ որ ապստամբեն ի ճշմարիտ հաւատոյ։ Եւ մինչ ի ձէնջ գնացաք ողորմութեամբն Աստուծոյ՝ յամենայն աւթեւանս ուր հասաք սիրով ընկալան զմեզ· եւ մինչ ի մեր գաւառս հասաք աղաւթիւք ձերովք, եւ ցուցաք*

------

*Բնագիր Ա· էջ 59 - 61։*

զառ ի ձէնջ գրեալ թուղթս ուղղափառաց աշխարհիս, խնդացին եկեղեցիք, ուրախացան անապատք, փախստական եղեւ մոլորութիւնն, եւ տիրեաց խնդութիւնն, պայծառացա՛ւ գիր ողջունի ձերոյ որպէս զարեգակն, կորեա՛ւ մոլորութիւնն որպէս ստուեր, եւ էառ հաստատութիւնն զյաղթութիւն. քայքայեցաւ խաբէութիւն, եւ զաւրացաւ ճշմարտութիւն, յաղթողական ուժովն կործանեաց զատելիս, ցրուեաց զթշնամիս, եւ կատարեցաւ ի վերայ կորուսելոցն ասացեալն ի մարգարէէն, Մերժեցա՛ն մեղաւորք ի Սիոնէ, եւ դողումն կալաւ զհեթանոսս: Ընթացաւ լուր համբաւի գրելոյ ձերոյ յամենայն Ասորեստանի, ոչ միայն ի հաւատացեալս, այլ եւ ի հերձուածողս, զի մինչ լուան թէ եպիսկոպոս ձեռնադրեցէք ուղղափառաց, եւ նզովեցէք զմոլար վարդապետն խաբէութեան զՆեստոր պեղծ, եւ զԹէոդորոս, եւ զԴեոդորոս, եւ զԹեոդորիտոս, եւ զժողովն Քաղկեդոնի, եւ զտումարն Լեւոնի, եւ զՍեւերիոս, եւ զգիրս իւր ապականութեան, եւ զամենայն հերետիկոսս: Եւ մինչ զայդ ամենայն լուան զեղծքն՝ անկաւ ի վերայ նոցա դողումն եւ երկիւղ, զի հարան ի նզովից ձերոց որպէս ի նետից խոցեալք: Ժողովեցան առ միմեանս, որպէս զի տացեն ընդ մեզ պատերազմ, խորհեցան ընդ միմեանս վասն իմ. եթէ զդա, Հայոց կաթողիկոսի եւ եպիսկոպոսացն ձեռնադրեալ է միաբանութեամբ տանուտերաց, եւ այլ իշխանաց աշխարհին, եւ պատուիրեալ ընդ մեզ չհաղորդել, եւ արքայից արքայի հրաման է, թէ իւրաքանչիւր ոք զիւր հաւատ կալցի, գուցէ յորժամ մեք ընդ դմա կռուիմք եւ խռովեցուցանեմք, դա Հայոց գիտել տայ, եւ Հայք արքայից արքայի ցուցանեն, եւ մեզ չարաչար աշխատութիւն հասուցանեն. եւ յայդ



երկիւղէ լռեցին, եւ ո՛չ աշխատեցին ինչ զմեզ:

Բայց եւ այլ հերձուածողք, որ ունին զՍեւերոսի չար ուսումն, եւ ասեն եթէ՝ Մարմինն տեառն ապականացու էր ի խաչին, եւ ապականութեան հրնազանդեցաւ, եւ յանդգնեալ նոյնպէս ասեն, եթէ Յորժամ չարչարեցաւ մարմին տեառն ապականութիւն ընկալաւ, եւ զայն ոչ լսեն, զոր Պետրոսն ասէ թէ Մարմին նորա ոչ ետես զապականութիւն: Եւ արդ ասեն նոքին իսկ Սեւերիանոսքն, թէ մեք ի Հայս երթամք, եւ զկաթուղիկոսն եւ զեպիսկոպոսսն ուսուցանեմք, եւ ի նոցանէ թուղթս բերեմք թէ հաւատ այդ արդար է զոր դոքայդ ունին, եւ մեք այնպէս հաւատամք. եւ առ ձեզ որպէս յանգէտս կամին գալ: Բայց դուք, Հարք հոգեւորք, վառեալ հաւատով Աստուծոյ որ բնակեալ է ի ձեզ, որպէս իմաստութիւնդ ձեր աստուածային է, խաւսել ընդ նոսա բանիւ գիտութեան, զի նոցա տեսեալ եթէ ոչ ընդունին զմեզ, ամաչեսցեն ի խաբեբայ իմաստից իւրեանց եւ մեք զաւրասցուք ի վերայ նոցա՝ ուժով հաստատութեան հրամանաւ ձերով: Ո՞ գիտէ թէ մինչ ի ձէնջ նեղին եւ ի մէնջ, ապաշաւեալ յապաշխարութիւն եկեսցեն եւ խնդրեսցեն զհաստատութիւն. եւ մեք, թէ կամեսցի Աստուած, ընդ մաւտ առ ձեզ հասանեմք յերկրպագել ձեզ տերանց եւ հարանց, եւ ի ձէնջ աւրհնիլ: Գրեցաք զայդ սիրոյ ձերում. ողջոյն տան ձեզ սուրբ եկեղեցիքս, եւ վանաց երիցունք, եւ ամենայն հաւատացեալք աշխարհիս, աղաւթել ի վերայ մեր ընտըրեալք Աստուծոյ:

Զթումաս նուաստս յամենայնի եւ զծնաւղսն իմ յիշեցէ՛ք
ի Քրիստոս Աստուած:

---------

# ԼԸ

## ԱԲԴԻՍՈՅԻ ԵՊԻՍԿՈՊՈՍԻ ԱՍՈՐԵԱՑ ՈՒՂՂԱՓԱՌԱՑ, ԱՌ ՏԷՐ ՆԵՐՍԷՍ ԿԱԹՈՒՂԻԿՈՍ ՀԱՅՈՑ, ԵՒ ԱՌ ԱԹՈՌԱԿԻՑՍ ՆՈՐԻՆ, ՅԱՂԱԳՍ ԱՆԻԾԵԱԼ ՆԵՍՏՈՐԱԿԱՆԱՑ ՀԵՐՁՈՒԱԾՈՂԱՑ

*Ուղղափառաց, եւ ճշմարիտ հաւատացելոց, ընկերա՛ց առաքելոց, որդոց արդարոց, եւ բարի նահատակաց, եւ հովուաց ընդրելոց, Տեառն Ներսէսի Կաթուղիկոսի Հայոց Մեծաց եւ Մերշապհոյ Տարաւնոյ եւ Մամիկոնենից եպիսկոպոսի, եւ այլ եպիսկոպոսաց աշխարհիդ, վանից երիցանց, քահանայից եւ ամենայն ուխտից սրբոյ եկեղեցւոյ հանդերձ իշխանաւք եւ ամենայն ժողովրդականաւք· Աբդիսոյ ողորմութեամբն Աստուծոյ եպիսկոպոս Ասորեաց ուղղափառաց, որդի եւ սնունդ սրբութեան ձերոյ, Յիսուսիւ Աստուծով, լուսով կենդանութեամբ եւ անապական փրկութեամբ, ողջո՛յն։*

*Պարտ է մեզ յիշել այժմ զսրբոյ Պաւղոսի առաքելոյ զբանն որ ասէ· Թէ Ով է մեր յոյս կամ խնդութիւն կամ պսակ պարծանաց՝ եթէ ոչ դուք առաջի Աստուծոյ։ Եւ զի՞նչ փառաբանութիւն կարեմք մատուցանել Աստուծոյ վասն փութոյ որ ի ձեզ յաղագս ճշմարտութեանն· դուք ձեզէն գիտէք, զի գրեցեալք որ ի մէնջ առ ձեզ, եւ որ ի ձէնջ առ մեզ, ոչ միայն վասն հաստատութեան ճշմարիտ*

------

*Բնագիր Ա· էջ 62 - 65։*



*հաւատոյ, այլ եւ վասն նզովելոյ զմոլորեցուցիչ հերձուածողսն զամենեսեան, մանաւանդ զպեղծն Նեստոր, եւ զժողովն Քաղկեդոնի, եւ զՍեւերիոս զուսուցիչն ապականութեան, որք յիրաւի իսկ նզովին, զի նոքա են պղտորիչք եկեղեցւոյ Աստուծոյ, յայժմու ժամանակիս յամենայն տեղիս։ Եւ վայել էր իսկ ձեզ, ո՛վ աստուածասէրք, զի ատեցէք եւ հալածեցէք, եւ նզովեցէք զըմբռնեալսն ի չար մտածութեանն Նեստորի նզովելոյ, զի մի ապականեսցեն պեղծ ուսմամբ իւրեանց զհաւատդ չնորհեալ ձեզ ի Քրիստոսէ Աստուծոյ, որք անուանեցան իսկ ի սրբոց առաքելոց եղբարք սուտք, եւ մշակք անաւրէնութեան, Թշնամիք խաչին, եւ վախճանն նոցա կորուստ· ասաց զնոսա եւ սուրբ մարգարէն՝ արծաթ պեղծ զի անարգեաց զնոսա տէր։ Եւ երանելի եւս էք, ով ճշմարիտք, եթէ զգուշանայցէք հաւտի Աստուծոյ, զորս փրկեաց պատուական արեամբն իւրով· զի յաւուր գալստեան նորին ընդունիցիք ի նմանէ զարդարութեան պսակն· զի դուք էք լոյս աշխարհի եւ աղ երկրի։ Եւ որպէս ոչ կարեն հողմք եւ մրրիկք խաւարեցուցանել զարեգակն, եւ ոչ մոլորութիւն հերձուածողաց կարող է խափանել զճշմարտութիւն·*

*Տեսէք, Հարք հոգեւորք, մի՛ գուցէ հաւատս մեր, որ է մարգարիտ, որում ոչ գոն գինք, ապականիցի ի մոլորեցուցչաց, եւ խռովեցուցանիցէք զսուրբ Հոգի, որով մկրտեցաքն յաւուրն փրկութեան, զի գրեալ է, Թէ Յաւուրս յետինս, քակեսցին ոմանք ի հաւատոց, եւ հայեսցին յայսս մոլորութեան, եւ ի վարդապետութիւնս դիւաց։ Բայց մեք ուղղափառքս՝ հսկեսցուք հաւատով, խորհրդով, բանիւ եւ գործով, սիրեսցուք զհաւատ, զդեղն կենդանութեան, ըստ գրեցելումն, Թէ Արդարն ի հաւատոց կեցցէ,*

*եւ եթէ ոք երկմտեսցէ, ոչ հաճեսցի ընդ նա անձն իմ։ Բայց մեք ոչ առաք զհոգին երկմտութեան, այլ առաք զՀոգին հաւատոյ, սիրոյ, եւ ճշմարտութեան, եւ ուսաք թէ որ հաւատայ յՈրդին Աստուծոյ, ունի կենդանութիւն յաւիտենական, եւ որ ոչ հաւատայ յՈրդին Աստուծոյ, ոչ գոյ նորա կենդանութիւն յաւիտենից։ Զի Տէրն ասէ, Ես եւ Հայրն իմ մի եմք, եւ որ ետես զիս, ետես զՀայր իմ· եւ դարձեալ թէ Ելի ի Հաւրէ եւ եկի յաշխարհ, եւ ելանեմ յաշխարհէ եւ երթամ առ Հայր, եւ առաքեմ առ ձեզ զՀոգին ճշմարտութեան, նա ուսուսցէ ձեզ զամենայն։*

*Արդ որպէս աւանդեցաւ ի սրբոյ Հոգւոյն ճշմարիտ հաւատ սրբոց հարանցն եւ աւանդեցին մեզ, նոյնպէս եւ խոստովանիմք։ Հաւատամք ի Հայր եւ յՈրդի եւ ի սուրբ Հոգին, ի Հայր, որոյ հայրութիւնն անհասանելի է· եւ յՈրդի, որոյ ծընելութիւնն անքննելի է, եւ ի սուրբ Հոգին, որ ի Հաւրէ ելանէ, եւ ընդ Հաւր եւ ընդ Որդւոյ երկըրպագի եւ փառաւորի· եւ ի մի Երրորդութիւն երկրպագեալ, եւ զուգեալ յէութեան։ Ես հաւատամ թէ ի մի դէմ իցէ Երրորդութեանն, այսինքն Որդի ճշմարիտ ի Հաւրէ ճշմարտէ, բարձրեալ որպէս զՀայր, փառաւորեալ որպէս զծնաւղ, զաւրութիւն եւ իմաստութիւն Հաւր, բազուկ եւ կարողութիւն, ճառագայթ եւ ծնունդ էութեան, եւ զուգեալ զաւրութեամբ եւ կարողութեամբ եւ գործակցութեամբ, ընդ Հաւր եւ ընդ սրբոյ Հոգւոյն։ Որդի միշտնջենաւորութեամբ ի բնութենէ Հաւր, իջեալ յերկնէ աւետաւորութեամբ Գաբրիէլի հրեշտակապետի բնակեցաւ յարգանդին Մարիամայ սրբոյ կուսին աստուածածնի, վասն փրկութեան ամենայն մարդկան· եւ ոչ հեռացեալ ի Հաւրէ, եւ*



*որպէս Աստուած որում ամենայն ինչ դիւրին է· արար իւր ճանապարհ գալստեան եւ յայտնութեան ստուգապէս, որով մատոյց զինքն առ մեզ սիրովն անպատմելի, եւ ա՛ռ ի կուսէն մարմին անապական եւ շունչ անփոփոխելի, զի անամուսնութեամբ մարմնացաւ, եւ զմարմին մեր արար մարմին իւր, եւ զշունչ մեր՝ շունչ դիմի իւրոյ։ Բնակեցաւ յարգանդին իննամսեայ, որ նկարէ զսաղմն յարգանդի, ծնաւ որպէս զմարդ, եւ ոչ ելոյծ զկուսութիւն ծնաւղին։ Այն՝ որոյ ոչ գոյ սկիզբն ծնելութեանն ի Հաւրէ, պատեցաւ ի խանձարուրս, որ շրջապատեալն է ճառագայթիւք, եւ սնաւ հասակաւ, որպէս տղայ, որոյ ոչ չափի բարձրութիւն մեծութեանն· մկրտեցաւ ի Յորդանան գետ ի Յովաննէ, որ եւ զանդունդս չափեաց ափով իւրով, վկայեաց Հայր ի յերկնից թէ Դա է Որդի իմ սիրելի, ի դա հաճեցայ· եւ յայտնեցաւ մեզ Երրորդութիւն ի մկըրտութեանն Միածնին· Հայր ձայնիւ, Որդի յայտնութեամբ, եւ սուրբ Հոգի իջանելով· եւ մկրտութեամբ իւրով սրբով ետ հուր(1) եւ հոգի ի ջուր, զի մեք սրբեսցուք մկրտութեամբն եւ եղիցուք հոգեւորք։*

*Եւ ել յանապատ փորձիլ ի բանսարկուէն, որ զարհուրեցուցանէն զարարածս, ցուցակութեամբ ճշմարտութեանն, եւ պահեաց, եւ քաղցեաւ յագեցուցիչն ամենայն մարմնոյ· ծարաւեցաւ, եւ ծարաւմամբն իւրով անցոյց զծարաւ մեր· ննջեաց, որ անքունն էր, վաստակեցաւ եւ նստաւ ի վերայ ջրհորին, որ հզաւրն է, եւ կամաւք պատրաստեաց զանձն յԵրուսաղէմ առ սպանողսն զմարգարէսն։ Եւ եմուտ ի դատաստան, դատաւորն կենդանեաց*

------

(1) *Տպ. հոտ։*

*եւ մեռելոց, եւ հայհոյեցաւ յամպարշտաց արարիչըն ամենայնի, հարցաւ ի Պիղատոսէ՝ որ սերովբէք եւ քերովբէք երկեղիւ աւրհնեն զէութիւն նորա, կափեցաւ եղեգամբ ի պղծոյ՝ լոյսն արդարութեան, տանջեցաւ հեծանաւք՝ հուրն ծախող, ընկալաւ թուք ի պղծոց՝ որ փչեացն շունչ յերեսս Ադամայ, եբարձ զխաչ իւր եւ ել ի Գողգոթայ, որ ունի զաշխարհ ակնարկութեամբ հրամանի իւրոյ· պրկեցաւ ի վերայ փայտին՝ որ ձգեաց զերկին, հայեցաւ յերկիր՝ եւ դողաց, ակնարկեաց երկնի եւ խաւարեցաւ, արեգակն խափոյց զճառագայթ իւր, զի մի տեսցէ զՏէրն իւր կախեալ զփայտէ· աղաղակեաց թագաւորն կենդանեաց ի վերայ փայտին՝ եւ դողացին հիմունք երկրի, աղաղակեցին եւ վէմք թէ ո՞վ է· քարոզեցին եւ բնութիւնք թէ ո՞յր որդի է· համբարձ զձայն իւր ի վերայ Գողգոթայի, եւ խրամատեաց զդժոխս մեռելոց, սասանեցան տարերք ի լուծանել՝ եթէ չէր կալեալ զաւրութեան խաչեցելոյն, եւ ճշմարիտ չարչարանաւքն խափանեաց զչարչարանս մեր· եւ մահուամբն կենդանացուցչաւ սպան զմահ մեր, էջ ի Գողգոթայէ զաւրութեամբ ի դժոխս, եւ զարհուրեալ դողացին ի նմանէ· անկաւ մահ յաթոռոյ իւրմէ, եւ կործանեցաւ ապականութիւն ի պատւոյ իւրմէ, եւ կամեցաւ անմահն լուծանել զիշխանութիւն մահու չարչարանաւքն իւրով։ Յերրորդ աւուր յարեաւ ըստ գրոց, եւ բացան դրունք գերեզմանին ընդդէմ դրանց երկնից, եւ իջին զաւրք հրեշտակաց պատուել զՏեառնորդին իւրեանց զկենդանի, որ էջ եւ եհան զզաւրութիւն մարդկան յաշխարհէն մահու, զի ոչ ի չարչարանացն· արատաւորեցաւ, եւ ոչ ի մահուանէն ըմբռնեցաւ, զի զոր կամեցաւն արար, եւ զոր էրն ոչ կորոյս, եւ մինչ վայելչանայր իշ-*



*խանութեամբ իւրով, արար փրկութիւն ամենեցուն· եւ մինչ եղեւ մարդ, եւ չարչարեցաւ եւ մեռաւ վասն մեր, ի բնութենէ մեծութեան իւրոյ ոչ փոփոխեցաւ, ել յերկինս նստաւ ընդ աջմէ Հաւր, եւ թագաւորութեան նորա ոչ գոյ վախճան։*

*Յաղագս այսր հաւատացեալ եկեղեցի աղաղակէ ասելով, Ինձ մի լիցի պարծել, բայց միայն ի խաչն տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի Աստուծոյ ամենայնի· որում փառք եւ պատիւ եւ երկրպագութիւն յաւիտեանս յաւիտենից· ամէն։*

**Զանարժան ծառայս Աստուծոյ զԹումաս յիշեցէք ի Քրիստոս։**



# ԼԹ

## ՆՈՐԻՆ ԱԲԴԻՍՈՅ ԵՊԻՍԿՈՊՈՍԻ. ՅԱՂԱԳՍ ԱՆԻԾԵԱԼ ՆԵՍՏՈՐԱԿԱՆԱՑ ԵՒ ԱՄԵՆԱՅՆ ՀԵՐՁՈՒԱԾՈՂԱՑ

*Քանզի այսպէս հաւատամ առաջնորդութեամբ Միածնին որ վասն մեր մարդացաւ, խոստովանիմ որպէս ուսուցին գիրք սուրբք, եւ վարդապետեցին ճշմարիտքն հարք. ՅԺԸքն որ ի Նիկիայ, եւ ՃԾքն որ ի Կոստանդինուպաւլիս, եւ Մ.քն որ յԵփեսոս, որ հաճեցան եւ հաստատեցին զհաւատ եւ զսահմանս անշարժելի զոր եդին ՅԺԸ հարքն, որ ժողովեցան ի սրբոյ Հոգւոյն եւ յիւրեանց ժամանակս հալածեցին զմոլորեցուցիչս որպէս զգայլս ապականիչս ի հաւտէ Քրիստոսի, եւ զի նահատակեցան հաւատով, եւ նզովեցին զամենայն հերձուածողս։ Ահա գրեալ են անուանք նոցա ի գիրս կենդանութեան, եւ մեք որդիք եւ ժառանգք հաւատոյ նոցա, քանզի նախանձաւորք նոցա եմք, եւ զաւրանամք հաւատովք, նզովեմք զհերձուածողս զառաջինս եւ զմիջինս եւ զվերջինս որպէս զնոսա։*

*Նզովեմք զԱրիոս որ հայհոյեաց եւ ասաց, թէ Որդի ոչ է ի բնութենէ Հաւր։*

*Նզովեմք զՄակեդոնիս, որ ասաց թէ Հոգին սուրբ նուազ է քան զՀայր եւ զՈրդի։*

*Նզովեմք եւ զՊաւղոս Սամուստացի, զի ասաց*

------

*Բնագիր Ա. էջ 66 - 67։ Հմմտ. Դ. էջ 65 - 68։*



*թէ Յիսուս մարդ էր եւ իմաստութեամբ զաւրանայր եւ ուսանէր, եւ իմաստութիւն մեծ է քան զՅիսուս։*

*Նզովեմք զՄանի, եւ զՄարկիոն, եւ զԲարդեծան, եւ զԵւտիքոս, որ ասացին թէ՝ որպէս նմանութեամբ եւ ստուերիւ եւ կարծեաւք երեւեցաւ յաշխարհի Որդին Աստուծոյ, եւ ոչ ստուգապէս ա՛ռ մարմին եւ հոգի եւ շունչ ի սուրբ կուսէն աստուածածնէ։*

*Նզովեմք եւ զԱպաւղինար որ ասաց թէ մարմին էառ ի կուսէն, եւ հոգի եւ շունչ եւ միտս ոչ առ։*

*Առաւել նզովեմք զպիղծն Նեստոր, որ հայհոյեաց եւ ասաց եթէ Մարիամ ոչ ծնաւ զԱստուած, բայց զմարդ արարած, որպէս զմի ոք ի մարգարէից. եւ այնու մեծ էր քան զմարգարէսն, զի տաճար եղեւ Բանին Աստուծոյ։*

*Նզովեմք եւ զԹէոդորոս, եւ զԴիոդորոս, եւ զԹէոդորիտոս, եւ զԻբա, եւ զԱկակ, եւ զԲարծումայ Հնծիհնայ եւ զպեղծ կանոնս նոցա, եւ որք միանգամ հնազանդեցան, եւ կամ հնազանդին չար ժողովոյն Նեստորի, որ ամպարշտութեամբ իւրով ասաց, եթէ ի ձեռն շնորհի արժանաւորեցաւ Քրիստոս՝ լինել տաճար Բանին Աստուծոյ. եւ նոյն այս մարդ Քրիստոս ի զաւակէ Դաւթի, չարչարեցաւ եւ մեռաւ վասն մեր, եւ մահուամբ իւրով արար փրկութիւն ամենեցուն, եւ յաղագս այսր պատուեցաւ լինել Որդի Աստուծոյ. եւ հայհոյեն եւ ասեն, եթէ այլ որդի է որ ի Հաւրէ, եւ ա՛յլ այն որ ի Մարիամայ։ Եւ մինչ խելագարեցան՝ արհամարհեցին զՀայր երկու որդւովք, միովն բնութեամբ, եւ միւսովն եկամտիւ. եւ այսու մուծին չորրորդութիւն ի խոստովանութիւն իւրեանց, եւ մոռացան*

*զսուրբ Երրորդութիւնն, որ յերկնայնոց եւ յերկրայնոց (Երրորդութիւն) փառաբանի։*

*Եւ ըստ նոցա բանիցն անաւրէնութիւն հաստատի, եթէ նոր Աստուած երկրպագի, որոյ սկիզբըն ի Մարիամայ եւ այսր· եթէ այդպէս իցէ, ամենայն ազգք եւ տոհմք կորեան· եթէ մարդոյ խաչի երկիր պագանեն եւ զմարմին եւ զարիւն մարդոյ ճաշակեն։*

*Նզովեմք զժողովն Քաղկեդոնի եւ զտումարն Լեւոնի, զի ասացին երկուս բնութիւնս եւ երկուս դէմս Քրիստոսի յետ միաւորութեանն։*

*Նզովեմք եւ զՍեւերոս եւ զգիրս նորա զապականիչս, որ արար բաժանումն աստուածութեանն ի մարմնաւորութենէն, եւ ասաց եթէ ապականացու էր մարմինն Աստուծոյ, որպէս ամենայն մարդկան, ի կուսէն մինչեւ ցյարութիւնն անփառաւոր եւ անկատար, բայց ի յարութեանն փառաւորեցաւ եւ կատարեցաւ· եւ ոչ լուաւ զբանն Պետրոսի որ ասէ, եթէ Մարմին նորա ոչ ետես զապականութիւն։*





## Խ

## ՆՈՐԻՆ ԱԲԴԻՍՈՅԻ ԵՊԻՍԿՈՊՈՍԻ ՑԱՂԱԳՍ ՆԶՈՎԵԼՈՑ ԶԱՄԵՆԱՅՆ ՀԵՐՁՈՒԱԾՈՂՍ, ՈՐՔ ԷԻՆ ՀԱԿԱՌԱԿ ՈՒՂՂԱՓԱՌԱՑ

*Որ ոչ հաւատայ եթէ բնութեամբ էութեանն ճանաչի միութիւն Երրորդութեան՝ միութիւն յէութեան, եւ երրորդութիւն դիմաց, եւ անսկիզբն է միութիւն էութեանն եւ երրորդութիւնն դիմաց, եղիցի նզովեալ։*

*Որ ոչ խոստովանի զՅիսուս Աստուած, որ համբերեաց խաչի կամաւորութեամբ վասն մեր, մինն ի դիմաց Երրորդութեանն եւ ի բնութենէ Աստուծոյ Հաւր, այլ փոխանակ այդորիկ ասէ, եթէ մարդ է բնութեամբ, եւ այր է արարած, եւ Աստուած է շնորհաւք, եւ որդի է ընտրութեամբ, եւ ապականացու մարմնով, եւ չարչարելի եւ մահկանացու բնութեամբ մարդկայնով, եղիցի նզովեալ։*

*Որ ասէ եթէ յերկնից, եւ կամ յայլմէ բնութենէ էառ Աստուած մարմին եւ արիւն, եւ ոչ առաւել խոստովանի եթէ ի Մարիամայ ի սրբոյ կուսէն, որ ի մեր բնութենէս, էառ Տէրն մարմին եւ շունչ, եւ չարչարեցաւ եւ մեռաւ վասն մեր որպէս եւ կամեցաւ, եղիցի նզովեալ։*

------

*Բնագիր Ա· էջ 68 - 69։ Հմմտ· Դ· էջ 69 - 71։*

Որ համարձակին ասել զմարմինն Աստուծոյ ապականացու ի միաւորութեանն, եւ ասէ բաժանումն Աստուծոյ եւ մարմնոյն, եւ ոչ առաւել խոստովանի մի Աստուած անապական, եւ մի բնութիւն անմահ, եւ մի դէմ երկրպագեալ, զի է Աստուած եւ մարմին մի բնութիւն եւ մի դէմ աներկբայանալի, եղիցի նզովեալ։

Որ ասէ զկնի միաւորութեանն անբաժանելոյ, երկուս բնութիւնս ի Քրիստոս, եւ կամ երկուս դէմըս, եւ երկուս կերպարանս, եւ այդու մուծանէ չորրորդութիւն յերրորդութիւնն, եղիցի նզովեա՛լ։

Որ ասէ զմահն Տեառն կենդանացուցիչ եւ զչարչարանսն փրկարար՝ ապականացու՝ եւ ոչ առաւել խոստովանի, եթէ չարչարանաւքն անչարչարելի, եւ մահուամբն անմահ՝ որպէս Աստուած, որում ամենայն ինչ դիւրին է, եղիցի նզովեա՛լ։

Որ ասէ զմարմինն ճշմարտի Աստուծոյ եւ Տեառն Յիսուսի Քրիստոսի, եթէ ի միաւորութենէն մինչեւ ցյարութիւնն ապականացու էր եւ անփառաւոր եւ անկատար, բայց ի յարութեանն փառաւորեցաւ եւ կատարեցաւ, եւ ոչ առաւել խոստովանի, եթէ որպէս զկնի յարութեանն էր, նոյնպէս եւ յառաջ քան զյարութիւնն՝ կենդանի եւ կենդանացուցիչ, փառաւոր եւ կատարեալ եւ անապական, եղիցի նզովեա՛լ։

Զայս ամենայն զոր գրեցաք եւ նզովեցաք զպեղծ հերձուածողս, զի ուսաք ի մարգարէից, առաւել ի Դաւթայ երանելոյ, եթէ Զատելիս քո Տէր ատեցի, եւ ի վերայ թշնամեաց քոց մաշեցայ, ատելութիւն կատարեալ ատեցի զնոսա, եւ եղեն ինձ ի թշնամիս. եւ իմաստնացաք յառաքելոյն որ ասէ, եթէ Փախիր ի պեղծ եւ ի նորաձայն բանից եւ ի հակառակութենէ եւ ի մոլորեցուցիչ գիտութենէ.



եւ ճշմարիտ վարդապետքն, որ պատուիրեցին մեզ, Գրիգորիոս եւ Բարսեղիոս, եւ Աթանասիոս եւ Կիւրիղղոս եւ ամենայն ուղղափառ վարդապետք, որ նահատակեցան վարդապետութեամբ սրբոյ եկեղեցւոյ, եւ ուսուցին յայտնապէս ամենեցուն, եթէ որ ոչ հաւատայ թէ Աստուած ծնաւ ի Մարիամայ ի սրբոյ կուսէ, չարչարեցաւ, խաչեցաւ եւ մեռաւ վասն մեր, յարեաւ յերրորդ աւուր, համբարձաւ յերկինս, եւ նստաւ ընդ աջմէ Հաւր, եւ գալոց է դատել զկենդանիս եւ զմեռեալս անվախճան թագաւորութեամբ. եղիցի նզովեալ։

Եւ յաղագս այդր փառաբանեմք, Սուրբ Աստուած, Սուրբ եւ Հզաւր, Սուրբ եւ Անմահ, որ խաչեցար վասն մեր, ողորմեա մեզ։ Եւ առաւել քան զայս հաւատ ոչ ընդունիմք, քանզի ասէ առաքեալ, Եթէ մեք կամ հրեշտակ յերկնից աւետարանեսցէ ձեզ աւելի քան զոր աւետարանեցաքն ձեզ, նզովեալ եղիցի։

**Զթումաս եւ զծնաւղսն իմ**
**յիշեցէ՛ք ի Քրիստոս։**



## ԽԱ

## ՏԵԱՌՆ ՆԵՐՍԷՍԻ ՀԱՅՈՑ ԿԱԹՈՒՂԻԿՈՍԻ. ԹՈՒՂԹ ՄԵՂԱԴՐՈՒԹԵԱՆ ԱՌ ԵՊԻՍԿՈՊՈՍՈՒՆՍ

Սրբասիրաց եւ քրիստոսասիրաց աթոռակցաց մերոց, Գրիգորի Արծրունեաց եպիսկոպոսի, Սահակայ Ռշտունեաց եպիսկոպոսի, Սողոմոնի Մոկաց եպիսկոպոսի, Ստեփաննոսի Անձեւացեաց եպիսկոպոսի, Հռոմանոսի Ակիոյ եպիսկոպոսի, Քրիստափորի Պալունեաց եպիսկոպոսի, Միքայէլի Զարեհաւանից եպիսկոպոսի, Աստուածատրոյ Բզնունեաց եպիսկոպոսի, Թադէոսի Մեհնունեաց եպիսկոպոսի· ի Ներսիսէ Հայոց կաթուղիկոսէ, ի Մերշապհոյ Տարաւնոյ եւ Մամիկոնէից եպիսկոպոսէ, ի Գրիգորէ Մարդպետական եպիսկոպոսէ, ի Պարգեւայ Հարքայ եպիսկոպոսէ, ի Տիրկանէ Բագրեւանդայ եպիսկոպոսէ, ի Գրիգորոյ Բասենոյ եպիսկոպոսէ, ի Պետրոսէ Սիւնեաց եպիսկոպոսէ, ի Մաշդոցէ Խոռխոռունեաց եպիսկոպոսէ, ի Խոսրովայ Ամատունեաց եպիսկոպոսէ, հոգեւոր սիրով ողջոյն։

Վասն անիծեալ խուժկաց նեստորականաց, որ եկեալ բնակեցան յաշխարհիս մերում պատճառաւ վաճառաշահութեան, եւ այժմ չարահնար պղծալից անիծաբեր արուեստիւ իւրեանց ցոգիս մեր ազդեցին, մինչեւ իւրեանց պղծութեան հաւատոյ առաջնորդ չեպիսկոպոս ածեալ, եւ մեզ լուսաւոր եւ ուղղափառ հաստատուն հաւատոյս խոչընդա՛կն կացուցանել· յառաջագոյն վասն նորին իրաց, մեք եւ աշխարհիս մերոյ տանուտեարք եւ ազատք, միաբանութեամբ ի ձեռն գրոյ հրաման արարաք վասն ձեր, փութապէս ի Դուին ի սուրբ եկեղեցիս ժողովելոյ, եւ աստ միաբանութեամբ ըստ հաճոյից Աստուծոյ առնել խորհուրդ, եւ հնար լինել բառնալ զայսպիսի անհնարին աղէտս, եւ զհանապազորդ հեծութիւն հոգւոց մերոց։ Եւ ձեր ոչ ունելով զնախանձ վասն Աստուծոյ, հեղգացեալ սպուժեցէք, եւ ի ձեր առնելոյ՝ բազում գործ սրբոյ եկեղեցւոյ մնաց· քանզի գործ Աստուծոյ է, եւ հանդէս հոգեւորական, ձեր զմարմնոց հեշտութիւն կարեւոր համարելով, որոց յո՛յժ մեղադիր եմք։

Արդ վասն նորին զայս գիր միաբանութեամբ առ ձեզ հրամայեցաք առնել, եւ զձեզ տեարս ստիպեմք փութով հասանել, ոչ վասն մարմնաւոր պիտոյից, այլ նախանձախնդիր լինելոյ գործոյ Աստուծոյ, եւ հոգւոց փրկութեան՝ ի սահմանեալ ժամադրութիւնս, ամենայն հաստատութեամբ առանց յապաղանաց ի սրբոյ Գրիգորի ժողովն, միաբանութեամբ ի սուրբ եկեղեցիս ժողովել։ Ապա թէ ոք, առանց պատճառի հիւանդութեան, այլ զբաւսանաւք կենցաղոյս, հեղգացեալ գտցի, եւ ի սահմանեալ ժամդ ոչ եկեսցէ, այնպիսին ի միաբանութենէ եպիսկոպոսութեան որոշեալ լիցի։ Իսկ որ կամաւոր յաւժարութեամբ ի ժողով միաբանութեան ուղղափառ հաւատոյս ի սուրբ եկեղեցիս փութասցի, նա հատուցումն բարի ի սուրբ Երրորդութենէն ընկալցի, եւ ի մէնջ եւ յաթոռակցաց մերոց աւրհնեսցի։ Եւ դուք տեարք, որպէս թուի,

------

Բնագիր Ա. էջ 70 - 71։

*կամաւորութեամբ, ի ձեռն գրոյ պատասխանի արարէք։*

*Ողջ լերուք յուսովն Քրիստոսի Աստուծոյ մերոյ։*





## ԽԲ

## ՈՒԽՏ ՄԻԱԲԱՆՈՒԹԵԱՆ ՀԱՅՈՑ ԱՇԽԱՐՀԻՍ Ի ՁԵՌՆ ՆԵՐՍԷՍԻ ՀԱՅՈՑ ԿԱԹՈՒՂԻԿՈՍԻ, ԵՒ ՄԵՐՇԱՊՀՈՅ ՄԱՄԻԿՈՆԷԻՑ ԵՊԻՍԿՈՊՈՍԻ, ԵՒ ՊԵՏՐՈՍԻ ՍԻՒՆԵԱՑ ԵՊԻՍԿՈՊՈՍԻ, ԵՒ ԱՅՂՈՑ ԱԹՈՌԱԿՑԱՑ, ԵՒ ՏԱՆՈՒՏԵՐԱՆՑ, ԵՒ ԱԶԱՏԱՑ, ԵՒ ՀԱՄԱՒՐԷՆ ԺՈՂՈՎՐԴԱԿԱՆԱՑ։

*Վասն զի եհաս մեզ վտանգ հոգեւոր դիպուածի, որ եղեւ հանապազորդեան հիւանդութիւն, եկաք ի խորհուրդ միաբանական, զի բարձցուք ըզհառաչագին հեծութիւն ցաւոյս այսորիկ հոգւոց մերոց եւ զխիղճ ի խորհրդոց՝ փախչել ի մեղաց աւտարոտեաց, որում լինել երբեք չէր ակնկալութիւն։ Եւ վասն զի եղեւ, վասն այնորիկ հարկեցաք առնել զմիաբանութիւնս զայս համաշխարհական, մեք ամենայն Հայք, ի քսան եւ չորրորդ ամի Խոսրովու արքայից արքայի, ի սուրբ ի քառասներորդսն, ի կիւրակէի իւղոգոմենին, վասն չար աղանդին խուժկաց նեստորականաց, զորս նզովեաց սուրբ Հոգին ի ձեռն սրբոց ուղղափառ եպիսկոպոսաց ՅԺԸ իցն ժողովելոց ի Նիկիայ, եւ ՃԾ իցն ի Կոստանդիանուպաւղիս, եւ Մ. ոցն յԵփեսոս, որոց անիծեալ զՆեստոր խզեցին ի բաց ընկեցին, արարեալ զնա հալածական յաւտար աշխարհ ի կողմանս Մծբնացւոց, զորս երթեալ խմորեաց չարագիւտ*

------

*Բնագիր Ա. էջ* 72 - 75։

արուեստիւ իւրով զօգիս նոցա, արարեալ զնոսա փչաբերս եւ խաւարաբնակս, յոր ըմբռնեցան եւ կողմանքն Խուժաստանի, յորոց ոմանք հասեալ յառաջագոյն յաշխարհ մեր, վաճառաշահութեամբ կեցին ընդ հարսն մեր եւ ընդ մեզ, միաբանութեամբ ի մեր եկեղեցւոջ՝ խոստովանելով զինքեանս միահաւատ ընդ մեզ։ Եւ ի տասն եւ յեւթներորդ ամի Խոսրովու արքայից արքայի, ի մարզպանութեանն Նիհորականայ, արարին իմն չինած յանուն Մանաճհրի Ռաժկի, որ հաւատացեալ ի Քրիստոս եւ մկրտեալ անուանեցաւ Գրիգոր, եւ սպանաւ վասն նորին հաւատոյ, եւ ապա անուանեցին զնա տեղի ժողովոյ պղծութեան իւրեանց։

Ածին եւ վարդապետս առաջնորդ կորստեան ինքեանց, որք եկեալ ձեռնարկեցին՝ զապականութիւն իւրեանց բերելով ի սուրբ եւ ի ճշմարիտ հաւատ մեր, եւ պատրեցին ի ժողովրդականաց տգիտաց զարս եւ զկանայս, հաղորդել հաւատոյ յաղտեղութեան աղաւթից նոցա, տանել հաց ընծայի ի տեղի անաւրէնութեան նոցա, ընդունել ի ձեռաց նոցա հաղորդութիւն՝ իբրեւ յուխտէ նուիրաց պաւղիկենաց, յանդգնեցան տալ զիւրեանց ջնջագիր կնիք անկնիք մանկանց ժողովրդեան մերոյ՝ առ ի մեռանել նոցա առանց մկրտութեան զմահն յաւիտենական, եւ զգօղս եւ զպոռնիկս եւ զայլ վնասակարս, զոր մեք արտաքոյ եկեղեցւոյ եւ աւրհնութեան առնէաք, եւ չհամարէաք արժանի սրբոյ հաղորդութեան, երթային առ նոսա եւ նոքա ընդունէին յիւրեանց ի պիղծ եւ յանաւրէն աւրհնութիւնն եւ հաղորդութիւն ժողովարանին՝ հակառակ մեզ։ Զայս աղէտ հոգեւոր տեսանելով ի նոցանէն, հասաք, թէպէտ եւ անագան, ի վերայ՝ պատճառող ստութեան նոցա, զի կեղծաւորութեամբ ունելով զանուն քրիստոնէութեան եւ ուրանան



զճշմարտութիւնն։ Իսկ մեր ոչ կարացեալ համբերել այսպիսի չար գործոց նոցա, համաւրէն ամենեքեան արարաք զգիրս զայս ուխտի եւ հաստատութեան ամենեցուն կամաց յաւժարութեամբ, առաջի տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի Աստուծոյ մերոյ։ Քանդեալ աւերեցաք զտեղի ապաւինի անաւրէնութեան նոցա եւ բարձաք ի մէնջ գիշերային զայն խաւար։

Ես Ներսէս Հայոց կաթուղիկոս, եւ Մերշապուհ Տարաւնոյ եւ Մամիկոնէից եպիսկոպոս, Գրիգոր սեպհական գնդին եպիսկոպոս, Պարգեւ Հարքայ եպիսկոպոս, Տիրակ Բագրեւանդայ եպիսկոպոս, Գրիգոր Բասենոյ եպիկոպոս, Ներսէս Մարդաղւոյ եպիսկոպոս, Վաղոտ Արշամունեաց եպիսկոպոս, Պետրոս Սիւնեաց եպիսկոպոս, Գրիգոր Արծրունեաց եպիսկոպոս, Մարկոս Բագրեւանդայ եպիսկոպոս, Մաշդոց Խոռխոռունեաց եպիսկոպոս, Յոհան Ապահունեաց եպիսկոպոս, Աբդիսոյ Ասորեաց ուղղափառաց եպիսկոպոս, Յովնան Վանանդայ եպիսկոպոս, Հաւուկ Արշարունեաց եպիսկոպոս, Քրիստափոր Պալունեաց եպիսկոպոս, Յոյս Գողթան եպիսկոպոս, Թադէոս Մեհենունեաց եպիսկոպոս, եւ ամենայն եպիսկոպոսունք Հայոց աշխարհիս, եւ իշխանք, Համազասպ ի Գուգվառամեան ի տանէ Մամիկոնէից, Գարջոյր Հայոց մաղխազ, Սամէղ յԱրտաւազդան սպարապետ, Գրիգոր ի Հմայական, Սահակ ի Վարդանան, Աստուածատուր Վանանդայ տէր, Դատոյ ի Գարջուղեան, Գրիգոր եւ Վարդան ի Վասակայ, Զաւրակ ի Գղաւոնան, Վարազ Յոհան ի Յոհանան, Վարդան ի Մուշեղեան, Համազասպ, Սահակ ի Հմայակեան, Գնեալ Գնունի, Վարազ Գաբեղեան, Գրիգոր Աբեղեան, Մերշապուհ ի Շինական, Համազասպ Զիւնականեան, Աստուածատուր Հաւնունի, Աշոտ ի Վարազտիրոցեան, Մու-

շեղ ի Հմայեկեան, Վրիւ յԱրտաշրան, Աստուածատուր Արշաւրեան, Սամուեղ ի Մամական, Վարդ ի Հմայական, Ներսէս ի Սամսոնեան, Վարդան Վահեւունի, Հմայեակ Վարաժնունի, Մանուեղ Սպանդունի, Վարդ եւ Արտաւազդ ի Մամական, Համազասպ ի Սահական, Սահակ ի Մանուեղեան, Վարդան ի Մուշեղեան։ Եւ ոչ ոք արտաքոյ մնաց յաշխարհականաց ի յայս ի կամաւոր գործոյ, ի քահանայից, ի վանականաց, ի ժողովրդականաց, ի բարետոհմից, եւ յամենայն շինականաց։ Եւ բարձաք ի միջոյ զնոցա կրճիմն չար, ի լոյս խաղաղական ոգւոյ եւ մարմնոյ։

Եւ սահմանեցաք ըստ հրամանի սուրբ առաքելոցն, եւ երանելի ուղղափառ վարդապետաց, ամենեւիմբ մի՛ վիճել ընդ նոսա հակառակաբանութեամբ, այլ՝ հեռանալ ի նոցանեն՝ արդարեւ որպէս ի թշնամեաց Քրիստոսի Աստուծոյ, եւ մեզ կալ ի նմին ուխտի հաստատուն, որպէս արարաք եւ գործեցաք հանդերձ Աստուծով, յաղագս սրբոյ հաւատոյ խոստովանութեան։ Ապա թէ իցէ ո՛ք որ սայթաքիցէ ի մէնջ կամ ի զաւակէ եւ կամ ի զաւակաց զաւակէ մերմէ մինչեւ յաւիտեան, եւ կամիցի թիւրել եւ դառնալ յուխտէ հասարակաց, եւ խորհիցի առնել ինչ ընդդիմութիւն կամակոր մտաւք, բանիւ եւ կամ գործով, հաւանել երբէք՝ միւսանգամ շինութիւն քանդման աւերեցելոյն միաբանեալ նեստորիանոսաց, եւ հեռանալ ի մէնջ այսու մասամբ՝ եւ ատեալ զանձն յետս կալով ի մեծ խորհրդոյ քրիստոնէութեան· Նզովեսցի հոգւով, նզովեսցի մարմնով, եւ ամենայն կենցաղիւ իւրով՝ ի սուրբ Երրորդութենէն, եւ որոշեալ լիցի հալածանաւք, եւ արտաքս ընկեցեալ լիցի յամենայն ուղղափառաց, ի ժամանակի դիպեցելոյ նովին անի-



ծիւք, եթէ ի կաթուղիկոսաց ոք իցէ, եթէ յեպիսկոպոսաց, եթէ ի քահանայից, եթէ յիշխանաց, եթէ յայլ ժողովրդականաց։ Եւ արարաք զայս հաստատութիւն պատուիրանի, մեզ եւ որդւոց, եւ որդւոց որդւոց մերոց, մինչեւ ի կատարումն ժամանակաց, եւ կնքեցաք՝ առաջին սրտիւք մերովք յուսովն Քրիստոսի Աստուծոյ մերոյ, եւ ապա մատանեաւք մերովք։



## ԽԳ

## ՈՐՈՇՈՒՄՆ ՆԵՍՏՈՐԱԿԱՆԱՑՆ
## Ի ՍՐԲՈՑ ԵԿԵՂԵՑԻՈՑ

Ուղղափառաց եւ ճշմարիտ հաւատացելոց աթոռակցաց մերոց, Գրիգորի Մարդպետական եպիսկոպոսի, Գրիգոր Արծրունեաց եպիսկոպոսի, ի Ներսէսէ Հայոց կաթուղիկոսէ, ի Մերշապհոյ Տարաւնոյ եւ Մամիկոնէից եպիկոպոսէ, ի Պետրոսէ Սիւնեաց եպիսկոպոսէ, հոգեւոր սիրով ողջոյն։

Գիտութիւն լիցի սրբութեանդ ձերում յաղագս հոգեւոր վտանգիս, որ եհաս մեզ յանիծեալ նեստորականաց, քսան եւ հինգերորդ(*) Խոսրովու արքայից արքայի, մեք եւ այլ եպիսկոպոսունք եւ իշխանք եւ ազատք Հայոց, ամենեքին համաւրէն ժողովեալ ի սուրբ եկեղեցիս, զանիծեալ նեստորիանոսս, որոշեալ ի սրբոյ եկեղեցւոյ եւ յամենայն ուղղափառ կարգաց մերոց, խզեալ ի բաց ընկեցաք, եւ միաբանութեամբ ամենեքեան հրաման արարաք ճշմարիտ հաւատացելոց ի Քրիստոս՝ ամենեւիմբ մի՛ հաղորդել ընդ նոսա, մի՛ յաղաւթս, մի՛ ի կերակուրս, մի՛ յըմբելիս, մի՛ ի բարեկամութիւն, մի՛ ի խնամութիւն, մի՛ ի դայեկութիւն, եւ մի՛ վասն մարմնաւոր իրաց տալ եւ առնուլ ինչ ի նոցանէ, բայց միայն վաճառել ինչ եւ կամ գնել՝ որպէս ի

------

Բնագիր Ա· էջ 76 - 77։

(*) Այսպէս յօր· իմա՛ ի քսանեւհինգերորդ ամի։



Հրէից եւ կամ յայլ ազգաց, որք ոչ ճանաչեն եւ ոչ խոստովանին լիապէս զսուրբ Երրորդութիւնն։ Իսկ որք հաղորդիցին ընդ նոսա եւ կամակից լիցին նոցա պղծալից հաւատոյն եւ անաւրէն գործոցըն, այնպիսիքն նզովեսցին հոգւով, նզովեսցին մարմնով, եւ ամենայն կենցաղով իւրեանց, եւ որոշեսցին ի սրբոյ եկեղեցւոյ, եւ ի ճշմարիտ հաւատէ Քրիստոսի, եւ մատնեսցին սատանայի եւ հրեշտակաց նորա, եւ եղիցին խաւարաբնակք, եւ յաւիտենից հրոյն կերակուր։

Եւ վասն ծանուցանելոյ ձեզ այնոցիկ որոց չիցէ լուեալ զայս պատուէր, վասն նորին զայս թուղթ առ ձեզ տեարս հրամայեցաք գրել։ Դուք, տեարք, վանից երիցանց եւ քահանայից եւ համաւրէն ժողովրդականաց՝ ճշմարիտ հաւատացելոց ի Քրիստոս, որք մերձաւորք եւ որք հեռագոյնք են ի ձէնջ, հրաման տուք եւ պատուէր արարէք, զի ամենեւին մի՛ հաղորդեսցին ընդ նոսա, այլ հեռասցին ի նոցանէ ամենայն կարգաւք, որպէս ի վերոյդ գրեալ է։ Իսկ որք վասն պատրանաց կենցաղոյս սիրեսցեն զնոսա առաւել քան զՏէրն եւ զՓրկիչն մեր Քրիստոս Աստուած եւ զսուրբ եւ զճշմարիտ հաւատ մեր, իջցեն նզովքդ այդ ամենայն, զոր ի վերոյդ գրեալ է, ի վերայ գլխոց նոցա, եւ աստէն ի կենցաղումս երերմամբ շրջեսցին ըստ նմանութեան Կայենի։ Իսկ որ կամաւոր յաւժարութեամբ զամենայն պատուիրանս ընկալցի եւ պահեսցէ, այնպիսին աւրհնեսցի հոգւով, աւրհնեսցի մարմնով, եւ ի կենցաղումս զուարճացեալ բերկրեսցի, եւ յաւիտենից բարիսն վայելեսցէ։

Զթումաս եւ զծնաւղսն իմ յիշեսջի՛ք ի Քրիստոս։

## ԽԴ

### ԹՈՒՂԹ, ԶՈՐ ՏԷՐ ՅՈՎՀԱՆՆԷՍ ՀԱՅՈՑ ԿԱԹՈՒՂԻԿՈՍ ԵՒ ԱՅԼ ԵՊԻՍԿՈՊՈՍՔ, ԱՌ ՍԻՒՆԵԱՑ ԵՊԻՍԿՈՊՈՍՆ ԵՒ ԱՌ ՏԷՐՆ ԱՐԱՐԻՆ։

*Քրիստոսիւ պայծառացելոյ սիրելի եղբաւր եւ աթոռակցի մերոյ տեառն Վրթանիսի Սիւնեաց եպիսկոպոսի, եւ մեծավայելչի եւ փառաւորելոյ Միհրարտաշրի Սիւնեաց տեառն, ի Յովհաննիսէ Հայոց կաթուղիկոսէ, յԱբրահամայ Տարաւնոյ եւ Մամիկոնէից եպիսկոպոսէ, ի Ներսայ Բասենոյ եւ Մարդաղոյ եպիսկոպոսէ, ի Մաշտոցէ Խոռխոռունեաց եպիսկոպոսէ, ի Գտայ Վանանդայ եպիսկոպոսէ, յԱբդիսոյէ Ասորեաց ուղղափառաց եպիսկոպոսէ, ի Բաբայ Ամատունեաց եպիսկոպոսէ, աւրհնութեամբ եւ հոգեւոր սիրով ողջո՛յն։*

*Դուք ինքնին գիտէք զանհնարին վտանգսն, որ այժմ յաշխարհս մեր եհաս· զի յառաջագոյն երանելի հարքն մեր եւ զ́կնի նոցա մեք ընկալաք զհաւատ ճշմարտութեան զայն զոր քարոզեցին մարգարէքն եւ առաքեալքն, եւ ուսուցին հարքն ճշմարիտք, սուրբն Գրիգորիոս՝ սրբոյն Թադէոսի յաջորդն, եւ ՅԺԸ եպիկոպոսքն որ ժողովեցան ի Նիկիայ քաղաք, եւ ՃԾ քն որ ժողովեցան ի Կոստանդնուպաւլիս, եւ Մ· քն որ ժողովեցան յԵփեսոս, որ սրբոյ Հոգւոյն ազդմամբ ուսուցին մեզ, զոր եւ ի սկզբանէ*

------

*Բնագիր Ա· էջ 78 - 80։ Հմմտ· ԺԱ· էջ 134 - 138։*



*իսկ տէրունեան բարբառն վարդապետեաց աշակերտացն ասելով· Գնացէ՛ք աշակերտեցէ՛ք զամենայն հեթանոսս, մկրտեցէ՛ք զնոսա յանուն Հաւր եւ Որդւոյ եւ Հոգւոյն սրբոյ, եւ բարձր եւ հռչակաւոր կնիք եդաւ ի վերայ ամենայնի։ Զայս հաւատ ճըշմարտութեան ստուգեալ ունէր միաբանութեամբ աշխարհս Հայոց, եւ ոչինչ ամենեւին յումեք արատութիւն յայտնի երեւէր, եւ բնակեալ էաք ի սուրբ կաթուղիկէ եկեղեցւոջ ընդ հովանեաւ սուրբ խաչին Քրիստոսի Աստուծոյ մերոյ ի խոր խաղաղութեան։*

*Իսկ ի ժամանակիս յայսմիկ, Նեստորի անիծելոյ, որ կուրացոյց չարահնար հերձուածովն իւրով զկողմանս Խուժաստանի, երեւեցաւ խմոր չարութեան եւ յաշխարհիս մերում, որ էր ծածկեալ յանձինս անսուրբս, որք սկսան պղտորել զյստակ հաւատս ճշմարիտ սուրբ Երրորդութեանն, պատրել զանձինս անհաստատաց մարմնասէր ցանկութեամբք, եւ տարածեցաւ երկբայութիւնն, եւ հիւանդացան բազումք զախտ անհնարին։ Եւ ոչ կարացեալ մեր տանել այսպիսի չարաչար եւ դառն հայհոյութեան, փութացաք մեք՝ եւ այլ աշխարհիս Հայոց եպիսկոպոսունք, ընդ որս էր եւ երանելին Պետրոս եպիսկոպոսն ձեր, եւ քահանայք եւ ուխտ սրբոյ եկեղեցւոյ, եւ վանաց երիցունք, ազատք եւ համաւրէն ժողովրդականք ուղղափառք ժողովեալք ի սուրբ եկեղեցիս, եւ միաբանութեամբ զպեղծ Նեստորիանոսս եւ զՔաղկեդոնիտս, եւ զայլ հերձուածողս, ի մեր սուրբ եկեղեցւոյս նզովիւք հալածական արարաք, եւ սուրբ եւ փառաւորընկալ սեղանոյս եւ կենատուր սուրբ աւետարանիս եւ փրկչական սուրբ խաչիս առաջի՝ պայման արարաք ամենեւիմբ հեռանալ ի հաղորդութենէ նոցա,*

եւ չլսել բանից նոցա մահաբերաց:

Եւ վասն զի ի հաւատարիմ մարդկանէ լուաք եթէ պեղծ Նեստորականք բազումք եւ ի ձեր աշխարհիդ բնակեալ են, եւ դուք զդոսա ի սուրբ եկեղեցիս ընդունիք, եւ ընդ դոսա հաղորդիք, յիշելով զսրբոյն Գրիգորի զմեծ վաստակ եւ զջան որ ի մեր եւ ի ձեր աշխարհիդ վերայ հասարակաց, եւ զսուրբ ծնունդն, զոր սրբով աւազանաւն վերստին ծնաք, եւ զլուսաւոր եւ զճշմարիտ հաւատ, զոր մեք եւ դուք ընկալաք եւ այժմ ունիմք, զհոգեւոր սէր, զոր ընդ ձեզ ունէաք, առաւել քան զամենայն զայդ հոգ յանձին կալաք հեռացուցանել եւ ի ձէնջ զչարի որոմանն սերմանս: Վասն նորին՝ յուխտէ մերմէ զհաւատարիմ այր Մաթէոս քահանայ, առաքեցաք առ ձեզ եւ աղաչեցաք Քրիստոսիւ Աստուծով մերով, որպէս ցայժմ լեալ էք ազգ սուրբ, ժողովուրդ սեպհական տեառն Աստուծոյ, նոյնպէս եւ այժմ էք եւ մինչեւ յաւիտեան· դուք եւ զաւակք ձեր զաւրացարուք Տերամբ, եւ կարողութեամբ զաւրութեան նորա, եւ առէք զսպառազինութիւնն Աստուծոյ, եւ զսուրբ եւ զճշմարիտ հաւատ, զոր ի սուրբն Գրիգորէ եւ յայլ հոգեկիր երանելի հարանցն ընկալաք, հաստատուն եւ անշարժ պահեցէք յանձինս ձեր· եւ զպեղծ Նեստորիանոսսդ եւ զայլ հերձուածողս, որ յաշխարհիդ ձերում են, նոյնպէս ի սրբոյ եկեղեցւոյ եւ ի ձեր հաղորդութենէ նզովիւք ի բաց մերժեցէ՛ք, եւ ամենայն ուղղափառաց պատուիրեցէ՛ք, մի՛ լինել հաղորդ անպտղութեան գործոց նոցա, եւ մի՛ լսել հրապուրող եւ չարաթոյն բանից նոցա մահաբերաց:

Քանզի զնոսա որոշեաց սուրբ առաքեալն մանկունս անիծից, եւ զնոցին կորստական վարդապետութիւնն անուանեաց ամպս անջրդիս՝ վարեալս



ի մրրկէ ի կորուստ, ծառս գաւսս պտղակորոյսս, նիւթս կիզման հրոյն յաւիտենից, որք յիրաւի իսկ նզովին, զի նոքա են պղտորիչք եկեղեցւոյ Քրիստոսի Աստուծոյ, յայժմու ժամանակիս, յամենայն տեղիս, որք եւ անուանեցան իսկ ի սրբոյ առաքելոյն, եղբարք սուտք, մշակք անաւրէնութեան, եւ նեռինք եկեալք յաշխարհ· եւ հրամայեցաւ մեզ ճշմարիտ հաւատացելոցս ի սրբոյ աւետարանչէն ի Յովհաննէ՝ ոչ ընդունել զնոսա ի տունս, եւ ոչ ողջունել բանիւ, այլ հեռանալ ամենեւին ի նոցանէ որպէս ի թշնամեաց խաչին Քրիստոսի:

Եւ մեք աղաւթեմք զի նոյն ինքն սուրբ Երրորդութիւնն խափանեսցէ եւ նկուն արասցէ ըզթշնամիս իւր, զհակառակորդսն ճշմարիտ հաւատոյ, եւ զաւրացուսցէ զպաշտաւնեայս եւ զերկրպագուս անուան իւրոյ սրբոյ: Եւ եթէ յումեք ի հերձուածողսդ գտցի զղջումն եւ ամենայն կամաւք իւրովք դառնայցէ ի սուրբ հաւատս մեր, եւ ոչ խաբէութեամբ, նզովեալ գրով զպեղծն Նեստոր եւ զամենայն հերձուածողս եւ զժողովն Քաղկեդոնի, եւ ապա ընդունել զայնպիսին ապաշխարութեամբ· վասն զի դուռն ողորմութեանն Աստուծոյ՝ խոստովանողաց եւ ապաշխարողաց հանապազ բաց է:



## ԽԵ

## ԹՈՒՂԹ ԶՈՐ ՏԷՐ ՅՈՎՀԱՆՆԷՍ ՀԱՅՈՑ ԿԱԹՈՒՂԻԿՈՍ ԵՒ ԱՅԼ ԵՊԻՍԿՈՊՈՍՈՒՆՔ, ԱՌ ԱՂՈՒԱՆԻՑ ԵՊԻՍԿՈՊՈՍՈՒՆՍ ԱՐԱՐԻՆ(1)։

*Լաւաց, ճշմարտից եւ աստուածասիրաց, սիրելի եղբարց եւ աթոռակցաց մերոց, Աբասու Պարտաւայ եպիսկոպոսի, Մովսէսի Բաղաղատու եպիսկոպոսի, Գրիգորի Կապաղակայ եպիսկոպոսի, Հըռոմակայ Ամարասայ եպիսկոպոսի, Տիմոթէի Բաղասականու եպիսկոպոսի, Ամբակումայ Շաքիոյ եպիսկոպոսի, Յոհանկայ Գարդմանայ եպիսկոպոսի, Ղեւոնդի Մեծկողմանց եպիսկոպոսի, ի Յովհաննիսէ Հայոց կաթուղիկոսէ, յԱբրահամայ Տարաւնոյ եւ Մամիկոնենից եպիսկոպոսէ, ի Գրիգորէ Մարդպետական եպիսկոպոսէ, ի Ներսայ Բասենոյ եւ Մարդաղոյ եպիսկոպոսէ, ի Ստեփանոսէ Տայոց եպիսկոպոսէ, ի Մաշտոցէ Խոռխոռունեաց եպիսկոպոսէ, ի Գիւտայ Վանանդայ եպիսկոպոսէ, յԱբդիսոյէ (2) Ասորեաց ուղղափառաց եպիսկոպոսէ, ի Քրիստափորէ Ռշտունեաց եպիսկոպոսէ, ի Բաբայ Ամատունեաց եպիսկոպոսէ, ի Սեկունդոսէ Մոկաց ե-*

------

*Բնագիր Ա.* էջ 81 - 84։ *Հմմտ. ԺԳ.* էջ 122 - 126։

(1) *Թուղթ Յովհաննիսի Հայոց Կաթողիկոսի առ Տէր Աբաս՝ Աղուանից կաթողիկոս սակս Հաւատոյ Հաստատութեան։*

(2) *յԱբդիշոյէ*



*պիսկոպոսէ, եւ յայլ եպիսկոպոսաց աշխարհիս աւրհնութեամբ եւ հոգեւոր սիրով ողջոյն։*

*Քանզի եհաս առ մեզ լուր դժնդակ համբաւոյ, եթէ են ոմանք գայլք յափշտակողք զգեստուք ոչխարաց, որք եկին յաշխարհդ ձեր ի վանաց պըղծոյն Պետրոսի, որ անուամբ աղքատասէրք կոչին եւ գործովք՝ քրիստոսատեացք եւ ուրացողք զսուրբ Երրորդութիւնն. զչար որոմն անիծելոյն Նեստորի եւ զժողովոյն Քաղկեդոնի անարգելաբար սերմանեն ի հոգիս անմեղաց, թիւրելով զնոսա յուղղափառ հաւատոյ՝ մատնել ի յաւիտենական կորուստն։ Զորմէ լսելով առհասարակ ոգւոյ եւ մարմնոյ եղեն անբժշկելի ցաւք։ Վասնորոյ ամենայն հարկաւորութեամբ փութացաք կարեկից լինել ձեզ եւ գրել, յիշեցուցանելով զբանս սրբոյ առաքելոյն. Զգուշանալ անձանց եւ ամենայն հաւտիդ, յորում եդ զձեզ սուրբ Հոգին տեսուչս եւ վարդապետս՝ հաստատուն պահել զհաւատս ուղղափառութեան, զոր ընկալան հարքն մեր ի սրբոց գրոց, ի հին եւ ի Նոր Կտակարանաց, ի ձեռն սրբոյն Գրիգորի, եւ յերից երանելեաց ժողովոցն, ՅԺԸիցն ի Նիկիա, ՃԾիցն ի Կոստանդնուպոլիս, եւ Միցն յԵփեսոս, որոց ձայնակիցք, եւ ժառանգաւորք ուղղափառ հաւատոյն նոցա եղաք մեք ամենայն եկեղեցիք։*

*Խոստովանիմք մեք զմի Աստուած Հայր ամենակալ, զարարողն ամենայն երեւելեաց եւ աներեւելեաց, եւ ի մի Տէր Յիսուս Քրիստոս, յորդին Աստուծոյ, ծնեալ ի Հաւրէ, Աստուած յԱստուծոյ, լոյս ի լուսոյ, Աստուած ճշմարիտ յԱստուծոյ ճշմարտէ, որով ամենայնքն։ Եւ ի սուրբ Հոգին, որ ի Հաւրէ ելանէ, եւ ընդ Հաւր եւ ընդ Որդւոյ երկրպագի եւ փառաբանի, արարչակից եւ հաւասար Հաւր եւ Որդւոյ, Երրորդութիւն կատարեալ միով բնութեամբ,*

*փառաւք եւ զաւրութեամբ եւ իշխանութեամբ՝ նախախնամելով զընդհանուր եղեալքս։*

*Իսկ ի վախճան ժամանակիս Աստուած գոլով մշտնջենաւոր Բանն Աստուծոյ եղեւ մարդ կատարեալ անյեղապէս, մարմնացեալ ի սուրբ Կուսէն անճառաբար, ոչ հեռացեալ ի բնութենէն, եւ ոչ քայքայեալ ի մարմնաւորութիւն, այլ եկաց մնաց նոյն որ էրն, անփոփոխելի եւ անայլայլելի, Աստուած մարմնացեալ, ոչ մասամբ այլ բոլորովիմբ, ոչ պակասութեամբ այլ լիութեամբ, ոչ երկուութիւն այլ միութիւն անբաժանելի։ Ոչ Հայր էառ մարմին այլ Որդի. եւ ոչ սուրբ Հոգին թանձրացեալ մարմնով այլ Միածինն ի Հաւրէ, բայց կամաւք Հաւր եւ զաւրութեամբ սուրբ Հոգւոյն, այլ գոյութեամբ միայն Բանն Աստուծոյ։ Այսպէս եւ սուրբ ծնունդն ճանաչի։ Նոյն ինքն անբովանդակելին խանձարրապատեցաւ, զի մեք զգեցցուք զանապականութիւն. եդաւ ի մսուր, զի զանասնականն ի բաց փոխեսցուք զբարս, ի հրեշտակաց փառաբանեցաւ, զի մեք կոչեսցուք լինել փառաբանակիցք նոցա, ընծայեցաւ ի մոգուցն, զի պտղաբերեսցուք զհաւատս, կաթնաբուծեցաւ զի զանմեղութիւն ընկալցուք, զարգացաւ ըստ մարմնոյ ամենակատարն, զի ժամանեսցուք ի չափ հասակի լրմանն կատարմանն Քրիստոսի։ Եկն կամաւ ի չարչարանս, զի ի տանջանաց մեղացն զերծուսցէ։ Խաչեցաւ զի ի կենդանութեան պտղոյն վայելեսցուք։ Մեռաւ զի մահուամբ մեռուսցէ զմահ։ Եդաւ ի գերեզմանի, զի խորտակեսցէ զնիգս դժոխոց։ Յերրորդ աւուր յարեաւ, զի զմեզ ի նորոգութիւն կենդանութեան փոխեսցէ։ Համբարձաւ յերկինս եւ նստաւ ընդ աջմէ Հաւր, զի եւ մեք դասեալ լիցուք ընդ աջմէ նորա։ Գալոց է միւսանգամ դատել զկենդանիս եւ*



*զմեռեալս, եւ թագաւորութիւն նորա վախճան ոչ ունի։*

*Այսպէս հաւատամք եւ երկրպագեմք եւ փառաբանելով ասեմք. Սուրբ Աստուած, սուրբ եւ հզաւր, սուրբ եւ անմահ, որ խաչեցար վասն մեր, ողորմեա մեզ։ Իսկ զոչ այսպէս խոստովանողսն նզովեցին սուրբ հարքն, նմանապէս եւ մեք նզովեմք զհինս զամենեսեան եղեալ հերձուածողսն եւ զնորըս, զԱրիոս, զՊաւղոս Սամոստացի, զՄանի եւ ըզՄարկիոն, զԵւնոմիոս, եւ զԵւտիքոս, զԱպաւղինարոս, եւ զպեղծն Նեստոր, եւ զԹէոդորիտոս, եւ զսնոտի ժողովն Քաղկեդոնի, եւ զտումարն Լեւոնի, որ լրբաբար յանդգնեցան ասել երկուս բնութիւնս եւ երկուս դէմս ի վերայ միոյ Քրիստոսի Աստուծոյ. եւ թէ սուրբ կոյսն ոչ ծնաւ Աստուած, այլ մարդ սոսկ ըստ մեզ եւ տաճար բանին Աստուծոյ։*

*Այլ են ոմանք որ ասեն թէ մինչ յերկրի էր Քրիստոս՝ ոչ էր յերկինս, եւ մինչ ի խաչին վերայ էր՝ ոչ էր յաթոռ փառաց, եւ մինչ ի գերեզմանին էր՝ ոչ էր ընդ աջմէ Հաւր։ Զխորհեցողսն այսպէս՝ նզովե՛մք։*

*Եւ զԻբա, եւ զԱկակ, եւ զԲարծումա ի Մըծբնայ, որք հնազանդեցան ժողովոյն Նեստորի, եւ եղեն պատճառք կորստեան բազմաց, եւ զՍեւերիոս եւ զգիրս ապականութեան նորա, այլ եւ զամենեսեան իսկ զայնոսիկ, որ այսմ հաւանին, եւ հնազանդին նոցա ամպարիշտ սպանող վարդապետութեանն՝ նզովե՛մք։*

*Եւ առաքեցաք առ ձեզ յուխտէս մերմէ զայր հաւատարիմ՝ զՄատթէոս քահանայ, բերել զգըրեալսդ մեր առ ձեզ, ընդ նմին յիշեցուցանելով զբանս Յովհաննու աւետարանչի որ ասէ. Եթէ ոք եկեսցէ առ ձեզ եւ զվարդապետութիւնս զայս ոչ*

ունիցի, մի՛ ընդունիցիք զնա ի տունս, եւ մի՛ բանիւ ողջոյն ասել նմա: Եւ եթէ ոք ասիցէ այնպիսումն ողջոյն, հաղորդեսցի եւ չար գործոց նորա. զի որ ոչ խոստովանի զՏէր Յիսուս մարմնով եկեալ, նա ինքն իսկ է Նեռնն մոլորեցուցիչ. զայնպիսիսն ի տանց եւ ի սահմանաց ձերոց հալածել եւ զմահաբեր վարդապետութիւն նոցա ամենեւին ոչ առնել արժանի լսելութեան: Արդ, վասնզի հարքըն ձեր հաւատակից էին հարանց մերոց, եւ դուք մեզ, հաճոյ թուեցաւ գալ ի ձէնջ այսր եպիսկոպոսաց երից կամ աւելեաց, լսելով ի մէնջ յանդիման զճշմարիտ վարդապետութիւնն, զի մի ոք կորիցէ ի հովուաց կամ ի հաւտից, այլ ի վերայ բարւոյ գիւտի ձերոյ եղիցի ուրախութիւն հրեշտակաց յերկինս, եւ մեզ յերկրի, ծառայիցս եւ երկրպագուացս Քրիստոսի Աստուծոյ մերոյ:

Ողջ լերուք ի Տէր:





# ԽԶ

## ՅՈՎՀԱՆՆՈՒ ՀԱՅՈՑ ԿԱԹՈՒՂԻԿՈՍԻ Ի ՅԱՅՏՆՈՒԹԻՒՆՆ ՔՐԻՍՏՈՍԻ

Զգարնանային ժամանակին աւուրսն նշանակելով, որ եւ աշխարհի լինելութեան սկիզբն՝ ըստ մեծի մարգարէին Մովսէսի, խաւսելով ընդ Եբրայեցական ազգին, Ամիսս այս եղիցի ձեզ սկիզբն ամսոց. եւ աստուածապաշտ ազգին ի դա՛ռն ծառայութենէ ազատութիւն ելանել՝ ի խոստացեալ երկիրն պարգեւաց մարդասիրին Աստուծոյ կանխաւ հասանել, հետեւակելով ընդ յատակս Կարմիր Ծովու՝ զմեծամեծ սքանչելեացն յիշատակս ի միտ ունելով: Խորհրդաբար եւ ճշմարիտ աշխարհարարութեանս այսորիկ սկիզբն, զգալստեանն Տեառն նորոգելով զհնացեալ եւ զապականեալ զառ ի ներքոյս երկնից յազատութիւն ճշմարիտ, ի ծառայութենէ քրիստոնեայս, եւ աստուածապաշտս ի հեթանոսութենէ առնելով, զյառաջ ասացեալ բանն դարձուցանելով ի սա. Տաւնս այս եղիցի ձեզ սկիզբն ամենայն տաւնից, ո՛վ քրիստոնեայք, առաջին է յամենայն տաւնս սրբոյ եկեղեցւոյ, յորում նորոգումն համաւրէն աշխարհի լեալ, յոյժ վեհագոյն քան յոչնչէն լինելութիւն. առաջին գտաւ ի ծագեալ արեգականն արդարութեան, ամենայն հոգեւոր կարգք զիւրաքանչիւր կալան զտեղի, որ ի հրեշ-

------

Բնագիր Ա. էջ 85 - 89:

տականման պաշտաւնէից կատարին հանապազ· ոչ յերկիր անցաւոր պարգեւացս, այլ յերկնից արքայութիւնն եւ յաւիտենական պարգեւսն· ոչ ծառայակցաւ Մովսէսի առաջնորդութեամբ, այլ ճշմարիտ աւրինադրաւ՝ Տերամբ եւ Աստուծով Մովսէսի եւ ամենայն արարածոց՝ Քրիստոսիւ· որ թէպէտ եւ զկերպարանս ծառայի էառ կամաւք վասն մերոյ փրկութեան, զի զմեզ առ ինքն մերձեցուսցէ, եւ ազգակցաւ մերով մարմնովս, զոր խառնեաց եւ միացոյց ընդ իւրում Աստուածութեանն, կեանս մշտնջենաւորս շնորհեաց մեզ, սակայն եկաց մնաց յիւրում Աստուածութեանն անփոփոխելի։

Եւ թէ զանուն ոք կամի ուսանել զտաւնիս, յորում սքանչելիք մեծամեծք կատարեցան, լուիցէ զանսուտ բանն երկուս ի միասին գումարեալ ծնունդս, միոյ եւ նորին Միածնի Որդւոյն Աստուծոյ· առաջին յԱստուածածին կուսէն սրբոյ եւ երկրորդ յետ երեսուն ամի ի սմին աւուրս մկրտութեամբ ի Յորդանան ի Կարապետէն իւրմէ ի Յովհաննէ ծանուցեալ աշխարհի· վկայեալ Հաւր ի վերուստ բարբառով՝ Դա՛ է որդի իմ սիրելի ընդ որ հաճեցայ, եւ ականատես Հոգին սուրբ ի նըմին աւուր իջեալ յերկնից նմանութեամբ աղաւնոյ հանգչէր ի վերայ՝ յայտնելով զնա փրկիչ աշխարհի, որպէս ի Ծննդեանն, նոյնպէս եւ ի Մկրտութեանն։ Յաղագս որոյ եւ Յայտնութիւն ասի աւրս եւ Ծնունդ· միոյն պատճառք, վասն զի Բանն Աստուած մարմին եղեալ բնակեաց ի մեզ հաւատացեալս, եւ միւսոյն՝ վկայութեամբ Հաւր եւ Հոգւոյն սրբոյ ի մարդիկ ծանաւթութիւն· զորոյ զկնի ճշմարիտ վկայութեանցն համարձակեալ եւ Մկրտիչն բարբառէր մեծաձայն ասելով· Ահա գառն Աստուծոյ որ բառնայ զմեղս աշխարհի։



Յայտնագոյնս ասացից· հիմն եւ արմատ ամենայն շինուածոյ սուրբ եկեղեցւոյ, եւ ամենայն աստուածապաշտից քրիստոնէից, զայս տաւն անդրանիկ ամենայն տաւնից հաւատացելոց ի փրկիչն Քրիստոս, պատուեսցուք զսա որպէս սկիզբն փըրկութեան մերոյ ամենայն սրբութեամբ եւ հոգեւոր աւրհնութեամբք եւ երկնային ուրախութեամբ լցեալ։ Բայց յաղագս կրկնապատիկ լինելոյ պատճառք տաւնիս այսորիկ երկոցուն սքանչելի ծըննդոցն, մերով մարմնով ի սուրբ Կուսէն, եւ մըկրտութեամբ ի Յորդանան հոգեւոր աւազանաւն, ի մի եկեալ միաբանութիւն յաւուր յայսմիկ, բազմապատիկ արարին զուրախութիւն· միովն զի ի բնութենէ մարդկան առեալ զմարմինն՝ ընդ անճառելի Աստուածութեանն խառնեալ միաւորեցաւ, եւ միւսովն զի բարբառ Հաւր ի յերկնից ոչ որոշեաց զմարդկութիւնն, այլ զմիաւորեալն ի մարմնի աստուածութիւնն մարդկութեամբն՝ իւր Որդի սիրելի անուանեաց· ասէ, Ընդ որ հաճեցայ, մեզ հրամայեաց լսել նմա եւ հնազանդ լինել, պատուեսցուք առաւելագոյն զայս ուրախութեամբ մեծաւ, յորում բնութիւնս մեր պատուեցաւ, յաղագս առեցելոյ ի մէնջ ընդ ճշմարիտ աստուածութեանն միաւորեալ, եւ դուստր ազգիս մերոյ Աստուածածին կոչեցաւ եւ եղեւ, որում ի սպասու կան բիւրաւոր բանակք հրեշտակաց Որդւոյ մարդոյ։ Եւ ըզտաւնիս այսորիկ զպատճառս ինքեանք բարբառէին եւ մարդկան ուսուցանէին ասել· Փառք ի բարձունս Աստուծոյ եւ յերկիր խաղաղութիւն եւ ընդ մարդկան հաճութիւն։ Քանզի ասէ, ակնկալութիւն արարածոց՝ յայտնութեան Որդւոյն Աստուծոյ ըսպասէր, առ ի մերժել եւ ի բաց ընկենուլ յինքեան զծանրութիւն նզովիցն, որք յաղագս յանցանաց

մարդոյն եղան։

Լուիցուք այսուհետեւ եւ յաւետարանչէն. եթէ զիա՞րդ եղեւ ծնունդ բանին, ասէ. Բանն մարմին եղեւ եւ բնակեաց ի մեզ. եւ դարձեալ ինքն Հայր բերանով մարգարէին Դաւթայ, որպէս յերեսաց Միածնի Որդւոյն խաւսեցեալ Բանն ընդ Հաւր. Տէր ասաց ցիս որդի իմ ես դու, եւ ես այսաւր ծնայ զքեզ։ Վասն զի ծառայի կերպարան էառ կամաւք, ոչինչ դանդաղի տէր իւր կոչել զծնաւղն իւր բնութեամբ։ Որդի իմ ես դու, ի վերայ բերէ. զառաջին ծնունդն նախ քան զամենայն յաւիտեանըս լեալ անուանէ, վասն զի երիս ծնունդս ամենայն մարդոյ հնար է լինել, ի գրոց սրբոց ուսանիմք։ Առաջին ըստ բնութեան ի միմեանց. երկրորդն որ յոյժ լաւագոյն եւս է քան զառաջինն եւ աստուածային, վերստին ծնունդ ի ջրոյ եւ ի Հոգւոյ սրբոյ, առանց որոյ ոչ յորդեգրութիւն Աստուծոյ ոք դասի, եւ ոչ զերկնից արքայութիւնն կարէ տեսանել. վասն զի եւ թողութեան մեղաց ոչ լինել արժանաւոր հասանել. ընդ որ թէպէտ եւ Նիկոդիմոս տարակուսեալ յերկուանայ թանձրագոյն մտաւք, անհնարին՝ ծերոյն ասելով անդրէն միւսանգամ յարգանդ մտանել մաւր իւրոյ եւ վերստին ծնանիլ, եւ յանդիմանի ի փրկչէն Քրիստոսէ, իբրեւ զոգէտ վարդապետ Իսրայեղի։ Այլ մեք ուսեալք ի հասարակաց Վարդապետէն եւ յիմաստութենէն Աստուծոյ, հաւատամք եթէ է հնար մըտանել հին մարդովն, ապականեցելովն մեղաւք ցանկութեան, ի հոգեւոր արգանդ աւազանի ջրոյն սրբութեան, եւ ելանել հաւատովք նոր մարդ՝ ամենեւին առանց մեղաց, զգեցեալ զզաւրութիւն Աստուծոյ զկատարեալ սրբութիւնն։

Եւ երրորդ ծնունդ զհամաւրէն մարդկան նորոգումն ի հողոյ, ընդ որ սքանչանալով մարգարէն Եսայիաս, Ո՞վ լուաւ, ասէ, կամ ո՞վ ետես թէ երկիր զազգ մի բովանդակ ծնանիցի ի միում աւուր։ Թուի այդ աւրինակ ծննդեան լինել, որ ըստ ուսման եւ բանի վարդապետութեան հաւատոց է. որպէս երանելի Պաւղոս զԿորնթացիսն աւետարանաւըն ծնեալ ի Քրիստոս Յիսուս, եւ զՈնեսիմոս ի կապանս ծնեալ, ասէ։



Արդ մարդկան այսոքիկ են ծննդեան աւրինակ. իսկ Քրիստոսի հանդերձ երեքումբք այսոքիկ, որ ի Կուսէն սրբոյ, Դաւթի եւ Աբրահամու որդի ասի։ Եւ մկրտութեամբն ի Յորդանան ի կարապետէն իւրմէ ի Յովհաննէ, երկոքեան ծնունդքս ի նմին աւուր հանդիպան(*) յետ երեսնամեայ ժամանակի. եւ յարութեանն որ ի մեռելոց, յերրորդ աւուր։ Այսոցիկ երից ծննդոց փրկչին մերոյ Քրիստոսի եղելոյ ի վերջին ժամանակ աշխարհիս. է՛ եւ չորրորդ ծնունդ նորա նախ քան զամենայն յաւիտեանս, անճառելի եւ անպատում ի Հաւրէ միայն, Աստուած յԱստուծոյ, լոյս ի լուսոյ։ Զի թէպէտ եւ ամենայն աւրինակք ծննդեան նորա աստուածայի՛ն եւ անճառելիք, այդ՝ այն առաւել եւս է սքանչելի եւ անպատում, եւ վերագոյն քան ըզմիտս մարդկան, զի յորմէ հետէ Հայր իմանի եւ Որդի ընդ նմին, ո՛չ պատւով եւ ո՛չ երիցութեամբ առաւել ոք քան զոք, բայց միովն միայն որոշեալ ի միմեանց, զի մին ծնաւղ միայն է, եւ միւսըն ծնեալ, իսկ միւսն ի նոցին էութենէ։ Նոքա այսաւր ի Յորդանան ծանուցան աշխարհի, վասն որոյ առաւել զայս տաւն պատուեսցուք մեծաւ ուրախութեամբ։

------

(*) Այսպէս յօրինակին.

*Եւ Կիւրղոս Երուսաղէմի եպիսկոպոս, վարժեալ հռետորական արհեստիւք եւ լի Հոգւով սրբով, որ ի Սիմոն կախարդէ եւ ցիւր ժամանակն զամենայն աղանդս յանդիմանեալ կշտամբեաց եւ զանիրաւ ժողովս նոցա. եւ զտաւնս եւ զընթերցուածս եւ զսաղմոսս ի սրբոց առաքելոցն զեդեալսն հաստատեաց, եւ զյիշատակս մարգարէից եւ առաքելոց եւ մարտիրոսաց ստուգեալ կարգեաց, եւ զգլուխ տաւնից զյայտնութիւնն եդ, զոր սուրբ առաքելոցն էր կարգեալ, եւ չասաց զծնունդն յառաջ քան զյայտնութիւն, այլ զմի եւ զնոյն։ Եւ զոր յայլ քաղաքս ըստ Արտեմոնադիր ընթերցուածոց դեկտեմբերի ամսոյ ի քսան եւ հինգն ծնունդ առնեն, զայն Յակովբայ առաքելոյ եւ Դաւթայ մարգարէի յիշատակի աւր եդ Կիւրեղ. քանզի եւ սուրբ հարքն որ ի Նիկիա ժողովեալ, եւ երանելին սուրբըն Գրիգորիոս եւ սուրբըն Արիստակէս ոչ կարգեցին երկուս տաւնս զԾնունդն եւ զՅայտնութիւնն, այլ մի տաւն։ Եւ ըստ նոցունց հոգեկիր վարդապետքն եւ Թարգմանիչք, որք յԱղեքսանդր եւ յայլ յայտնի քաղաքս վարժեալ, ոչ աւելիս եւ նորս ինչ թարգմանեցին, եւ ոչ ընկալան, եւ ոչ մեզ աւանդեցին. այլ հաստատեալ եմք ի վերայ հիման սուրբ առաքելոցն եւ երանելի հարցն, որ զմի եւ նոյն տաւն կատարեցին, եւ կատարեմք ի պատիւ սուրբ Երրորդութեանն, զաւր սուրբ Յայտնութեանըն ոչ բաժանելով յերկուս զայսաւր ի Յորդանան զծնիցեալ Բանն։*

Զթումաս յիշեա՛ ի Տէր։



## ԽԷ

## ԹՈՒՂԹ ՏԵԱՌՆ ՄՈՎՍԻՍԻ ՀԱՅՈՑ ԿԱԹՈՒՂԻԿՈՍԻ ԱՌ ԿԻՒՐՈՆ ՎՐԱՑ ԿԱԹՈՒՂԻԿՈՍ։

*Կիւրոնի Վրաց Կաթուղիկոսի եւ այլ Եպիսկոպոսաց աթոռակցաց քոց՝ ի Մովսիսէ Հայոց Կաթուղիկոսէ եւ յայլ Եպիսկոպոսաց աթոռակցաց իմոց՝ սիրով ողջոյն։*

*Յառաջագոյն իսկ՝ մինչդեռ առ մեզն էիր՝ խօսեցաք ընդ քեզ բան խրատու եւ մխիթարութեան. որպէս սիրելի եղար եւ աթոռակից՝ որպէս եւ եսդ, եւ եղիցիս արժանապէս գնալ քեզ ի ճանապարհս Տեառն, եւ պահել զպատուիրանս նորա սուրբ սրտիւ եւ անկեղծաւոր հաւատով, եւ զգուշանալ ի վարս եւ ի գնացս, եւ բարիոք հովուել եւ հովուապետել, եւ զգոյշ լինել հօտիդ՝ որ քեզ հաւատացաւ. եւ այլ ամենայն պատուիրանք Տեառն՝ որ յայդ բան բովանդակին։ Եւ դարձեալ զնոյն գրեմ գնալ արժանապէս ի ճանապարհս Տեառն, եւ երանելի լինել ըստ մարգարէին ձայնի, եւ ո՛չ գլնալ ի խորհուրդս ամբարշտաց, եւ յիշել զամենայն բանս Աստուածաշունչ հին եւ նոր Կտակարանաց, որ պատուիրեն մեզ՝ պահել զպատուիրանս Տեառն ուղիղ մտօք եւ ճշմարիտ խոստովանութեամբ, եւ ո՛չ խոտորել ի ճանապարհաց Տեառն յաջ կամ յահեակ. եւ ես զնոյն խնդրէի լսել ի քէն։ Բայց արդ*

------

*Բնագիր Գ. էջ 8 - 12։*

լսեմ, թէ հերձուածք գոն ի քեզ· եւ սակաւ ինչ հաւատացի։ Բայց հաւատացի, վասնզի ի հաւատարիմ վկայից եղեւ ծանուցեալ։ Եւ լուաք այսպէս· եթէ այր մի Խուժիկ Նեստորական եկն առ քեզ, եւ ի քէն առեալ ձեռնադրութիւն Եպիսկոպոսութեան· եւ զարմացայ յոյժ, զի զայնպիսին ո՛չ միայն ի պատիւն յայն ածել արժան էր, այլեւ պատժել, եւ ի ժողովս հաւատացելոց ո՛չ ընդունել· զի գայլ ո՛չ երբեք բնակի ի մէջ ոչխարաց, այլ եթէ երբեք բնակել հանդիպի՝ օձտէ եւ ցրուէ զնոսա։ Նմանապէս եւ գողք· զի գող ո՛չ գայ՝ եթէ ո՛չ զի գողասցի եւ սպանցէ եւ կորուսցէ՝ ասաց մեզ Տէրունական բանն։ Վասնզի այնպիսիքն գողք են եւ աւազակք եւ գայլք յափշտակողք· եւ դարձեալ սուտ առաքեալք եւ մշակք նենգաւորք, եւ կերպարանին զգեստիւք ոչխարաց, եւ ի ներքոյ գայլք են յափշտակողք· յայնպիսեացն զգուշանալ մեզ հրամայեաց Հովիւն քաջ, որ եդ զանձն իւր ի վերայ ոչխարաց· եւ ապա յաւուր վրիժուց հատուցման հատուցանէ նոցա որոշելով ի ձախակողմն կոյս՝ ասելով, Երթայք անիծեալք յինէն, եւ որ ի կարգին է բան։ Եւ դարձեալ, եթէ ի բաց կացէ՛ք յինէն ամենայն մշակք անիրաւութեան, զի ո՛չ գիտեմ զձեզ։ Նաեւ ընդ մէջ կտրեսցէ զնոսա, եւ զմասն նոցա ընդ անհաւատսն դիցէ· զի եւ առաքէ ի տեղին, զոր պատրաստեալ է սատանայի եւ հրեշտակաց նորա։

Արդ գիտեմք՝ զի անգիտութեամբ արարեր զայդ։ Արդ դարձի՛ր եւ ապաշաւեա՛ հանդերձ ապաշխարութեամբ· եւ արտասուօք ասա՛ դու զմարգարէին· Տէ՛ր մի՛ յիշեր զմեղս մանկութեան իմոյ եւ զանգիտութեան· եւ այլ մի՛ եւս տացես աեղի բնակութեան Խուժկին այնորիկ ի մէջ հաւատա-



ցելոց։ Եւ պատուիրեա՛ մեծաւ սաստիւ, զի մի՛ ոք իշխեսցէ ընդունել զնա ի յարկս իւր, եւ մի՛ տալ նմա ողջոյն ամենեւին, եւ մի՛ տեղի բնակելոյ նմա ընդ իշխանութեամբ քոյ։ Եւ դարձեալ մի՛ երբեք ողջոյն տալ նմա ի հաւատացելոց քոց· վասնզի հրաման առաք յաստուածային պատուիրանաց՝ այնպիսեացն ողջոյն ո՛չ տալ· այլ դու ապաշաւեա՛ հանդերձ արտասուօք եւ ողորմութեամբ աղքատաց, եւ ապաշխարեա՛ մեծաւ զղջմամբ· զի ապաշաւելն է դադարելն ի մեղաց։ Զի եթէ մեղիցես, դարձցիս ասէ· եւ թէ ուղղեսցես, յերկար ձգեսցիս· եւ յորժամ դարձցիս եւ յոգւոց հանիցես եւ հեծեծիցես։ Արդ դարձցին առ Աստուած՝ որ խնդրեն զնա, գրեալ է։ Վասնզի զդարձն միայն խնդրէ Աստուած· դարձարո՛ւք առ իս՝ ասէ, եւ ես դարձայց առ Ձեզ։ Արդ մի՛ լինիր չարի յիշատակ, եւ մի՛ գտիչ չարեաց· վասնզի ունիս բազում պատուիրանաց յիշատակ, զբարի գործովք մի՛ զանց առներ։

Արդ այսոքիկ քեզ պատուէր ի գրոց սրբոց· զի սիրեսցես զՏէր Աստուած քոյ· քանզի այն է պատուիրանն Աստուծոյ՝ զի սիրեմք զնա ի սուրբ սրտէ եւ յանկեղծաւոր հաւատոյ· զի գրեալ է, սիրեսցես զՏէր Աստուած քոյ յամենայն սրտէ քումմէ եւ զօրութենէ, եւ որ այլն եւս։ Այս է առաջին պատուիրանն· եւ ամենայն գիրք աստուածայինք յայս բան բովանդակին։ Արդ պահեա՛ զհաւատ եւ զխոստովանութիւն սրբոց հարցն, զոր ինքեանք դաւանեցին, եւ զնոյն մեզ աւանդեցին երեք հարիւր տասն եւ ութքն՝ որ ի Նիկիայ, եւ հարիւր եւ յիսունքն՝ որ ի Կոստանդնուպոլիս, եւ երկերիւրքն որ յԵփեսոս։ Իմա՛ զայն՝ որ ի ժամանակս Կաւատայ արքայից արքայի խնդիր եղեւ քննութեան

հաւատոց. եւ Հոռոմք զՔաղկեդոնին ընկալան ըզհաւատս. եւ մեր աշխարհս եւ ձեր հրաժարեցին եւ հեռացան. եւ դեռ եւս գրով կայ եւ պահի մեր եւ ձեր միաբանութիւն հաւատոյ։ Արդ մի՛ ստեր ուխտի հարցն մերոց՝ որ եդին ի մէջ երկոցունց. եւ մի՛ մեկնիր ի միաբանութենէ մերմէ. եւ մի՛ թողուր զուսումն մանկութեան. եւ մի՛ մոռանար զուխտն աստուածեղէն. եւ մի՛ ձայնակից լինիր Հոռոմոց. եւ մի՛ դառնար սրտիւք քոյ յԵգիպտոս, այլ յիշեա՛ ուստի ելեր ի Նոր Եգիպտոսէ, եւ ի փրկողէ զքեզ զՓարաւոնի դառն տանէն Հոռոմոց, եւ ի չար վերակացուացն, եւ ի դառն ծառայութենէ. մի՛ յանդիմանիր ի մարգարէէն, թէ ո՛չ կացին նոքա յուխտին Տեառն, եւ ըստ իրաւանց նորա ոչ կամեցան գնալ։ Եւ այլուր թէ՝ դարձան սրտիւք իւրեանց յԵգիպտոս։ Արդ մի՛ յենուր ի ցուպն եղեգնէ ի ջախջախեալն. զի թէ յենուցուս, վնաս ոչ սակաւ առնիցես անձին քում։

Մի՛ քակեր զցանկ հայրենի, զոր հաստատեցին սուրբ հարքն վիմօք հաւատոյ։ Զի որ քակէ զցանկ, հարցէ զնա օձ. եւ որ գլէ վէմ, կորուստ անձին իւրոյ առնէ։ Արդ հաստատուն կա՛լ զխոստովանութիւն երից սուրբ ժողովոցն, զոր հարքն մեր եւ ձեր միաւորական գրով հաստատեցին ի մէջ իւրեանց, որ դեռ եւս կայ։ Եւ փախի՛ր անչափ հեռաւորութեամբ ի պիղծ ժողովոյն Քաղկեդոնի եւ յանընդունակ տոմարէն Լեւոնի. եւ նզովեա՛ զամենայն հերձուածողսն, զառաջինսն եւ զմիջինսն եւ զվերջինսն, զոր սուրբ հարքն նզովեցին, եւ մեք նզովեմք. եւ բա՛րձ զամենայն չար ի միջոյ։ Վասնզի գրեալ է, բարձէ՛ք՝ ասէ՝ զչարն ի միջոյ ձերմէ։ Եւ դարձեալ, եթէ Ելէ՛ք ի միջոյ նոցա եւ մեկնեցարուք, եւ ի պիղծս մի՝ մերձենայք. եւ ես



ընկալայց զձեզ՝ ասէ Տէր։ Արդ զԽուժիկն զայն հալածեա՛ յերկրէ քումմէ եւ յաշխարհէ, մի՛ դարձեալ արմատ դառնութեան ի վեր երեւեալ, եւ նովաւ բազումք պղծեսցին։

Յիշեա՛, զի եկիր բնակեցար ընդ հովանեաւ սրբոյ Կաթուղիկէիս, եւ ծառայեցեր միամտութեամբ սրտի քո ի ձեռն հոգեւոր ծառայութեանն՝ որ քեզ հաւատացաւ ի մէնջ. եւ մեք վստահացեալ ի կեանս քո ՝ առ սէր քո՝ արարաք զկամս քո՝ Առաջնորդ զքեզ կացուցանելով աշխարհիդ այդմիկ. զի թէպէտ եւ էիր ազգաւ եւ բնակութեամբ յաշխարհէդ, այլ վաղ ուրեմն հեռացեալ եւ օտարացեալ ի Հռոմայեցւոցն վարեցար աշխարհ։

Իսկ շնորհք Հոգւոյն՝ որ կոչեաց զքեզ ի կոչումնդ յայդ հոգեւոր, իբր ըմբռնմամբ իմն ձըգեաց եւ եհան զքեզ յերկաթի հնոցէն՝ եւ ի միջոյ հալոցացն Հոռոմոց բռնութենէն. վասն զի փառք Տեառն ի կղզիս ծովու, եւ անուն նորա փառաւոր եղիցի յամենայն տեղիս հեռաւորս։ Արդ մի՛ լինիր պատճառ կորստեան քեզ եւ ժողովրդեան քում, զի մի՛ գուցէ հասանիցեն նզովք ի Տեառնէ յաղագս քո ի վերայ ժողովրդեան երկրիդ՝ ըստ ասելոյ մարգարէին, եթէ Նզովք կերիցեն զերկիր, զի մեղան բնակիչք նորա, եւ մընասցեն մարդք սակաւաւորք։ Եւ դարձեալ, եթէ առաքեսցէ Տէր ի պատիւ քո անարգանս, եւ զփառըս հանցէ ի քէն։ Եւ դարձեալ, եթէ յորժամ կատարեսցէ Տէր առնել զամենայն ինչ, ածցէ ըզձեռն իւր ի վերայ մեծամտին, եւ որք զանձինս առ իմաստունս ունին, եւ խորհեցան խորհուրդ այլ ո՛չ Տէրամբ։

*Արդ զայսոսիկ ի բազում վշտաց եւ ի նեղու-թենէ սրտի գրեցի առ քեզ։ Քանզի սէրն Աստու-ծոյ ստիպէ զմեզ խօսել զբանս ճշմարտութեան՝ որ վասն նորա։*

*Եւ զպատասխանիդ թղթոյդ ըստ կամաց Աս-տուծոյ եղիցի մեզ լսել։*

*Ողջ լեր ի Տէր։*





# ԽԸ

## ՊԱՏԱՍԽԱՆԻ ԹՂԹՈՅՆ ՏԵԱՌՆ ՄՈՎՍԻՍԻ ՀԱՅՈՑ ԿԱԹՈՒՂԻԿՈՍԻ Ի ԿԻՒՐՈՆԷ ՎՐԱՑ ԿԱԹՈՒՂԻԿՈՍԷ

*Սրբասիրի եւ պատուականի Տեառն իմոյ՝ Մով-սիսի Հայոց Կաթուղիկոսի՝ եւ ամենայն Եպիսկո-պոսաց Աթոռակցաց քոց ՝ ի Կիւրոնէ Վրաց Կա-թուղիկոսէ խոնարհ երկրպագութեամբ եւ սիրով ողջոյն, եւ յամենայն աթոռակցաց իմոց Եպիս-կոպոսաց՝ կրկին խոնարհութեամբ եւ երկրպագու-թեամբ ողջոյն եւ օրհնութիւն ձեզ ի սուրբ Խա-չէս։*

*Զթուղթս ձեր՝ զոր գրեալ էիք՝ ընկալաք եւ հասու եղաք։ Եւ զպատգամս՝ զոր արարեալ էիք՝ լսեցաք յԵպիկոպոսէս. եւ որ գրով եւ բանիւ հո-գացեալ էիք զմեզ խրատական վարդապետական բանիւ, նա եւ յանդիմանեալ էիք որպէս Տէր եւ Վարդապետ եւ Հայր հոգեւոր, որպէս եւ էքդ իսկ, երկիր պագի եւ շնորհակալ եղէ ձեր հոգեւոր սի-րոյդ։ Բայց ես, հանդերձ Եպիսկոպոսօք իմովք եւ լաւօք աշխարհիս, խորհուրդ արարի օրէնս համա-րելով ո՛չ արգելուլ ի գալոյ զամենեսեան զայնո-սիկ՝ որք ի զղջումն գան եւ յապաշխարութիւն։ Իսկ իբրեւ իմացաք զնորա չարութիւն, դարձեալ մերժեցաք ի մէնջ, եւ արգելաք զմարդիկ ո՛չ տալ ողջոյն նմա։ Եւ որ գրեալս էիք, թէ հերձուածք*

------

*Բնագիր Գ. էջ 12 - 13։*

գոն ի ձեզ՝ եւ մեք ո՛չ հաւատացաք· եւ դարձեալ հաւատացաք յաղագս հաւատարիմ վկայից· ՛ահա մեք մեզէն իսկ ասացաք զեղեալսն ի մէնջ։ Եւ որ զԿաւատայ արքայից արքայի ժամանակն էիք գրեալ, գիտեմք՝ զի այնպէս եղեւ որպէս բազում անգամ լսեալ եմք· եւ որ վասն հարցն մեր եւ ձեր միաբանութեան եւ ուխտի եւ հաստատութեան հաւատոյ էիք գրեալ, մեք անշարժ ունիմք զնոյն։ Եւ որ վասն մեր եւ ձեր աշխարհաց էիք գրեալ եւ ասացեալ յաղագս միաբանութեան՝ զոր ի մերում ժամանակիս է, մեք ի նոյնս ունիմք միաբանութիւն եւ ո՛չ փոխիմք։ Իսկ վասն խուժկին էիք հաստատեալ զհրամանս ձեր գրով եւ բանիւ· որպէս գրեցաք վերագոյն, վաղ մերժեցաք զնա ի մէնջ, եւ հրամայեցաք մերոց ո՛չ ընդունել զնա։ Այլ մեք յամենայնի հնազանդ եմք ձեզ եւ ձերոց հրամանացդ։

Ողջ լերո՛ւք ի Տէր· եւ մեզ աղօթս արարէ՛ք։





## ԽԹ

## ՊԱՏՃԱՌՔ ԹՂԹՈՅՆ ՀԱՅՈՑ ԿԱԹՈՒՂԻԿՈՍԻ ԵՒ ՊԱՏԱՍԽԱՆԻՈՅՆ ԿԻՒՐՈՆԻ՝ ԵԹԷ Ո՞ՒՐ ԳՏԱՒ ԵՒ Ո՞ՐՊԷՍ

Արդ զայսոսիկ թուղթս Մովսիսի Հայոց Կաթուղիկոսի՝ եւ զպատասխանին Կիւրոնի ո՛չ գտաք ի գրել ի գիրս թղթոցն· եւ ի բազում ջան մտեալ հազիւ կարացաք գտանել։ Քանզի վաղ ուրեմն լուեալ էր իմ յուսումնասիրաց ոմանց՝ եթէ սկիզբն Կիւրոնի կորստեան ի Մովսիսի ժամանակն եղեւ· զոր ապա սակաւ ինչ զպատճառն տայ Կիւրոն յառաջին պատասխանումն իւրոյ թղթին՝ որ առ Աբրահամ Հայոց Կաթուղիկոս· եւ ասէ այսպէս· Մովսէս Հայրապետն Հայոց ասէ, որ նախ քան զքեզ յաթոռդ յայդ գրեաց առ մեզ վասն խուժկին եւ ո՛չ վասն հաւատոյ ինչ իրաց· զոր ապա ընթեռնուք յիւր իսկ ի թղթի անդ։

Արդ մեք ի բանէդ յայդմանէ ուսեալք յաղագս թղթոյդ, եւ լուեալ ի հաւատարիմ մարդոց՝ որպէս ասացաք, ի խնդիր ելեալ գտաք ի Տփխիս Քաղաքի, որ է ի Վրաց նահանգին՝ մերձ առ ստորոտով լերինն Կովկասու՝ ի վերայ գետոյն որ կոչի Կուր։

Քանզի էր Քահանայի միոյ գտեալ ի գիրս Վրաց, որում անուն քահանային Կիրակոս կոչիւր։

------

Բնագիր Գ. էջ 14։

*Որ եւ նա մեծաւ աշխատութեամբ գրեալ եւ թարգմանեալ ի մերս լեզու՝ ետ մեզ գրով։ Վասն զի ինքն իսկ կարի քաջ գիտէր զգիր եւ զլեզու Վրաց։ Եւ մեր առեալ զստուգիւ քննութեամբ գրեցաք առ ձերդ հարցասիրութիւն։*





## Ծ

## ՓԱՌԱՒՈՐԵԼՈՑ ՏԵՐԱՆՑ, ՎՐԹԱՆԻՍԻ ՏԵՐԱՆՑ ՆՈՒԻՐԱԿԻ, ԵՒ ՎԱՐԴԱՊԵՏԻ ՔՋԿԱՆ ՈՐԴՒՈՅ· Ի ՍՈՐՄԵՆԱՅ ՍՏՐԱՏԵԼԱՏԷ ԵՒ ՀԱՅՈՑ ՁԱՒՐԱՎԱՐԷ

*Մեք բազում անգամ յանդիման բանիւք, եւ ի հեռուստ գրով խաւսեցաք ընդ ձերում իմաստութեանդ, եւ ակն ունէաք գտանել զձեզ որպէս ըզմիաժառանգս ի սրբոյ աւազանին հարազատ եղբարս եւ որդիս՝ հասարակաց հաւատոյ մեր հաւրն սրբոյն Գրիգորի, եւ դուք շատ ինչ աւտարաբար վարեցայք առ մեզ, եւ հաւասար առաջնոցն այժմու պատասխանիքս լի խարդախանաւք եւ պատճառանաւք խաբէութեան։ Զի եթէ չէր իշխան, որպէս գրեցէքն, տեղապահդ ձեր եկեղեցւոյդ առանց աթոռակցաց իւրոց ասել ընդ մեզ եւ կամ լսել, եւ կամ որ ասէքդ քերդող, նստեալ ի Դունայ աւերածին՝ հաւատոյդ նոր կարապետդ, եւ յառաջընթաց նեռին, պաճուճեալ սնափառութեամբ ի մէջ ախմար եւ մտամոլար մարդկան, եւ ցուցանէ զանձն իւր թէ ես իսկ եմ վարդապետութիւն, ապա պարտ է ինձ անսալ համախոհ միաբանութեան եւ կամ ժողովական գրոց առ միմեանս հաւանութեան· եւ ոչ այնպէս յանկարծաւրէն եւ վարկպարազի, որպէս զոչինչ՝ զսրբոց հարանցն հաստատեալ սեղա-*

------

*Բնագիր Ա· էջ 90 - 92։*

նըս կործանել, եւ որպէս զպիղծ ինչ եւ զանաւրէ-
նութեամբ թաթաւեալս վերստին մկրտել, եւ զան-
մեղ քահանայս բռնադատել, եւ տալ հաստատել
գրով՝ մի՛ իշխեսցեն հաղորդել ընդ մեր բարե-
պաշտութիւնս։ Իմացաք եւ զասացեալսդ ձեր զին-
ուորական կարգի, առանձին ի դոցանէն, զի այդ
ըստ դոցա կամաց լինիցի. առ ի լինելոյ պատիր
պատճառանաց առ ի յապա, եթէ առաքեցէք զոր
կամիք, թող գան, զհարցն հաւատ կարգեալ տեսա-
նեն։ Եթէ զԴէոսկորոսին ասէք, եւ զՏիմոթէոսին
զԱղէքսանդրացւոյ որ ընդդէմ բարեպաշտութեան
հոգեկիր հարցն յանդգնեցան ասել, ուստի եւ մեր-
ժեցան ի սրբոյ եկեղեցւոյ, եւ անջինջ վիճակեցան
յիշատակի նզովից, զայդ եւ մեք քաջ գիտեմք, եւ
ունիմք ի կապարճս հաւատոյ մերոյ ճշմարտի, որ-
պէս զսուտ եւ զաւտար եւ զանգործ նետս։ Այլ ինչ
եթէ ունիք զոր ոչ գիտեմք, որ ո՛չ է հասեալ առ
մեզ, տո՛ւք բերել։ Իսկ եթէ զսրբոյն Աթանասի՝
որ զհոգեխառն ժողովն զարդարեաց, եւ զմեծին
Բարսղի, եւ զչորից Գրիգորանցն, եւ զանխարդախ
վարդապետութիւնն տեառն Յովհաննու եւ զնմա-
նից նոցունց ասէք, այս ի սիրտս մեր առ մեզ է.
եւ ոչ կարաւտիմք Խորասանիկ եւ Ատրպատիճ
կանոնադրութեան եւ վարդապետութեան։ Աստ ու-
նիմք եւ զմեծի հաւրն Կիւրղի Աղեքսանդրի եպիս-
կոպոսապետին զժողովական զթուղթսն, որ զամ-
պարշտութիւնն Նեստորի վանեալ ձաղեաց։ Եւ յու-
սամք յամենեցունց աղաւթս սոցա եւ ի բարե-
խաւսութիւն եւ ի բոլորովին ի ճշմարիտն Աս-
տուած Տէր մեր Յիսուս Քրիստոս, որ մարմնացաւ
եւ մարդացաւ ի սուրբ Աստուածածնէն եւ ի միշտ
կուսէն Մարիամայ, եւ յանձն էառ զչարչարանս եւ
համբեր խաչի, եւ մեռաւ եւ թաղեցաւ եւ յարեաւ,



եւ ել յերկինս եւ նստաւ ընդ աջմէ Հաւր, եթէ
պահէ անսասանելի եւ անխռով զընդհանրական ըզ-
սուրբ եկեղեցի իւր։

Եւ զայս կամիմք զի գիտացէք, եղբարք, զի
որ ի ձեր տեսութիւն կարի թեթեւ եւ ոչ ինչ
համարիք, մեր տառապելութիւնս զայս ոչ կարաց
բառնալ. այլ զկնի շատ ողբոց եւ արտասուաց,
հարկ եղեւ ծանուցանել մեր բարեպաշտ եւ խաղա-
ղական տերանց։ Եւ մի՛ ոք փորձեսցի ըստ իւրում
սովորութեան մտանել կեղծաւորութեամբ եւ նեն-
գութեամբ ընդ նեղ դուռն սիրոյ, եւ բանալ զլայն
դուռն թշնամութեամբ։ Այլ պարտ է այնպիսեացն
մեծախիղճ լինել եւ հայել ի դատաստանս եւ յի-
րաւունս եւ ի վրէժխնդրութիւնս անաչառ դատաս-
տանին Աստուծոյ աստ եւ ի հանդերձելումն։ Եւ
թէպէտ այսպէս եղեւ մեր բանս, եւ հարկաւորութ-
եամբ եկաք ի բազում ինչ իրս, սակայն նա է քաջ
եւ յաղթող նահատակ՝ որ վասն սիրոյն Քրիստոսի
խոնարհի եւ զգլորեալն ջանայ կանգնել։ Վասնո-
րոյ աղաչեմք յայսմ եւս նուագի, եթէ հաճոյ է
ձեզ, պատուիրեցէք ժողովեալ եպիսկոպոսաց եւ
երեւելի քահանայից, յոր կարծէք ունել գիտու-
թիւն բանի, եւ զպատշաճ տեղի յայտ արարէք, եւ
զժամադրութեան ժամանակ ստուգեցէք, եւ մեք
զառաջնորդ մերոյ եկեղեցւոյ աղաչեմք, գտանել եւ
սոցա անդ միաբանութեամբ։ Եւ յուսամք ի Քրիս-
տոս Աստուած մեր եթէ այդպիսի համբաւակոծ
եւ սնոտի երկպառակութիւն յանդիմանութեամբ
միմեանց լուծանի, եւ ըստ աւետարանին բանի լի-
նիմք Մի հաւտ եւ մի հովիւ։

--------

# ԾԱ

## ՊԱՏԱՍԽԱՆԻ ԹՂԹՈՅՆ ՍՈՐՄԵՆԱՅ, ՈՐ ԱՌ ՎՐԹԱՆԷՍ ԵՒ ՎԱՐԴԱՊԵՏ ԳՐԵԱՑ

Գիտեմք զի բազմադէմ եւ պէսպէս աւրինակաւք խաւսեցայք ցուցանել զանձինս համախոհս եւ միաբանս ընդ մեզ հաւատով, զոր տնկեաց երանելի Նահատակն Քրիստոսի եւ հայր մեր Գրիգորիոս ի մշտնջենաւոր պայծառութիւն Հայաստան աշխարհիս. համարեցաք եթէ ա՛յդպէս իցէ. վասնորոյ յոլով անգամ թախանձեալ զորբասէր եպիսկոպոսս քննութիւն առնել, եւ ուսոյց մեզ, թէ ոչ է աւրէն առանց միաբանական ժողովոյ՝ զոր այպանեալ էր ձեր մտաց՝ ի պատասխանել անձանց թշնամանս յաճախելով. թէ յորժամ չէր իշխան՝ ընդէ՞ր զհաստատեալ սեղանսն յուղղափառացըն կործանեաց. եւ վերստին մկրտութիւնս արար։ Վասն որոյ տեղեկացաք, եթէ ո՛չ ա՛յդպէս, այլ ըզկանոնակա՛նն եւ զիրաւացի՛ն կատարեաց։ Եւ դուք ըստ որումն անձամբ անձին յաղթել անարգանա՛ւք, քան զամենայն յաղթութիւնս առաջին եւ քաջ վարկայք, զմեր քերդողս Նեռինն կարապետ առնելով՝ ոտնհար եղայք. եթէ ի Դուինա այրեցեալ եւ յաւերակ եկեղեցւոջդ նստի՝ եւ նորոգաձեւութի՛ւն վարդապետէ։ Նեռի՛ն ասպնջական եւ առաջնորդ, եւ կարապե՛տ զնա պատրաստել. որ ազգի միոյ ապստամբութեան եղեալ պատճառ, եւ զարս ի կանանց վարատելոյ եւ զկանայս յարանց, յորոց բազումք թափառական կենաւք ի տար աշխարհ վախճանեցան, թաղման անգամ ո՛չ լինելով արժանի եւ մանաւանդ յիւր բնակ եւ յուղղափառ վարդապետաց կարգէ՝ սրանալով է փախուցեալ, որպէս զամպարիշտն՝ առանց ուրուք հալածելոյ, եւ տարագի՛ր եղեալ յամբիծ եւ հռչակաւոր եւ կեցուցանող նոցին հաւատոց։

------

Բնագիր Ա. էջ 93 - 98։

Բայց եւ զայն պարտ է ճանաչել՝ զի որ բերանովք աւրհնէք, այսինքն ժառանգաւորս հաւատոյ համբաւելով զձեզ սրբոյն Գրիգորի, զընծայ այրեցմանս այսորիկ եւ աւերածի դո՛ւք մատուցէք նմա՛. թողումք ասել զայլն եւս։ Եւ վանից երիցունք եւ դոցին քահանայք, որք ձեռն արկին, նզովելով զանաւրէն ժողովն Քաղկեդոնի. զի առանց բռնադատելոյ արարին՝ ամենեցուն է յայտնի։ Քանզի որք ոչ կամեցան ձեռնարկել, տակաւին եւս ի տեղւոջս մնան առանց իրիք խոշտանգանաց, եւ ոչ որպէս բազումք՝ ի ձէնջ հալածական եղեալք յաւուրս ձմերայնոյ՝ վէրս ընկալան, եւ ցարդ եւս մորմոքին։ Եւ քանզի վստահ էաք ի սահման հաւատոյ հարցն եւ ճշմարիտ վարդապետացն մերոց, ո՛չ ակամայ՝ այլ կամաւք երանելի եպիսկոպոսին՝ եւ այլոց կոչէաք ի պարծանս անձանց մերոց տեսանել, եւ ի պտուղ խաղաղութեան։

Բայց այս առաւելագոյն եւս սքանչելի, եւ յո՛յժ զարմացման արժանի. զի մինչդեռ ուրանայիք երդմամբ հաստատելով, ոչ աւելի ինչ ունել կամ պակաս զդրութիւն հաւատոյ քան զոր Հայաստան աշխարհիս է ընկալեալ, այս եկեղեցւոյս առաջնորդաց հնազանդել, կամ ընդունել զժողովոյն Քաղկեդոնի բռնադատեալ կանոնսն՝ ամենեւին

չառնուլիք յանձն, այժմ ի ձեր գրեալսն՝ զնորին հակառակն եհաս տեսանել։ Զի զոր մեր պատուական հարցն եւ հոգեկիր վարդապետացն ընդ ուղղափառ հովիւսն եւ ընդ մարտիրոսս է դասեալ, զԴէոսկորոս· եւ զՏիմոթէոս Աղեքսանդրացի, անջինջ նզովից վիճակի առնէք արժանի, սուտ եւ մոլորեցուցիչս կարդալով, եւ զԹիւրսն եւ զչարապաշտսն եւ հերձուածողս զՔաղկեդոնիտսն բարեփառ ասէք, եւ փոխանակ միաւորութեան երեւեցուցանէք։

Գիտեմք արդ թէ եւ ա՛յլ ինչ զոր ունիմքն՝ կարեւորագոյն են եւ աւգտակարագոյնք, ցուցանիցեմք· չիք ի ձեզ տեղի· ընդէ՞ր եւս եւ զառաջինն քաջ եւ անդրդուելի վարդապետացն զանուանսն ի կիր առեալ, փաստաբանութեամբ պարծիք զսրբոյն Աթանասի, եւ զԲարսղի, եւ զսքանչելի Գրիգորանցն· եւ զյորդորաբանն Յովհաննու եւ զմեծի հաւրն Քրիստոսասիրի Կիւրղի, եւ զերից ականակիտ եւ անթերի ժողովոցն, որք ի պատիւ ամենասուրբ Երրորդութեան գումարեցան։ Զի թէ ճառեցելոցդ մեծարոյ թուէր ձեզ լիութիւն հաւատոյ, զմէ՞ ի Քաղկեդոնի նորաձեւսն կցկցեալ կարկատէիք եւ, ոչ նմանեալ Աստուածընկալ հարցն որ յԵփեսոս՝ մի Որդի դաւանելով՝ գնայիք զհետ խոստովանութեան հաւատոյ բարեպաշտ հարցն։ Այլ զի ընդդէմ նոցին է, չգոյ ումեք հնար ծածկել· բայց զոր ճառելոցս եմ, ճարտարաբանեալս ի ձէնջ ամենապատիկ ծաղո՛ւ է պատարուն, թէ չեմք կարաւտ Խորասանիկ եւ Ատրպատիճ կանոնաց եւ վարդապետութեան։ Սակայն յոյժ ստեցէք եւ ոչ մասնաւոր այսպիսի ինչ· զի Խորասանիկն յարուցեալ ընդ առաւաւտս լուանայ, եւ համարի թէ զամենայն գործեալ աղտեղութիւնսն ի բաց մաքրեցի։ Եւ



դուք մտանելով առ բոզս, ի բաղանիս լոգացեալ՝ նոցին հաւասար սուրբ կարծէք լինել։ Վասն որոյ անխտիր ի տէրունական մարմինն մերձենայք՝ զոր պատգամն Աստուածային ընդ դատապարտութեամբ փակեաց։

Եւ Ատրպատիճս՝ զի ոչ գիտեն եթէ խնդիր զհաւատ լուծանէ, մի՛շտ ծփին փոփոխելով ի բազմաստուածութիւնս, զոր եւ վասն ձեր ճշմարտութեամբ է ասել հանդերձ արտասուաւք, զի անդադար էք աւէկոծական պղտորութեամբ չփոթեալք, այլ եւ այլ սահմանադրութիւնս առնել հաւատոյ ոչ չատանայք։ Ապա ուրեմն սուտ էր եւ կարի անպատրաստաբար զԽորասանիկսն բամբասել եւ զԱտրպատիճս, զի ոչ կարէք ժխտել զայս՝ որպէս թէ չիցէ այդպէս։ Այլ զպարծանաց յոյս ունել ի Փրկիչն մեր եւ ի Տէր Յիսուս Քրիստոս, որ ի վերայ ամենեցուն է Աստուած՝ բարձալի պանծանաւք առնումք յանձն, մարմնացեալն, մարդացեալն յԱստուածածին եւ ի միշտ կուսէն Մարիամայ, խաչեալն եւ թաղեալն, եւ յարուցեալն յաւուր երրորդի, ամբարձեալ յերկինս, նստեալ ընդ աջմէ Հաւր Աստուածախառն մարմնով զամենայն կատարեաց արդարութիւնս։

Արդ զի արտաքոյ ամենակալ Երրորդութեանըն, Աստուած զոք ասել հաւասար անհամեմատականին՝ ամպարշտութիւն է· ըստ այնմ թէ, չիք Աստուած՝ բայց ի միոյն, որ է ամենասուրբ Երրորդութիւնն· Անձնաւորութիւնն որոշմամբ, եւ միաւորեալ Աստուածութիւնն։ Զիա՛րդ զՔրիստոս Աստուած խոստովանիք, եւ զխաչն արտաքոյ Երրորդութեանն· ոչ է ասէք պարտ յԵրրորդութեանն դնել զնորա խաչն, զի չհաճի Աստուածութիւնն, որ ի թշնամանս ինչ նմա բերի· եւ պատճառս՝ զնի-

կիական հոգեյարդար ժողովն ունիք։ Եւ այս զի նանիր եւ սնոտի պատրանաւք եւ պաճուճեալ. լո՛ւր, զի ի Նիկիա հարքն դաւանելով զՀայր ամենակալ, ի նոյն վաղվաղակի յարեալ մի Տէր զՅիսուս Քրիստոս քարոզեցին, ծնեա՛լ յԱստուծոյ Հաւրէ յառաջ քան զամենայն յաւիտեանս. եւ զնոյն մարմնացեալ ի Մարիամայ միշտ կուսէն եւ խաչեալ. աՀաւասիկ յԵրրորդութենէն նորա խաչն։ Քանզի Բանն Աստուած, մի ի դիմաց Երրորդութեանն՝ մարմնով իւրով, որ բնութեամբ մարդկային էր, եւ միաւորութեամբ տնաւրէնութեանն Աստուածային, արար զփրկութիւն ի մէջ երկրի։ Ապա ուրեմն ոչ Երրորդութեանն այլ յԵրրորդութենէն խաչն, զոր դուք արտաքոյ հանեալ առանց զանգիտելոյ, ասէք թէ չէ յԵրրորդութենէն խաչն, կարծեալ աւրինադրել ինչ, եւ մե՛րկ մարդոյ տայք ըզփրկական եւ զկենդանարար զչարչարանսն, որում ոչ գոյ հնար ապրեցուցանել զոք։

Այսպիսի վկայութեամբ չարաչար ի կիր առնելով զբարիոք ասացեալսն, թէ Մատնելոց է որդի մարդոյ ի ձեռս մեղաւորաց. եւ թէ Պարտ է որդւոյ մարդոյ բազում չարչարանս կրել եւ զՅիսուս Նազովրեցի զայր ցուցեալ յԱստուծոյ, եւ որ ինչ ի կարգին է. եւ զայն Յիսուս զոր դուքն սպանէք. եւ զայլն եւս նման սոցին, զոր Բանն Աստուած զծառայի առաջին առնլով կերպարանս՝ ոչ համարեցաւ ամաւթ կատարեալ սոսկ մարդոյ կրել ձեռնարկել, եւ մարդն է Յիսուս Քրիստոս ըստ Պաւղոսի։

Արդ եթէ սոսկ մարդ է Քրիստոս, որ մեռաւն վասն մեր, ընդունայն են հաւատք եւ դատարկ աւետիքն փրկութեան՝ եւ լի՛ նզովիւք, քանզի գըրեալ է, թէ Անիծեալ է որ դիցէ զյոյս իւր ի մարդ։



Եւ եթէ Աստուած խոստովանիք՝ յայտ է, եթէ եկամուտ եւ պիտակ համարիք զԱստուածութիւնն եւ շնորհաւք ընկալեալ, վասն որոյ եւ զխաչն արտաքոյ Երրորդութեանն դնէք, եւ այսպէս յայտաբար երկուս որդիս քարոզէք՝ մի բնութեամբ զԱստուածըն Բան, եւ միւսն շնորհիւ զ՚ի Մարիամայ մարդըն, քանզի լցեալ է ամենայն աշխարհ հայհոյութեամբս այսորիկ ի ձեր գրեցելոցն։

Եթէ Որդի Աստուծոյ՝ ոչ միայն Աստուածութեան բնութեամբըն ի վերայ կայ, այլ եւ ի մարմնոյն բնութեան այսպիսի երեւութիւք. թէ Ես եղէց նմա ի Հայր, եւ նա եղիցի ինձ յորդի. աՀաւասիկ, ասեն, որդիս անուն եւ ի մարմնոյս բնութեան վերայ կայ։ Եւ դարձեալ թէ. Տէր ասաց ցիս, որդի եմ ես դու, եւ ես այսաւր ծնայ զքեզ միայն, եւ այս ասեն որդի մարմնոյ բնութեան կոչի։ Եւ աւետաւորութիւնն որ առ երջանիկ կոյսն ի հրեշտակէն՝ թէ Ահա յղասցիս եւ ծնցիս որդի, եւ կոչեսցեն զանուն նորա Յիսուս. նա եղիցի մեծ եւ որդի բարձրելոյ կոչեսցի։ Տեսանե՞ս, ասեն, զի եւ ի մարմնոյն վերայ կայ որդիդ անունն՝ եւ ոչ միայն Աստուածութեանն բնութեան։ Այսպիսի եւ եւս դժնդակագոյն իրաւք լի են ընդհանուր գաւառք, ոչ գիտեմք ուստի՞ յորդեցայք զվաղնջուցն շիջուցեալ արծարծել, զ՚ի Վաղենտիանացն, եւ այլ ստանուն գիտնականաց. քանզի այն դպրոցի էր գուպար վստահութեանդ այդորիկ, ա՛յլ զոմն չարչարեալն աղանդելով եւ այլ զոչ չարչարեալն, որոց գլուխ եւ արմատ դառնութեան Սիմոն ճանաչիւր կախարդ, երկուս որդիս անուանելով, մի ըստ բնութեան՝ եւ մի շնորհաւք. զոմն անմահ, եւ զոմն մահկանացու։ Արդ որ նորանշան հարուածովքն անկեալ հերձաւ՝ վայրապարին ճապաղեալ

*քրթփչո՛րն՝(*) ճարակ լինելով յաւիտենական հրոյն, մեծարանաւք առեալ ի կիր համառաւտէ՛ք բարեպաշտոս ծանուցանել յամառեալք զաստուածվայելչաբար միաւորութիւն Բանին ի մարմնին իւրում։ Սահմանեցին խոստովանել՝ եւ մի լինել մշտնջենաւոր անքակութեամբ· վասն որոյ մի Քրիստոս եւ Տէր քարոզի յերկնաւորաց եւ յերկրաւորաց· անջինջ նզովից պարտաւոր էք։*

*Ոչինչ նուազ եւ հանդերձեալ պատասխանիքս ընծայեն զարմացումն այսպիսի ինչ, թէ զտեսութիւն ձեր թեթեւ՛ համարեալ, մեր նուաստութիւնս՝ ոչ զաւրեաց բառնալ· այլ՝ յաճախագոյն արտասուաւք փութացայ տեղեկութիւն տալ Թագաւորաց մերոց։ Արդ տեսութիւն թուել ծանր՝ ըստ իրաւա՛նց արդեաւք էր, բայց զանձին իւրոյ զողբս թողեալ, որ սաստկագոյն քան զամենեցուն իցէ, կարի իսկ յետին անմտութիւն լինի՝ զայլոց ի կիր առնուլ զաշխարումն։ Պարտ է ձեզ զձերոյին աշխարհդ լա՛լ անմխիթար սգով թախծանաւք· զի ճեղքեալ էք եւ աղմկեալք անթիւ աղանդոց զանազանութեամբ· եւ միաբանել կամ ցածնուլ ոչ նկատէք· իսկ յորժամ ոք իւրում տան վերակացութիւն առնել չգիտիցէ կամ չզաւրիցէ, զի՞արդ ի վեհագունից հրապարակախաւս համարձակեալ հրաման տայցէ ճոռոմաբանելով· ո՞չ ապաքէն յամենեցունց կրիցէ ծա՛ղր եւ ա՛յպն կատականաց· եւ փոխանակ նեղ դրան, ի թշնամանաց զլա՛յնն բանայցէ։ Զանձինս քննեցէք, եւ ո՛չ դատապարտիք· զի իւրաքանչիւր ոք ընդ անձին իւրոյ տալոց է դատ առաջի Աստուծոյ։ Այլ թէպէտ այս այսպէս է, սակայն պարտ եւ պատշաճ է մեզ յուսալ ի Քրիս-*

------

(*) *Այսպէս յօրինակին։*



*տոս Աստուած մեր, լինել ձեռնտու եւ բառնալ ի միջոյ զնորոգաձեւ գայթակղութիւն, որ ի Քաղկեդոնի յարձանէն Լեւոնի բռնազբաւսութեամբ սերմանեցաւ· քանզի Նա միայն է քաջ եւ յաղթող հովիւ եւ սիրող պատուիրանապահաց իւրոց, խոնարհ եւ այցելու, որ երբեմն զԱրիանոսացն քակեաց կարճեալ ճոխութիւն· նոյնպէս հաւատամ, եւ ըզՔաղկեդոնիտսդ տեսանել նորին զաւրավիգն աւգնականութեամբ· եւ ապա լինի հաճոյ ժողովել միշտ ի բարեպաշտութեան ամրացեալ բոլոր եպիսկոպոսաց մերոց, եւ ճշմարիտ քահանայից ամենայն ուխտի սրբոյ եկեղեցւոյ, խորտակել եւ բառնալ ի միջոյ զտիեզերակործան արձանին գայթագղութիւնս, եւ զանբաժանելի եւ զանայլայլելի զքաջ Հովիւն Փրկիչ եւ Տէր մեր խոստովանելով ձայնին տալ լսել։*

**Զյոգնամեղ եւ զանարժան ծառայս Աստուծոյ զԹումաս եւ զծնաւղսն իմ յիշեցէք ի Քրիստոս Աստուած։**



## ԾԲ

### ՍՐԲԱՍԷՐ ԵՊԻՍԿՈՊՈՍԱՑ ՄԱՆԱՍԷԻ, ՅՈՎՀԱՆԷՍԻ ԵՒ ՏԵԱՌՆ ԳԻԳԱՅ ԴԱՇՏԿԱՐԱՆԻ ԵՒ ՏԵԱՌՆ ՍԱՐԳՍԻ ԵՒ ՏԵԱՌՆ ՎԱՐԴԱՊԵՏԻ Ի ՍԱՀԱԿԱՅ ԿՈՐՈՒՍԵԱԼ ԾԱՌԱՅԷ ԽՈՆԱՐՀ ԵՐԿՐՊԱԳՈՒԹԻՒՆ։

*Զսահման հաւատոյ, զոր ուղղափառ վարդապետաց Հայաստան աշխարհիս հաստատեալ էր անշարժելի պահել, եւ հեռանալ յամենայն հերձուածոց, մանաւանդ յաղանդոյն տարագիր եղելոյ ուրացողին Նեստորի, եւ յորմէ առաւելագոյն պարտ էր փախչել եւ պիղծ եւ աղտեղի համարել, բարիատեաց չար բանսարկուն մտամոլար եւ պակշոտեալ պատրանաւք զիս գայթագղեցոյց, խնամութիւն առնելով ընդ աշակերտս անյիշելոյն Նեստորի։ Վասն որոյ արժանի էի տանջանաց եւ ի սպառ կորստեան ըստ անաւրէն գործոց իմոց։ Եւ դուք, տեարք, զողորմութիւնն Աստուծոյ արարէք ի վերայ իմ տալով ինձ տեղի ապաշխարութեան, եւ ես պայման արարի առաջի վարդապետաց իմոց եւ տերանց Աստուածային ուխտիւ, ամենեւին չհաղորդել ընդ պատուիրանազանցս եւ Թերահաւատ ազգին եւ որ ծնաւղքն անուանեալ են կնոջ իմոյ, մի՛ յաղաւթս, եւ մի՛ ի կերակուրս, եւ մի՛, յայլ ինչ*

------

*Բնագիր Ա. էջ* 108 - 109։



*երթեւեկութեան սէր եւ ընդանութիւն, այլ որպէս զմի ոք յաւտարականաց համարել։ Եւ թէ թերի գտայց միով իւիք նզովեալ եղէց յամենասուրբ Երրորդութենէն, եւ ի ձէնջ տերանց պատուհաս կրեցից, եւ հազար սատեր դրամ տուգան տացից ի սուրբ եկեղեցի։*

*Եւ կնքեցի զայս պայման նամակս, Ե՛ս Սահակ, Համազասպայ որդի, յԱրածի գեղջէ՝ իմ մատամբ։*

*Եւ վաւերական մատանի՝ Մանասէ Բասենոյ եպիսկոպոս, եւ Յովհաննէս Ամատունեաց եպիսկոպոս, եւ Գիգ Դաշտկարանի, եւ Սարգիս Զաւրականեան, եւ Վարդապետ Քչկան [որդի] ի վերայ եդին։*



# ԾԳ

## ԱՅՍ ԱՌԱՋԻՆ ԹՈՒՂԹ ԳՐԵՑԱՒ Ի ՄՈՎՍԷՍԷ ԵՊԻՍԿՈՊՈՍԷ ԱՌ ՎՐԹԱՆԷՍ ՔԵՐԴՈՂ ՍՐԲՈՅՆ ԳՐԻԳՈՐԻ ՏԵՂԱՊԱՀ

*Փափաքելի վիճակի Քրիստոսեան հաւատոցն սիրելութեամբ ընդունաւղ, եւ ինձ երեւեալ հայրաձեւ եւ մերձաւոր Տէր Վրթանէս· ի Մովսէսէ անարժանէ, քեզ եւ քոյոցդ, բազում խոնարհութեամբ երկրպագութիւն· ընդ որով եւ առաւել ողջունի հարցութիւն։*

*Ծանուցանեմ փոքր ի շատէ Տեառն մերում զդժնդակ նեղութիւնս որ եհաս մեզ։ Դէպ եղեւ ինձ ի տիս տղայութեան հասանել յեպիսկոպոսարանն Ցուրտաւայ, որոյ եկեղեցւոյ ըստ աւրինաց աշակերտ իսկ էի, որ սնայ եւ ուսայ դպրութիւն հայերէն եւ վրացերէն, ուր եւ պարգեւեցաւ իսկ ինձ անարժանիս ի Տեառնէ հասանել յաթոռ վարդապետական եւ յետ այնորիկ եպիսկոպոս նոյն տան դրանն բդեշխի։ Ոչ եթէ ըստ արժանեաց ինչ իմոց ասեմ, այլ որպէս կարծեմ ի յանդիմանութիւն ուրացաւղաց զՈրդին Աստուծոյ։ Քանզի յետ յայսչափ անցելոց ժամանակաց ապա եւս հասի ի վերայ, թէ որպէս Վիրք զկանաչագեղ տերեւն միայն ունէին, ո՛ստս առանց պտղոյ ունելով յինքեանս,*

------

*Բնագիր Ա։ Հմմտ. Գ. էջ 25 - 26։*



*ըստ աւրինակի սաղարթալից թզենւոյն, յորում պտուղ ոչ եգիտ Տէրն, այլ տերեւ միայն։ Ըստ որում եւ այսոքիկ ի հաճոյս մարդկան, զամենայն պաշտաւնն լի՛ եւ կատարեալ կարծեցուցանէին ցուցանել։ Իսկ յորժամ ծանեաք զմեծարանսն մատուցանել հրէական սահմանի ժողովոյն Քաղկեդոնի, եւ զհայհոյութիւնս, որ յՈրդին Աստուծոյ, նա եւ ոչ տերեւն կանաչ գոյր ի նոսա։ Վասն որոյ զբանն ի վեր առեալ՝ թշնամի՛ եղեաք կաթուղիկոս անուանն, եւ ամենայն իշխանացն եւ աշխարհին· եւ վախճան այս է, զի հալածեցայ։ Եւ թէպէտ վասն իմ մեղացն՝ ի ժամուս յառաջնորդութենէ զրկեալ է աշխարհս Հայոց, հարկ համարեցայ գալ ծանուցանել սրբութեանդ ձերում զկորուստ աշխարհին, եւ զիմ տառապանս։ Եւ թէ ո՛րպէս վասն խստութեան ձմերայնւոյս եւ փքայոյզ լինելոյ, արգելեալ եղէ ի սրբոյ Մկրտչի Յովհաննու ի վանս որ յԱրագածու ոտին· եւ ընկալեալ ես ի ձեռն երանելւոյ տեառն Բաբիւլասայ վանից երէցու՝ զայդ ի մանկանէդ լսէք։ Բայց առ ժամս գրեցի եւ ես ի հայ լեզու ցիշխանութիւնն Ցուրտաւայ Եկեղեցւոյն։ Հրամայեցէք գրել եւ դուք զի նախանձաւոր էն ուղղափառ հաւատոյ· թո՛ղ զի յաղանդոյն առաւել զգուշանան։ Գրեցէք եւ առ Կիւրոն եւ առ իշխանս աշխարհին։ Եւ ի ձեռն Թղթոյ խրատ տո՛ւք բերել· եւ զողջոյն սրբութեան ձերոյ ծանուցէք մեզ։ Եւ դուք ողջ լերուք ի Տէր։*

-----------

# ԾԴ

## ՊԱՏԱՍԽԱՆԻ ԹՂԹՈՅՆ ՄՈՎՍԷՍԻ· Ի ՎՐԹԱՆԻՍԷ։

*Զգիր(ս) ողջունի սրբութեան քո ընկալե՛ալ, գոհանալով զԱստուծոյ ուրախացայ· զի նախանձաւոր էք ուղղափառ հաւատոյ· եւ ապնջական սուրբ հարց ճշմարիտ վարդապետութեանն, որ տնկեցաւ յաշխարհս մեր ի ձեռն երից երանեալ սուրբ եւ քաջ, եւ անզանգիտող նահատակին տեառն Գրիգորի։ Եւ զի յապստամբող, եւ ի վերջին ժամանակս հասեալ եմք, ոչինչ են զարմանք տեսանել՝ զոր սրբութիւնդ ձեր գրեաց։ Քանզի տակաւին եւս տեսանեմք զգուշակութիւն նուիրական առաքելոյն, թէ Հերձուածք լինելոց են ի ձեզ, եւ զայն եւս թէ Որ ընդիրքն են ի ձեզ՝ երեւեսցին· զոր ճշմարտիւ սրբութիւնդ քո կատարեաց, հալածանաց եւ բազմապատիկ նեղութեանց համբերելով։ Եւ ի վերայ դորին եղիցի քեզ միշտ արիանալ· եւ անքակելի շնորհիւն Քրիստոսի Աստուծոյ մերոյ, եւ լրջմտութեամբ ստանալ պարգեւս՝ ի բաւական աջոյն Քրիստոսի։ Իսկ որ ի բազմացն փութայք շահաւորութիւն, ցանկալի է· եւ որ յընկերսիրութիւն ընթանայք՝ աւգուտ տենչալի է· ըստ այնմ· թէ Ոչ խնդրեմ զանձին աւգուտ՝ այլ զբազմաց, զի ապրեսցին։ Զթուղթն զոր խնդրեցեր ի հայա-*

-------

*Բնագիր Ա· էջ 112։ Հմմտ· Գ· էջ 26 - 27։*



*լեզուսն, առնեմք շնորհիւն Աստուծոյ։ Նոյնպէս եւ ի Կիւրոն եւ յիշխանս աշխարհին առնեմք ըստ յառաջելոյն Աստուծոյ։ Եւ եթէ կամի Քրիստոս Աստուած ի մաւտ աւուրս Կաթուղիկոս կամին նստուցանել, զհոգս ձեր շնորհիւն Քրիստոսի Աստուծոյ՝ նա հոգայ եւ մեք սատարեմք մինչեւ ի կատարումն գործոյդ ըստ կարի մերում։*

*Ողջ լեր ի Տէր։*



# ԾԵ

## ԹՈՒՂԹ ՇՐՋԱԳԱՅԱԿԱՆ ՄՈՎՍԷՍԻ ԵՊԻՍԿՈՊՈՍԻ։

*Ի ժառանգութիւն երկնից վիճակեալք, եւ սրբութեամբ երկրպագեալք սրբոյ Երրորդութեանըն, Քրիստոսեան հաւատոցն սիրելութեամբ ընդունաւղք· ի ձեռն երից երանելոյ անզանգիտող նահատակին՝ տեառն սրբոյն Գրիգորի, հայալեզու իշխանութեանդ Յուրտաւայ եկեղեցւոյ, առ որս առաւել հարկ համարեցայ գրել, իսկ յաւժարութեամբ լսաւղաց, առ հասարակ ամենայն պաշտաւնէից սրբոյ եկեղեցւոյ հանդերձ միաբանական ժողովրդեամբդ, ի Մովսիսէ անարժանէ՝ Տերամբ ողջոյն, ընդ որով եւ առաւել ի խաղաղութեան պահպանեալք լիջիք, յուսով սրբոյ Երրորդութեանն։*

*Սիրելիք, ի սկզբանէ իսկ ընդ որս հաճեցաւ Աստուած եւ կոչեաց ի սպասաւորութիւն մեծի տէրութեան իւրոյ, գյո՛յժ քաջահաճոյսն ընդրեալ՝ իմացեալ տեսանեմք, որոց զվերակացութիւն ժողովրդեան շնորհեաց, եւ կամ որոց զմարգարէութեան շնորհն առաջի էարկ։ Ոմանք տեղի ետուն եւ յաւժարութեամբ լուան կոչմանն, եւ կէսք յապաղէին զշնորհն եւ բամբասէին՝ եւ ոչ մի ոք ի նոցանէ, վասն զի կէսքն ի սպասաւորութեանն մեծութենէ զարհուրեալ երկնչէին, այլքն հաւատովքն*

------

*Բնագիր Ա. էջ 113 - 127։ Հմմտ. Գ. էջ 28 - 30։*



*համարձակեալք կոչաւղին զհետ չոգան։ Վասն որոյ ոմանք հրաժարմամբն զզաւրութիւնս նշանացն պահանջէն որ յԵգիպտոսն, եւ այլք յաւժարութեամբն հաւատացան այլոց բերան լինել եւ ոմանք համարձակութեամբ ի ձեռն սերովբէին կայծակամբն սրբեցան, եւ այլք երկչոտութեամբ զաւետիսն պահանջէն՝ թէ յարգանդի իսկ սրբեցի։ Բայց դարձեալ տեսանեմք եւ այլս ոմանս կոչեցեալս եւ ի նոյն սպասաւորութիւն կարգեալս· զոմանս աւծեալ ի թագաւորութիւն ի հրամանէ Աստուծոյ, եւ զոմանս դասեալ յառաքելութեան շնորհս· եւ զի չետուն զինքեանս բովանդակ Հոգւոյն սրբոյ, եւ զի ոչ ցուցին գնացս արժանաւորս ըստ կամաց կոչողին, ոչ միայն չաւգտեցան ինչ ի շնորհէն, այլ զի եւ պատժեցան, եւս եւ պատժելոց են չարաչար։ Քաջայայտ է ամենեցուն զի Աստուած մեր ոմանց է լոյս, բայց ոմանց հուր, ըստ իւրաքանչիւր նիւթոյ որպիսութեանն· ապա ուրեմն զստացուած զոր տայ ումեք Տէր յաւանդ, պարտ է երկիւղիւ զգուշանալ եւ պահել, եւ առաւել եւս աճեցուցանել, այլ ոչ եւս կորուսանել· զի պարգեւք Աստուծոյ առանց համարողական հանդիսի ոչ ունին դիւրանալ, այլ որպէս տուեալն լինի առատութեամբ ըստ նմին եւ հատուցանելի է աճելութեամբ, մանաւանդ զառաջնորդութեան ստացուած զաւրինաւոր, որոյ որքան է բարձրութիւն՝ նոյնքան եւ վտանգն։*

*Որ ոք ջանայցէ կատարել զհրամայեալսն բովանդակ, որ եպիսկոպոսաց եւ երիցանց կարգեցան, աշխոյժ եւ ողջախոհս լինելն եւ ուսուցիչս անբաղբաղայս յամենայնի, ծախելով զմարմինն ի հոգին յաւելուլ, զգայլսն հալածելով՝ ի գահավիժութենէ զփարախն պահել, մերձենալ առ Աստուած եւ ընծայել զայլս։ Արդ վասն զի եւ մեզ դիպուած աշ-*

տիճանին թէպէտ եւ կարգ մի զհրաժարելն ուսուցանէր, եւ առաւել եւս երկնչոտանալ ընդ երկնչոտսն. զի թէ յարժանաւորաց իսկ ոք լեալք, եւ յոյժ իսկ ի քաջահաճոյիցն, սակայն վերագոյն էր քան զմեր տկար բնութիւնս. միջնորդ ընդ Աստուած եւ ընդ մարդիկ լինել. զմտաւ ածելով եթէ գուցէ վրիպեալք ինչ պատուհասիցիմք, թո՛ղ թէ եւ յանարժանից եւս։

Բայց դարձեալ միւս եւս կարգն զհնազանդելն ուսուցանէր, զի որպէս ի հայրենեաց իմն ի սննդեան տեղւոյ կոչեցեալք եղեաք հաւատովք Աստուծոյ նախախնամութեանն զշնորհս վարկանելով, յաղագս որոյ տեղի տուեալ յաւժարութեամբ լուաք կոչմանն. վասն որոյ եւ յանկարծակի իմն ի վերայ հասեալք հայհոյութեան ինչ, զոր յՈրդին Աստուծոյ էր հաստատեալ չնորհակորուսացն, առ որս ծանուցեալ զվէրս անհնարինս, եւ չիշխեցեալ ընկենուլ ընդ լռութեամբ զախտն զոր եւ չարժեցաք իսկ։ Վասն որոյ եւ թշնամի եղեաք ամենեցուն, եւ որչափ յանդիմանեցաք, առաւել եւս ըսպառնացեալ եղեաք, ի քահանայապետից եւ յիշխանաց, մինչեւ հալածել։ Ինձ այսպէս թուի թէ զոր աւրինակ ես ընդ դատապարտութեամբ անկեալ լինէի եթէ գիտէի զախտն եւ ծածկէի, նոյնպէս եւ չարաչար բարկութեան է արժանի, որ լսէն եւ անփոյթ առնէ, որպէս եւ արարին իսկ անփոյթ, որք զառաջնորդել ուրուք չունին յանձին, եւ ինքեանք եւ ոչ զդիւրագիտելին անգամ կարեն առնուլ ի միտ, թէ ե՞րբ եւ կամ յումմէ՞ գերեալք եղեալ իցեն ի գեղեցիկ հայրենի իւրեանց ժառանգութենէն, այլ եւ վարիցեն եւս ընդ ինքեանս ի գերութիւն եւ զհաւտն, որ պարտէին կենաց։ Ապա ուրեմն յիրաւի լուիցեն զսպառնացեալսն Աստուծոյ,



զորս եւ աստուածայնովն Երեմիայիւ. Քահանայք, ասէ, ոչ ասացին, ո՞ւր է Տէր, եւ հովիւք ամպարշտեցան յինէն, եւ ցրուեցին զոչխարս արաւտի իմոյ։ Եւ ապա զի՞նչ. Յաղագս այդորիկ, այսպէս ասէ Տէր. Ո՛վ հովիւք, որ կորուսէք եւ ցրեցէք զոչխարս արաւտի իմոյ, արդ ահաւասիկ ես վրէժ առից ի ձէնջ, զի լցան աւուրք ձեր ի հողհողումն(*)։

Արդ զի զսիրելի զՄիածին Որդին Աստուծոյ զսպանաւղացն ախտացան, յայտ է, թէ ըստ աւրինակի նոցա եւ ոչ ի մարմնաւոր պատուհասէ վրիպելոց են։ Եւ նոքա զի՞նչ պատուհաս կրեցին արդեաւք. սովոյն դեղ արարին կանայք նոցա զսիրելի որդիս իւրեանց՝ զորս խորովէին եւ ուտէին ի պաշարելն Տիտոսի զԵրուսաղէմ։ Զորս Զ. բիւր սովովըն սատակեաց, եւ Ճ. եւ Ի. բիւր սրով կոտորեաց, եւ Ծ. բիւր ի գերութիւն վարեաց։ Եւ պատճառք այսչափ բազմութեան ի քաղաքին գտանելոյ՝ զատկի տաւնին էր, յորում ամենայն ազգն ի մի վայր գումարեալ էին եւ իբրեւ ի բանդի արգելան. զի յորում աւուր նենգեցին զկեանսն իւրեանց զՔրիստոս Աստուած, ի նմին աւուր ըզհատուցումնն ընկալան։ Եւ այժմ որք զնոցայն ախտանան՝ յայտ է թէ ընդ նոսին եւ պատժելոց են՝ եւ զաստիս եւ զանդին։

Արդ զի ընդ որս մի՛ եւ մեզ լիցի լսել զահագին սպառնալիսն Աստուծոյ, եւ կրել զանողորմ զպատուհասն զայն, հարկ համարեցայ ի ձեռն զգուշացուցիչ թղթոյս խաւսել յականջս Աստուածսիրութեանդ ձերոյ. զգոյշ լինել ի հաղորդութենէ տէրուրացաց եւ տիրասպանաց՝ մեծարողաց ժողո-

-------

(*) Այսպէս յօրինակին.– Գ. ունի՝ խողխողումն էջ (29)։

վոյն Քաղկեդոնի։ Քանզի առաջնորդք ժողովոյն աղանդակիցք Նեստորի էին, եւ հալածեալք յեկեղեցւոյ, որոց սատար գտեալ զթագաւորն Մարկիանոս եւ զկին նորին Պաւղքերիանէ, սոքա քինախնդիրք եղեալ Նեստորի, յեղեալ ի բաց տապալեցին զառաջին սահմանս զերանելի վարդապետացն, եւ ոչ մնաց խոստովանութիւն առաքելոցն, որք ի սկզբանէ ականատեսք եւ սպասաւորք եղեն Բանին, եւ այլ սահման հաստատեցին, այլաձեւ քան զՆեստորին, եւ նոյնամիտ որպէս զնորինն, զի դիւրաւ կորուսանել մարթասցեն զպարզամիտս։ Զորոց ըզկեղծաւորութիւն նոցին իսկ գրեալքն յայտ առնեն. զի յետ հրաշալի խառնմանն եւ ճշմարիտ միաւորութեանն, երկուս բնութիւնս սահմանեցին ի վերայ միոյ Քրիստոսի, բաժանեալս եւ անջատեալս ի միմեանց. եւ վրիպեցուցանելով, մերթ ասեն մի՛ է եւ միադէմ, եւ նոյն Քրիստոսն՝ Որդի Աստուծոյ եւ Տէր եւ Միածին։ Եւ անդրէն դարձեալ ասեն, եւ յերկուց բնութեանցն անխառնելի է, եւ որք խառնեալ համարին՝ ասեն զերկուս բնութիւնսն Քրիստոսի այսինքն զմարդկութիւն իւր բովանդակ, ընդ իւրում Աստուածութեանն, զնոսա նզովեմք ասեն. վասն որոյ իսկ եւ յերկուս դէմս եւ յերկուս զաւրութիւնս բաժանեն զբանս գրոց սրբոց. եւ որ խոնարհագոյնք ասացեալ՝ միում բնութեանն առանձինն որոշեն, եւ զբարձրագոյնսն՝ միւս եւս բնութեանն առանձին զատուցանեն։

Այսպէս՝ զասելն, Թէ Ես եւ Հայր իմ մի եմք, եւ ի վերայ ծովուն գնալն, զփորձչին զյաղթելն, զխեղսն ողջացուցանելն, զքաղցեալսն կերակրելն, զչորեքաւրեայ զմեռեալն յարուցանելն, եւ որ ինչ նման է դորին, միայնոյ եւ մերկի Աստուածային բնութեանն առանձին զատուցանեն։ Իսկ ասելն, Թէ



Հայր իմ մեծ է քան զիս, եւ զվաստակելն, եւ զննջելն, զքաղցնուլն, եւ զծարաւելն, եւ զահագին զչարչարանսն, եւ զկամաւոր մահն, մարդկային բնութեանս միայնոյ առանձին որոշել, եւ իբրեւ սոսկի մարդոյ, զամենայն տկարութեամբ կրել վարկանին՝ Բանին զնա վարելով յայն։ Եւ այսպիսի կեղծաւորութեամբ՝ բնութեանցն բաժանմամբ, զհայհոյութիւն առաջնոցն սահմանեցին։ Զի թէ բնութիւնք երկուք անհաղորդելիք եւ անխառնք են ի միմեանց, որպէս ասենն, յայտ է թէ եւ դէմք երկուք, ապա եւ որդիք երկուք։

Եւ արդ զի՞ եւս ըստ առաջին կեղծաւորութեամբ մեղմեխանացն նոցա վեր ի վայր ընթացուցանեմք զբանս, յորում ժամանակի գաղտագողի, եւ սողեցուցանելով մուծանէին զհերձուածն, վասն զի եւ աշխարհ ծաղկեալ եւս էր տակաւին սրբով հաւատովն։ Իսկ այժմ առաւել եւս յայտնապէս գրեալ տեսանեմք զաղանդն Նեստորի, յեւս առաւել նորաձեւ գրեալս նոցա, զոր ես տեսի եւ կարդացի նոցին իսկ գրով, որ թարգմանի ի մեր լեզուս ա՛յսպէս։ Ասէ, Զոր աւրինակ ագնիւ հիւսան գտեալ նիւթ ինչ՝ առնէ զնա անաւթ պատուական, այնպէս Աստուածութեանն գտեալ զարգանդ կուսին սուրբ եւ ամբիծ, արար ի նմա, ասէ, զմարդն զոր զգեցաւ եւ ծնաւ ի կուսէն։ Եւ դարձեալ, զի՞ զարմանաս, ասէ, ո՛վ այր դու, զի զոր աւրինակ զկինն ի կողից առնն ստեղծ, սո՛յնպէս եւ զայրն յարգանդի կուսին արար, ասէ, զոր զգեցաւ եւ ծնաւ ի կնոջէն։ Եւ յայլում տեղւոջ ասէ, եւ ոչ ամաւթ համարեցաւ զի որ արարեալ զմարդն՝ զգենուլ եւ ծնանել ի կուսէն. եւ զոր միանգամ երանելի վարդապետացն զթուղթս տեսի եւ կարդացի, զոր յաղագս հրաշալի խառնմանն եւ անճառ միութեանն էր ասացեալ, զամե-

նայնն յայսպիսի հայհոյութիւնս փոփոխեալ տեսի։

Իսկ զեւս առաւել հրէական սարսափելի հայհոյութիւնս նոցա, վիճելովն մերկացուցեալ զարմանայաք. թէ ո՞րպէս ամենեւիմբ իսկ արտաքոյ Երրորդութեանն, այլ եւ եթ զոմն զխաչեալն Քրիստոս, հրէաբար հայհոյէին։ Արդ զայս ամենայն գիտացեալ, սիրելիք, զճանապարհ արքունի գնասցուք, մի՛ յաջ խոտորեսցուք, եւ մի՛ յահեակ։ Յամենայն ծառոյ դրախտի Աստուծոյ կերիցուք, այսինքն սուր եւ սուրբ աչաւք մտացն հայել, յամենայն ի սուրբ եկեղեցական գրոց եւ յուղղափառ վարդապետաց ճաշակեսցուք զբանն Աստուծոյ եւ կեցցուք։ Իսկ որ աւտարոտիսն բերեն ի մէջ, ի նոցանէն, ասաց Աստուած, ոչ ճաշակել մեզ, զի մի՛ մեռցուք։ Քանզի հաւատք են ամենայն բարեաց գործոց գլխաւորութիւն, եւ առանց ուղիղ հաւատոց անհնար է հաճոյ լինել Աստուծոյ։ Պահեցին նոքա սրբութեամբ, եւ մի՛ ոք պղծեսցէ զնոսա. քանզի հիմն սրբութեան հաւատոց այժմ այլ ոք ոչ կարէ դնել քան զեդեալն որ է Յիսուս Քրիստոս, մի յԵրրորդութենէն. մեծատունն՝ վասն մեր աղքատացեալն, որով ամենայնքն ըստ Պաւղոսի. զորմէ եւ Յովհաննէսն ասէ. թէ Որ էրն ի սկզբանէ Բանն կենաց՝ առանց որոյ եղեւ եւ ոչինչ. զնա աչք իսկ մեր տեսին, ասէ, եւ ձեռք մեր շաւշափեցին։

Արդ թէ սոսկ մարդ է ծնեալն ի կուսէն, ըստ բանին նոցա, յո՞րմէ մեծութենէ արդեաւք աղքատացաւ, եւ կամ ամենայնքն նովաւ զիա՞րդ եղեն, եւ թէ ոչ բնութեամբ էր խառնեալ եւ միացուցեալ Աստուածն Բանի զբովանդակ մարդկութիւն իւր, այսինքն մարմին եւ հոգի եւ միտս եւ զինչ ի մարդ է՝ ընդ իւրում Աստուածութեանն



որպէս գիտէ միայն Երրորդութիւնն զանտեսանելի զԲանն. զի՞արդ արդեաւք տեսանէին. եւ կամ զանեբեւոյթն զի՞արդ շաւշափէին։ Այլ զի յաղագս այսպիսեացս իսկ որք ասէին. թէ ոչ եկն Տէրն մարմնով, փութով պնդութեամբ զհամառաւտ գրէ առաքեալն եւ աւետարանիչն ասելով՝ թէ զ՚Ի սկզբանէ Բանն՝ առանց որոյ եղեւն եւ ոչինչ. աչք մեր իսկ տեսին, ասէ, եւ ձեռք մեր շաւշափեցին, եւ որ ինչ այլ այսպիսիք։

Արդ մեք, սիրելիք, պարտական գթով շարժեցեալք ի վերայ եղբայրական կորստեանն վախճանի, անձանց զգուշասցուք որպէս եւ պարտ է, եւ ի վերայ նոցա աղաւթս արասցուք որպէս արժան է, դառնալ նոցա ի վրիպեալ մտացն եւ գալ յուղիղ հաւատս, որ տուեալ են ի սկզբանէ յեկեղեցիս, յաստուածատես առաքելոցն, եւ յերանելի վարդապետացն։ Եւ զայս այսչափ փոքր ի շատէ հարկ համարեցաք գրել ձեզ, եւ զմեղանս յանձանց ի բաց թափել առաջի Աստուծոյ եւ մարդկան։ Եւ ետու բերել զպատճառս ժողովոցն, եւ այլ հաւասարս հաւատոց զերանելի վարդապետացն, եւ զընդդիմակաց հերձուածողացն, զյոլովագոյնն այտի տեղեկացիք։ Եւ որ յետ այսր պատուիրանի անփոյթ առնելով անխրատաբար վարեսցի ի հաղորդութիւն աղանդին, ինքն բարձցէ զդատաստանն ի Տեառնէ եւ զաստիս եւ զանդին, ո՛ ոք եւ իցէ, եւ մեք անպարտ լիցուք։

Ողջ լերուք ի Տէր մեր Յիսուս Քրիստոս։

## ՊԱՏՃԱՌՔ Դ. ԺՈՂՈՎՈՑՆ ԵՐԿԱԲՆԱԿԱՑՆ, ՄՈՎՍԷՍԻ ՎՐԱՑ ՈՒՂՂԱՓԱՌ ԵՊԻՍԿՈՍՊՈՍԻ

Արդ յետ փոխելոյ յանարատ եւ յաստուածա-

*հաճոյ կենաց պանդխտութեանս երանելեացն Թէոդոսի թագաւորի բարեպաշտի, եւ Կիւրղի եպիսկոպոսի Աղեքսանդրի. եւ վասն զի որդի ո՛չ գոյր Թէոդոսի, թագաւորութիւնն քեռն անկ էր, որ զկուսութիւնն պահել կեղծաւորեալ, եւ ապա կին լեալ ումեմն Մարկիանոս անուն, զորմէ ասեն աղանդակից Նեստորի: Սորա թագաւորեցելոյ, նախանձ ունելով յաղագս Նեստորի, հրամայէ ժողով լինել ի Քաղկեդոնի, ՈԼ. եւ Զ. եպիսկոպոսաց. եւ իբրեւ հրամանն յանդ ելանէր եւ ժողովն լինէր, եպիսկոպոս էր ի Հռովմ՝ Լեւոն, յԱնտիոք՝ Մաքսիմոս, ի Կոստանդնուպաւլիս՝ Անատոլի, յԵրուսաղէմ Յոբնաղ, յԱղեքսանդրիա՝ Դիոսկորոս: Զայս երանելիս Դիոսկորոս՝ ամպարիշտքն եւ անհաւանք ճշմարիտ հաւատոյ, Ո եւ Լ քն զրպարտեցին խորհրդակից Եւտիքի համբաւելով. թէ վասն սոցին իսկ եղեւ ժողովն. զորոց ստութիւն՝ անսուտ յիշատակարանք մեր յանդիմանեն: Զի Եւտիքէս՝ լեալ մոնազն ի Կոստանդնուպաւլիս, եւ Փղաբիանոս պաղատան եպիսկոպոս, զորմէ ասէին սիրելի քեռ թագաւորին Թէոդոսի. եւ վիճեալ ընդ միմեանս առաջի Թէոդոսի, հրամայէ ժողով լինել երկրորդ անգամ յԵփեսոս. եւ քննեալ եւ ոչ գտեալ յուղղութեան՝ զերկոսինն մերժեն եւ արտաքսեն յեկեղեցւոյ: Այլ, խորհուրդ ամպարիշտն Մարկիանոսի ըզժողովն առնել ի Քաղկեդովնի, վասն զՆիկիական սահմանադրութիւնն ի սուրբ նախահարցն փոխելոյ էր, եւ ոչ յաղագս երանելոյն Դիոսկորոսի:*

*Արդ Թէոդորիտոս, Կիւրոս քաղաքի եղեալ եպիսկոպոս, համագոյգ Նեստորի, զոր լուծեալ յեպիսկոպոսութենէ յԵփեսոսի ժողովին, զսա հրամանաւ ամպարշտին Մարկիանոսի ընկալեալ եղեւ յառաջնորդութիւն Քաղկեդոնի ժողովին: Եւ Յոբնաղ, որ նախ ի յԵփեսոսի ժողովին ընդ ուղղափառսն նզովեաց զԹէոդորիտոս, սոքա թագաւորին եւ թագուհւոյն երեսաց ակն առեալ հնազանդեցան: Եւ Նեստոր դեռեւս կենդանի էր յաքսորն, եւ առաքեցին ածել զՆեստոր ի ժողովն: Եւ ի հասանել հրովարտակին, ժամանեալ բարկութեանն Աստուծոյ՝ սատակեաց զՆեստոր: Եւ նոցա իմացեալ զիրաւական վճիռն, զսուրբ կոյսն Աստուածածին խոստովանին կեղծաւորութեամբ. եւ սկիզբն արարեալ կանխապատրաստ եղելոյ՝ մահացան խորհրդոյն ի տումարէն Լեւոնի: Իսկ բազումք յուղղափառացն, որ յԵփեսոսի ժողովին, միաբան ասեն. Այդ ի Նեստորի խմորոյն է: Եւ անաւրէն վիրագն Մարկիանոս ի սաստիկ ցասմանէ շարժեալ, հրամայեաց խոշտանգել զնոսա. եւ նոքա, ոմանք յերկիւղէ, եւ ոմանք աչառութեամբ, հաւանեցան հրէական սահմանի ժողովոյն Քաղկեդոնի: Բայց երանելին Դիոսկորոս եպիսկոպոս Աղեքսանդրի, բազում չարչարանս կրեալ ի Մարկիանոսէ, աքսորեալ լինէր, որ եւ խոստովանո՛ղ Քրիստոսի կոչեցաւ. զի մեռանել լաւ համարեցաւ քան թէ կա՛լ անաւրէնութեամբ (ի) ժողովոյն Քաղկեդոնի: Իսկ նոցա նզովեալ զերանելին Դիոսկորոս հերձուածող անուանելով:*

*Եւ Թէոդորիտոս առեալ զգրեալսն հրամանաւ թագաւորին, հասանէ յԱնտիոք, ի դուրս խցկանն հռչակաւոր եւ երանելոյն Սիմէովնի, եւ իսկոյն տեղեկութիւն տուեալ, թէ ոմն ի թագաւորէն եկեալ է եւ խնդրէ տեսանել զքեզ. եւ նորա յառաջագոյն հրատ լուցեալ՝ հրամայէ ի ներքս թողուլ: Եւ Թէոդորիտոս մտեալ ի ներքս, բազում թախան-*

*ձանս մատուցանէր, եւ աղաչէր ձեռնարկ առնել եւ հաւանել անաւրէն սահմանադրութեանն։ Եւ նորա յինքն առեալ փաղփաղակի զգրեալսն՝ ի փառեալ հրատն ընկենոյր ասելով. Նզովեալ Մարկիանոս, եւ Նզովեալ ժողովն Քաղկեդոնի, եւ Նզովեալ որք հաւանին այնմ սահմանադրութեանն։ Եւ նորա դարձեա՛լ առ Թագաւորն պատմեաց զոր ինչ արար երանելին Սիմէոն։*

*Եւ ապա յայնժամ եկեղեցիք ամենայն արեամբ շաղախեալ լինէին, եւ մետաղք եւ կղզիք կապանաւորաւք լցեալ, զի ուղղափառքն չարչարիլ լաւ համարեցան քան հնազանդել եւ հաւանել երկաբնակ սահմանադրութեանն ժողովոյն Քաղկեդոնի. եւ բազում խռովութիւնք ի ժողովրդականաց լեալ, յաղագս չընդունելոյ զհերձուածող զեպիսկոպոսունսն, եւ Թշնամանելով զԹագաւորն Մարկիանոս։ Եւ էր աղմուկ մեծ եւ ամբոխ յոյժ յաշխարհին Հռոմոց. զի մանկունք եկեղեցւոյ վանեալ լինէին աւարառութեամբ եւ պէս պէս տանջանաւք, եւ վարդապետք սուրբք հալածեալք յեկեղեցւոյ. Նոյնպէս եւ յաստուածակերտ քաղաքին Երուսաղէմ եկեալ Յոբնաղ արքունի զաւրականաւք՝ վեր ի վայր տապալեաց զաստուածային եւ զառաքելական հաւատն, եւ զկարգ եկեղեցւոյ սրբոյ, եւ հաստատեաց զՆեստորական հայհոյութիւն ժողովոյն Քաղկեդոնի։ Եւ էր սուգ տրտմութեան մեծի սուրբ քաղաքին, զի ելից արեամբ ծայր ի ծայր իբրեւ յաւուրսն Մանասէի, զի ոչ կամեցան ճըշմարիտքն ընդունել զառասպելաբան հայհոյութիւն տումարին Լեւոնի։ Նոյնպէս եւ Աղեքսանդրացւոց քաղաքն դժնդակ նեղութեամբ բազում կոտորածս ընկալաւ յամպարիշտն Մարկիանոսէ, յաղագս չընդունելոյ զեպիսկոպոսն Պրոտորէ, զի ի սկզբանէ*



*իսկ ուղղափառք էին եւ [ոչ] հնազանդեցան աղծապիղծ կրաւնիցն եւ ատելի կարգաց Ո եւ Լ-իցն եղելոց։*

*Արդ զայս գիտասցէ ձեր սիրելութիւնդ, զի ողորմելին Նեստոր Թէպէտ եւ ամպարշտեաց, այլ ինքն զդժոխսն ժառանգեցուցանել, փոխումն որոմանն ո՛չ կարացաւ աւանդել աշխարհի. այլ ժողովեալքն ի Քաղկեդովնի զՆեստորին եւ զյոլովից այլոց հերձուած գաղտագողի եւ սողեցուցանելով մուծին, եւ այսու պատրեցին զպարզամիտս։ Զի Նեստորն ամպարիշտ՝ զԱստուածածինն ձայն՝ ի վերայ կուսին ուրացաւ, իսկ նոքա խոստովանեցին, եւ այսու մոլորեցուցին զբազումս, որք ոչ կարէին գիտել զմիտս գրոց սրբոց. զի Թէպէտ եւ ձայնքն որիչ են, այլ միտքն զնոյն բերեն զՆեստորին։ Զի Նեստոր ամպարիշտ՝ մարդ սոսկ ասաց զՔրիստոս, շնորհաւք արժանաւորեալ տաճար Բանին Աստուծոյ լինել, եւ ի Քաղկեդոնի ժողովեալքն, նոյնպէս երկուս անձնաւորութիւնս եւ երկուս դէմս համբաւեն զկնի միաւորութեանն եւ ասեն, ա՛յլ էր որ ի Հաւրէ, եւ ա՛յլ որ ի Մարիամայ. ա՛յլ էր որ վաստակենայր(*) եւ քաղցնոյր, եւ ա՛յլ էր որ զհանգիստըն խոստանայր եւ զքաղցեալսն կերակրէր. ա՛յլ էր որ զսքանչելիսն առնէր, եւ ա՛յլ էր որ չարչարեցաւն։*

*Արդ Հրէայքն ոչ հաւատալով Աստուածութեանն՝ ի խաչ հանին. եւ նոքա երկուս բնութիւնս ուսուցանելով՝ սոսկ մարդ ասեն զխաչեցեալն, եւ յաղագս հաւատացուցանելոյ զամպարշտութիւնն՝ զՆեստոր նզովեն ժառանգ սատանայի անուանելով, զորոց կեղծաւորութիւն, նոցին իսկ գրեալքն յայտ*

------

(*) *Այսպէս յօրինակին.*

առնեն։ Մերթ ասեն մի է եւ միադէմ, եւ նոյն Քրիստոսն Որդի Աստուծոյ եւ Տէր Միածին. եւ անդրէն դարձեալ ասեն յերկուց բնութեանց անխառնելի, եւ որ խառնեալն համարին, ասեն, զերկուս բնութիւնսն Քրիստոսի, զմարդկութիւնն իւր բովանդակ ընդ իւրում Աստուածութեանն, զնոսա նզովեմք, ասեն։ Արդ եթէ երկու բնութիւնքն անխառնք եւ անփոփոխելիք են, որպէս թէ երբեմն մարդ, եւ երբեմն Աստուած, ապա չորրորդութիւն դաւանի։ Այլ սուրբ Հարքն ՅԺ եւ Ը, որ ի Նիկիա, հաւատացեալ ասացին, ի մի Տէր Յիսուս Քրիստոս, որպէս ուսանն ճշմարտութեամբ ի սուրբ առաքելոցն քարոզութենէ. եւ զՈրդի՝ մի յԵրրորդութենէն՝ իջեալ եւ մարմնացեալ, մի լեալ քարոզեցին։ Եւ ասեն այսպէս. Թէ Մի է Տէր մեր Յիսուս Քրիստոս։ Եւ դարձեալ թէ Յորոց եւ Քրիստոս, որ է ի վերայ ամենեցուն Աստուած աւրհնեալ յաւիտեանս ամէն։ Եւ ի կաթուղիկէին ասէ. Սա՛ է ճշմարիտ Աստուած եւ կեանք յաւիտենականք։ Եւ ո՛չ ուրեք ասացին երկուս բնութիւնս։ Եւ որ ասացեալն է յաղագս ճշմարիտ մարդանալոյն՝ թէ մարդով եղեւ յարութիւն մեռելոց, կամ թէ երկրորդ մարդն Տէր յերկնից, ո՛չ եթէ զբնութեանց ինչ ճառեաց, այլ զնոսա կշտամբէ, որք ասեն եթէ ոչ էառ ճշմարտութեամբ մարմին եւ հոգի ի սուրբ կուսէն եւ Աստուածածնէն։

Սոյնպէս եւ յաղագս ամենակեցոյց խաչելութեանն զի՞արդ է երկուանալ, որ եւ նախ վերինք իսկ եղեն քարոզ. զՅիսուս խնդրէք զնազովրեցի զխաչելեալն. եւ Պաւղոս. Ոչ եթէ ի մտի եդի գիտել ինչ ձեզ, բայց միայն զՅիսուս Քրիստոս, եւ զնոյն ի խաչ ելեալ։ Եւ Պետրոս, Քրիստոսի չարչարելն մարմնով վասն մեր. եւ, Մարմին նորա ո՛չ



ետես զապականութիւն։ Եւ դարձեալ ասէ. ճշմարիտ Աստուած եւ կեանք յաւիտենականք։ Ապա ապականելի էր, եւ ընդունայն քարոզութիւն առաքելոցն. զի նոքա Աստուած ճշմարիտ, եւ Տէր փառաց, եւ կեանս յաւիտենականս, եւ զնոյն ի խաչ ելեալ քարոզեցին։ Եւ որք իշխեցին ասել երբեք ապականացու, նզովեն զնոսա սուրբ հարքն եւ ասեն այսպէս. Որ ասէ զմահն Տեառն կենդանացուցիչ եւ ըզչարչարանսն փրկարար՝ ապականացու, իբրեւ սոսկի մարդոյ, եւ ոչ առաւել խոստովանեսցի, եթէ չարչարանաւքն՝ անչարչարելի, եւ մահուամբն անմահ որպէս Աստուած՝ որում ամենայն ինչ դիւրին է. եղիցի նզովեալ։ Զի ամպարշտութիւն մեծ է զԱստուծոյ մարդկապէս կարծել. թէ ուրեք է՛ եւ ուրեք ոչ։ Այլ ճշմարիտ հաւատ այս է. Իջեալն ի յերկնից եւ բնակեալ ի յարգանդի կուսին սրբոյ. եւ ոչ մեկնեալ ի ծոցոյ Հաւր. շրջեալ ընդ մարդկան յերկրի. եւ ի զուարթնոց պաշտեալ ի յերկինս. ի վերայ խաչին տարածեալ, եւ ոչ հեռացեալ ի Հաւրէ. ճշմարտութեամբ եւ ոչ կարծեաւք։

Այսպէս քարոզեցաւ ի սուրբ առաքելոցն սփռեալք ի սուրբ քաղաքէն։ Ըստ այնմ, Աւրէնք ի Սիոնէ ելցեն, եւ բան Տեառն յԵրուսաղեմէ։ Եւ ճըշմարտապատում սուրբն Գրիգորիոս զնոցայն ուսոյց մեզ, եւ ոչ եթէ յանձնէ ինչ. Նոյնպէս սուրբ ամենազով հարքն ժողովեալք ի սուրբ Հոգւոյն, որոց գահագլուխ էր աներեւութութեամբ ինքն Քրիստոս, ըստ այնմ, Ժողովելոց յանուն իմ՝ անդ եմ ես ի մէջ նոցա. այսպէս հաստատեցին։

Արդ՝ պահեսցի սա անարատութեամբ, եւ մի՛ ոք պղծեսցէ նորաձայնութեամբ՝ իբրեւ զաւցտող ժողովն Քաղկեդոնի։ Քանզի հարկ է զկնի ընթեռնլոյ սուրբ աւետարանին՝ յամենայն եկեղեցիս Քր-

րիստոսի հաւատն որ ի Նիկիա աւանդեցաւ. առեալ պատուէր ասել զեղուն եւ պատարուն, եւ ոչ յաճախել, եւ ոչ պակասեցուցանել, այլ սոսկալի նզովիւք իբրեւ ցանկով ինչ փակեալ: Նոյնպէս եւ երիցս սրբասացութեամբ՝ որ խաչեցար հրամայեցին մեզ ասել անդանդաղ յարձակ աւուրս առաւաւտու եւ երեկորի. իսկ ի յարութեանն առաւաւտու եւ երեք ժամու եւ երեկորի, երիցս սուրբ Աստուած, սուրբ եւ հզաւր, սուրբ եւ անմահ, որ խաչեցար վասն մեր, ողորմեա մեզ: Իսկ բազումք, հանդերձ բնակչաւք սրբոյ քաղաքին, ոչ կացին ի Նիկիական սահմանին, եւ ուրացան զհրաշալի խառնումն եւ զանճառ միաւորութիւնն, եւ զամենակեցոյց խաչելութիւնն իբրեւ սոսկ մարդոյ համբաւեցին. եւ վասն այնորիկ ոչ ի հաւատ ինչ նզովեն, եւ ոչ ի սրբասացութեանն՝ որ խաչեցար ասեն. եւ այսու հաւանեցուցանեն զպարզամիտս, թէ խաչեցարն ասել՝ սուրբ զԵրրորդութիւնն խաչել է. որ մի լիցի կարծել: Այլ որպէս տնաւրէնութիւնն Որդւոյ միայն առանձին է, նոյնպէս եւ խաչելութիւնն: Եւ վասն զի Աստուած է ճշմարիտ որ խաչեցաւն, պարտ է ի հարկէ խոստովանել ընդդէմ ուրացողացն, թէ Աստուած ես, եւ հզաւր ես. եւ անմահ ես. եւ վասն մեր խաչեցա՛ր, ողորմեա՛ մեզ: Եւ ոչ սոսկ մարդ էր:

Արդ՝ զսուրբ եւ զպարկեշտ հաւատն սոսկալի նզովիւք եւ զերից սրբասացութիւնսն որ խաչեցարըն ասելով՝ իբրեւ դժնդակ ինչ ցանկով փակեալ՝ եւ մի ոք խրամատեսցէ. ապա թէ ոչ գիրն բողոքէ. Որ քակէ, ասէ, զցանկ՝ հարցէ զնա աւձ, այսինքն զամուր պարիսպ հաւատոյն. եւ Որ գլէ զվէմ, այսինքն զհաստատուն հիմն ճշմարիտ խոստովանութեան, ի վերայ անձին իւրոյ գլեսցէ: Եւ զայս տեղե-



կացեալք գիտասջիք. զի բազում գիրք մեծարանաց անաւրէն ժողովոյն հասեալ են ի տեղիս տեղիս, ուղղափառ ուսուցանելով զչարափառութիւնն Մարկիանոսի եւ ժողովոյն Քաղկեդոնի. եւ մեք ոչ միայն ի խմորոյն Նեստորի ունիմք ի սուրբ հարցըն պատուէր հեռանալ եւ նզովել, այլ առաւել ի տիեզերակործան ժողովոյն Քաղկեդոնի, եւ ի ջնջեալ տումարէն Լեւոնի, եւ ընդ ընդունաւղսն նոցա ոչ հաղորդել ըստ պատուիրանի առաքելոյն եւ աւետարանչի: Եթէ ոք գայցէ առ ձեզ եւ զվարդապետութիւնս զայս ո՛չ ունիցի, մի՛ ընդունիցիք զնա ի տուն, եւ մի՛ ողջոյն տայցէք նմա, եւ որ ասիցէ նմա ողջո՛յն, կցորդ լիցի չար գործոց նորա: Եւ երանելին Պաւղոս. Աղաչեմ զձեզ գիտել զայնպիսիսն, որ հերձուածս եւ գայթակղութիւնս առնիցեն արտաքոյ վարդապետութեանն, զոր դուքըն ուսարուք, եւ ի նոցանէն խորշեցարուք: Եւ դարձեալ՝ Յիսուս Քրիստոս երէկ եւ այսաւր՝ նոյն եւ յաւիտեանս. յուսմունս պէսպէսս եւ աւտարաձայնս մի՛ դանդաչէք:

Արդ՝ որպէս առաք պատուէր ի սուրբ հարցն ոչ հաղորդել անխտիր ընդ ամպարիշտս, եւ ոչ միաբանել եւ զուգել զտաւն մեծի զատկին ընդ հրէայսն, եւ ընդ անուանեալ Կաթարոսսն, նոյնպէս եւ յաղագս միաւորական տաւնին Յայտնութեան, որ է հրաշափառ ամենասուրբ ծնունդն, յունուարի ամսոյ ի վեցն կատարել, զոր կանոնեալ հին ընթերցուածոց: Վասն զի մի աւր դիպեցաւ Ծնունդն եւ Մկրտութիւնն: Եւ ոչ հաւասարել ընդ նոսա, եւ ոչ ընդ մեզ հաղորդել հաւատով, եւ ոչ ապականել զխորհուրդ եւթն չաբաթուցն պահոց. այլ լնուլ զսուրբ քառասներորդսն, հինգաւրեայ յառաջաւոր պահովքն: Ահիւ եւ տրտմութեամբ եւ սրբութեամբ

տանել ի գլուխ զսուրբ քառասներորդացն պահս, եւ ոչ վայրապար յաւուրս պահոցն քարոզել աւետարան եւ մատուցանել պատարագ հրամայեցին, թէեւ յիշատակ ուրուք դիպեսցի, բայց ի շաբաթու եւ ի կիւրակէի։ Եւ սահմանեցին այսպէս· Եթէ ոք կատարեալ հասակաւ, առողջ մարմնով, քրիստոնեայ անուն ի վերայ ունելով, եւ զքառասնաւրեայ պահսն ի գլուխ ոչ տանիցի, նզովեալ լիցի։ Եւ եթէ յաւագ շաբաթուն ի հինգշաբաթին աւր [նախ] քան զհաղորդել սուրբ խորհրդեան՝ բերան ոք լուծցէ, նզովեալ լիցի, եւ ամենայն պահք քառասներորդացն ընդունայն լիցին։

Արդ մի պատրեսցուք հուչակաւոր եւ տենչալի անուամբ սրբոյ քաղաքին, եւ մի պաշարեսցուք աստուածապարգեւ շնորհելոյ աթոռոց սուրբ առաքելոցն· զի որպէս յաթոռն Մովսէսի Նստան քահանայապետքն եւ դպիրք, եւ փոխանակ մեծի երախտեացն զտուիչ աթոռոցն ի խա՛չ հանին, նոյնպէս Լեւոն եւ Թէոդորիտոս եւ Յոբնաղ եւ Փղաբիանոս եւ այլ համախոհակք նոցուն վեց հարիւր եւ երեսունքն, նստեալ յաթոռ սուրբ առաքելոցն, որ դատելով զսուրբ հաւատն, վերստին ի խա՛չ հանին անձանց զՈրդին Աստուծոյ, եւ դարձեալ խայտառակեցին։

Այլ դուք, եղբարք իմ սիրելիք, հաստատո՛ւն եղերուք, անշարժ կացէք, առաւել լերուք ի գործ տեառն յամենայն ժամ· գիտասջիք զի վաստակքն ձեր ոչ են ընդունայն առաջի Աստուծոյ։ Եւ Պետրոս· Պատրաստ լինել միշտ առ ի պատասխանատուութիւն ամենայնի որ խնդրէ ի ձէնջ զբանն որ վասն յուսոյն ձերոյ է։ Եւ եթէ դիպեսցի ձեզ յափշտակութիւն ընչից ձերոց, խնդութեամբ ընկալարուք։ Գիտասջիք թէ ո՛րպիսի ստացուած ընդու-



նելոց էք, այլ թէեւ կապանք եւ նախատինք եւ չարչարանք եւս, յաւժարութեամբ մատուսցուք զանձինս· զի եթէ չարչարանացն Քրիստոսի կցորդ լինիմք, եւ փառացն հաղորդ լինելոց եմք։ Եւ զայս հաւաստեաւ քննեալ ծանիջիք, թէ յետ երկուս բնութիւնս խոստովանելոյ, զինչ մոլորութիւն յաշխարհ եմուտ, եւ առ ոտն հարկանել զՈրդին Աստուծոյ, եւ զարիւն նորոյ ուխտին խառնակ համարել, որով սրբեցաւն, եւ զհոգին շնորհաց թշնամանեալ, ըստ գրեցելումն, այսինքն անկարգ կրաւնիւք զահեղ եւ զսոսկալի եւ զսուրբ խորհուրդն յանպարտ եւ յանպատշաճ տեղիս կատարել, եւ անարժանութեամբ հաղորդել, ընդդէմ առաքելական հրամանին եւ աւանդութեան սուրբ նախահարցն։

Վասն զի հին աւրէնքն զսուրբ սեղանն յաղագս անշարժութեան հողեղէն հրամայեցին առնել, եւ ի քարանց անշարժից, եւ ի տեղին մին մատուցեալ՝ ուր ողջակէզքն եւ զոհքն մատչէին։ Ո՞րչափ եւս առաւել, որ նորոյ ուխտիս է միջնորդ կենդանարար եւ ազատիչ պատուական մարմնոյ եւ արեանն Տեառն, յանշարժ եւ հաստատուն, սեղան ելանել։ Վասն որոյ եւ կարգեցին իսկ առաքեալքն եւ հաստատեցին ընդհանուր ի սուրբ եկեղեցիս, եւ ճշմարտեցին սուրբ սեղան Տէրունեան եւ աւազան մկրտութեան, որով արժանաւորիլ որդեգրութեան շնորհին, ի քաղաքս եւ յաւանս եւ ի գեաւղս եւ յագարակս եւ յանդաստանս, ուրեք ի վանորայս կուսանաց, եւ այլ հաւատացեալ կրաւնաւորաց, այլ ոչ եթէ ուր եւ պէտ յամենայն վայրս մատրունս անուանել, ուր ոչ հանապազորդելոյ եւ սրբութիւն պաշտաման կատարեսցի, յաղագս որովայնապարարութեան ուխտ անուանեալ, եւ երթեալ կիսաբան

*ինչ տարեալ, եւ կամ քար ինչ կանգնեալ, զարդարեալ կտաւովք՝ եւ ի վերայ զահեղ սուրբ խորհուրդըն Տէրունեան կատարել, եւ համարին ուղղութիւնս ինչ առնել, եւ ոչ գիտեն եւ իմանան՝ եթէ զանձինս իւրեանց ի դատաստան մատնեն. ըստ այնմ եթէ Է՛ ճանապարհ, որ թուի մարդկան թէ ուղիղ իցէ, բայց կատարած նոցա հայի յատակս դժոխոց։*

*Քանզի սուրբ Հարքն ՅԺ. եւ Ը. ն, որ ի Նիկիա գումարեալք ի սուրբ Հոգւոյն, ոչ հրամայեցին վայրապար ուրեք մատուցանել եւ անխտիր հաղորդել սուրբ խորհրդոյն, այլ ընդրեալ զարդարութիւն ի մեղաց, եւ սահման եդեալ ոչ անցանել ըստ այն։ Իսկ ընդունաւղք Քաղկեդոնի ժողովոյն, թէ եւ կարի զանգեալ եւ շաղախեալ ի մեղս անհնարինս իցեն, զոր ծանր ապաշխարութեամբ հազիւ ոք կարասցէ քաւել, հանապազ անխտիր ճաշակեն ի պատուական մարմնոյն եւ յարենէն Տեառն, զարիւն նորոյ ուխտին խառնակ համարելով։ Արդ՝ դու նախանձաւորդ աստուածայնւոյն, քննելով զայս, ապա զգո՛յշ, զի Ահ մեծ է անկանել ի ձեռս Աստուծոյ կենդանւոյ. զի Իմ են վրէժխնդրութիւնք եւ ես հատուցից ասէ, Տէր։*

*Եւ որ յանդիմանեն եւ նզովեն զժողովն եւ զտումարն՝ թուղթն Զենոնի ուղղափառ թագաւորի, որ կոչի Հենոտիկոն, եւ թուղթն երանելոյ Անաստասայ թագաւորի, եւ գիրք Տիմոթէոսի Աղեքսանդրացւոյ, եւ թուղթ Յովհաննու եպիսկոպոսապետի, եւ թուղթն Պետրոսի Անտիոքացւոյ, եւ պատճառն իսկ, եւ այլ բազում թուղթք ուղղափառաց։ Եւ մի զարմանար, սիրելի, թէ զի՞ ծաւալեցաւ ստութիւն եւ նուաղեաց ճշմարտութիւն։ Նա եւ յութերորդ դարուն՝ ութ ոգի միայն գտաւ ըստ հաճոյից Աստուծոյ, յաշտարակաշինութեանն՝ Փաղէկ միայն, իսկ ի Նոյէ ի տասներորդ դարուն՝ Աբրահամ միայն. ի Հրէաստանի ճշմարիտ մարգարէքն՝ սակաւ, սուտքն անսակաւ. ըստ այնմ թէ Բազումք են հրաւիրեալք, եւ սակաւ ընդրեալքն։*



*Աղաչեմ զձեզ, եղբարք իմ սիրելիք, Ռափայէլ եւ Նաթանայէլ, հեզութեամբ ընդունիցիք զբանն՝ որ կարողն է կեցուցանել զոգիս ձեր։ Մի՛ բանավէճ լինել ճոխաբար՝ զանձինս առ գիտունս համարել եւ հպարտանալ ի վերայ ընկերին. այլ նախ աղաւթիւք խնդրել յԱստուծոյ, որ տայ առատապէս եւ ոչ նախատէ, եւ առաքեսցէ զՀոգին սուրբ ի թիկունս ձեր. եւ դուք հանդարտութեամբ եւ պարկեշտութեամբ համբերել ամենայն բանի, զաւրէն աշակերտաց սուրբ առաքելոցն, տեղի տալով խաւսել եւ մի գոռոզասաստ, որ է սկիզբն աղաղակի։*

**Զթումաս նուաստ եւ անարժանս յամենայնի եւ զծնաւղսն իմ,
եւ զամենայն ազգատոհմն եւ զերախտաւորսն յիշեցէք
ի Քրիստոս Աստուած, ո՞վ դասք ուղղափառաց։**



# ԾԶ

## ՊԱՏԱՍԽԱՆԻ ԹՂԹՈՅՆ ՄՈՎՍԷՍԻ ԵՊԻՍԿՈՊՈՍԻՆ ՑՈՒՐՏԱՒԱՑ՝ Ի ՎԻՃԱԿԵԼՈՑՆ ԻՒՐՈՑ

Զգիր ողջունի սրբութեան քո՝ գխրատտուութեան եւ զգուշացուցիչ, ընկալեալ ամենայն եղբայրութեանս, գոհանալով զԱստուծոյ մեծաւ ուրախութեամբ լցաք, որ Տէրդ, սրբոյ Երրորդութեանն պահպանութեամբ, ողջ է։

Եւ որբ մնացեալ ի ձէնջ զաշխարհս հոգայք որպէս արժան իսկ է· ամենայն ուղղափառ խոստովանողաց աղաւթից լուիցէ Աստուած, եւ առաքեսցէ զՀոգին սուրբ ի քեզ տէր, եւ յաւգնականս քո, զաւրացուցանելով զձեզ եւ լինելով վերակացու եւ աւգնական զարտուղեալ կողմանցս մերոց, եւ վերստին ի ձեռն ձեր տերանց սուրբ Հոգին քարոզեսցի, եւ հաստատեսցէ յաշխարհիս մերում զընդհանուր Բանն կենաց՝ որ յառաջ քան զյաւիտեանս ի Հաւրէ եւ ընդ Հաւր։

Եւ ի վախճան ժամանակացս վասն մերոյ փրկութեան ի սրբոյ կուսէն մարմնացեալ լինելով՝ ամենայնի՛ւ որպէս զմեզ բա՛ց ի մեղաց, մնալով եւ այնպէս Աստուած՝ որպէս էրն յառաջ ընդ Հաւր իւրում եւ սուրբ Հոգւոյն· զոր եւ յառաջավաստակ սուրբ մարգարէիցն զծածկոյթ խորհրդոյն, որ յաւիտենից ընդ Հաւրն մարգարէացեալ, զոր եւ երա-

------

Բնագիր Ա· էջ 128 - 129։ Հմմտ· Գ· էջ 30 - 31։



նելին Պաւղոս մեկնէ, թէ որ այժմս յայտնեցաւ գրովք սրբովք։

Եւ ամենայն ուղղափառաց ընկալեալ հաստատեցաւ ի սրբոյն Գրիգորէ ի Հայաստանեայսս հաւատն, եւ յոյսն, եւ սէրն, զոր Աստուածայինն Պաւղոս աւանդեաց եկեղեցւոյ՝ զհաւատն ի Հա՛յր, ըզյոյսն՝ յՈրդի՛· զսէրն՝ ի սո՛ւրբ Հոգին։ Զայս երիս պտուղս ի ձեռն քո տեառն, եւ երանելի վարդապետացդ, լի՛ եւ զեղուն յեկեղեցիս կողմանցս մերոց պահեսցէ Քրիստոս Աստուած մեր, եւ զաւրութեամբ Հոգւոյն սրբոյ, ժողովաւղ լինել ձեզ երից պտղոցն, ընդունել ընդ միոյ երեսուն, եւ ընդ միոյ Կ· եւ ընդ միոյն Ճ։ Նորոգեսցէ Տէր Աստուած եւ զաթոռն քո տեառն ի նմին եկեղեցւոջ՝ յոր վիճակեցարն ի ձեռն ուղղափառ խոստովանողացդ Քըրիստոսի· ապա թէ ոչ եւ մեզ այլ ինչ ճար չէ, բայց կամ կա՛լ յաշխարհիս եւ ըստ կամաց սորա լինել, կամ թողուլ եւ գնա՛լ ի բաց։

Ողջ լեր Տէր մեր եւ մեզ աղօթս արա։



# ԾԷ

## ԹՈՒՂԹ ՇՐՋԱԳԱՅԱԿԱՆ ՏԵԱՌՆ ՎՐԹԱՆԻՍԻ ՔԵՐԴՈՂԻ

*Սրբասէր ուղղափառաց եւ ճշմարտից, եւ վանից երիցանց, եւ գեղջ քահանայից, ազատաց եւ շինականաց, ծերոց եւ տղայոց, եւ համաւրէն ամենայն ժողովրդականաց, հայալեզու աշխարհացդ, որ էքդ ընդ իշխանութեամբ եկեղեցւոյն Ցուրտաւայ, ի Վրթանիսայ եւ յայլ պաշտաւնէից սրբոյ եկեղեցւոյս՝ Տերամբ ողջո՛յն:*

*Վասն զի եհաս առ մեզ լուր չախորժելի, եթէ զհերձուածն Նեստորի եւ զժողովոյն Քաղկեդովնի, զոր Հայոց եւ Վրաց եւ Աղուանից միաբանակաց եպիսկոպոսաց եւ իշխանաց սոսկալի նզովիւք անյիշատակութեամբ էր ի բա՛ց բարձեալ, արդ կաթուղիկոսդ անուանեալ եպիսկոպոսակցաւքդ հանդերձ եւ իշխանաւք ընդունելութիւն եւ մեծարանս առնեն հերձուածոյդ: Լուաք եւ վասն սրբութեանդ ձերոյ ունել նախանձ վասն ուղղափառ հաւատոյ ամենայն բարեպաշտութեամբ ընկալեալ ի սկզբանէ յաշխարհիդ ձերում, եւ աղաւթեմք միշտ հաստատուն մնալ եւ արիանալ՝ անզանգիտող համարձակութեամբ: Գիտացէք, եղբարք, զի ի վերջին ժամանակս եմք, եւ չար գազանին հրապոյրք մերձեալ են, ապստամբութիւն առնելով ուղղափառաց*

------

*Բնագիր Ա. էջ 130 - 131: Հմմտ. Գ. էջ 32 - 33:*



*հաւատոց, զի մոլորութեան իւրոյ կազմեսցէ ասպնջական:*

*Վասնորոյ արթո՛ւն կացէք եւ հսկեցէք եւ մի՛ իւիք մեղկիցիք, զանգիտելով ի մահկանացուացն երկիւղէ, այլ համարձակութեամբ զայն համառաւտել, զոր ի սկզբանէն ունէաք զճշմարիտ հաւատն, զի եւ պարգեւացն Աստուծոյ արժանի լինիցիմք, գուցէ ձեռն զմաճով արկեալ՝ լքանիցիմք աչառելով կամ զանգիտելով յումանց, վասն որոյ գայ բարկութիւնն Աստուծոյ: Այլ դի՛ք ի սիրտս ձեր զյորդորական բան Փրկչին մերոյ եւ Տեառն Յիսուսի Քրիստոսի Աստուծոյ. եթէ մի՛ հոգայցէք, որպէս թէ զի՞նչ խաւսիցիք ընդ հակառակորդս ձեր. զի հոգի իմ պարգեւէ՛ որ ինչ պիտոյ է ձեզ խաւսել: Եւ եթէ աւելի ինչ պէտք եղիցին հակառակութեան եւ պատասխանաց, հրամայեսցէ գրել առ մեզ Սրբութիւնդ ձեր. եւ շնորհիւ ամենասուրբ Երրորդութեանն հասեալ առ ձեռն պապանձեցուսցուք զբերանս՝ զհայհոյութեան բանս չարախաւսողացն:*

*Ողջ լերուք ի Տէր:*



# ԾԸ

## ՊԱՏԱՍԽԱՆԻ ԹՂԹՈՅՆ ՏԵԱՌՆ ՎՐԹԱՆԻՍԻ ՀԱՅԱԼԵԶՈՒ ԱՇԽԱՐՀԻՆ ՑՈՒՐՏԱՒԱՑ։

*Տեսաք զթուղթ ուղղափառ հաւատոյ ձերոյ, եւ լուաք զողջոյն ձեր եւ զամենայն պաշտաւնէից սրբոյ եկեղեցւոյդ, եւ մեծաւ ուրախութեամբ լցեալ գոհացա՛ք զՔրիստոսէ Աստուծոյ մերմէ, եւ որպէս երկիր ծարաւի՝ ի բազում երաշտութենէ պասքեալ, ընդունելով անձրեւ շահեկան՝ զուարճացեալ յինքեան ցուցանէ զդալարութիւն, զանուշահոտ ծաղիկսն երեւեցուցանելով տեսաւղացն. զի էք իսկ շնորհիւն Քրիստոսի հոտ անոյշ, ըստ գրեցելումն, կենաց ի կեանս, ոչ միայն ի ձերում աշխարհի, այլ եւ ամենայն հիւսիսային կողմանցս, զոր մեր ընկալեալ զգրեալն ի ձէնջ եւ ցուցեալ ամենայն եղբայրութեան մերում, զոր ախորժելով լուեալ ետուն գոհութիւն Աստուծոյ։ Եւ վարդապետութեանդ ձերում հոգալով զաշխարհս մեր. յիշեցուցանելով սուրբ եւ զուղիղ հաւատն, զոր մեծին սրբոյն Գրիգորի սերմանեալ էր յայս Կաւկասային կողմանս։ Արդ համարձակիմք եւ աւրհնեմք զՏէր Վրթանէս, եւ եղիցիս աւրհնեալ ամենայն ուխտիւդ հանդերձ, եւ պահպանեալ լիջիք Հոգւովն սրբով յայս ի ծովածուփ կենցաղիս. աղաւթեմք միշտ նորոգել եւ սրբոյ Աթոռոյդ սրբոյն Գրիգորի, զի*

------

*Բնագիր Ա. էջ* 132։ *Հմմտ. Գ. էջ* 33 - 34։



*արասցէ խնդիր մոլորեալ ոչխարիս մերում, ըստ աւրինակի առաջնոց վարդապետացն. զի մեզ առանց այտի աւգնականութեան եւ թիկանց՝ աստ չմարթի կալ, զի այնպիսի բռնաւոր գոռոզի, որ հայրապետս անուանի, դիպեա՛լ եմք, բայց թողուլ զաշխարհս եւ գնալ։*

*Ողջ լեր ի Տէրն մեր։*



# ԾԹ

## ԹՈՒՂԹ ԵՐԿՐՈՐԴ Ի ՄՈՎՍԻՍԷ ԵՊԻՍԿՈՊՈՍԷ ԱՌ ՎՐԹԱՆԷՍ ՔԵՐԴՈՂ

Տեսի զգիր ողջունաբեր սրբութեան քո, եւ լուեալ զբանս մխիթարութեան որ ի սմա, գոհանալով զՔրիստոսէ Աստուծոյ՝ անհոգացայ։ Զի ձեր ի ձեռն առնլով զիս, ահա կրկին կենաց դիպեցայ, հոգալով զիս եւ զաշխարհն որպէս արժան իսկ է։ Եւ իմ վստահութիւն էր։ Արդ որպէս զսկիզբնդ յաւժարութեամբ արարէք, աղաչեմ բարեխաւսութեամբ սրբոց ջանացարուք եւ ի գլուխ տանել։ Այս անգամ հրամայեցէք գրել թուղթ մի առ կաթուղիկոս անունն, եւ առ Ատրներսեհ եւ Վահան եւ Բրզմիհր, յանդիմանելով զժողովն Քաղկեդովնի· եւ թուղթ մի առ Պետրոս յանձնառութեան։ Եւ ամէն աւրինակ ի ձեռն ձերոյ աշակերտի առաքեցէք, որ իմ մանուկս տանի եւ ածէ խաղաղութեամբ՝ շնորհիւն Քրիստոսի Աստուծոյ, եւ յորժամ զպատասխանիսն ընդունիք։ Ապա թէ ոչ ձեզ պիտի երթալ, թո՛ղ զի լինիք աշխատ, յիշելով զյորդորականն Տեառն՝ բարբառով մարգարէին· թէ երթայք ի դրունս իմ, դուք որ կարողքդ էք եւ զքարինսն ի ճանապարհէն ի բաց ընկեցէք(1), զի մի իւիք սայթաքիցեն ժողովուրդք իմ։ Զի եւ մեք թէպէտ եւ

------

Բնագիր Ա· էջ 133 - 134։ Հմմտ· Գ· էջ 40 - 41։

(1) Ես· ԿԲ· 10։



կամք, վասն տգիտութեան եւ միայնութեան, կամ վասն չարութեան առաջնորդին մերոյ զանգիտեցաք ինչ, եւ յոյս ի ձեզ եդաք, զի եւ նա իսկ այդր սրբոյ Աթոռոյդ աշակերտ է մեւք հանդերձ, թէպէտ եւ ի ժամուս ի սնոտի մեծութենէն իբրեւ զգետ ինչ ի բազում ուղխից է յարուցեալ՝ եւ իբրեւ զգազան ինչ դժնդակ ճիրանամբքն եւ մագլամբքն է սաստկացեալ, զոր ամաչեցուսցէ Տէր Աստուած աղաւթիւք սրբոյն Գրիգորի։ Եւ ըստ աւրինակի առաջնոց վարդապետացն ի ձեռն ձեր խզել զայդ վարմ խորամանգ աւձին, եւ երգակցել ընդ երանելոյն Պաւղոսի, թէ յԱղուանից մինչեւ յաշխարհն Վրաց, մեզ եհաս լի՛ առնել զաւետարանն Քրիստոսի, եւ լսել զուրախարար զբարբառն զհրաւիրական, թէ Բարի մշակ եւ հաւատարիմ, հանդերձ ընդ քեզ փրկեալ գնդաւդ, ե՛կ մո՛ւտ յուրախութիւն Տեառն քո։ Որոց լիցի ձեզ հասանել, Տէր Վրթանէս, հանդերձ ամենայն ուխտիւք· ի ձեռն ձեր եւ մեզ՝ շնորհիւն Քրիստոսի Աստուծոյ մերոյ։

Ողջ լեր ի Տէր, եւ մեզ աղաւթս արա։



Կ

## ՊԱՏԱՍԽԱՆԻ ԹՂԹՈՅՆ ՄՈՎՍԷՍԻ Ի ՎՐԹԱՆԻՍԷ ՎԱՐԴԱՊԵՏԷ

Զգիր ողջունի սրբութեան քո ընկալեալ՝ զԱստուծոյ գոհացաք եւ ուրախ եղեաք, որ Տէրդ, պահպանութեամբ ամենասուրբ Երրորդութեանն, ողջ է։

Եւ զոր գրեալս էր առ նուաստութիւնս մեր, բազմապատիկ շնորհակալութեամբք եւ արդիւնաւոր աւրհնութեամբք էր պատարուն։ Զթուղթն զոր խնդրեցէքն առ կաթուղիկոսն անուանեալ, եւ առ այլ իշխանս աշխարհին, արարաք որպէս արժան էր· բայց որ վասն մանկանն գրեալ էր, մի յաղագս նուագութեանն, եւ մի յաղագս ժամանակիս դժուարութեան, չեղեւ հնար արձակել. Տէր, անմեղադիր լեր։ Թո՛ղ զի քո մանուկդ պատասխանի բերէ, որ մեք ըստ նմին իմանալ գիտեմք, եւ եթէ շնորհէ գթութիւն ամենասուրբ Երրորդութեանն եւ ի ձեռն գրեցելոցդ խաղաղութիւն լինի, որպէս եւ ունիմք իսկ յոյս, բարի է որ դուք ի ձեր սուրբ եկեղեցին հասանէք բարգաւաճեալ անուամբ։ Ապա թէ յերկարէ ինչ յամառութիւն ուրացելոցն, պատուէր տուք ծանաւթից ձերոց եւ սիրելեաց իշխանաց, որ գրեն առ փառաւորեալ իշխանս աշխարհիս մերոյ, որ մեզէն իսկ երթամք

------

Բնագիր Ա։ էջ 135։ Հմմտ. Գ. էջ 41 - 42։



հրամանաւ սոցա, եւ աւգնականութեամբ Քրիստոսի Աստուծոյ մերոյ յանդիմանեմք զնոսա, է՛ զի զան յուղղութիւն։ Ապա թէ վասն բազում մեղաց մերոց զհակառակսն եւ զընդդէմսն հասանէ լսել, զփոշի ոտից մերոց ի նոսա թաւթափեմք, եւ յաղագս այդր պատճառի է, զի անմեղադրելիք յԱստուծոյ եւ ի մարդկանէ լինիմք։

Ողջ լեր ի Տէր։



## ԿԱ

## ՏԵԱՌՆ ՊԵՏՐՈՍԻ, ՎՐԱՑԻ ԵՊԻՍԿՈՊՈՍԻ, Ի ՎՐԹԱՆԻՍԷ

Փառաւորելոյ Տեառն Պետրոսի Աստուածաշնորհ պարգեւաւք պայծառացելոյ, ի Վրթանիսէ եւ ի միաբանական սրբոյ եկեղեցւոյս պաշտաւնէից Տերամբ ողջոյն։

Գրէ երանելի առաքեալն, որ հանդերձեալն էր լինելոց, թէ Հերձուածք լինելոց են ի ձեզ, եւ որ ընդիրքն են երեւեսցին։ Լուաք յաղագս պատուականութեան քո, եթէ նախանձաւոր ես եւ սիրաւղ ճշմարիտ հաւատոց. զի որպէս յառաջագոյն երանելի հայրապետն մեր Մովսէս գրեաց յաշխարհդ հեռանալ ի Խուժիկ չեպիսկոպոսիդ խաբէութեանց, այժմ առաւելագոյն եւս պարտիմք փախչել յանաւրէն ժողովոյ Քաղկեդովնի հայհոյութեանցն, զի հաւասար հրէութեան է. զոր համբաւ չախորժելի այժմ եհաս մեզ լսել, թէ յաշխարհիդ ձերում մեծարանս մատուցանեն ժողովոյն այնմիկ. վասն որոյ եպիսկոպոս մի աշխարհիդ փախստական գընացեալ է, զդառն եւ զանբժշկելի վիրաւորութիւն ժողովոյն այնորիկ ճանաչելով։ Արդ՝ որպէս ընկալայք զնախանձ Աստուծոյ յանձինս ձեր, պինդ կացէք մինչեւ ի կատարումն գործոյդ, զի եւ պարգեւացն երկնաւորաց արժանի լինիցիք։ Թուղթ արարաք վասն դորին իրաց ցկաթուղիկոսդ եւ ցայլ իշխանսդ, զի նորոգաձեւութիւն ինչ հաւատոյ մի՛ եղիցի ի մէջ երկուց աշխարհացս. եւ մի՛ աւտարութիւն հոգեւոր եւ մարմնաւոր սիրոյ թուեսցի պատուականութեանդ քում. որպէս եղեր իսկ ասպնջական ուղղափառ հաւատոյ, զոր ի ձեռն սրբոյն Գրիգորի հաստատեաց բազում սքանչելագործութեամբք Տէր Աստուած յաշխարհիս։ Առաւելագոյն խաղաղութեան պատճառս լեր, զի նորոգաձեւութիւնն, որ ստութեամբն է պաճուճեալ՝ կորիցէ, եւ ճշմարտութիւնն հաստատեսցի, եւ սրբասէր եպիսկոպոսս(1), որ ճշմարիտ հաւատոյ նախանձաւոր է, ի տեղի իւր դարձցի. զի եթէ այդ այդպէս ոչ լինի, յաւիտենական թշնամանք մնան ի վերայ աշխարհիդ։ Եւ եթէ ի ձեռն գրելոցդ հակառակութիւնդ չբառնայ, գրեցէք առ փառաւորեալ իշխանս աշխարհիս մերոյ, որ զմեզ այդր արձակեն, եւ այնպէս լինի որպէս Աստուածն կամի։

Ողջ լեր։



------

Բնագիր Ա. էջ 136 - 137։ Հմմտ. Գ. էջ 44 - 45։

------

(1) Մովսէս Ցուրտաւայ։

# ԿԲ

## ՏԵԱՌՆ ԿԻՐՈՎՆԻ Ի ՎՐԹԱՆԻՍԷ·

Սրբասիրի Տեառն Կիրովնի Վրաց կաթուղիկոսի, եւ Ատրներսեհի եւ Վահանայ, եւ Բրզմիհրի իշխանաց, ի Վրթանիսէ, եւ ի միաբան պաշտաւնէից սրբոյ եկեղեցւոյս՝ Տերամբ ողջո՛յն։

Յառաջագոյն առ պատուականութիւն ձեր գըրեաց երանելի Հայրապետն մեր Մովսէս յաղագս Խուժիկ չեպիսկոպոսին խաբէութեանց· զի մի եղիցի նորոգաձեւութիւն հաւատոյ ի մէջ երկուց աշխարհացս, որ սքանչելի հիմնադրութեամբ տնկեցաւ յանզանգիտող եւ ի քաջ նահատակէն Տեառն ի սրբոյն Գրիգորէ։ Արդ՝ ոչ միայն ի Նեստորի խմորոյն ունիմք պատուէր ի հարցն եւ յուղղափառ վարդապետացն մերոց հեռանալ եւ նզովել, այլ եւ զԵւտիքոս եւ զԵւնոմիոս, եւ զՍեւերոս եւ զՄարկիովն, զՍաբէլլիոս եւ զայլ նմանիս նոցա, եւ առաւելագոյն եւս զտիեզերակործան եւ զանյիշելի զժողովն Քաղկեդովնի, որ յետ ճշմարիտ միաւորութեանն Տեառն երկուս բնութիւնս բաժանեալս եւ անջատեալս ի միմեանց սահմանեցին ի վերայ միոյ Քրիստոսի։ Այժմ լուաք թէ դուք զանաւրէն ժողովն Քաղկեդովնի եւ զտումարն Լեւոնի ուղղափառ համարիք եւ մեծարանաց արժանի, վասն զի չունիք կրթութիւն քննել զհերձուածոց չարութիւնս, զի

------

Բնագիր Ա· էջ 138-139։ Հմմտ· Գ· էջ 42-44։



չարագոյն քան զհրէական ուրացութիւնս՝ հեռացուցանէ ի միամիտ հաւատոյն՝ որ ի Քրիստոս Յիսուս ի Տէր մեր է։

Արդ՝ ոչ է պարտ Աստուածսիրութեան ձերում աւելի ինչ վարդապետութիւն զուրուք ընդունել քան զերից սուրբ եւ անարատ ժողովոցն, որք ի պատիւ ամենասուրբ Երրորդութեանն գումարեցան, ՅԺ եւ Ը· իցն ի Նիկիա· եւ ՃԾ իցն ի Կոստանդնուպաւլիս· եւ Մ· ոցն յԵփեսոս· եւ աւելի քան զայս սահման հաւատոյ մեր եւ ձեր հարցն եւ վարդապետաց ոչ կալեալ է եւ ոչ ընդունիմք· եւ որ ընդունի, եւ կամի խառնել յականակիտ եւ յամբիծ սահման հաւատոյ վարդապետութեան նոցա հրապոյրս ինչ պղտորս, գիտասցէ զի աւտա՛ր է եւ տարագիր յուղղափառ հաւատոյ· զի հաւատով ուսանիմք հաճոյ լինել Աստուծոյ։

Արդ՝ զի ի վերջին ժամանակս եմք՝ չգոյ ումեք լինել յերկբայս· եւ զի նախ ապստամբութիւնն է գալոց, երանելի առաքեալն ուսուցանէ, եւ յաղագս նորին նոյն ինքն հանդիպողական պատասխանին, Եթէ ոք աւելի ինչ աւետարանեսցէ ձեզ, քան զայն զոր աւետարանեցաքն, նզովեա՛լ լիցի։ Զի ընդ ամենայն տիեզերս յեկեղեցիս ուղղափառաց, յետ ընթեռնլոյ զսուրբ աւետարանն, որ ի Նիկիա սահմանեցաւ սուրբ հաւատն՝ ասեմք, ոչ եթէ զՔաղկեդոնի ժողովոյն հայհոյութիւնս· ապա թէ այդպէս է, ոչ պարտիմք զամուր զցանկ հաւատոյս մերոյ խրամատել, զի Որ քակէ զցանկ հայրենի՝ հարցէ զնա աւձ· գի՛րն բողոքէ։ Եւ Որ գլէ զվէմ, այսինքն զհաստատութիւն ճշմարիտ հաւատոյ, զանձն իւր կորուսանէ։ Արդ՝ պարտ է պատուականութեանդ ձերում նախանձաւոր լինել ճըշմարիտ հաւատոյ հարցն, որ սքանչելեաւք եւ աս-

*տուածաշնորհ պարգեւաւք արմատացաւ յաշխարհիս մերում։ Եւ եթէ է ինչ երկբայութիւն ի միտս ձեր, եւ կամիք զփորձ առնուլ յաղագս այդորիկ, գրեցէ՛ք առ միաբան փառաւորեալ իշխանս աշխարհիս մերոյ, որ գամք այդր· եւ որպէս ի հեռաստանէ Թղթոյս պատգամաւ, նոյնպէս յանդիմանական վկայութեամբ գրոց սրբոց, յայտնի առնեմք զճշմարտութիւն բանիցս։*

*Ողջ լերուք։*





## ԿԳ

## ԹՈՒՂԹ ԵՐՐՈՐԴ ՄՈՎՍԷՍԻ ԵՊԻՍԿՈՊՈՍԻ ԱՌ ՎՐԹԱՆԷՍ ՔԵՐԴՈՂ։

*Սրբասիրի Տեառն Վրթանիսի, ի Մովսէսէ անարժանէ, Տերամբ ողջո՛յն։*

*Զթուղթսն զոր գրեցէք առ կաթուղիկոսն անուանեալ եւ առ այլ իշխանս աշխարհին, եւ առ Պետրոս, զոր խնդրեցի ի ձերմէ սրբութենէդ, ետու տանել մանկան իմոյ, եւ այժմ եկն։ Բայց յաշխատութենէ այդր ոչ կարաց գալ եւ ձեզ գրոյց տալ· թէ որպէս նախ յանդիման իսկ ոք չիշխեաց տանել զթուղթն կաթուղիկոս անուանն։ Ապա թէպէտ ի վերջոյ տարան, յընթեռնուլ թղթոյն, ասէ, ի սաստիկ բարկութիւն շարժեալ, զայրացեալ սրտիւ եւ եղծեալ գունով զաւրէն ցաւածոյ, նզովէր եւ թշնամանէր, ասէ, զՀայաստանեայս· եւ թղթոյն պատասխանի ոչ ինքն արար եւ ո՛չ այլոցն ետ առնել։ Զայս յԵրուսաղէմ առ հայրապետ քաղաքին տամ տանել, ասէ, որ պատասխանի առնէ։ Բայց սակաւուց ոմանց, որոց արարեալ է պատասխանի, ետու բերել առ Տէրդ, հրամայեցէք ընթեռնուլ, եւ մեզ ծանուցէք զինչ գրեալն է։ Զձեզ յարաժամ յաշխատութիւն պահեցի, Աստուած եղիցի վարձահատոյց։ Բայց ձանձրանայք մի՛, աղաչեմ· որով աւրինակաւ եւ է, յանձն լիցի ձեզ մոլորեալ աշխարհն եւ անձն*

------

*Բնագիր Ա. էջ 140։ Հմմտ. Գ. էջ 48։*

իմ տառապեալ։ Եւ զայս եւս աղաչեմ զՏէր․ զգիրըս երանելոյն Տիմոթէոսի բովանդակ ստացայ․ եւ թուղթք, որ ի սուրբ եկեղեցւոջդ եւ առ ձեզ գտան, զամենայնն գրեցի։ Հասին առ իս եւ այլ թուղթք, բովանդակ տեղա՛ց տեղա՛ց, երանելի վարդապետացն, որք յանդիմանեն եւ նզովեն զժողով երկաբնակացն։ Բայց յետ ի բաց բարձութեան սահմանի հրէական ժողովոյն, բարեպաշտ թագաւորացն երանելոյն Զենոնի եւ Անաստասայ, ոչ գտի ուրեք, թէ ո՛րպէս դարձեալ նորոգաձեւութիւնն շարժեալ կործանեաց զբազում եկեղեցիս, եւ կամ ի ձեռն որոց․ ո՛րպէս տեղեկացեալ է սրբութիւնդ ձեր, հրամայեցէ՛ք գրել առ մեր նուաստութիւն։





## ԿԴ

## ՊԱՏԱՍԽԱՆԻ ԵՐՐՈՐԴ ԹՂԹՈՅՆ ՄՈՎՍԷՍԻ ԵՊԻՍԿՈՊՈՍԻ Ի ՎՐԹԱՆԻՍԷ։

Զողջոյն սրբութեան ձերոյ լուայ եւ ուրախ եղէ։ Ծանեայ եւ զպատճառսն թղթոյն պատասխանի չառնելոյ, եւ զոր արարեալն իսկ է առ իս ազատ արանց ոմանց այնպէս է՝ որք ի հիւանդութեան ինչ ընդ բարբաջ անկեալ զինչպէտ խաւսին։ Ասեն, մեք եւ զա՛յս ունիմք հաւատ եւ զա՛յդ, աւրինաց աստ հաղորդիմք եւ ա՛յդր։ Մովսիսի եթէ կամք են եկեսցէ կաթուղիկոսիս հնազանդ լիցի, զի մեզ այս հաճոյ է, եւ զիւր տեղի կալցի։ Աւելորդ համարիմ ես ինչ ասել այսմ ամենայնի, Աստուծոյ զաւրութեանն պահեսցի։ Բայց յաղագս զաշխարհս մեր նզովելոյ եւ թշնամանելոյ, որպէս եւ այլ կորստեան եւ աստուածառաք բարկութեանն ասպնջական եղեն, թերեւս եւ զայդ յանդգնութիւն արարին, անբժշկելի վէրս անձանց իւրեանց կազմեցին, զինքեանս ինքեամբ խոցոտելով․ մեք հեռի եմք յայնմ անիծից։ Դու Տէր աղաւթեա՛, զի ի ժամուս պնդեալ են առաջնորդ կարգել․ եթէ զայս գործ աւգնէ ի կատարումն տանել Քրիստոս Աստուած մեր․ ապա գիտեմք եթէ ձեր կամք այնպէս

------

Բնագիր Ա․ էջ 141 - 145։ Հմմտ․ Գ․ էջ 49, 50 - 53։
Պարբերութեանց բաժանումը՝ մեր կողմէ։

կատարին՝ որպէս Աստուծոյ ողորմութեանն թուի:

Բայց վասն խնդրոյն զպատճառս ընթերցուա-
ծասէր եւ ուղղափառ պատուականութեանդ յաղա-
գս վերստին հաստատելոյ աւտարացուցանող եւ
կորստական անաւրէն ժողովոյն Քաղկեդովնի, զոր
եբարձ ի միջոյ բարեպաշտն Զենոն՝ միաւորիչ
թղթովն: Եւ յետ նորա՝ նորին սահմանի նախանձա-
ւոր եղելոյ, ցանկալին հրեշտակաց եւ մարդկան Ա-
նաստասիոս, արդ այսպէս ունի պատմութեանս
այսորիկ պատճառս:

Քանզի յետ փոխելոյ յանարատ եւ յԱստուա-
ծահաճոյ կենաց պանդխտութեանս այսորիկ երա-
նելոյ քաջանուանն Անաստասայ, Յուստին անուն
կալաւ զյաջորդութիւն իշխանութեանն, այր ժանդ
եւ անաւրէն, որ վարժեալ էր աղանդովն Նեստորի
եւ ի նմին զանգեալ եւ հաստատեալ: Նորա թագա-
ւորեցելոյ ըստ ցանկութեան անձինն եւ կանխա-
պատրաստ եղելոյ մահացան խորհրդոյն, սկիզբն
արար թշնամանել, հերետիկոս կոչելով զբարե-
պաշտ եւ զխաղաղասէր թագաւորսն, զԶենոն եւ
զԱնաստաս: Եւ զզեղծեալսն ի նոցանէ զտումարն
Լեւոնի եւ զժողովն Քաղկեդոնի, հրաման տայր
շրջաբերական թղթովք գռոզասաստ եւ անխիղճ
իշխանաց անդրէն հաստատել. եթէ ոք համարձա-
կեսցի ընդդէմ կալ թագաւորին հրամանաց, սրով
սպառել եւ պէսպէս տանջանաւք: Յայնժամ եկեղե-
ցիք ամենայն արեամբ լինէին շաղախեալք, եւ մե-
տաղք եւ կղզիք կապանաւորաւք լցեալք: Զի քաջ
հովիւքն զմեռանելն լաւ համարէին, եւ անարա-
տութեամբ առ Քրիստոս ժամանել, քան թէ կալ
անաւրէն վարդապետութեամբ ժողովոյն Քաղկե-
դոնի: Իսկ անաւրէն վիրագին, զաղանդոյն սիրաւղս
եւ աշակերտս եւ որք զանցաւոր պատուոյս քան



զմշտնջենաւորին կամեցեալք ընտրել զփառս, ե-
պիսկոպոս կարգեալ քաղաքաց քաղաքաց հաստատ-
եաց զժողովոյն խորհուրդ: Աստանաւր էր ինչ յի-
շատակի արժանի, բայց այլում ժամու պահեսցի.
քանզի բազում խռովութիւնք եղեալ ի ժողովրդա-
կանաց յաղագս չընդունելոյ զհերձուածող եպիս-
կոպոսսն: Արդ՝ սուղ ինչ ժամանակ կալեալ զթա-
գաւորութիւնն Յուստինէ, վախճանի ծանր ախտից
հարուածովք, եւ թագաւորէ Յուստինիան(*) յետ
նորա, եւ աղմուկ հակառակութեան ժողովոյն Քաղ-
կեդոնի տակաւին եւս հնչէր եւ ի նորա ժամա-
նակս:

Իսկ յաւուր միում խորհուրդ արարեալ ընդ
ոմանս ի մեծամեծացն, յաղագս սպանման ուղղա-
փառ եպիսկոպոսաց եւ հալածանաց, թէ ի զուր
արար թագաւորն զխռովութիւնս զայս ամենայն
քաղաքաց, եւ այժմ ոչ է պարտ մեզ անտես առնել.
եւ ոմանք ի յանդիման կացելոցն, որք աղանդոյն
այնր էին աշակերտք, ասեն ցթագաւորն, թէ ան-
հնարին է ումեք ի մարդկանէ ասել զայդ, զի Սի-
մեւոնի ձեռն արկեալ է եւ հաւանեալ է սահ-
մանադրութեան ժողովոյն Քաղկեդոնի, եւ ցարդ
եւս պահի զգուշաբար ի ներքս ի տապանին սրբոյն
Եւփիմեայ, ուր ժողովն իսկ եղեւ: Քանզի Սի-
մեւոնս այս եղեալ միայնակեաց յԱնտիոք քա-
ղաքի, հրաշալի եւ հռչակաւոր, եւ ընտանի սրբոյ
Հոգւոյն շնորհաց, որպէս եւ զմի ոք ի տեսանողաց:
Եւ ոմն ի մաւտաւորացն նախանձաւոր եղեալ ուղ-
ղափառ հաւատոյ, ասէ ցթագաւորն. եթէ երանե-
լի Սիմեւոնի ձեռն արկեալ եւ հաւանեալ է սահ-
մանադրութեան հաւատոյ ժողովոյն Քաղկեդոնի,

------

(*) Յոր. Յուստինի բան.

*եւ կայ ի տապանի սրբոյն Եւփիմեայ, ես դառըն չարչարանաւք ընկալայց զգրաւումն կենաց իմոց։*

*Քանզի այսպէս ունի պատմութիւն անսուտ յիշատակարանաց մերոց, թէ Թէոդորիտոս, որ համազգոյգ Նեստորի գտեալ, լուծեալ եղեւ յեպիսկոպոսութենէ իւրմէ, եւ հրամանաւ ամպարշտին Մարկիանոսի ընկալեալ եղեւ յառաջնորդութիւն Քաղկեդոնի ժողովոյն, եւ առեալ զսահմանեալ գրեալսն ըստ հրամանի թագաւորին հասանէր ի դուրս խցկանն երանելոյն Սիմեւոնի։ Իսկ նորա յառաջագոյն ծանուցեալ զգալուստն, հրամայէ սպասաւորացն յարգելանոցէն զինքն ի խոնարհ իջուցանել, եւ հրատ լուցեալ· վասն որոյ յոյժ զարմացեալ սպասաւորացն եթէ զինչ լինիցի այն։ Եւ իսկոյն տեղեկութիւն տուեալ երանելոյն, թէ ոմն ի թագաւորէն եկեալ խնդրէ տեսանել զքեզ։ Եւ նորա հրաման առեալ թէ վասն այդորիկ իսկ եկի ի տեղս յայս, եւ մտեալ ի ներքս Թէոդորիտոս, բազում բանիւք թախանձանս մատուցանելով աղաչէր ձեռնարկ առնել եւ հաւանել առաջիկայ լինել սահմանին, քանզի ամենեւին ի մարդկանէ յայսպիսի իմն գործաւղաց եւ ոչ ակն առնուլ գիտէր երեսաց։ Վաղվաղակի զգրեալսն յինքն առեալ ի վառեալ հրա՛տն ընկենոյր· նզովելով զՄարկիանոս եւ զժողո՛վն եւ զհաւանեալսն ա՛յնմ սահմանի· եւ աւելի ինչ քան զայդ ո՛չ գտանես ասէ, ո՛վ թագաւոր։*

*Իսկ թագաւորին թոյլ տուեալ առ ժամն լուռ լինելով, հրամայէ ի միում աւուրց մակուկաչու ուղեգնացութեամբ ի Քաղկեդովն ելանել սակաւուք արամբք, եւ մտեալ ի վկայարանս սրբոյն Եւփիմեայ ստիպէ զսպասաւորն բանալ զտապան ոսկերացն պահարանի։ Իսկ նա ասէ, ո՛վ դուք որ զայդ համարձակիք գործել, զոր ոչ ուրուք արարեալ ի մարդկանէ։ Եւ իմացեալ զմիտս ինքնակալ թագաւորին վաղվաղակի բանայ նմա, եւ սփռեալ զքղամիդն, հրամայէ զնշխարս սրբոյն անդր հանել, եւ ասէ ցսպասաւորն, այլ կա՞յ ինչ ի ներքս· եւ նա ասէ, այլ ոչինչ գոյ ամենեւիմբ։ Եւ հայեցեալ թագաւորին տեսանէր ինքն իսկ, զի այլ ինչ ոչ գոյր· յոգւոց հանեալ ծեծէր զճակատն, ապաշաւելով եւ ողբալով զսուրբ եւ զերանելի հովիւսն, որք յաղագս ուղղափառ եւ ճշմարիտ հաւատոյն հալածեցան եւ սպանան։ Եւ խորհուրդ արարեալ ընդ մեծամեծս իւր՝ բառնալ ի միջոյ զսահման նորոգաձեւութեան ժողովոյն Քաղկեդոնի, եւ զվաղընջուցն յառաքելոցն եւ սուրբ հարցն զքարոզեալն հաստատել։ Եւ իսկոյն հասեալ նմա մահ դաւողական, որպէս բազմաց բան է, ի նմին մնաց յառաջագոյն գործեցեալն։*



*Եւ դու մի՛ զարմանար, ո՛վ նախանձաւորդ Աստուածայնոյն, թէ ընդէ՞ր նուազեաց ուղղափառութիւնն եւ զարգացեալ ծաւալեցաւ հրէական սարսափելի հայհոյութիւնն։ Վասն զի ի յետին ժամանակս եմք, եւ զարհուրեալ կասկածեմք թէ ի մեր իսկ աւուրս հասցէ կատարած։ Եւ քանզի բազում ինչ եղեալ էր ի նշանաց, պարտ էր եւ այդմ լինել, զոր կանխաւ գուշակեաց բանն երջանիկն առաքելոյ։ Եւ ո՞ր իցէ այն· Նախ եկեսցէ, ասէ, ապստամբութիւնն եւ ապա յայտնեսցի մարդն անաւրէնութեան որդին կորստեան։ Ապստամբութիւն աստ ոչ եթէ զերկրաւոր թագաւորացս ճակատամարտից ինչ ասէ, զի այդ ի վաղընջուց կալաւ սո-*

*վորութիւն, այլ ի ճշմարիտ հաւատոյն քակելոյն, եւ այսուն մոլորութեան զհետ երթաւղացն, ասէ, ըստ այնմ եթէ ի ժամանակս յետինս քակեսցին ոմանք ի հաւատոց։ Եւ զի յոյժ նուազունք մնալոց են անբիծ եւ կեցուցանող հաւատոյն պաշտաւնեայք Փրկչին մերոյ եւ Տեառն, հաւանեցուսցէ զքեզ անշուշտ բանն, զոր ի դէմս մեր որպէս ըղձալով իմն ճառեաց։ Իսկ Որդին մարդոյ, ասէ, եկեալ գտանիցէ՞ արդեւք հաւատս յերկրի։ Վասն այնորիկ վաղվաղակի գայթագղեցուցանէ եւ տիրէ դերաքրիստոսն. զի յուղիղ ճանապարհէն զմոլորեալն դիւրաւ ըմբռնելով, յափշտակէ գայլն ապականիչ, եւ յաճախէ զջոլիրս ճախակողմանն դասու դժոխըմբեր կորստեան։ Յաղագս որոյ պարտ է մեզ զգուշանալ եւ անսասանելի պահել զանձինս ի վերայ ճշմարիտ հաւատոյ ի մարգարէիցն տնկեալ, եւ ի սքանչելագործ առաքելոցն աճեցեալ, եւ պտղաբերեալ ոռոգմամբ ի սուրբ Հոգւոյն, եւ ի սուրբ հարցն դաւանեալ եւ համառաւտեալ, ՅԺ եւ Ը· իցն ի Նիկիա, եւ ՃԾ իցն ի Կոստանդնուպաւլիս. եւ Մ· ոցն յԵփեսոս, որք ի պատիւ ամենասուրբ Երրորդութեանն գումարեցան։*

*Եւ մի ոք բանիւ կամ գործով ըստերիւրեսցուք ի հետոց նոցա, թէ եւ ի պատուոց ինչ հասցէ անկանել, եւ մերկանալ ի փառաց երկրաւորաց, կամ բանդից կամ կապանաց մատնել, սովոյ եւ սրոյ յաւժարութեամբ մատուսցուք զպարանոցս մեր, զի առանց այսց աստուածահաճոյ երից ժողովոցս անթերի հաւատոյ խոստովանութեան՝ անհնար է հաճոյ լինել Աստուծոյ։ Զորոց զդրութիւն հաւատոց, եւ ոչ ի Քաղկեդոնի ապստամբեալքն իշխեցին յայտնապէս հայհոյել, այլ ի ծածուկ գաղտնապէս երկուս բնութիւնս ասելով անխառնս եւ*



*անհաղորդելիս, քստմնելի անջատմամբ, եւ զգործ երկաքանչիւրոցն բաժանել տան լրբենի յանդգնութեամբ. զի եւ զաստուածավայելչաբար միաւորութեանն խառնումնն եւ հաղորդութիւն ուրանալ եւ ի բաց բառնալ հնարեսցին։ Վասն որոյ պարտ է ճանաչել Աստուածսիրութեան քում, զի գտակ այս չարեաց եւ հիմն Սիմոն է՝ մոգն եւ կախարդն, որ առ սուրբ երանելի առաքելովքն էր, եւ ճաղածանակ նշաւակութեամբ հերձեալ կորեաւ. զոր եւ ի հինգետասաներորդում սաղմոսին մեկնութեանն ծանուցանէ։*

*Այս փոքր ի չատէ ծանուցումն քում Սրբութեան։*

**Զնուաստ գրող եւ զսիրող այսմ տառի զԹումաս եւ զծնաւղսն իմ, աղաչեմ յիշել աղաւթիւք ի Քրիստոս Աստուած, եւ մեղաց թողութիւն խնդրել ինձ եւ իմոցն։**



## ԿԵ

## ԿԱՆՈՆՔ ՈՐ ԵԴԱՆ Ի ԴՈՒՆԻ, ՄԻՆՉԴԵՌ ՄՏԱԾՈՒԹԻՒՆ ԷՐ ԺՈՂՈՎԵԼՈՅ ԵՊԻՍԿՈՊՈՍԱՑՆ ԿԱՐԳԵԼ ԿԱԹՈՒՂԻԿՈՍ ՀԱՅՈՑ ՅԵՏ ՄԱՀՈՒԱՆՆ ՄՈՎՍԷՍԻ ԿԱԹՈՒՂԻԿՈՍԻ։ ԵՒ ԽԱՓԱՆԵՑԱՆ ԱՅՆՄ ԱՆԳԱՄ

*Վասն զի յառաջագոյն սուրբ Հարցն եւ ուղղափառ վարդապետացն մերժեալ էր եւ ի բաց ընկեցեալ սոսկալի նզովիւք զամենայն հերձուածողս, զՍաբելլիոս եւ զԱրիոս, եւ զԵւնոմիոս եւ զՄանի, եւ զՄարկիոն, եւ զնոցին նմանիս, եւ զՊաւղոս Սամուսատացի, եւ զԹէոդորոս(*) եւ զԴիոդորէ, զանյիշելին Նեստոր, եւ զԹէոդորիտոս, եւ զԵւտիքոս եւ զՍեւերոս, եւ զԱնդրէաս եւ զնոցին հաղորդս, եւ զԵւղոյիոս Նիկոմիդացւոց եպիսկոպոս եւ զնոցին հաղորդս, զանաւրէն ժողովն Քաղկեդոնի եւ զպիղծ տումարն Լեւոնի, որ զյոլովից յառաջ ասացելոցդ հաստատեաց հերձուածս. եւ այժմ բազումք ընդ խոստովանողս եւ ընդ ընդունաւղս ժողովոյն Քաղկեդոնի եւ տումարին Լեւոնի հաղորդեցան յաշխարհէս մերմէ. ոմանք կամաւորութեամբ յաղագս սնոտի փառասիրութեան եւ աչառութեան, եւ կէսք ակամայ բռնադատեալք ի նոցանէ. եւ այլք առ տգիտութեան եւ կամ անձեռնհաս լինելոյ. վասն*

------

*Բնագիր Ա. էջ 146-148.*
*(*) Յօր. Դէոդորոս.*



*որոյ ժողովեցաք եպիսկոպոսքս այս ի մայրաքաղաք եկեղեցիս Դունայ. Թէոդորոս մարդպետական եպիսկոպոս, Յովհաննէս Արծրունեաց եպիսկոպոս, Քրիստոփոր Սիւնեաց եպիսկոպոս, Մանասէ Բասենոյ եպիսկոպոս, Աբրահամ Ռշտունեաց եպիսկոպոս, Յովհաննէս Ամատունեաց եպիսկոպոս, Գրիգոր Անձեւացեաց եպիսկոպոս, Սիոն Գողթան եպիսկոպոս, Ահարոն Մեհնունեաց եպիսկոպոս, Ներսէս Բուժունեաց եպիսկոպոս, Յոհանիկ Ելոյ եպիսկոպոս, Թադէոս Առնայոյ եպիսկոպոս. Եպիսկոպոսք Ծ. եւ Հարք եւ քահանայք Յ. եւ Ղ. կամաւք եւ այլոց, հաստատել սահմանս կանոնականս յաղագս այնպիսեացն, որք գան ի խոստովանութիւն զղջանալով զվնաս եւ զմեղս զոր գործեցին կամաւ եւ ակամայ, զի գտասցեն պատրաստութեամբ գտանել անձանց փրկութիւն ի Տեառնէ։*

*Եթէ ոք յեպիսկոպոսաց եկեսցէ զղջանալով եւ խոստովան լինելով զվնաս անձին իւրոյ, որպէս թէ ակամայ եղեւ հաղորդութիւնն ի բռնութենէ ձգեալ յայն, եւ չէր ձեռնհաս, եւ կամ թէ տգիտութեամբ ինչ եղեւ, այլ ոչ յաղագս փառասիրութեան եւ զաւշաքաղութեան, այնպիսոյն ներելով տայցէ գլխաւոր վարդապետն զապաշխարութիւնն, մինչեւ երդմամբ եւ ձեռնագրաւ իւրով նզովեսցէ զհերձուածն յեկեղեցւոյ առաջի ամենեցուն։ Բայց ի պատիւն մատուցանել, մի եւ երկուք մի՛ իշխեսցեն առանց կամաց եւ քննութեան ամենայն եպիսկոպոսաց։*

*Իսկ եթէ ոք չառնուցու յանձն զվնասն, եւ կամաւորութեամբ իցէ արարեալ զհաղորդութիւն, եւ այլոց եւս պատճառք իցէ եղեալ բռնադատութեամբ գայթակղեցուցանելոյ, ծանր քննութիւն եղիցի, եւ քաջ փորձեսցեն, յոլով զապաշխարութիւն*

տալով նմա գլխաւոր վարդապետին, մինչեւ երդ-
մամբ ուխտեսցէ պահել զուղղութիւն, եւ նզովեսցէ
զհերձուածն՝ ձեռնարկութեամբ իւրով. ապա թէ
կամք իցեն կաթուղիկոսին, ամենայն եպիսկոպո-
սաւք հանդերձ, շնորհեսցէ զպատիւ աթոռոյն, բայց
զղջումն կալցի զամենայն աւուրս կենաց իւրոց։
Նոյն կանոն եւ քահանայիցն եղիցի։

Եթէ ոք եկեալ կամաւորութեամբ խոստովա-
նեսցի, եւ նզովեսցէ զհերձուածն ձեռնարկութեամբ
իւրով, եւ ապա անդրէն երթեալ ի նոյն փախած
դառնայցէ, եւ դարձեալ այսրէն գայցէ, զայնպի-
սին խոչտանգեսցեն բանիւք վարդապետութեան, եւ
խստագոյն զապաշխարութիւնն տալով գլխաւոր
վարդապետին։ Քաջ քննութիւն արասցեն եւ յան-
դիմանեսցեն, զի եւ այլքն երկիցեն. բայց զպատիւ
աթոռոյն մին կամ երկուքն մի՛ իշխեսցեն տալ,
բայց եթէ ուղղութիւնս եւ կրաւնս առաքինութեան
ցուցցէ յանձին իւրում, եւ ամենայն եպիսկոպո-
սաց լինիցին կամք։

Իսկ որք ոչ են հաղորդ ընդ մեզ հաւատով, եւ
աւտար ի միաբանութենէս յայսմանէ, եւ ի պատ-
ճառս ինչ պիտոյից հասանիցեն առ մեզ եպիսկո-
պոսք կամ քահանայք, մի՛ ոք իշխեսցէ հաղորդել
կամ պատուել քահանայական պատւով, այլ որպէս
զմի յաշխարհականաց ընկալցին վանատրութեամբ
եւ այլ կարգաւք։

Ապա թէ ոք գայցէ ի խոստովանութիւն ի
քահանայից, զձեռնարկութիւնն առաջի եպիսկոպո-
սին արասցէ՝ յորոյ վիճակի կալն կամիցի. եւ մի՛
ոք իշխեսցէ վանից երէց կամ քահանայ առանց
եպիսկոպոսին իւրոյ ընդունել զոք յայսպիսեացս
յընտանութիւն կամ ի հաղորդութիւն։

Արդ՝ եթէ ոք յաւժարութեամբ ընկալցի զկա-



նոնական սահմանս մեր եւ արասցէ, աւրհնեսցի
հոգւով եւ մարմնով, եւ ի կենցաղումն զուարճաց-
եալ բերկրեսցի, եւ ի յաւիտենից բարիսն վայելես-
ցէ։ Իսկ եթէ ոք ոչ լուիցէ եւ ապստամբեսցէ յաս-
տուածահաճոյ կեցուցանող պատուիրանէս, յիշխա-
նաց, կամ ի քահանայից կամ յեպիսկոպոսաց կամ
ի ժողովրդականաց, նզովեսցին հոգւով եւ մար-
մնով եւ ամենայն կենցաղով իւրեանց, եւ ընկալ-
ցին անողորմ պատուհաս յարդար դատաստանացն
Աստուծոյ՝ աստ եւ ի հանդերձելումն։



# ԿԶ

## ՁԵՌՆԱՐԿ՝ ԶՈՐ ԽՆԴՐԵԱՑ ՍՄԲԱՏ ՎՐԿԱՆ ՄԱՐԶՊԱՆ, ՑԱՅՆ ԵՊԻՍԿՈՊՈՍՈՒՆՍ, ՈՐՔ ԴԱՐՁԵԱԼ ԺՈՂՈՎԵՑԱՆ ՆՈՐԻՆ ՀՐԱՄԱՆԱՒ Ի ԴՈՒԻՆ, ԿԱՐԳԵԼ ԿԱԹՈՒՂԻԿՈՍ ՀԱՅՈՑ, ՅԵՏ ՄԱՀՈՒԱՆՆ ՄՈՎՍԷՍԻ. ԵՒ ԶԱՅՍ ՁԵՌՆԱՐԿ ԵՏ ՆՈՑԱ։

*Ամենագովելոյ եւ փառաւորելոյ եւ աստուածաշնորհ պատուովք պայծառացելոյ Տեառն Սմբատայ Վրկան մարզպանի եւ տերանց գինուորի, եւ Տեառն Գիգայ Դաշտկարանի, եւ Վարդապետի Հայոց Շարսաղարի· Ի Մանասէէ Բասենոյ եպիսկոպոսէ, ի Քրիստափորէ Սիւնեաց եպիսկոպոսէ, յԱբրահամայ Ռշտունեաց եպիսկոպոսէ, ի Յովհաննէսէ Ամատունեաց եպիսկոպոսէ, ի Գրիգորէ Անձեւացեաց եպիսկոպոսէ, ի Սիովնէ Գողթան եպիսկոպոսէ, ի յԱհարոնէ Մեհնունեաց եպիսկոպոսէ, ի Ներսիսէ Բուժունեաց եպիսկոպոսէ, ի Յոհանկայ Եղոյ եպիսկոպոսէ, ի Թադէոսէ Առնոյ եպիսկոպոսէ, Տերամբ ողջոյն։*

*Եւթնեւտասներորդ ամի Ապրուեզ Խոսրովու արքայից արքայի, յամսեանն մարերի, որպէս փառաւորութիւնդ ձեր յայս եպիսկոպոսաց, զոր ի վերոյդ գրեալ է, որ ի ժամուս ի Դուընի ի սուրբ եկեղեցւոջս դիպաք, ձեռնարկ խնդրեցէք վասն սուրբ եւ ուղղափառ հաւատոյ, զոր մեր հարանցն*

------

*Բնագիր Ա. էջ 149 - 150։ Հմմտ. Գ. էջ 57 - 58 - 59։*



*եւ երանելի վարդապետացն կալեալ է, եւ այժմ ունիմք կամաւքն Աստուծոյ։ Արդ՝ որպէս յառաջագոյն հայրապետացն Հայաստան աշխարհիս, եւ եպիկոպոսացն եւ քահանայից եւ իշխանաց եւ աշխարհականաց, սոսկալի նզովիւք մերժեալ եւ ի բաց ընկեցեալ է զամենայն հերձուածողս· զԱրիոս եւ զՄակեդոն, եւ զանյիշելին Նեստոր եւ զԵւտիքոս, եւ զժողովն Քաղկեդոնի եւ զպիղծ տումարն Լեւոնի, եւ հեռանամք ի հաղորդութենէ նոցա ճշմարտութեամբ։ Ապա եթէ խաբէութեամբ ինչ իցեն բանքն մեր, նզովեա՛լ եղիցուք յամենասուրբ Երրորդութենէն։*

*Ըստ բանիդ ձերում նոյնպէս եւ ես, Սմբատ Վրկան մարզպան եւ տերանց գինուոր, եւ Գիգ Դաշտկարին, եւ Վարդապետ Հայոց Շարսաղար, նզովեմք զնզովեալսդ ի ձէնջ, որպէս հարքն մեր երանելիք նզովեցին զնզովեալսն ի ձերոց հարանցըն, եւ աւրհնեմք զաւրհնեալսդ ի ձէնջ, որպէս եւ հարքն մեր աւրհնեցին զաւրհնեալսն ի ձերոց հարանցն երանելեաց եւ վարդապետաց աշխարհիս։ Եւ յայս ուղղափառ հաւատոյս վերայ հաստատուն եւ անշարժ կացցուք, ի կեալ եւ ի մեռանել ընդ ձեզ։ Ապա թէ խաբէութեամբ ինչ իցեն բանքս մեր, նզովեա՛լ եղիցուք յամենասուրբ Երրորդութենէն։*

*Եւ կնքեցաք զձեռնարկս զայս, եւ եդաք ի սուրբ եկեղեցւոջս Դունայ։ Ես Մանասէ Բասենոյ եպիսկոպոս, իմ աթոռակցաւք հանդերձ, որոց անուանքն ի վերոյդ յիշատակեալ են։ Եւ Սմբատ Վրկան մարզպան, եւ տերանց գինուոր, իւր եղբարաւք հանդերձ, առաջի ամենասուրբ Երրորդութեանն, նախ սրտիւք մերովք, եւ ապա մատանեաւք մերովք։*

--------

## ԿԷ

## ՁԵՌՆԱՐԿ՝ ԶՈՐ ԵՏՈՒՆ ԱԲՐԱՀԱՄՈՒ ՀԱՅՈՑ ԿԱԹՈՒՂԻԿՈՍԻ Ի ՄԻԱԲԱՆՈՒԹԵԱՆՆ ԱՇԽԱՐՀԻՍ ՀԱՅՈՑ, ԱՅՆՈՔԻԿ ՈՐՔ ԷԻՆ ԸՆԴ ԻՇԽԱՆՈՒԹԵԱՄԲ ՀՌՈՄՈՑ Ի ԹԱԳԱՒՈՐՈՒԹԵԱՆՆ ՄԱՒՐԿԱՆ

*Եւթն եւ տասներորդ ամի Ապրուէզ Խոսրովու արքայից արքայի, իմ Աբրահամու Հայոց կաթուղիկոսի եւ աթոռակցաց իմոց, Մանասէի Բասենոյ եպիսկոպոսի, Քրիստափորի Սիւնեաց եպիսկոպոսի, Յովանիսի Ամատունեաց եպիսկոպոսի, Գրիգորի Անձեւացեաց եպիսկոպոսի, Սիովնի Գողթան եպիսկոպոսի, Ահարոնի Մեհնունեաց եպիսկոպոսի, Ներսէսի Բուժունեաց եպիսկոպոսի, Յոհանկայ՝ էղոյ եպիսկոպոսի, Թադէոսի Առանայ եպիսկոպոսի, եւ իշխանաց մերոց, Տեառն Սմբատայ Վրկան մարզպանի եւ տերանց զինուորի, եւ Գիգա Դաշտկարանի, եւ Վարդապետի Հայոց Շարսաղարի, եւ այլ իշխանաց եւ աշխարհականաց ուղղափառաց առաջի կացեալ· Թէոդորոս սեպհական գնդին եպիսկոպոս, Ստեփանոս Բագրաւանդայ եպիսկոպոս, Մովսէս Խոռխոռունեաց եպիսկոպոս, Քրիստափոր Ապահունեաց եպիսկոպոս, Ներսէս Վանանդայ եպիսկոպոս, հանդերձ վանից երիցամբքս այսոքիւք, Աբրահամ սրբոյ կաթուղիկէի վանից*

------

*Բնագիր Ա· էջ 151 - 152։ Հմմտ· Գ· էջ 63 - 65։*



*երէց, Սամուէլ սրբոյ Հռիփսիմէի, Բաբիւլաս սրբոյ Յովհաննու վանաց երէց, Խոսրով Աւշականու, Յաւիտեան Եղիվարդայ, Դաւիթ Երեւանայ, Իսմայէլ Գառնոյ, Յունանէս Աւանի, Իսրայէլ Պտղավանից, Ջոջիկ Արամունից, Յովհանիկ Արտաւազդայ ապարանից, Աբաս եւ Որդեակ եւ Աբրահամ Փարպիոյ, Միքայէլ Աղցից, Գրիգորիս Արճոյ, Կոզմաս Ուրդայ, Մայէն միւս Արճոյ, Յովհանիկ Արծափաց, Սիմոն Դարունից, Սամոտ Բագարանի, եւ այլ վանից երիցամբ հանդերձ, եկեալ յանդիման մեր ըզբարեպաշտութիւն խոստովանեցին, նզովելով նոյնաձեւս ըստ երանելի հարցն մերոց զամենայն հերձուածողս, եւ զԱրիոս, եւ զՄակեդոն· եւ զՆեստոր, եւ զԵւտիքոս, եւ զչար ժողովն Քաղկեդոնի, եւ զպիղծ տումարն Լեւոնի։ Եւ աղաչանս մատուցանելով առաջի մեր, խառնել զինքեանս ի միաբանութիւն եկեղեցւոյ ճշմարիտ հաւատին Քրիստոսի· եւ ասացին միաբանութեամբ ամենեքեան, թէ զխոստովանութիւն եւ զսահման հաւատոյ, զոր հաստատեցին երանելի հարքն մեր, անշարժ պահեսցուք առաջի Աստուծոյ եւ հոգեւոր հարանցդ մերոց, եւ զապաշխարութիւն զոր տայք մեզ, յաւժարութեամբ ընդունիմք, եւ կամաւք կատարեմք, եւ ի հաղորդութենէ նզովելոցն ամենեւին հեռանամք։ Եւ թէ խաբէութիւն ինչ իցէ ի կամս ուրուք, նզովեսցի հոգւով եւ մարմնով յամենասուրբ Երրորդութենէն։*

*Եւ ընկալեալ զնոսա ապաշխարութեամբ, բեռն ինչ եւ մեր բառնալով զնոցա, ըստ գրեցելումն· կնքեցաւ ձեռնարկս այս ի նոցանէն յանդիման մեր ամենեցուն, վկայութեամբ սրբոյ Երրորդութեանն, որում փառք յաւիտեանս, ամէն։*

--------

## ԿԸ

## ՍՐԲԱՍԻՐԻ ՏԵԱՌՆ ԱԲՐԱՀԱՄՈՒ ՀԱՅՈՑ ԿԱԹՈՒՂԻԿՈՍԻ Ի ԳՐԻԳՈՐԷ ՆՈՒԱՍՏԷ ՔԵՐԴՈՂԷ

*Պարտ է կարաւղացն, ասէ առաքեալ, զտկարութիւն տկարացն բառնալ վասն շինութեան, եւ ըստ մարգարէին հրամանի զքարինս ի ճանապարհէ ի բաց ընկենուլ, զի մի՛ որ կաղն իցէ գլորիցի, եւ ոչ դնել առաջի սակաւատեսի գայթագղութիւն. եւ այս թէպէտ եւ առ այլս է, բայց առաւելագոյն պատշաճեցաւ առաջնորդաց։ Եւ այժմ իմ եւ ըստ մեզ խորհաւղացս բանքս են առ երանելի հայրս մեր ի Քրիստոս, որք ի մերում ժամանակիս զհետ երթաւղաց սրբոց առաքելոցն խրատու եւ նմանութեան՝ որոշեալք ի ստոցն։ Եւ աղերս ապաբանութեան, զարժանն թուեցեալ մեզ խնդրել առ արգելաւղս համառաւտագոյն ձայնիւ. քանզի յեկեղեցիս եւ ի ժողովանոցս, զորս Աստուծոյ շինած գիտեմք բանաւոր արժանացելովքս, զսեղանն մեծ ուսաք ի նոյն ինքն ի Բանէն Աստուծոյ եւ ի նորին առաքելոցն, զնոյն պաշտելի եւ զատուցեալ եւ որոշեալ զճշմարիտն եւ զանմերձենալին։ Վասն որք այլապէս խորհիցին, եւ ոչ զնմանութիւն պաշտաման առաքելոցն վարդապետութեան ունաւղաց, որպէս գրէ երանելին Պաւղոս Եբրայեցւոցն կանոնեալ սովորութիւն եւ առ այնս որք ոչ ուղղակի*

------

*Բնագիր Ա. էջ* 153 - 160։



*խորհին ի հաւատ, յամառական պնդութեամբ, արտաքս վարել, հանել յեկեղեցւոյ քարոզական ազդմամբ յաղագս ոչ աղաւթակցելոյն եւ Քրիստոսի երկրպագու լինելոյն ընդ մեզ։ Եւ զոչէ եւս թէ սուրբ սրտիւ եւ անխիղճ միտս ունել ի կատարեալն հաւատ, եւ կալ առաջի սուրբ եւ Աստուծոյ սեղանոյ։ Եւ զի Աստուծոյ սեղան խաչայարդար աւրհնութեամբ յուղղոցն եւ ի կատարելոցն գըլխաւորացն եղանի, ամենեցուն յայտ է։ Իսկ զորս եւ ոչ առաջի սեղանոյն սովորութիւն ընկալաք թողուլ՝ վասն հարման նոցա մտացն խղճի։*

*Քանզի չէ հաղորդութիւն լուսոյ ընդ խաւարի. զի ի նոցանէ յուղղութիւնն առարկեալ զսեղանն մեզ կեցուցանող մարմնոյն, եւ մեղսակէ՛զ հրոյն՝ ո՛ յանձն առցէ հաւաստի եղանիլ. զի Տէրն մեր եւ Աստուած ի ձեռն սեղանոյն ճշմարտագործէ, որպէս պատմէ աւետարանագիրն եւ զինքն իսկ առնէ յուտել կերաւղացն. ապա հակառակ ունարան*(*) *ի լուծումն փոխէ զէութիւն զտենչալի հրոյն կայծակն. որպէս եւ ոչ կենդանի ջուրն առ գերութեամբն, որ թուի ինձ դասք հերեսիոտաց, զոր փորեցին իւրեանց գուբս ըստ մարգարէին ամբաստանութեան։ Բայց սեղան Տեառն կենդանի ջրով շրջագայեալ, կարէ հուրն իմանալի փութանակի բորբոքել, որպէս առ Եղիայիւն։ Իսկ ապա որք պատուէրըս առաք փորձել քննութեամբ, զբարի՛ն ընդունել, եւ ի չարեաց իրէն հեռանալ, անընդրող եւ խառնակ մտաւք վարիլ արդեւք ո՞չ լինիցի առիթ գեհենին. թողից զպատուէրն զամենայնիւ ոչ հաղորդելն ընդ այնպիսիսն։*

*Բայց պատճառ զայլոց եղեալ մեծի դատա-*

------

(*) *Այսպէս յօրինակին.*

պարտութեան յԱստուծոյ ակնունելի է։ Զի կամ
անդրէն չինիցի հաղորդել կամաց հերձուածողաց
հեռացեալն, եւս չարագունիցի զայրացական մը-
տաւք, ի Քրիստոս զմեղանչելն ամբարիցէ, կամ
բամբասեալ եւ զմէնջ իբրեւ զմի յորոչելոցն, ի
սուրբ հարսն ընթացուցանէ զպատճառս յանդգ-
նութեանն իբրեւ ամբարհաւաճելոց, եւ զիւրեանցն
խնդրաւղ կացուցողի, թէ միութիւն այժմ յայտի։

Եւ ահա կորնչիցի տկար եղբայրն, վասն որոյ
Քրիստոսն մեռաւ, եւ պատճառաւղին եղելոյ ըղձա-
լի եւ հեշտ է երկանաքար հարստել ընդ պարանո-
ցըն, եւ տալ զինքն ովկիանեան յորձանացն՝ վճիռ
հրաւիրէ։

Բայց այժմ ինձ ընդ միտածէք, ձեզ Աստու-
ծով զթշնամանողն մեր աւանդիս հանդերձ աւան-
դաւղաւքն, եւ կամեցող շրջել զաւետարանութիւն՝
ատի ի մէնջ մեծի միջոցաւ, ի բաց հեռացուցա-
նել նզովին ձայնիւ, եւ ըստ նորա զնուիրեալն նո-
րին միում չարայարութեան կրկնակացն Քրիստո-
սի, որպէս իւր թուի. որ է արդարեւ թշնամանք
մարդացելոյն Աստուծոյ։ Մեզ արժանի համարիք
ասել ի ձեռն մաղթման զՀայր, առաքել զսուրբ
Հոգին ի նա, զի արասցէ ճշմարիտ մարմին եւ
արիւն՝ փրկաւղին մերոյ Բանին մարմնացելոյ, եւ
զ'ի նոցանէ խորհրդոյն հրաժարեցուցանէք. զի թէ
ի նմա թերութիւն եւ անվայելուչք Աստուծոյն
մարդացելոյ, նոյն եւ աստ հաւասար նմին։ Քանզի
ոչ առանց աւրհնութեան, որպէս ասացի, ուսաք
զսա գոլ, եւ ըստ երկրորդ բանի զդարձեալսն ի
խոստովանութիւն, ի հովուական աչտիճանի կա-
ցելոցն՝ սակս առաջին գործոյ, զի որք ոչ յուղ-
ղոց ընկալան զձեռնադրութիւնն՝ յապաչխարու-
թեան կարգի կացուցանէք, ոչ համարձակել ի սե-



ղան աւրհնել, եւ զյառաջն կանգնել, որպէս յուղ-
ղաց համարիք։ Բայց թէ վասն քահանային մեր-
ձեցման զվատթարագոյն սրբեալ համարիք, մի՛
գուցէ եւ նա վարակիցի. քանզի վատթարի եւ ա-
ռաքինւոյ առ միմեանս յարմամբ հա՛րկ է եւ ըզ-
հառնումն(*) առնուլ. որ լինի ո՛չ առաքինի եւ ո՛չ
վատթար. եւ այս ի բազումս։

Արդ՝ հայցաւղքս ի ձեռն գրոյ աղաչեմք ըզ-
սրբութիւնդ ձեր, թէ այլ ինչ յայտնեցաւ ձեզ ի
հին եւ նոր կտակարանաց, ցուցէ՛ք եւ մեզ, եւ կամ
թէ ի ձեռն հոգւոյն շնորհի նշանակել ձեզ։ Քանզի
սովոր է զհակառակութիւնս լուծանել, եւ զկամս
երկիւղածաց առնել, ապա թէ ոչ զհայցումնս մեր
կատարեցէք, փոխել զսեղանս նո՛րս ի նորոյ հաս-
տատեալս, որ ոչ ըստ հարանցն մերոց, որ ի Քրիս-
տոս կացեալ, այլ ըստ աւտարատեսուչ հովուաց
յաջորդութիւն առին։ Եւ քանզի որպէս նոքա զբա-
րեպաշտութիւն խոստովանելով յառաջին ի մտացն
փոխեցան, այսպէս գոյ հնար փոխարկել յառաջին
սրբութեանն պատուականութիւն եւ զսեղանս, որ-
պէս առ Մակաբայեցւովքն եղեւ, յեղեալ զխղճելին
յանխղճագոյնս։ Սակս փոխելոյ է մեր բանս աւրի-
նակեալ՝ թէ կար գոյ, այլ ոչ զհինն աւրինադրեմք
տապալել։ Քանզի թէպէտ եւ լալով եւ արտաս-
ուաւք եւ քքովք եւ թերահաւատութեամբ ծածկե-
ցին զսեղանն Տեառն, բայց հաստատուն հիմն Աս-
տուծ կա՛յ եւ ունի զկնիքս զայս զորոց ասեն, թէ
ծանեաւ Տէր զիւրսն, իսկ յանաւրինացն եւ յանհա-
ճելեացն բացակայի։ Իսկ զորոց խորհրդագէտն եւ
վարդապետն հեթանոսաց որոշումն դնէ, զի՞նչ ոք
ա՞ռ այս ասիցէ։ Ապա թէ անընդրութեամբ վարի-

------

(*) Այսպէս յօրինակին.

ցիմք, միթէ կա՞յ ինչ ի միջի, ի բաց քակել զարգելումնն, եւ զմեզ յեկեղեցիս Նեստորականաց մըտանել, եւ ի նոցա հաստատեալ սեղան կատարել զխորհուրդն տէրունեան, եւ զնոցին չերիցունս ի մերս։ Ո՞չ ապաքէն առաջինքն՝ յորժամ կամէին միաբանել հաւատով, այսու իրաւք զմիաւորութիւն ցուցեալ՝ համարձակէին կատարել ի միմեանց եկեղեցւոյ սեղանս։ Արդ՝ որք զկերպարանս Քրիստոսադաւանութեանն թէեւ բազումք ունին, ի զաւրութենէն հեռիք են. որպէս այժմ առ մեզ հերիսիոտայքս, եւ կամ յարեւելս ի Պարսս, ի Տիսպոն, եւ յայլ տեղիս ամենեւիմբ իսկ զատուցեալ յեկեղեցեացն, զի եւ զդուզնաքեայ անդ երկրպագութիւն՝ դատապարտութիւն ի հոգեւորին ուսուցանէք։ Վասն այսորիկ սեղանակտաւս աւրհնէք եւ երիցունս արձակէք, կարեկցել նոցա որք արքունի հրամանաւ անդր երթան։

Արդ՝ վարդապետացն հրաման հաստատուն կայցէ, եւ առանց հաւասարութեան խոտորելոցն՝ զպաշտաւն կատարեսցեն. ապա թէ յաշխարհիս թիւրացելոցն արարուածի թոյլ տայք, ոչինչ արգելէ եւ ի մէնջ յիշատակելոցդ սեղան զնոյն սովորութիւն ունել, եւ լոկ ի հացէն եւ ի բաժակէն աւրհնութեանց արգելուլ ծիծաղելի է։ Արդ՝ աղաչեմք, մի՛ լիցի մերոցս լսել զՏէրունեան զայն ձայն. Առաջնորդ կոյր. զի՞նչ մեծ է, հա՛ցն՝ թէ սեղանն որ սրբէ. եւ ի վերայ եբեր, թէ Ուրեմն վկայէք դուք ձեզէն, զի որդիք էք այնպիսի հարանցն։ Ո՞չ ապաքէն կամակար մտաւք յանձն առին մերքս յայն յեղուլ, ոմանք վասն ագահութեան, եւ այլք սակս սնափառութեան, եւ կէսք կաշառովք, եղեալք ընդ սուրբ հարանցն նզովիւք։ Իսկ աթոռոցն իշխանութեան արժանաւորելոյ ըստ կանոնին սահմանի,



դուք առաւել ողորմութեան արժանի արարէք, եւ այժմ զայս եւս մինչ ընդարձակէք։ Վասն որոյ ասեմքս մեզէն իսկ որոշիմք յառաքելոցն եւ ի սուրբ հարցն. եւ չէ՛ ինչ անուամբ լոկ յորջորջելն, զի լսելոց եմք. Թէ որդիք նոցա էիք, զգործս նոցա կատարէիք։ Քանզի նոքա եւ զբաղանիս անգամ ի հերձուածողաց կոխեալս պիղծ համարէին. եւ արդարեւ ապաշաւելի մասին հասանեմք, մինչ այդըմ եւս թոյլ տայք լինել։

Արդ՝ թողեալ զսուտ քահանայականն դաս, եւ զխորհուրդ հացին բեկման եւ զբաժակին, զսեղանոյս միայն քննութիւն յառաջ ձգեսցուք, եւ յայսոսիկ զհեթանոսականն, որում բագին սովորեցին ասել. եւ զՀրէիցն յառաքելոց չյիշատակեցաւ առ մերս յարակցել։ Նոյն կանոն եւ աստ։ Իսկ առ սա որպէս(1) բանս է, մինն ուղիղ ըստ լի հաւատոյ, եւ միւսն թիւրացեալ ըստ պակասահաւատն բարուց։ Քանզի սա՛, Տեառն զաւրութեանց(2) եւ նա՛ ոչ։ Սա զսուրբս միայն ընդունի եւ զխոստովանողս, որպէս եւ նախ ցուցաւ Եսայեաւ աւրինակելով զսա։ Քանզի նախ զՏէր զաւրութեանց ետես, եւ առ նմին զնուէրին սեղան կայծակնապարուկ(*), զի եւ խոստովանողին զՏէր զաւրութեանց տեսեալ աչաւք՝ կայծակն պղծակէզ ի նորին սեղանոյ առաքի, որպէս եւ մերքն ասեն, տեսաք մեք զնա, եւ առ մեզ հաւաստի եղանիլ։ Իսկ պղծաշուրթն ժողովրդեան, որք զՏէրն զաւրութեանց մեզ ասեն անսրբութեան

------

(1) զորմէ (Ե. Ե. Դ.)

(2) + սեղան (Ե. Ե. Դ.)

(*) Այսպէս յօրինակին.

ընդունիչ, եւ զա՛յս ազդէ, Երեմիաս· մեղքն Յուդայ, ասէ, գրեալ ի տախտակս սրտից նոցա եւ յեղջիւրս սեղանոց ձերոց· այսինքն զոր նոքա մեղանչէին, թէ դու մարդ ես· նովին մեղաւք գրեցան թիւրացս սեղանոյ եղջերք։ Քանզի եւ նա՝ նոցա եւ ձեր ասաց, որք ըստ հնոցն մտաց· եւ արդիքս Քաղկեդոնիտք զխոստովանութիւնն ի սեղանս գրեցին աղամանդեայ եղեգամբ(3)։ Եւ որոշէ դարձեալ առաքեալ՝ այսպէս ունիմք մեք սեղան՝ ուստի ո՛չ ունին իշխանութիւն այսպիսիքն ճաշակել, եւ մեզ ի նոցայն թէ Մի մերձենար, մի՛ ճաշակեր, եւ մի՛ հպիր, որ է ի պէտս ապականութեան։

Եւ դարձեալ քաջերեսագոյն իսկ դրաւշէ զմին Տեառն, եւ որք ըստ Տեառն խորհին, եւ զմիւսն դիւաց, որք ի բաց դարձեալ ի ճշմարտութենէն։ Եւ թէ ոչ այսպէս, ո՞յր այլ վատապաշտի սեղան՝ հա՛ց կամ բաժա՛կ ելանէ յաւրհնութիւն, քանզի զո՛չկարողութիւնն հաւասարապէս եդ, որպէս ի բաժակէն դիւաց, մերձեցելոցն ի Տէրունականսն։ Եւ յանդգնութիւն ինձ ոչինչ թուի գոլ ի բանիս, առասել զայս ձայն ի վերայ հերձուածողաց, զի թէ հակառակող՝ սատանայ անուանի, որպէս Տէրն մեր եւ Աստուած Պետրոսի կոչեաց սաստելով, յորժամ զմարդկաւրէնսն միայն խորհէր ի վերայ նորա՝ եւ ո՛չ զԱստուծոյսն, թէ Յե՛տս երթ սատանայ՝ գայթագղութիւն իմ։ Եւ դարձեալ թէ այսս եւ դեւս չարս՝ զհրապուրողս յաւտար վարդապետութիւնս կարդայ, վասն զտգէտսն, զյողդողդս չարժահիմն առնելոյն։ Ըստ երկնաքաղաքացւոյն առնն, որ ասէր զպատերազմ ունել ընդ այսս չարս, որ ի ներքոյ երկնից, որք խռովեն եւ տատանեն հողմով

------

(3) եղնգամբ (Ե. Ե. Դ.)։



վարդապետութեամբ, եւ թէ այնպիսի վարդապետութիւն, որ է հողմ, ա՛յսք անուանին, որպէս սաղմոսերգակն ասէ, թէ Ա՛յսք եւ մրրիկ՝ աւրհնեցէք զՏէր, զոր ի լսումն ածողքն՝ հողմս փոխարկեն։ Եւ այսակի հողմոյ սկիզբն ի չարադեւն Սիմոնէ կախարդէ եղեւ։ Իսկ ապա ո՞ւմ խղճելի է ի Պաւղոսէ զսեղանս դիւացն ասացեալ՝ զհերձուածողացն իմանալ, որ ստուգապէս կարծի ինձ եւ առանց երկբայութեան։ Եւ վասն քննութեան այսքան։ Իսկ զլխագոյնսն ի պարապ ժամու խնդրողացն մատուսցուք։

Բայց առ հակառակամարտսն կա՛յ եւս ասել, որք սուրբ Երրորդութեամբն ասեն սրբել, թէպէտ եւ հաւատ ի Քրիստոս ոչ լի իցէ։ Մի՛ փոփոխել, ասէ մարգարէն, զսահմանս հաստատեալս ի հարանց մկրտութիւն· Այո՛, զի ի հարցն լուաք զարժանն, եւ է սա այսպիսի ինչ։ Նախ՝ ասել· թէ վա՛յ ինձ, զի պիղծ շրթունս ունիմ, եւ խոստովանել զարժանաւորութիւն հաւատոց անպակաս ունելով, հանդերձ ողորմութեամբ, որպէս գրէ առակողն, եւ ապաշաւելով զոչ բարուոքն յառաջագոյն· ապա սերովբէ իմն մատուցանէ զմաքրական դեղն, զմարմինն Աստուածն Բանի, հրացեալ աստուածային հրո՛վն ծախականաւ։ Իսկ ի վերայ սեղանոյ այսպէս ուսաք· թէպէտ եւ սուրբ Երրորդութեանն անուն պատմիւր եւ առ գրաւորականսն ի նորա վերայ, որպէս Բանիւ Տեառն եւ հոգւով բերանոյ նորա ամենայն հաստատեալք, եւ Լուսով երեսաց քոց տեսանեմք զլոյս։ Եւ երիցս սուրբն ասելով, զմի Տէրութիւնն խոստովանելով, եւ այլք բազումք այսպիսիք բարբառք ի տաճարին։ Բայց զի ի Քրիստոս Յիսուս զհաւատն կատարեալ ոչ ունէին, թէպէտ սեղան է, այլ առաքեալ որոշեաց զմերս ի խորանի՛ն պաշտաւնէից, զսոյն իմանալի է եւ աստ։

Այլ ասեն ոմանք, թէ սաղմոսերգն՝ նշանակաբարս զխաչն ցուցանելով մեզ, զսեղանդ անուն յիշատակեաց, որ ձեւ եւ զաւրինակ յայտեալ՝ վասըն վերունակ լինել մարմնոյն Տէրունեան։ Ապա աւրինադրրի մեզ, զ՚ի նոցունց արարեալ խաչ նիւթեղէն՝ քակտել կամ չընդունել. ապա թէ այս ո՛չ, հանգոյն նորին եւ սեղանն։ Ասասցուք եւ առ այս, թէ հրաման ունէաք ի գրոց, կամ ի ճշմարիտ հարանցն. այո՛. որպէս եւ այժմ բազում անգամ հրաժարիմք ի տէրունեան նշանէն, որ հանաւ յայսց՝ ի վերայ հացին բեկելոյ եւ բաժակին, հրամանաւ ներբարգաւաճիցն, թէեւ է պատուական։ Իսկ զնիւթեղէնդ վասն այնր ոչ. զի թէ եւ նոցա յիմարութիւն է, իսկ մեզ զաւրութիւն Աստուծոյ. քանզի պատուիրէ. Մի՛ ինչ քան զգրեալսն իմանալ. այս ըստ տիրագոյն մտաց։

Բայց աղէ՛ զնշանակ սիրաւղդ, եւ զպատիւ անզանազանողդ, վասն զի զխաչն նշանակէ եւ գաւազանն, յաղագս նոր պտուղն բերելոյ, եւ բարունակ՝ վասն ճռին ողկուզոյ. եւ ծառ՝ սակս կախման խոյին. թէ կամիս յաւելից եւ զսանդուղսն։ Իսկ ստուգագոյն է՝ տուեալն երկիւղածաց նշան։ Արդ՝ հաւասարապէս տալի է մեզ զպատիւն, որք զճըշմարտութիւնն գլխաւորեալ առաք, որով նշանաւ պարծիմք իսկ. եւ այնց որ յառաջ նշանակաբարսն ցուցանէր, եւ կամ թէ ըստ անձնիւր հարկաւոր պիտոյիցն առ նոսա, ոչ դուզնաքեայ խնամ ունիմք(4), անարգութիւն ինչ հասանիցէ ի խաչ կամ ի սեղան։ Ապա ուրեմն ոչ հասարակ է պատիւ խաչին եւ սեղանոյ։ Իսկ որք ասեն մանկանց անբանից ունել զպատուականութիւն սեղանոյս, եւ

------

(4) + զի մի (Ե. Ե. Դ.)։



հասարակ զընկալումն, քանզի բան ոչ գոյ երկաքանչիւր խոստովանութեան, յայտնի են պատճառք կամաց նոցա. ի լսելն թէ ոչ է երկրորդ մկրտութիւն որ ի սուրբ Երրորդութիւնն, ջանան անորոշ մտաց իմացուցանել, զի երկուցեալք ի հարանցն աւանդութեանց փոխելոյ, ակամայ յայնպիսի սեղանոց վայելեսցեն զանվայելն մակարդ, առ այնպիսիսն՝ եւ ոչ մի բան առնել պատասխանի, կատարեալ իմաստութիւն։

Իսկ առ բարի հովիւդ ասասցուք, ո՞չ ապաքէն կանոն աւրինադրեցաւ ծնաւղաց յանզգուշութենէ մահ ի վերայ հասեալ համբակաց, ապաշխարութիւն ամաւք որոշելովք. եթէ հեղգութիւն մարմնոցն հասցէ քքուանաց անաւթովք, զծնաւղսն ասեմք պարտաւոր։ Եւ թէ չարափառ եղեալք կամ առանց մկրտութեան՝ զերկնաւղսն մեղադրութեան արժանի առնեմք։ Եւ առաքեալ ծնաւղացն պատուիրէ. Սնուցանիջիք, ասէ, ուսմամբ եւ վարդապետութեամբ։ Եւ Աստուածաբանն իմ Մովսէս՝ որդւոցըն պատուիրէ զաստուածս քո բա՛յ մի՛ բամբասիցես. զի որպէս Աստուածն մեր զմեղս մեր նա վերացոյց. այսպէս հարք եւ մարք մեր տղայութեանն զմեր։ Եւ զընութիւնն իսկ ասէ առաքեալ, թէ որ կաթնկերն է, տգէտ է բանին արդարութեան, քանզի տղայ է. իսկ կատարեալքն են կիրթ վասն ի չափն հասմանն։ Ծանաչելիքն հասու են ընտրութեան բարւոյ եւ չարի, քաղցու եւ դառին, որք եւ զպարտսն պահանջին. ապա թէ ոչ ո՛ հաւատայ առաջնորդաց համարս ընդ մեր պահանջել։ Այսպէս իմասցի եւ ի վերայ տղայոցն, քանզի համբակացն ծնաւղացն խոստովանութիւն յաղագս անձանց եւ նոցա՝ բաւական իմանամք։ Իսկ սեղանոց՝ ոչ այսպէս։ Քանզի որպէս սովորութիւն կալաւ առ ոմանս

շարժել զսեղանոցն զհաստիչն ինչ ոչ վնասեաց։ Արդ՝ որպէս յայս եկն բանս, է՛ զոր շնորհատուր իշխանութեամբ յարժանաւորութիւն կոչէք, եւ է՛ զորս խոստովանութեամբ ասել նախ զանաւրէնութիւնն յորմէ արդարանան։ Իսկ սեղան ուրեմն փոխել իրաւունք են։

Այս ի մէնջ աղերս առ ձեզ, եւ խնդիր ըստ գրոց, ուղղել ի պատուիրանաց զսխալումն կամաց մերոց, ձեզ է բաւականութիւն· ապա թէ իշխանութեամբ ինչ կամիք, եւ ոչ ըստ գրոց, մեր վերջին բան վասն այդր դոյնդ է։





## ԿԹ

## ԱՌ ՍՐԲԱՍԷՐ ՏԷՐ ԱԲՐԱՀԱՄ՝ Ի ՄՈՎՍԻՍԷ

Սրբասիրի Տեառն Աբրահամու Հայոց Կաթուղիկոսի, ի Մովսէսէ անարժանէ բազում խոնարհութեամբ երկրպագութիւն· ընդ որով եւ առաւել զսրբութենէ ձերմէ ողջունի հարցութիւն։

Լուայ, հայր պատուական, պայծառութեամբ զնորոգութիւն սրբոյ աթոռոյդ Տեառն Գրիգորի, եւ բազում խնդութեամբ լցաւ անձն իմ տառապեալ, զի ի վաղուց հետէ փափաքեալ սպասէի լսել զայդ, մանաւանդ զԱստուածասէր առաքինութենէդ ձերմէ յորժամ լուայ, որ ի մանկութենէ, վասն որոյ ընտրեաց իսկ Աստուած, եւ պարգեւեաց առաջնորդ եւ վարդապետ աշխարհիս, ի նեղութեան ժամանակի, յոյժ խնդացաք եւ ուրախ եղաք։

Քանզի ահա արդէն իսկ աւրհնեաց Աստուած յոտին քում զաշխարհս հայոց, եւ ամենայն բարեաց հիմնադրութեան սկիզբն եւ առաջնորդ, իշխանացդ բազմամեայ ժամանակաւք հեռացելոց յաշխարհէս, պայծառացեալք պատւովք եւ գոհութեամբ Թագաւորաց՝ այսրէն դարձ։ Սրբոյ եկեղեցւոյ շինութեան եւ նորոգութեան աշխարհիս յերկոցունց կողմանց, հոգեւոր եւ մարմնաւոր պատառմանն՝ անդրէն միաւորութիւն։ Եւ որպէս հիմն բարիոք եղաւ ի ձեռն ձերոյ սրբութեան, յուսամք

-------

Բնագիր Ա· էջ 161 - 162։ Հմմտ· Գ· էջ 69 - 70։

*յողորմութիւնն Քրիստոսի Աստուծոյ զկատարումն եւս լաւագոյն լինել։*

*Արդ՝ փութացաք ծանուցանել եւ զցաւս մեր սրբութեան ձերում, որպէս հիւանդք որ ցուցանեն զվէրս իւրեանց ճարտար բժշկաց, եւ խնդրեն զառողջութիւն ի նոցանէ։ Աղաչեմք եւ մեք ձեռնտու լինել ձեզ եկեղեցւոյ Քրիստոսի, որ հաւատակից եւ աշակերտ ձեր էր Կիւրոն, եւ այժմ հիւանդացեալ ի նեղութեան է։ Նա՛խ աղաւթիւք խնդրելով յԱստուծոյ եւ ապա աշխատասէր վարդապետութեամբ ձերով, սատարութեամբ եւ փառաւորեալ իշխանացդ, ջանացարուք դարձուցանել զժողովուրդըն ժխտող եւ զապստամբեալն յուղղութիւն, եւ ածել ի նոյն զաւիթ միոյ հովուի։*

*Եւ փութացարուք այսուհետեւ՝ որ ի հասարակացն է շահաւորութիւն եւ ի բազմաց կարեբարձութիւն, ըստ աւրինակի երանելոյն Մովսէսի եւ սրբոյն Պաւղոսի. յորոց մինն առանց իւրայոցն թողութեան հասման եւ զինքն տարագրել ի դըպրութենէն կենաց աղերսէր, եւ միւսն ասէր, եթէ Ուխտիւք խնդրէի ե՛ս իսկ ինքն նզով լինել ի Քրիստոսէ վասն եղբարց իմոց եւ ազգականաց ըստ մարմնոյ։ Որոց ահա առաքինութիւնն ընդ ամենայն բոլոր ազինս մշտաքարոզ բանիւ ընթանայ պայծառացեալ, զի ունելով զնոցա գործսն աւրինակ, եւ հետեւելով նոցա, եղիցի եւ ձեզ պարծել ի Քրիստոս՝ թէ ինձ տուան շնորհքս այս ի Տեառնէ, ի Վրաց մինչեւ յաշխարհն Աղուանից քարոզել զանքնին մեծութիւն փառացն Քրիստոսի եւ զայսչափ ազգս շահել ձեզ, եւ Քրիստոսի պատարագել։*

*Ընդ որոց եղիցի լսել եւ զբարբառն հրաւիրական. Թէ Բարի մշակ եւ հաւատարիմ, հանդերձ*



*ընդ քեզ սատարիչ բարեկամաւքդ եւ փրկեալ զընդաւդ, եկ մուտ յուրախութիւն Տեառն քո, ընդ նախնիս քո, եւ ընդ սիրելիս անուան իմոյ։*

*Իսկ եթէ զանարժանութենէս մերմէ հարցանէք, ի Վրթանէսէ քերդողէ տեղեկանայք։ Եւ անձն իմ տառապեալ եւ աշխարհս մոլորեալ սրբութեան ձերում յանձն եղիցուք։*

*Եւ դուք ողջ լերուք Տէր մեր։*

**Զտառապեալ եւ զանարժանս Թումաս եւ զծնաւղսն իմ յիշեցէք ի Քրիստոս, ո՜վ սուրբ ընթերցողք։**



## Հ

## ՊԱՏԱՍԽԱՆԻ ԹՂԹՈՅՆ ՄՈՎՍԻՍԻ

*Սրբասիրի Տեառն Մովսէսի եպիսկոպոսի յԱբրահամայ, թէպէտ եւ ոչ կամաւ՝ Հայոց Կաթուղիկոսէ Տերամբ ողջոյն։*

*Տեսի զսրբութեան ձերոյ զգիր ողջունի, որ լի՛ էր բազում գոհութեամբ զողորմութեանցն Աստուծոյ եւ արդիւնաւոր օրհնութեամբք զմեր տկարութենէ· Նաեւ արժանաւոր ասել զանբաւականութիւնս իմ· որ եւ յանձնեցաք իսկ պարգեւաբաշխին բոլորեցունց շնորհահատոյց լինել ձեր սրբութեանդ։*

*Իսկ զսոսկալի եւ զծանր բեռանցն բառնալոյ, որում ոչ ունէի ակն, անգիտելի է ինձ ո՛րպէս ըմբռնեցայ, եւ կամ թէ զբազմութեանն կամս ի միաբանութիւն գալ։ Քանզի թէ ի վերուստ կարծիցի ումեք, զանարժանութիւնս իմ դիտելով, որ ոչ այսըմ աստիճանի նմանութիւն ցուցանի, այլ եւ ոչ փոքրագունին քան զսոյնս՝ զոր ունէին, եւ եթէ ի փորձութիւն եւ յերեւոյթ ամենեցուն եդ Աստուած· ա՛յս յոյս՝ ոչ ուստեք է ինձ բայց թէ յետ Աստուծոյ ողորմութեանն, ի ձեր սրբութեան աղաւթս։*

*Արդ՝ աղաչեմ զձեր սրբութիւնդ ոչ դադարել աղաչանս մատուցանել առ Ամենազաւրն, զի տացէ ինձ ոյժ կարողութեան ըստ իւրն հաճոյից, կատարնագոյնս ցուցանել զնորայն տնտեսութիւն առ մերս երկիր· Նմանաբար եւ առ աշխարհն Վրաց եւ Աղուանից, պայծառանալ ի Քրիստոս Աստուած ճշմարիտ հաւատով, ի ձեռն մերոյ նուաստութեան, եւ կամիմ աւրհնիլ ի ձեր սրբութենէդ։*

-------

*Բնագիր Ա. էջ 163։ Հմմտ. Գ. էջ 70։*



*Մի՛ դանդաղիցիս ի սուրբ Զատիկն գալ այսր, զի բազմաց լինի խնդութիւն, եւ գործք հոգեւորք առաջի կայ· մինչդեռ Տէր Սմբատ աստէն է, փութամք որով եւ է աւրինակաւ նախ զա՛յդ ի գլուխ տանել՝ շնորհիւն Քրիստոսի Աստուծոյ մերոյ։*

*Ողջ լեր։*



## ՀԱ

## ԹՈՒՂԹ ԱՌԱՋԻՆ ՏԵԱՌՆ ԱԲՐԱՀԱՄՈՒ ՀԱՅՈՑ ԿԱԹՈՒՂԻԿՈՍԻ, ԱՌ ԿԻՒՐԻՈՆ ՎՐԱՑ ԿԱԹՈՒՂԻԿՈՍ

*Սրբասիրի Տեառն Կիւրովնի վրաց կաթուղիկոսի, եւ այլ եպիսկոպոսաց աթոռակցաց քոց· յԱբրահամայ Հայոց կաթուղիկոսէ, եւ յայլ եպիսկոպոսաց աթոռակցաց իմոց· Տերամբ ողջոյն։*

*Յառաջագոյն երանելի հայրապետն մեր Մովսէս գրեաց առ ձեզ մեղադրութիւն յաղագս հաղորդելոյն ձեր ընդ այնոսիկ՝ ընդ որս չէր պարտ· եւ ձեր գրով եւ պատգամաւորաւ յանձն էր առեալ, չհեռանալ ի միաբանական հաւատոյ հաղորդութենէ աշխարհիս մերոյ։ Այժմ զչարագոյնն եւ զծանրագոյնն եհաս մեզ լսել, զի զմիաւորութիւն հաւատոյ, եւ զասպնջականութիւն զերկոցունց աշխարհացս Ցուրտաւայ եկեղեցին անշա՛րժ միջնորդութեամբ պահէր, ուստի սէր եւ խնամութիւնք մարմնաւորականք եւ հաղորդութիւնք հոգեւորականք կատարէին ցնծալից ուրախութեամբ։ Աստի ի Մծխիթայի ի Խաչն գալով, եւ այտի ի Սուրբ Կաթուղիկէ։ Այժմ զՑուրտաւայ զեպիսկոպոսն հալածեալ, թէ ընդէ՞ր խոստովանել հրամայես զհաւատ ուղղափառութեան, եւ զպաշտաւնն հայերէն սրբոյ Շուշանկան զկարգաւորեալն՝ լմեմ թէ ի բաց*

*Բնագիր Ա· էջ 164 - 165։ Համմտ· Գ· էջ 74 - 75։*



*փոխեցէք։ Մեզ մահուչափ եւ եւս չարագոյն թուեցաւ գործդ այդ։ Զի թէպէտ եւ յամս կաւատայ՝ արքայից արքայի եղեւ խնդիր քննութեան մեր աշխարհիս եւ Հոռոմոց, որք զժողովն Քաղկեդոնի ընկալան, եւ զտումարն Լեւոնի, մեր եւ ձեր աշխարհի վարդապետք եւ իշխանք հեռացան ի հաղորդութենէ նոցա, եւ միաբանութեամբ եւ գրով պահի ի միջի մերում մինչեւ ցայժմ։ Այժմ ոչ է պարտ սրբութեանդ ձերում աւտարութիւն ի մէջ արկանել երկոցունց աշխարհացս, եւ հեռացուցանել զսէր եւ զխնամութիւն զմարմնաւորական եւ զհաղորդութիւն հոգեւորական, զի մի ոք եկեսցէ աղաւթել աստի ի սուրբ Խաչդ, եւ այտի ի սուրբ Կաթուղիկէ։ Զի թէ ի գինուորաց ոք լինէր պատճառ այսպիսի պատառման եւ չար խռովութեան, սրբութեան ձերում պարտ էր խնամ ունել եւ լինել պատճառ խաղաղութեան։ Իսկ եթէ դուք լինիք պատճառ աւտարանալ մեզ ի միմեանց, ո՞ր բան բովանդակիցէ զայդպիսի աղէտս։*

*Կամէաք եպիսկոպոսունս արձակել առ սրբութիւն ձեր, եւ վարդապետս, զհմուտս գրոց սրբոց, ծանուցանել զվնասամտութիւն ժողովոյն Քաղկեդովնի եւ զտումարին Լեւոնի, եւ զաղծապիղծ կրաւնս եւ զանսուրբ վարս որ յայնմհետէ եմուտ յաշխարհ, վասն որոյ սրբասէր եպիսկոպոսս հալածեալ է։ Բայց ապա առժամս պատշաճ համարեցաք նախ ի ձեռն պատուական ազատ արանցդ թղթով ընդունել ի ձէնջ պատասխանի· զի է՛ ինչ՝ որ չաւատալի իսկ թուեցաւ մեզ· զի ընդ աւտար թագաւորութեամբ՝ արքայից արքայի ծառայից սիրոյ միաբանութիւն առնել եւ զբնական հաղորդակիցս որոշել, կարի իսկ դժուարին է։*

*Ողջ պահեսջիք Քրիստոսիւ Աստուծով մերով։*

Եւ զպատասխանի թղթոյս, եւ զողջոյն ձեր, ըստ հաճոյից Աստուծոյ եղիցի մեզ լսել, որ առիթն է միաւորութեան եւ խաղաղութեան։





## ՀԲ

## ՊԱՏԱՍԽԱՆԻ Ի ԿԻՒՐԻՈՎՆԷ

Սրբասիրի եւ պատուական Տեառն Աբրահամու Հայոց Կաթուղիկոսի, եւ ամենայն եպիսկոպոսաց աթոռակցաց քոց, ի Կիւրիովնէ Վրաց կաթուղիկոսէ, եւ յամենայն եպիսկոպոսաց աթոռակցաց իմոց, աւրհնութեամբ սրբոյ Խաչիս՝ ողջոյն։

Թուղթս զոր արարեալ էր՝ տեսի, եւ զինչ գրեալս էր իմացայ, վասն արժանի լինելոյ տեառնըդ զսուրբ աթոռ երանելոյն Գրիգորի ժառանգելոյ· վասն ողջութեան ձերոյ մեծապէս ուրախ եղէ եւ զԱստուծոյ գոհացայ։ Եւ որ գրեալ էր թէ յառաջագոյն երանելի հայրապետն մեր Մովսէս գրեաց առ ձեզ մեղադրութիւն յաղագս հաղորդելոյ ձեր ընդ այնոսիկ ընդ որս չէր աւրէն։ Եթէ վասն Խուժկացն ասէք, մեք յայնժամ ընդ աշխարհի խորհելով հանդերձ եպիսկոպոսաւքս աթոռակցովքս իմովք եւ լաւաւք աշխարհիս, եւ որպէս աւրէնք հրամայեն ոչ ի բաց ընկենուլ, այլ ընդունել՝ որք դառնան ի չարութենէ ինչ եւ կամ ի հերձուածոց յապաշխարութիւն, այն իրաւք ընդունելութիւն արարաք։ Այլ յորժամ գիտացաք, թէ նոքա զխոստովանութիւնն ստութեամբ արարին եւ անդրէն յիւրեանց ի տիղմն չարութեան դարձեալ կործանեցան, նզովեցաք զնոսա, եւ ի բաց կործա-

------

Բնագիր Ա. էջ 166 - 167։ Հմմտ. Գ. էջ 76 - 77։

*նեցաք ի կաթուղիկէ եկեղեցւոյ, եւ ի մէնջ քրիստոնէից։ Այժմ նոցա ողջոյն ոք չիշխէ տալ։*

*Եւ որ գրեալ էր թէ վասն հոգեւոր հաղորդութեան եւ մարմնաւոր սիրոյ եկեղեցին Յուրտաւայ հաստատեալ էր ի մէջ երկուց աշխարհացս, եւ այժմ Յուրտաւայ եպիսկոպոսն վասն ուղղափառութեան հալածեալ է, եւ զպաշտաւնն հայերէն ի բաց փոխեալ է. մեր զպաշտա՛ւնն չէ փոխեալ։ Բայց զի որ եպիսկոպոսն եղեւ՝ վրացի ուսումն գիտէ եւ հա՛յ նո՛յնպէս, եւ երկոքումբք դպրութեամբք պաշտաւնն կատարի։ Այլ վասն Յուրտաւայ եպիսկոպոսին հալածման, գործք իւր ծանուցանեն եթէ վասն ուղիղ հաւատոյ գնացեալ է, թէ վասն այլ իրիք։ Քանզի որպէս եւ գրեալ է, թէ Որ գործէ զչար՝ ատէ զլոյս, եւ որ գործէ զճշմարտութիւն՝ գայ ի լոյս։ Ես զնա ոչ հալածեցի, այլ է՛ր ինչ որ լսեցի վասն նորա յետին գործոց, եւ կոչեցի առ իս եւ կամէի խրատ տալ, եւ ուսուցանել որպէս պարտ էր աշակերտի. իսկ նա յիմ կոչ չեկն, այլ զեկեղեցին եթող եւ ի գիշերի գաղտ գնաց*

*Իսկ այն որ վասն հաւատոյ եւ ժողովոյն եւ տումարին գրեալ էր, եւ զայս գրեալ էր թէ, արքայից արքայի ծառայից ընդ աւտար թագաւորաց ծառայս հաւատ ի զուգաց ունել եւ զընական հաղորդակիցս ուրանա՛լ՝ յո՛յժ անհնարին թուի։ Մեր եւ ձեր հարքն արքայից արքայի ծառայք էին, եւ զհաւատ զԵրուսաղեմի ունէին, եւ մեք եւ դուք նոյնպէս։ Թէպէտ եւ ծառայք արքայից արքայի եմք, զհաւատ զԵրուսաղէմի ունիմք եւ կալցուք։ Զի թէ ցայժմ խոնսունդ(*) էին Տեա՛րք, այժմ որչափ եւս առաւել երանելի եմք, որք յարքայից*

------

(*) *Այսպէս յօր.*



*արքայի ծառայութեան հասեալ եմք։ Զի մինչ երկինք եւ երկիր լեալ էին, չէր եղեալ եւ ոչ մի տէր, որ ամենայն ազգի զիւր աւրէնս ի վերայ թողեալ էր, որպէս այս տէր եթող, եւ մանաւանդ զմեր քրիստոնէից հաւատս. իսկ ազատի աշխարհի մերոյ աւելի քան զամենայն աշխարհաց, եւ բարի անձինս իմոյ՝ լաւագոյն քան զամենայն ընկերաց իմոց։ Եւ արքայից արքայ, նո՛յնպէս տէր է Հոռոմոց, որպէս եւ Արեաց աշխարհի. եւ չէ այսպէս, որպէս դուք գրեցէք, թէ որիշ որիշ թագաւորութիւնք են։*

*Եւ որ գրեալ էր թէ կամէաք եպիսկոպոսունս արձակել եւ վարդապետս, որ գային եւ ուսուցանէին. թէ կամիք արձակեցէք, թո՛ղ գան որ ուսուցանեն եւ ուսանին։ Բայց պարտ էր ինձ զի գայի եւ յաղաւթս կայի ի սուրբ եկեղեցիսդ եւ ի ձէնջ աւրհնէի, կամ արձակել զիմ աշակերտս, որ զողջոյն սրբութեանդ ձերոյ առ մեզ բերէին. բայց վասն չար ժամանակիս եւ աշխարհիս կարեաց խափանեցաք. ի բանի մի ունիք. ողջ պահեսջիք Քրիստոսիւ Աստուծով մերով, եւ զպատասխանի թղթոյս՝ ըստ հաճոյիցն Աստուծոյ եւ մեզ տացէ լսել ի ձէնջ։*



## ՀԳ

## ԹՈՒՂԹ ՏԵԱՌՆ ՍՄԲԱՏԱՅ՝ ՎՐԿԱՆ ՄԱՐԶ-ՊԱՆԻ, ԱՌ ԿԻՒՐԻՈՆ՝ ՎՐԱՑ ԿԱԹՈՒՂԻԿՈՍ

*Սրբասիրի Տեառն Կիւրոնի՝ Վրաց կաթուղիկոսի, եւ այլ եպիսկոպոսաց աթոռակցաց ձերոց, եւ իշխանաց աշխարհիդ Ատրներսեհի եւ ամենայն լաւաց, ի Սմբատայ Գուրկան մարզպանէ եւ տերանց զինուորէ, եւ ի Գիգայ Դաշտկարանէ, եւ ի Վարդապետէ Հայոց Շարսաղարէ, եւ յայլ ազատ որերոյ խոնարհութեամբ եւ սիրով ողջոյն:*

*Քանզի յառաջագոյն հարանցն մերոց եւ ձերոց, եւ վարդապետաց աշխարհիս միաբանութեամբ զյետին կարգս ոմանց եւ զատելի վարս տեսեալ, որ աննման եւ թիւր էր մեր հաւատոյ եւ կանոնաց, մերժեալ էր զնոսա նզովիւք, եւ վասն հեռաւորութեան մեր եւ նոցա աշխարհաւ եւ ոչ խիղճն այն առ ամենեսեան ի մտի էր, բայց առ սակաւս ոմանս հաստատուն կայր: Իսկ մինչ մեղաց յաճախութիւն եղեւ եւ առ միմեանս եհաս ...... ապստամբեալք ի բնիկ տերանց՝ ա ........... վասն հաւատոյ էր, եւ կամ վասն կար .......... վարուց նոցա, եւս քա՛ջ ի վերայ հասաք ...... աննմանք եւ թիւրք էին ամենեւիմբ մեր կար ......... այլ տեսանէաք եւ յԱրեաց աշխարհի քրիստոնեայքն ուղղափառք*

------

*Բնագիր Ա. էջ 168 - 169: Հմմտ. Գ. էջ 93 - 94:*



*էին, զնոյն պայման մեր եւ ձեր հարանցն եւ նոցա ........... աջ պատուիրանաւ: Ապա առաւել եւս հասաք ի վերայ, թէ որք ի մէնջ էին եւ միաբանեցին ընդ նոսա՝ պակասամիտք եւ լոյծք ուրեմն էին յառաքինութենէ եւ ի հաւատոց, եւ այս պատերազմս որ ընդ հաստատունսն եւ ընդ լոյծսն էր, չար եւ դառնագոյն թուէր քան զամենայն չարըս: Եւ յորժամ մարդասէրն Աստուած ողորմեցաւ, եւ արքայից արքայ բարերարութեամբ արար, եւ զմեզ յաշխարհահարձակ հաւատոյ եւ եկեղեցեաց կարգի աւելագոյն պատուէր ի վերայ արար, զի ընդ միմեանս խաղաղութիւն եղիցի, քանզի էր ինչ որ լուաւ: Եւ մինչ բարեաւ յաշխարհս հասաք՝ առաջնորդութեամբ սուրբ Հոգւոյն հայրապետ կարգեցաւ, եւ այն ամենայնի հակառակութեան եւ թերութեան ուղղութիւն եղեւ, Քրիստոս Աստուած փառաւորի, որպէս յառաջագոյն ուսուցին մեզ երանելի վարդապետքն, եւ եղեաք ամենեքեան մի հաւատ, որ ընդ արքայից արքայի իշխանութեամբ եմք:*

*Զնո՛յն հարկաւորեցաք գրել եւ առ ձեր սրբասիրութիւն, զմերս պատմել ձեզ, եւ զձեզ ընդ մեզ միաբանել, որպէս եւ մեր հարքն էին: Քանզի միոյ իսկ վարդապետի աշակերտ եւ վիճակ եմք լեալ եւ մեզ նովին հաւատով՝ որպէս եւ հարքն մեր, եւ զհաւատ առ Աստուած ունել, եւ զսէր առ միմեանս: Բայց է եւ ինչ լուր որ յաշխարհականաց լուայ եւ սակաւ ինչ հաւատացի: Իսկ հաւաստի յեպիսկոպոսէս Ցուրտաւայ որ աստ է՝ լուաք եւ կարի դժուարացաք, քանզի մեր եւ այդ աշխարհի ազատ որերոյ թէպէտ արիւն եւ հարազատութիւն ի միջի կայր, բայց հաստատութիւն եւ վստահ լինել մեզ որպէս յերդումն ինչ· ա՛յդ սուրբ վկայարան որ ի*

Ցուրտաւ, պատուական եկեղեցիդ հաստատեցաւ, եւ պաշտաւնդ եւ կարգդ հայերէն ի ձեր միջի էր, եւ փոխելդ թշնամութիւն ի մէջ արկանէ, մանաւանդ թէ եւ թերութիւն, արգելուլ եւ մեզ աստ, որք կամին գալ եւ երկիր պագանել սրբոյ Խաչիդ, եւ ոչ տալ մտանել որք այտի գան ի սուրբ Կաթուղիկէ եկեղեցի եւ յայլ վկայարանս յաղաւթել: Եւ այժմ մեծի պարգեւի, որ յԱստուծոյ տուան մեզ եւ ձեզ, խափանիչ թէ ոք յանխրատից եւ կամ ի տգիտաց լինէր, ձեզ պարտ էր խրատել վարդապետութեամբ զայնպիսին եւ պատուհասել որ հակառակութիւն ի միջոյ բառնայր, թող թէ ձեզ առնել զա՛յդ որ կարի անհնարին եւ չար է: Կամէաք եպիսկոպոսունս հանդերձ քերդողաւք արձակել, զկի՛րթսն, որ գիտեն զչարութիւն հերձուածոց, որ զձեզ ի վերայ հասուցանէին: Բայց ապա առ ժամս բաւական համարեցաք, ի ձեռն ազատ արանցդ նախ թղթով զկամս ձեր գիտել:

Ողջ լերուք:





# ՀԴ

## ՊԱՏԱՍԽԱՆԻ Ի ԿԻՒՐՈՎՆԷ ԱՌ ՏԷՐ ՍՄԲԱՏ

Փառաւորելոյ Տեառն, Սմբատայ Գուրկան մարզպանի, եւ տերանց զինուորի, եւ Գիգայ Դաշտկարանի, եւ Վարդապետի Հայոց Շարսաղարի, եւ այլ ազատ որերոյ Հայոց աշխարհիդ՝ ի սրբոյ Խաչէս աղաւթք, եւ ի Կիւրովնէ Վրաց կաթուղիկոսէ, եւ յամենայն եպիսկոպոսաց աթոռակցաց իմոց, եւ յիշխանացս Ատրներսեհէ եւ յԱշուշանէ եւ յամենայն լաւաց աշխարհիս Վրաց՝ խոնարհ երկրպագութեամբ եւ սիրով ողջոյն:

Գոհանամ զամենասուրբ Երրորդութենէն, որ զքեզ Տէր Սմբատ ի ժամանակի յայսմ փորձութեան պատրաստեաց ի բարեխաւսութիւն բարերար տերանց՝ որ զոհ են զքէն, եւ ետ մեզ: Քանզի ազտիհդ ձեր եւ փառաւորութիւն, մեծութեամբ հանդերձ, ոչ միայն Հայոց աշխարհիդ խնդութիւն է, այլ եւ Վրաց:

Զթուղթս զոր արարեալ էր տեսի, եւ զողջոյն ձեր լսելով խնդացաք, եւ որ գրեալ էր թէ Հարանցն ձերոց եւ մերոց՝ զթիւր եւ զատելի կարգս ոմանց եւ զհաւատս տեսեալ, խոտեալս էր եւ ի բաց ընկեցեալ: Վասն որոյ էր ինչ, որ այժմ եղեւ հակառակութիւն ի մերում աշխարհիս, որ մինչեւ

------

Բնագիր Ա. էջ 170 - 171: Հմմտ. Գ. էջ 95 - 96:

յարքայից արքայ եհաս. եւ արքայից արքայ բարերարութեամբ արար զիս աշխարհարձակ, եւ վարըն եկեղեցեաց եւ հաւատոյ եւ ընդ միմեանս խաղաղութիւն ունելոյ պատուէր ի վերայ արար: Եւ յորժամ բարեաւ յաշխարհ եկաք, ի մեր ձեռն Աստուած զհակառակութիւնն զայն եբարձ ի միջոյ: Վասն այդր բարերարութեան հրամանի եւ զՏէրդ յայտ գործ պարապեցուցանելոյ, Աստուած զարքայից արքայ անմահ արասցէ, եւ զքեզ, Տէր, աւելի տերանց պատուականագոյն արասցէ զաւակաւդ հանդերձ, քան որչափ եսդ, զգիտութիւն եւ զիմաստութիւն եւ զհրահանգ տերանց աւելի ետ Տէր Աստուած քան զբազմաց: Նախ՝ Քեզ Տեառն եւ ապա ինձ, զի ազատիհ որ ինձ հասեալ է ի տերանց վասն իւրեանց բարերարութեան, թէ ամենայն քրիստոնեայք զձեռս յերկինս համբառնային եւ ըզնոցա անմահութիւն խնդրէին, արժան էր:

Եւ այնր որ վասն հաւատոյ գրեալ էր, թէ հարքն մեր եւ ձեր ապաբան ունէին, յորմէհետէ եւ սուրբն Գրիգոր զուղղափառ հաւատ կարգեաց:

Բայց զի եպիսկոպոսն զոր արարաք՝ Վրացի եւ Հայ դպրութիւն զոյգ գիտէ եւ զպաշտաւն կատարէ երկոքումբ դպրութեամբքն: Բայց իմ սրտի պակասութիւն մի է, եւ մեծ է, մարդոյ միոյ բանից հաւատալ ձեզ՝ որ իւր գլխոյ չէր հաւատարիմ. թո՛ղ թէ վասն մեր, որ վասն չար գործոց իւրոց գաղտ ի գիշերի փախստական գնաց, եւ յապստամբըս չոգաւ առ Վահրամ, եւ այնպէս չարութիւն գիտաց առնել, զի սակաւիկ ինչ պիտեցաւ, եւ դեռ զքաղաքս առնուլ տայր, եւ Արեաց աշխարհի մեծ զիեան հասուցանէր:

Եւ արդ դուք նմա հաւատացէք, եւ նորա բանիւ առ մեզ խափանեցայք գալ, եւ երկրպագել



պատուական եւ կենսատու սրբոյ Խաչիս Մծհիթայի, յորմէ խնդրելով պարգեւեցար հաւր եւ մաւրքում, եւ սորա առաջի սնար, եւ սորա առաջնորդութեամբ ի բարի հասեր: Թէպէտ եւ դուք չեկիք յերկրպագել, այլ մեք յամենայն ժամ յաղաւթս յիշեմք առաջի սրբոյ Խաչիս, Տէր մեր Յիսուս Քրիստոս, բարեխաւսութեամբ սրբոյ Աստուածածնին, եւ պատուական խաչին, վասն քեզ ի կամս հասուցանելոյդ եւ առաւել բարի առնելոյ, զարքայից արքայ անմահ արասցէ, եւ աւելի ի կամս հասուսցէ. եւ զՔեզ Տէր, նոցա գոհութեամբ, շատ կեցուսցէ զաւակաւդ հանդերձ, եւ ի կամս հասուսցէ, եւ արժանի լինիջիք ի մաւտէ աւուրս գալ եւ երկրպագել սրբոյ Խաչիս:



## ՀԵ

## ԱՌ ՏԷՐ ՍՄԲԱՏ Ի ՄՈՎՍԷՍԷ

Աստուածաշնորհ պատուով պայծառացելոյ Տեառն Սմբատայ՝ Գուրկան մարզպանի, եւ տերանց գինուորի, ի Մովսէսէ Նուաստէ, Տերամբ ողջոյն։

Զպատասխանիս թղթոցս տեսի, զոր անաւրէնութեամբ եւ ամպարշտութեամբ գրեալ էր Վրաց աւերչի կաթուղիկոս անուանն. եւ առ մեր տէր կաթուղիկոս՝ եւ առ քեզ տէր։ Եւ յաղագս տեառն կաթուղիկոսի վասն իմ չէ՛ սրտի պակասութիւն. զի տեղեկացեալ է եւ բովանդակ ի վերայ հասեալ, թէ վասն է՞ր եւ կամ զի՞ հալածեցայ. բայց վասն քո տեառն կարի պակասութիւն է սրտի։ Գուցէ՛ արդեւք ամպարիշտ թղթովքն, զոր գրեաց առ ձեր փառաւորութիւնդ, երկմտեցոյց ինչ զձեզ։ Բայց տեառնդ ձեռնհասութիւն է, ողորմութեամբն Աստուծոյ, թէ եւ ի հեռագոյն տեղիս քննութեան իմիք պէտք էին տեղեկանալ, թո՛ղ թէ կարի ի մաւտոյ է. Հայք եւ Վիրք սահմանակիցք են միմեանց. շատք յազատաց եւ յոլովք ի շինականաց աստի անդր հասանեն, եւ անտի՝ այսր, յորոց մարթի տեղեկանալ թէ արդարեւ այդպէս գտանիմ, որպէս առ ձեր փառաւորութիւնդ գրեցաւ ի նոցանէն, եւ ես այլ տարազ ծանուցի զիս ձեզ, եւ զայսպիսի վարդապետս եւ զիշխանս, եւ զաշխարհս խաբեցի. պատուհաս՝ զայն արժան է առնել ի վերայ իմ, զի որ ընդ իմն նայի, այլ զլաւս չկարէ խաբել։

------

Բնագիր Ա. էջ 172 - 173։ Համտ. Գ. էջ 99 - 101։



Բայց թէ քաջ քննել հրամայէք, յուսամ յողորմութիւնն Քրիստոսի Աստուծոյ թէ զամենայն բանս թղթոյն, որ վասն իմ գրեալ էր, սո՛ւտ գտանէք, եւ մանաւանդ զի ի հալածանացն ժամ, զինն աւր ի Տփղիս ի նորա դուրս կացի, եւ յանդիման չարար։ եւ աշխարհն ամենայն գիտէր զի չէ՛ր վասըն այլ ինչ իրաց, բայց վասն հաւատոյ. եւ յետ ինն աւուրն ինքն ի Մծհիթա գնաց, ես այսր, լուսով գնացի, եւ ոչ ընդ խաւար, որպէս նոքայն գրեցին, եւ յորժամ նոքա գնացին, որ աւր եւթն էր, ի սուրբ Յովհաննու վանս եկի, եւ չեմ առ Վահրամ երթեալ։ Այլ եւ այսու եւս անգուման առնեմ զՏէրդ, զի Վահրամայ առ իս գրեալ էր, թէ իմ սրտի մեծ պակասութիւն է ձեր ի սրբոյ եկեղեցւոյն հեռանալդ. բայց մինչ գնացէքդ՝ ճանապարհ առ մեզ պիտէր ունել, զի եւ եկեղեցւոյն մեծ բաժին կայ աստ, որով զքեզ յանձն ունել մարթ էր։ Զայս թուղթ Տեառն կաթուղիկոսի ցուցեալ է, եւ Քեզ Տեառնդ ցուցանեմ. եւ ես անդրէն պատասխանի արարի։

Արդ՝ ասեմ ապա անտի զի՞ գնայի, զի առ ձեզ գայի, զի հաւատ ձեր եւ նոցա մի՛ է։

Իսկ որ վասն չար գործոցն գրեալ էր թէ հալածեցաւ, ի ծածուկ՝ մարդ քան զիս մեղաւոր չըմարթի լինել. զմեղս իմ զոր Աստուած միայն գիտէ եւ ես։ Բայց յայտնի՝ զի կարի շատ աշխարհի զիմ յետնութիւն չկարէ ցուցանել։ Եւ զպաշտաւնն զի փոխեցին յայտ է, եւ զչեպիսկոպոսն Նեստորական զոր արարին, դպրութիւն զի եւ վրացերէն չգիտէ՝ որպէս արժան է, թո՛ղ թէ հայերէն, եւ այն յայտ է։ Բայց փառաւորութեան ձերում տեղեկու-

թիւն լիցի, զի նա այդպիսի չարութեան մեքենայս շատ գիտէ եւ զձեզ հաւատացուցանել կամի եւ զգործդ խափանել։ Բայց վասն Աստուծոյ եւ ձեր հոգւոյ ջանացարուք որով եւ է դրաւք։ Ո՛ գիտէ տառապեալ աշխարհին փրկութիւն առնէ տէր Աստուած ի ձեռն փառաւորութեան ձերոյ, եւ դուք վարձս յԱստուծոյ ընդունիք, եւ բարգաւաճանք ի մարդկանէ լինին. եւ անարժանութիւնս իմ մինչեւ է կենդանի, զտեառնդ եւ զորդեկիդ զփրկութիւն հոգւոց եւ մարմնոց, որպէս զանձինս, խնդրեմ ի Տեառնէ Աստուծոյ։

Ողջ լեր ի Տէր։





## ՀԶ

## ՊԱՏԱՍԽԱՆԻ ՍՄԲԱՏԱՅ ԱՌ ՄՈՎՍԷՍ

Զգիր ողջունի սրբութեան քո ընկալաք, եւ ի Քրիստոս ուրախացաք։ Որ վասն Թղթոյն պատասխանեաց զարմացեալ էք, զոր առ մեզ գրեալ էր Վրաց Կաթուղիկոսին. մեք աւելի զարմացեալ կայաք յերկոցունց կողմանց՝ յաղագս նորա. եթէ զի՞րդ զայսպիսի մահաբեր բաներ՝ սուտ գրէր առ մեզ, եւ վաղիւ յանդիմանէր ի մէնջ. եւ զձէնջ, թէ զի յանձն չէր վստահ աստանաւր ի մաւտ, զի՞արդ կայր արդեւք եւ զմեզ յորդորէր եւ թուղթս տայր առնել յաշխարհն, եւ զինքն ինքեամբ յանդիմանէր։ Ապա էր ինչ որ յառաջագոյն իսկ յաշխարհականաց լուեալ էր յաղագս սրբութեան ձերոյ, եւ այժմ ի Վրթանիսէ Քերդողէ աւելի տեղեկացաք. թէ ուպէս հալածեցայք եւ եկիք այսր. եւ մանաւանդ վասն հոգեւոր իրաց, որում Տէր կաթուղիկոս ի վերայ հասեալ է եւ տեղեկացեալ եւ զձեզ ընկալեալ։ Մեզ աւելի քննութիւն առնելոյ զի՞նչ պէտք են։

Արդ գիս աւասիկ փութով ի դուռն խնդրեալ է արքայից արքայի. քեզ վաղ ասացի թէ գրեմ առ արքայից արքայ, որ բարերարութեամբ հրաման տայ, եւ որ երթաս ի քո եկեղեցւոջ նստիս եւ քո հաւատով զքո ժողովուրդս ունիս։ Դու ասես, ես

-----

Բնագիր Ա. էջ 174 - 175։ Համմտ. Գ. էջ 101 - 102։

*Ատրներսեհի եւ Վահանայ եղբարց ի՞նչ եմ, եւ ոչ կարեմ սուր առնուլ եւ ընդ ամենայն Վիրս կռուել։ Արդ՝ քո հոգդ եւ գործդ նախ ողորմութեանն Աստուծոյ յանձն լիցի, եւ ապա Տեառն կաթուղիկոսի. Թո՛ղ զի գրէ երկիցս եւ երիցս անգամ, ո՛ գիտէ, Թո՛ղ զի գան յուղղութիւն. ապա թէ ի նոյն յամառութեան կան, զի ի նորա ի թղթին իսկ աւանիկ գրեալ էր, ասէ, հարքն մեր եւ ձեր զԵրուսաղէմի հաւատն ունէին, եւ սուրբն Գրիգոր զայն ետ նոցա, եւ մեք զնոյն ունիմք։*

*Արդ՝ այդում պատասխանի Տէր կաթուղիկոսն առնէ, եւ թէ ի նոյն խելագարութեան կան եւ ի միաբանութենէ մերմէ հեռանան, զարիւն նոցա ի գլխոց իւրեանց խնդրեսցէ Տէր Աստուած, եւ մեք անպարտք եղիցուք։ Բայց սակայն զի՞արդ գործդ ի գլուխ երթայ, գրեցէք առ իս։ Թէ զանհնազանդութենէ լսեմ, եւ տա՛յ Տէր Աստուած ժամ յաջող, ո՛ գիտէ թէ եւ աստէն իսկ ընդունի հատուցումն յԱստուծոյ ի ձեռն մարմնաւոր տերանց։*

*Ողջ լեր ի Տէր։*





## ՀԵ

## ԹՈՒՂԹ ԵՐԿՐՈՐԴ ՏԵԱՌՆ ԱԲՐԱՀԱՄՈՒ ՀԱՅՈՑ ԿԱԹՈՒՂԻԿՈՍԻ, ԱՌ ԿԻՒՐԻՈՆ ՎՐԱՑ ԿԱԹՈՒՂԻԿՈՍ։

*Սրբասիրի տեառն Կիւրովնի Վրաց կաթուղիկոսի, յԱբրահամայ Հայոց կաթուղիկոսէ Տերամբ ողջոյն։*

*Զգիր ողջունաբեր ձերոյ սրբութեան ընկալաք, եւ որ գրեալ էր թէ ընդ նորոգութիւն սրբոյ աթոռոյդ Տեառն Գրիգորի յոյժ խնդացաք, եւ զանարժանութիւնս մեր աւրհնեալ էր գոհացեալ զԱստուծոյ, յաղագս այդորիկ չնորհահատոյց Աստուած եղիցի տեառնդ։*

*Իսկ զոր ընդդէմս եւ զհակառակս գրեցէք, ծանեաք եւ զայս։ Արդ՝ մեք զհակառակաբանութեան պատասխանիսն թողցուք, զի չգրեմք ի վիճաբանութիւն, այլ փութամք ի սէր եւ ի հաւատս հայրենի միաւորութեանն, եւ չխնդրեմք միայն զանձին աւգուտ, այլ զբազմաց զի ապրեսցին։ Արդ՝ մի պաչարեսցուք իւիք, յորմէ ոչինչ աւգտիմք, եւ մի պարծեսցուք միայն բարգաւաճեալ եւ նազելի անուամբ սրբոյ քաղաքին Երուսաղեմի, յորմէ զԱստուածային փառսն կողոպտեալ մերկացուցին, եւ զհաւատըն առաքելական զերծեալ բարձին ի նմանէն, եւ յոլովս եւ զանազան հերձուածս ի հա-*

------

*Բնագիր Ա. էջ 176 - 177։ Հմմտ. Գ. էջ 79 - 81։*

ւատս եւ ի գործս աղանդեցին ի նմա, զոր դուք այժմ եւս պարծելով գրեցէք առ մեզ, թէ հարցն մերոց եւ ձերոց սուրբն Գրիգորիոս զԵրուսաղէմի հաւատն ետ, եւ մեք զնոյն ունիմք։

Արդ՝ քաջ քննեցէք եւ տեսէք, զի դուք եւ յոլովք այլք, հանդերձ բնակչաւք սրբոյ քաղաքին, փոխեցայք յայնմանէ, այլ ոչ եթէ զնոյն ունիք։ Իսկ մեք եւ այժմ ունիմք զհաւատն Երուսաղէմի, զայն՝ որ ի Սիովնէն ելանել մարգարէացան աւրինացն յառաջագոյն մարգարէքն, եւ բանին Տեառն յԵրուսաղէմէ, ուստի եւ Փրկիչն մեր ծագեաց Քրիստոս Բանն Աստուած եւ շնորհաւք Հոգւոյն սրբոյ ելից զերանելի առաքեալսն, եւ նոքաւք որսաց զամենայն տիեզերս ի կենդանութիւն, եւ բղխեցոյց նոքաւք զկենդանարար վտակն, եւ զաշխարհ ի մեռելութենէ դարձոյց ի կենդանութիւն, եւ զամենայն եկեղեցիս ծաղկեցոյց յաշխարհի, եւ արար ոչ ստորին՝ այլ վերինն Երուսաղէմի, եւ զժողովս հաւատացելոց տէրունական աւետարանաւն փութացոյց յաճելութիւն, զորս գնեաց եւ ազատեաց կենդանարար մարմնով եւ արեամբն իւրով, եւ արար ժառանգորդս արքայութեանն վերին Երուսաղէմի։

Այլ ոչ եթէ զհայհոյութիւնն ունիմք զանիծեալ ժողովոյն Քաղկեդովնի եւ զտումարն Լեւոնի, զոր երբեմն բերեալ սերմանեաց Յուբնաղիոս եպիսկոպոս անուանեալ յաստուածակերտ քաղաքին, եւ զամենայն աստուածային եւ զառաքելական հաւատս եւ զկարգս ապականեաց եւ վեր ի վայր տապալեաց։ Եկն մոլորութիւնս այս, որպէս յառաջագոյն գրեցաք եւ ի մեր աշխարհս առ Բաբգենաւ Հայոց կաթուղիկոսիւ եւ առ Գաբրիէլիւ վրաց կաթուղիկոսիւ, եւ միաբանութեամբ եպիսկոպոսաց



եւ ազատ որերոյ, նզովեցին եւ ի բաց հեռացան ի միաբանութենէ մեծարաւղացն զժողովն եւ զտումարն հրէական, եւ այժմ գրով պահի առ մեզ։ Արդ՝ աղաչեմք եւ մեք զձեր սրբութիւնդ, մի՛ ախտանալ զախտ ուրացողացն, զի մի՛ ընդ նոսա պատժիցիմք, եւ մի՛ ընդ նզովիւք հարցն եղիցուք, զի մի՛ զգեհենն ժառանգիցեմք, եւ մի՛ հանգոյն թշնամեաց զխրատտուսն վարկանիցիմք, եւ յանձինս պանձայցեմք, զի մի՛ անմիտ եւ անխրատ երեւեսցուք, այլ լցեալ եւ աճեցեալ առաքելական եւ հայրենի հաւատովն փութասցուք կանխել եւ յառաքինութեան շաւիղս, զի արժանի լիցուք հասանել եւ պարգեւացն խոստացելոց ի Փրկչէն մերմէ Քրիստոսէ Աստուծոյ։

Իսկ որ յաղագս սրբասէր եպիսկոպոսիս Յուրտաւայ գրեցէք, քաջ հասեալ եմք ի վերայ սորա բարեպաշտութեան եւ լաւութեան, եւ աւելի վկայ ոք չէ պիտոյ· ապա թէ է՛ ինչ երկբայութիւն ի միտս ձեր վասն սորա, միայն բան միաւորութեան յաղագս սուրբ հաւատոյն գրեա՛ առ իս, եւ ընդ նմին պատմեա՛ ինձ վասն տեղւոյ ի քո սահմանի, կամ ի մեր, որ յետ սրբոյ Զատկին զմիմեանս տեսանեմք· եւ եթէ առ սմա ինչ թիւրութիւն գտանի, թո՛ղ զի աշխարհաւ յանդիմանի եւ մեք անխռով պահիմք։



## ՀԸ

## ՊԱՏԱՍԽԱՆԻ Ի ԿԻՒՐՈՎՆԷ

*Սրբոյ եւ ճշմարտի Տեառն Աբրահամու Հայոց կաթուղիկոսի, ի Կիւրովնէ Վրաց կաթուղիկոսէ խոնարհ երկրպագութիւն եւ սիրով ողջոյն:*

*Զթուղթս ձեր տեսի, եւ զինչ գրեալ էր իմացայ: Բայց թէպէտ եւ դու ինքն իսկ քաջ գիտես, սակայն յիշեցուցանել եւ մեզ չէ՛ գիրեան. զի որ յառաջ քան զքեզ յայդ ի սուրբ եկեղեցւոջ վարդապետք էին, եւ որ ի մեր տեղւոջս վարդապետք լինէին, ընդ միմեանս խաղաղութիւն էր եւ սէր. եւ մի հաւատ էր եւ կարգաւորութիւն, եւ մանաւանդ յիմ ի ժամանակիս, մինչ Մովսէս աւրհնեա՛լ կենդանի էր՝ գրեաց առ իս, թէ չէր պարտ հաղորդել ընդ Խուժիկսդ, եւ գիտէի թէ արդար է: Ըստ նորա հրամանի հեռացուցի զնոսա ի մէնջ:*

*Եւ զայդ Մովսէս, մինչ Ցուրտաւայ եպիսկոպոս կամեցաք առնել, դմա պարտ էր ասել, թէ ես ի ձէնջ չաւրհնիմ, զի չէ ուղղահաւատ: Մինչ յայնժամ աւրհնեցաւ ի մէնջ, արդ զի՞ պարտի զմեզ քննել. մի՞թէ յետ այնր ինչ փոխեցաք զհաւատս: Եւ յառաջ քան զդա եպիսկոպոսունք, որ ի Ցուրտաւ լեալ են, ի սրբոյն Շուշանկանէ եւ այսր, Ափոց, Գառնիկ, Սահակ, Եղիշայ, Յակովբ, Յոհան, Ստեփանոս, Եսայի, Սամուէլ, միւս Ստեփանոս, Յո-*

------

*Բնագիր Ա. էջ 178 - 179: Հմմտ. Գ. էջ 81:*



*հանէս եւ այլ եպիսկոպոսունք ի հայոց եւ ոմանք ի վրաց էին, ի հայս ուսեալք գիտունք եւ վարդապետք. նոքա եւ մեր վարդապետք ընդ միմեանս խաղաղութեամբ կեցին. ի միմեանց ուսանէին եւ զմիմեանս ուսուցանէին եւ մեր քան զմեր հարանցըն ոչ թողեալ ինչ է, եւ ոչ յաւելեալ ի հաւատոց: Եւ ազատ մարդիկն որ ի Հայոց ի Վիրս խնամութիւն արարեալ էր, ի սրբոյ Շուշանկայ պաշտաւնն գային, եւ ի սուրբ Խաչս Մծխիթայի աղաւթել եւ աւրինաց հաղորդէին: Նոյնպէս եւ որ աստի այդր գային ի սուրբ Կաթուղիկէ եւ յայլ եկեղեցիսդ աղաւթել, անխիղճ ի միմեանց աւրինաց հաղորդէին: Եւ միաբանութիւն էր Վրաց եւ Հայոց ընդ միմեանս, եւ ամենայն իսկ վիճակիս սրբոյ տեառն Գրիգորի միաբանութիւն էր ընդ հաւատոյն Երուսաղէմի, որով Հոռոմք վարին. եւ այլ ինչ բանք եւ խաւսք չէին ուրուք եղեալ ի ներքս: Իսկ այժմ ո՞ւստի եղեն: Հռովմայ հայրապետն ի սրբոյն Պետրոսի աթոռն նստի, եւ Աղեքսանդրացին ի սրբոյ Մարկոսի աւետարանչի, եւ Անտիոքացին ի սրբոյն Ղուկասու աւետարանչի, եւ Կոստանդնուպաւլսեցին ի սրբոյն Յովհաննու աւետարանչի, եւ Երուսաղէմացին ի սրբոյն Յակովբայ Եղբաւրն Տեառն: Արդ՝ զոր նոցա հաւատն կալեալ է եւ մեզ տուեալ եւ մեր հարանցն, եւ մեր մինչեւ ցայժմ պահեալ, այժմ զիա՞րդ թողուցումք զայն եւ ձեզ հաւատասցուք: Եւ այլ եպիսկոպոսունք ուղղափառք, որոց համար չկայ, եւ թագաւորք եւ իշխանք, եւ աշխարհք ամենայն ուղղափառք, զնոսա զամենեսեան զի՞արդ մարթի թողուլ, եւ ընդ ձեզ միայն միաբանել: Եւ կամ միանգա-*

մայն, Լ եւ Ե. եպիսկոպոսունք են ի Վիրս, Մովսէսըրդ այդ ո՞ւստի գտաւ միայն ուսեալ եւ ուղղափառ եւ այլքս ամենեքեան հերձուածող. մանաւանդ զի յիմումս Տէր Աստուած մեր, զեկեղեցիս մեր աւելի պայծառացոյց, եւ զհաւատս մեր առաւել հաստատեաց, եւ յարքայից արքայի փառաց գլխս աւելի մեծացոյց. եւ յառաջադէմ արար քան զհարսն իմ, մանաւանդ թէ, եւ քան զամենայն ընկերս իմ։

Արդ՝ թէ միաբանութիւն եւ սէր կամիս պահել, եւ կեալ ընդ մեզ խաղաղութեամբ, որպէս հարքն մեր եւ ձեր կեցին, մեք պատրաստ եմք ի խաղաղութիւն։ Իսկ եթէ այլ տարազ ինչ կամիք խորհել, աւելի աշխատ մի՛ լինիք, եւ յաղագս այդորիկ ա՛յլ մի գրէք առ մեզ. զի ապա ինձ ընդ Հայս, բայց թէ ճանապարհաւ հասանէ անցանել երբեք՝ թէ Աստուած արժանի առնէ երթեալ երկրպագել սուրբ տեղեացն Երուսաղէմի. թէ ոչ այլ ինչ գործ չկայ։ Եւ որ վասն ինձ եւ ձեզ ի մի տեղի գալոյն գրեալ էր, ինձ ձեր տեսութիւն կարի պիտի. բայց վասն ժամանակիս անպարապ եմք. անմեղադիր լերուք։

  



# ՀԹ

## ԹՈՒՂԹ ԵՐՐՈՐԴ ՏԵԱՌՆ ԱԲՐԱՀԱՄՈՒ ՀԱՅՈՑ ԿԱԹՈՒՂԻԿՈՍԻ, ԱՌ ԿԻՒՐԻՈՆ ՎՐԱՑ ԿԱԹՈՒՂԻԿՈՍ

Զի՞նչ առնեմք, ո՛վ պատուական եղբայր, զաստուածային պատուիրանացն զձայն, որ միշտ բողոքէ մեզ, թէ զգո՛յշ կացէք հաւտիդ, որում եդ զձեզ Հոգին սուրբ տեսուչս, հովուել զժողովուրդ Տեառն, զոր փրկեաց պատուական արեամբն իւրով. եւ ասել թէ Համարս տալոց էք ընդ նոցա. եւ մեք ի ծուլութիւն հատեալ եմք, եւ մեղկք եւ ծոյլք լինիմք իբրեւ զքնածս, որ ոչ երբեք սթափին ի ննջելոյ. եւ ոչ զմի ինչ չփորձեմք զայն զոր գրեալն է, թէ Փորձեցէք զամենայն ինչ եւ զբարին ընկալարուք, եւ յամենայն չարէ ի բաց կացէք։ Քանզի առաջնորդի եկեղեցւոյ եւ գլուխ կացելոյ զբաւականութիւն գիտութեան ի հարկէ պիտի ստանալ եւ ուսանել, եւ այնպէս ապա զԱստուած առաւել սիրել քան զեղբայր եւ քան զորդի եւ քան զայլ զամենայն սիրելիս. եւ յայնժամ ապա Աստուծոյ արժանի լինի որդեգրութեան, եւ մանաւանդ զի վասն այսր (որ) սիրոյ եղբայրութեանդ քում աւելի հասանէ ինձ ակն առնուլ, եւ պատուիրանին առաքելոյ ի խոնարհ մնալ. այն որ ասէ. Հաստատեցէք զմիմեանս եւ շինեցէք զիրեարս, եւ միոյն առաւե-

-------

Բնագիր Ա. էջ 180 - 184։ Հմմտ. Գ. էջ 83 - 87։

լութիւն՝ զմիւսոյն պակասութիւն լցցէ։

Բայց արդ մի՛ հեղգասցուք, զսէրն հոգեւոր, որ կայր ի մէջ երկուց ազգացս նորոգել, զայն՝ որ ի միոջէ աղբերէ առեալ էր զվարդապետութիւն, որ նախ ինքեանք զկենդանութեանն լոյս առին, որպէս ուսուցին մարգարէքն եւ առաքեալքն, եւ ապա մեզ եւ ձեզ առ հասարակ սերմանեցին զԱստուածպաշտութիւն։ Նախ երանելին սուրբն Գրիգոր, եւ ապա Մաշդոց, եւ զգրոց ծանաւթութիւն ի պնդութիւն հաւատոց, եւ այժմ աղաւթեսցուք նովիմք կալ մեզ, մինչեւ ի գալուստն Աստուծոյ մերոյ Տեառն Յիսուսի Քրիստոսի, եւ զնոյն հաւատ ճշմարտութեան ընծայել նմա։

Քանզի եւ սէր իսկ աստուածային այն է, եւ յայդ վրիպեալ մտաց ի բաց փախչել արժան է· գոնեա՛ թէ այժմ զոր ասէքդ, թէ մեք զհայրենի ունիմք հաւատ եւ այժմ։ Զի թէ զհայրենի հաւատն ունիք, մեր այլ խնդիր զի՞նչ էր, եւ կամ բնաւ զաշխատութիւնս զայս զի՞ կամէաք տեսանել, այլ զի փոխեցայք յայնմանէ· վասն այնորիկ այս երրորդ թուղթ գրեցաւ ի մէնջ առ ձեր սրբութիւնդ, քանզի գրեալ է· Յերկուց եւ յերից վկայից հաստատեսցի ամենայն բան։

Զի յառաջ մինչ առաքինի հարքն մեր ազգացըս երկոցունց, եւ որք յայս իշխանութիւն կարգեալ, զոր այժմ մեք ունիմքս, նոքաւք հանդերձ միաբանէին յամենայն բարիսն, եւ զուգաց հեռանային յամենայն չարէ· թուի ինձ թէ տեղեակ է ձեր սրբութիւնդ այնմ։ Եւ յեկեղեցւոջ սուրբ զԵրրորդութիւնն փառաւորել մեզ ուսուցին առաքեալքն, եւ որք ի նոցանէն ճշմարտութեամբ ուսան, ի նոյն սուրբ Երրորդութիւնն մկրտիլ, եւ զՈրդի յԵրրորդութենէն մարմնացեալ՝ միացեալ՝ մի լեալ·



քարոզեցին, եւ զնոյն Աստուած՝ ընդ Հաւր եւ սուրբ Հոգւոյն։ Եւ ասեն այսպէս· Մի՛ է Տէր մեր Յիսուս Քրիստոս։ Եւ դարձեալ, յորոց եւ Քրիստոս, որ է ի վերայ ամենեցուն Աստուած՝ աւրհնեալ յաւիտեանս։ Եւ այլ դարձեալ ի Կաթուղիկէին· Սա՛ է Աստուած ճշմարիտ եւ կեանք յաւիտենականք, եւ այլք բազումք· Նոյնպէս քարոզեցին առաքեալքն, որ վասն ժամուս այսչափ բաւական համարեցայ։ Նոյնպէս եւ մարգարէքն յառաջագոյն ծանուցեալ վկայեցին։ Երեմիա ասէ· Սա՛ է Աստուած մեր ընդ որում ոչ համարեսցի այլ ոք· սա՛ որ ետ զիմաստութիւնն Յակովբայ· յետ այսորիկ յերկրի երեւեցաւ եւ ընդ մարդկան շրջեցաւ, եւ այլք նոյնպէս վկայեն։

Իսկ եթէ վասն ճշմարիտ մարդ լինելոյ, է ուրեք որ յիշատակէ, որպէս զայն թէ՝ Մարդով եղեւ յարութիւն մեռելոց, եւ կամ թէ՝ Երկրորդ մարդն՝ Տէր յերկնից, ոչ թէ զբնութեանց ինչ ճառեն առաքեալքն, այլ վասն այնր զի իւրով մարմնովն, որ ի սրբոյ կուսէն Աստուածածնէ էառ՝ մարդ է, եւ իւրով մարմնովն Աստուած, եւ ոչ երբեմն մարդ եւ երբեմն Աստուած է։ Մի՛ լիցի· չքարոզեն այսպէս։ Սոյնպէս եւ երանելի հարքն, որ ի Նիկիայ ժողովին, ա՛յսպէս ուսուցին ըստ առաքելոցն վարդապետութեան· Հաւատալ, ասեն, ի մի Աստուած, ի Հայր ամենակալ, արարիչ երկնի եւ երկրի, եւ ի մի Տէր Յիսուս Քրիստոս, այլ ոչ երկուս բնութիւնս, կամ երկուս Որդիս ասացին, այլ զմի Տէր Յիսուս Քրիստոս, ծնեալ ի Հաւրէ անճառաբար, եւ զնոյն մարմնացեալ ի սրբոյ Կուսէն, եւ մարդացեալ, եւ խաչեալ, եւ թաղեալ, եւ յարուցեալ, եւ համբարձեալ, եւ գայ ի դատել, որոյ թագաւորութեանն վախճան ո՛չ գոյ։ Եւ ի սուրբ Հոգին, որով

խաւսեցան առաքեալք եւ մարգարէքն։ Զայս կալաւ հաւատ եկեղեցի Աստուծոյ ի սրբոց առաքելոց, եւ սովիմբ պարծի ի վերինն Երուսաղէմ ժողով լինել։

Իսկ ի Քաղկեդովնի ժողովեալքն, հակառակ առաքելոցն եւ սուրբ ժողովոյն Նիկիայ, խոստովանեցին երկուս բնութիւնս ասելով միոյ Քրիստոսի, խաբելով զպարզամիտս, եւ փոխանակ Երրորդութեանն՝ չորրորդութիւն քարոզեն· յաւելուն ներմարդութեան բնութիւն եւ որդոց երկակաց, եւ այլ նոյնպիսիս բարբաջեն, որ է ի սատանայի վարդապետութենէն։ Նոյնպէս եւ ի ջնջեալ տումարն Լեւոնի այսպէս պատմէ վասն Քրիստոսի Աստուծոյ ասէ, Ազդէ կերպարան երկոցունց բնութեանցն ընդ ընկերին չարայարութեամբ, միովն գործել զաստուածայինսն, որ ինչ Աստուծոյ վայել է, իսկ միւսովն զմարդկայինսն՝ որ ինչ մարդոյ արժան է, եւ այլ ինչ բազումս այսպիսիս։

Արդ՝ զայս յորմէ՞ առաքելոյ լուան, եւ կամ ո՞ր ճշմարիտ վարդապետ պատմեաց։ Եւ թէ ճշմարիտ էր ասացեալ ի ժողովոյն Քաղկեդոնի եւ ի Լեւոնի տումարէն, ապա մինչ փառս տան, զի՞ չասեն Փառք Հաւր եւ Որդւոյ երկուց բնութեանցն, եւ Հոգւոյն սրբոյ· եւ կամ ի մկրտութեանն, եթէ՝ Մկրտի այս անուն յանուն Հաւր եւ Որդւոյ երկուց բնութեանցն եւ Հոգւոյն սրբոյ· եւ կամ ի ժամ պատարագին, թէ՝ Հայր սուրբ, Որդւոյ երկու բնութիւնքն սուրբ, եւ Հոգի սուրբ· ապա թէ չիշխեն ասել այդպէս, այլ Հաւր, եւ Որդւոյ, եւ Հոգւոյն սրբոյ փառս տան· ապա ուրեմն լոկ խոտորումն յԱստուծոյ ուսուցանեն ժողովն Քաղկեդոնի եւ տումարն Լեւոնի։

Արդ՝ եթէ չէք փոխեալ ի հայրենի հաւատոյ,



որպէս բազում անգամ գրեցեր առ մեզ, ե՛կ նզովեա՛ եւ դու զանիծեալ ժողովն Քաղկեդոնի եւ զպիղծ տումարն Լեւոնի, որպէս նախնին քո երանելին Գաբրիէլ կաթուղիկոսն Վրաց նզովեաց ընդ երանելի հարսն մեր հանդերձ աթոռակցաւք իւրովք, որոց անուանքն են այսոքիկ· որ ինքն Գաբրիէլ եպիսկոպոս Մցխիթայի անուանի, եւ Պաղգէն եպիսկոպոս Թագաւորութեան տանն, Եղիփաս եպիսկոպոս Սամուրիաղ, Սամուէլ եպիսկոպոս Տումասուէլ, Դաւիթ եպիսկոպոս Բողնիս, Յակովբէ եպիսկոպոս Որտաւի, Ստեփանոս եպիսկոպոս Ուսթաւի, Սահակ եպիսկոպոս Տփղեաց, Եղագէս եպիսկոպոս Մանգղեաց, Ենէս եպիսկոպոս Մարուէլ, Եւգենէս եպիսկոպոս Սամթաւացի, Յովսէփ եպիսկոպոս Աղսուէլ, Յովան եպիսկոպոս Սառուսթիէլ, միւս Յովսէփ եպիսկոպոս Կուխորդոյ, Եզրաս եպիսկոպոս Կիսդաղ, Ենովք եպիսկոպոս Ծիղկանու, Յովսէփ եպիսկոպոս Միդամիղ, Ղազար եպիսկոպոս Փողդբիղ, Թէոդորոս եպիսկոպոս Փորթայ, Զաքարիաս եպիսկոպոս Կասդրացի, Փոկաս եպիսկոպոս Տսերմիղ, Իսահակ եպիսկոպոս Քունանակերտ, Թովմաս եպիսկոպոս Տարսի, Եստգեն եպիսկոպոս Քորգոնա։

Արդ՝ այս երանելի եպիսկոպոսունքս, որ յաշխարհէ ձերմէ էին, եւ ընդ Աղուանիւք եւ ընդ Սիւնիւք ի Հայս, դիպեցան յաւուրս Բաբգենայ Հայոց կաթուղիկոսի· յայնմ ժողովի յորում անիծաւն ի նոցանէն միաբանութեամբ ժողովն Քաղկեդոնի եւ տումարն Լեւոնի։ Եւ զի պայման նամակն, որ հայերէն գրով էր, յապստամբութեանն կորեաւ, եւ թարգմանեցաւ այս յՈւրհայ քաղաքի ի հոռոմ գրոյ· քանզի եւ նոքա ունէին ի մէնջ· եւ ստոյգ եւ սուրբ, որպէս արժան էր, չկարացին թարգմանել,

*զի են որ քաջ յայտնի են եպիսկոպոսացդ եւ եպիսկոպոսարանացն անուանք, եւ են որ կարի ի ծածուկ եւ այլաձեւք։ Բայց թէ կամիք անուամբք եպիսկոպոսացն եւ յաջորդաւք տեղեացն եւ այլաձեւ անուամբք եպիսկոպոսացդ՝ որպէս գրեալ են, կարէք զստոյգ անուանս եպիսկոպոսարանացն գըտանել, եւ զայլոցն եւս, քանզի եւ մեք զմերս, այդ տարազու մարթացաք գտանել, եւ մանաւանդ թէ զպայման նամակն իսկ գտանիցէք գրով ձերով։*

*Իսկ զոր դարձեալ գրեցէքն յոլովիցս անգամ, թէ յառաջ եւ դուք զԵրուսաղէմի հաւատն ունէիք, եւ արդ ունիմք մեք զայն որ յառաքելոցն քարոզեցաւ, որպէս եւ գրեալ է թէ Աւրէնք ի Սիոնէ ելցեն, որ են առաքեալքն ժողովեալք ի վերնատունն, եւ Բան Տեառն յԵրուսաղէմէ, որ է Բանն Աստուած Քրիստոս, եւ զոր ի նոցանէն ուսաք պահեմք եւ պահեսցուք մինչեւ յաւիտեան. եւ այլոց պատուիրեմք մի՛ խոտորել եւ մի՛ զաւտար ուսումն ուսանել։ Քանզի զայս գիտէր Պաւղոս առաքեալ, գրէր, եթէ՝ Զարմանամ զի այդպէս վաղվաղակի փոփոխիք յայլ աւետարան, որ ոչ գոյ այլ աւետարան. եւ ոչ միայն Երուսաղէմացիք, այլ թէ՝ Եւ մեք, ասէ, եւ կամ հրեշտակ յերկնից աւետարանեսցէ ձեզ՝ աւելի քան զոր առէքն, նզովեալ լիցի։ Զնոյն եւ ես ասեմ զոր առաքեալքն ասէին։*

*Իսկ զոր վասն եպիսկոպոսին Ցուրտաւայ գրեալ էր, թէ յորժամ չգիտէր զմեզ ուղղափառս՝ չէր արժան աւրհնիլ ի մէնջ. երդմամբ հանդերձ հաստատեաց զայդ տեղի, թէ չգիտէաք, բայց զի յետ ձեռնադրութեանն ծանեաք, որ եւ մեզ կարի հաւատալի թուեցաւ, քանզի չգիտէր ոք ուղղափառաց ստոյգ զայդ այդպէս։ Վասն զի եւ երանելին Մովսէս, որ յառաջ քան զիս յառաքելական աթոռս*



*յաջորդեալ էր, չգրեաց այնպէս, թէ դուք չէք ուղղափառք, այլ թէ ընդ չուղղափառսն ընդէ՞ր հաղորդեցայք։ Արդ՝ ինձ այս անգամ յաղագս անիծեալ ժողովոյ Քաղկեդոնի եւ պիղծ տումարին Լեւոնի թէ ո՛րպէս ընդունիք, ճշմարտութեամբ եւ հաւաստի պատասխանի արարէք, եւ եթէ Աստուած կամի, եւ բան միաւորութեան գրէք, թող ժամադրես ինձ եւ քեզ ի մի տեղի գալ, եւ Աստուծով լինի խաղաղութիւն, թէ Աստուած կամի։*



# Զ

## ՊԱՏԱՍԽԱՆԻ Ի ԿԻՒՐԻՈՆԷ

Սրբասիրի եւ ճշմարտասիրի Տեառն Աբրահամու Հայոց կաթուղիկոսի ի Կիւրիոնէ Վրաց կաթուղիկոսէ խոնարհութեամբ եւ սիրով ողջոյն։

Ահաւասիկ այս եւ ի մէնջ երրորդ թուղթ գրեցաւ առ ձերում սրբութիւնդ։ Եւ ես զսահման հաշտութեան պինտ պահեմ, որպէս պատուիրէ սուրբ Աւետարանն, թէ լոկ ի ձէնջ չլինի խռովութիւն, զի դուք այնպէս գրէք առ մեզ, որպէս առ նորատունկս եւ նորահաւատս, եւ չգրէք այնպէս, որպէս արժանն է առ պատուականս եւ առ միշտ ուղղափառս։ Զի այսօր ողորմութեամբն Աստուծոյ եւ քան զամենայն երկիր յառաջադէմ եմք մեք եւ ուղղափառ, թող թէ քան զսակաւ ոմանս։ Յառաջագոյն քան զքեզ, որ յայդ աթոռ նստէր երանելին Մովսէս՝ մեծ սէր էր ընդ իս եւ ընդ նա։ Եւ ապա եղեւ ժամ մի, զի սրտի պակասութիւն եղեւ նորա ընդ իս, վասն զնեստորականսն ընդունելոյ· այլ ոչ եթէ վասն հաւատոյ ինչ գրեաց առ մեզ, թէ չէք ուղղահաւատ, որպէս դուք իսկ գրեցէքն։ Եւ իմ զնոսա ընդունելն վասն այսր իրաց եղեւ, զի զիւրեանց զհաւատն եւ զկրօնսն նզովեցին եւ զմերս խոստովանեցին։ Եւ զի վասն իւր-

------

Բնագիր, ԺԴ· էջ 566 - 568։ Հմմտ· Ա· էջ 185 -188։ Գ· էջ 87 - 88։



եանց չուառութեան դարձեալ անդրէն յիւրեանց չարութիւն դարձան, նզովեցաք, որպէս արժան էր զանհաւատս, եւ ի մեր եկեղեցւոյ ի բաց հանաք։

Եւ արդ ձեզ չէ արժան միոյ ուրուք բանիւ խղճալ ի մեր հաւատս, զի մինչեւ ցձեր հասանելոյ ժամ ի յայդ սուրբ աթոռ՝ ձեր եւ մեր հաւատ մի էր, եւ հաւատ զամենայն յԵրուսաղէմէ ունէաք եւ ունիմք, որպէս եւ գրեալն իսկ է· Բայց զինչ օգուտ իցէ մարդոյ, եթէ զամենայն պատուիրանըս կատարեսցէ եւ միով պակաս գտանիցի· ապաքէն ամենայն օրինացն յանցաւորութիւն։ Մի մեծ պատուիրանաց ձեր այս է, զի Տէր մեր Յիսուս Քրիստոս ցՊետրոս ասաց, թէ Զոր կապիցէք յերկրի, եղիցի կապեալ յերկինս։ Արդ ահաւասիկ մեք, որ ի նոցա աթոռս նստիմք, զՄովսէսդ զայդ, որ պատճառանօք եպիսկոպոս անուանէ Ցուրտաւայ, կապեցաք հաւատով՝ իմ բերանով եւ ամենայն եպիսկոպոսաց, եւ դուք ընկալայք զդա որպէս եւ զբարեգործ ոմն։ Արդ եթէ ունիս ընդ իս սէր կամաւորութեամբ, թէպէտ աւագութեամբ, թէպէտ կրտսերութեամբ, թէպէտ վարդապետութեամբ՝ յայսմհետէ յառաջ զոր գրէք թուխթ առ իս, թէպէտ ողջունի, թէպէտ վասն այլ ինչ պիտոյից՝ որ սիրոյ մասամբ է ընդունիմ, բայց վասն այսր դատաստանի առ իս աւելի ինչ մի՛ գրեր, եւ մի՛ աշխատ լինիր, թէ ո՛չ պատասխանի ոչ ընդունիս։

Իսկ եթէ զհաւատ մեր կամիս քննել եւ գիտել, ետու թարգմանել եւ բերել զգիրս չորից ժողովոցն, որով հռոմք վարին ի սուրբ Անաստասեայ, եւ ի սուրբ Սիոն նոյն քարոզի· եւ թէ կամի ոք եւ եթէ չկամի, հաւատ մեր այս է։

## Առաջին Նիկիական Ժողովն

Առաջին ժողովն, որ եղեւ ի Նիկիա ՅԺԸ սուրբ եպիսկոպոսաց, ի թագաւորութեան Կոստանդիանոսի մեծի, եպիսկոպոս էր ի Հռոմ՝ Յուլիոս, յԱղէքսանդրիա՝ Աղէքսանդրոս, յԵրուսաղէմ՝ Մակարիոս։ Վասն այսորիկ եղեւ սուրբ ժողովն. էր ոմն յԱղէքսանդրիա քաղաքի, որ զանուն քահանայութեան էր զգեցեալ եւ օտարացեալ ի ճշմարտութենէն եւ ուղիղ հաւատոց, որում անուն էր Արիոս։ Անօրէնս այս եւ ողորմելի Բ-դ Յուդայ դիմեաց հայհոյել զսուրբ եւ զանեղծանելի զէութիւն Երրորդութեան, ասել զՈրդւոյ, թէ չէ առաքեալն հաւասար առաքչին։ Վասն որոյ յարեաւ ի վերայ նորա սուրբ ժողով եպիսկոպոսացն եւ նզովեցին զնա, եւ մեզ յայտնեցին հաւատս այսպէս։

Հաւատամք ի մի Աստուած՝ Հայր ամենակալ, արարիչ երկնից եւ երկրի, երեւելեաց ամենայնի։ Եւ ի մի Տէր Յիսուս Քրիստոս՝ Որդի Աստուծոյ, միայն ծնեալ ի Հօրէ, յառաջ քան զամենայն յաւիտեանս. յԱստուծոյ ճշմարտէ ծնեալ եւ ոչ արարեալ, նման Հօր, որով ամենայն եղեւ. որ վասն մարդկան կենաց էջ յերկնից, մարմնացաւ, եւ մարդացաւ, եւ չարչարեցաւ եւ մեռաւ, յարեաւ յերրորդ աւուր, եւ համբարձաւ յերկինս, եւ գալոց է դատել զկենդանիս եւ զմեռեալս։ Եւ ի Սուրբ Հոգին։

Բայց թէ են, որ ասեն՝ էր երբեմն, զի ոչ էր, եւ յառաջ քան ծնանելն չէր, եւ կամ թէ յոչընչէ եղեւ, թէպէտ յայլմէ զօրութենէ, թէպէտ յէութենէ, կամ փոփոխելի ասեն զՈրդին Աստուծոյ՝ զնոսա նզովէ կաթուղիկէ եւ առաքելական եկեղեցի սուրբ։



## Երկրորդ Կոստանդնուպօլսի Ժողովն

Երկրորդ ժողովն եղեւ ի Կոստանդնուպօլիս ՃԾ սուրբ հարցն, ի թագաւորութեան Թէոդոսի մեծի։ Եպիսկոպոս էր ի Հռոմ՝ Դամասոս, յԱղէքսանդրիա՝ Տիմոթէ, յԱնտիոքիա՝ Մելիտէ, ի Կոստանդնուպօլիս՝ Նեքտառիոս, յԵրուսաղէմ՝ Կիւրեղ։ Վասն այսորիկ եղեւ սուրբ ժողովն. էր ոմն ի Կոստանդնուպօլիս, որում անուն էր Մակեդոն. դիմեաց եւ սա, ողորմելիս այս եւ անօրէն, ի հայհոյել զՍուրբ եւ զանքննելի էութիւն Երրորդութեան, եւ իշխեաց ասել զՀոգին Սուրբ պակաս եւ կրտսեր ի Հօրէ եւ յՈրդւոյ։ Եւ որպէս զառաջին մոլորեցուցիչն Արիոս նզովեցին սուրբ հարքն եւ ընկեցին արտաքս, նոյնպէս եւ աստ զսա նզովեցին եւ ի բաց հանին ի սուրբ եւ յառաքելական եկեղեցւոյ, եւ մեզ հաւատս յայտնեցին այսպէս։

Հաւատամք ի մի Աստուած՝ Հայր ամենակալ, արարիչ երկնից եւ երկրի, երեւելեաց եւ աներեւութից։ Եւ ի մի Տէր Յիսուս Քրիստոս՝ յՈրդի Աստուծոյ, միայն ծնեալ ի Հօրէ, յառաջ քան զամենայն յաւիտեանս։ Աստուած ճշմարիտ, յԱստուծոյ ճշմարտէ ծնեալ եւ ոչ արարեալ, նման Հօր, որով ամենայն ինչ նովաւ եղեւ. որ վասն մեր մարդկան էջ յերկնից եւ մարմնացաւ ի Հոգւոյն Սրբոյ եւ ի Մարիամայ կուսէն մարդացաւ. խաչեցաւ վասն մեր ի Պոնտացոյ Պիղատոսէ, թաղեցաւ եւ յարեաւ յերրորդ աւուր եւ համբարձաւ յերկինս եւ նստաւ ընդ աջմէ Հօր, եւ դարձեալ գալոց է դատել զկենդանիս եւ զմեռեալս, որոյ թագաւորութեանն վախճան ոչ գոյ։ Եւ ի Հոգին սուրբ, որ ի Հօրէ ելանէ, եւ ընդ Հօր եւ ընդ Որդւոյ երկրպագի եւ

փառաւորի, որ խօսեցաւն մարգարէիւք։ Եւ ի մի կաթուղիկէ առաքելական եկեղեցի· խոստովանիմք զմի մկրտութիւն, ապաշխարութիւն ի թողութիւն մեղաց, եւ մնամք յարութեան մեռելոց եւ կենացն յաւիտենից, ամէն։

## Երրորդ Եփեսոսի Ժողովն·

Երրորդ ժողովն, որ եղեւ յԵփեսոս, սուրբ Հարցն մերոց, ի թագաւորութեան Թէոդոսի Փոքու։ Եպիսկոպոս էր ի Հռովմ Կելիստինոս, յԱղեքսանդրիա Կիւրեղ, յԱնտիոքիա Յոհան, յԵրուսաղէմ Յովբնաղ։ Ի Կոստանդինուպաւլիս երեւեցաւ դարձեալ այր մի, որ ունէր պատիւ հովուութեան բայց ճշմարտութեամբ ուրացող էր, եւ անաւրէն որդի կորստեան եւ ժառանգ սատանայի, որում անուն կոչէր Նեստորիոս։ Ասաց եւ սա հայհոյութիւն ըզսրբոյ կուսէն՝ թէ չէ Աստուածածին, այլ մարդ սոսկ ծնաւ, որ եւ Քրիստոս անուանեցաւ։ Վասն որոյ հայհոյութեան եւ սուրբ ժողովն եղեւ, եւ բազում անգամ յանդիմանեցաւ ի նոցանէ, եւ ոչ կամեցաւ ընդրել զբարին, եւ տեսեալ զանաւրէն յամառութիւն նորա սուրբ ժողովոյն, նզովեցին եւ հալածեցին զգայլն ապականիչ ի հաւտէն Քրիստոսի, եւ յայտնեցին մեզ հաւատս այսպէս· նոյն ինքն յԱստուծոյ Հաւրէ բնութեամբ Որդի, միայն ծնեալ յԱստուծոյ Հաւրէ, Աստուած ճշմարիտ եւ լոյս ի լուսոյ, զոր վասն մեր ամենեցուն պատրաստեաց Հայրն, իջանել, մարմին զգենուլ, մարդանալ, չարչարիլ, մեռանել, եւ յերրորդ յաւուր յառնել։ Զայս խոստովանիմք եւ մեք զհաւատս, եւ զհարանցն մերոց առաջնոց, եւ գիտեմք ճշմարտապէս զի մար-



մին զգեցաւ Բանն Աստուած եւ մարդացաւ։ Բայց ոչ ասեմք որպէս թէ Բանն զբնութիւնն փոխեաց, այլ ի պատկեր մեր եղեւ մարմնով։ Ոչ իբրու թէ ոչ ամենեւիմբ մարդ բովանդակ զգեցաւ հոգւով եւ մարմնով, ո՛չ այսպէս, այլ վերագոյն առաւել եւս հարցն մերոց վարդապետութիւն, մարմին հոգւով հանդերձ ասացին առնուլ, հոգի խաւսուն միաւորեցոյց բանիւ զաւրութեամբ հանդերձ, եւ էութեամբ զանքննելին եւ զանհասանելին։

Եղեւ մարդ որպէս կամեցաւ, եւ անուանեցաւ որդի մարդոյ։ Կամեցաւ յերկուց դիմաց զէութիւն բնութեանցն զերկոսեան միաւորել, ի մի միաւորութենէ Քրիստոս եկ որդի, ոչ թէ յիւրաքանչիւր բնութենէ ա՛ռ զխառնելն· այլ առաւել բովանդակեաց ի մեզ, մի Տէր, եւ մի Քրիստոս, եւ մի Որդի, աստուածութիւն եւ մարդկութիւն, որ զանքննելի էութիւնն մի արար, որ յառաջ քան զյաւիտեանսն էր, եւ միշտ ընդ Հաւր ի գաղտնիսն ծածկեալ· այլ վասն մերոյ փրկութեան միաւորեցաւ սրբութիւն նորա զաւրութեամբ հանդերձ եւ փառաւք։ Եւ մարդոյ մարմնով ծնաւ ի կնոջէ մարմնաւոր, ոչ իբրու թէ յառաջագոյն սոսկ(1) մարդ ծնաւ, եւ ապա եմուտ ի նա Բանն, զայս գիտասցէ ձեր սէրըդ, զի ա̃նմիտն Նեստորիոս այսպէս իմաստնանայր։ Բայց մեք հաւատամք ի Տէր մեր Յիսուս Քրիստոս Որդի Աստուծոյ, միայն ծնեալ, Աստուած կատարեալ եւ մարդ կատարեալ, նման Հաւր աստուածութեամբն, նման մեզ նոյն ինքն եւ մարդկութեամբն, զի յերկուց բնութեանց եղեւ միաւորեալ, վասն որոյ մի Քրիստոս, մի Որդի, մի Տէր, զայս խոստովանիմք անխառնակելի իմանա-

------

(1) Տպ. սատակ։

*լով։ Խոստովանիմք եւ զսուրբ կոյսն Մարիամ Աստուածածին, յորմէ Աստուծոյ Բանն մարմին եղեւ եւ մարդացաւ, եւ ի նմանէն, յոր բնակեցաւն ի նմա, եւ միաւորեաց զիւրն ի նմա, զոր զգեցաւն ի նմանէ զտաճարն։*

## Զորրորդ Քաղկեդոնի ժողովն.

*Զորրորդ ժողովն որ եղեւ ի Քաղկեդոն ի սուրբ հարցն Ո. եւ Լ. իցն, ի թագաւորութեանն Մարկիանոսի. եպիսկոպոս էր ի Հռովմ Լեւոն, յԱնտիոք Մաքսիմոս, ի Կոստանդնուպաւլիս Անատոլի, յԵրուսաղէմ Յուբնաղ, յԱղեքսանդրիա Դիոսկորոս, վասն որոյ եւ ժողովն իսկ եղեւ, եւ վասն Եւտիքու խորհրդականի նորա։ Այս Եւտիքի քահանայ էր եւ վանական ի Կոստանդնուպաւլիս, բայց աւտարացեալ էր յարդար եւ ի ճշմարիտ հաւատոց։ Վարդապետութիւն իմն ի մէջ եբեր յիւրոց մտացն սատանայականաց եւ ասաց. Թէ յառաջ քան զմիաւորութիւնն երկուս բնութիւնս խոստովանիմ Քրիստոսի, իսկ յետ միաւորութեանն մի, վասն զի ի սրբոյ կուսէն ի Մարիամայ մարմին ոչ զգեցաւ։ Եւ յաղագս այսորիկ բազում անգամ յանդիմանեալ լինէր ի սրբոյ ժողովոյն, որք խոստովանութիւն խնդրէին ի նմանէ այսպէս. Եթէ ոչ խոստովանիս յառաջ քան զմիաւորութիւնն մի՛ բնութիւն Աստուծոյ Բանին, իսկ յետ միաւորութեանն երկուս՝ անփոփոխելի եւ անխառնելի եւ անբաժանելի, եւ եթէ ոչ խոստովանիս զԱստուածածինն նման մեր, եւ ի նմանէ զծնեալն նման մեր, մարդկութեամբ յամենայնի նման մեր՝ առանց մեղաց, եւ ոչ նզովես զամենայն հերձուածս միացեալս եւ խառնեալս, եւ ոչ հեռանաս յամենայն չար վարդապետութեանց սատանայականաց, չունիս իշխանութիւն ժառանգել զեկեղեցի Քրիստոսի։*



*Իսկ ողորմելին Եւտիքի ասաց. զկոյսն խոստովանիմ նման մեր լինել, բայց զմարմինն Քրիստոսի նման մեր լինել չասեմ եւ ոչ նզովեմ։ Ապա յարեաւ սուրբ ժողովն եւ նզովեցին զնոսա եւ ասացին այսպէս. Նզովեալ Եւտիքի, եւ նզովեալ Դիոսկորոս, Երրորդութիւնն սուրբ նզովէ, եւ հանէ(*) առաքելական աթոռն սրբոյն Պետրոսի։ Եւ հալածեցին զնոսա ի սրբոյ կաթուղիկէ առաքելական եկեղեցւոյ, եւ մեզ յայտնեցին հաւատս այսպէս։*

*Բաւական ահա էր առ ի կատարելութիւն բարեպաշտութեան գիտութիւն իսկ եւ հաստատութիւն. իմաստուն եւ փրկականս այս Աստուածային շնորհին հմայումն, քանզի յաղագս Հաւր եւ Որդւոյ եւ Հոգւոյն սրբոյ ի բաց ուսուցանէ ըզկատարեալն, եւ զՏեառնն ներգործութիւնն, որք հաւատովք ընդունին յառաջակայ։ Եւ ոմանք վասըն մեր զՏեառն տնաւրէնութիւնն ապականել իշխեցեալք, եւ զԱստուածածին՝ ի վերայ կուսին ըզձայնն ուրանան։ Իսկ ոմանք խառնել եւ խառնակել ասեն, եւ մի բնութիւն զմարմնոյ եւ զԱստուածութեանն կարծեն տգիտութեամբ իւրեանց, եւ ըզՄիածնին զաստուածութեանն զբնութիւնն խառնակելովն ծածկեն։*

*Եւ ոմանք վասն չարչարանացն ձեռն արկանել իշխեն ի գաղտնիսն, եւ սոսկ մարդ լինել ի սրբոյ կուսէն ծնեցելոյն անամաւթաբար առասպելաբա-*

------

(') *Այսպէս յօր.*

նեն։ Եւ որք յՈրդին ձեռն արկանեն՝ բաժանել յերկուս, ի գաղտնիսն նոցա ընդդիմանայ։ Եւ որք չարչարել զմիածնին զաստուածութիւնն իշխեն ասել, զայնոսիկ ի քահանայութեան ժողովարանէս հեռացուցանէ։ Եւ վասն երկուց բնութեանցն Քրիստոսի, որք խառնակել համարին, նոցա ընդդիմանայ։ Եւ որք յերկնից այլազգ ինչ լինել զէութեանն ասեն, որ ի մեզէ առեալ նորա, եւ զծառայութեան պատկերս արտաքոյ պատմեն, զնոսա հալածէ։ Եւ որք երկուս բնութիւնս յառաջ քան ըզմիաւորութիւնն զՏերութեանն առասպելաբանեն, եւ մի բնութիւն զկնի միանալոյն առասպելաբանեն. զնոսա նզովէ սուրբ եւ աշխարհի ժողովն։ Եւ խոստովանի մի եւ զնոյն Քրիստոսն Որդի եւ Տէր եւ Միածին եւ յերկուց բնութեանցն անխառնելի։ Զայս ահաւասիկ արարեալ աշխատութեամբ եւ պատերազմաւ, եւ ամենայն ճշմարտութեամբ յայտնեաց սուրբ աշխարհաժողովն։ Այլ քան զայս աւելի հաւատս ամենեւին ոչ է պարտ ի մէջ բերել, եւ կամ գրել, եւ կամ խաւսել, կամ բանիւք եւ կամ ուսմամբ։ Իսկ որք յանդգնին գրել այլ հաւատս, կամ յառաջ բերել եւ կամ ուսուցանել, այնոքիկ թէ իցեն եպիսկոպոսք կամ քահանայք, եւ կամ սարկաւագունք, աւտա՛ր եղիցին եպիսկոպոսքն յեպիսկոպոսութենէ, եւ քահանայքն ի քահանայութենէ։ Եթէ մոնազն իցէ եւ կամ զինուոր, նզովեալ եղիցին նոքա։

Արդ զայս գրեցաք վասն սիրոյ ձերոյ, զի արդար եւ զճշմարիտ հաւատն պահիցէք եւ կեանս ունիցիք։ Գիտիցէք զի անձամբ ինչ զայս ոչ գրեցաք, այլ յիւրաքանչիւր ժողովոցն գրոց. եւ հաւատս ողորմութեամբն Աստուծոյ ի մեզէ՛ կնքեցաւ. եւ զայս ամենայն վասն ձեր շինութեան գրեցաք ա-



մենայն ճշմարտութեամբ, եւ ոչ եթէ սակաւ քննութեամբ, այլ մեծապէս աշխատեցաք եւ ծանեաք, զի այս է ճշմա՛րիտ հաւատ։ Եւ դո՛ւք ճշմարտութեամբ հաւատացէք զարդար հաւատս զայս, եւ մի՛ դեդեւելով ա՛ւն եւ անդր անկանիցիք. գիտացէք զի իւրաքանչիւր ոք ի մէնջ համարս տալոց եմք դատաւորին յաւուրն մեծի։



# ՁԱ

## ԹՈՒՂԹ ՇՐՋԱԳԱՅԱԿԱՆ ՏԵԱՌՆ ԱԲՐԱՀԱՄՈՒ ՀԱՅՈՑ ԿԱԹՈՒՂԻԿՈՍԻ

*Նազելի եւ ի վեր քան զբանի բերման պարգեւ, զշնորհ զոր ետ Բանն Աստուած արժանեաց մարդկութեանս, աթոռ ունել երկնային զառաքելական ասեմ, եւ զնոցուն յաջորդաց, որ եւ ես Աբրահամ անարժան, կոչեցայ յաթոռ երջանիկն Գրիգորի՝ յաջորդեցելոյ մեծի առաքելոյն Թադէոսի։ Ամենեցուն կացելոց ընդ այսմ հովուական իշխանութեամբ, առաջնորդաց եկեղեցւոյ, վանից երիցանց, եւ քահանայից, եւ սարկաւագաց, եւ բնաւ ուխտի եկեղեցւոյ, անապատականաց եւ մենացելոց, ազատաց եւ շինականաց, եւ համաւրէն ժողովրդականաց, արանց եւ կանանց, ողջունիւ եւ խաղաղութեամբն Քրիստոսի Աստուծոյ մերոյ, հասցի ձեզ զարգանալ, կարգ վարուց, եւ յաշտիճան իրական կոչումն։*

*Սովորութիւն կալաւ պատահել թէպէտ եւ մեծ անձանց յառաքինաւէտսն, այլ ոչ նուազ եւ դուզնաքեայ յառաքինութեան եւ ի զգաստալի խոհականութիւնս, նա՛ եւ ի բաց որոշեալ ի նմանութեանցն բարուք. թէպէտ եւ երկուքն ի վերին տեսչութենէն ակնարկեալք, եւ մինն ի թոյլ տալոյ, որոց զպատճառսն ինքն միայն գիտէ, եւ է մեզ*

------

*Բնագիր Ա. էջ 189 - 195։ Հմմտ. Գ. էջ 132 - 136։*



*խորշելի, մի ըստ դուզնաքեայցն ըմբռնեցաք եւ մեք ակամայ ածեալք յաշտիճանս քահանայապետական ի կամողացն զայս հրաժարեալք. գիտէ զամենեցուն սիրտս ճանաչաւղն Քրիստոս՝ զի ոչ ստեմք։ Այլ զի՞նչ քան զբաւականսն զիմ զհաւատացեալսն համարէի, եւ արհամարհելիք, ցանկացաւղք տիրել վիճակաց, նա եւ սոսկալի՛. մի՛ վասն զերամբարձ զահակցութեան Աստուծոյ քահանայապետելոյ, եւ երկրորդ յաղագս սղալայեղց եւ ըմպահակոտի մարդկային բնութեանս. գուցէ՛ ծանրաբեռնեալ ոչ ախորժակաւքն ըստ պատւոյ, եւ կամ զվարդապետութեանն ընտրութիւն առ արժանս ոչ բաւականել. եւ թէ այսք ինձ առ նախսն, քանի՞ք եւս առ արդեանս։ Բայց յետ բռնաձգութեանս դիմադարձեալ, գուցէ ի փոխաւղն զսիրտս իշխանացն հաշուէ, եւ ի պատուէրն հնազանդ եղանիլն վասն Տեառն, ամենայն մարդկային ստեղծուածոյ, առաւել որք ի մահ Որդւոյն Աստուծոյ կենդանացեալք, հաղորդեցան անճառաբար զՀոգւոյն սրբոյ զորդեգրութեան շնորհն յինքեանս բերեալ, հարկաւորեցաք հնազանդել ընդ լծով կոչմանս այսորիկ, եւ ընդ հուպ ի ձեռն առնուլ զայցելութեանն բան ի պատիւ անուանն Աստուծոյ, ի պայծառութիւն վարդապետութեան նորա։*

*Զի թէպէտ եւ ձեռաց ժամանակիս մարդկան գործք են, ամպարշտելն առ Աստուած, եւ անիրաւ գնացքն պտուղ սպառմունս պատրաստեաց, եւ ըզմնացեալս դարձեալ տասանորդել, սակայն հոգաւղք վերատեսչութեանն զծուլական լքումնն, որ դասակցէ պատժապարտիցն, ի վերջ հրամայեցաք հարկանել, եւ ի բաւական լինել անաշխատաբար յառաջատիլ, զՀոգւոյն սրբոյ զվարդապետութիւնն, որ է հաստատուն մխիթարութիւն, ամենայն ումեք*

բաշխեալ, մանաւանդ որք պատշաճին ժամանակին· թէ պարտ է համբերել նեղութեան եւ տանել առաքինութեամբ կարեաց, համբառնալ զանձն առ Աստուած մաքուր մտաւք եւ յուսալ ի նա։

Քանզի խորհուրդք թիւրք անջատանեն յԱստուծոյ, որպէս ուղիղքն եւ մաքուրքն անքակ պահեն։ Վասն զի յաճախութիւն թեթեւ նեղութեան յանհաստատ եւ ի վաղանցուկ ի կեանսս, յաւիտենական զմեծութիւն փառաց գործէ։ Միայն իբրեւ սպանող զնեղութիւնն մի՛ ընկալջիք, եւ զչարչարելն, կամ իբրեւ զգող, կամ իբրեւ զաւտարատեսուչ, որ է հերձուածող· ապա թէ իբրեւ զքրիստոնեայ՝ երանելի՛ է այնպիսին, քանզի սովոր է մարդասէրն ի բարկութեան զողորմութիւնն յիշել, եւ կեցուցանել յորժամ դառնան առ նա եւ յոգւոց հանեն։ Զի որպէս երկրագործն համբերէ տապախառն ջերմութեան աշխատանաց, վաճառականն՝ զերկայնուղեայ տուայտանս, նաւաստին՝ ընդդէմ ալեացն եւ մրրկին հնարել, ախտաժէտն ի բուժողական կտրումն խարմամբ, մինչեւ առցէ իւր . . . զաւգուտն։ Այսպէս եւ մեք ի նեղու . . . . . . թիցն փութով նահատակեալք զ . . . . ի բարձանց ընկալցուք, եւ զկատարել . . . . . զբան յուսոյն։

Կամէաք մերով բարբառով ասել ի բարեպաշտացդ լսելիս, բայց ի հարկէ պիտոյից շինածոյ եկեղեցւոյս հասարակացս Հայաստանեայցս որ ի Դունի՝ արգելեալ եղեաք, փութացայ զգուշացուցանել շրջաբերական թղթովս՝ ի գաղթագղութեանցն զարթուցելոց ի մահացան թշնամւոյն, զոր թանձրամիտքն եւ մարմնասէրք ախտացեալ ի նո՛յն ապերախտք եղեն, եւ զփրկութիւնն յՈրդւոյն Աստուծոյ, եւ վասն մարմնոյ նորա զհաշտութիւնն ընդ մեզ, եւ զմեզ ի վեր տանումն ի բարձրութիւն



երկնից երկնի ուրանան· զի յայսպիսեացս խորշեսջիք, զընտանիսն հաւատոյ ճանաչելով, ոչ աւտար ինչ ձայնիւ նորաձեւեալ յայլայլակն, որպէս զոգտողսն լեզուաւ, մեր վարդապետութիւնս։

Այլ յառաջագոյն աւետարանեալքն յիսկզբանէ ականատեսացն եւ սպասաւորաց բանին, եւ ի մարգարէից գուշակեալք, զոր մատուցին մեզ· Յ եւ ԺԸ հարքն ժողովեալք ի Նիկիա, նովիմբ քաջ նահատակքն ՃԾքն ի Կոստանդնուպաւլիս, կործանեցին զհոգեմարտսն· եւ Մ· իւրքն յԵփեսոս՝ զամպարիշտն Նեստոր· եւ իւրեանց խոստովանութիւն առաջնորդ կալան ի կեանսն յաւիտենից, զոր եւ ես կարճառաւտագոյնս եւ մեկնողաւրէն յիշատակեցից, եւ է ա՛յս։

Հաւատամ ի մի Աստուած՝ Հայր ամենակալ, արարիչ երկնի եւ երկրի, երեւելեաց եւ աներեւելեաց։ Եւ ի մի Տէր Յիսուս Քրիստոս, յՈրդի Աստուծոյ, ծնեալ յԱստուծոյ Հաւրէ , միածին՝ այլ ոչ արարեալ կամ հաստատեալ, համագոյ Հաւր, այլ ոչ յոչընչէ· արարիչ ամենայնի երեւելեաց եւ աներեւելեաց։ Եւ ի սուրբ Հոգին, արարիչ եւ կենդանացուցանող եւ նորոգիչ· ո՛չ ծնունդ, այլ ելումն։ Աստուած ասի Հայր· Աստուած Որդի, Աստուած սուրբ Հոգի, ոչ երեք աստուածք, այլ մի՝ Աստուածութեամբ, կամաւք եւ զաւրութեամբ փառաբանի սուրբ Երրորդութիւնն, զոր իմանամ միաւորութեամբ բաժանեալ, եւ բաժանմամբ միաւորեալ· ո՛չ սկիզբն եւ ոչ դադարումն, կամ երիցութիւն, քանզի որպէս փառք առանց լուսոյ ոչ իմանի, եւ ոչ նկարագիր կամ պատկեր առանց էութեան, եւ զաւրութիւն առանց զաւրութեան, կամ իմաստուն առանց իմաստութեան· այսպէս եւ ոչ Հայր առանց Որդւոյ։ Եւ որպէս ի լուսոյ երեւսաց նորա միշտ

լոյս ծագէ տեսաւղացն, եւ ոչ ոք զատանի առանձ-
նաբար, կամ մինն յառաջ երեւի. այսպէս եւ ոչ
Հայր եւ Որդի առանց սրբոյ Հոգւոյն։ Իսկ ի վեր-
ջին աւուրս, Որդի իջեալ մարմնացաւ եւ մարդա-
ցաւ. ծնաւ անճառաբար ի սուրբ կուսէն Աստուա-
ծածնէ մարմնով, հոգւով բանականաւ, շնչով, մը-
տաւք, եւ զինչ ի մարդ յարունակ աստուածային
ճոխութեամբ։ Եւ է մի Տէր Յիսուս Քրիստոս,
անմեկնելի ի Հաւրէ, եւ բովանդակ յերկրի, խաչ-
եալ, թաղեալ, եւ յերրորդ աւուր յարուցեալ, ելեալ
յերկինս նստաւ ընդ աջմէ Հաւր, գայ նովիմբ
մարմնով դատել զկենդանիս եւ զմեռեալս, որոյ
թագաւորութեանն ո՛չ գոյ վախճան։ Իսկ որք ա-
սենն, եթէ էր՝ յորժամ ոչ էր, եւ նախ քան զլինելն
չէր, եւ կամ զայս զսրբոյ Հոգւոյն, կամ փոփոխե-
լի, եւ կամ այլայլելի, եւ կամ յայլմէ էութենէ եւ
կամ ի գոյութենէ. զայնպիսիսն նզովէ կաթուղիկէ
եւ առաքելական եկեղեցի։

Այս է խոստումն նախասացեալ ցուցակաւրէն
երանութեանցն պայծառութիւն, որ առ Թովմաս
ձայնն, եւ սովիմբ մկրտեալք պահեցաք ի մեզ,
եւ աւելի հաստատեալք պահեսցուք. յորս գտեալ
Տեառն մերոյ եւ Աստուծոյ, պատուականս համարի
յաջակողմեան դասուն։ Եւ մի երբեք ըստ հաւա-
տոյն մասին մեղիցուք, այլ եւ ընդ ըստգտեալսն
ամենեւիմբ ոչ հաղորդել, որ կամակարն զյաւի-
տենական կորուստն հասարակ ժառանգեցուցանէ։
Բայց եղիցին կամք ձեր ըստ մարգարէին բանից,
ատել ձեզ զժողովս չարաց եւ ընդ ամպարշտեալսն
մի՛ նստել, եւ զՏեառն ատելիսն ձեզ կատարեալ
թշնամիս դնել, որք են յաշխարհիս մերում բա-
զում չարք, բայց առաւել երկաբնակքդ։

Քանզի յաւուրս Մարկիանոսի Հոռոմոց թա-



գաւորի, որ գրեթէ ի ժամանակս Կաւատայ Պար-
սից արքայի, եւ կամ թէ փոքր ինչ յառաջ, ժողով-
եալք ի Քաղկեդոն, ի ճշմարտութենէն վրիպեցին.
զի եւ զնոյն ինքն զթագաւորն ամենաչար կամացն
Նեստորի միաբանեալ, եւ ժողովեալքն գլխաւորք
համախոհակք նմին, արձան կացուցեալ իւրեանց
չարափառութեան զթուղթն Լեւոնի, հաստատեաց
զյառաջ եղեալ աղանդն Նեստորի, եւ կամ զեւս վե-
րագունին զՍամուստացւոյն, զի թէպէտ եւ ձայնքն
որոշին, միտքն զմիոյ բերեն։

Քանզի չյիշատակելին Նեստոր անդուռն բե-
րանով յանդգնի ասել երկուս որդիս, մի զՈրդին
Աստուծոյ, եւ միւս, զ՚ի Մարիամայ ծնեալն, մարդ
սոսկ, եւ տաճար բանին, եւ զաւրանալ զնա ի Հոգ-
ւոյն սրբոյ ուսուցանէ։ Քանզի մարդածին, եւ ոչ
Աստուածածին ասէ զսուրբ կոյսն, եւ մարդ մեռ-
եալ ասէ, եւ ոչ խոստովանի զԱստուածն Բան՝ իւ-
րով մարմնովն կրեալ զամենայն, վասն որոյ նզո-
վեցաւ։ Իսկ ի Քաղկեդովնի ժողովեալքն ոչ իշխեց-
եալք զնոյն ասել, երկուս բնութիւնս աւրինադրե-
ցին որք ի սուրբ վարդապետացն՝ Երկաբնակք ան-
ուանեցան եւ հայհոյողք։ Քանզի եւ որոշեն իսկ
զկիրսն։ Միում բնութեան զքաղցենալն, զծարաւե-
լըն, զվաստակելն յուղեգնացութենէն, զլալն ի գը-
թոյն, յանդգնին եւ անգիտութիւն ասել զխաչն եւ
զամենայն տկարականսն։ Իսկ զնշանագործութիւն-
սըն, եւ զաստուածային եւ զհրաշափառսն ի բը-
ժշկութիւն եւ յայլսն, միւսում բնութեանն՝ իբրեւ
թէ պարզագունի եւ քաջ մեկուսացելոյ ի մար-
մնականացն։ Եւ այսպէս երկուս ուսուցանեն, ըզ-
մինն մարդ եւ ընդ կարեաւք անկեալ, եւ զմիւսն ի
վեր քան զկարիս, զմինն բնակութիւն, իսկ զմիւսն
բնակիչ, զմինն՝ չարչարելի, եւ զմիւսն անչարչա-

րելլի, թէպէտ եւ դէմ մի համբաւէն։ Ապա յիրաւի նզովեցան յուղղահաւատից եւ ի վարդապետաց աշխարհիս։

Քանզի առաքեալքն Փրկչին մերոյ մի՛ Տէր քարոզեցին զՅիսուս Քրիստոս, եւ զնոյն ի խաչ ելեալ։ Պաւղոս յայտնագոյն աղաղակէ, թէ՝ զՏէրն փառաց ի խաչ հանին, եւ Որդին Աստուծոյ զմահ ճաշակեաց· ասէ· Մինչ թշնամիքն էաք հաշտեցաք ընդ Աստուծոյ՝ մահուամբ Որդւոյ Նորա· եւ թէ՝ Քրիստոս վասն մեր մեռաւ· եւ զնոյն ասէ՝ Ի վերայ ամենեցուն Աստուած աւրհնեալ յաւիտեանս։ Եւ այսպէս զԱստուածն Բան իւր մարմնով եւ անձամբ զամենայն մարդկայինսն կրեալ առանց մեղաց ուսուցին մեզ, եւ հրաման ետուն, որք այսու վարդապետութեամբ ոչ գան, զնոսա մի՛ ընդունել ի տունս եւ մի ողջոյն ասել, զի մի՛ նոցա մեղացն կցորդիցիք։

Արդ ըստ առաքելոցն եւ երանելի մեր վարդապետացն հրամանի՝ փախիցուք ի նզովեցելոցն, եւ ի նոցունց դժոխաժառանգեցուցանող փսխմանց, զամբիծն հաւատսն զառեալ ի մեզ պահելով։ Քանզի եւ դեռ որպէս զքաղցկեղ ճարակի խմոր հերձուածոյն, մինչ զի եւ գրեթէ ի սահմանակիցս եւ միով վարդապետութեամբ լուսաւորեալս ժամանեաց, զՎրաց ասեմ եւ զԱղուանից, որք զժահահոտ սերմն նախասացելոցն մեծարանաւք ընկալեալ յինքեանս հաստատեցին, զԱստուածպաշտութեան լուկ զկերպարանս ցուցանելով պարզամտաց, եւ որք սովորութիւն ունին զմիաբանելն ընդ նոսա, եւ ի զաւրութենէն ինքեանց մնան՝ եւ զնոսա հեռացուցանեն· վասն այսր հարկաւոր համարեցան գրել, յառաջագոյն քան զմեզ կացեալքն յաստիճանի կաթուղիկոսութեան՝ յԱղուանս, իսկ մեք ի



Վիրս առ Կիւրիովն, որ կաթուղիկոսն անուանի, եւ առ նորին աթոռակիցս։

Քանզի զեպիսկոպոսն եկեղեցւոյն Ցուրտաւայ, որ զմիջնորդութիւն ունէր երկուց աշխարհացս, յաղագս ուղղափառ հաւատոյ հալածական արար, եւ զպաշտաւնն հայերէն զոր սրբոյն Շուշանկան էր կարգաւորեալ, հակառակ մեզ խրոխտացեալ ի բաց փոխեաց։ Յաղագս որոյ գրեցաք դառնալ ի ճշմարիտ հաւատն, եւ կալ հաստատուն յաւանդութեան առաքելոցն, որ տուաւ ի ձեռն մեր վարդապետացն, եւ նոցա ընդդիմացեալ երկիցս անգամ զհակառակըն գրեցին առ մեզ։ Քանզի նոյնդ իսկ սուտանունն՝ կացեալ գլուխ եկեղեցւոյն Վրաց, ի նմին ժամանակս Խոսրովու արքայի որդւոյ Որհմազդի, ընկալեալ ի Նեստորի ուսմանէն եպիսկոպոս զոմն, եւ ի նոյն հայհոյող վարդապետութիւն զինքն տուեալ, յառաջ ունելով զՔաղկեդոնի ախտն· ապա թէպէտ եւ զայրն մերժեալ՝ զմրուր դեղոյն պահեցին· եւ ուժգնագոյն եւս զամպարշտութիւնս իւրեանց յերրորդ գրին ընկալաք, եւ պարծանաւք խրոխտացեալ, ոչ թողուլ զաղանդն, այլ եւ զմեզ զկնի իւրեանց թիւրեալ խորխորատն ուսուցանել համարձակեցաւ։

Վասն որոյ եւ զյառաջագոյն սահմանն վարդապետացն մերոց, զոր ի վերայ Հոռոմին հատին, եւ կացցէ մինչեւ ցըուն՝ թէ ոչ դարձցին ի ճշմարիտն, մեք զնոյն ի վերայ Վրաց հրամայեցաք, ամենեւիմբ մի՛ հաղորդել ընդ նոսա, մի՛ յաղաւթս, եւ մի՛ ի կերակուրս, եւ մի՛ յըմպելիս, մի՛ ի բարեկամութիւն, մի՛ ի դայեկութիւն, մի՛ աղաւթիւք երթալով ի Խաչն, որ ի Մցխիթայի տեղաւքն համբաւի, մի՛ ի Մանգղեաց խաչն· եւ մի՛ ի մեր եկեղեցիս զնոսա ընդունել, այլ եւ ամուսնութեամբ

*ամենեւիմբ հեռանալ· բայց միայն գնել ինչ, եւ կամ գնոյ տալ որպէս Հրէից։ Նոյն հրաման եւ վասն Աղուանին անշարժ կացցէ, զի պատկառեալ դարձցին ի թիւր ճանապարհէն·*

*Իսկ մեք ոչ լռեմք ի խրատելոյ որչափ եւ եմք ի կենցաղիս, եւ որք զկնիսն՝ աղաչեմք նախանձաւորս մեզ լինել, ածել զնոսա յուղղութիւն։ Իսկ յարդեան ժամանակիս, որք հաղորդեցան ընդ յառաջ որոշեալսն, եւ կամ ընդ որս ի մէնջ, կամաւ թէ ակամայ, եւ կամ տգիտութեամբ, մարգարէին ձայնակից լիցի այնպիսին աղաւթիւք· թէ Զմեղս մանկութեան իմոյ եւ զանգիտութեան մի՛ յիշեր· եւ այլ զգուշասցի ըստ կանոնաւոր հրամանիդ մերոյ։ Ապա թէ անխտրաբար վարեսցի ոք հաղորդելով ընդ նոսա, եւ կամակից լինիցի պղծութեան հաւատոց նոցա, այնպիսիքն նզովեսցի՛ն հոգւով, նզովեսցի՛ն մարմնով, եւ ամենայն կենցաղով իւրեանց, եւ որոշեսցին ի սրբոյ եկեղեցւոյ Աստուծոյ, եւ եղիցին խաւարաբնակք եւ յաւիտենից հրոյն կերակուր։ Իսկ եթէ ոք ամբարտաւանեսցէ արհամարհելով զնզովիւքս, գիտասցէ այնպիսին զի յետ հոգեւոր պատուհասի, եւ զմարմնաւորս պատրաստ եմք ի վերայ ածել։*





## ՁԲ

## ՊԱՏԱՍԽԱՆԻ Ի ՀԱՅՈՑ՝ ԹՂԹՈՅՆ ԱՂՈՒԱՆԻՑ (ՎՐԹԱՆԻՍԻ ՔԵՐԹՈՂԻ)

*Պատուական գտելոցդ եւ վեհ հռչակելոցդ, որք զտկարութիւն բերեալ յօժարութեամբ յառարկութեան եւ զանտեղիս բացասօղք, նաեւ նմանք թուեցեալ՝ ի դէպ է ինձ իմանալ, կամօք հաւասար ընթ արց(1) ջանի աթենականիցն նորագունից լսօղս եւ պատմիչս յարդեան ժամանակիս՝ ի մէջ հիւսիսակողմանդ տաղաւարողք, զբոլոր լսօղս տարաբերմամբ, մանաւանդ սակս ջամբեցեալ(2) զ՚ի խորհրդոցդ սեւեռումն՝ Տէր Մխիթար Ամարասու եպիսկոպոս եւ Սիմոն Մեծ Կողմանց, եւ թէ այլ եպիսկոպոսունք նմին համախոհակք, եւ ուխտ սրբոյ եկեղեցւոյ, եւ ազատ մարդիկ, կամ այլք ի ժողովրդականաց միաբանակք՝ յԱբրահամայ Հայոց կաթուղիկոսէ եւ ի Թէոդորոսէ Մարդպետական եպիսկոպոսէ, ի Ստեփանոսէ Բագրեւանդայ եպիսկոպոսէ, ի Դաւթէ Սիւնեաց եպիսկոպոսէ, ի Մովսիսէ Խոռխոռունեաց եպիսկոպոսէ, ի Քրիստափորէ Ապահունեաց եպիսկոպոսէ, ի Մատթէոսէ Ամատունեաց եպիսկոպոսէ, եւ յայլ եպիսկոպոսաց եւ յուխտէ*

------

*Բնագիր ԺԵ։ Հմմտ. Ա. էջ 196 - 211։ ԺԳ. էջ 276 -279։*
(1) *հաւասարընթաց* (Ե. Ե. Դ.)։
(2) *ջաբոցել*, Գ. Թ.։

սրբոյ եկեղեցւոյ, եւ յազատ մարդկանէ, եւ ի ժողովրդականաց, ըղձամք աղօթալիր եւ ուժգին խընդրուածօք սրտի զտէրունեան հոգեխառն ողջոյն համարձակապէս մեզ առ ձեզ ասել։

Քանզի գրով մեզ ի ձէնջ պատմեցէք զձեր ուղղափառութիւնն եւ զկամս, եւ թէ անհակառակք արդեօք զստեղծեալ հակառակութիւնն՝ զոր ընկալաք ի նախարարէ միոյ Սիւնեցւոյ Գրիգոր անուն։ Քանզի եւ զարբանեկէն ձերոյ ասաց ի կէս ուղւոյ հրաժարեալ. բայց մեզ բարերարութիւն լեալ գուշակեցաւ, եւ կամաց չարժութիւն ի հաստատուն եւ ի կատարեալ խոստովանութիւն երանելի նախահարցըն հասարակաց ի Քրիստոս։ Թէպէտ եւ զլուրս ի նմա զանազանեալս տեղեկացաք, եւ թէ ըստ կարծեացս, զոր առաքիցէ Աստուած վայելուչ խոստովանութիւնք, թէ յաշակերտաց բանին, բայց եւ յօտարաց եղեալք։ Ում ոչ սրտալիր ուրախութիւն թուիցի. քանզի նա աւելագոյնս անդր եւս անկումն խաւարային իշխանին է, եւ աշխարհի յաղթութեանն զքաջալերութիւնս ի Փրկողէն ամենեցուն առաւելագոյնս հնչեցուցանէ, թէպէտ եւ ինքն անպարտելի է միշտ. քանզի նա զայն ձայն տայ լսել, թէ անդաստիարակ ամենեքեան դուք որդի Աստուծոյ էք հաւատովն ի Քրիստոս։ Զի որք ի մի հաւատ միով հոգւով նահատակեալք, թէ երկու կամ երեք խմբեալք, զամենայն զինչ է խնդիր յանուն Որդւոյ ի Հօրէ շնորհի քանի եւս եկեղեցւոյ, որ մի մարմին եմք բազումքս։

Արդարեւ բարի եւ ուղիղ խոստովանութիւն հաւատոյ է հիմն ի վերայ հաստատուն վիմի եդեալ՝ առեալ զիմաստութիւն յԱստուծոյ իմաստութենէն, կատարեալ այրական հասակաւ զչափ խոստովանութեան որ ի Քրիստոս լիագոյն ընդգրկել,



որքան թողան ի մարդոյ ի շնորհէն, որ ի յուղխէ վատ ամբարշտութեան եւ ի հողմոյ օտարաձայն վարդապետութեան անդրդուելի մնայ։ Զայս գոյ իմանալ միաբանելն ցնծութեամբ եւ երգով հրեշտակաց, եւ թէ յերկրի են նոցա դասակից. զի ըզսրբոյ Երրորդութեանն խորհուրդ անյաւելուած եւ առանց թերանալոյ երգեն խաղաղութեան ծնեցելոյ յերկրի՝ ի բարձունս Աստուծոյ, եւ հաշտարարին մարդկան փառք ասիցեալ։ Քանզի ի Պօղոսէ ուսայ այսպէս փոխադասել, նոյնպէս անհարկելիք յերկինս դասակից, զնոյն փառաբանելով ի միութիւն, եւ են կամահաճոյ ամենեցուն Արարչին։ Եւ թէ նոքա, որպէս ցուցաք, սիրելի՛ք, խնդութիւն եւ պսակ առաքելոցն։ Անպիտանքն ի հաւատս տարագիրք են ի յաւիտենիցն ուխտէ եւ խոտորեալք ըզգկնի սատանայի. քանզի զհետ երթեալք են այնր, որ միշտ ատեայ զճշմարտութիւն, եւ էութիւն իւր ի ստութեան է ուրախութիւն այնց, որ խնդացուցանեն ի տարտարոսն ըստ չորքոտանեացն բնութեան. քանզի թողին զարդարութեան ճանապարհն, դարձեալ հաւասարեցան անասնոց անմտից։ Դարձեալ սովեալք իբրեւ շունք յերկնից իջեալ հացէն՝ յածին յայրատաբար զքաղաքաւ՝ զեկեղեցեաւն Աստուծոյ, ողողանջեն բերանօք իւրեանց զորս ոչ ունէր եկեղեցի. քանզի սուր է ի շրթունս իւրեանց յօտարացուցանել ի մօրէն ըստ ինքեանց եւ զայլս եւ առնել բաժինս աղուիսուց, դիւաց, որոց նման են. եւ զայն ոչ գիտեն, թէ սուրք նոցա ի սիրտս նոցին մտանեն. եւ անհնարին կործանումն լինի այնմ տան, զի ի վերայ աւազոյ հիմնեցաւ։

Բայց մեք, եղբա՛րք, թէ ո՛չ տեսանէաք պառակտեալ զգեղեցիկ հօտ քաջ հովուապետի, եւ զողըն խարդախութեամբ ի գողաւնս, եւ միշտ ի մէջ

հեթանոսաց վասն անմիաբանութեան անուանն Աստուծոյ հայհոյումն՝ թերեւս զանվարժութիւն եւ խորհրդոցն զոչ քաջաբերութիւն փաստաբանեալք, ի պարսաւասիրացն բարս հայեցեալք, զմեզ հրաժարեցուցանէաք ասել, թէ ո՞վ ելանիցէ ի բարձրութիւն հաւատոյն բանի՝ գուցէ զՔրիստոս ըստ մեզ վայրաբերիցս հաւասարել, կամ իջանել յանդունդս իմաստից գրոց՝ ըստ մերում մեռելամտութեան զանծախապէս աղքատացեալն, որ ըստ մեր գոյութեանն վերագոյն գոլ ասել այժմ մտաց: Իսկ զուղղումն կաթուղիկէ առաքելական Եկեղեցւոյ հանապազաբուխ, որ է բան հաւատոյ աստուածաշունչ գրովք, իբր ի սրտի գրեալ ի նմա եւ արձանագրեալ անջինջ՝ ո՛չ տայ տարակուսել ողջամտիցըս զհայհոյողս Բանին մարմնացելոյ արտաքս քեցել հանել յԵկեղեցւոյ Աստուծոյ, եւ զթիւր միտս խորամանկեալս զպէսպէս ուսուցանողս եւ զօտարաձայնութիւնս յառաքելոցն, եւ կամ զխօսս սպասաւորաց Բանին ի թիւր իմացումն զղջանալն բազմաց ցուցանել եւ զգուշացուցանել զանձինս բարեմտաց. այլ եւ ձեր ըստ նախնեացն հարազատ եղբայրութեան գութ բռնի ձգեալ էած զմեզ այսր:

Արդ՝ գրով ձեր առ մեզ զխոստովանութիւն հաւատոյ կամեցաք համառօտս յիշատակել, եւ առ նմին զՀոգւոյն սրբոյ վարդապետութիւնն դնել ըստ մասին ի ճշմարտութենէն հեռանալ, եւ կամ միաբանել յետ ծանօթանալոյն բազմաց: Տո՛ւր ինձ եւ զքո միտսդ ոչ զլանալ զուղիղն, եւ մի դասիլ ի հակառակող կամսն, զի Եկեղեցւոյ Աստուծոյ այս ոչ է սովորութիւն: .Քանզի ի ձէնջ գիրն ծանոյց մեզ այսպէս: Յետ ղուզնաքեայ զմէնջ գոհութիւն իմն ասելոյ՝ ամբաստանութեան ճառ զմարդոյ տկարագունի էր նշանակեալ, եւ զմեր նմա հաւատալն իբր անիմաստ, անտեղի իմն համբաւեալ՝ եթէ ոչ թերի, այլ լի նման ձեզ եմք ի հաւատս, զի առաքեալքն եւ վարդապետքն հասարակ եւ միապէս աւետարանեցին:



Եւ ապա յետ սակաւ ինչ բանից զսրբոյ Երրորդութեանն զյառաջ քան զյաւիտեանս զէութիւն էր աստուածաբանեալ՝ տարաբերմամբ. եւ յետ յոլովից զմարմնաւորութիւն Բանին մեզ պատմեցէք զանազանեալ մտօք, զոր վարդապետութեան միտս Եկեղեցի Քրիստոսի յառաքելոցն չառ, եւ ոչ զբանս գրոց ի նոյնս բռնաձգեալ, այլ գայլոցն յափշտակեալ ի նմանէ որս, որ խօսին թիւրս ձգել զկնի իւրեանց զաշակերտեալսն: Իսկ զայլ խօսսն, որք ոչ ընդ սոսա միաբանին, իբր զպարզամիտս խաբելոյ, կեղծաւորութեան դուռն առ մեզ հաւատացեալս փակի. եւ զի այսպէս է, ա՛յ պատուականք, մի՛տ դիք խոստովանութեան ձերոյ ուր ձգէ, եւ որպէս մեկուսացուցանէ ի Հոգւոյն սրբոյ վարդապետութենէ: Արդ՝ զՀօրէ ասել ամենակալ, կատարեալ Աստուած, արարիչ ամենայնի եւ այլքն՝ ձայնակից մեր են: Իսկ յառաջագէտ եւ նախակարծ զնա ցուցանել՝ օտարին սերմն. զի թէ յառաջգիտակ կարծող ոչ է, եւ թէ երկոքեանն անհաս յէութեանն ըստ քեզ մուտ եւ չարժումն՝ ուրեմն հակառակ կացին նմա. քանզի նախգիտութիւն եւ յառաջ կարծիք միմեանց հակառակք, եւ ի ներքս անկանի երբեմն եւ ստութիւն յընդունայնանալ կարծեացն եւ վրիպումն, եւ իրն, վասն որոյ յառաջ կարծիքն վաղ եւ իսկ զնա սկզբնագոյն քան զկարծողն, եւ նոյն եւ ի բանին. վասն զի ըստ կարծեաց բանաւորի եւ բանաշարժից եւ նորին ըզ-

հետ երթայ։ Ո՞րպէս ուրեմն ասէ կարծիքն եւ յամենայն եղեն, եւ ի կարծելոց բարութեանց միանգամայն վրիպել. եւ այլ այսպիսի կարծիք առ ամբարտաւանութեան մօտ տան եւ անօրէնութեան։ Ապա է, ո՞վ ասասցէ զայս յո՛ փոփոխեալ. եւ զայս յԱստուած ի Հայր իմանալ, որ զդիւաց կատաղութեամբն զանցուցանէ. Տի՛նա, ասէ, ես եմ նոյն, որ յառաջինն եւ ապա ես եմ Տէր, որ խօսիմ զարդարութիւն եւ պատմեմ զճշմարտութիւն. եւ թէ Ես եմ Տէր Աստուած, որ արարի զյապայսն որ գալոցն են։ Եւ ի Դանիէլ նախագէտ եւ զծածուկս տեսօղ, եւ զամենայն գիտակ զնա ցուցանէ. իսկ զամենայն մերկապարանոց առաջի նորա կալն եւ ի վերայ գալոց ինչ ժամանակաց իմանայցես՝ ապա նախակարծ զՀայր ասել անօրէնութիւն է։

Նմանապէս եւ զՈրդւոյ ճոխութեանն անուանս, որ ի ձէնջ ասացան՝ ցուցցուք։ Ասելն զՈրդի համագոյական, մշտնջենակից Հօր, մշտնջենաւոր համագոյական ծնունդ եւ յառաջ քան զյաւիտեանս բովանդակ Աստուած, նոյն էութիւն, եւ Աստուծոյ զԱստուած ծնել միածին, եւ այլքն սոյնպիսիք ասացեալքն՝ այդ խոստովանութիւնք ընդ մեզ միաբանին։ Իսկ անդրանիկ միածին զնա ասել եւ անճաճանչ՝ հեռի է ի կաթուղիկէ առաքելական եկեղեցւոյ բարբառոց։ Քանզի անդրանիկդ անուն ըզբազումս նշանակէ, եւ առ նմին միածին մի միոյ, որպէս երբեմն Սողոմոն թագաւորութեամբն անդրանիկ ի մէջ այլ որդւոցն Դաւթի, եւ ըստ Բերսաբեայ մի մօրն իւրոյ։ Այլ եւ ըստ ժամանակի ոմն նախ եւ ոմն միջին եւ այլն պակասօրեայ, եւ կէսքըն առաւելագոյն կրտսեր նոյնպէս եւ կայեանք նոցա։ Իսկ անճաճանչդ անուն նսեմութեան ասի, եւ է նա ստուերք լուսոյ պակասութեան, եւ ոմանք



պատուհասական, որպէս խաւար անչօչափելի կալ յոգոյ գիշեր անգիտութիւն զբարի, եւ ի կռապաշտութեան յաղտեղի գործս անկանելն է, որպէս գիրք ասեն։ Արդ՝ ո՞ ի մոլեաց զայս ի Բանին կարծիցէ. քանզի յառաջ քան զմարդկանալն, զորմէ մեր խօսքս են, ո՞ւմ է անդրանիկ. ի ձեռն մարգարէին ասէ Հայր եւ Արարիչն. Ես եմ Աստուած եւ չիք այլ ոք։ Աստուած յորժամ լսես, մի՛ անբան եւ առանց հոգւոյ կարծիցես, քանզի անզգայութիւն է այս։ Ո՞չ արդեօք լսիցես, զի Հայր ցՈրդի ասէ. Ընդ քեզ է ինձ սկիզբն աւուրց զօրութեան քո. այս ոչ մի քան զմիւսն նախ գոլ։ Իսկ ի վայելչութիւն սրբութեան քո՝ զաստուածութեանն հաւասարութիւն միութեան եւ յորովայնէ, որ է նոյն էութիւն բնութեան Հաւր։ Զի որովայն եւ ծոց Հօր, յորժամ ասեն գիրք, վասն Որդւոյ զնոյնութիւն, որ ի նմանէ է, նշանակէ՝ ուսուցանելով ի մերումս զմեզ, այլ ոչ յԱստուածում է այս։ Եւ յառաջ քան զարուսեակ ծնայն զքեզ՝ նախ քան ի կարգ անկեալ օրաց ըստ լուսաւորացն է ծնեալն, յայտ առնելով զանսկզբնութիւնն, եւ անցանէ քան զմիտս եւ զբան մարդոյ, եւ հրեշտակաց ծնունդն, եւ է միածին։

Իսկ վասն Հոգւոյն սրբոյ ինքն ասէ, թէ յԻնէն ելանէ։ Արդ՝ ո՞ւմ է նա անդրանիկ, եւ որպէս ցուցաւ մի էութիւն Հօր եւ Որդւոյ։ Լոյս ասի Հայր. Եղիցի լոյսն Իսրայէլի հուր։ Լոյս ասի Որդի. Էր լոյսն ճշմարիտ եւ խաւար ի նմա չիք եւ ոչ մի. եւ ըստ գիտութեան գիտէ՝ որպէս Հայր զՈրդի, եւ Որդի զՀայր նմանապէս. ապա անճաճանչ զնա տեսողն երեւի թշնամանողացն դասուց։ Բայց մեք տրտմական հիացմամբ զգածեալ եմք, թէ ընդէ՞ր արդեօք ոսոխն բարւոյ զարտաձայնութիւնս եւ որ վասն սրբոյ Հոգւոյն հակառակս տալ դասել հը-

նարեցաւ՝ թէ դադար առնու առ Որդւոյ, եւ ապա դարձեալ զնա իշխան եւ պետ Աստուծոյ ասել։ Եւ դարձեալ զանտանելի հայհոյութիւն՝ տարրական զնա ասել, եւ ընդ նմին ասել դարձեալ ոչ Հայր քան զՈրդի աւագ, եւ ոչ Որդի քան զՀոգի, այլ միաբան, միակամ եւ միախոհ. եւ զսոցին հաւասարսն սուրբ* Եկեղեցի դաւանէ ընդ նմա։ Արդ՝ եթէ տարրական է եւ դադարէ առ Որդւոյ, եւ պետ իշխանութեան է Աստուծոյ՝ ա՛յլ ուրեմն էութիւն եւ գոյութիւն է. զի տարրեղինի հարկ է արարած լինել, եւ ի տարրեղինի բանաւորեցաւ շարժութիւն եւ ոչ պարզութիւն, եւ շարադրութիւն, եւ ախտից դասումն՝ թէպէտեւ անեղծանելի ասացեր. եւ այսպէսն տկար եւ աղքատ է, որպէս եւ Պօղոսն ասէ. Զի՞րդ միւսանգամ դառնայք անդրէն ի տարերս ի տկարս. եւ թէ, որպէս նօթձէքն, եւ դադարէ առ Որդւոյ՝ ապա եւ ի սկսանելոյ հանգչելովն եւ դադարելովն լուծանէ յիւրն էութենէ, եւ կամ պակասեալ եւ թէ խառնեալ իմանայցեն, որպէս փայլակն ինչ ի մեծ խարոյկ՝ եղիցի շփոթութիւն։ Թողից ասել զանհնարին հայհոյութիւնն, որ անդուստ իմանի՝ զԲանն եւ զՀայր ի տարերս իջուցանել, եւ նմա լինել Աստուծոյ պետ եւ իշխան՝ անդր է քան զուրուախօսից բարբաջանս, եւ այսպիսի կատաղութիւն Սիմոնի կախարդական աստեացն է. քանզի թէ զՀոգւոյն սրբոյ զէութիւն եւ էութիւն եւ բաժանեալ դիմօք անբաժանելին, եւ մտօք միայն որոշել որ ոչն որոշի՝ միաւորեալ աստուածութեամբ, առաւելախաղացի հաւասարմանն, եւ է՛ ինչ, զոր եւ դուք վկայեցէք, զի ի ներքս ածէ զօտար Աստուած. քանզի նա ասէ. Զփառս իմ այլում ոչ տաց։

------

*Օր. որպէս։



Այլ որ վասն Երրորդութեանն յառաջ քան զյաւիտեանս ասացեալ՝ եկ փոխեմք բանիւս եւ յաղագս մարմնաւորութեան Որդւոյ ասացեալսն։ Արդ Որդին Միածին անբովանդակելին բովանդակեցաւ կամօք Հօր եւ Սուրբ Հոգւոյն, ինքնակամն ի սուրբ յարգանդ Աստուածածնին եմուտ եւ յարգանդին զԱստուած զէն, զհոգի եւ զմարմին միացոյց։ Աստուած զէ թէ Բանին Աստուծոյ ասես, եւ թէ հոգի եւ մարմին մարդկայնոյս ասես միացեալ՝ այո՛, ընդ իս ձայնակից ես այդու մեզ, մանաւանդ թէ յաւելուս ի Հոգւոյն սրբոյ եւ Բարձրելոյն զօրութեան հովանաւորեալ։ Իսկ զի կուսէն ի Հոգւոյն սուրբ անախտ առանց մեղաց աստուածախառըն մարմին էառ՝ այս միտք օտար են յԵկեղեցւոյ. զի թէ մարմինն աստուածախառն անախտ առանց մեղաց էր եւ ապա առ՝ նախ ստեղծեալ եւ ապա առեալ լինի, բայց կամիս ուսանել զնոյնդ զմարմին աստուածախառն որ էառ, ո՞վ էր այն խառնեալն ընդ մարմնոյն. զի թէ յօտար Երրորդութենէն ոք խառնեցաւ՝ օտարին է մարմինն, որպէս դուդ ասես, զի ընդ իւր ստեղծ, եւ եթէ ի սրբոյ Հոգւոյն իմանաս զխառնումն՝ ուրեմն սուրբ Հոգին մարմնացաւ, զի որ խառնեցաւ նոյն մարմնացեալ ասի. ապա թէ զԲանն խառնեալ յառաջ ասես, ո՞վ առ զնա ի վերջոյն։

Եւ կամ դարձեալ փոքր մի յառաջ՝ յաջորդն որ ասէ, թէ Բանն Աստուած եւ Աստուծոյ Բանն է էմմանուէլն եւ զայլն խօսս, մինչեւ ցայն վայր, թէ աստուածախառն Աստուծոյ մարմնովն ի Մարեմայ է։ Զէմմանուէլդ անուն Բանին, առանց մարմնոյն իւրոյ՝ ո՞վ ուսուցանէ կոչել, եւ դարձեալ ո՞րպէս ասեսդ, թէ զառեալն ընդ էին է արար, ըստ այնմ թէ. Իմաստութիւն շինեաց իւր տուն։

Զի թէ ըստ Պօղոսի ասելոյն Քրիստոսդ անուն մարմնացեալ Բանին առասեցաւ, ո՞վ շինեաց իւր տուն միաւորութեան։ Արդ՝ զանց առնելով զնորա չարաչար միտսն բացայայտելոյ, զի իմաստնոց յայտնի է, ի Գրոց սրբոց վարդապետութիւնն փութասցուք։

Քանզի՝ Իբրեւ եկն լրումն ժամանակին, առաքեաց Աստուած զորդին իւր ի կնոջէ եղանիլ։ Արդ՝ աւետաւորեցաւ կոյսն ի ձեռն հրեշտակապետին՝ Հոգւոյն սրբոյ գալ ի նա եւ ուժգնութեամբ Բարձրելոյն Հօր հովանանալ ի վերայ նորա։ Քանզի ծնունդն սուրբ զեկուցանէ եւ Բարձրելոյն Որդի, եւ ասի Բանն մարմին եղեւ. եւ զի մարմին անուն Գիրք մարդ ասեն՝ Յովէլ պատմէ. Հեղից ի վերայ ամենայն մարմնոյ։ Եւ Բանին ի կուսէն մարմին եղեւ. եւ զի Բանն Աստուած հոգի է, ձեր իսկ խոստովանեալ, եւ զի մարմին ի սրբոյ կուսէն՝ հրեշտակապետն զեկուցանէ։ Մարմին մինչ ասեմ ընդ նմին իմա հոգին բանական եւ միտս եւ զինչ ի մարդկան է։ Եւ այսպէս իբր հոգի եւ մարմին միացեալ։ Բանն մարմին եղեւ, սաղմնառեցաւ որ ի սկզբանէ Որդին Աստուծոյ՝ ո՛չ ի կամաց առն եւ ոչ մարմնոյ ծնաւ կատարելապէս ի սրբոյ կուսէն՝ կոյս պահելով զըստ մարմնոյ զիւր մայրն. վասն որոյ եւ Աստուածածին ասի, եւ կուսածին ծնունդըն է։ Որ ի կերպարանս Աստուծոյ էր՝ զծառայի կերպ առեալ, ի նմանութիւն մարդկան եղեալ, եւ ձեւով իբր զմարդ գտաւ , առանց մեղաց։ Եւ Որդին Աստուծոյ, եղեւ ի զաւակէն Դաւթի, վասն ըստ մարմնոյ սահմանելոյ Որդւոյն Աստուծոյ, զօրութեամբ ըստ Հոգւոյն սրբութեան։ Աստ իմա ինձ եւ ոչ փոխեալ յէութենէ զՈրդի, եւ զՀոգին սուրբ. որպէս առ Հօր հոգի Աստուծոյ, այսպէս եւ հոգի Որդւոյ, եւ ի մարմնանալն Որդւոյ՝ սոյնպէս եւ



զորդի ի Հօր եւ զՀայր յորդւոջ. բայց ոչ զՀայր մարմնացեալ ասեմք, եւ ոչ զՀոգին սուրբ, այլ զԲանն Աստուած։

Քանզի համբակ դեռաճիղմն, որպէս ասացի, յառաջ քան զարուսեակն՝ մարմնով, հոգւով, մտօք, զգայութեամբ ծնանի, եւ անուն կոչի՝ ընդ մեզ Աստուած։ Ո՞վ նոր խառնմանն անյեղ, որ յԵրրորդութեան ոչ այլ տեսանի, եւ յերկրի ըստ մեզ տայ աւետիս հրեշտակն Տեառն, թէ որ այսօր ծնաւ Տէր է Յիսուս որ է Քրիստոս, եւ ըստ մերումս Փրկիչ, որ է Օծեալ։ Արդ՝ ո՞վ է որ պատմէ ըստ ձեր յառաջ ասելոյն, կամ զաստուածախառն մարմինն առնուլ եւ կամ զէմմանուելն առանց մարմնոյն Աստուածն Բանի, եւ կամ զմիաւորութիւնն նորա ասել՝ որպէս իմաստութիւն շինել տուն։ Լինի կաթնասուն, որ յառաջ քան զյաւիտեանս, եւ յորովայնի Բարձրեալն երգեալ ի Զաքարիայէ, որպէս զմերն ի մարմնանալն յանձն առ կրել։ Աճէ լի իմաստութեամբ, քանզի իմաստութիւն Հօր ինքն, եւ շնորհք Աստուծոյ հօր ի վերայ նորա, զի նա իսկ է շնորհըն երեւեալ. եւ այսպէս ընդ ամենայն տիս հասակի աճմամբ անցեալս, զի առ մեզ պարտաւորութեանն տեղի ոչ լիցի։ Մի՛ քեզ առանց վկայութեան թուեսցին ասացեալքս, զի ի Գրոց է եւ ձեզ չէ ի ծածուկ։

Դարձեալ յիշատակել ձեր յայսմ վայրի, թէ լինի հպատակ հօր եւ մօր իւրոյ հնազանդական աստուածախառն մարմնովն՝ թուիք մեզ երկուս ցուցանել, մի զայն, որ հպատակն լինի եւ միւս զհնազանդական զաստուածախառն մարմինն, իբր օգնականաւ վարեցեալ. եւ զի վերագոյնն արարեալ է զսորա հարցումն։ Արդ՝ զայս խնդրեմ. ո՞վ ուսուցանէ զայդպիսի նոր վարդապետութիւն, զոր առաքելոցն

չէ խօսեցեալ· արդեօք զառմանդ կարծիս այնու նմանութեամբք իմացա՞յք՝ առանց աճմանն զհրամանն ընկալեալ նախնոյն, եւ թէ Առ յինքն զկին իւր, կամ թէ Առ իւր կին, եւ են երկոքեանն մի մարմին եւ մի հոգի՝ ըստ Մաղաքիայ· եւ որպէս Յակոբ երկրպագութիւնն Յովսեփայ Հռաքելիւ կատարէր զերագոյն մեկնութիւն։

Այսպիսի մտօք համարձակութիւն բերեն ասել՝ ոչ իջեալ յերկնից, ոչ մարդացեալ, եւ ոչ ծնեալ, այլ այնպէս իմանալ իբր զմարդ ոք, որպէս ի հնումն զԻսրայէլ անդրանիկ որդի իւր կոչէր· այլ քա՛ւ, մի՛ լիցի, անաստուածութիւն է այսպէս իմանալ։ Իսկ աւանդողքն մեզ զիւրեանցն առեալ ի կերպին Աստուծոյ եղեալն, զկերպ ծառային առ, եւ նա եղեւ ի նմանութիւն մարդկան, եւ կերպարանաւն իբրեւ զմարդ գտաւ, եւ զնա՛ ասացին լոյս փառաց եւ կերպարանք էութեան Հօր, եւ թէ՝ Որով ամենայն ինչ եղեւ, եւ զնա՝ Մի Տէր Յիսուս Քրիստոս, որով ամենայն եւ մեք նովաւ ուսուցին մեզ, եւ ոչ այդպիսի կարծիս·

Գրեալ է ձեր եւ վասն մկրտութեանն, թէ իբրեւ երեսնամեայ լինի մկրտի, ձայն Հօր յերկնից վկայէ, Հոգին աղաւնակերպ իջանէ։ Այո՛, ինչ զուսուցեալսն աւետարանացն ասես։ Իսկ զՀոգւոյն սրբոյ պսակ բերել, զայդ ոչ ուստեք լուայ յԱստուածաշունչ գրոց յԵկեղեցւոյ։ Քանզի որ բնութեամբ Որդի Աստուծոյ է, եւ ի վերջոյ ժամանակի ի կնոջէ ծնաւ ըստ մարմնոյ՝ եւ Հոգին նորին հոգի որպէս Հօր, թէպէտ եւ դիմօք ի բարձունս ընդ Հօր· ո՞ւմ բերէ պսակ· քանզի պսակ յանարգութենէ ճոխացելոյ բերի եւ զոչ պատուեալն ի պատիւ հասուցանելոյ, այլ ոչ այսպէս· քանզի Յիսուս Քրիստոս երէկ եւ այսօր նոյն եւ յաւիտեանս։ Բայց



որպէս եղեւ մեզ ճանապարհ նորոգ՝ ուսուցանէ մեզ զվերստին ծնունդն յաւազանէ։ Արդ՝ Որդի մկրտի, ոչ ի մաքրութիւն, այլ յօրինադրութիւն զնոյն մեզ։ Հօր ձայն յերկնից, Հոգին աղաւնակերպ իջմամբ՝ թէպէտ Մկրտչին ուսուցանէ· Հայր եւ Հոգին, թէ որ ի բարձունս Որդին է մարմնացեալդ· այլ ըզմեր որդեգրութեան մեծութիւն յայտնեաց աւազանաւն։ Արդ՝ զոչ գրեալսն ընդէ՞ր հարկիք ասել եւ ջանայք զտնօրէնութիւն Փրկչին այլոց լինել· եւ ապա յետ այսց բանից ի վերայ բերէք, թէ Հայր իմ ցայժմ գործէ եւ ես գործեմ։ Իսկ քաղցնուլն եւ վաստակելն աստուածընկալ մարմնոյն։ Զմարմին Փրկչին մերոյ Աստուածընկալ՝ չէ ուրուք աւետարանեալ, այլ կենդանացուցիչ եւ կամ զնոյն իսկ զԱստուած մարդ։ Բայց թէ զամենայն լրումն աստուածութեան ի նմա բնակեալ՝ զայդ ասել կարիցես՝* ուրեմն ոչ իմանայցես թէ զմի աստուածութիւնն մարմնապէս ի նմա լինել ասես· քանզի ընդունօղ յընդունօղի անհնար է լինել, որպէս ասեն, թէ էք դուք նովաւ լցեալ։ Իսկ որ զաստուածավայելուչսն զատուցանեն իբր Բանին, եւ զտնտեսութեանն տնօրինութիւն մարմնոյն մարդոյն, արժան էր ասել ըստ քեզ՝ զի անձն եւ միտս ունէր, եւ համարձակեցուցանել, թէ Աստուած որ հաստատեաց զծագս երկրի, ոչ քաղցիցէ, եւ ոչ վաստակիցի, եւ ոչ ի քուն է պահապանն Իսրայելի, եւ փոխանակ քրիստոնէի լինել հրէայ ըստ թլփատութեան· եւ եթէ ոչ ոք կարէ տեսանել զԱստուած, եւ ուրանալ զգիրն, որ ասէ· Տեսաք մեք զնա, եւ ոչ գոյր նորա տեսիլ, եւ ոչ փառք, եւ տեսակ նորա նուազ քան զամենայն որդւոց մարդկան, որոյ զազգատոհմն չկարէ ոք

------

Օր· կարծիցես։

պատմել. եւ զաղքատութիւն մեծատանն եւ զթափումն անձինն, որ յէութեան աստուածութեանն էր, եւ մանաւանդ զոտս եւ զձեռս, որով զնչանս արար. զի ոչ է այս ի բնութեան աստուածութեանն։

Ապա թէ զԲանն Աստուած մարմնացեալ ասեն, յորում էր Հոգի բանական, միտք ըստ մարդկութեանս, նոյն ոտիւք որով վաստակեցաւն, եւ ի վերայ ծովուն գնաց, եւ ձեռօքն աշխատողօք կաւ արար եւ եդ ի վերայ երեսաց կուրին, եւ զնոյն կաւն ակն ստեղծագործեաց, զի ծանիցես դու, թէ որ զառաջին մարդն ստեղծ՝ նոյն է երեւեալն ըստ մարմնոյ։ Ապա եթէ երբեմն Աստուած եւ երբեմն մարդ կարծիցես, ոչ կարես զնա անմեղ ցուցանել, զի մարդոյ միտք ի վայրկենի յեղումն ընդունին ի չար եւ ի բարի։ Արդ՝ մի՛ լիցի օտարաձայնս իմանալ արտաքո այնց քան զոր ուսաքն. զի միում դիմի մարդ կացելոյ՝ զաստուածավայելուչսն եւ զըստ տնտեսութեանս քարոզեցաւ։

Բայց հարկաւոր է մեզ եւ զհաւատալն ձեր փրկաւէտ չարչարանաց Փրկչին՝ որպէս ծանուցէքն առ ձեզ երկրորդել. բայց զի կրկնաբանեալ զնոյն միտս յոլովէ, ի մի տեղւոջ ցուցցուք։ Արդ՝ ասացեալն այս է, թէ մինն կամօք Հօր եւ սուրբ Հոգւոյն եկն ի խաչն. եւ մեք այսպէս ասեմք, թէ սուրբ Քրիստոս Աստուած, որ խաչեցար մարմնով, եւ զՀայր անմահ եւ առանց չարչարանաց, եւ Որդւոյ խաչակից անարգութեամբ համարեալ, եւ ոչ ցաւեցուցեալ, զի զէութիւն զաստուածութիւն Որդւոյ անմահ եւ առանց չարչարանաց ասեմք, բայց զՈրդւոյ զաստուածութիւնն, զէութիւնն, զանմահութիւնն եւ զհոգին ոչ ի Հօրէ մեկնեմք, եւ ոչ ի խաչէն, եւ ոչ ի գերեզմանէն, եւ ոչ ի յիւր մարմնոյն. եւ թէպէտ չմեկնեմք ի մարմնոյն զանչարչարելին՝ ի չարչարելումն չսպանանեմք, այլ զչարչարելին յանչարչարելումն չարչարեմք։ Արդ, փոքր ինչ հարցից եւ մանաւանդ ըստ հետազօտութեանն զ՚ի վերայ իսկ մեր հասեալն. զՈրդի Աստուած խաչակցեալն կամաւ անարգութեամբ համարելն՝ որպէս է ուրեմն հանգոյն Սամուէլին, որ ասէրն Աստուած, թէ Ոչ զքեզ անարգեցին այլ զիս, եւ կամ որպէս յառաջագոյն ցՊօղոսն ասէր, ի կռփահալածն առնելոյ զառաքեալսն, թէ Զի՞ հալածես զիս, եւ որ այլք այսպիսիք։ Ապա չէ ինչ ընդ մէջ ասել, թէ վաղ իսկ էր մարմնացեալ. զի դորին համարելդ ասելոյ զհետ երթայ ի ծննդեանն օրինակ եւ կոյսն մնալոյ մօրն. եթէ զօրութեա՞մբ եւ ոչ գործով եւ զիս անդամն Քրիստոսի լինել, եւ զամենայն իսկ կիրսն ըստ տնտեսութեան, եւ յազատութիւնն զմեզ կոչելն շնորհիւն չեւ եւս է։ Այսպէս եւ ասացեալն, թէ հանդերձ հոգւով սրբովն անմեկնելին ի խաչէն, եւ գերեզմանէն, եւ ի մարմնոյն եւ յամենայն ուստեք. զի թէ որպէս սուրբ Հոգին էր ի մարմնի Բանին, եւ ի խաչին եւ ի գերեզմանին, եւ զԲանին Աստուծոյ մարմնանալն, եւ ի խաչին եւ ի գերեզմանին զլինելն նմանապէս ասիցես՝ ըստ այդմ եւ յառաջ քան զմարմնանալն խոստովանէին աստուածապաշտք եւ ուղիղք արդ եւ մինչեւ ցյաւիտեանս։



Եւ յուրաստ չիշխես լինել զլրութենէ նորա մեզ բոլորիցս առնել, եւ զլնուլն զամենայնսն եւ զընակելն նորա ի սուրբսն՝ ապա եւ սուրբքն սպանեալք եւ կամ որ սպանանին՝ զնա պիտի ասել. վասըն զի զիւր կամսն վասն նոցա մահու զՊետրոսէ ասելն իմացուցանէ, թէ Ե՛կ զկնի իմ. եւ զամենայնսն*

* զոմանս։

*վասն կալոյն, եւ թէ որպէս ասէքն կամելովն միայն, ապա անհամարք քրիստոսք եկեալ են եւ գալոց են։ Եւ այլ եւս համարեալդ նշանակէ զամենայն լնուլ ի սա միշտ, եւ զմիջոցս երկնի եւ երկրի։ Իսկ քարինս եւ նետս առաքել յումեքէ այսր՝ ուրեմն եւ զայն իւր համարիցի, իբր թէ ծեծեալ եւ խոցոտեալ նոքօք. քանզի լնու զամենայն անմեկնելին եւ մարդիկ արժանիք, եւ կամ հաւք, եւ կամ այլ կենդանիք այնպիսեօքն ծախեալք, ապա եւ այս չարչարելիք յանչարչարելումն չարչարին, եւ անհուն աստուածք այլ եւ այլք աղանդաբանին մեզ պաշտել. Ո՞վ մտացածնոյց յիմարութեան խօսք, ուր քարոզի աւելի քան զգրեալսն իմանալ։*

*Եւ դարձեալ ըստ ասելոյդ, թէ զՀոգին սուրբ եւ զՈրդւոյ աստուածութիւն ի մարմնոյն եւ յամենայն ուստեք չմեկնեմք՝ կարծիս տայք ասել վասն համաբնակութեան ցուցանելոյ, թէ եւ Հոգին սուրբ մարմնացաւ. քանզի զերկոսեանն ի մի յընթակայումն պատմէ։ Այլ ոչ այդպէս ուսուցանէ վարդապետութիւն Հոգւոյն սրբոյ. զի թէպէտ եւ սուրբ Հոգին Բանին մարմնացելոյ հոգի ասի, ըստ այնմ թէ Զհոգին Քրիստոսի ոչ ունի. եւ Զհոգի Որդւոյ իւրոյ առաքեացն. այսպէս եւ Հօր հոգի ասի, եւ դիմօք որոշեալ մեզ պատմի, այլ ոչ զատանի ի Հօրէ եւ յՈրդւոյ. եւ թէպէտ անզատանելի է, այլ ոչ ի միում մարմնի Որդի եւ Հոգի, եւ ի խաչի եւ՛ ի գերեզմանի, իբր թէ մարմնացեալ ոք յառաքելոցն եւ ի մարգարէիցն ասաց. բայց միայն զՈրդին Աստուծոյ զԲանն Հօր մարդկացեալ գրեցին։ Եւ զի այսպէս է՝ լո՛ւր, Փիլիպպոս ցՆաթանայէլ ասէ. Զորմէ գրեցին Մովսէս եւ մարգարէքն՝ գտաք զՅիսուս ի Նազարեթէ։ Եւ զի նոյն է Բանն Հօր մարդկացեալ որ խաչեցաւն, Մովսէս պատմէ՝ ասէ.*



*Բա՛յ զկեանս ձեր կախեալ զփայտէ յանդիման ձեր։ Զոր եւ Յովհաննէս մեկնեաց. Սա է, ասէ, ճշմարիտ Աստուած եւ կեանք յաւիտենականք։ Եւ Երեմիա զկեանս իւր մեռուցանել ի գբի ասէ, եւ վիրաւորել եւ պատժել զնա, որոյ զազգատոհմն նորա ոչ ոք կարէ պատմել, գոչէ Եսայի։ Եւ զՏէրն փառաց խաչեալ պատմէ Պօղոս, զոր այլուր լոյս փառաց կոչեաց՝ եւ որ ի կերպին Աստուծոյ էր, որպէս պատմի մի ըստ միոջէ՝ զինքն թափեաց, հնազանդեաց մահու եւ խաչի։*

*Եւ զի ոչ ըստ ամենայն ուրեք լինելոյն էր Որդւոյ աստուածութիւնն յիւր մարմինն, որպէս ասացէքն, այլ Բանն Աստուած մարդկացեալ՝ եկ տե՛ս եւ զաւետարանացն զբարբառս։ Քանզի Ղուկաս յետ գրելոյն ականատես լինել զԲանն նորին սպասաւորացն՝ զազգաբանութիւնն այսպէս արար. Յիսուս որոց կարծէր որդի, որ ի Յովսեփայն, որ յԱդամայն, որ Աստուծոյն՝ ասաց. զի որ յԱստուծոյն էր, նոյն մարդացեալ եւ հովուացն տեսեալ եւ ի խաչ ելեալ ասաց։ Եւ Յովհաննէս զԲանն մարմին եղեալ եւ զկեանսն յայտնեալ՝ զնոյն ասաց խաչեալ եւ եդեալ ի գերեզմանի. որպէս Երեմիաս յառաջագոյն պատմեաց, թէ տեսեալ զմեռեալսն յաւիտենից՝ ինքն էջ առ նոսա ի հող աշխարհի, զի կեցցեն. եւ Աստուած մարդացեալ այնպէս յաղթեաց զօրացեալ մահու եւ ապականութեան, եւ եհատ զարտօսր յամենայն երեսաց։ Իսկ թէ Հոգին սուրբ այսպէս ուսուցանէ յԱստուածաշունչ գիրս, եւ ոչ մարդ աստուածազգեաց, որպէս Ստեփանոսն Հոգւով սրբով. մեռանէր չարչարելին յանչարչարելումըն զհանգոյն ամենայն ուրեքն լինել էր ի մարմնին, ի խաչին եւ ի գերեզմանին, հանդերձ այլովքն։ Զայդ ո՞վ ոք ոչ ասիցէ թիւր վարդապե-*

տութիւն։ Յաւելեալ ի բանսդ ասացէք· զբեւեռսըն ոչ ի զօրութեանն անմահութեան հարկանեմք, իբրեւ թէ ի ցաւեցուցանել, այլ աստուածացեալ մարմնին։

Բազում անգամ ասացաք, զի թէ աստուածացեալ մարմինն այլ է, եւ զօրութիւն անմահութեանն այլ, որ թուի քեզ ասելն զԱստուածն Բան սոսկ, երկուս ուրեմն պատմել ձեռնարկէք, մին մարմնեղէն Աստուած եւ միւսն զօրութիւն անմահական Աստուած։ Բայց զպարզամիտս խաբէք, թէ զօրութիւնն անմահական անհաղորդ է մարմնոյն՝ մինն Աստուած է եւ միւսն մարդ։ Իսկ ապա ո՞ւր է միանալոյն ձեր բան, զոր վերագոյն փոքր մի խոստովանեցէքն։

Բայց մեք նախ օրինակաւ ինչ կամիմք հարցումն առնել, թէպէտ եւ ոչ պատշաճ է· հուր եթէ ի բնութեանց իւրոց զատցի, ի ջերմութենէն, ի լուսաւորութենէն, եւ նիւթն մնացեալ կարիցէ՞ կոչել հուր· եւ կամ ձիւն ի ցրտութենէն եւ ի սպիտակութենէն՝ կարիցէ՞ կալ շօշափելի նիւթն եւ զձիւնն ունել։ Արդ՝ որպէս սոցա երից տեսակաց ի մի բնութիւն եկեալ՝ առանց զատուցման զգոյութիւնն ցուցանեն՝* եւ զատուցանելն ջանալ եղծումն գործէ, իսկ երեւելոյ արեգականն ի բարձանց արդեօք ո՞չ առաւելագոյն զմիաւորութիւնն ունիցիս ի միտսդ։ Զի եւ յարեգականէ թէ զատցի ճառագայթ լուսոյ ջերմութեամբն՝ գնդաձեւ տարրն առանց այնց ոչ ասի արեգակն· սոյնպէս թէ զատցի Աստուածն Բան ի մարդանալոյն իւրմէ՝ ծնեալն ի կուսէն ոչ Աստուած մարմնացեալ, այլ մարդ ընդ մեզօք անկեալ։ Զի թէ միաւորութիւն Աստուծոյն

------

*Օր· տեսանել ցուցանել։



Բանին եթող մարդոյն միտք ըստ այլոց, որպէս ասացաք, ի վայրկենի, մերթ ի չար եւ դարձեալ ի բարի փոխելոյն ոչ դադարեն։

Ապա եւ ոչ առանց մեղաց էր· այլ քա՛ւ լիցի՝ արեգակն միշտ արեգակն եկաց, որպէս պատմէն Զաքարիայ· քանզի առաքելոցն ցուցեալ զոտս եւ զձեռս ի վերնատանն՝ Աստուած վայելչաբար ի մտանելն զնոյն ուրեմն վարդապետեաց, եւ Թումաս տեսեալ զտեղիս բեւեռացն եւ զխոցումն կողին՝ Տէր եւ Աստուած իւր խոստովանեաց· վասն որոյ երանեաց Տէր զայնս, որոց ոչն տեսեալ այնպէս հաւատասցեն, որպէս տեսօղն առ տեսեալն բարբառեցաւ։ Բայց Բանին մարդկացելոյ մարմնոյն եւ հոգւոյն, որ երեսաց մերոց է Տէր, զբեւեռսն թափանցանց առնել ասել՝ ո՞ւմ ոչ յայտնի է յիմարութիւնն· քանզի զմարդիկ խեղս մի եւ կամ երկու անդամօք՝ ոչ ասեմք, եւ զոգիսն ընդ նմին խեղեալս· եւ կամ խոցմամբ եւ բեւեռօք ի փայտի մեռեալք այժմ եւ կամ ի հնումն՝ ոչ ոք կարէ ասել զոգիսն ընդ նմին բեւեռեալս եւ խոցոտեալս։ Իսկ յառաջ քան զմարմնանալն որ էութիւն Բանին էր՝ խառնեալ եւ միացեալ ընդ իւր մարմինն ի մարդկանալն, զիա՞րդ վիրաւորեսցի։ Այլ անհնարին է ասէք այդպէս խոստովանութեամբդ զնա առանց վիրաւորութեան ասել· հաւանեցի՛ր յօրինակէդ, եւ զխոստովանութիւնն, որպէս գիրք Աստուածաշունչք ուսուցանեն, մի թիւրեր ի մտացն, եւ թէ յաղթիս՝ զտնօրէնութիւն նորա ի քննել յանձն ա՛ռ· քանզի դու եւ ամենայն իսկ մարդ կարիցեն ասել զինքեանց զբնութեան էութիւն, որպէս հոգին ընդ մարմնոյն խառնեալ, եւ կամ շունչ ընդ ջիլս ներգործեալ օժանդակէ նմին մարդոյն, եւ կամ թէ լոյս արեգական, եւ կամ ճրագի, ընդ ական յստա-

կագունի միաւորեալ զտեսութիւն գործէ։ Իսկ տնօրէնութիւն նորա սոսկալի ումեք չթուիցի, եւ ի վեր քան զիւր միտս եւ զբան։ Ապա թէ ոչ՝ իմա՛ ինձ զնա թէ յարգանդի կուսին ո՞րպէս մարմին ինքեան հոգւով եւ մտօք լինել եւ զի՞նչ ի մարդ է, սաղմնացեալ էր* Բանն Աստուած ի Հոգւոյն սրբոյ յամենայն մարդկանէս ի սկզբանէ լինելութեան մարդոյն, եւ որք ի ժամանակիս մինչեւ ցկատարածն՝ Աստուած մարդացեալ ծնանէր, առանց մեղաց, հասակաչափ միոյ մարդոյ, որպէս Պօղոսն պատմէ, թէ որ ոչ է հրէայ եւ ոչ հեթանոս, խուժադուժ, սկիւթացի, ծառայ, ազատ՝ այլ ամենայն ուրեք Քրիստոս է։ Ունի՞ս ինչ ասել զորպիսութենէն· ապա իմա՛ եւ զայլսն, թէ են մեզ անհասանելիք, եւ մի՛ խուզեր· վասն որոյ մարգարէն ի տընտեսութիւն նորա հայեցեալ երկնչէր, եւ զարմանալ ասէր· ապա հաւատ պիտոյ է եւ ոչ քննութիւն։

Յետ այսր հակառակողս ոմանս նշանակեալ էր, թէ սոքա ասեն՝ սուրբ անմահ Աստուած որ խաչեցար· անմահ էր ասեն եւ մեռաւ հոգւով եւ աստուածութեամբն՝ մեր բնութեամբ։ Արդ՝ եթէ հակառակողս զմեզ կոչէք եւ թէ զայլ ոք, որպէս ցուցաքդ ձեզ գրով, ըստ Աստուածաշունչ գրոց վարդապետութեան, զխոստովանութիւն հաւատոց մերոց յՈրդին Աստուծոյ՝ թէ բիւր անգամ հարցանէք՝ զնոյն երկրորդեմք։ Բանն Աստուած միեւնոյն էր, որ զամենայն ըստ տնտեսութեանն եւ զնշանսն նա գործեաց։ Բայց ո՞վ ոք է թերուսումն, որ ի վերայ մարդոյն չգիտէ զմահ, թէ որոշումն հոգւոյն ի մարմնոյ է, եւ մարմնոյ յերկիր լուծանել, իսկ հոգին կենդանի եւ անապական, որպէս գիրք

------

* Օր· լինէր։



ասեն զնահապետացն, թէ պակասեալ յաւելաւ ի ժողովուրդ իւր, եւ զոմանս՝ եթէ յաւելաւ առ հարս իւր։ Իսկ վասն մարմնոյ՝ եթէ զապականութիւն ետես· քանզի մարդոյ հոգւոյ յանզգայականս լուծումն ոչ ոք գիտէ, զի Աստուած միշտ կենդանեաց է Աստուած, եւ որպէս ինքն կենդանի է եւ կարող՝ ոչ փոխեցաւ եւ ի մարդկանալն, բայց մեռաւ զիւր զմահն, եւ պարտեաց զմահ· եւ վասն զի միութիւն՝ ոչ Բանին միայն, վասն այնորիկ Բանն Աստուած ոգւովն իւրով, որ ի մարդկանէ, երեւեցաւ ի դժոխըս, արգելեալ ոգւոց՝ յորժամ ներէր նոցա Աստուծոյ երկայնամտութիւնն, որպէս ասէ Պետրոս, եւ այնպէս աւերեաց զդժոխս· եւ Աստուած մարմնով ի գերեզմանի զապականութեան իշխանութիւն ի բաց քայքայեալ՝ մեզ զանապականութիւն պարգեւեաց։

Եւ վասն այնորիկ ասեմք զերից սրբասացութիւնն՝ սուրբ Աստուած, սուրբ հզօր, սուրբ անմահ, որ խաչեցար վասն մեր։ Երեք սրբասացութեամբք Երրորդութեանն դիմօք, եւ միով աստուածութեամբ, զաւրութեամբ եւ անմահութեամբ, եւ Հօր եւ Հոգւոյն սրբոյ՝ խաչեալն առանց այլ երեւմամբ, ի մի էութենէն, զողորմութիւն հայցեմք։ Քանզի առաքելական Եկեղեցի այս բարբառով եւ ձեւով միշտ պարծի· զի ի ժամ պատարագի գոհաբանական զդրուակն ի դէմս Հօր արարեալն՝ երիցս սուրբն ասելով միով տէրութեամբ ընդ Հօր եւ ընդ Հոգւոյն սրբոյ, զեկեալն եւ զգալոցն ի բարձունս արքայ փառաւորեալ գոչէ· եւ ասա թէ խաչեալ ասեմք՝ մի՛ զարմանար, քանզի նա զչարչարանսն իւր փառս կոչէր։

Իսկ յետ այլ բանից այսպէս գրեալ էր, թէ մեք զմարմնոյն մեռանել ձեզ գրովք ցուցանեմք. եթէ Մարդ Յիսուս Քրիստոս, որ ետ զանձն փրկանս, եւ եթէ Յիսուս Քրիստոս որ մեռաւն, մանաւանդ թէ յարուցեալ իսկ է, եւ թէ զՅիսուս Քրիստոս զխաչեցեալն խնդրէք. եւ թէ խաչեցաւ ի մերմէ տկարութենէ՝ եւ թէ Մարդ Յիսուս Քրիստոս, եւ այլ այսպիսիս՝ ուր ինքն Յիսուս Քրիստոս ըստ խոնարհութեանս մերոյ ցուցեալ լինի։ Արդ՝ նախ զայս հարցանեմք. մինչ այդպէս զՈրդի երկուս ասել սիրէք, եւ զԵրրորդութիւնն չորրորդութիւն մտացածին ստեղծանէք։ Յիսուս Քրիստոս անուանդ, ուր ինքն ըստ մեր զկիրս նշանակէ, զի ըստ տընտեսութեանն կամ սքանչելագործութեանն, առ նըմին այլ ոք Որդի Աստուծոյ կամ Բան Աստուած գտանէք. եւ թէ ո՞րպէս ի վերայ մարմնոյն լոկ որոշեցէք ասել զՅիսուս Քրիստոս միշտ եւ կամ մի՛ ուրեք կարիցէք ցուցանել սոսկ ի վերայ մարմնոյն։ Իսկ եթէ լսիցես մարմինն Քրիստոս է, մի՞ թէ օտար իցէ այս ձայն յայնմանէ, որ ասէն թէ՝ Բանն մարմին եղեւ. այլ քա՛ւ, ոչ զանազան բայց մի։ Եւ թէ ոչ այսպէս կարծես՝ լո՛ւր. ըզՔրիստոս գիտել մարմնով ասեն գիրք, եւ Քրիստոսի չարչարելն մարմնով. արդ՝ եթէ ըստ քո ասելոյդ Յիսուս Քրիստոս մարմնոյն ասիւր, նորին մարմնոյ այլ մարմին որպէ՞ս էր արդեօք՝ մարմին ի մարմնի եղեալ, մի՛ որով չարչարէրն եւ միւս մարմին Քրիստոսն որ ի ներքսն։ Եւ այսպէս իմանալն ի պառաւանց առասպելս ձգեալ տանի։ Այլ մի՛ լիցի այդպէս իմանալ զքարոզութիւն առաքելոցն. զի որ ի ձէնջ կամեցեալ բռնաձգել ի վերայ մարմնոյն զՅիսուս Քրիստոս անուանդ՝ նոյն ցուցաւ ի մեծութեան ականատեսից Որդի Աստուծոյ եւ



Բան Աստուծոյ. այսչափ ինչ գրեցաւ, ասէ, զի հաւատայցէք, թէ Յիսուս Քրիստոս է Որդի Աստուծոյ. եւ թէ՝ Որ փոխեաց զմեզ յարքայութիւն Որդւոյ սիրելւոյ իւրոյ՝ որով ունիմք զքաւութիւն արեամբ նորա՝ զթողութիւն մեղաց մարմնով նորա, որ է պատկեր աներեւութին Աստուծոյ. եւ թէ՝ Քրիստոս ըստ մարմնոյ, որ է ի վերայ ամենայնի Աստուած. եւ թէ՝ Որ էրն ի սկզբանէ, զորմէ լուաքըն, որում ականատեսն իսկ եղաք, ընդ որ հայեցաքն, եւ ձեռք մեր շօշափեցին զԲանն կենաց։ Թողից ասել զլլութիւն այսպէս բանից, որ ի նոր կտակարանս, վասն խօսից բազմանալոյ։

Ապա հաւաստագոյնս տեղեկացի՛ր, թէ Քրիստոս Յիսուս զԲանն Աստուած մարդկացեալ կոչեն գիրք, որպէս եւ սուրբ ժողովն որ ի Նիկիա ասացին, թէ ծնաւ կատարելապէս ի Մարիամայ հոգւով՛ ըստ այնմ, թէ հոգի երեսաց մերոց Տէր Քըրիստոս, եւ որով հոգի եւ միտք եւ ամենայն մարդկայինս, եւ ծնեալն կոչեցաւ Յիսուս Քրիստոս։ Եւ Պօղոս ասէ. Ոչ զայլ ոք ի մտի եդեալ ձեզ գիտել, բայց միայն զՅիսուս Քրիստոս եւ զնոյն խաչեալ. ապա մի՛ մեռեալ եւ մի՛ իմանալի ի ձէնջ զի՞ առասպելաբանի։

Բայց եւս առաւելագոյն տարօրէնութիւն մեկնութեամբս արարելով ի ձէնջ իմանի, թէ վասըն երկուց եւ մի բնութեանց Քրիստոսի ի նախագրին օրինակեցաւ. Հրամայեցաւ, ասէ, երկուս հաւս առնուլ, եւ ամանս խեցեղէնս եւ փայտ նոճի, եւ կարմիր, եւ զոպայ, եւ զենուլ զմի հաւն յաման խեցեղէն՝ որ գուշակեցաւ ի ձէնջ այն մարդոյն բնութիւն, եւ զմիւսն՝ թացեալ յարեան հաւուն սպանելոյ, դիցեն ի վերայ զփայտն, եւ զայլսն եւ արձակեսցեն ի դաշտսն՝ այն զԱստուծոյ բնութիւն ասացէք։

Եւ այժմ քաջ միտ դի՛ք ձերում մեկնութեանդ։ Պօղոս գրէ Եբրայեցւոցն՝ յիշեցուցանելով նոցա զխորանն եւ զնորին զկահ եւ զժողովուրդն, եւ զարեան սրսկումն ի վերա՛յ նոցա, եւ ասէ, թէ ամենեքեան արեամբն սրբէին, զի վասն մաքրելոյ արիւնն ցանիւր զնոքօք։ Ապա եւ ըստ ձեր ապիրատն լեզուի՝ բնութիւն Աստուծոյն Բանի ի մարդոյն բնութիւն շրջեցաւ, եւ նորա արեամբն թացեալ ի նմանէ պիտոյ եղեւ առնուլ զանապականութիւն եւ զՀոգւոյն սրբոյ զմաքրութիւն, նմա որ յէութենէն Հօր էր։ Եւ այսպիսի բանք ո՞ւմ ոչ շարժեսցեն արտօսր՝ զկարծիս տալ նմա իւր զփրկութիւն ի մարդոյն հայցել։ Նոյնպէս եւ վասն նոխազացն թէ որ զենաւն մարդոյն բնութիւն էր եւ կենդանւոյն, յորոյ ձեռս ի վերայ եդեալ եւ զանօրէնութիւնս եւ զմեղս ի վերայն ասացեալ եւ նորա յինքն առեալ՝ Բանին Աստուծոյ բնութիւն էր։ Ապա եւ ըստ ձեզ աստուածութեամբն իւրով զմեղս մեր վերացոյց։ Եւ ստեալ եղեւ Պօղոս, որ ասացն թէ զմեղս մեր մարմնով իւրով վերացոյց ի խաչափայտին։ Եւ զորոյ զէութիւնն ի վշտաց վերագոյն կամիք ասել՝ զայն էութիւն ընդ մեղօք եւ ընդ ամբարշտութեամբ անկեալ ասացէք. այլ քա՛ւ եւ մի՛ լիցի այդպէս զարհուրելիս իմանալ ի Ղեւտականին գրեալսն։

Քանզի երկուք հաւուքն ասելով միովն նշանակեալ լինի Որդին Աստուծոյ մարդացեալ, եւ միովն մեք մարդիկս։ Արդ՝ սպանաւ Որդին Աստուծոյ մարդացեալ՝ իմ մահուամբն, որպէս վերագոյնըն ասացաք, եւ արեամբ նորա թացեալ մեք գըտաք զփրկութիւն, եւ յայնժամ ստացաւ ի մեզ անապականութիւն՝ որ է նոճի անփուտ փայտն, եւ զոպայն՝ որ է ի Հոգւոյն սրբոյ ի մեզ մաքրու-



թիւն, եւ կարմիրն՝ զշնորհս զորդեգրութեանն Աստուծոյ. եւ կատարեցաւ բան մարգարէին, թէ անդ եղիցի ուրախութիւն հաւուց, այսինքն մարդկանս։ Նոյնպէս եւ նոխազն, յորոյ վերայ մի հաւն էր, զենաւ։ Արդ՝ Քրիստոս Յիսուս Տէր զենաւ (ըստ) մարմնապէս, բազում անգամ ասացաք, եւ արձակման վիճակն անկաւ ի վերայ մեր, զի վիճակեալ մեզ ընդ ընտրեալս մասն մեղացն թողութեանն՝ եւ առնու նոխազն զանօրէնութիւն որդւոցն Իսրայէլի, առաքելովքն առաջնորդովքն եկեղեցւոյ, որչափ նոցա այն շնորհեցաւ ընդ ոմանց զհամարսն տալ, եւ որոց կամին յետ մկրտութեան թողուլ զմեղս։ Իսկ անապատն եկեղեցի հեթանոսաց, աւազանաւն ծաղկեալ, զոր Եսային ասէ. Ցնծասցէ անապատն, եւ ծաղկեսցէ որպէս շուշան անապատն Յորդանանու։ Եւ այս ո՞չ թուի քեզ Եկեղեցի առաքելական յորում մկրտութիւն է։ Բայց թէ ի վերայ Բանին մարմնացելոյ կամի ոք ասել, մի եւ զնոյն պարտի իմանալ, զՏէրն նշանակեալ վիճակաւն զենանի զիմըն, մի եւ զնոյն յարուցեալն, որ բարձիչն եղեւ դժոխոցն խայթոցաւն, եւ զընդ աջմէ Հօր նստեալըն։ Ապա եւ երկուս իմանալ զնա, ըստ երկուց նոխազացն, յանաստուածիցն դասու կացուցանէ։

Բայց առաջիկայ բանս թուի մեզ իմանալ յաւանդութենէ առաքելոցն ի բաց փոխումն. զի նշանակեալս ասէ այսպէս, թէ՝ զսուրբ Հոգին՝ զմիայն զհզօրն, զթագաւորն թագաւորաց եւ զՏէրն տէրանց, որ միայն ունի զանմահութիւն բնակեալ ի լոյս անմատոյց, զոր ոչ ոք ետես ի մարդկանէ, եւ ոչ տեսանել կարող է՝ ձեզ յայտնի լիցի, եւ մեք առանց չարչարանաց եւ մահու ասեմք։ Արդ՝ ըզսուրբ զՀոգին եւ զՀայր Աստուած ոչ մարմնացեալ ասել քրիստոնէից՝ յայտնի է ամենեցուն, որպէս

ցուցաքն, եւ թէ ասէ ոք՝ նզովեալ է։ Բայց ձեզ զայդ ասել զԱստուածն Բանէ առանց չարչարանաց եւ մահու զնա ցուցանելն զեկոյց։

Արդ՝ որպէս ասէքդ, թէ ոչ երեւեցաւ, եւ ոչ չարչարեցաւ, եւ ոչ մեռաւ· է զի եւ ոչ մարդոյն զոր ասէք ի կուսէն ծնելոյ՝ Աստուածն Բան ի յարելութիւն ոչ եղեւ· քանզի որպէս ա՛յն ոչ, եւ ա՛յս ոչ· արդ զսուրբն զայն կոյս աստուածածին զի՞ ասէք՝ զի նորա ուրեմն սոսկ մարդ լինի ծնեալ, երեւելի, չարչարելի եւ մահկանացու, եւ հրէիցն բարբառոյ առ ի ստուգել՝ թէ Դու մարդ ես եւ զանձն քո Աստուած առնես։ Այլ եւ ուրեմն ի մահ մարդոյ մկրտիք, քանզի ի նորա մահն մկրտիմք, եւ զմարդ պաշտեն երկնաւորք եւ երկրաւորք եւ սանդարամետականք, ի ծունր կրկնելն Յիսուսի Քրիստոսի։ Ստեցին ուրեմն առաքեալքն՝ զնա գոլ ասելով Որդի Աստուծոյ, եւ մանաւանդ ի ձեր ասելոյդ· եւ Փիլիպպոս վրիպեցոյց զներքինին Եսայեաւ, թէ իբրեւ զոչխար ի սպանդ վարեցաւ, որոյ զազգատոհմն ոչ ոք կարէ պատմել· եւ նա զհաւատալն բարբառէր, թէ Յիսուս Քրիստոս է Որդի Աստուծոյ· եւ ինքն զնոյն այլոց քարոզեաց։

Բայց ոչ ստեցին մարգարէքն եւ առաքեալքն, այլ այնք, որ ի ճշմարտութենէն թիւրեալք են։

Քանզի Որդի Աստուծոյ մարգարէիւք ասէ, թէ գտայ այնոցիկ, որք զիս ոչ խնդրէին, յայտնի եղէ յայնց, որ զինէն ոչ հարցանէին· եւ Երեւելի ի Հրէաստանի Աստուած, եւ Աստուած մեր յայտնապէս եկեսցէ· եւ սա է Աստուած մեր, ընդ որում ոչ համարեսցի այլ ոք, որ եգիտ ամենայն զիմաստութեան ճանապարհս, եւ ետ զնա Իսրայէլի, յետ այսորիկ յաշխարհի երեւեցաւ եւ ընդ մարդկան շրջեցաւ· եւ եթէ կոչեսցի անուն նորա Էմմանուէլ,



այսինքն ընդ մեզ Աստուած· եւ Սիմէոն՝ թէ Տեսին աչք իմ զփրկութիւն Քո, զլոյսդ յայտնեալ ազգաց· եւ Յովհաննէս, թէ Կեանքն յայտնեցան եւ տեսաք եւ վկայեմք, զի որ էրն առ Հօր եւ երեւեցաւ մեզ։ Եւ դարձեալ՝ զԱստուած ոչ ոք ետես, բայց Միածին Որդին որ է ի ծոց Հօր, նա պատմեաց մեզ· որ ասէրն, թէ Ելի ի Հօրէ եւ եկի յաշխարհս եւ թէ՝ Որ ետեսն զիս՝ ետես զՀայր իմ, եւ ամենայն իսկ մարգարէական եւ առաքելական ձայնք զնոյն պատմեն։

Արդ յայտնի լիցի ձեզ, թէ երեւեցաւ· քանզի մեք նոցա քաջ հաւատամք, եւ սոքա այսպէս պատմեն։ Եւ որպէս յիշատակեցաւ ի մէնջ, չարչարիլ եւ մեռանել՝ սակաւուք եւ այժմ ցուցցուք։ Ի վախճան աւուրցս խօսել Որդւովն, ասէ, զորոյ մեծութիւնն յաջորդք բանիցն ցուցանեն· Որդւովն խօսեցաւ Հայր, եւ Աստուածորդին վասն ամենեցուն զմահ ճաշակեաց, եւ որ ի կերպարանս Աստուծոյ էր՝ նա հնազանդ եղեւ խաչի եւ մահու· եւ զի մի յերկարաբանեսցուք, ինքն չարչարելովն, որով զփորձն էառ՝ նա է փորձանաւորաց օգնական եւ Աստուած, եւ մեք կարացեալքս զնա տեսանել· այսպէս եւ չարչարեցաւ, եւ որով եւ ի դժոխս յայտնեցաւ ոգոցն՝ նովիմբ եւ մեռաւ· եւ Աստուած ըստ իս եղեալն, եւ ետ պատերազմ եւ պարտեաց զմահ եւ զապականութիւն՝ զմեր թշնամին· աւերեալ զդժոխըն, որպէս ասացաքն։ Եւ ըստ որում յառաջ քան զչարչարանսն մարդկան երեւեցաւ՝ այնպէս յայտնեցաւ եւ հրեշտակաց· եւ վասն այնորիկ նոյն վերացելոյն փառօք սպասաւորեալ ստորնեայքս՝ բարբառէին ի վերինսն, առ իշխանութիւնս եւ պետութիւնս՝ համբառնալ զդրունսն ի վեր, զի մտցէ թագաւորն փառաց· որք զարմացեալք վասն թանձրացելոյն մարդկային մարմնովն՝ հարցանէին· Ո՞վ է

սա թագաւոր փառաց, եւ անդէն լուեալ թէ՝ Տէր հզօր զօրութեամբ իւրով, Տէր հզօր ի պատերազմի. եւ իբրեւ անհնազանդեալ իմն իշխանութեանցըն, եւ իբր թէ յերկրէ ի վեր երթալն աստուստ նոյն հրաման, եւ իւրեանց հարցումն լսէին դարձեալ զնոյն ինքն է որ թագաւորն փառաց։ Թուի ինձ թէ եւ զվիրացն անդ ոմանք հարցանէին, թէ զի՞նչ են վէրքդ ի ներքոյ ձեռացդ. յորմէ պատասխանի եղեալ՝ Զորս վիրաւորեցայ, ասէ, ի տան սիրելւոյն, որոյ տունն մեք իսկ եմք։

Արդ ո՞չ զարմանայցես ընդ յայտնի պատմութիւնս Հոգւոյն սրբոյ, եւ ի Պօղոսէ զասացեալսն վասն բազմաստուածութեանն եւ կռապաշտութեանըն ի բաց բառնալոյ՝ այնու ուրանաս զմարդկանալն Փրկչին մերոյ, ապա թէ ոչ՝ հաւանել այսմ ձայնի, ի բաց հալածեսցի ի մէնջ մարդապաշտութիւն եւ չորրորդութիւն, եւ միշտ աստուածպաշտութիւն պատուեսցի երկրպագութեամբ սրբոյ Երրորդութեանն, եւ մի լիցի ի մահ մարդոյ մկրտել մեզ, այլ Աստուուծոյ մարդացելոյ։

Իսկ զկնի այսպիսի խոստովանութեան ասացէք՝ իջուցանել զնա ի փայտէն եւ աստուածընկալ գերեզմանի դնել, եւ իւր զինքն յարուցեալ։ Արդ, որպէս ասացէքն, թէ մեռեալն Աստուած չէր՝ գերեզմանն աստուածընկալ ո՞րպէս էր. եւ կամ մինչ մեռաւն ո՛չ ինքն՝ զիա՞րդ յառնէր. եւ ահա զասացեալդ զեղխս եւ ոչ յայտնիս՝ ասելի է։ Բայց ոչ նուազ ըստ այլոցդ զարմացումն մեզ եւ աւարտման խօսք բերեն, թէ գայ դատել զկենդանիս եւ զմեռեալս, եւ զդատաստանս իւր ոչ յայտնեաց ումեք։ Արդեօք ո՞չ սպառնացաւ հրով այրել զհերձուածողս եւ զամենայն չարագործս՝ ուր խաւարն եւ անքուն որդնն, զոր ի սկզբանէն պատրաստեաց



սատանայի։ Եւ արդ՝ զի զի՞նչ ըստ կամաց եւ մտաց գնացելոցն զանհաւատութեանն հաւատասցուք, եւ խառնակ գործովք պղծութեան մարդիկ վարեսցին. զի որպէս ասէքդ՝ մինչ զդատաստանն ոչ յայտնեաց՝ չիմանի զիւրաքանչիւր գործոց առնուլ չարին եւ բարւոյն, եւ ահա օրինադրութիւնդ լինի առաջնորդ լինել ի խաւարն արտաքին։ Այլ ո՞վ այդպէս յայտնեաց զդատաստանս իւր՝ Որդին Մարդոյ, զոր ընդ աջմէ Հօրն ետես Ստեփանոս. ի վերայ ուղղահաւատիցն եւ բարեգործաց՝ զարքայութիւնն իւր, եւ խոտորելոյ ի հերձուածս եւ պղծեալ ի գործս ըստ սատանայի՝ զնմա պատրաստեալ զգեհեանն, եւ ինքն է թագաւոր, որոյ արքայութեանն վախճան ոչ գոյ։

Բայց հաւանեա՛ ընդ իս ասել, մանաւանդ թէ ընդ Պօղոսի՝ անքննելի զդատաստանս նորա. եւ այսպիսի ինչ է ասելս՝ հրով ասաց, եւ խաւարաւ, եւ անքուն որդամբ տանջել ընդ սատանայի զմեղաւորս. եւ հրոյ բնութիւն լուսաւոր իցէ, իսկ նա խաւարային, եւ ոգի՝ հրոյ տանջման անըմբռնելի։ Իսկ սատանայ ոգի է եւ տանջի նովաւ ընդ մարմնաւորս, եւ որդն կենդանի է մարմնաւոր, յորմէ քուն եւ հանգիստ բարձեալ՝ ընդ հրով վրէժխնդիր է, միշտ ուտելով զայնս որ անդրն։ Իսկ հուր այրիչ վրիժապարտիցն եւ պարարիչ որդանն, եւ այլք այսպիսիք, յորմէ յաղթին միտք մարդոյ։ Իսկ մինչ դատաստանք նորա եւ գործք անքննելի են՝ ո՞րչափ առաւել դատաւորն եւ կազմիչն ամենայնի։ Բայց զդատաստանս իւր ոչ յայտնեաց, զոր ի ՃԽԷ սաղմոսին ասաց՝ առ օրինաւորս եւ հեթանոսըս այն պատշաճեցաւ։ Արդ՝ զանքննելին ոչ քննեսցուք, քանզի անքնին, այլ մարգարէին ձայնակցեսցուք, ծածուկքն Տեառն Աստուծոյ՝ յայտնիքն

մեզ։ Եւ այսպէս կարողութիւն հաւատոյն ի մեզ պնդեսցի ընդդէմ կալ ոսոխին, որ ի սկզբանէն դըժնդակութիւնն բռնաձգող ի վատ ամբարշտութիւն՝ ի բաց մղեսցի ի հօտէ Քրիստոսի. զի զնշանսն որոշեալ խնդրողք Հրէականք են, որոց գայթակղութիւնն դիւրաբերելի, եւ մարդկային իմաստութեամբ հասու լինել կամեցողք նմա՝ հեթանոսականք, զորս յիմարութիւն ըմբռնէ։ Բայց յԵկեղեցւոյ Աստուծոյ միշտ քարոզի եւ քարոզեսցի խաչեալն Քրիստոս. եւ սա չէ դիւրալպիրծ, կամ վրիպեցուցանող շաւիղ ի սուրբ Երրորդութենէն, այլ առաքելոյ ձայնակից առնէ եւ նորին աշակերտս զմեզ գործէ։

Եւ դու բարեաց ցանկացողդ, վերացո՛ ընդ իս սրագոյն զհայեցուածսդ ի սահմանս սրբոյ Երրորդութեանն, զոր Պօղոսն վարդապետեաց. քանզի նա մեզ զայն աւանդեաց, զոր եւ ինքն ընկալաւ, եւ գրէ զնոյն Հռովմայեցւոց. Աղաչեմ զձեզ, ասէ, ի ձեռն Տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի եւ սիրով Հոգւոյն՝ պատերազմակից լինել ինձ յաղօթս առ Աստուած, Աստուած եւ Տէր Յիսուս Քրիստոս, եւ Հոգին սուրբ՝ յայտնի զսրբոյ Երրորդութեանն ուսուցեալ զանունն։ Եւ դարձեալ Կորնթացւոցն. Շնորհք Տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի, եւ սէրն Աստուծոյ, եւ հաղորդութիւն Հոգւոյն սրբոյ։ Եւ Եփեսացեացն. Օրհնեալ է Աստուած եւ Հայր Տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի, եւ ի վերայ եբեր թէ՝ որով կնքեցայք Հոգւովն սրբով։ Եւ առ Տիտոս, թէ Մարդասիրութիւն Փրկչին մերոյ Աստուծոյ յայտնեցաւ, եւ նորոգութիւն Հոգւոյն սրբոյ, զոր եհեղ ի մեզ ի ձեռն Տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի. եւ գրէ իսկ, թէ՝ ամենայն առաքելական կտակարանք լի են այսու բարբառով, յոր անուն մեք



հրաման առաք մկրտել եւ փառաբանել զսուրբ Երրորդութիւնն, միով երկրպագութեամբ՝ զնոյն առաքելոցն մի աւետարանութիւն սերմանեաց երիցըս երանեալն սուրբ Գրիգորիոս՝ Թադէոսեան վիճակիս։

Ապա թէ՝ ընդէ՞ր տամք տեղի Յերոբովամու պատառել զեկեղեցի Աստուծոյ, զոր Որդին Աստուծոյ ժողովեաց զոչխարս ի մի գաւիթ. մի՛ ոք ի մէնջ երեւեսցի Նաբաթ եւ Աբիութ՝ զօտար հուր մատուցանելով անհաւատարմութեամբ, զի մի հրատոչոր լիցուք։ Զմեզ վերստին զերկնողն ի Քրիստոս մի՛ անարգեսցուք այլաձեւով զհաւատ, զի մի զնոյնեանն առ Քանան զանէծսն յորոշողէն զօդիսըն ի յայծեացն առցուք մեք. քանզի ընդ մեզ է ձայնդ եւ քեզ, Մխիթա՛ր, որ կացեալդ ես գլուխ Ամարասու եկեղեցւոյն եւ համբաւես, եթէ Գրիգոր եղեալ է հիմն, զնոյն հաւատն ունող, եւ զաւակ բարեխօս առ Քրիստոս Աստուած՝ վասն մեզ ժառանգակից նմա եղանիլ, մի՛ զուցէ լուիցեմք, թէ դուք զաւակ Քանանու էք ծառայելով մեղաց, եւ ոչ Յուդայի խոստովանողի՝ եւ հրամայիցիմք կտրել ընդ մէջ եւ զմասն եւ զբաժին ընդ կեղծաւորսն առնուլ։

Թէ որդիք այնց հարանց եմք, որք անզատանեն յառաքելոցն, զհաւատս պինդ կալցուք, եւ մի բուռ ընդ ջուր խառնելով՝ ի նմանութիւն անխարդախ կաթինն արասցուք. զի որոյ անուամբ մեք պարծիմք, նա իսկ չարախօս լինի զմէնջ առ երկնաւոր Հայրն։ Այլ եւ ոչ յոլովութեամբ ամբոխից հրապուրեսցուք, բայց ըստ առակողին խրատու՝ մի մտել ընդ բազումս ի չարիս։ Ընդ ութ ոգիսն տապանափակ լինել ջանասցուք՝ ի բազմամբոխն ձգողաց զջրահեղձոյցն պատուհաս. ընդ Ղովտայ զեր-

ծանել ի հրակէզն անձրեւաց՝ ընդ երկուսն ի պարգեւականն մտանել յաշխարհ, ի վեց հարիւր հազարն տապաստելոց։ Քանզի եւ այժմ ցանգ բարբառի հովիւն զլերինս հնչեցուցանելով, ասէ. Մի՛ երկնչիր հօտ փոքրիկ, զի հաճեցաւ Հայր ձեր տալ ձեզ զարքայութիւն երկնից. եւ զյամառեալսն յայսցանէ յորդորեսցուք ի նոյն։ Բայց մեք որպէս ընկալաքն երկրպագութեամբ պատուել զսուրբ Երրորդութիւնն՝ առանց թերահաւատելոյ ունիմք, եւ կալցուք մինչեւ յաւիտեանս՝ խորշելով յամենայն եղբօրէ, որ յայս ստահակիցէ։





# ՁԳ

## ՏԵԱՌՆ ԱԲՐԱՀԱՄՈՒ ՀԱՅՈՑ ԿԱԹՈՒՂԻԿՈՍԻ ԽՈՍՏՈՎԱՆՈՒԹԻՒՆ

Խոստովանիմ որպէս ուսուցին զմեզ սուրբ գիրք, եւ ճշմարիտ վարդապետք եւ հարք, ՅԺԸ, որ ի Նիկիա, եւ ՃԾ որ ի Կոստանդինուպօլիս եւ Մքն, որ յԵփեսոս, որք միաբանութեամբ հաստատեցին զհաւատսն, եւ զսահմանս անշարժելի զոր եդին՝ ՅԺԸ հարքն սուրբք որք ժողովեալք ի սուրբ Հոգւոյն ի ժամանակս իւրեանց, հալածեցին զմոլորեցուցիչսն, որք են նման գայլոց ապականչաց ի հօտէն Քրիստոսի։ Եւ վասնզի եմք մեք որդիք եւ ժառանգք հաւատոց նոցա, զգեցեալ զնախանձ նոցին եւ զօրացեալ հաւատով, Նզովեմք զամենայն հերետիկոսս, զառաջինսն, եւ զմիջինսն, եւ զվերջինսն, որպէս նոքա նզովեցին։

Նզովեմք զԱրիոս, վասնզի հայհոյեաց եւ ասաց՝ եթէ որդի չէ ի բնութենէ Հօր։

Նզովեմք զՄակեդոն, որ ասաց՝ եթէ Հոգի Սուրբ նուազ է քան զՀայր եւ զՈրդի։

Նզովեմք եւ զՊօղոս Սամոսատացի, որ ասաց թէ Յիսուս մարդ էր, եւ իմաստութեամբ զօրանայր եւ զարգանայր։

Նզովեմք զՄանի, եւ զՄարկիոն, եւ զԲարդա-

------

Բնագիր ԺԶ. էջ 32 – 33։ Պարբերութեանց բաժանումը մեր կողմէ։

ծան, եւ զԵւտիքէս, որք ասէին՝ թէ առաչօք եւ նմանութեամբ եւ կարծեօք երեւեցաւ Որդին Աստուծոյ յաշխարհս, եւ ոչ առ ճշմարտութեամբ մարմին եւ հոգի ի սուրբ կուսէն եւ յԱստուածածնէն։

Նզովեմք զԱպողինարիս, որ ասաց՝ թէ մարմին առ Աստուած ի սուրբ կուսէն, եւ հոգի եւ միտք ոչ առ։

Նզովեմք եւ զամպարիշտն Նեստոր, որ հայհոյեաց եւ ասաց՝ թէ Մարիամ չէ Աստուածածին այլ մարդ՝ արարեալ եւ ստեղծեալ, եւ հասանելի եւ ապականացու ծնաւ։

Նզովեմք եւ զամպարիշտն Թէոդորա, եւ Թէոդորոս, եւ Թէոդորիտոս, եւ զՀիբա, եւ զԱկակ Պարսիկ, եւ զԲարծումա, եւ Ծիհնա, եւ զպիղծ կանոնսն նոցա, եւ որք հաւանեցան եւ որք հաւանին չար աղանդոյն Նեստորի, որ ամպարշտեցաւ եւ ասաց՝ զօրութեամբ շնորհաց արժանի եղեւ Քրիստոս լինել բնակութիւն Աստուծոյ Բանին։

Նզովեմք եւ զժողովն Քաղկեդոնի, եւ զտոմարն Լեւոնի, որք ասացին երկու բնութիւնս, եւ երկու առաջնաւորութիւնս, եւ երկու դէմս Քրիստոսի զկնի միաւորութեանն։

Նզովեմք զՍեւերէ՝ եւ զգիրս նորա զապականիչ. վասնզի արար հերձուածն ընդ Աստուած եւ ընդ մարմին իւր զկնի միաւորութեան, եւ ասաց՝ թէ ապականացո՛ւ էր մարմինն Աստուծոյ իբրեւ ըզմարդոյ։

Արդ ամենայն վարդապետք զգուշացուցին զմեզ, այսինքն, Գրիգորիոս, եւ Բարսեղ, եւ Աթանաս, եւ Կիւրեղ հանդերձ ամենեքումբք։ Ուսուցին յայտնապէս ամենեցուն, որ ոչ հաւատայ՝ թէ Աստուած ծնաւ ի Մարիամայ, եւ չարչարեցաւ, եւ



խաչեցաւ, եւ մեռաւ վասն մեր՝ եւ յարեաւ, ել յերկինս, եւ նստաւ ընդ աջմէ Հօր իւրոյ, եւ գալոց է դատել զկենդանիս եւ զմեռեալս, որոյ արքայութեան ոչ գոյ վախճան, եղիցի նզովեալ։

Վասն այսորիկ փառաւորեմք՝ սուրբ ես Աստուած, սուրբ ես հզօր, սուրբ ես անմահ, որ խաչեցար վասն մեր՝ ողորմեա մեզ։ Ի վերայ այսր հաւատոյ՝ յաւելումն ոչ ընդունիմք, վասնզի ասաց առաքեալ, եթէ մեք կամ հրեշտակ յերկնից աւետարանեսցէ ձեզ աւելի քան զոր լուարուքն, նզովեալ լիցի։



# ՁԴ

## ԹՈՒՂԹ ԿՈՄԻՏԱՍԱՅ ՀԱՅՈՑ ԿԱԹՈՒՂԻԿՈՍԻ Ի ՊԱՐՍՍ

*Ամենայն բան ջանիւ,(1) ասէ ուրեմն Ժողովողըն ի խօսն իւրում, իմաստունն Սողոմոն, մանաւանդ խօսել բանս մտաւորս եւ լսել յումեքէ զհանճարով ասացեալն, որք են աշխարհական գրօսանաց եւ ցնորից երկրի խօսք՝ ի մարդկանէ ասացեալք։ Որչափ եւս առաւել ի Գրոց սրբոց բերանովք արժանաւոր մարդկան՝ սպասաւորաց պատգամացն Աստուծոյ, ճառք գտցին ապաշխարութեամբ լի լսողաց իմանալ, քան թէ սոցա ասել՝ Հոգւոյն շնորհիւ։ Վասն որոյ կարօտանամ յոյժ շնորհիւ Քրիստոսի ես ասօղս, զոր մարդոյ բերանով ոչ է արժան ումեք խօսել, բայց թէ բերան Աստուծոյ ոք կարասցէ լինել՝ զպատուականն հանելով յանարգէ, եւ կամ որպէս միւսն, թէ եդ զբերան իմ սուր սուսեր.(2) ապա համարձակեսցի խօսել հրամանաւ Տեառն եւ ոչ լռել, զի ժողովուրդ բազում լիցի Քրիստոսի։*

*Եւ մանաւանդ յոյժ դժուարին է լինել համակաքաղ ի հունձս եւ ճռաքաղ ի կութս՝ զայլոց յառաջագոյն զբանս գրոց ասացեալ մեծաւ քննու-*

------

*Բնագիր ԺԵ. էջ 531 - 536։ Հմմտ. Ա. էջ 212 - 218։*

*(1) Ժող. Ա. 8։*

*(2) Օր. որպէս սուսեր սուր։*



*թեամբ, ոմանց թերեւս եւ ի գիրս տպաւորեալ է զիմաստսն, վասնզի բազմաժամանակեայնն եւ հինն որպէս գինի ախորժելի է յարբմունս քան զնորս. նոյնպէս եւ տարրացեալ զբանն զբազում ժամանակս ի լսողացն միտս, մանաւանդ զի եւ ոչինչ սխալանք ուղիղ հաւատոյ գտանիցին յառաջագոյն ասացեալն, եւ ոչ աննշանից ոմանց կամ սակաւուց վարդապետութիւն բանից իցէ լինել։ Իսկ իմ յաստուածայինսն թեւակոխելով մտածութիւնս՝ զյառաջաբերութիւն բանիցն ընծայեցից, եւ զայս ոչ նորոգաձեւութեամբ, յաղագս վերին եւ լուսաշաւիղ գանձուն պատուականի, որ է փրկութիւն աշխարհի, թէպէտ եւ յաման ծածկեալ ըստ Առաքելոյն ձայնի,(1) վասնզի չէ ծագեալ առ նոսա լուսաւորութիւն աւետարանի փառացն Քրիստոսի, բայց ո՛չ թաքչի ի սիրողաց իւրոց, Հասանէ առ ցանկացօղս իւր,(2) զի զմտաւ ածելով զնմանէ՝ կատարեալ իմաստութիւն է աւարտել զանուն նորա ուղիղ հաւատովք. արմատ անմահութեան ըստ Սողոմոնեան բանին, առաւել որ ի մահ Որդւոյն Աստուծոյ կենդանացեալք հաղորդեցան անճառաբար, զՀոգւոյն սրբոյ զյորդեգրութեանն շնորհս յինքեանս բերելով։*

*Գրեալ է, թէ իմաստունն ի ժամանակին յայնմիկ լռեսցէ, բայց այժմ ժամանակս զիս պահանջէ վասն արտաքնոցն, որք ոչ են յայսմ գաւթէ, եւ համարձակութիւն տայ, թէ Գնացէք մինչ զլոյսն ունիք(3) ի բարեաց գործոց առաքինութիւնս ան-*

------

*(1) Բ. Կորնթ. Դ. 4։*

*(2) Իմաստ. Ջ. 14։*

*(3) Յովհ. ԺԲ. 35։*

խափան, եւ թէ Յամենայն ժամ պարտ է ի բարիս նախանձաւոր լինել, եւ դարձեալ՝ Խօսեցայ զվկայութիւնս Քո առաջի թագաւորաց եւ ոչ ամաչեցի.(1) առանց դանդաղանաց մեք եղիցուք փոխանակ բազմաց սատարութիւն աղօթից իմոցս հօտի, քաջալերեալք հասցուք ի կատարումն բարեաց, եւ ի նշանակեալ նպատակ երանելոյն Պօղոսի, որոյ պարծանք՝ խաչն, եւ ազատութիւն՝ յերկինս, եւ կատարիչն՝ Յիսուս: Եւ դարձեալ, թէ Յիշեցէք զառաջնորդս ձեր, որք խօսեցան ձեզ զբանն Աստուծոյ, հայեցեալ յելս գնացից նոցա, նմանօղք եղերո՛ւք հաւատոցն նոցա.(2) եւ դարձեալ, թէ Նախանձաւոր լերո՛ւք շնորհացն որ լաւն են(3):

Եւ մի՛ տարրասցի յիմս խորհրդեան լռութեամբ պատուել զսակաւ բնութիւնս իմ, եւ մի՛ յուլացեալ լքայց զտգիտութիւնս բաղբաղելով, եւ մի՛ քան զեդեալն օտարաձայնեալ, այլ որպէս բանս է՝ թէ Հաստատուն հիմն Աստուծոյ կայ եւ ունի զկնիքս զայս: Քանզի գիտեմ յո հաւատացեալն եմ, եւ հաստատեալն եմ, թէ կարող է զաւանդն իմ պահել, եւ զդաւանութիւնս ուղղափառութեան հաւատոյ. զի ո՛չ նոր սքանչելիք, ուր զի եւ հովուացըն ընդունել շնորհս մարգարէութեան, եւ ձըկնորսաց լինել աւետարանիչ բանին Աստուծոյ, եւ Սարեփթուհի ի սովի կերակրի մարգարէին, եւ բանի եւ աղբիւր ջրոյ կենդանւոյ անձին Սամարուհւոյ:

Ունիմ եւ յոյս քաջալերութեան յԱստուածաշունչ գրոց յարմարական տեսողութեամբ ըստ զա-

------

(1) Սաղմ. ՃԺԸ. 46:

(2) Եբր. ԺԳ. 7:

(3) Ա. Կորնթ. ԺԲ. 31:



նազան դիմաց, ընդ միտս ածելով զայնոսիկ, որք այսպիսեօքս վարեցան, առ որս առատապէս զեղան շնորհք մարգարէութեանն Քրիստոսի. քանզի նոյն Տէր է բաւական բոլորեցուն, որ կարդան առ նա: Պարգեւեսցի եւ ինձ բան ի Բանէն, բանալ բերանոյ իմոյ, խօսել զխորհուրդն Քրիստոսի, պապանձեցուցանել զթշնամիսն ուղղափառ հաւատոյ: Քանզի են ոմանք, ըստ աւետարանին պատմութեան, ունելով զգեստս գառանց, եւ զլեզուս իւրեանց սրեալ ի հայհոյութիւն սուրբ Երրորդութեանն, յորմէ հրաժարեցոյց զմեզ Որդին Որոտման՝ ո՛չ ընդունել ի տուն եւ ո՛չ ողջունել բանիւ, եւ զնոցին վարդապետութիւնս անուանել ամպս անջրդիս, ծառս պտղակորոյսս, կրկնամեռս, նիւթս կիզման հրոյն յաւիտենականի, որք վառեն անձանց զհուր գեհենին, սնուցանեն զորդն անմահ:

Արդ՝ ոչ եւս յամել ի նախերգութեանս, այլ պատրաստաբար եւ խոհականագոյնս յաստուածայինսն վերաձգել զմիտս:

Ես եւ հաւատացեալ ինձ հօտս այսպէս հաւատամք եւ խոստովանիմք, որպէս եւ հանգիտապատիւ սուրբն Գրիգորիոս, հայրապետ Սրբոյ Եկեղեցւոյս Հայաստան աշխարհիս, ուսոյց մեզ:

Հաւատամք ի Հայր՝ ի Տէր, Արարիչ երկնի եւ երկրի, երեւելեաց եւ աներեւութից. եւ ի Միածին Որդին Աստուծոյ, որ ի Հօրէ եւ առ Հօր, եւ ընդ Հօր. եւ ի Սուրբ Հոգին, որ ի նոցունց էութենէ, եւ նովաւ արար զամենայն, որ է մի տէրութիւն, մի զօրութիւն, մի աստուածութիւն. Հայր յանձնէ, Որդի ի Հօրէ, Հոգի ի նոցունց ի նոսին իսկութեամբըն, էութեամբըն, աստուածութեամբըն. երեք անձինք, մի կատարեալ կամք, հարթ հաւասար, հասարակ, ի բարձրութիւնս, ի խորութիւնս, ի լայ-

նութիւնս, յերկայնութիւնս. մի բնութիւն Աստուածութեանն, մի պսակ Երրորդութեանն, եւ լի են երկինք եւ երկիր փառօք Նորա:

Այսպէս հաւատամք եւ խոստովանիմք եւ երկըրպագեմք սրբոյ Երրորդութեանն ի Միութիւն անդր, նոյնպէս եւ սրբոյ Միաւորութեանն յԵրրորդութիւն անդր՝ անարատք, անխառնք, անսկզբունք, համագոյականք: Զի որպէս անխառնելի է սուրբ Երրորդութիւնն նոյնպէս եւ անբաժանելի. անխառնելի է յաղագս իւրաքանչիւր յատուկ անձնաւորութեանն, իսկ անբաժանելի՝ վասնզի ամենակալ է Հայր, ամենակալ Որդի, ամենակալ Հոգին սուրբ, մի բնութիւն Աստուածութեանն, մի իշխանութիւն, մի զօրութիւն, մի պետութիւն:

Եւ ի վերջին ժամանակս Միածին Որդին Աստուծոյ, կամօք Հօր եւ իւր եւ սրբոյ Հոգւոյն, վասըն մեր եւ վասն մերոյ փրկութեան խոնարհեցոյց զերկինս եւ էջ յարգանդ կուսին, եւ ա՛ռ մարմին ի Մարիամայ սրբոյ կուսէն Աստուածածնէ, եւ միացոյց զանմեռն ընդ մեռոտն, եւ զապականացուն եւ զմահկանացուն ընդ անմահ աստուածութեան իւրոյ, խառնեաց եւ միացոյց, եւ արար անապական, զի առանց հակառակութեան՝ նուազն ի լաւէ անտի օրհնեսցի: Աստուածավայելչաբար ծնաւ ի Սրբոյ Կուսէն, որոյ հետք կուսութեանն ոչ ապականեցան, եւ ի խանձարուրս պատեցաւ կաթնասուն լեալ, եւ յետ երկոտասան ամի եկն ի տաճարն, զի յայտնի արասցէ զիւր աստուածութիւնն. ի վերայ երկրի երեւեցաւ, եւ ընդ մարդկան շրջեցաւ, միաւորութեամբ տնօրէնութեանն, քաղցեաւ եւ ծարաւեցաւ՝ ոչ սոսկ մարդկային բնութեամբ, այլ միաւորութեամբ տնօրէնութեանն աստուածավայելչաբար:

Եւ յետ երեսուն ամի եկն ի մկրտութիւն.



մկրտեցաւ ի Յորդանան ի Յովհաննէ, վկայեցաւ ի Հօրէ. Դա է Որդի Իմ սիրելի: Պահեալ զքառասուն տիւ եւ զքառասուն գիշեր՝ յետ այսորիկ փորձեցաւ ի սատանայէ: Բանն մարմնացեալ քաղցեաւ եւ ծարաւեցաւ: Բանն մարմնացեալ զկոյրս լուսաւորեաց եւ զգիշերն ի տիւ փոխեաց: Զչորեքօրեայ զսիրելին, զՈւր եղիքն ձայնին զուգընթաց արար: Բանն մարմնացեալ ապտակեցաւ եւ չարչարեցաւ՝ ո՛չ սոսկ մարդոյն ասեմ զչարչարանսն, զխաչն եւ զմահն, եւ ո՛չ զնշանագործութիւնսն միայնում Բանին Աստուծոյ, այլ միաւորութեամբ տնօրէնութեանն. քանզի Բանին Աստուծոյ մարմնացելոյ են ամենայն բարձրագոյնքն եւ խոնարհագոյնքն:

Եւ այսպէս, կամօք եկն ի խաչ, մեռաւ եւ թաղեցաւ, եւ յերրորդ աւուր յարեաւ՝ ըստ Գրոց, զի տիրեսցէ կենդանեաց եւ մեռելոց: Եւ յետ քառասուն տուընջեան եւ քառասուն գիշերոյ համբարձաւ յերկինս, որպէս տեսին առաքեալքն, եւ նստաւ ընդ աջմէ Հօր, որպէս ետես սուրբն Ստեփանոս, ի վկայելն իւրում՝ ասէ. Տեսանեմ զերկինս բացեալ եւ զՅիսուս, զի կայ ընդ աջմէ Աստուծոյ: Եւ գալոց է նովին մարմնովն եւ փառօք՝ դատել զկենդանիս եւ զմեռեալս, որոյ թագաւորութեանն ո՛չ գոյ վախճան:

Եւ յետ այսորիկ՝ որպէս Նազիազովն Գրիգոր Աստուածաբանն ասէ. Մի է Աստուած՝ Հայր կենդանի՝ Բանին էական իմաստութեանն եւ զօրութեան կերպարանին Իւրոյ, կատարեալ՝ կատարելոյ ծնօղ, Հայր Որդւոյ Միածնի, մի միայն ի միայնոյ, Աստուած յԱստուծոյ՝ կերպարան եւ պատկեր Աստուածութեանն. Բան գործաւոր, իմաստութիւն պարառական, ամենեցուն ընդ լինելութեամբ անկելոցս զօրութիւն, եւ բոլորից արարող. Որդի

ճշմարիտ անտեսանելւոյն, անապական անապականին, անմահ անմահին, մշտնջենաւոր մշտնջենաւորին։ Մի սուրբ Հոգի՝ Աստուծոյ զէութիւնն ունելով՝ եւ Որդւով երեւեալ յայտնապէս մարդկան· պատկեր Որդւոյ, կատարեալ ի կատարելոյ, պատճառ կենդանութեան, սրբութիւն՝ սրբութեանց շնորհօղ, որով ծանուցանի Հայր, որ ի վերայ ամենեցուն եւ յամենեսին, եւ Որդի Աստուած, որով ամենեքեան։

Երրորդութիւն կատարեալ՝ փառօք եւ մշտնջենաւորութեամբ եւ թագաւորութեամբ, անբաժանելի եւ անօտարելի՝ ոչ ստեղծական ինչ եւ ո՛չ ծառայական յԵրրորդութեանն, եւ կամ ներքսածական, որպէս թէ յառաջագոյն ոչ եղելոյ, զկնի ի ներքս ածաւ· եւ ո՛չ երբեք նուազեաց Որդի ի Հօրէ եւ ոչ յՈրդւոյ Հոգի, այլ անփոփոխելի եւ անայլայլելի է միշտ Երրորդութիւնն։ Եւ մեք երկրպագեմք Հօր եւ Որդւոյ եւ Հոգւոյն սրբոյ· Աստուած՝ զՀայր, Աստուած՝ զՈրդի, Աստուած՝ ըզսուրբ Հոգի, մի բնութիւն երից առանձնաւորութեանցն իմանալեաց, կատարելոց, ըստ ինքեանց էութիւնս, բաժանելոց թուով, ո՛չ բաժանելոց աստուածութեամբն։

Ընդունիմ եւ զերկոտասան գլուխսն երանելւոյն Կիւրղի, որ ընդդէմ Նեստորի ասացեալ է այսպէս, թէ Որ ոչն հաւատայ, թէ Բանն Աստուած չարչարեցաւ մարմնով, խաչեցաւ մարմնով, ճաշակեաց զմահ մարմնով, եւ եղեւ անդրանիկ ի մեռելոց· քանզի միշտ կենդանի է եւ կենդանացուցանէ զամենեսեան որպէս Աստուած՝ եղիցի նզովեալ։

Եւ յետ այսորիկ որպէս Աստուածաբանն Գրիգոր, եւ Գրիգոր Նէոյկեսարիու, եւ Բասիլիոս Կեսարու եպիսկոպոս, եւ Աթանասիոս, եւ Կիւրիղղոս



հայրապետ Աղեքսանդրի, եւ սուրբն Գրիգոր Պարթեւ, հայրապետ Հայոց Մեծաց, ուսումնասիրութեամբ եւ գիտութեամբ Աստուծոյ ճանաչեալ զՀին եւ զՆոր Կտակարանս, այսչափ հասու եղեալ մի բնութեան Աստուածութեանն, երից առանձնաւորութեանցն։

Ըստ որում ես եւ հաւատացեալ ինձ հօտս այսպէս խոստովանիմք աներկբայելի հաւատով, եւ զարդարիմք երիւք ժողովովքս այսոքիւք՝ ի պատիւ ամենասուրբ Երրորդութեանն, սահմանաւ, զոր եղեալ է ՅԺԸ· աստուածաշունչ սուրբ հարցն որ ի Նիկիա, որոց գլխաւոր սուրբն Ռստակէս հայրապետ Հայոց Մեծաց, եւ ասացին այսպէս վասն Բանին մարմնացելոյ, թէ Աստուած ճշմարիտ յԱստուծոյ ճշմարտէ՝ ծնեալ եւ ո՛չ արարեալ, իջեալ ի յերկնից, մարմնացեալ եւ մարդացեալ ի Սրբոյ Կուսէն Մարիամայ, չարչարեալ՝ այսինքն խաչեալ, թաղեալ, եւ յերրորդ աւուր յարուցեալ, համբարձեալ յերկինս, եւ գայ դատել զկենդանիս եւ զմեռեալս, որոյ թագաւորութեանն ոչ է վախճան։

Նոյնպէս եւ զամենայն աղանդս նզովեցին եւ արտաքս ընկեցին ի կաթուղիկէ առաքելական Եկեղեցւոյ։ Նախ առաջին զԱրիոս, որ զՈրդի արարած կոչէ, եւ ոչ զԲանն մարմնացեալ ի Սրբոյ Կուսէն, այլ, ասէ՝ Նա է անդրանիկ ամենայն արարածոց եւ նովաւ արար զամենայն։ Ըստ նմին եւ ՃԾ· սուրբ հայրապետքն, որ ի Կոստանդնուպօլիս ժողովոյն, որք (Մակեդոն ) մարտնչէին ընդ Հոգին սուրբ, նզովեցին եւ ի բաց ընկեցին։

Նոյնպէս եւ Մ· սուրբ հայրապետքն,(1) որ յԵփեսոս ժողովեցան եւ զամբարիշտն Նեստորիոս

------

(1) Օր· երկերիւրքն։

*Նզովեցին եւ արտաքս ընկեցին ի կաթուղիկէ Եկեղեցւոյ, որ անդուռն բերանով ասէ· Ո՛չ է պարտ եւ արժան զՄարիամ սուրբ կոյս՝ Աստուածածին խոստովանել, այլ մարդածին, եւ ոչ զխաչեալն Քրիստոս՝ Աստուած, այլ տաճար եղեալ Աստուծոյ Բանին, եւ զԲանն ո՛չ խոստովանել մարմին եղեալ ըստ աւետարանին աւանդութեանց՝ այլ ի մարմնի բնակեալ, այսինքն ի Քրիստոսին՝ ի Մարիամայ ծնիցելոյ մարդոյն, զուգապատիւ զնա կամեցեալ ցուցանել, կամ սակաւ ինչ մեծագոյն, միում ի սրբոց եւ հոգեկիր արանց· եւ բազում եւ այլ հայհոյութիւնս խօսեցաւ, զի յորժամ զսորա աղանդակցաց բանս ի մէջ բերցուք՝ պատմեսցուք ըզբովանդակն։*

*Նզովեցին եւ զԵւտիքէս, որ էր վանական ի Կու կղզի, որ զմարմինն տէրունական առ աչօք խոստովանի, եւ ոչ ի մարդկային բնութենէս, այլ ինքն իսկ մարդ կերպարանեցաւ, ասէ, յարգանդի Կուսին, ոչի՛նչ առնլով ի բնութենէ Կուսին։*

*Նզովեցին եւ զՍաբելլիոս Լիբէացին, որ ըզսուրբ Երրորդութիւնն մի դէմ խոստովանի, եւ ո՛չ երիս անձինս կատարեալս։*

*Նզովեցին եւ զԱպողինարոս Լաւոդիկեցի, որ մասն ինչ առեալ ասէ Քրիստոսի, այսինքն մարմին միայն, եւ ո՛չ բովանդակ մարդ եղեալ· աստուածային էր, ասէ՝ հոգեւորութեամբ հոգիացեալ եւ պէտք ինչ ոչ էին նմա մարդկեղէն հոգւոյ։*

*Նզովեցին եւ զՄարկիոն Պոնտացի, որ ասաց, թէ Աստուած, որ զամենայն արար, չէ բարերար, եւ ոչ հայր բարերարին Քրիստոսի, այլ, այլ ոմն է արդար· եւ ստոյգ Քրիստոս մարմին ի մէնջ ոչ էառ։*

*Նզովեցին եւ զՄարկեղոս եւ զՓոտինոս եւ*



*զՍոփրովինոս, որ զԲանն ազդումն ասեն, եւ զազդումն բնակեալ յայնմ, որ ի զաւակէն Դաւթի եղեւ, եւ ո՛չ էութիւն ինչ անձնաւոր։*

*Նզովեցին եւ արտաքս ընկեցին ի կաթուղիկէ առաքելական Եկեղեցւոյ զՊօղոս Սամոստացի, եւ զտումարն Լեւոնի, եւ զժողովն Քաղկեդոնի, զի ասացին երկուս բնութիւնս եւ երկուս կերպարանս ի Քրիստոս Յիսուս յետ միաւորութեան տնօրէնութեանն ի Սուրբ Կուսէն, որ լինին յայտնապէս երկու անձինք։*

*Նզովեցին եւ զՍեւերոս , որ ասաց թէ մարմինն Քրիստոսի ապականացու էր մինչեւ ցյարութիւնն, եւ յետ յարութեանն արար զնա անապական։*

*Նզովեցին եւ զՄոնտանոս, որ զինքն Հոգին սուրբ անուանէ եւ կախարդութեամբ եւ պոռնկութեամբ վարի։*

*Նզովեցին եւ զՄակեդոնիտս, որք զՀայր եւ զՈրդի խոստովանին, եւ զՀոգին սուրբ ուրանան(1)։*

*Նզովեցին եւ զՄելքիսեդեկիտսն, որ զՄելքիսեդեկ Աստուած անուանեն՝ թէ նա է Որդին Աստուծոյ։*

*Նզովեցին զԳայինոսս, որ զմարդկայինն բնութենէ ասեն՝ զրի որպէս մոմ մատանեաւ· եւ չուրջ զան ոգիք՝ փոփոխմամբ եւ ցանկութեամբք ի միմեանս իջանեն։*

*Նզովեցին եւ զՀերովդիանոսս, որ ասեն թէ Հերովդէս էր Քրիստոսն, եւ արդ նմա մնան։*

*Նզովեցին եւ զԱրքանգեղիտսն, որ զհրեշտակապետն Աստուած գոլ ասեն, թէ նա՛ մարմնացաւ*

------

*(1) Վերջին երկուսը պակաս են Հ. 58 ձեռագրում։*

ի Սուրբ Կուսէն։

Նզովեցին եւ զՆաւատիանոսս, որ զապաշխարութիւն ո՛չ ընդունէին։

Նզովեցին եւ զՎաղէնտիոն եւ զՄանի եւ զԿումբուկիոս,(1) եւ զԹէոդորոս [Մամուեստացի, եւ զԴիոդորոս] Տարսոնացի, եւ զԹէոդորիտոս, որ եպիսկոպոս էր Կիւրոս քաղաքի, եւ զԱկակ եւ զԲարծումա Ընծիհնացի, որ զընութիւն Որդւոյ յերկուս բաժանեն եւ աստուածութեամբըն անչարչարելի ասեն՝ զխաչն եւ զմահն մարդոյն միայն կազմեն, եւ ոչ միաւորութեան տնօրէնութեանն խոստովանին։

Ընդ նմին նզովեմք ես եւ հաւատացեալ ինձ ժողովուրդս, եւ արտաքս ընկենումք ի սրբոյ Եկեղեցւոյ, զամենայն հերձուածողս, զորս նզովեալ է սուրբ եւ աստուածահաճոյ հարցն իմոց եւ վարդապետացն. քանզի գրեալ է, թէ Զգոյշ լերո՛ւք ի չար մշակացն,(2) եւ գիտասջիք զայնպիսիսն, որ այնպէսն գնայցեն, արտաքոյ վարդապետութեանն զոր դուքն ուսարուք. եւ դարձեալ, թէ Զգոյշ կացէ՛ք անձանց եւ ամենայն հօտիդ, յորում եդ ըզձեզ Հոգին սուրբ տեսուչս հովուել զժողովուրդ Տեառն(3)։

Արդ, եւ ես գոհացայ զԱստուծոյ ի վերայ այսոցիկ, որ ասացանս յիմ նուաստիմաստ գիտութենէս, եւ աղաչեսցուք զմարդասէրն Քրիստոս տալ զգուշութիւն առ ի պահել զոր ինչ լուաքս եւ ծանեաք՝ զուղիղ հաւատս, զի եւ մեք եւ դուք ուրախ

------

(1) Օր. Կումբրիկիոս, որ եւ ուղիղն է՝ իսկապէս Մանիի երկրորդ անունը։

(2) Փիլիպ. Գ. 2։

(3) Գործք Ի. 28։



լիցուք, եւ հերձուածողքն զամօթ զգեցցին։ Խնդրեսցուք ի Տեառնէ, զի ընդ հաւատոյս եւ վարս արժանաւորս շնորհեսցէ մեզ՝ զի ի Նորա փառս կեցցուք, եւ մի՛ աստեօքս վրիպիցեմք ի յաւիտենական հանգստեանցն, զոր պատրաստեալ է ընտրելոց Իւրոց։ Այլ եւ բարեխօսութեամբ սուրբ Աստուածածնին եղիցուք նմանօղք այնոցիկ, որք հաւատովք եւ երկայնամտութեամբ ժառանգեցին զաւետիսն Աստուծոյ։ Նմա փա՛ռք Ամենատեառնն, որ վասն մերոյ փրկութեան մարդացաւ եւ մարդակերպ շրջեցաւ, եկեր իբրեւ զմեզ եւ արբ, տանջեցաւ, չարչարեցաւ, խաչեցաւ, բեւեռեցաւ, սպանաւ, թաղեցաւ, կենդանացաւ, յարեաւ, եւ վերացաւ, եւ նստաւ ընդ աջմէ Հօր՝ ծնօղին իւրոյ։ Եւ Հայր կենդանացոյց զամենեսեան, որ ի նա հաւատացին, եւ հաղորդեցան աստուածեղէն փառացն, եւ նորոգեցան ի փառս անպատումս. եւ իշխանութիւն ետ որդիս Աստուծոյ լինել, եւ եցոյց նոցա Հայր շնորհաց զԾնօղն իւր, եւ հրաման ետ մեզ Հայր կոչել զԱստուած։

Արդ՝ ճշմարիտ Որդւոյն Աստուծոյ եղբարք անուանեալ, զորս առեալ Որդւոյ առ Հայր մատուցանէ, թէ Ահաւասիկ ես եւ մանկունք իմ, զոր ետուր ինձ,(1) Հա՛յր։ Եւ դարձեալ ասէ. Պատմեցից զանուն Քո եղբարց իմոց, ի մէջ եկեղեցւոյ օրհնեցից զՔեզ(2)։ Որպէս վասն բարեօք դաւանութեանն Պետրոս՝ զՔրիստոս Որդի Աստուծոյ ծանուցեալ, ըստ որում եւ զերանութեան անուն ժառանգեաց, եւ թէ Դու ես վէմ, եւ ի վերայ այդր վիմի շինեցից զեկեղեցի իմ, եւ դրունք դժոխոց

------

(1) Եսայի Ը. 18։

(2) Սաղմ. ԻԱ. 25։

զնա մի յաղթահարեսցեն(1)։ Ընդ նմին հաւատացան նմա փականք արքայութեանն երկնից, կապել եւ արձակել յերկինս եւ յերկրի, որոյ եղերուքն դուք որդիք եւ ժառանգաւորք նորին աթոռոյ, ուղիղ հաւատով եւ բարիաւք խոստովանութեամբ՝ Կամբիչոյ մետրապոլիտ, Պօղոս Արուեստան եպիսկոպոս, Գաբրիէլ Տաճկաց եպիսկոպոս, Յովնան Հերթայ եպիսկոպոս, Սիմոն Նինուէի եպիսկոպոս, Գաբրիէլ Քարմա եպիսկոպոս, Սաբասիսոյ Կոհինիհորական եպիսկոպոս, Բենիամին Սրընգի եպիսկոպոս, Ստեփանոս Արզնոյ եպիսկոպոս, եւ այլ բազում եպիսկոպոսունք, եպիսկոպոսակցօք եւ սարկաւագօք եւ ուխտիւ սրբոյ Եկեղեցւոյ, որք խընդրեցէք զհաւատ քրիստոսասէր Հայոց՝ որք ի դըրան արքունի հասեալ կայիք։

Ի խնդրոյ ձերմէ, հրամանաւ տերանց, ես Կոմիտաս Մամիկոնէից եպիսկոպոս, որ յաջորդեցայ ի կաթուղիկոսութիւն Հայոց Մեծաց, ետու զյետկարս զայս բոլորով սրտիւ եւ աներկբայելի հաւատով, առաջի բազում նախարարաց Հայոց եւ այլ ազգաց քրիստոնէից, որ ի դրան արքունի հասեալ էին, մանաւանդ առաջի մեծի տանուտեառն Խոսրովշնումն կոչեցելոյ, որոյ ճանաչիւր անուն Սըմբատ, յազգէ Բագրատունեաց, շինեալ ես եւ հաւատացեալ ինձ հօտս ի վերայ հիման առաքելոց եւ մարգարէից, եւ սրբոյն Գրիգորի՝ կենդանի մարտիրոսին Քրիստոսի, եւ որք ըստ նմանէ սուրբ Հարքն։ Որով եւ մեք ո՛չ խոտորիցուք քան զասացեալ հաւատս զսուրբ եւ զաստուածաշունչ հարցըն՝ ոչ յաջ եւ ո՛չ յահեակ. զի ճշմարիտ գովելին Աստուծոյ միայն վայել է գիտել, եւ որոց յայտնէ

------

(1) Մթ. ԺԶ. 18։



սուրբ Հոգի մարդկան, այլազգ ղօղեալ բանիւք, վասն անբաւ լայնութեան ծովու յիմաստութեան։ Սակայն ի մեզ մին եւեթ պահեսցի զգուշութեամբ, ուղիղ հաւատովք եւ առաքինի գործովք հասանել ի նաւահանգիստն խաղաղութեան երկնից արքայութեանն, անշարժ կալ ի հնազանդութեան Հօրն հաւատոյ (անմարմնոյն), եւ կամարար մարմնականացն. եւ ձայնակցելով մեզ ուղիղ հաւատով, մի հօտ լիցուք քաջ Հովուին, եւ կամ որդիք, ըստ աւետարանին բանին, զի յերեւել ճշմարիտ Հովուապետին, արժանի եղիցուք ընդունել զմեզ յաւթեւանս եւ առնուլ զանթառամ փառաց զպսակն։

Միասնական սուրբ Երրորդութեանն փա՛ռք յանարժան բերանոյս, ամէն։

---------

Աւրինակ գրոցս, որ լեալ էր Տէր Գրիգորիսի Վկայասիրին, մինչեւ ցայս վայր էր, եւ նա այսպէս էր գրեալ. Զվահրամ, որդի Գրիգորոյ Մագիստրոսի, յիշեսջիք յաղաւթս ձեր, ո՛վ երջանիկ դասք ուղղափառաց խմբիցդ Ակքանակեան սեռի։ ՇԻԷ. թուականն։

Զմեղապարտ, եւ զանարհեստ գրող լուսաւոր սուրբ տառիս, զԹումաս անարժան քահանայ, եւ զծնաւղսն իմ եւ զամենայն ազգատոհմն, զկենդանիս եւ զհանգուցեալսն, յիշեցէք ի սուրբ աղաւթս ձեր, ո՜վ սուրբ ընթերցողք։

--------

## ՁԵ

**ԹՈՒՂԹ ՀՌՈՄՈՑ Ի ՀԱՅՍ, ԶԱՅՆԱԿԻՑ ԵՒ ՀԱՄԱԽՈՀ ԺՈՂՈՎՈՅՆ ՔԱՂԿԵԴՈՆԻ ԵՒ ՏՈՄԱՐԻ ՀԱՅՀՈՅՈՒԹԵԱՆՆ ԼԵՒՈՆԻ, ԶՈՐ ԵԲԵՐ ԱՍՏՈՒԱԾԱՊԱՏԻՒ ՏԷՐ ՍՏԵՓԱՆՆՈՍ ՄԻՒՆԵԱՑ ԵՊԻՍԿՈՊՈՍ, ՅԱՌԱՋ ՔԱՆ ԶԵՊԻՍԿՈՊՈՍՈՒԹԻՒՆՆ ԻՒՐ, ՈՐ ՎԱՍՆ ԹԱՐԳՄԱՆՈՒԹԵԱՆ ՀԱՍԵԱԼ Ի ԹԱԳԱՒՈՐԱԿԱՆ ՔԱՂԱՔՆ Ի ԿՈՍՏԱՆԴՆՈՒՊԱՒԼԻՍ· ԻՍԿ ՆՈՑԻՆ ՅԱՂԱԳՍ ՄԻԱԲԱՆՈՒԹԵԱՆ ՀԱՒԱՏՈՑ՝ ԸՆԴ ՁԵՌՆ ՆՈՐԱ ԳՐԵԱԼ ԵՒ ԱՌԱՔԵԱԼ ՀԱՅՐԱՊԵՏԻՆ ԿԱՊԱՐԵԱՑ ԿՆՔՈՎ, ԶՈՐ ՈՉ ԸՆԿԱԼԵԱԼ ԶՆՈՑԱՅՆ ՀԱՅՀՈՅՈՒԹԻՒՆ, ՄԵՐՈՅ ԱՇԽԱՐՀԻՍ, ԱՅԼ ԱՐՁԱՆԱՑԵԱԼ Ի ՀԱՒԱՏՍ ՍՈՒՐԲ ԱՌԱՔԵԼՈՑՆ, ԵՒ Ի ԽՈՍՏՈՎԱՆՈՒԹԻՒՆ ԵՐԻՑՍ ԵՐԱՆԵԼՈՅ ՍՐԲՈՅՆ ԳՐԻԳՈՐԻ, ԱՄԵՆԵՒԻՆ ԱՆՇԱՐԺ ՄՆԱՑԵԱԼՔ ՈՉ ԵՏՈՒՆ ՏԵՂԻ ԴՐԴՈՒԵԼՈՎ Ի ՇԱՒՂԱՑ ՈՒՂՂԱՓԱՌՈՒԹԵԱՆ·**

*Քրիստոս է խաղաղութիւն մեր, որ արար զերկոսինն մի, եւ զմիջնորմն ցանկոյն քակեաց, զթշնամութիւնն ի մարմնի իւրում։ Քանզի այսուիկ առաքելական ձայնիւ վարիլ ի սկսանել գրոյս մերոյ առ սէրդ ձեր՝ բարիոք գոլ համարեցաք, վասն զի եւ բոլոր դիտումնս մեր, եւ նորին*

------

*Բնագիր Ա· էջ 358 – 372։ Հմմտ· Ժէ· էջ 579։ ԺԸ· էջ 587։*



*գրոյս ենթադրութիւն, խաղաղութեան է ուղղութիւն, եւ խաղաղութիւն ասեմք, ոչ որպէս աշխարհըս տայ, որպէս տէրն ասաց, այսինքն առ համեմատութիւն երկրայնոց իրացս տեսեցելոց, այլ զոր ինքն յերկնից եբեր մեզ խաղաղութիւն, եւ ի հրաժարելն իւրում շնորհեաց իւրոց աշակերտաց։ Յանձինս մեր ունել մեզ՝ ախորժ է առ Աստուած եւ Հայր, որպէս աղաւթիւք ասացեալ. Արդ՝ զայս ոչ յաղագս սոցա աղաչեմ միայն, այլ եւ վասն ամենեցուն որ հաւատան ի ձեռն բանի սոցա յիս, զի ամենեքին մի եղիցին, ըստ որում դու Հայր յիս, եւ ես ի քեզ, զի եւ սոքա ի մեզ եղիցին, զի եւ աշխարհ հաւատասցէ, եթէ դու առաքեցեր զիս։ Նկարագրական գոլ իւրութեան ի նա հաւատացելոց, նորին Տեառն համարեալ համամտութեամբ եւ խաղաղութեամբ առ միմեանս կապիլն մեզ։ Որք զնորայն վարդապետութիւն պատուել գիտացին, ոչինչ պատուականագոյն քան զխաղաղութեանն բարին համարեցին, եւ ոչինչ անարգագոյն քան ըզհակառակ նորին իմացուածս անջատողականաց բանից եւ մտածութեանց դիցեն , գիտելով եթէ ոչ նշանաց ցուցումն, եւ ոչ ճշմարիտ վարուց ուղղութիւն տարժանմամբ մարմնոյ եւ բաշխմամբ ընչից՝ մինչեւ մարտիրոսութեամբ չափ, ստացողացն զաւգտակարութիւն առաջի դնէ՝ առանց սիրոյ եղելոցս այսոցիկ։ Իսկ սէր, որպէս ասէ այսորիկ արուեստաւորն նկարագրող աստուածայինն առաքեալ, զչար ոչ խորհի, այլ խնդայ ընդ ճշմարտութիւն։ Իսկ զոր յաղագս ընկերաց չար մտածութիւնս, եւ մանաւանդ որովք յաղագս Աստուծոյ բանիւք ամենեւին ի բաց մերժէ, որպէս խափանիչս իւրոցն ուղղութեանց գոլ զայսոսիկ համարեալ։*

Արդ եւ մեք աղաւթելով աստուածայնոյն խաղաղութեան գոլ բողբոջք, եւ ոչ խառնակութեամբ յոչ բարի կարծեաց յանձն առեալ ըմբռնիլ, եւ ոչ է տեղականաւք մեկուսութեամբք զքրիստոնէից համամտութեանն վայելուչս ընդ նմին ի բաց հատանիլ ներեալ, զայժմուս առ ի մէնջ սիրովըն Աստուծոյ ճառեմք բանս առ ձեր աստուածասիրութիւնդ, զնկարագիր Քրիստոսի աշակերտելոյն այսուիկ լնուլ փութացաք, եւ զհաւանումն բարեպաշտիկ եւ աւրինաւոր, յաղագս ի մեզ յուսոյն որ ի Քրիստոս, եւ հաւատոց ցուցանել կամեցեալք։ Քանզի թէեւ զատելիս եղբայրս կոչել եւ համարել մարգարէականն զմեզ խրատէ բանն, զի՞արդ ոչ եղբայրաբար առ որ ոչ այսպէս են առ մեզ բանիւ եւ հոգւով, սիրով, որպէս զմտաւ ածեմք, վարիլ մեզ է իրաւացի։ Բայց հաւատամք յԱստուած, որ յամենայնի գիտակն է գործոց մերոց եւ մտածութեանց, թէ զմաքուր խորհրդովս մերով վասն մերձակայ բանիս յուշ առնելոյ առաջին վկայից դիւրընկալ ներգործեսցէ յանձինս ձեր։ Քանզի զնորին Տեառնն, եւ ոչ զանձին զփառս խնդրեմք։

Քանզի զայս խորհել է իրաւացի ամենեցունց, որք ի հոգեւորականի այգւոյ եկեղեցւոյ՝ առ ի բարեաց գործոց երկրագործութիւնն վարձկանեցան, որոց˚ գլուխ ուղղափառութեան յաւրինեցաւ Բանն, զոր եւ փայտ կենաց անուանեալ, զմեզ Աստուածաշունչ գիրք, այսու անուամբ կոչելով յորդորէ զարդարել իմաստութիւնն։ Զի՞նչ արդեւք իցէ իմաստագոյն քան զխորհելն առողջաբար յաղագս Աստուծոյ եւ աստուածայնոցն, եւ անսուտ զէիցն փառս եւ կարծիս ըստ Աստուածաշունչ գրոց աւանդութեան ստանալն, զոր ճշմարտապէս եւ ի մէջ



դրախտին առ ի յԱստուծոյ տնկեալ հաւատամք, որ առթէ եւ սողել ձեռնարկէ հանապազ չարաթիւն աւձն, եւ զպատրանս բանի աստուածսիրութեան ձեւով արկանէ առաջի, որպէս եւ ի սկզբանն աստուածահաւասար խոստմամբ նախաստեղծիցն եդ առաջի, արգելեալ լինի առ ի պահողէն բոցեղէն սրոյն զայնպիսին ծառ, այսինքն ի Հոգւոյն շնորհէ, որով անգործ լինել նորին վիշապին խորհրդոց, եւ ոչ գոլ արգել, որ ոք կամեսցի ուղղութեամբ սրտի զճշմարտութեան պտուղս, ոչ ճաշակել միայն, այլ եւ առատապէս վայելել, եթէ բնաւին զձեռս ձգիցեն, այսինքն գործաւորապէս եւ աշխատութեամբ զխուզողականսն ճշմարիտ գիտութեամբ ի մտածութիւնս շարժեսցեն, զի յայսոսիկ հպեսցին, կեցցեն յաւիտեան։

Արդ եւ մեք աղաւթս առնելով համանգամայն, եւ փութացեալք ընդ հովանեաւ այսպիսոյս իմացականի ծառոյ հանգչել հանապազ, ի սորայոցս պտղոց առաքել՝ ոչ մերձաւորացս միայն, այլ եւ հեռաւորաց փոյթ յանձին ունիմք, զոր եւ առ ձեր աստուածպաշտութիւնդ առնել յաւժարեցաք, բարիոք համարեցաք ոչինչ իրաւացի պատճառս այսպիսոյս պարգեւատուութեան ունել։

Քանզի Ստեփանոս աստուածասէր քահանայ, եղեալ յայսմ աստուածապահ եւ ի թագաւորական քաղաքիս, ծանուցաւ մեզ եթէ ի մեր սուրբ եկեղեցիսս հաղորդել ոչ առնու յանձն, զոր ըստ աստուածայնոց աւրինաց հեզութեամբ կոչեցաք եւ հարցաք, թէ զի՞արդ խորհիս, եւ վասն զի՞նչ պատճառի ոչ կամիս հաղորդել ընդ մեզ· եւ խնդրեալ գրով խոստովանութիւն ի դմանէ առաք մինչեւ

յառաջինն, որ յԵփեսոս սուրբ ժողովն արարեալ զխոստովանութիւնն։ Իսկ որ ի Քաղկեդոն զսուրբ եւ զտիեզերական ժողովն, եւ զորս յետ նորայն յիշումն եւ ոչ բնաւ արարեալ, յոլովիւք յաղագս այսորիկ հաւանականաւք առ դա վարեալ բանիւք· եւ իբր զի լուացողական աճառաւք՝ ներգոյիդ ի դմա կարծեաց, ոչ արուեստական հնարիւք, այլ պարզութեամբ բարոյից, եւ յստակ սիրով ի մէնջ յառաջ բերեալ արարաք առ դա բանս։ Սակայն մեզ հաղորդ լինել առանց ձեր՝ ոչ հաւանեցուցաք, գոչ առանց ձեր խոստովանակցութեան առ այս՝ գոլ դմա իրաւամբք պատճառ առաջի արկեալ, ուստի որպէս ի նորին յասացելում սրբասիրի առնդ զձեզ զամենեսեան տեսեալ· ոչինչ նուազ արարաք ըստ արժան գոլոյ առ ձեզ բանս ի ճշմարտութիւն հաւանեցուցանելով, եւ ի ձեռն գրոյս խաւսից բարբառել առ ձեզ զարժանն, այսինքն որպէս աստուածայինն առաքեալ ասէ զլաւագոյնն· եւ զփրկութենէ բուռն հարեալ, առաւել կարեւոր համարեցաք զայս ասել յառաջագոյն, քանզի եւ պիտանի իսկ նախ անգործ առնել զմտածութիւնս, առ ի յանջատումն հայելոյ մեզ Քրիստոսի խորհրդոյն, եւ այնպէս որպէս ի հերկս արդարութեան ի բաց խըլելով զգայթակղութեանն փուշս, զմերոյս իմացուածոյ ընկենուլ զսերմանիս։

Ա։ Եթէ ոք ոչ խոստովանի Աստուած գոլ ըստ ճշմարտութեան զԷմմանուէլ, եւ վասն այսորիկ Աստուածածին զսուրբ կոյսն· քանզի ծնաւ մարմնապէս՝ մարմին եղեալ Աստուծոյ Բանին, նզովեալ եղիցի։

Բ։ Եթէ ոք ոչ խոստովանի ընդ մարմնի ըստ անձնաւորութեան միաւորիլ յԱստուծոյ Հաւրէ Բանին՝ մի գոլ Քրիստոս ընդ իւրոյն մարմնոյ,



յայտ է զի զնոյն Աստուած համանգամայն եւ մարդ, նզովեալ եղիցի։

Գ։ Եթէ ոք ի վերայ միոյն Քրիստոսի որոշեսցէ զանձնաւորութիւնսն յետ միաւորութեանն միայն հպեցուցանելով զնոսա ըստ յարակցութեան՝ որ ըստ պատւոյ, այսինքն ըստ իշխանութեան կամ զաւրութեան եւ ոչ յաւէտ ժողովմամբ ըստ միաւորութեան բնաւորականի, նզովեա՛լ եղիցի։

Դ։ Եթէ ոք երկուց դիմաց, այսինքն անձնաւորութեանց, զորս յաւետարանականսն եւ յառաքելականսն գրեալ բաժանէ զձայնս, կամ ի վերայ Քրիստոսի առ ի սրբոցն ասացեալս կամ ի նմանէ յաղագս իւր, եւ է ինչ, որ մարդոյ առանց Աստուծոյ Բանին յատկապէս իմացելոյ հպեցուցանէ, եւ է ինչ զորս, որպէս աստուածավայելուչս միայնոյ Աստուծոյ Բանին, նզովեա՛լ եղիցի։

Ե։ Եթէ ոք յանդգնեսցի ասել աստուածազգեստ մարդ զՔրիստոս, եւ ոչ յաւէտ Աստուած գոլ ըստ ճշմարտութեան, որպէս մի որդի բնութեամբ, ըստ որում եղեւ մարմին Բանն, եւ հաղորդ եղեւ մեզ մերձաւորապէս արեան եւ մարմնոյ, նզովեա՛լ եղիցի։

Զ։ Եթէ ոք ասիցէ Աստուած կամ Տէր գոլ Քրիստոսի զառ ի յԱստուծոյ Հաւրէ Բանն, եւ ոչ յաւէտ զնոյն խոստովանի Աստուած համանգամայն եւ մարդ, որպէս մարմին եղելոյ Բանին ըստ գրոց· նզովեա՛լ եղիցի։

Է։ Եթէ ոք ասէ, որպէս մարդ ներգործիլ առ ի յԱստուծոյ Բանէն զՅիսուս, եւ ի Միածնին փառաւորութիւն հպիլ, որպէս այլ գոլով քան զնա· նզովեա՛լ եղիցի։

Ը։ Եթէ ոք յանդգնեսցի ասել, առեալ մարդ երկրպագակից պարտ գոլ լինել Աստուծոյ Բանին

եւ փառաւորակից, եւ ընդ Նմա երեւիլ Աստուած, որպէս այլ յայլում, եւ ոչ յաւէտ միով երկրպագութեամբ պատուէ զԷմմանուէլն. նզովեա՛լ եղիցի։

Թ։ Եթէ ոք ասէ, զմի Տէր Յիսուս Քրիստոս փառաւորիլ առ ի Հոգւոյն, որպէս այլոյ զաւրութեամբ ինչ՝ ի ձեռն նորա փառաւորեալ, եւ առ ի Նմանէ առեալ զներգործելն կատարել ի վերայ այսոց պղծոց, եւ կատարել ի մարդիկ զաստուածային նշանս, եւ ոչ յաւէտ իւր նորա զհոգին ասէ, որով եւ ներգործեաց զաստուածային նշանսն. նզովեա՛լ եղիցի։

Ժ։ Քահանայապետ եւ առաքեալ խոստովանութեան մերոյ զՔրիստոս լինել ասէ աստուածային գիր, եւ մատոյց վասն մեր զինքն ի հոտ անուշից Աստուծոյ եւ Հաւր։ Արդ եթէ ոք քահանայապետ եւ առաքեալ մեր լինել ասէ, ոչ զինքն յԱստուծոյ Բանն յորժամ եղեւ մարմին, եւ ըստ մեզ մարդ, այլ որպէս այլ քան զնա յատկապէս, կամ եթէ ոք ասիցէ եւ վասն իւր մատուցանել նմա զպատարագն, եւ ոչ յաւէտ վասն մեր միայնոյ, քանզի ոչ արդեաւք լինէր կարաւտ պատարագի, որ ոչն գիտաց զմեղս, նզովեա՛լ եղիցի։

ԺԱ։ Եթէ ոք ոչ խոստովանի զՏեառն մարմինն կենդանարար գոլ, եւ իւր նորա յԱստուծոյ Հաւր Բանին, այլ որպէս այլոյ ուրուք քան զնա՝ ընդ Նմա գոլով ըստ արժանաւորութեանն, այսինքն, որպէս միայն աստուածային բնակութիւն ունելով, եւ ոչ յաւէտ կենդանարար որպէս ասացի, զի եղեւ իբրեւ Բանին զամենայն կենդանագործել կարողին, նզովեա՛լ եղիցի։

ԺԲ։ Եթէ ոք ոչ խոստովանի զԲանն Աստուած չարչարեալ մարմնով, եւ խաչեալ մարմնով, եւ զմահ ճաշակեալ մարմնով, եղեալ անդրանիկ ի մե-



ռելոց, ըստ որում կեանք եւ կենդանարար որպէս Աստուած, նզովեա՛լ եղիցի։

Արդ ամենայն նեստորական չար մտածութեան ի ներքոյ ընթացք ի ձեռն այսոցիկ նզովիցս նախ քան զարմատանալն ի բաց խլի, եւ առաջի արկելովքս նորա ըստ ճշմարտութեան բանի, անզայթակղութեան առիթ լինի ամենեցուն, որք զուղղափառութիւնն ախորժեն, եւ ոչ ի նանիր պատառել ձեռնարկեն ի վերուստ անկեալ պատմուճանն Քրիստոսի, այսինքն զնորա հաւատոցն ողջանդամութիւն։ Քանզի եթէ զայն Նեստոր զճշմարտապէս դժնդակն աւձ փախուցեալ, որպէս Եսայի ասէ, այսինքն զճշմարտութեանն պատճառս ի բաց ընկենուլ ի նստել կարթիւ գլորմամբ, այսպիսեաց բանից միայն որ ասաց մեծն Կիւրեղ. յոր ոչ կարաց զզանազանախոհ չարութիւնն իւր ցուցանել, այսինքն հնարել ինչ առ ճշմարտութիւնն, զիա՛րդ այլովք յամենեցուն այսոցիկ խոստովանութեամբ ոչ զանպարտաւորութիւն յամենեցունց տարցի. քանզի եւ իւր Նեստորի, եթէ զայսոցիկ ձայն խոստովանութեան էր ընկալեալ, ոչ արդեւք լինէր ի բաց ընկեցեալ յեկեղեցւոյ, այլ եւ հաղորդակից զնա եւ եպիսկոպոսապետ համարէր Կիւրղոս ըստ որում եւ յիւր Թուղթսն գրեաց։

Այլ մեք ի խորհուրդս մեր սրբազան հիմն կառուցեալ զայսոցիկ ուղղափառ գլխոցս զաւրութիւն զամենայն աւրինաւոր ձայն ի միտս ի մէնջ յառաջ բերեալ շինել ի վերայ նորա ճեպիմք, եւ երկուս բնութիւնս խոստովանելով ի վերայ Միածնի Որդւոյն Աստուծոյ Տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի, յետ ըստ ամենայնի նմանելոյ նորա մեզ առանց մեղաց ոչ այլ ինչ ասեմք կամ իմանամք, բայց միայն զի Աստուած գոլով եւ Հաւր

համագոյ, մարդ եղեւ ճշմարտապէս մարդկան համագոյ, այսինքն միջնորդ Աստուծոյ եւ մարդկան, յինքն միաւորեալ մարդկային բնութիւն, այսինքն ընդ իւրոյ Աստուածութեանն, ոչ ի բաց բարձեցելոյ այսոցիկ տարբերութեանց եւ յետ միաւորութեան, այլ մի դէմ մեզ եւ մի անձնաւորութիւն ցուցեալ Աստուած ըստ ճշմարտութեան մարմնացելոյ եւ կատարելապէս մարդացելոյ։

Քանզի նախ քան զմիաւորելն, այսինքն միանալն Միածնի Բանին Աստուծոյ ընդ մերոյս բնութեան, միով եւ միայնով բնութեամբ գոլ զնա հաւատամք, այսինքն աստուածութեան էութեամբ, ըստ որում Հաւր եւ Հոգւոյն սրբոյ համագոյ։ Իսկ երկու բնութեամբ յետ առնլոյն զոր ի մերոյս զանգուածոյ, այսինքն որպէս Աստուածութեամբն կատարեալ, այսպէս մարդկութեամբն կատարեալ, եւ գիտեմք զնա եւ քարոզեմք, որպէս ի նոցունց յայսցանէ յերկուց բնութեանցս մի որդի եւ Քրիստոս զնոյն ծանուցեալ։ Ուստի եւ զմի բնութիւն ասել Բանին Աստուծոյ մարմնացելոյ, որպէս նորին գոլով մտածութեան, նոյնպէս ընդունիմք եւ խոստովանիմք։ Քանզի ի ձեռն ասելոյն մարմնացեալ՝ այլ էութեան քան զԲանին բնութիւն յայտնումն՝ ըստ սրբոյն Կիւրղի մուծանեմք, քանզի ոչ երկուս բնութիւնս մարմնացեալս ասեմք, այլ մի նորին Բանին, այսինքն զնոյն Աստուածն Բան մարմնանալ մարմնով հոգի ունաւղ եւ բանականիւ իմանալի։ Եւ բնութեանցն իւրութիւնսն խոստովանելով, ոչ այլ ինչ ժողովել յայսմանէ ախորժեմք, բայց զի մարմին՝ առեալն յԱստուծոյ էութենէն՝ ոչ աստուածութեան բնութիւն եղեւ, եւ ոչ զգոլն մարմին ի բաց եթող։ Եւ աստուածութիւնն մարմին հոգեւոր, հոգի բանական եւ իմա-



նալի յինքն միաւորեալ ըստ անձնաւորութեան, ոչ ի մարմնոյն փոխադրեցաւ բնութիւն, եւ ոչ բնաւին ինչ յիւրոց փառաց էն եղծ կամ փոխադրեցաւ, քանզի այսպէս խորհել մեզ յաղագս նորա ասել, սրբոց հարցն ուսուցանեն բանք։

Եւ նախ քան զամենեսին իմաստունն Կիւրեղ յիւրութեանն, որ ըստ բնութեանն ասելով մնացելոյ երկաքանչիւրին, այսինքն աստուածութեանն եւ մարդկութեանն գոլ միաւորութեան. եւ ասաց զայս ուսուցանելով մեզ, թէ ոչ փոխադրութիւն ինչ միաւորեցելոյ ի ձեռն միաւորութեանն եղեւ, այլ մնաց իւրաքանչիւր ի նոցանէ զիւրոյն բնութեան անփոփոխութիւն պահելով։ Նոյնպէս եւ Կիւրղի ուսուցիչն եւ վարդապետ մեծն Աթանասիոս զնոյն ճանապարհ ունի այսպիսեաց բանից եւ մտածութեանց, որոց զվկայութիւնսն զկնի այսորիկ դիցուք։

Արդ երկու բնութեամբք ասել զմիածին Բանն Աստուած Տէր Յիսուս Քրիստոս ի Քաղկեդոն ժողովեցելոցն ԶԾ եւ Լ. ից հարց ըստ այսմ մտածութեան իմանալ նոցա եւ դնել խորհիմք եւ հաւատամք, ըստ որում եւ խոստովանիմք զնոյն ինքն Փրկիչն մեր եւ Տէր, եւ աստուածութեամբն կատարեալ, եւ մարդկութեամբն կատարեալ, վասն զի եւ երկուց բնութեանցն զմի եւ զնոյն խոստովանելով յաստուածութենէ եւ ի մարդկութենէ ասեմք։ Եւ վկայէ մերոյս բանի յաղագս այսորիկ, որ յետ նոցա յայսմ յաստուածապահ եւ յարքունական քաղաքի եղեալ Ե. երորդ սուրբ ժողովն, յիւրումն սահմանի գրեալ այսպէս. Եթէ ոք երկուս բնութիւնս խոստովանելով, ոչ որպէս աստուածութեամբ եւ մարդկութեամբ զմի Տէրն մեր Յիսուս Քրիստոս ճանաչել խոստովանեսցի, զի ի ձե-

ուըն այսորիկ նշանակեսցէ զզանազանութիւն բնութեանցն, յորոց անշփոթաբար անպատմելի միաւորութիւնն եղեւ, ոչ Բանին ի մարմնոյ փոխադրեալ բնութիւն, եւ ոչ մարմնոյն առ Բանին բնութիւն տարեալ եղեալ, քանզի մնայ յերկաքանչիւրսըն որ ինչ են բնութեամբ, եւ եղեալ միաւորութեանն ըստ անձնաւորութեանն, այլ ըստ անջատման որ ըստ մասին, զայսպիսիս առնու ձայնս Քըրիստոսի խորհրդոյն, կամ զթիւ բնութեանց խոստովանելով (եւ) ի վերայ նորին եւ միոյն Տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի Աստուծոյ Բանին մարմնացելոյ, (եւ) ոչ տեսութեամբ միայնով զզանազանութիւն այսոցիկ տեսանելով, յորոց եւ շարադրեցաւն, ոչ ի բաց բարձեցելոյ վասն միաւորութեան. քանզի մի յերկաքանչիւրոցն, եւ միով երկաքանչիւրքն, այլ (որ) այսուիկ վարի թուով որպէս որոշեալս, եւ առանձին անձնաւորութեամբ գոլ զբնութիւնսն, այնպիսին նզովեա՛լ լիցի։

Արդ հանրական ձայնիւ մեկնեալ զմիտս զերկու բնութեամբք խոստովանելով զՏէր մեր Յիսուս Քրիստոս, յորոց ի Քաղկեդոնն ժողովեալք, ոչ կարեմք հաւանեցուցանել զմիտս մեր, առանց դատապարտութեան լինել առ ի յԱստուծոյ, առ այս ընդդիմաբանութեանն, որք ոչն ընդունին եւ խոստովանին անյերկուաբար զայսպիսի ձայնս։ Քանզի ոչ պարզաբար ասացին սուրբ հարքն երկու բնութեամբ ճանաչել զՔրիստոս, այլ ամենայն ուստեք փակեալ զմիտսն Նեստորի զՄիածինն Աստուած Բանն այսոքիւք ճանաչել ասացին, զի մի ոք ըստ նորա ամբարշտութեանն ասել ձեռնարկիցէ, եթէ Քրիստոսդ եւ Տէրդ անուն ըստ իրիք համանունութեան եւ արժանաւորութեան հաւասարութեան Բանին Աստուծոյ եւ որոյ ի զաւակէն Դաւթի



ըստ անջատման կոչի։ Այլ ասելով զՄիածինն Աստուծոյ Բան երկուք բնութեամբք ճանաչիլ, զնորա չարափառութեանն մտածութիւն ոչ փոքր ինչ ելոյծ, որ եւ յորս յառաջագոյնն բաւականապէս զգուշացեալք զբարեպաշտութեանն անարատութիւն նախ քան զյաւիտեանս ծնանելոյն նորա ի Հաւրէ, ըստ աստուածութեանն յստակ խոստովանիլ, եւ ի սրբոյ կուսէն եւ Աստուածածնէն Մարիամայ զնոյն ինքն ըստ մարդկութեանն։ Զորս ձայնս որպէս պատերազմիչս իւրոցն կարծեաց, եւ ոչ սուղ ինչ ի լսելիս իւր երբեք ընդունել յանձն էառ Նեստոր, այլ խցեալ զականջս իւր առաւել, քան զորս ի վերայ Ստեփանոսի նախավկային սպանողաբար ժողովեալքն, յաւէտ որպէս իժի քարբի խցեալ զականջս իւր զթովչին ճարտարի զաստուածայնոյ առնն զփրկական աւանդութեանցն ձայն ոչ լուեալ։ Քանզի արդար եւ երանելի այրն այն յառաջնումն թղթին, որ առ նոյն Նեստորիոս գրեալ ի նմանէ, զայս խնդրէր առ ի նմանէ այսպէս ասելով. Քանզի թէեւ ճառեցաւ բան ի ժողովուրդ ընթացեալ, այլ ուղղեսցի այցելութեամբք. եւ արժանաւորեա՛ շնորհել բան զայթագղեցելոցն Աստուածածին անուանելով զսուրբ կոյսն, զի ուրախացուսցես ըզտրտմեալսն, եւ ուղիղ փառս ունելով առ ի յամենեցունց խաղաղութեամբ եւ համաձայնութեամբ ժողովրդոց կատարեսցուք զտաւնս։ Նոյնպէս եւ ի թղթին որ առ արեւելեանսն ասէ այսպէս, նոյն երանելիս Կիւրեղ. Քանզի պարտ էր նոցա զմտաւ ածել, զի գրեթէ ամենայն որ յաղագս հաւատոյ հանդէս մեր ժողովի հաստատեով թէ Աստուածածին է սուրբ կոյսն։

Իսկ եթէ բնաւին երկուս բնութիւնս ասելն, որպէս մինչ Նեստորի այսպիսեաւ ձայնիւ վարեալ

*զայթագղութիւն առնէ բազմաց, որ զայսն ածէ զմտաւ՝ իմասցի նախ ի սրբոցն Հարց գոլ զձայնս զայս, եւ եթէ ոչ է պարտ վասն որոց չարաչարն իմանան զբարեպաշտութեամբ ասացեալսն, զայսոսիկ ուրանալ զուղղափառութեանն բանս, վասն զի եւ Արիանոսացն բառս ինչ ի գրոց սրբոց առ իւրեանց չար մտածութիւնսն առեալ, եւ ի ձեռն այսոցիկ փորձեալ զառողջութիւն հաւատոյն որ ի սուրբ Երրորդութիւնն չարժել, ոչ ուրուք որք յետնոցայն ի բանս իւրեանց յառաջաբերելոյն զայն հրաժարեցին։ Այլ եւ Կիւրեղ, որ առ նոյն Նեստորիոս պատերազմն էր յԵփեսացւոց ժողովին, յորս ջատագովն էին նմա ի հայրականսն վարդապետութիւնս, զմեծին Գրիգորի Աստուածաբանի եբեր բանս յառաջ, որ են այսոքիկ. Եթէ ոք ի ներքս բերէ երկուս որդիս, առաջին՝ զոր յԱստուծոյ եւ ի Հաւրէ. իսկ երկրորդ՝ զոր ի Մարիամայ, եւ ոչ մի եւ զնոյն յորդեգրութենէն արտաքս անկցի, զոր խոստացաւ ուղիղ հաւատացելոցն։ Բնութիւնք երկու, քանզի Աստուած եւ մարդ, վասն զի հոգի եւ մարմին, բայց որդիք ոչ երկուք եւ ոչ աստուածք, զի եւ ոչ աստանաւր երկու մարդք, թէ եւ այսպէս Պաւղոս զներքին մարդոյն եւ զարտաքին անուանեաց։ Եւ ոչ այս միայն, այլ եւ առ Սեկունդոս յառաջին թղթին հաւաստեաւ երկու բնութիւնս ի վերայ Քրիստոսի խոստովանեաց ասելով, Ապա ուրեմըն որքան եկն ի մտածութիւն եւ է միայն տեսանել հոգւոյ ակամբ, թէ զի՞նչ եղանակաւ մարդացաւ Միածինն։*

*Երկու բնութիւնս գոլ ասեմք միաւորեալս, բայց մի Քրիստոս եւ Որդի եւ Տէր զԲանն Աստուծոյ, մարդացեալ եւ մարմնացեալ, ոչինչ ի ձեռն այսպիսոյս բանի ուսուցեալ մեզ, բայց միայն*



*զոր ինչ ի հինգերորդ սուրբ ժողովն ուսաք ըստ միայն տարբերութեան միաւորեցելոցն իմանալ, զայսոսիկ խոստովանել, որպէս եւ ինքն իսկ ի թղթին որ առ Ղէգէոս ասաց, եթէ Նեստորիոս յասելն երկու բնութիւնս, զզանազանութիւն նշանակելով մարմնոյն եւ աստուածութեանն, քանզի այլ է Բանին եւ այլ մարմնոյն բնութիւնն, ոչ եւս եւ զմիաւորութիւնն խոստովանելով ընդ մեզ, ստուգագոյնս եբեր ի վերայ, եթէ մեք զայսոսիկ միաւորեալ մի Որդի, մի Տէր, եւ մի Քրիստոս խոստովանիմք. եւ որպէս հարքն ուսուցին մի բնութիւն Բանին Աստուծոյ մարմնացելոյ, քաջայայտ եւ առանց ընդդիմաբանութեան, եթէ միաւորութիւնն զզանազանութիւնն ոչ ի բաց եբարձ. վասն որոյ եւ երկուս ասեմք բնութիւնս, իսկ մի բնութիւն Բանին Աստուծոյ մարմնացելոյ. յայտ է զնորին բնութեան միածնին միաւորելն յինքն ըստ անձնաւորութեան բնութեան մարմնոյ, յայտ է զի հոգեւորի եւ իմանալոյ։*

*Արդ բազում ինչ եւ այլ բանս յաղագս այսոցիկ ունել ասելով առ ի հաւանութիւն մեզ ուղիղ եւ անարատ հաւատոյս, եւ յանդիմանութիւն առ որոց ոչ առողջապէս, եւ ոչ բարիոք անձանց իւրեանց զանջատումն եկեղեցւոյ Աստուծոյ հնարին առնել՝ այսոքիւք շատասցուք, խոյս տուեալ յերկայնութենէ գրոյ, եւ Սողոմոնի հաւանեալք ասելոյն, եթէ Տո՛ւր պատճառս իմաստնոյն, եւ իմաստնագոյն լիցի։*

*Իսկ եւ յաղագս ներգործութեանց եւ կամաց կամաւորապէս արկանել ի ձեզ հոգեւորականդ սեղանաւորս զհաւատացեալն մեզ տաղանդ բանի փութասցուք, զի անցեալ Տէրն ի ձէնջ խնդրեսցէ հանդերձ տոկոսեաւք զիւրն, իսկ զմեզ ոչ իբրեւ*

զվատ ծառայս դատապարտեսցէ։ Ասեմք այժմ ի վերայ Քրիստոսի երկուս ներգործութիւնս, նշանակելով զմինն եւ զնոյն ներգործել, եւ որպէս զմարդ, եւ որպէս զԱստուած, որպէս զԱստուած՝ զԱստուածայինսն, եւ որպէս զմարդ զմարդկայինսըն. զերկաքանչիւրսն ընդ միւսոյն կցորդութեան եւ ոչ որոշաբար եւ անջատապէս, այլ ի ձեռն եղելոցն որ ինչ էրն հաւատարմացուցեալ. այսինքն թէ Աստուած ճշմարիտ եւ մարդ անսուտ, եւ ոչ ըստ ցնորից ցուցեալ։ Քանզի վասն ոչ հաւատալոյն ի նա Հրէիցն եւ ասելոյ, Վասն է՞ր դու մարդ ես եւ առնես զանձն քո Աստուած, եւ զգերաբունսն աստուածային նշանս ցուցանելով ասէր, Եթէ ոչ գործեմ զգործս Հաւր իմոյ մի՛ հաւատայք ինձ, իսկ եթէ գործեմ, թէ եւ ինձ ոչ հաւատայք սակայն գործոցս հաւատացէք, զի գիտասջիք եւ հաւատասջիք եթէ Հայր յիս, եւ ես ի Հայր։ Իսկ առ որս յետ այնորիկ հանդերձեալ էին երեւել հերձուածողս եւ արհամարհել զտնաւրէնութեան նորա խորհուրդ, յառաջագոյն զգուշանալով ճշմարտութեանն, թոյլ տայր մարմնոյն ներգործել զիւրսըն յորժամ եւ կամէր, որպէս եւ սուրբն Գրիգորիոս ասաց Նիւսացւոցն եպիսկոպոս, այսինքն զանանդգոսնելի գործս մարմնոյ եւ կիրս, ի հաւատարմութիւն անընդդիմանալի, ճշմարտապէս անդրանիկ լինելոյն նորա ի բազում եղբարս, եւ մերձաւորապէս հաղորդ լինել մեզ մարմնոյ եւ արեան։ Ուստի եւ յետ անապականութեամբ յարութեան մարմնոյ նորա զնորին բնութիւնն հաւատարմացուցանելով ըստ մեծին Բարսղի ի կերակուր հպել արժանաւորաց(1)։

------

(1) արժանաւորեաց, ԺԷ (էջ 593)։ ԺԸ (էջ 602)։



Արդ Աստուած յաւիտենական, որ միահամուռ ունի զծագս երկրի, որպէս Եսայիաս գոչէ, ոչ քաղցիցէ եւ ոչ ծարաւեսցի. սա եւ՛ քաղցեաւ եւ՛ ծարաւեցաւ մարմնով իւրով։ Եւ դարձեալ տեսեալ մարդ զաստուածութեանն գործէր գործս, զի այս իսկ էր ըստ իմանալոյն, եւ զայս իմաստունն Կիւրեղ խրատէ զմեզ ի Գանձին այսպիսի ինչ ասելով. մի Քրիստոս քարոզեն աստուածային գիրք. քանզի մի է Աստուած Հայր, եւ մի Տէր Յիսուս Քրիստոս, քանզի ի գործոց յորքան ինչ վայել է միայնոյ Աստուծոյ ճանաչի Աստուած։ Իսկ վասն զի մարմին եղեւ Բանն, .ըստ որում գրեալ է, պարտ էր եւ մարդ երեւիլ, եւ ոչ էր այլուստ տեսանելի այսպիսի, բայց միայն ի մարմնոյն անբամբասեցեալն կրից եւ բանից կարեւորապէս, եւ զմարդկան վայելուչսն գործէր եւ խաւսէր, զի արդարեւ ցուցցի եւ մարդ եղեալ եւ յետ սակաւուց. Քանզի Աստուած էր՝ ճշմարիտ մարմնով, եւ մարմին՝ ճշմարիտ Աստուածութեամբ։

Արդ՝ որովք պարտն էր ճանաչիլ Աստուած, զայնոսիկ աստուածաբար ներգործէ, եւ յորոց էրն կարեւոր արդարեւ մարդ երեւիլ, զայնոսիկ գործէ եւ խաւսի տնաւրինելով զխորհրդոյն ճշմարտութիւն։ Արդ մի ոք զմեզ, այսինքն զԱստուծոյ եկեղեցիս, ձեռնարկեսցէ բամբասել, որպէս այսպիսեաւք վարեալ ձայնիւք, ի հասարակաց խոստովանութեան հաւատոյս զմտաւ ածելով թէ ո՞րպէս ի ձեռն Արիանոսացն չարամտածութեան, եւ զուղիղ բանսն առ իւրեանց գրել հերձուած, որք ի Նիկիա ժողովեալ սուրբ հարքն մեր, որպէս մեծն ասաց Աթանասիոս, հետաքննին եղեալք զհամագոյն եդին բառ, յաղագս որոյ հնարագիւտ ինչ լինել Արիանոսացն, ոչ ուրեք եղեւ կար։ Եւ դարձեալ զհաւա-

տոյս նշանակ, որ միշտ յեկեղեցւոջ Աստուծոյ ասի·
խոտորեալ մտածութեամբ առեալ Նեստորի, սքան-
չելին Կիւրեղ զըստ անձնաւորութեանն միութիւն
եմոյծ ի ներքս։ Այսպէս եւ որ ի Քաղկեդոնին, եւ
Հռոմայեցւոցն առաջնորդ երանելին Լեւոն, չարա-
խոհ ծերոյն Եւտիքեայ ի վեր երեւեալ, եւ մերոյս
բնութեան գոլ զՏեառն մարմին ասել ոչ առեալ
յանձն, այլ յետ միաւորութեանն մի բնութիւն
մարմնոյն եւ աստուածութեանն դանդաչեալ, կա-
րեւորապէս առ ի բաց բարձումն նորայոցն ցնո-
րական, եւ երկուք բնութեամբք ճանաչել զՄիա-
ծին Աստուծոյ Բանն՝ ուսուցին, եւ զերկաքանչիւրն
բնութիւն ներգործել ընդ միւսոյն կցորդութեան,
զոր ինչ իւրն ունէր՝ ընկալան, զի ի զանազանու-
թենէ ներգործութեանցն, զանազանութիւն բնու-
թեանցն միոյն Տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի
ծանիցի։ Քանզի ի ներգործելոյն բնութիւնն ճա-
նաչի, որպէս երանելիքն Կիւրղոս եւ Նիւսացւոցն
Գրիգորիոս ուսուցին ի բանսն իւրեանց։

Իսկ եւ վասն կամաց զճշմարտութիւնն ասել
ոչ է դանդաղելի, որպէս եւ ոչ զայն պարզաբար եւ
առանց քննելոյ իրաւացուցաք զերկուց կամաց
ձայնն, ի ժամանակս մեր այսպիսի խնդրոյս շար-
ժեցելոյ, յորժամ լուեալ առաջնորդաց եկեղեցւոյ
Աստուծոյ ոչ էր կարողութիւն, այսպիսոյս ձայնի
հրապարակագրութեամբ եղելոյ, յունայնավայելու-
չըս աւձտել զմարմինս եկեղեցւոյ Աստուծոյ կա-
րողի։ Այլ նախ զի եւ ոչ սրբոց հարցն է անկուռ
ճանապարհ երկուց կամաց ճառումն, եւ ապա վա-
սըն որոյ ձեռնարկեցինն, մի ներգործութիւն ա-
սել Քրիստոսի, եւ ըստ զանխլութեան նմին ի ներ-
քըս բերեալ յառաջին եւ զգլխաւորն ներգործու-
թիւնն մարդոյ, զիմացողականն ասեմ եւ կամե-



ցողական, ոչ տեսանիլ ի նմա յառաջին զմերս ի
Բանին Աստուծոյ առ ի բժշկութիւն եւ վերաստեղ-
ծումն, զոր պարտ էր եւ նախ քան զայլսն առնուլ
նմա, որպէս յառաջագոյն ախտացեալ զմեղացն
հիւանդութիւնն եւ զբոլորն մարդ ժանդացուցեալ.
քանզի բնութիւն անմեղ եւ կամ անձնիշխան արար
զԱդամ իսկ զընուստն(1) Աստուած, որպէս սքանչե-
լին Աթանասիոս ասաց։ Արդ կամեցողական զնոյն
զմի Տէրն մեր ըստ երկաքանչիւրին բնութեան գոլ
քարոզել ախորժելով, եւ ցուցանել թէ եւ զկամելն
առեալ ըստ մարդկային մտաց, ոչ հակառակ իւր
ստացաւ զայն, այլ այն բոլորն աստուածացաւ, ան-
շեղելի գոլով առ մեզս բոլորովին, եւ աստուածա-
նալոյն ոչ ի բաց բարձումն մուծեալ բնաւորակա-
նին կամաց, այլ զայն ի յայտնի կացուցեալ հա-
ւաստեաւ, զոր ինչ եւ վասն Նորին Փրկչին՝ մար-
գարէն ասէ, թէ Նախ քան զգիտել մանկանն զբարի
կամ զչար՝ անհաւանելին ի չարութիւնն ընդրելով
զբարին վասն փրկութեան ազգիս մերոյ զմահն
կամաւորութեամբ հաճեցաւ։

Բայց ունէր բնաւորապէս եւ զչկամելն մեռա-
նել վասն հրաժարելոյ մարմնոյն, ըստ ի սկզբանէ
եղելոյ ի նմա ստացողէն զբնութիւնն զահն բնաւո-
րապէս։ Զայսպիսիս ձայն, որպէս ասացի, ի հարցն
իջեալ առ մեզ ընկալաք՝ ոչ ընդդիմացումն ինչ
խորհրդոյն ի ձեռն այսորիկ մուծանել ախորժ-
եալք, մի լիցի, քանզի թէեւ տրտմեցաւ եւ անգի-
տացաւ, եւ առ մահն զչկամելն եցոյց ի ժամանակի
չարչարանացն, այլ ըստ հաճութեան Բանին բնա-
կեցելոյ ի մարմնին այսոքիկ կամեցողականաւ որ
ի Նորին մարմինն գործիւր, յորժամ ըստ որում

------

(1) ի սկզբնուստն ?։

մինչեւ կամէր տայր մարմնոյն զիւրսն ներգործել, որպէս եւ գրեալ է։ Քանզի բնութեանն բանիւ ստացեալ է զկալումն չկամելոյն զմահ բնաւորապէս, կազմեաց զնա երկիւղած ի մահուանէ, քանզի ոչ արդեւք էր ասացեալ ցնա սպառնալեաց բանիւ· եթէ Յաւուր յորում ուտիցէք ի նմանէ մահու մեռանիցիք· եթէ ոչ էր կազմեալ ի նմա զմահն ահագին գոլ։

Արդ եւ Տեառնն հոգի ըստ բնութեանն զչկամելն ունէր առ մահն· իսկ ըստ տնաւրէնութեանն Բանի ամենեւին կամեցողապէս եւ յարձակողաբար, ուստի եւ իւրոց աշակերտացն ասէ· Ցանկանալով ցանկացայ ընդ ձեզ ուտել զզատիկս նախ քան զչարչարել իմ, այսինքն զվախճան խորհրդոյն։ Եւ առ չարչարանսն զկամաւորութեամբն գալ յայտնելով, եւ դարձեալ եթէ, Բաժակ մի ունիմ ըմպել, եւ զի՞նչ փութամ մինչեւ արբից զնա, եւ մկրտութիւն մի ունիմ մկրտել, եւ զի՞նչ փութամ մինչեւ կատարեցայց։ Արդ ի ձեւի այսոցիկ ուսանիմք ըստ իմաստնոյն Կիւրղի թէ զբնաւորապէս չկամելն՝ աստուածավայելչաբար ըստ մեզ զբնութիւնն ի Քրիստոսի կամեցողական արար։

Արդ՝ զասացեալս ամենայն վերստին ի ձեռըն առեալ, եւ համառաւտ զմերոյս ասացուածոյս յայտնումն արարեալ, ասեմք, թէ Աստուած մարդ եղեւ, ոչ մարդ էառ, որպէս Նեստորի թուեցաւ· քանզի Բանն մարմին եղեւ եւ բնակեաց ի մեզ, ոչ ցնորիւք երեւեալ եւ ոչ ստուերի տեսակաւ արարեալ զցուցումն, այլ բնութեամբ եւ ճշմարտութեամբ եղեւ մարդ, զի ի ձեռն պտղոյն բոլորն սրբեսցի մարդկանոյս ազգի զանգուած· եւ ունի զոր մատուցանէ վասն մեր, որպէս մեծ առաքեալն ասաց։ Ուստի անչարչարելի գոլով Աստուած, ոչ



անարժան համարեցաւ չարչարելի լինել մարդ· եւ անմահ գոլով ընդ մահու աւրինակաւք լինել, զի իցէ նոյն ինքն չարչարեալ եւ ոչ չարչարեալ։ Չարչարեալ, զի իւրն նորա մարմին, զոր յարգանդի սուրբ կուսին եւ Աստուածածնին էառ, զբնութեանն անանգոսնելիս եցոյց կիրս, եւ զորս ի ժամանակի փրկական չարչարանացն ի խաչահանուացն ընկալաւ տանջանս։ Իսկ ոչ չարչարեալ, զի ոչինչ յաստուածութեանն բնութիւն կրէր, եւ ի չարչարելն կամաւորութեամբ սրբոյ մարմնոյ նորա։ Արդ եւ ի խաչին էր մարմնապէս, եւ եդեալ զանձն իւր յինքենէ ըստ իշխանութեան իւրոյ, որպէս եւ ինքն Տէրն ասաց· եւ մեռեալ ելեալ մարմնոյն, եւ ոչ միոյ ի նոցանէն որիշ էր աստուածութիւնն, այլ եւ բոլոր էր յանշուանչ մարմնին որ կայր ի նոր գերեզմանին· եւ բոլոր էր ի հոգւոջն որ կայր ի սիրտ երկրի· որով եւ որոց ի պահեստի հոգւոցն երթեալ քարոզեաց, որպէս եւ գլխաւորն առաքելոցն ասաց։

Արդ՝ մի՛ ոք գայթակղեսցի ի մեզ պատճառելով զպատճառս մեղաց եւ մի զեկեղեցի Աստուծոյ որ ի մեզ հեգնեսցէ, որպէս անջատումն եւ որոշումն աւանդելով Քրիստոսի խորհրդոյն, եւ բառս ինչ ի սրբոց հարցն մերոց հատանելով եւ գողանալով չարակամաբար, ժողովեսցէ որ ինչ ճշմարտութեանն բան ոչ կացուցանէ յանդիման եւ առաւելապէս որովք զերանելին Լեւոն Հռոմայեցւոցն եղեալ նախագահ, եւ զնորայսն բանս ոմանք ընդ գայթակղութեամբ առնել ի նանիր եւ ոչ իրաւացի, զկնի այսորիկ թղթոյ զնոցա վկայութիւնս կատարեալ իմացուածով յառաջ բերցուք, որովք

*եւ ուղղափառութիւն նորա յայտնի լիցի, եւ որովք ախորժեն Նեստորի համախոհ ցուցանել զնա՝ ամաչեսցեն։ Իսկ եթէ ինչ ի Քրիստոս սէրդ ձեր ընդդիմասցի գրեցելոցդ ի մէնջ, մի՛ դանդաղիցիք ի ձեռն թղթոյ եւ զթուեցեալսն ձեզ բարւոք գոլ ընդունել· եւ յաղագս երկբայեցելոցն խնդրել բարւոք ընդրութեամբ պատասխանատրութիւն, քանզի պատրաստ եմք առ այս ըստ առաքելականի վարդապետութեանն։ Վասն զի եւ մեծն Աթանասիոս ասէ, Որք մեկնեն զոր ինչ ասենն, ոչ ընկենուլ ի բաց, այլ եւ ընդունել արժան համարեցաւ, քանզի այսպէս ասաց ի թղթին իւրում որ առ Եւսեբիանոս եւ Ղուկիփերա, եւ առ որս ընդ նոսայն։*

*Արդ այսոցիկ այսպէս խոստովանելոցս աղաչեմք զձեզ, զոր այսպէս խոստովանին եւ մեկնեն զբառսն զոր ասենն մի՛ դատապարտել, եւ մի՛ առանց քննութեան ի բաց ընկենուլ, այլ յաւէտ աղաչելով եւ աղերսելով յանկուցանել։ Արդ գիտելով եթէ յահեղ ատենին Քրիստոսի, ուրանաւր ամենայն բանք եւ գործք, այլ եւ որ ինչ ի մտածութիւնս մեր են, քննեսցին բանքս մեր այսոքիւ։*





## ՁԶ

**ՊԱՏԱՍԽԱՆԻ ԹՂԹՈՅՆ ԶՈՐ ԳՐԵԱՑ ՏԷՐ ՍՏԵՓԱՆՆՈՍ ՍԻՒՆԵԱՑ ԵՊԻՍԿՈՊՈՍ, ԱՌ ՏԷՐ ԳԵՐՄԱՆՈՍ ԿՈՍՏԱՆԴՆՈՒՊԱՒԼՍԻ ՀԱՅՐԱՊԵՏՆ, ՈՐՔ ԵՐԿՈՒ ԲՆՈՒԹԻՒՆՍ ԵՒ ԵՐԿՈՒՍ ՆԵՐԳՈՐԾՈՒԹԻՒՆՍ ԵՒ ԵՐԿՈՒՍ ԿԱՄՍ ԽՈՍՏՈՎԱՆԻՆ ՏԵԱՌՆ ՄԵՐՈՅ ՅԻՍՈՒՍԻ ՔՐԻՍՏՈՍԻ, ԵՒ ՈՐՔ Ի ԿԵՆԴԱՆԱՐԱՐ ԽՈՐՀՈՒՐԴՆ ԶՈՒՐ ԽԱՌՆԵՆ, ՀԵՏԵՒԵԱԼՔ ԺՈՂՈՎՈՅՆ ՔԱՂԿԵԴՈՆԻ։**

*Յոքնապատիւ հռչակելի փառաւորութեամբ յառաքելականդ ժամանեալ ծայրագոյն նախագահութիւն, Տէր Գերմանոս, վերատեսուչ հոգւոց մեծանուն եւ թագաւորական քաղաքիդ Կոստանդնուպաւլսի եւ տիեզերական հայրապետի։*

*ԶՔրիստոսի խաղաղութիւնն առբերելով մեզ աւրինակ բարեպաշտութեան, եւ առ միմեանս կապակցութեան հոգեւոր սիրոյ եւ միաբանութեան հաւատոյ, ներգրաբար բացայայտութեամբ ի ձերմէդ ընկալաք մեծանձնութենէ, որպէս մոլորելոց զհետ ընթացեալ մեզ, ըստ աւրինակի քաջ հովուապետին ի վերայ լերանց զկորուսեալսն խնդրելով· եւ յաւէտ յիրաւի։ Զի զսիրելոյն ի ճշմարիտ սիրողէն փոխանորդեալ զաթոռ հայրապետութեանդ, հետեւաբար զնորին աւրինակ սիրոյ հազարապետութեանդ, եւ՛ ունել ճշմարտապէս եւ՛ քարոզել*

------

Բնագիր Ա. էջ 373 - 395։

ձեզ հաւատամք ոչ միայն նամեսական (եւ) մեր-
ձակայիցդ, այլ եւ բացականաց տարակացելոցն,
նաեւ ուր ոչ անուանեցաւ Քրիստոս, զի դոյն իսկ
կոչեցարուք հաշտեցուցանել Քրիստոսի զամենես-
եան ընդ Աստուծոյ ի պարծանս ձեր յաւուրն Քը-
րիստոսի, զի յերեւել ճշմարիտ հովուապետին գը-
տանիցիք անթառամ պսակացն հաղորդ։

Իսկ մեք նուազունք յազգ բացագոյն տարո-
րոշեալք յոլորտս հիւսիսային ալեաց, եւ ոչ յոլով
դեգերանաւք տեղեկացեալ իմաստութեանն ներ-
անձնական կրթութեանն մակածութեամբք, եւ ոչ
բարձրայաւնական վարժից գործական եւ տեսական
ճարտասանութեանն ճեմարանին ներհունք, նաեւ
վերջացեալք ի գործառնութենէ երկասիրութեանն,
եւ զանխլացեալք կոչողին ձայնի ի հոգեւորակա-
նըն այգի, զրկեալք ըստ ժամանակին եւ յառանձ-
նական տառիցն գծագրութենէ, որով զանցեալսն
մարթէաք գիտել, եւ զներկայսս ապագայիցն թո-
ղուլ առ ի յիշատակ, անճաճանչ աղջամղջաւ եւ
անլոյս ստուերաւ պարփակեալ նստէաք ի խաւարի
դիւցազանցն տաւնից եւ ջաշանցն հեթանոսակա-
նաց, հնազանդեալ ծառայէաք արարածոց եւ ոչ
արարչի, դառնաշունչ հողմովն ձմեռայնւոյ պաղ-
եալք անհաւատութեամբ, անբաժք ի պտղոյ աս-
տուածային արգասաւորութեանն։

Իսկ յորժամ քաղցրութիւնն եւ մարդասիրու-
թիւնն Աստուծոյ կամեցաւ ծագեաց ի մեզ զար-
դարութեանն արեգակն, եւ զհարաւ քաղցրուսոյց
վարդապետութեան Բանին կենաց ծաւալեցոյց։ Ե-
լոյծ զկարծրութիւն սառնամանեացն ի սրտից մե-
րոց, եւ վարձկանեցոյց զմեզ թէպէտ հազիւ եւ ա-
նագան ուրեմն, սակայն մետասաներորդ ժամուն
հաղորդեալք, կոչեցաք ի կոչումն սուրբ ի՛ձեռն



խոստովանողին Քրիստոսի սրբոյն Գրիգորի, որ
սքանչելագործ զաւրութեամբքն Աստուծոյ ընդ ա-
մենայն երկիր ետ զբարբառ իւր, եւ մեծաւ համ-
դիսիւ չարչարանաց զպակասութիւն նեղութեանն
Քրիստոսի ի մարմնի իւրում ելից, եւ իբրեւ զոր-
դիս սիրելիս վերստին կոչեաց զմեզ ի մահուանէ
ի կեանս, ընծայելով երկրպագուս սրբոյ Երրոր-
դութեանն, զոր ի դէպ է ասել, եցոյց մեզ զբանն
կենաց, ընդ որ հայեցաք եւ տեսաք եւ խոստովա-
նիմք եւ երկրպագեմք։

Եւ յետ այսորիկ յաստուածարեալ մեծի ժո-
ղովին Նիկիայ, որ ի քակումն Արիոսի ՅԺԸ իցն
գտեալ խոստովանակիցն մեր սուրբն Առիստակէս,
շառաւիղն ըստ մարմնոյ եւ հոգւոյ սրբոյն Գրիգո-
րի, առեալ յԱստուծոյ զլուրն կենաց ետ մեզ զնոյն
սահմանաւոր գրով, զոր ունիմքս առանց յաւելման
եւ պակասութեան։ Նոյնպէս եւ զժողովն որ ի Կոս-
տանդինուպաւլիս, որ ի կործանումն Մակեդովնի,
եւ զԵփեսոսին որ ի լուծումն Նեստորի, ընկալաք
որպէս հիմն կենաց եւ առաջնորդ ճանապարհի առ
Աստուած. եւ այսպէս ներփառական առասութեամբ
ըստ տիեզերական երիցն ժողովոց ի մի բերան
փառաւոր առնեմք զԱստուած։ Իսկ զժողովն Քաղ-
կեդովնի, վասն զի ոչ ըստ սրբոց նախնեղելոց վար-
դապետացն տեսանեմք ասացեալ, ոչ ընդունիմք։

Եւ վասն զի ընկալաք մեղադրութիւն ի ձէնջ
ի ձեռն Ստեփանոսի քահանայի բանիւ եւ գրով,
եթէ ընդէ՞ր զտնաւրէնութեանդ պատառէք պատ-
մուճան, որ է մի հաւատն ի Քրիստոս, զոր համար-
ձակագոյն ասասցուք, եղիցի գործողաց վարձն ի
Տեառնէ, եւ վախճան նոցա յայրումն ո՛ ոք եւ իցէ։
Եւ վասն զի երդմնեցուցէք զմեզ թէ զոր արժանի
ընդունելութեան համարիմք ի գրեցելոցդ խոստո-

*վանեցէք, եւ զոր հակառակ ճշմարտութեան կարծիցէք գրեցէք առ մեզ։ Արդ թէպէտ եւ ոչ գեղեցկադիր յարմարութեամբ ստորոգութեան կարացաք շարադասել ըստ ձերում արհեստագիտ վսեմախոհ վերտառութեան, սակայն զանտեսանելի մեր սրտի խորհուրդ մակերեւապէս ընթադրութեամբ յանդիման կացուսցուք գերագոյնդ ձեր վարդապետութեան՝ որ ունի այսպէս։*

*Զնախակարգեալ ի մատենիս ձերում զերկոտասան գլուխս բանի զերանելոյն Կիւրղի Աղեքսանդրացւոյ, ըստ սրբոց առաքելոցն հրեղէն լեզուաց աստուածխաւսութիւնսն նախապատուեմք եւ խոստովանիմք։ Իսկ առ ի ձէնջ ասացեալս, վասն զի զանխլաբար յինքեան բերէ զնեստորի չար մըտածութիւնս, ասելով երկուս բնութիւնս եւ երկուս ներգործութիւնս եւ երկուս կամս, եւ զի պատճառէք եթէ Եւտիքէս մի բնութիւն ասաց չփոթեալ խառնակութեամբ, հարկաւորապէս գրեաց Լեւոն Հռոմայեցի առ ժողովն Քաղկեդովնի, ասել երկուս բնութիւնս, եւ առանձնապէս կիրս նոցին։ Զի՞նչ քան զայսոսիկ անտեղագոյն յաղթութիւն, չարիւ զչար բժշկել կամելով, եւ թիւրութեամբ զթիւրութիւն ուղղել. որ ոչ յաջ եւ ոչ յահեակ առաք հրաման խոտորել, այլ զմիջինն գնալ արքունական պողոտայ։ Եւ ոչ զի Սաբելիոս եւ Եւտիքէս չփոթաբար միաւորեն, հարկ է զի արիոսաբար եւ նեստորաւրէն բաժանեսցուք, այլ զերկոսեանն ի բաց վարել կողմանս իբր զապականիչս հաւտին Քրիստոսի, եւ զնոյն ինքն զաւանդիչս երկուց բնութեանց, եւ ընդդէմ դնել նոցա զասացեալսն ի սրբոց վարդապետացն, որ եւ զԵւտիքէսին պապանձեցուցանեն զրաբանութիւն, եւ զերկուցն ժողովումն մի բնութիւն սահմանեցին։*



*Քանզի սուրբն Աթանասիոս Աղեքսանդրացւոց եկեղեցւոյն վերատեսուչ յառ Ապողինար թղթին, մի բնութիւն Աստուծոյ բանին մարմնացելոյ՝ ասաց։ Զսոյն եւ հետեւող նորին մեծն Կիւրեղ, յորժամ եհարց ցնա Սուկենոս եպիսկոպոս Նիոյկեսարիայ քաղաքին, թէ պա՞րտ է երկուս բնութիւնս ասել Բանին մարմնացելոյ թէ մի. եւ նա յայտնապէս գրով պատասխանի առնէ թէ, յետ միաւորութեան ոչ անջատեմք զբնութիւնսն ի միմեանց, եւ ոչ երկուս որդիս հատանեմք զմին եւ անբաժանելին, այլ մի ասեմք, եւ որպէս հարքն ասացին, մի բնութիւն Աստուծոյ Բանին մարմնացելոյ։ Ահաւասիկ յայտնապէս, որք երկուս ասեն բնութիւնս որոշեն զբնութիւնսն եւ յերկուս որդիս հատանեն, որպէս յայտ է ի հարցմանէդ եւ ի պատասխանւոյդ։ Եւ դարձեալ յերկրորդ թղթին առ նոյն Սուկենոս։*

*Այլ ասեն, ասէ, հակառակորդքն թէ մի բնութիւն է մարմնացելոյ Բանին Աստուծոյ, հարկ է ամենայնիւ չփոթումն ընդունել եւ խառնակումն, որպէս ծախեցելոյ եւ ի ներքս գողացելոյ մարդկայնոյն բնութեան. եւ անգիտացան դարձեալ որք զուղիղսն թիւրեն, եթէ ըստ ճշմարտութեան է մի բնութիւն Բանին մարմնացելոյ։ Եւ դարձեալ նոյն Կիւրեղ գրէ առ Եւղոգիոս քահանայ, Արդ եթէ ասեմք, ասէ, միաւորութիւն, խոստովանիմք թէ մարմնոյն հոգեւորի իմանալոյ եւ Բանին, սակայն զմիութիւնն խոստովանեցելոյ, ոչ եւս մեկուսին ի միմեանս միաւորեալքն, այլ մի որդի այնուհետեւ, եւ մի բնութիւն նորա։ Եւ դարձեալ գրէ առ Թէոդոս թագաւորն բարեպաշտ, Թէպէտ եւ ի զանազանից, ասէ, եւ յաննմանից եկեալ առ միմեանս բնութիւնք, մի Քրիստոս, մի Որդի, մի բնութիւն խոս-*

տովանելի հանդերձ առեցելովն։ Զնոյն գրելով եւ առ Ակակիոս եպիսկոպոս Մելիտինեայ, Հետեւելով, ասէ, ամենայն ուրեք աստուածայնւոյն գրոց՝ ի սրբոյ կուսէն առնուլ զմարմինն հաստատեմք այսուիկ. յորոց ենն մինն եւ միայն որդի եւ Տէր Յիսուս Քրիստոս երկուս բնութիւնս միաւորեալ ասեմք. իսկ յետ միաւորութեանն որպէս ի բաց բարձելոյ յերկուս հատմանս մի գոլ հաւատամք զՈրդւոյ բնութիւն։ Ահա ցոյցք յայտնիք, թէ հակառակաբար ունին ի ձէնջ ասացեալքս առ սրբոցն հարանց դաւանութիւն։

Դարձեալ տեսցուք եւ յաղագս երկուց ներգործութեանցդ, զոր համբաւէք, թէպէտ եւ նախ զկամսն ասելի է, եւ ապա զներգործելն, այլ վասն զի այս կարգեալ էր ի մատենիս ձերում ըստ այսոցիկ եւ զպատասխանիս ընկալարուք։ Ասէք սահմանել Ղեւոնի, ժողովոյն Քաղկեդոնի, զոր եւ գրրեցէքս առ մեզ, թէ եւ ներգործէ երկաքանչիւր բնութիւնն ի նոյն հաղորդութեամբ։ Եւ անուանեալն ի ձէնջ վեցերորդ ժողովն, դարձեալ հաստատեն զնոյն սահման թէ երկաքանչիւրն բնութիւն կամի եւ ներգործէ, զկամելն յաւելին յասացեալն Ղեւոնի։ Եւ այժմ դարձեալ գրէք թէ, մի եւ նոյն երբեմն որպէս մարդ ներգործէ, եւ երբեմն որպէս զԱստուած, որովք գրեթէ մարտ եղեալ ընդ միմեանս պատերազմին ասացեալքս ի ձէնջ, քանզի ա՛յլ է ըստ երկաքանչիւրոյն ներգործել, եւ ա՛յլ երկաքանչիւրի զիւրաքանչիւրսն, զի մին հակառակիցէ եւ երկուց իշխանականաց կամ դիմաց, եւ միւսն միոյ, եւ ո՛րպէս կամեսցի միով իշխանութեամբ ներգործել։

Արդ տեսցուք եւ յաղագս այսորիկ զառ ի սրբոց հարանցն ասացեալ վարդապետաց։ Ասէ ե-



րանելին Աթանաս ի չորրորդ ճառին առ Արիանոսսըն, Եւ Բանն զմարմնոյն բարձեալ ունէր զտկարութիւնս որպէս զիւրոյ, քանզի նորա էր մարմինն, եւ մարմինն գործակից աստուածութեանն գործոց զի նովաւ լինէր, զի Աստուծոյ մարմին էր։ Եւ յետ սակաւուց. Քանզի թէ Աստուծոյ Բանին գործք ոչ ի ձեռն մարմնոյն էին եղեալ, ոչ արդեւք էր աստուածացեալ մարդ։ Եւ յետ այլոց. Քանզի ըզգործս Հաւր ի ձեռն մարմնոյն գործէր։ Եւ դարձեալ նոյն գրէ առ Դեղփոս եպիսկոպոս եւ խոստովանող. Քանզի զձեռն ձգեալ, ասէ, Բանին յարոյց զոր ի ջերմութենէն էր ըմբռնեալ. ձայն արձակեալ յարոյց զՂազարոս։ Եւ Գրիգոր Նիւսացւոցն եպիսկոպոս յերրորդ ճառին որ ընդդէմ Եւնոմիոսի, Քանզի ներգործէ, ասէ, որպէս ճշմարիտ Աստուած ի ձեռն իւրոյն մարմնոյ զամենեցունց փրկութիւնն, որպէս զի ձայնին կամ գործոյն մարդկաւրէն եկելոյ յառաջ. իսկ ի ներքուստ թագուցեալն իմանի զաստուածութիւնն ցուցանել։

Գրէ եւ Յուլիոս եպիսկոպոսապետն Հռոմայ, ասէ, Ոչ մի անջատումն Բանին եւ մարմնոյ նորա բերի յաստուածային գիրս, այլ է մի՛ անձնաւորութիւն, մի ներգործութիւն, մի դէմ, բոլոր Աստուած եւ բոլոր մարդ։ Նոյն ինքն եւ Յովհան Ոսկեբերան ի ճառին, յորում եթէ՝ եկաց յաղաւթս ի լերինն, եւ ի կոչումն առաքելոցն ասէ. Միոյ զաւրութեամբըն ներգործութեամբ զբազմատեսակ ախտս չարութեան բժշկեաց, եւ յետ սակաւուց ասէ, Զանազան զսքանչելիսն ի ձեռն միոյ ներգործութեանն լնլով։ Եւ Կիւրեղ Աղեքսանդրացի ի Մատթէոսի աւետարանին մեկնութեան այսպէս գրէ. Ընդ իւր միաւորեաց զմարմինն, որպէս ոչ է ասել ընդ Հաւր՝ եւ ի Հաւրէ Աստուած բանն, եւ յիւր կազմեալ զնա

ներգործութիւն բնաւորական, եւ մարմին պահեաց վասն ծնանելոյն ի մարմնոյ, եւ լցոյց աստուածավայելուչ ներգործութեամբ եւ յիւրն եհան փառս: Նորին յերկուս կոյրսն. Եւ բժշկէ ձեռին մերձաւորութեամբ, եւ ներգործութեամբ լի գոլ զիւր մարմինն ցուցանէ: Նորին ի բժշկութիւն զոքանչին Սիմովնի. Քանզի բժշկեաց որպէս զԱստուած, զիւրոյ ձեռինն հպումն շնորհեալ անկելոյն ի մահիճսն. եւ վասն զի՞նչ պատճառի, զի զիւրոյ բնութեան աստուածութեան ասեմ միազաւր ցուցցէ զիւրն մարմին ի ներգործութիւնսն:

Դարձեալ ասէ, Կարող գոլ զամենայն ինչ բանիւ ներգործել, վարի եւ թքովն, զի ծանիցուք թէ եւ մարմին նորա զամենայն ունէր զներգործութիւն զկենդանարար Բանին, եւ լուսաւորութեան առիթ լինի ի ձեռն սուղ ինչ մերձաւորութեան, քանզի մարմին էր լուսոյն ճշմարտի: Եւ նոյն Կիւրեղ ասէ ի գիրս Պարապմանցն. Եւ միաւորեալ միանգամայն մի համարեալ ընդ մարմնոյ իւրացուցեալ զնորայսն միաւորեալ եւ իւր ընդ նմա զիւրոյն բնութեանն ներգործութիւն: Եւ արդ բաւական համարիմք զասացեալսս առ ի յանդիմանութիւն, որ զերկուսդ քարոզեն ներգործութիւն հակառակ սրբոց վարդապետացն. զի ահաւասիկ զաստուածագործութիւնսն եւ զմարդկաւրէնագոյնսըն միոյ եւ նորին Բանին Աստուծոյ ներգործութիւն ասեն հանդերձ մարմնովն:

Դարձեալ զերկրորդս առ ի ձէնջ գրեցեալ առցուք բան: Ասէք երկուս ունել կամս Քրիստոսի՝ աստուածային եւ մարդկային, եւ դարձեալ ասէք եթէ, զբոլորն աստուածացեալ ասեմք, զմարմինն եւ զհոգին եւ զմիտսն, եւ առնուք զասացեալսն ի սրբոյն Կիւրղէ, եթէ յորժամ կամէրն տայր թոյլ



մարմնոյն զիւրսն կրել, որ անհնար է այսոցիկ՝ ի միում լինել անձին, զի եթէ հարկաւորապէս դնէք երկաքանչիւրն բնութեան, կամել եւ ներգործել զիւրաքանչիւրսն, ապա ոչ էր աստուածացեալ բոլորն, այլ տակաւին եւս թշնամութիւն ունէր ի մարմնին, զի յորժամ առնէաք զկամս մարմնոյ եւ զմտաց, էաք արդարեւ որդիք բարկութեան, որ ոչ եւ Պաւղոսի ծառայական բնութեանն հաւասարեցուցանէք զազատն, որ փոփոխմամբ զմիտս Քրիստոսի ստացաւ: Իսկ եթէ աստուածացեալ ասէք ըզբոլորն, եւ ի մեր փրկութիւն տնաւրինաբար միով իշխանականաւ թողացուցանէր մարմնոյն զիւրսն կրել զանանգոսնելի կիրս, յայտ է թէ զաստուածայինն միայն յայտ առնէք զկամս, զվեհագունութեամբ յաղթողն:

Արդ տեսցուք յաղագս այսոցիկ զասացեալսն ի սրբոց վարդապետացն: Ասէ յաղթող սպառազէնն Քրիստոսի Աթանասիոս ի ճառին որ յաղագս Յայտնութեան Փրկչին, Վասն այսորիկ եկն Բանն՝ Աստուած գոլով, եւ առաջնոյն մարդոյ արարչագործ, լինել մարդ ի կենդանագործութիւն մարդկան, ի բաց բարձումն անիրաւի թշնամւոյն, եւ ծնաւ ի կնոջէ, յառաջին ստեղծուածն զմարդկայինս կերպարան ինքեամբ հաստատեալ ցուցմամբ մարմնոյ՝ առանց մարմնականաց կամաց եւ խորհրդոց մարդկայնւոց, ի պատկեր նորոգութեան. քանզի կամքն աստուածութեանն միայնւոյ, վասն զի եւ բնութիւնն բոլոր Բանին ցուցմամբ կերպի մարդկայնւոյ մարմնոյ: Եւ դարձեալ Ոնորիոս եպիսկոպոսապետն Հռովմայ գրէ, Քանզի թէ էր, ասէ, ծանուցեալ ոչ արդեւք զՏէր փառացն ի խաչ հանէին, որ եւ յայտ է թէ աստուածութեանն ոչ ի խաչ ելանել էր հնար, եւ ոչ զչարչարանացն

*զմարդկայնւոց զփորձ առնուլ, թէ զայսոսիկ կրէր, այլ վասն անպատմելւոյն միաւորութեան, մարդկայնւոյն եւ աստուածայնւոյն բնութեան, վասն այնորիկ եւ Աստուած ասի չարչարել, եւ մարդկութիւնն յերկնից իջանել ընդ աստուածութեանն, ուստի եւ մի կամս խոստովանիմք Տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի։*

Նորին յետ այլոց: *Քանզի կամք այլ եւ այլ հակառակ ոչ եղեն Փրկչին։ Վասն զի ի վեր քան զաւրէնս մարդկայնւոյս բնութեան ծնաւ, թէ եւ գրեալ է, Ոչ եկի առնել զկամս իմ, այլ զառաքչին իմոյ, եւ ոչ որպէս ես կամիմ, այլ որպէս դու կամիս Հայր։ Ոչ են այս այլ եւ այլ կամաց, այլ ըստ առեցելոյն մարդկայնւոյն տնաւրէնութեան, այսոքիկ վասն մեր ասացան, զոր եւ աւրինակ բարի վարդապետն, զի զհետ շաւղաց նորա հետեւեսցուք, եւ ոչ ընդ իւրն իւրաքանչիւր ոք, այլ յամենայնի յաւէտ Տեառն նախապատուեսցին կամք, եւ այսոքիկ այսք են(1)։ Իսկ զանճառ միաւորութիւնն եւ զաստուածանալն մարմնոյն զնոյն ինքն ի ձեռն առեալ զգիրս Պարապմանց սրբոյն Կիւրղի, զի առաւել նմա փոյթ եղեւ զայսոսիկ քննել ընդդէմ Նեստորի եւ նմանից նորա, եւ զգիրս Գանձուն զառաջինն եւ զերկրորդն, եւ զոր թէ մի է Քրիստոս, եւ զթուղթսն որ առ բարեպաշտ թագուհիսն, եւ ի բազում յայլ թուղթս, զոր յառաջագոյն նշանակեցաք վկայութեամբք, յորում զանխառնունսն խառնեալ անշփոթաբար ցուցանէ, եւ մի բնութիւն սահմանեալ Բանին մարմնացելոյ։*

*Եւ Գրիգոր Նիւսացի յերկրորդում գիրսն, որ ընդդէմ Եւնոմիոսի· Քանզի մեք, ասէ, զմարմինն*

------

*(1) այսք են – այսքան (Ե. Ե. Դ.)։*



*որով զչարարանսն ընկալաւ, ընդ աստուածային բնութիւնն խառնեալ· զայս ասեմք արարեալ ի ձեռըն միաւորութեանն, որ ինչ է առողն բնութիւն։ Եւ նոյն գրէ առ Թէոփիլոս եպիսկոպոսապետն Աղեքսանդրի· Թէ ամենայն որ ինչ տկար եւ մահկանացու բնութեանն էր խառնեալ ընդ աստուածութեանն, եղեւ որ ինչ է աստուածութիւնն։ Եւ Գրիգոր Աստուածաբան ի Պասեքին ճառի· Կատարեալ, ասէ, զՔրիստոս ոչ Աստուածութեամբն միայն, քան զոր ոչինչ է կատարելագոյն, այլ եւ վասն մարդկութեանն աւծելոյն աստուածութեամբն եւ եղելոյ որ ինչ էաւծն։ Եւ Բարսեղ Կեսարացի զքսաներորդ երրորդ սաղմոսն մեկնելով ասէ, Կարողակից արար զմարմինն հողեղէն աստուածութեանն, ի մի զաւրութիւն միացոյց, եւ ի մի աստուածութիւն ժողովեաց։*

*Իսկ զի՞արդ է ծննդեանն յեղանակ, կամ ո՞րպէս ունին առ միմեանս իբր յաստուածային իրագործութենէ յաղթեալք, ոչինչ յանդգնեցան հարցափորձել, առաւել քան զոր Հոգին սուրբ ետ բարբառել, միայն զաստուածային ծնունդն խոստովանելով, եւ զորպէսն սքանչելագործին թոյլ տուեալ գիտել իբրեւ զԱստուծոյ խորհուրդ· ընդ որ եւ զարմացեալ Աստուածաբանն Գրիգոր, ասէ, Ո՜վ նոր խառնմանն, նորաձեւս առնեն բնութիւնքն։ Եւ Գրիգոր Նիւսացւոց եպիսկոպոս ընդդէմ Եւնոմիոսի յերկրորդ գիրսն ասէ· Անծանաւթ բնութեան ծնունդ ի վերայ ինքեան ի ձեռն կուսին նորաձեւեաց, զոր ոչ ոք յայսքան ազգս մարդկան գիտաց, քանզի ոչ ի ձեռն ծանաւթից եւ սովորական բնութեամբ ճանապարհաց երեւեցաւ ի մարդկանս կենցաղումս, այլ այլանման իմն եւ առանձնապէս։ Եւ Դիոնեսիոս Արիսպագացի, աշակերտն Պաւղոսի, զո-*

րոյ աչաւք տեսեալ զՓրկիչն, ասէ պատմութիւնն, առաջին եղեալ եպիսկոպոս Աթենացոցն, գրէ առ Գայիոս սպասաւորն Պաւղոսի· Զառ ի թագնութենէ գերագոյին ի մերս երեւոյթ, մարդկաւրէն լինելով գալն· թագուն է եւ յետ երեւելոյն· կամ զի եւ աստուածայնագոյնս ասացից զերեւելն, քանզի եւ այս Յիսուսի անյայտ է, եւ ոչ մերոյ բանի կամ մտաց է հպելի խորհուրդ նորա, այլ ճառելով անճառելի մնայ, եւ գիտելով անգիտելի։ Եւ դարձեալ ի չորրորդ թղթին որ առ նոյն Գայիոս գրէ, Եւ զի միանգամայն ասացից, ասէ, ոչ մարդ էր Քրիստոս, ոչ որպէս ոչ մարդ, այլ որպէս ի մարդկանէ, անդր քան զմարդիկ եւ գերագոյն մարդ, ճշմարտապէս եղեալ մարդ· եւ ապա ոչ ըստ Աստուծոյ զաստուածայինսն ներգործեալ, եւ ոչ զմարդկայինսն ըստ մարդոյ, այլ այրացելոյ Աստուծոյ· Նոր իմն աստուածայրական ներգործութիւն ընդ մեզ կենցաղավարեաց։

Արդ՝ ո՛, ո՛վ նախապատուեալք բնական եւ պիտախոհութեամբ աւլցեալք, խոնարհեցարուք վասըն Քրիստոսի եւ առ մեր նուաստութիւնս, զի եւ զանտոհմս եւ զարհամարհեալս եւ զոչինչս ընտըրեաց Աստուած։ Ետուք մեզ բանս, ընկալարուք ըզդարձուածս բանիս, եւ տուք տեղի պատասխանւոյ զի՞նչ արժան է· ձեզ լսե՞լ, թէ աստուածային խորհըրդածուացս այսոցիկ։ Եւ ո՞յք այսոքիկ· Հրեշտակապետն Գաբրիէլ որ Մարիամայն աւետարանեաց, Որ ծնանելոցն է ի քէն, ասէ, սուրբ է, եւ որդի բարձելոյն կոչեսցի, ոչ եթէ բնութիւնն որ ի նմա, այլ որ ծնանելոցն է ի քէն, նա փրկեսցէ զժողովուրդ իւր ի մեղաց իւրեանց։ Առ հովիւսն, Ծնաւ, ասէ, այսաւր ձեզ Փրկիչ , ոչ եթէ բնութիւնն ի ծնիցելումն, այլ որ ծնաւն։ Մեծն ի ծնունդս կա-



նանց Յովհաննէս, որ հրաժարէր ի չիչխելն մերձենալ եւ ընել զհողեղէն աջն ի վերայ ամենակատար գագաթան նորա, զոր հուրն ճանաչէր՝ անմերձենալի հրեշտակաց, յոր մատամբ ցուցանէր՝ թէ Ահա Քրիստոս գառն Աստուծոյ, որ բառնայ զմեղս աշխարհի· ոչ եթէ բնութիւնն որ ի սմա, այլ զոր տեսանէքս։ Պետրոս՝ գլուխ առաքելոցն, որ հարցմանն պատասխանի, զՈրդին ես Աստուծոյ դաւանեաց, ոչ եթէ բնութիւնն՝ որ ի քեզ, այլ թէ, դու ես Որդի Աստուծոյ, որում վկայեաց փրկիչն, թէ Հայր իմ որ յերկինս է յայտնեաց քեզ զայդ, եւ երանեաց զնա։

Պաւղոս, Ըստ մարմնոյ՝ որ է ի վերայ ամենեցուն Աստուած։ Աշակերտն՝ զոր սիրէրն Յիսուս տայ աւետիս աշխարհի, թէ Ընդ որ հայեցաքն եւ տեսաքն, նա՛ է ճշմարիտ Աստուած, եւ կեանք յաւիտենականք· ոչ եթէ բնութիւնն՝ որ ի սմա, այլ սա զոր շաւշափեցաք ձեռաւք մերովք։ Թովմաս զկողսն շաւշափէր եւ զձեռս եւ զոտս, եւ զտեղիս բեւեռացն տեսանէր, ոչինչ միջոց արկ վիրաւորեալ մարմնոյն եւ աստուածութեանն, այլ համանգամայն Տէր եւ Աստուած խոստովանեաց զնա, ոչ բնութիւնն ի նմա, այլ զոր շաւշափէր։ Եւ Փիլիպպոս՝ որ զտեսութիւն Հաւր պահանջէր ի Տեառնէ, լուաւ, թէ Որ ետես զիս՝ ետես զՀայր։

Եւ զի՞նչ ասեմք թէ մարգարէք եւ առաքեալք, որ եւ նոյն ինքն առանձնաւորութիւն դիմաց սրբոյ Երրորդութեանն Յորդանան երեւեալ՝ ցուցանեն զճշմարտութիւնն։ Որդի մարմնացեալ մըկըրտի։ Հոգին սուրբ իջանէ եւ հանգչի ի վերայ փառակցին իւրոյ՝ զոր մկրտէրն Յովհաննէս։ Հայր ի վերուստ ճշմարտէ, թէ Դա՛ է Որդի իմ սիրելի, ոչ եթէ բնութիւնդ որ դմա, այլ թէ դա որ առա-

քեցիդ ի նմանութիւն մարմնոյ մեղաց, որ երեւեցաւդ անարգ նուազեալ, որոյ վիրաւքդ բժշկեցայք, որով ընկալայք զփրկութիւն ի ձեռն արեան դորա, եւ զթողութիւն մեղաց՝ մարմնով դորա։ Դա՛ է Միածինն իմ, զոր վասն փրկութեան աշխարհի ետու· ոչ եթէ զբնութիւնդ որ ի դմա, այլ թէ դա՝ զոր տեսանէքդ։

Եւ արդ, ո՞ւստի ձեզ այդ, եւ ո՛վ եղեւ զտակ նորոգ եւ անգիր բնութեանցդ, կամ առժամայն Աստուածոյդ· թէ պարտ իցէ ասել, զոր փորձէքդ ի ներքս մուծանել, երկրպագակից առնել Համագոյի եւ սրբոյ Երրորդութեանն, զոր ոչ առնուն յանձն եկեղեցիք Քրիստոսի, որք համարձակութեամբ քարոզեմք մարմին եւ արիւն Աստուածոյ, որով եւ փրկեցաք իսկ· զի ոչ պատգամաւոր ոք եւ ոչ հրեշտակ, այլ ինքնին Տէր փրկեաց զմեզ, զոր դուք այլոյ իմն բնութեան համարիք, զհացն կենդանարար զմարմինն Քրիստոսի, զոր ետ վասն կենաց աշխարհի։ Արդ եթէ ձեզ այլ իմն յայտնեցաւ այժմ ծածկեալ խորհուրդ եւ բազմապատիկ իմաստութիւն Աստուածոյ, արարէք եւ զմեզ խելամուտ, թէ արդարեւ մոլորեալ իցեմք, զի զայսոսիկ գիտել մեզ իբր ափով զջուրս ծովու չափել, եւ թզաւ զերկինս՝ հանդիպի, եւ ափ ի բերան եղեալ ընդ արդարոյն Յովբայ առ հարցաւղն առ նա զանճառելիսն։

Ասացէք մեզ զծննդեանն յեղանակ· զի՞արդ խառնեցան անժամանակն եւ ընդ ժամանակաւն· զի՞արդ բոլորն ընդ Հաւր եւ յորովայնի կուսին, զի՞արդ մարմինն սուրբ, որ ի Մարիամայն յոսկերաց եւ ի ջղաց կարծրացեալն շարադրեցաւ եւ միացաւ, եւ թուեցաւ ի պարզ եւ ի նուրբ եւ յանյաւրդ բնութիւնն սրբոյ Երրորդութեանն, ոչինչ արարեալ



յաւելումն կամ թիւ, յոր ոչինչ խառնի եղական բնութիւն ամենեւին· կամ զի՞արդ քանակութեամբ չափեալ մարմնովն աթոռակից Հաւր ասի եւ զերկինս եւ զերկիր լնուլ։ Զկտիցի՞ արդեւք մարմինն ընդ աստուածային անբաւութեանն, կամ թէ անփոփեսցի՞ աստուածութիւնն ընդ մարմնոյն պարունակութեամբ· կամ թէ որպէս մեք յաստուածային ճառագայթիցն մասամբ վայելեալ յաստուածային զաւրութենէն փառաւորիցի· Զայսոսիկ ստոյգ գիտակաւ յանդիման կացուցէք մեզ։

Իսկ եթէ զանգիտութիւն խոստովանիք, իբրեւ ի խորոց Աստուածոյ յաղթեալք, յայլ փոխեցայց հարցումն։ Զի՞նչ իցէ այժմ երկաքանչիւր բնութեանն, զոր ասէք, ներգործութիւն եւ կամս· զի թէ այժմ ոչ ունիցի, աւելորդ եւ զաւտարի ուրեմն ունէր, եւ այժմ եկն ի կատարելութիւն, զի ընկէց յիւրմէ, եւ կամ ըստ Մարկեղեայ Գաղատացւոյ ի յարեգակն եդ եւ կամ յաւդ ցնդեցաւ եւ լուծաւ, եւ գտաւ փոփոխելի։ Այլ ինքն իսկ Տէրն ասէ, թէ Ես նոյն եմ, եւ ոչ փոփոխեցայց, զի որով ծնաւն չարչարեցաւ, եւ նովիմբ նստաւ ընդ աջմէ Հաւր, որով եւ գալոցն է։ Իսկ եթէ ունիցի եւ այժմ ըստ երկաքանչիւրումն կամել եւ ներգործել, անդանաւր եւ հակառակութիւն եւ շփոթումն, որում զհետ երթայ եւ լուծումն· ի ներքս մտանէ եւ անկարգութիւն եւ առասպելաբան աստուածաստեղծ վիպասանութիւնն հեթանոսաց· զոր յաղագս Դիոսի եւ Ապողոնեայ եւ Հերակղեայ զրաբանեն, եւ ծննդոց նոցին։ Ապա ո՞ւր տանիցիք զառ ի ձէնջ ասացեալ ա՛յլ բնութիւնն առանձնացեալ կամաւք եւ ներգործութեամբ, զի անհնար է ծառայ բնութեանն՝ համա-

պատիւ լինել ազատին ըստ բնութեան։ Եւ զայսոքիւք զանց արարեալ տեսցուք եւ ի ձեռոցդ պանծալի բանաստեղծիցդ, որք ճոխաբանեն զընութեանցդ առնել զդատողութիւն։

Ի չորից ասացին բաղկացեալ ի տարերց ըզմահկանացու կենդանին։ Իսկ յերկուց հակառակից յանդիման տեսանի խառնումս, զոր եւ աստուածային գիրք զկատարեալ բնութիւն մարդոյս ասացին առեալ Բանին։ Արդ՝ զո՞ր արդեւք ի բաց բառնայցէք ի բնութեանցն, զմարմի՞նն, թէ զհոգին, թէ զաստուածութիւնն· զի եթէ երկուս խոստովանիք բնութիւնս, ի բաց բարձ զհոգին ըստ Ապողինարի, թերակատար եղիցի ապա եւ փրկութիւնն մեր, եւ կամ ի բաց առ զմարմինն եւ հետեւեա՛ Եւտիքեայ դիւաբերանի՝ առ աչաւք եւ ցնորիւք ասել զմարմնաւորութիւնն Տեառն, կամ որոշեա՛ զաստուածութիւնն, եւ սոսկ մարդ զնա խոստովանեա ընդ Նեստորի· զի թէ զթիւ բնութեանցդ առցես ի վերայ Քրիստոսի, հարկաւորապէս մղիք յայսոսիկ, կամ երկուս ասել բնութիւնս, կամ ի ներքոյ անկանել յառաջասացելոցդ աստուածամարտից, եւ կամ փոփոխելի ասել· ապա թէ ոչ՝ հաւանել պարտիք ձեռոց ճարտարաց, զի ի կենդանւոյն զայլութեամբ զանազանեալսն տարբերապէս՝ սեռս եւ տեսակս անուանեցին, եւ զսեռն հասարակ մի բնութիւն, եւ անհատքն թուով ի բազումս կոտորեալ։

Իսկ ոմն յերկուց անձնաւորեալ, մի ասացաւ բնութիւն, որպէս մեկնէ Յիւրիպիդէս Աթենացի, զպարզսն անուանսն զսերմանեալսն յԱրիստոտելէ, ասացեալ եղջերուաքաղս, ի ստորոգութիւնսն, ոչ միայն ի վերայ պարզիցն ասէ, այլ եւ զչաղաչարաբար կապակցեալսն մի ասելի բնութիւն· զի այլ է ըստ բնութեանն միութիւն, եւ այլ ըստ անձնաւորութեանն· զի ըստ անձնաւորութեան միացեալքըն թէ բաժանին ապականի կենդանին, որպէս մարդ ի հոգւոյ եւ ի մարմնոյ, որպէս եւ ոչ տնաւրէնութիւն մարմնացելոյ Բանին Աստուծոյ կացցէ՝ եթէ բաժանեսցես։ Իսկ ըստ բնութեանն մի, ըստ անձնաւորութեանն բաժանել ոչինչ է արգել· որպէս միութիւն սրբոյ Երրորդութեանն՝ յերիսն կատարեալ անձինս· այսպէս եւ ըստ երկրորդ գոյացութեանն՝ տեսակն մի բնութեամբ ի բազումս կոտորեալ անհատ։



Եւ դարձեալ ասէք թէ հակառակ Նեստորի ասեմք զերկուսդ բնութիւնս· զի նա զՔրիստոս եւ զՏէրդ անուն, ըստ իրիք համանունութեան եւ արժանաւորութեան առ հաւասարութեան Բանին Աստուծոյ, ըստ անջատման կոչեաց· իսկ մեք երկու բնութեամբք մի որդի ասեմք։ Այսոցիկ պատասխանի տայցէ սուրբն Կիւրեղ, զոր յառաջագոյնն ասաց առ Սուկենոս, թէ Մի ասեմք զՈրդւոյ բնութիւն, այլ զձերդ՝ եւ ոչ Նեստոր յանդգնեցաւ ասել· զի նա թէպէտ եւ չարաչար ժողովմամբ միաւորէր զաստուածութիւնն եւ զմարմինն իւր, սակայն միակամս եւ նոյնագործս ասէր զյարակցեալսըն։

Իսկ դուք եւ ոչ այսքան ներեցէք լինել ըզմիաւորութիւնն, զի ուր երկաքանչիւր բնութիւն կամի եւ ներգործէ՝ ի բաց բարձեալ լինի նոյնախոհութեան իւր։ Եւ զոր գրեցէք առ մեզ զասացեալսն ի սրբոյն Կիւրղէ, նոքին իսկ բաւական են առ ի յանդիմանութիւն ի ձէնջ ասացելոցս, մանաւանդ զոր ասեն եթէ երկուց բնութեանց, այսինքն անձնաւորութեանց, զոր յաւետարանականսն կամ յառաքելականսն գրեալ բաժանէ ձայնս, կամ ի վերայ Քրիստոսի զառ ի սրբոցն ասացեալսն, կամ ի

նմանէ յաղագս իւր, եւ է ինչ, որ մարդոյ առանց Բանին յատկապէս իմացեալ հպեցուցանեն, եւ է ինչ, զոր որպէս (մարդոյ) միայնոյ Աստուծոյ Բանին· Նզովեա՛լ եղիցի։

Ահաւասիկ բաժանէք զձայնս ասացելոցն, եւ է ինչ՝ զոր Բանին հպեցուցանէք, եւ է ինչ՝ զոր մարդոյ, զի երկուց բնութեանց երկաքանչիւր կամք եւ ներգործութիւնք, հարկաւորապէս այսպէս բաժանին ըստ Թէոդորիտեայ ձերոյ խոստովանակցին· Թէ ոմն բացափայլեալ սքանչելեաւք, եւ ոմն ընդ թշնամանաւք ստորանկեալ· Քանզի թէ զնուաստագոյնսն ներգործութիւնս միայն բնութեան մարմնոյն տայցէք, զի՞նչ նուաստագոյն եւ ծառայական կիրք, քան զծնունդ ի կնոջէ, եւ զմահ խաչի։ Վասն որոյ ասացէք, եւ ոչ Աստուած ծնաւ կոյսն, եւ ոչ Տէր փառաց խաչեցաւ, որպէս Նեստորի թուի· ապա ուրեմն ոչ ետ Հայր զՄիածինն փրկանս, եւ մարդ սոսկ փրկել ոչ կարէ։ Թէ արդարեւ կիրք՝ կրելոցն յատուկ են, որպէս ձեզ թուեցաւ ասել, զոր մի լիցի ճշմարիտ հաւատացելոց Քրիստոսի այսպէս խոստովանել, այլ զսորին հակառակն, զի յԱստուած յուսացաք եւ ոչ ի մարդ։

Եւ դարձեալ զոր ասէքդ երկուս ներգործութիւնս՝ կամեցեալ հաւատարիմ առնել եւ խաբել զպարզամիտս, առնուք վկայութիւն ի սրբոյն Կիւրղէ, զոր յառաջին գիրս Գանձուն ասէ, թէ ոչ ուրեք մին տացուք բնաւորական ներգործութիւն Աստուծոյ եւ արարածի։ Արդ ընդէ՞ր բռնադատիք յայլ քարշել մտածութիւնս զուղղապէսն ասացեալըս։ Քանզի Եւնոմիոս ոչ ասէր զՈրդի ի բնութենէ Հաւր, իսկ սուրբն Կիւրեղ մարտնչելով ընդ չար ախոյեանին ասէ, Ապա թէ ոչ ի բնութենէ Հաւր Որդի, զիա՞րդ զոր ինչ գործէ Հայր՝ գործէ Որդի, վասն զի ոչ է մի ներգործութիւն Աստուծոյ եւ արարածի։ Արդ նա յաղագս աստուածութեան եւ մարդկութեան հասարակաց ասաց։ Իսկ բռնաւորութիւնդ ձեր առեալ զայսոսիկ ընդ կրուկն դարձուցանէք, Բանին Աստուծոյ եւ մարմնոյն իւրոյ հրպեցուցանէք։ Ահա երկուս ասաց ներգործութիւնս սուրբն Կիւրեղ, իբր կապտեալ իմն . . . . . . . ութիւնս զձերդ ջանայք փայ . . . . խրութիւնս, ըստ Ուղպիանու առասպելաբանութեանն, գիշերատեսակ հաւուն(1) . . . . . նսն այլոց պերճացեալ թեւաւք, որոյ վախճան զամաւթալին ածէ ի վերայ ծաղր, զի յանդիմանեալ այսոքիկ ի սրբոյն Կիւրղէ՝ ոչ առնու յանձն վկայ լինել ասացելոցդ ի ձէնջ երկուս ներգործութիւնս։

Եւ դարձեալ երկուց կամացդ՝ զոր ասէք, առնուք վկայութիւն ի սրբոյն Աթանասէ, զոր Յաղագս Մարմնաւորութեան ճառին ասէ, թէ՝ Աստանաւր երկուս կամս ցուցանէ, զմին՝ աստուածային եւ յաւժար, եւ զմիւսն՝ ընդդէմ կացեալ, որպէս տկարութեամբ հասարակաց մարդոյ։ Արդ զայս գրէք եւ զյետ այսորիկն լռէք, զոր ի վախճանի թղթիս ասէ· թէ՝ Զիւրն Աստուծոյ կամս ասաց, եւ զՊետրոսին հասարակաց մարդոյ, որպէս եւ Աստուածաբան Գրիգոր մեկնելով զասացեալսն, Զկամս իմ, եւ զառաքչին իմոյ· Ոչ որ ըստ Փրկչին իմանի ասէ, քանզի նորա կամելն ոչ ընդդէմ Աստուծոյ է, զի Աստուած է բովանդակն, այլ ըստ մեզս իբրեւ մարդկային ախորժակացս, որ ոչ ամենայն իրաւք զհետ երթայ աստուածայնոյն, այլ ընդդէմ կայ եւ մարտնչի· ահաւասիկ մի կամս

------

(1) Այլատառ լրացումները առնուած են Ե. Ե. Դուրեանի օրինակէն։

յայտ արարին Քրիստոսի՝ աստուածային միայն, եւ միւս զմարդկանս հասարակաց։

Եւ դարձեալ զոր գրեցէքս յաղագս տնաւրէնութեան Բանին. մասն ինչ յասացելոցն սրբոցն Աթանասի եւ Կիւրղի եւ նմանից նոցին, եւ առ ընթեր եդիք հատակոտորս յասացելոցն Ղեւոնի Հռովմայեցւոյ եւ ասէք, ի զուր բամբասել մեզ զՂեւոն եւ զտոմար նորա, զի յասացելոցդ, ասէք, երեւի համաձայն Աթանասի եւ այլոցն ուղղափառացն ասացեալ։ Եւ այսոցիկ նոյն ինքն Աթանասիոս տայցէ պատասխանի։ Ոչ ասէ, յամենայնէ՝ զոր ասեն հերձուածողք փախչելի է, քանզի բազում ինչ եւ նոքա ընդ մեզ խոստովանին, զի ոչինչ ամենեւին չարն կարէ հաստատուն կալ, բայց թէ ունիցի ինչ յինքեան կարծիս բարւոյ։ Արդ՝ ոչինչ սքանչելի է թէ ունիցի Ղեւոն սուղ ինչ կարծիս ուղղութեան, զի զիւրն շինել կարասցէ առաջարկութիւն առանց հիման, իբրեւ պղնծով գլխաբէութիւն շուրջ եդեալ։

Եւ դարձեալ զառաջին լինելութիւն մարդոյն յառաջ բերեալ նախատէք զմեզ անգիտութեամբ, եւ ասէք եթէ, ունէր Ադամ ի բնութեանն զկամսն եւ զերկիւղն. եւ յայտ է կամքն՝ որով մեղաւն, եւ երկիւղն՝ սպառնալովն Աստուծոյ, Թէ ուտիցէք ի պտղոյն՝ մեռանիցիք։ Արդ թէ ասէք առեալ Քրիստոսի զբոլոր բնութիւնն Ադամայ, ունէր ապա եւ զկամսն, զի կամք հոգւոյ են ծնունդ, եւ եթէ ոչ ունէր զկամսն, եւ՛ ոչ հոգի, եւ ի հարկէ ասէք հետեւել ձեզ Ապողինարի, որ մարմին առանց հոգւոյ ասէր՝ առեալ Բանին։ Արդ նոյն ինքն Բանին Հաւր, յաղագս որոյ բանս է, տացէ մեզ բան՝ ի բանալ բերանոյ մերոյ։ Ասասցուք եւ առ այս։ Քանզի իբրեւ հաստատեցաւ յարարչէն նախահայրն պատուեալ



բանաւորութեամբ՝ իմաստութեամբ, ի բնութեանն ունելով զգիտութիւն բարւոյ եւ չարի, եւ զնախանձն ի բարի, եւ զերկիւղ Տեառն՝ որ է կենաց, եւ այլ այսպիսի ինչ, զի արարածք կան ընդ իշխանութեամբ, եւ ծառայ բնութեանս հարկաւորք եղեն այսոքիկ, այլ ամենայն ինչ ի բարի եղեւ, զի արարաւ ասէ մարդն յուղղութիւն, եւ կարգեցաւ ի միջասահմանս վայրի կենաց եւ մահու, եւ ի ձեռս տուաւ անձնիշխանութեանն իբրեւ կառավարի յոր կոյս եւ միտիցի կամաւք վիճակեալ, եթէ կենաց եւ եթէ մահու։

Իսկ իբրեւ չեղեցաւ յաստուածային պատուիրանապահութեանն ըստ ախորժակաց իւրոց, յեւթնից պարունակութեանց դասուցն հոգեղինացն, հեռագոյն բացորոշութեամբ եւթնից աշտիճանաւ ի վայր կործանեալ ի փառացն զրաւեցաւ, ի հոգւոյ՝ մարմին եղեւ, եւ զպատիժ պատուհասին զուգաթիւ ըստ յանցանացն տուժեցաւ. Թափուր եղեալ ի հոգւո՛յ, յիմաստութենէ, ի հանճարո՛յ, ի խորհրդո՛յ, ի զաւրութենէ, ի գիտութենէ, յաստուածպաշտութենէ, ի ներքոյ անկեալ երկիւղի աւտարին՝ ստունգանելով պատուիրանին Տեառն, ի բաց եկաց հոգւոյն շնորհն՝ կնոջն լսելով խրատու, կորոյս զտիրական վերինն իմաստութիւն՝ ուտիցն հնազանդեալ գլխոյն անհանճարաբար, իբր գեղեցկագոյն եւ քաղցրաճաշակ քան զպատուիրանսն աստուծոյ, ըզմահաբերն դատեցաւ պտուղ։ Յանմահականն վայելից տարագիր եղեւ՝ անխորհրդապէս կորուսեալ զբոցաճաճանչ լուսափայլ զարդարանսն։ Հակառակաբար հայթայթանաւքն ջանայր ծածկել զամաւթալին իւր մերկութիւն՝ պատառատուն տերեւով, անյուսացեալ ի զաւրութիւն ամենակալին կարծեաց թաքչել յամենատեսչութենէ նորա, ի ներ-

քոյ անկեալ երկիւղին մահու, ձայնելով Տեառն յապաշխարութիւն, տգիտացեալ անզղջութեամբ՝ արտաքս անկաւ ի փափկութենէն կենաց, իբրեւ անծանաւթ Աստուծոյ՝ ամպարշտութեամբ յարարիչն դարձուցեալ զպատճառսն որպէս ի հաղորդ յանցանացն , թէ կինս զոր ետուրս ընդ իս, զանիծից եւ ցաւագին ժառանգեաց կենցաղ։

Իսկ մի եւ նոյն մարդկութեանս արարիչ, որ ի սկզբանն եւ որ յետ այնորիկ, յայնժամ առեալ հող յերկրէ զմարդն ստեղծ, դարձեալ առեալ ի կուսէն հող, ոչ պարզաբար մարդ ստեղծ, այլ զինքեամբ շրջաստեղծեաց, յայնժամ Բանն մարմին արար, իսկ յետ այնորիկ Բանն մարմին եղեւ, ընդ նոյն ճանապարհ եկեալ մարդկութեանս յսկիզբն եւ յարմատ ծննդեանս հասեալ հասարակաց, սրբոյ Երրորդութեանն լեալ ներգործութիւն։ Հայր կամակցեաց, Հոգին սուրբ հովանացաւ, եւ Որդին՝ որպէս հուր միացուցիչ նիւթոյ ի բովս, կամ իբրեւ զմակարդ ինչ կարծրացուցիչ կաթին, յորովայնի կուսին մածոյց զինքեամբ մարմին՝ ի ճշմարիտ կուսական արենէ։ Եւ ոչ ըստ ինքեան ինչ ենթակացեալ մարմին, այլ աստուածային շարառութեամբն շարժեցաւ մարմինն ի գոլ մարմին, եւ բնութեամբ Բանին կերպացաւ բնութիւն մարմնոյն։ Եւ բնութիւն մարմնոյն եղեւ բնութիւն Աստուծոյ, զի նովաւ էառ սկիզբն եւ գոլ բնութիւն յանապականացուէն սկսեալ, եւ վասն այնորիկ անապական մարմին· զի որպէս լոյս ընդ արեգական անընդմիջաբար հանդէս ընթացեալ անապականութիւնն, ընդ յղութեանն ի բաց փախեաւ խաւար ապականութեանն, յըմբռնել զնա լուսոյ անապականութեան ի սուրբ արգանդին· եւ առեալն եղեւ այն՝ որ ինչ առաւղն բնութիւն, նոյնպէս եւ կամք



առեցելոյն, եւ որ ինչ զհետ երթայ բնութեանն՝ իբրեւ ճառագայթ ճրագի առ արեգականն հասեալ պայծառութիւն, առանց ի բաց բառնալոյ ոչ ուրեք մնաց յիւրսն անձնաւորութիւնս, այլ հզաւրագունին յաղթեալ յինքն փոխարկէ զաղաւտագոյն նըշոյլսն, եւ ոչինչ ընտրութիւն կամ միջոց կամ տեսութիւն ճառագայթիցն մնայ։

Այսպէս եւ ոչ ի մարմնական բնութեանն, կամ կամաց կամ ներգործութեան թիւ մնաց ի մարմնացելոյ Բանին Աստուծոյ, քանզի բոլորն Աստուած եւ Աստուծոյ կամք եւ ներգործութիւն ասի, զի մնասցէ Երրորդութիւնն պարզ եւ անզանազանապէս, անխառն ի նիւթականացս, որպէս Գրիգորի Նիւսացւոյ թուի ասել, հարցման պատասխանի Բասլի եղբաւր իւրում· ասէ, Ո՞չ մի զանազանութիւն Բանին եւ մարմնոյն իւրոյ· պատասխանի առնէ, թէ Զանազանութիւն ասէ՝ աննմանութիւն, եթէ աննմանութիւն՝ ոչ պարզութիւն, եւ եթէ ոչ պարզութիւն՝ ի բազմաց դրութիւն· եւ զի մի այդպիսեաւք Որդի վարկցի համբարձեալ յերկինս· եւ այսպէս աստուածագործ խառնմամբն ճշմարտապէս մարմին առեալ յոսկերաց եւ ի ջղաց հաստատեալ, եւ հոգի մտաւոր եւ բանական կամեցողական զաւրութեամբն, եւ որ ինչ մարմնոյ՝ առանց մեղաց։

Թէպէտ եւ զապականացուէն բուռն հարեալ զգաւակէն Աբրահամու, իսկ եւ իսկ յանապականութիւն փոխեալ, զի նոյն ինքն Բանն անձնիշխանութեամբ զկամսն իւր գործ կատարեալ ունէր, զի Աստուած էր բովանդակն։ Եկն ի խնդիր Նախաստեղծին ազգակցին ըստ մարմնոյ, դիմեալ յԵդովմայ՝ եգիտ զնա ընդ իշխանութեամբ բանսարկուին, եւ զիւր սուրբ եւ անապական մարմինն իբրեւ զանիծից եւ զապականացու, քաղցիւ եւ ծարաւով, եւ

զմարդկայինն ոգի՝ իբրեւ զանգիտացեալ եւ զերկուցեալ առաջի արկանէր. աւրինաւոր մարտիւ թոյլ ետ յինքն ձգել զհրացեալ նետս մուխս չարին, զի շիջուսցէ յինքեան, ոչ ունելով ի նորայոցն, զոր սերմանեացն յԱդամ յուսով աստուածանալոյն, զի էր արդարութիւն աճեալ ընդ մէջ իւր, եւ ճշմարտութեամբ պատեալ զկողս իւր.

Փորձի աւուրս քառասուն պահովք, ապա քաղցնու, եւ սակայն յայտ առնէ, թէ յորժամ կամեցաւն, որպէս ասէ սուրբն Կիւրեղ ի գիրս Գանձուն, Զի ոչ եթէ բնութիւնն զնա հարկեցուցանէր, այլ ինքն շարժէր զբնութիւնն իւր: Ասէ. Այժմ անձն իմ խռովեալ է, եւ այժմ յայտ առնէ, թէ յորժամ կամեցաւ. որպէս ասէ սուրբն Աթանասիոս առ Ապողինարիս: Անգիտանայ զթզենւոյն անպտղութիւն եւ երկնչի ի մահուանէ, զի ի ձեռն նորին ուռկանի ըմբռնեսցի բանսարկուն, եւ հրաժարմամբ բաժակին՝ անգիտացեալ ի վերայ յարձակեսցի ժպրհութեամբ, որպէս նախաստեղծին երկուցելոյ, եւ անգիտութեամբ ի թզենին ապաւինեցելոյն, զնոյն գտցէ Աստուած անպարտելի: Զաւրացեալ լինի ի հրեշտակէ փոքր մի խոնարհեալն քան զհրեշտակըս, ըստ տեսչութեանն տաւնակից առնել կամելով բնութեանս մերոյ զվերին բնութիւնս: Աղաւթէ ի խաչին. Աստուած իմ, ընդէ՞ր թողեր զիս, որպէս զմի ի թողեցելոցս հաշուեալ զինքն, վասն հաղորդ լինելոյն մեզ արեան եւ մարմնոյ մեզ բան հնազանդութիւնն, եւ զինքնակատար կամացն ներգործութիւն, ի հնազանդութիւն կրթելով՝ ասէ, Ես զկամս Հաւր իմոյ կատարեմ, եւ զհաճոյսն առաջի նորա առնեմ, զի զՀաւրն լսելի մեզ խոնարհեցուսցէ, զոր ի բացն դարձոյց անհնազանդութիւնն Ադամայ:



Եւ այսպէս թագաւորն փառաց հզաւրն ի պատերազմի, ել ի բարձունս հպարտացելոյն, կապեաց զհսկայն, աւերեաց զյափշտակեալ զանձն նորա՝ զարքունեանս պատկեր, եմոյծ ի դրախտն զԱդամ՝ ուստի անկաւն, եւ զեւթնեկին շնորհսն, զոր կորոյս եւթնեկին յանցանաւք, ի վերայ ծննդոց նորին կոչէ, ոչ ի վերայ ինքեան, զի ի նմա էր ամենայն լրումն աստուածութեանն: Այլ շինեաց իմաստութիւնն Հաւր զտունն. զխորանն Դաւթի՝ զհասարակաց բնութիւնս, յորում բնակիլ ասի Աստուած, կանգնեալ վերստին զկործանեալ սիւնսն եւթն: Եւ վասն լինելոյն իւր ծաղիկ յարմատոյն Յեսսեայ, հանգչել ասի, ինքեամբ ի մեզ Հոգի Աստուծոյ, հոգի իմաստութեան եւ հանճարոյ, հոգի խորհրդոյ եւ զաւրութեան, հոգի գիտութեան եւ աստուածպաշտութեան:

Իսկ միւսն պատեալ զեւթամբն, կրկնապատկեալ զշնորհսն ըստ աւուր յարութեան իւրոյ յութերորդն կատարեաց, որ է աւուրց կատարումն. լցաւ հոգւով երկիւղի Տեառն եւ սկիզբն յարաձգական յաւիտենի, զի ուր երկիւղ Տեառն՝ անդ պատուիրանին պահպանութիւն, եւ ուր պահպանութիւն՝ եւ՛ ոչ յանցանք: Բարձաւ եւ միջնորմն, տեղի ետ եւ քրովբէիցն բոցեղէն շրջապատեալ սուրըն՝ պահողացն զճանապարհ ճշմարիտ կենացն, զի ընդ մեզ գտաւ ճանապարհն եւ ճշմարտութիւնն եւ կեանք. անցոյց զմեզ ի վեր ընդ դրունս երկնից, եհան յանմահական յերկնաւորն ճոխութիւն, եւ նստոյց գեր ի վերոյ իշխանութեան եւ պետութեան եւ զաւրութեան, եւ խրախոյս տուեալ՝ Քաջալերեցէք, ասէ, ես յաղթեցի մահու: Եւ ետ իշխանութիւն հաւատացելոց իւրոց գնալ ի վերայ իժին եւ քարբին, եւ պարծելով ասել, Ո՞ւր է մահ յաղ-

թութիւն քո։

Արդ՝ զայսքան եւ զայսպիսի առատ մարդասիրութիւն եւ աստուածագործ զաւրութիւն, զի՞արդ ոք իշխեսցէ աւտար բնութեան եւ ոչ յաւէտ Աստուծոյ համարել, ուր մարգարէքն աղաղակեն, թէ՝ Ինքնին Տէր փրկեսցէ զմեզ, եւ առաքեալքըն, թէ՝ Կեանքն յայտնեցան, եւ տեսաք եւ վկայեմք, թէ սա՛ է ճշմարիտ Աստուած, եւ հետեւողք ճշմարտութեանն նոցին դաւանեցին մեզ Հոգւովն սրբով ի Նիկիացւոց քաղաքին ժողովեալքն։ Աստուած յԱստուծոյ իջեալ, ասացին, ճշմարտապէս մարդ, իսկապէս մարմնացեալ ի սրբոյ կուսէն Հոգւով եւ մարմնով եւ մտաւք, եւ նովին մարմնով խաչեալ եւ թաղեալ եւ յարուցեալ յաւուր երրորդի, եւ նովին մարմնով վերացեալ յերկինս, նստաւ ընդ աջմէ Հաւր· նովին մարմնով գալոց է դատել զկենդանիս եւ զմեռեալս· եւ ոչ ուրեք թիւ բնութեանց կամ կամաց յիշատակեցին (ուրեք), որ եւ ոչ վայել է իսկ Աստուծոյ։

Արդ՝ ցուցէք մեզ այլ մարգարէս, եւ առաքեալս եւ վարդապետս, նա եւ Աստուած մարմնազգեստ, հաւատարմագոյնս քան զայսոսիկ, եւ եթէ իցէ արդեւք, զոր եւ ոչ դեւք անգամ յանդգնին զայս ասել։ Զարմացան երկինք ի վերայ այսորիկ, ասէ մարգարէն, զի զգրեալսն լռէք, եւ զոչ գրեալսըն յերգ արկեալ հնչեցուցանէք, զի փրկութիւն հասարակաց մարդով եւ ոչ Աստուծով ասէք եղեալ։ Ո՛վ խորամանկութիւն չարին, անքուն ակամբ երկնեալ սերմանեաց զայս բանակռուութիւն ի կործանումն լսաւղաց, հակառակատիպն Պաւղոսի վատաշուէր Սամուսատացւոյն եւ ոռոգեաց Նեստորիոս; եւ աճեցոյց սկզբնագիւտ չարին բանսարկուն, զոր ծածկաբար ի ձեռն ժողովոյն Քաղկեդովնի գիշերա-



յին մտածութեան, ի վերայ ցորենոյն զորոմն սերմանեաց, ի ճշմարտեաց լսելիս, որոց եղաւ ժամադրութիւն ի հունձսն՝ ընդունելով ի փրկչէն զհատուցումն։ Մի ոք զմեզ իբրեւ զյանդգնախաւսս պարսաւիցէ, եւ կամ իբրեւ զանհանճարաբար թըշնամանողս, զի սէրն Քրիստոսի ստիպէ զմեզ քննել զայս ամենայն, եւ խաւսել առանց ամաւթոյ ըզվկայութիւնս Տեառն առաջի թագաւորաց։

Թողում ասել, որ յաղագս հաւատոյս զինիք ընդդէմ եւ հակառակ Յիսուսի առնել եւ ուսուցանել ջանայք, այլ եւ ի վերայ այսոցիկ փոխեցէք զսահմանն յաւիտենական ի հարցն հաստատեալ, կուրացուցէք զհաւտն Տեառն՝ զոր գնեաց արեամբըն իւրով սրբով։ Ընդէ՞ր փակէք զմեղուցելոցն ապաշխարութեան դրունս, եւ ծածկեցէք զկանոն աւրինաւոր ամուսնութեանն, որ հազիւ եւ զերկրորդն թողացուցանէ մարմնասիրացն։ Ի բաց բարձէք ըզպահոցն նշմարանս՝ զոր Տէրն աւրինադրեաց։ Զի՞նչ ունիք ասել եւ առ բանսն առաքելոյ՝ Արհամարհութեանն կոչել զմարմնոյ պղծալից ցանկութեանն կատարաւղս, զոր եւ այժմ գրեթէ առ ձեզ բարբառելով Պաւղոս՝ զՀռոմայեցիսն եւ զԿորնթացիսն նախատէ, յաղագս պոռնկութեան խառն անկողնոց եւ պղծութեան, եւ զծածուկսն գործելոյ զանց առնէ ասելով, զոր մայր մեղացդ թեթեւագոյնս կազմէք կարճամտացդ, ի նոյն յուղարկել կորստեան խորխորատն, ընդ որոց զՋրհեղեղին ընկալան արկածս, եւ զհրակիզութիւնն Սոդոմ, եւ զԻսրայեղ խրատեալ յանապատին, եւ զԶամրի սատակելով զյիշատակ արդարութեանն հաստատեալ Փենեհեսի, Հեղի եւ որդիքն եւ բազմահազարքն սատակեալ ժողովուրդքն, զոր եւ համարձակիմք ասել, վասն այսորիկ աշխարհ ձեր հրձիգ, քաղաք ձեր աւեր-

եալք յազգաց աւտարաց, դարձուցեալ զաւգնութիւն ի սրոյ ձերմէ, խոնարհեցուցեալ զթագաւորութիւնդ, փոխանակ զաւրացելոյ հերձուածիդ եւ անամնական անարգել ախտաւորութեանդ։

Զի՞նչ եւս զքահանայիցդ ասասցուք զանկարգ սովորութիւնդ, զի սուրբ հարքն եւ ոչ զապաշխարեալսն ընդունէին ի քահանայութիւն կամ ի սարկաւագութիւն իբրեւ զանկեալսն ի շնորհացն Քրիստոսի. իսկ ձեր այսոցիկ եւ ոչ հետք ուրեք երեւին, այլ ըստ իւրաքանչիւր կամաց վարեցեալք բազում ամուսնութեամբք եւ յետոյ խորհրդազգածք աստուածայնոյն բեմի, եւ կարգեալ խորհրդածուք այլոց։ Միայն թէ զարտաքին բաժակին եւ զսկաւառակին բարիոք իցէ լուացեալ, եւ քաջագոյնս ի թափչաց ողորկեալս ագանիցեն պարեգաւտս, եւ մանաւանդ թէ զՊղատոնական պերճաբանութիւնսն վարժեցեալք հեգնեսցեն բայս, քաջ քաջ համարձակագոյնս քան սերովբէիմն ունելեաւք յաւրինակն. սոքա ձեռաւք ի ճշմարտութիւնն՝ առ կայծակն աստուածային հրոյն՝ յանդգնագոյնս մերձեցեալք ինքեանց ընդելլով (*), եւ զմեղուցեալսն հաղորդեցուցանեն։ Եւ զարմանք թէ զի՞րդ ոչ աստուածային հրովն ծախիցին ընդ Նաբադայ եւ Աբիուդայ, զորոց ամբաստան լինի Աստուած ի ձեռն մարգարէին Սոփոնիայ. թէ՝ Քահանայքն պղծեն զսրբութիւն իմ եւ ամպարշտեն յաւրէնս իմ. եւ ի ձեռն միւսոյ մարգարէին ասէ, Մի՛ մտանէք ի սրբութիւնս իմ, ասէ, եւ կոխել զգաւիթս իմ մի՛ յաճախէք։

Զի՞նչ եւ զհեթանոսական անուանեալ ամուսնութիւնսդ ասասցուք, զի հարազատաց որդիք եւ դստերք միաւորին յամուսնութիւն, եւ ամուրիք

------

(*) Այսպէս յօրինակին.



եւ այրիք զուգաւորեալք երկրորդ ամուսնութեամբ, եւ զայլմէ ծնունդս իւրեանց առ միմեանս զուգաւորեն, եւ ոչ ուստեք երկիւղ եւ ոչ վրէժխնդրութիւն։

Զի՞նչ զանիրաւ դատաստանսդ եւ զկուրացուցիչ կաշառակրութիւնսդ ասասցուք, ընդ որ եւ մարգարէն զարմանայ, թէ՝ Առաջի իմ եղեւ դատաստան, եւ դատաւորն առնոյր կաշառ։ Զի՞նչ եւ զագահութեանցդ եւ ի կշիռս մեղանչելով վաճառաշահ աւգտածարաւութեանցդ ասասցուք, զոր կռապաշտութիւն կոչէ խորհրդակիրն Քրիստոսի։ Զի՞նչ եւ վասն սուտ երդմնահարութեանցդ՝ որոց Զաքարիաս սպառնայ թռուցեալ գերանդեաւն։ Զի՞նչ զսուտ վկայութեանցդ՝ ընդ որոյ ի Դանիէլէն պատուհասեցան ծերքն։ Զի՞նչ եւ զարեանցդ հեղլոյ անողորմաբար՝ ընդ որոյ պատժեցաւ Կայէն նախահայրն սպանողաց։ Զի՞նչ եւ զթագաւորացդ արհամարհութիւն, որոց իբրեւ Աստուծոյ անհնազանդից դատաստան ասաց ընդունել Պաւղոս։

Եւ զայսոսիկ ասելով առ ձեզ, ոչ որպէս փարիսեցիք ոմանք զանձինս արդարացուցանեմք, զի որովք ստգտանեմք զձեզ՝ թերեւս եւ մեք ի գաղտնի զնոյն գործեմք։ Այլ նախ այս, զի ոչ ըստ հնգից տաղանդի պահանջեմք տոկոսիս։ Քանզի պատուեցայք յարարչէն քահանայութեամբ՝ թագաւորութեամբ՝ գործական եւ տեսական իմաստութեամբ, եւ նախկին զբանն ընկալեալ քարոզութեան իբրեւ զանձրեւ՝ բազում անգամ խրատեալ յաւրինաց եւ ի մարգարէից, վարդապետ կարգեալ տղայոց, լոյս եւ աղ աշխարհի լինել. եւ դէտ կարգեալք, եւ ոչ ստուգապէս պահողացդ զարիւնն՝ ի ձեռաց ձերոց խնդրել ասաց մարգարէն Եզեկիէլ, սպառնալով Աստուծոյ։ Իսկ ըստ մերում աղքատու-

*թեանս ի վեր երեւեալ մեղք ուրուք՝ յանդիմանեմք, սաստեմք, եւ մխիթարեմք, արտաքոյ եկեղեցւոյ եւ սրբոյ խորհրդոյն կացուցանեմք, նշաւակեալ զայնպիսին ըստ Պաւղոսի եւ այլ սրբոցն կանոնի, զոր դուք եւ ոչ ի լսելիս անգամ ձեր յանձըն առնուք։*

*Եւ զի՞րդ ոչ պատկառէք ի մտանել ձեր ի հրաշագործդ սրբարան անուանեալդ Սուրբ Սոփի, որ արդարեւ իսկ հիմնեցաւ վերին իմաստութեամբըն խորհրդաբար յինքեան բերելով զլինելոցդ ձեր անզեղջ յանդգնութիւն, եւ զմոռացումն Աստուծոյ պատուիրանացն, իբրեւ զմեղսն Յուդայ գրեալ անշարժ զյանդիմանութեանդ կանոն՝ առաջի աչաց ձերոց սահմանաւ տպացուցեալ։ Քանզի յարեւելից կրկին սրահիւքդ, եւ արծաթապատ դըրամբքդ, եւ երեքկին գաւթաւքդ, կապուտակեայ քարամբք պատուականաւք յատակի եկեղեցւոյդ անջինջ գծագրութեամբ, եւթնեկին աշտիճանաւք մինչեւ ի մուտս քահանայարանիդ, զապաշխարողսըն ըստ ժամանակի արժանաւորեալ հաղորդութեան երեւեցուցանէ, զոր դուք այժմ իբրեւ զծաղու արժանի առասպելս եւ ցնորս համարիք անիրաւաբար կոխելով. զոր եւ ոչ Մովսէս թողացուցանէր յստուերի պաշտամանն մտանել յեկեղեցի Աստուծոյ, զպտղակն ճայրոտեալ՝ առ արդարութեանն արեգակն ոչ կարացեալ հայել ուղիղ հաւատով, եւ կարճունչն՝ ոչ արժանաւորեալ ընդունակ լինել անուշահոտութեան Հոգւոյն սրբոյ հաւատով։*

*Զորձս երկդիմիս արկեալ, զգեցեալ զՔրիստոս մկրտութեամբըն, եւ զաւտարին կերպարանս ըստ հեթանոսացն ի վերայ արկեալ, զարիւն ոչ զոհել ի վերայ խմորոյ զնորոյ ուխտիս արիւն ըստ մարդադաւանն փարիսեցւոց հին խմորոյն*



*խոստովանել։ Եզն եւ էշ ի միասին վարեցեալ, անուանեալ ուղիղ վարդապետութեամբ ընդ հեթանոսականն խառնակ գնացիւք անյուսութեամբըն լծակցեալ. մալեալն յերկոցունց զաւրութենէ, ի բաց անկեալն ի հոգւոյն ուղղութենէ եւ ի մարմնոյն սրբութենէ. սապատողն՝ ոչ ուղղական տեսակաւ հայեցեալ ի վերկոյս յաստուածայինն պատուիրանըս եւ յերկնից բարութիւնսն, այլ ըստ անասնոցն ի վայր խոնարհեալ զերկրաւորս միայն, որ ինչ որովայնի եւ ընդ որովայնիւ է հոգայցէ. մատնեալ զծառայ տեառն իւրոյ զփախուցեալն յիշխանութենէ խաւարի առ կարծեցեալ լոյսն, իբրեւ զեկամուտն՝ արարեալ որդի գեհենին՝ կրկին եւս քան զինքեանս, մատնեալ անդէն մեղաց իւրոց։*

*Այսոքիկ Մովաբացիք եւ Ամոնացիք, պիղծք եւ արատաւորք, մտանեն ի տուն Աստուծոյ, եւ ձեր թողացուցեալ այսոցիկ գնալ իւրաքանչիւր ումեք զհետ սրտի իւրոյ չարի։ Ի բաց բարձէք զկարգ եւ զխտրութիւն հովուի եւ հաւտի, բժշկի եւ վիրաւորեցելոյ, ծառայելոյ Տեառն եւ Բահաղիմանցն, որոց այսպէս գործողացն՝ զորդն ոչ մեռանել եւ հուրն ոչ շիջանել, Եսայի սպառնայ։*

*Վասն որոյ երկնչիմք աւտարաձայն եւ պէս պէս ուսմանցդ ձերոց հաղորդել, յորմէ եւ Պաւղոս հրաժարեցուցանէ, զի մի՛ խոնարհիցիմք ի տեղի չարչարանաց եւ ծածկեսցեն զմեզ ստուերք մահու։ Այլ զհետ սրբոց հարցն հետեւեսցուք խոստովանելով ընդ նոսին զԱստուածն Բան մարմնացեալ ամենայնիւ՝ որ ինչ մարդոյ բայց ի մեղաց, եւ ընդ ամենայնս ուղեւորեալ կենցաղոյս անարատապէս, եւ աստուածային խառնումն, անմեկնելի է մար-*

*մնոյն իւրոյ, յարգանդէ կուսին մինչեւ ցյաւիտեան։ Եւ ասի բոլորն Աստուած անմահ· Տէր փառաց խաչեալ, եւ որով ծնաւն, նովին մարմնով եւ հոգւով, կամաւք եւ ներգործութեամբ ունի զփառսն զոր ունէր ընդ Հաւր, յառաջ քան զլինելն աշխարհի յԵրրորդութեանն երկրպագեալ որպէս նմին Տեառն, եւ այժմ հանդերձ առեցելովն։ Եւ մնաց Երրորդութիւնն՝ Երրորդութիւն առանց յաւելման եւ պակասութեան, եւ նովին բնութեամբ, մի եւ նոյնն գայ հատուցանել ըստ իւրաքանչիւրոցն։*

*Ուստի ուղղելով զգնացս մեր ի հաճոյս նորա այսու խոստովանութեամբ յանգելով զաստիս խաղաղութեամբ, հաւատամք եւ յաւիտենիցն հասանել կենաց Քրիստոսիւ Յիսուսիւ Տերամբ մերով, որ կոչեացն զմեզ ի մասն վիճակի սրբոցն ի լոյս, որում՝ փառք պատիւ եւ զաւրութիւն եւ իշխանութիւն, այժմ եւ միշտ եւ յաւիտեանս յաւիտենից, ամէն։*

Զմեղապարտ գրողս զԹումաս եւ զծնաւղսն իմ յիշեցէք:





## ՁԷ

## ՆՈՐԻՆ ՏԵԱՌՆ ՅՈՎՀԱՆՆՈՒ ՀԱՅՈՑ ԿԱԹՈՒՂԻԿՈՍԻ ԸՆԴԴԷՄ ԱՅՆՈՑԻԿ ՈՐ ԱՊԱԿԱՆԵՆ ԶՍՈՒՐԲ ԽՈՐՀՈՒՐԴՆ Ի ՁԵՌՆ ԽՄՈՐՈՑ ԵՒ ՋՐՈՑ։

*Ահա յառաջագոյն ծանուցեալ առաքելոցն զապստամբութիւն հերձուածոյն ի ճշմարիտ հաւատոյն, եթէ այլայլեն զխորհուրդ տնաւրէնութեանն Քրիստոսի, յառաջագոյն հաստատեցին զդեղ բժշկութեան ի գիրս եւ ի գլուխս ընթերցարանաց, զի որք հակառակին ոչ գոլ Աստուածածին զկոյսն, գտանեն ի գիրս Ծննդեան եւ Յայտնութեանն, որ նոյն ինքն է Մկրտութեանն, եթէ Ահա կոյս յղասցի եւ ծնցի որդի, եւ ծնեալն Սքանչելի՝ Աստուած՝ Հզաւր՝ Իշխան եւ Հայր։ Իսկ ի գիրս չարչարանաց գտանես, եթէ Աստուած էր որ չարչարեցաւ վասն փրկութեան մարդկան, զոր յայտնէ Եսայի, թէ Նա զմեղս մեր վերացոյց եւ վասն մեր չարչարի։ Եւ եթէ մարդոյ համարի եւ ոչ Աստուծոյ, որպէս սովոր են գնալ ի ճշմարտութենէն, այլ ոմն քեզ վկայէ ի գիրս չարչարանացն, եթէ՝ Եկեսցէ հասցէ Տէր Աստուած մեր, եւ ամենայն սուրբք ընդ նմա։ Յաղագս այնորիկ անխտիր մերձենան ի մարմին եւ յարիւնն Տեառն, զի սոսկ մարդոյ համարեցան, եւ ոչ Աստուծոյ միաւորելոյ ընդ մարմնոյ, եւ ոչ*

------

*Բնագիր Ա· էջ 234 – 238։ Համմտ· Ժէ· էջ 459 – 465։*

պատկառեցան ի հրամանացն, որ Պաւղոսիւն խաւսէր ընդ հաւատացեալս թէ՝ Որ ուտէ եւ ըմպէ անարժանութեամբ, եւ որ այլն։

Գտանես յսկզբումն ընթերցականացն ճառ հոգեպատումն, որք արմատաքի խլեն զհերձուածն, որ ապականացու խոստովանին զանապական մարմինն Քրիստոսի, եւ յաղագս այնորիկ արկանեն խմոր եւ ջուր պղծել եւ ապականել զանապական խորհուրդն, անհետ առնել հրամայեաց նոցա. յաղագս անխմոր աւրինաց նշանակէ եւ զեւթն աւր ճաշակել առանց խմորոյ զբաղարջն՝ զնոյն բերէր աւրինակ, զի խմորեալն ոչ լինի կենդանի հաց, որպէս ասաց Աստուածաբան ի Զատկին ճառի։ Իսկ յետ ելիցն յԵգիպտոսէ, յորժամ վասն այսորիկ աւրինադրէր Մովսէսի Աստուած, ոչ ապաքէն յերկնից գայր մանանայն, ուստի հրամայէր առնել զշաւթս եւ զնաշիհս զոհիցն եւ զհացն զառաջաւորութեան, որ բերէին զաւրինակս մարմնոյն Քրիստոսի, զի իւրեանց արմտիք ոչ գոյր եւ յաւտար ազգաց ոչ առնուին զի պիղծ էր. եւ միւս վասն այնորիկ, զի աւրինակ էր մարմնոյն Քրիստոսի, ոչ կամէր Աստուած թէ ուտիցեն միս ընդ սուրբ հացին, մինչեւ երթիցեն յերկիրն աւետեաց։ Եւ այս անտի յայտ է զոր ասաց Աստուած, եթէ յորժամ մտանիցէք յերկիրն, եթէ ցանկանայցէք մսոյ յայնժամ կերիջիք միս. եւ վասն այսորիկ ասէ Դաւիթ թէ՝ Ոչ անսացին խորհրդոց նորա, այլ ցանկացան զցանկութիւն յանապատի, եւ բարկութիւն Աստուծոյ էջ ի վերայ նոցա, այլ զխմոր ոչ էր պարտ գտանել։ Իսկ անաւրէնք ասեն թէ յերկնից իջանէր խմորն ընդ երկնային հացին, եւ կամ (ե)թէ զոր ասէ Տէրն, եթէ՝ Ես եմ հացն կենաց՝ որ ի յերկնից իջի։ Արդեւք խմորեալ են կեանքս մեր։



Բայց մի՛ լիցի ուսումնասիրաց զմտաւ ածել զաղծապիղծ կրաւնս նոցա, թո՛ղ թէ գործով ի կիր արկանել։ Բայց այսու հաւանեցուցանեն զպարզամիտսըն, մանաւանդ եթէ զանմիտսն, այսպէս ասելով. եթէ Տէր ասաց, եթէ՝ Որ ուտիցէ ի հացէս յայսմանէ, մի ճաշակեսցէ զմահ։

Եւ ասեն թէ հաց կատարեալ խմորեալն է, զայս ի մտաց ասեն եւ ոչ ի գրոց։ Եւ եթէ չեն սուտ եւ սնոտի, ցուցցեն յաւրինաց կամ ի մարգարէից զաւրինակ մարմնոյն Քրիստոսի, եթէ արժան է ածել զապականեալ խմորն. այլ ոչ զգիրս գիտեն, եւ ոչ զզաւրութիւն գրոց, կամ թէ զոր ասաց Մովսէսիւ Աստուած, Որ ուտիցէ խմորեալ սատակեսցի, նշանակէ զյաւիտենական սատակումն, որ ճաշակեն ի սուրբ խորհրդոյն զխմորն։ Նա թէ եւ կամէր ոք գտանել զխմորեալն յաւուրս զատկին յԻսրայէլի՝ ո՛չ գտանէր, բայց միայն ի տունս հեթանոսաց։ Բայց դու նայե՛ա եւ քննեա՛ զխորհուրդ հինգշաբաթին, զի ի նմա կատարեաց Քրիստոս, պատառելով զխմոր եւ զջուր, զոր վասն ապականութեան խառնեն՝ թէ ապականացու է մարմինն Քրիստոսի. եւ ոչ լուան մարգարէին, եթէ՝ Մարմին նորա ոչ ետես զապականութիւն, եւ կամ Պետրոսի եթէ՝ Զոր Աստուածն յարոյց, ո՛չ ետես զապականութիւն։ Այլ ոչ գիտեն մոլորեալքն եթէ զինչ է ապականութիւն։ Այլ մեք ճշմարտապէս յաղագս այսորիկ իմաստասիրեսցուք յԱստուածաշունչ գրոց։

Կոչեն Աստուածաշունչ գիրք ապականացու զծառայն մեղաց. իսկ ո՛վ կարէ ասել զնմանէ թէ մեղս գործէր, որ յառաջ քան զտնաւրէնութիւնն քարոզեաց մարգարէն թէ՝ Առանց մեղաց ընթացայ, եւ ուղիղ է. եւ այլ ոմն եթէ՝ Անաւրէնութիւն ոչ գործեաց, եւ ոչ գտաւ նենգութիւն ի բերան նո-

*րա. եւ Պաւղոս ասէ զնմանէն՝ Սուրբ, անմեղ, զատեալ ի մեղաւորաց, առեալ զխորհուրդս զայս եւ ասաց, թէ Զա՛յս արարէք առ իմոյ յիշատակի։ Աղէ՛ ցուցցեն թէ խմորեալ էր հացն կամ ջրով խառնեալ բաժակն, այլ ոչ կարեն ցուցանել ի գրոց այլ անձնահանճար իմաստիւք իրակերպին ընդդէմ ճշմարտութեանն։ Զի փրկիչն ասէ, յետ աւրհնելոյն զբաժակն. Ոչ եւս արբից ի բերոյ որթոյ. ուստի յայտ է, թէ որթն գինի եւ ոչ ջուր ծնանի, եւ ա՛յս ոչ յաւրինաց եւ ի մարգարէից այլ աստուածային բերանոյն աւրէնք են։ Եւ զայս ամենայն գեղեցիկ իմն յեղյեղուն, Գրիգոր Աստուածաբան եւ Յովհան Ոսկիբերան, որք համառաւտ բանիւք պատմեցին մեզ զառաքելական եւ զաւետարանական տաւիցն միտս, եւ զայս ամենայն հաստատուն եկեղեցական կարգաց, եւս առաւել ընթերցականաց ծագէն պատմութիւնք։ Արդ՝ եթէ հազար ինչ ճարտարեն երկաբնակ աղանդոյն պաշտաւնեայքն, եւ բարձրացեալ քան զերկինս ամբարտաւանութեամբ. Արդ՝ եթէ ի սերմանէ էր ծնեալ Քրիստոս, ապականացու էր մարմինն. իսկ եթէ ի Հոգւոյն սրբոյ՝ ապա մի՛ ոք իշխեսցէ ասել ապականացու։ Բայց հացին անուամբ զարհուրեցուցանեն զպարզամիտսն, եւ ասեն հաց կատարեալ խմորեալն է։ Սուղ ինչ եւ յաղագս այսորիկ ասասցուք։*

*Հաց անունն՝ սովորական ի խաւսից է, եւ հասարակ անուն ի բերանս բազմաց, այլ ոչ յատուկ ձայնի նշանակ, եւ զայսքան զհացարարութեան արուեստն հասկացն եւ շեղջիցն ի վերայ ասեմք։ Ա՛յս անուն, ասեն, հաց շատ ժողովեաց, աղէ՛ ասիցեն անաւրէնքն, եթէ հասկք եւ շեղջք խմորեալ է՞։ Իսկ մեք ի գրոց ցուցանեմք, եթէ զբաղարջն հաց կոչեն աստուածային գիրք։ Յորժամ քաղցեաւ*



*Դաւիթ, որպէս կայ ի Թագաւորական մատենին, եթէ ի պահանջելն ի քահանայիցն հաց՝ պատասխանի տուեալ ասեն, Զիք աստ հաց, բայց առաջաւորութեան հաց. ահա զբաղարջն հաց կոչեն Աստուածային գիրք որպէս ասացաք։ Եւ սուրբն Գրիգոր զնոյն ուսուցանէ մեզ, զի ասէ նա ուրեմն ի հոգեպատումն վարդապետութեանն, եթէ Հացն առաջաւորութեան բերէր զաւրինակ մարմնոյն Քրիստոսի։ Տե՛ս դու եւ զմի պատկառելի աւրինակն. զի ի ճաշակելն նոցա ասէ քահանայն. Եթէ սուրբ իցեն ի կանանց մանկունքդ՝ մարթ է ճաշակել ի սուրբ հացէն. իսկ ի պատասխանելն եթէ Յերեկէ եւ յեռանդէ, ապա համարձակեցոյց սուրբ հացին։ Արդ եթէ ի հնումն, որ ստուերն էր հանդերձելոց բարեացս Քրիստոսի, պատկառանաւք եւ երկիւղիւ էր ճաշակելն, որ աւրինակ բերէր զայժմուս, եթէ արժանաւորս պարտ է կալ յահաւոր խորհրդեանն, զիա՛րդ երկաբնակ աղանդոյն պաշտաւնեայքն անխտիր մերձենան, եւ զՈրդին Աստուծոյ առ ոտն հարկանեն, եւ զարիւն նորոյ ուխտին խառնակ համարելով, որով սրբեցաքն, եւ թշնամանեցին ըզշնորհաց հոգին։ Այլ ես պատկառեմ յայնմանէ որ ասացն, Իմ են վրէժխնդրութիւնք եւ ես հատուցից։ Վասն որոյ պատկառեսցուք, աղաչեմ, եւ մի՛ յանարժան անձինս մատչիցիմք ճաշակել, այլ ապաշխարութեամբ մերձեսցուք ի կենդանութիւն ի Քրիստոս Յիսուս Աստուած մեր, որում փառք յաւիտեանս։*

*Ի տասներորդն նիսան արարին որդիքն Իսրայէլի զԶատիկն յԵգիպտոս, եւ ապա ելին յերկրէն Եգիպտացւոց, եւ յաւուրն չորրորդ ընդ ծովն անցին, զոր առաքեալն մկրտութիւն կոչէ, աւրն միաշաբաթ, եւ մանանային աւրն միաշաբաթ, որ*

զառաջին պատարագն որթս մատուցին երիտասարդքն Իսրայէլի Տեառն Աստուծոյ, զի ցայնժամ չեւ էր աւծեալ քահանայ։ Եւ նախանձեալ ընդ այն սատանայի՝ որթուն ետ երկիր պագանել եւ ոչ եգիտ Ահարոն եթէ զո՞ր նման արասցէ զկուռսն, ի տագնապել զնա ժողովուրդն։ Եւ իբրեւ ել ոսկին ի հրոյն չունէր ինչ նմանութիւն որթու. ապա կոչեաց Ահարոն քանդակիչս եւ ետ մաքրել զնա ճշմարիտ որթ։ Արջառ եւ ոչխար բազում ունէր ժողովուրդն յանապատին, բայց միս ոչ ուտէին, զի այնպէս աւրինադրեալ էր Աստուծոյ։ Եւ պատարագ զոր առնէին՝ հուրն ճարակէր. եւ յայտ անտի է զի ասաց Աստուած. Յորժամ մտանիցես յերկիրն ժառանգել, եթէ ցանկաս մսոյ, յայնժամ ուտիցես միս, եւ զարիւն մի ուտիցես, այլ յերկիր հեղցես։ Որով յայտ է թէ յԵգիպտոս զանսուրբն անխտիր ուտէին, իսկ յանապատին աւրէնս ընկալան չուտել միս, վասն որոյ եւ մարգարէն ասէ, Ցանկացան զցանկութիւն յանապատին։ Բայց առաջաւորութեանն բաղարջ էր, որ բերէր զաւրինակ մարմնոյն Քրիստոսի, եւ չաւթ էր նաշիհ զոհիցն։ Խնդրելի է մեզ եթէ ցորեա՞ն է, եթէ մանանայ, զի իւրեանց արմտիս ոչ գոյր, եւ յաւտար ազգաց չառնուին զի պիղծ էր. եւ զմանանայն յերկանի աղային եւ ի թոնրի եփէին, որ բերէր զաւրինակ մարմնոյն Քրիստոսի. զի թէ աւրինակն անխմոր էր, զի՛ արդ ճշմարտութիւնն խմորեալ լինի։ Փառք Քրիստոսի Աստուծոյ մերոյ յաւիտեանս։

Զմեղապարտ գրողս զԹումաս եւ զծնաւղսն իմ յիշեցէք ի Քրիստոս:



## ՁԸ

## ՅՈՎՀԱՆՆՈՒ ԻՄԱՍՏԱՍԻՐԻ ՀԱՅՈՑ ԿԱԹՈՒՂԻԿՈՍԻ ՍԱԿՍ ԺՈՂՈՎՈՑ ՈՐ ԵՂԵՆ Ի ՀԱՅՔ

Առաջին ժողով արար երանելի հայրապետն մեր սուրբն Գրիգոր, ի քսաներորդ ամի կաթուղիկոսութեանն իւրում, եւ յերեսուն եւ եւթն ամի թագաւորութեանն Տրդատայ, ի թագաւորաբնակ քաղաքին յարքայութեանն Հայոց, յորժամ եկն Ռստակէս ի Նիկիոյ սուրբ ժողովոյն, բերելով ընդ ինքեան զգիր կանոնաց թուեալ միահամար կարգաւ տունս Ի(1), յորս նայեցեալ սրբոյն Գրիգորի սուղ ինչ յաւելումն արարեալ յեդեալ կանոնսն սուրբ հայրապետացն՝ որք ի Նիկիայն ժամանեալ ժողով։

Երկրորդ ժողով արար սուրբն Ներսէս, յորժամ դարձաւ ի Կոստանդնուպաւլսի ժողովոյն ՃԾ սուրբ հարցն, որք անդ գումարեցան ի կործանումն Մակեդովնի։

Երրորդ ժողով արար սուրբն Սահակ եւ երանելին Մեսրոպ յԱշտիշատ, յորժամ հասին թուղթքն ի Կիւրղէ եւ ի Պրոկղէ, որ յԵփեսոս երկու հարիւրքն հաւանեալ եղեն, յորժամ զՓառք ի բարձունսն կարգեցին, յաճախելով ի բանս հովուացն, պարսպելով ընդդէմ Նեստորի անիծելոյ։

------

Բնագիր Ա. էջ 220 - 233։ Լրացում ԺԷ. էջ 449 - 451։
(1) Տպ. ԾԱ։

Չորրորդ ժողով արար Յովսէփ, աշակերտ Մաշտոցի եւ սրբոյն Սահակայ նորին տեղապահի, ի Շահապուվանի, ի Զ ամի իշխանութեանն Յազկերտի, վասն կարգաւորութեան եկեղեցւոյ, ուր ժողովեցան եպիսկոպոսք Խ եւ երիցունք բազումք, եւ կանոնս յաւրինեցին սահմանեալ կարգաւ բանս քսան։

Հինգերորդ ժողով արար Բաբգէն ի Քաղաքուղաշտի, ի յԸԺ երորդ ամի Թագաւորութեանն Կաւատայ արքայի, յաղագս չար հերձուածոյն Ակակայ եւ Բարսումայի, որք պիղծ աղանդաւն վարժեալ անիծեալ ախտիւն Նեստորի, ջանային չիջուցանել զուղղափառ հաւատս կողմանց արեւելից, եւ տնկել զժանդացեալ որոմն գաղձին վնասակարի Նեստորի անիծելոյ։ Վասն որոյ գիր արարեալ Տէր Բաբգէն, սահման կապելով, թէ ի՛ւ պատրեալ խաբեսցեն զձեզ բանք դոցա, քանզի մեք Հայք եւ Հոռոմք, Վիրք եւ Աղուանք, մի խոստովանութեամբ եմք հաստատեալ ճշմարիտ հաւատով ի լաւ անդր, զոր աւանդեցին մեզ սուրբ Հարքն յերիս ժողովսն, ոչ ընդունիմք զայդպիսի բանս հայհոյութեան. այլ նզովեմք միաբան զնմանիս նորա. եւ եւս մանաւանդ, որք կցորդին զկնի պիղծ աղանդոյն նոցա. նզովեալ եղիցին, եւ ի սուրբ եկեղեցւոյ արտաքս մերժեսցին։

Ի սկզբան Թուականութեանս Հայոց, Վեցերորդ ժողով արար Տէր Ներսէս ի Դունի, ի չորրորդ ամի կաթուղիկոսութեան իւրոյ, եւ ի ԻԴ. ամի Թագաւորութեանն Խոսրովու արքային Պարսից, եւ ի ԺԴ ամի Յուստինոսի կայսեր։ Զայս ժողով արար Տէր Ներսէս, հակառակ ժողովոյն Քաղկեդովնի. վասն զի էր ախտ պղտորման խոստովանութեան Քաղկեդովնի յաճախապէս յաւելեալ



եւս քան զեւս յոյժ յոյժ երկաբնակ հաւատն, եւ սկզբնաւորեալ Տէր Ներսէս սահմանադրութիւնս վճիռ տալով, եւ եդեալ միաւորութիւն խոստովանութեան. հաստատելով, նախ եւ առաջին զծննդեան եւ զմկրտութեանն միաւորելով յոյժ ստիպմամբ հաստատութեամբ անխզելի, եւ անորոշաբար կանոնաւ վասն երկուց բնութեանցն միաւորելով զմիութիւն ունելով սրբեցին դարձեալ զխաչեցարն յերիս սրբասացութիւնս, ընդդէմ բաժանման նոցա, վասն Քրիստոսի միաւորեալ բնութեանցն. զի թէպէտ եւ տեսաք զնա մարդ(ացեալ), այլ Աստուած էր, թէպէտ եւ ի տկարութիւն կամաւորաբար խոնարհեցաւ, այլ հզաւր էր. թէպէտ զմահ ճաշակեաց կամաւորաբար այլ անմահ էր։

Իսկ յետ ժամանակաց ինչ առ Թագաւորութեամբ Հերակլի, որ Թագաւորեաց Հոռոմոց ամս ԼԱ, առ սովաւ առաւ աստուածաշէն քաղաքն Երուսաղէմ, եւ սուրբ Խաչն գերեցաւ ի Պարսից Թագաւորէն։ Սա ի ԺԵ ամի Թագաւորութեանն իւրոյ սպան զԽոսրով արքայն Պարսից, եւ դարձոյց ըզսուրբ Խաչն։ Իսկ ապա զկնի ԸԺ ամի արար ժողով ի Կարնոյ քաղաքի, յաճախագոյն իմաստասիրաւքն Յունաց. ածէ եւ զբազումս ի հայրապետացն Հայոց հաւանել երկաբնակ խոստովանութեանն նոցա, եւ զԵզր՝ Հայոց կաթուղիկոս հաստատէն, եւ զսուրբ ժողովն որ ի Դունի, նզովիւք չափ ի բաց մերժէն, եւ զմիաւորութիւն Ծննդեանն եւ զՄկրտութեանն, եւ զխաչեցարն յերիս սրբասացութեանցն ի բաց մերժեցին. եւ հաւանեալ լինէր Եզր կաթուղիկոս, վասն նորընկալ իշխանութեանն իւրոյ, եւ ժառանգելոյ զաթոռ հայրապետութեանն մինչեւ ցԵղիայ, որ եկաց ամս ԺԴ։ Սոքա հնազանդեալք խոստովանութեանն Քաղկեդովնի անիծելոյ, եւ ոչ ընկալան

զսուրբ ժողովն Դունի, զաւանդեալն ի Տէր Ներսէսէ եւ ի Պետրոսէ Քերդողէ Սիւնեաց եպիսկոպոսէ, որ զմիաւորութիւն ճառեալ աւանդեցին Հայաստանեայցս ամենեցուն, զոր ընկալան Հայրապետքն, որ զկնի յառաջ քան զսոսա յաջորդեալ էին յաթոռ հայրապետութեան սրբոյն Գրիգորի, որ են այսոքիկ· Առաջինն Տէր Ներսէս՝ ամս Թ· առ որով ժողովն Դունի եղեւ· եւ Տէր Յովհաննէս ամս ԺԵ, եւ Տէր Մովսէս՝ ամս Լ· եւ Տէր Աբրահամ՝ ամս ԻԳ, եւ Տէր Կոմիտաս՝ ամս Ը· եւ Տէր Քրիստափոր՝ ամս Բ։

Այսոքիկ են կաթուղիկոսք Հայոց, խոստովանութեամբ սուրբ ժողովոյն Դունի· որք են կարգեալ մինչեւ ցԵզր կաթուղիկոս քաղկեդոնիկ, զոր ոչ ընդունի սուրբ եկեղեցի· վասն զի այս Եզր ընկալաւ զհայրապետութիւնն հրամանաւ Հերակղի թագաւորին Հոռոմոց, եւ ընդդէմ եղեւ սուրբ ժողովոյն Հայոց, վասն զի հաւանեալ ընկալաւ զժողովն Քաղկեդոնի, եւ բաժանեաց ի միմեանց զմիաւորեալ Ծնունդն եւ զՄկրտութիւնն, եւ զխաչեցարն յերիս սրբասացութեանցն որոշեաց, եւ զկնի նորա կաթուղիկոսք Ձ կարգեալք մինչեւ ցԵղիայ՝ որ էր աւանդութեամբ նոցա։

Արդ՝ զկնի Տեառն Եղիայի, ի տուչութենէ ամենախնամ շնորհաց սուրբ Հոգւոյն, պարգեւեալ ընձեռեցաւ աթոռ հայրապետութեան Սրբոյն Գրիգորի, ինձ Յովհաննիսի Ներգեւեալ տարապատկան փանաքէի, մեղաւոր եւ անարժան ծառայի Քրիստոսի Աստուծոյ, եւ ձեռնտու եղեւ ինձ շնորհք կամաց բարձրելոյն, ոչ ըստ իմոյ անարժան տկարութեանս, ըստ դուզնաքեայ մեղսամակարդութեանս, ի յաստեաց ախտից երիկեան վայրահայեաց բնութեանս, այլ ըստ իւր ամենակարող գաւրութեանն, առաջնորդ եղեւ մեզ ամենատէրն մեր Քրիստոս,



ըստ շնորհի սուրբ կամաց իւրոց, եւ գայր հասանէր մեզ ի թիկունս հանդերձ Հարբ եւ Հոգւով սրբով, առ ի զաւրացուցանել զմեզ առնել սիւնհոդոս հաւատոյ, ճշմարիտ ուղղափառութեամբ խոստովանել մեզ զսուրբ աւանդ միացեալ բնութեան Բանին Աստուծոյ, միութիւն խոստովանելով, եւ ոչ երկու բնութիւնս, լինել մեզ վրէժխնդիր առաջնոցն, որ նախ քան զմեզ հաստատեալ էին ի սուրբ հաւատ միութեան անապականաբար, ի ձեռն Տեառն Ներսէսի, որ ի Դուին հաւաքեալք ընդ ձեռամբ նորա, եւ ջատագով լինել իմոյ անարժանութեանս, առ ի խնդրել զվրէժ պարտուց հատուցման երկաբնակ խոստովանութեանն Եզրի, որ քաղկեդոնական ախտիւն զմայլեալ կործանեցաւ յուղղափառ հաւատոյ սուրբ ժողովոյն Դունի, եւ վասն աթոռընկալ տէրութեան իւրոյ հրապուրեաց զբազումս զկնի իւր։ Եւ ա՛ռ զաթոռ տէրութեան իւրոյ ի ժողովոյն Կարնոյ, ի թագաւորէն Հերակղէ, որ տիրելով թագաւորեաց Հայոց եւ Հոռոմոց· վասն զի սպան զԽոսրով արքայն Պարսից եւ եբարձ զթագաւորութիւն նորա, քանզի ցայն վայր հնազանդեալ էին Հայք ընդ ձեռամբ Խոսրովու արքային Պարսից։

Իսկ նորա հաստատեալ զաթոռ հայրապետութեան Եզրի զՀայք քաղկեդոնիկ արար, վասն զի կաթուղիկոսք յԵզրէ նստեալք մինչեւ ցայժմ, նոյն խոստովանութեամբ Քաղկեդոնի վարեալ լինէին առ ի յաստեացս, որ էր չար պատառումն հերձուածոց, զորս ոչ ընդունի սուրբ եկեղեցի, այլ նզովելով արտաքս մերժէ զչփոթ եւ զերկաբնակ հաւատ նոցա։ Վասն որոյ հրամայեցաք ժողով լինել ի քակումն եւ ի խլումն աղանդոյն Քաղկեդոնի եւ Եզրի, եւ ի նորոգումն հաստատման սուրբ ժողովոյն Դունայ, որ աւանդեցաւ մեզ սուրբ եւ ճշմարիտ

հաւատ ի ձեռն սուրբ խոստովանողացն Քրիստոսի Աստուծոյ մերոյ։

Արդ՝ շնորհիւ կամաց բարձրելոյն եւ ամենաջողակ սիրոյ Հոգւոյն սրբոյ շնորհեցաւ ինձ Յովհաննէսի կաթուղիկոսի առնել է րորդ ժողով ի Մանազկերտ գեաւղ ի սահմանագլուխ վիճակին Հարքայ՝ բազմաւրեայ ժամանակաւ միատեղայք համաժողովք։ Այս եղեւ ի ՃՀԸ Թուականիս հայոց. յ է Տրէ ամսոյ, որոյ ժողովեալ ի մի վայր յԱպահունեաց գաւառ ի գեղն Մանազկերտ, ամենայն եպիսկոպոսաց համաբնակ խոստովանութեամբ աշխարհիս Հայոց, եւ առաջնորդութեամբ քաջին եւ իմաստասիրի առն փիլիսոփայի Գրիգորիսի Արշարունեաց քորեպիսկոպոսի, ժողովեալ Քրիստոսասէր տեարք եպիսկոպոսք, որք են այսոքիկ։ Աղբէոս Հարքայ, Թադէոս Ոստան, Սահակ Մամիկոնենից, Յեսու Բասենոյ, Սարգիս Տայոց, Թէոդորոս Բզնունեաց, (Գրիգորէս քորեպիկոպոս Արշարունեաց), հանդերձ ամենայն եպիսկոպոսաւք Հայոց, քահանայք եւ սարկաւագունք, եւ ուխտի մանկունք սուրբ եկեղեցւոյ, որք աւգնականութեամբ Հոգւոյն սրբոյ, ի մի վայր գումարեալք, հաստատելով զհաւատս ուղղութեան տնաւրինական Բանին Աստուծոյ։

Եկին ընդ մեզ դարձեալ արք ոմանք եպիսկոպոսք Զ ի Յակոբիկ տանէ, վասն միաբանութեան խոստովանութեան ընդ մեզ լինելոյ, որոց անուանքն են այսոքիկ. Առաջինն Կոստանդին եպիսկոպոս, Երկրորդն Բասիլ Մետրապաւլիտ Ուռհայ քաղաքի, Երրորդն Շմաւոն Խառանու եպիսկոպոս, չորրորդն Թէոդոս Գարդմանից եպիսկոպոս, հինգերորդն Տէր Աթանաս Նփրկերտոյ եպիսկոպոս, վեցերորդն Թէոդորոս



Ամասիա(*) եպիսկոպոս։ Սոքա ամենեքին հրամանաւ արքեպիսկոպոսին Անտիոքայ եկաւորեալ եղեն առ մեզ ի միաբանեալ ժողովն, եւ միաբանեալք ընդ միմեանս հաւատով զմիութիւն խոստովանելով, կարգեցաք ճառս բազումս հակառակ երկաբնակացն Քաղկեդոնի, եւ խլեցաք զորոմն ապականութեան, որ սփռեալ էր յԵգրայ ցայս վայր տարածեալ, վասն որոյ բազումք կործանեցան յերկաբնակ հաւատն, եւ մերժեցաք զախտ ժողովոյն Քաղկեդոնի, եւ որք անկեալն էին ընդ խոստովանութեամբ նոցա, զայնս եւս յուղղութիւն ածելով, շինելով յայսմհետէ եւ յաւիտեանս ժամանակաց, զի այլ մի եւս կարասցեն հակառակել խախտել զուղղութեան զիր խոստովանութեանն որ ի Քրիստոս։

Վասն զի խոստովանիմք մի բնութիւն Բանին եւ մարմնոյն, Աստուած կատարեալ եւ մարդ կատարեալ, եւ միաւորեալ անբաժանաբար յստակ միացեալ բնութեամբ եւ անշփոթ միութեամբ, անսկզբանն ընդ սկզբանն, Բանն ընդ մարմինն, ըստ այնմ եթէ՝ Ի սկզբանէ էր Բանն, եւ Բանն էր առ Աստուած. եւ Աստուած էր Բանն։ Բանն մարմին եղեւ, եւ բնակեաց ի մեզ, եւ ինքն Որդին ասէ, Ոչ ոք ել յերկինս, եթէ ոչ որ էջն յերկնից որդին մարդոյ որ էն յերկինս։ Եւ Լուսաւորիչն մեր մեկնէ ասելով. Տեսանեմ իջեալն յերկիրս, եւ էն յերկինս, ա՛յս է առ ի զմարդն աստուածացուցանելոյ, զոր եւ ասէ իսկ դարձեալ, թէ՝ Տեսանիցէք զՈրդի մարդոյ զի ելանիցէ, ուր էր զառաջինն, այսինքն զմարդն աստուածացուցանել կոչէ, եւ մի բնութեամբ հանգոյն Հաւր, ի ծոց էութեանն գե-

------

(*) Այսպէս յօր.

րագանցէ զմարդկային բնութիւնս։ Ահա ճշմարիտ մի բնութիւն աստուածութեան եւ մարդկութեանն, զոր եւ ասէ Յովհաննէս. եթէ՝ զԱստուած ոչ ոք ետես երբեք, բայց Միածին Որդին՝ որ ի ծոց Հաւր, նա պատմեաց մեզ։ Այս է ելանելն ուր էր զառաջինն, եւ յառաջ քան զարեւ անուն նորա. վասն զի արգանդ եւ ծոց ասի ինքնին էութիւն Հաւր, զոր եւ Տէր, Աստուածորդին մեկնեալ ուսուցանէ մեզ, վասն երկուց բնութեանց միաւորութեան, որով յոյժ վստահացեալ առաւելապէս խոստովանիմք՝ անորոշաբար միութիւն աստուածութեանն եւ մարդկութեանն ըստ վարդապետութեանն իւրում։ Իսկ Աստուած Բանն յասելն՝ Ոչ ոք ել յերկինս եթէ ոչ որ էջն յերկնից որդի մարդոյ որ էն յերկինս, եւ Որպէս Մովսէս բարձրացոյց զաւձըն յանապատին, նոյնպէս բարձրանալ պարտ է որդւոյ մարդոյ. ահա որդին մարդոյ այս է. աղէ՛ նայեա թէ զի՞նչ մեկնեալ դաստիարակէ ի մեզ որդին մարդոյ։ Վերագոյն որդի մարդոյ ասէ, իսկ ի ներքսագոյն ճառեալ՝ Աստուած միացեալ ի մարմնի եւ որդի Աստուծոյ։ Քանզի ասէ թէ, Այնչափ սիրեաց Աստուած զաշխարհս մինչեւ զՈրդին իւր Միածին ետ. ահա մեկնեաց զորդին մարդոյ՝ Որդի Աստուծոյ, որ է մարդ եւ Աստուած ճշմարիտ, մի բնութեամբ, եւ՝ Որ հաւատայ ի նա՝ ընդունի զկեանսն յաւիտենից։

Արդ՝ աղէ՛ նայեա՛ եւ միտ դիր, վերագոյնն ասէ, Ոչ ոք ել յերկինս՝ եթէ ոչ որ էջն յերկնից որդին մարդոյ որ էն յերկինս, եւ ի բացուստ ի ներքսագոյն ասէ՝ տեսանիցէք զորդի մարդոյ զի ելանիցէ, ուր էր զառաջինն։ Ահա ամփոփեաց միացոյց զԱստուածութիւնն եւ զմարդկութիւնն, եւ ընկղմեաց զմերայինս, խառնեաց յիւր Աստուածութիւնն, վասն զի անքակեցաւ ի մարմնի բնութեամբ եւ մեկնեալ պարզեաց ի մեզ զյստակութիւն միացեալ բնութեանն։ Քանզի միութեամբ աստուածացոյց յասելն այսպէս, եթէ Հոգին է կենդանարար, մարմին ինչ ոչ աւգնէ. եւ դարձեալ թէ՝ Բանն զոր խաւսեցայ ընդ ձեզ հոգի է եւ կեանք. եւ այլ վերագոյն ասէ. Հոգի է Աստուած, եւ երկրպագուաց նորա պարտ է հոգւով եւ ճշմարտութեամբ երկիր պագանել։ Ահաւասիկ բան, եւ հոգի, եւ կեանք, եւ մարդ, եւ որդի մարդոյ միացեալ՝ Աստուած ճշմարիտ ուսուցանելով մեզ։ Քանզի ասէ դարձեալ, եթէ՝ Ոչ կարէ որդի մարդոյ առնել յանձնէ եւ ոչինչ, եթէ ոչ տեսանիցէ զՀայրն զի առնէ, զի զոր նայն առնէ, զնոյն եւ Որդի նմին նման գործէ։ Եւ դարձեալ թէ՝ Որպէս Հայր յարուցանէ զմեռեալս եւ կենդանի առնէ, նոյնպէս եւ Որդին զորս կամի կենդանի առնէ. եւ Որ զբանն իմ լսէ եւ հաւատայ այնմ որ առաքեաց զիս, եւ որ ի կարգին է։ Եւ դարձեալ թէ, արդարեւ ասեմ ձեզ, զի գայ ժամանակ եւ արդէն իսկ է, յորժամ մեռեալք լուիցեն ձայնի Որդւոյն Աստուծոյ, եւ որ ի կարգին է, եւ որոչէ ի կողմանս երկուս, յարութիւն կենաց եւ տանջանս դատաստանի։



Ահա պատշաճապէս դաստիարակեալ ճշմարտեաց զմիութիւն բնութեանցն, ասելով որդի մարդոյ վերագոյնն, եւ ընդ Հաւր համեմատեալ միաւորէ յասելն, Տեսանիցէ զՀայրն զի առնէ եւ ի ներքսագոյն դարձեալ թէ՝ Յորժամ մեռեալք լուիցեն ձայնի Որդւոյն Աստուածոյ, մեկնեաց ճշմարիտ զորդի մարդոյ, Որդի Աստուծոյ կատարեալ։ Եւ դարձեալ անդրէն վերստին հաստատեաց միա-

ւորելով զաստուածութիւնն եւ զմարդկութիւնն. քանզի ասաց դարձեալ, թէ՝ Որդի մարդոյ է, ընդ այն զի՞ զարմանայք։ Ասաց եթէ Որդի Աստուծոյ է եւ Աստուած բովանդակ եւ ամենայնի ստացող եւ արարիչ, քանզի ինքն իսկ ասաց եթէ՝ Ես եմ յարութիւն եւ կեանք. եւ Յովհաննէս ասէ, թէ՝ Սա՛ է Աստուած ճշմարիտ եւ կեանք յաւիտենականք։ Եւ ի կաթուղիկէական ի Յուդայեան թղթին ասէ. Միայն Աստուծոյ եւ Տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի վայելէ փառք յաւիտեանս ամէն։ Եւ Պաւղոս ի Գաղատացւոց թղթին ասէ ի սկզբանն թէ՝ Պաւղոս՝ առաքեալ ոչ ի մարդկանէ, եւ ոչ ի ձեռն մարդոյ, այլ ի ձեռն Յիսուսի Քրիստոսի, եւ ի ներքսագոյն ասէ, Ցուցանեմ ձեզ եղբարք զաւետարանն, զի ես ոչ ի մարդոյ առի եւ ոչ ուսայ յումեքէ, այլ ի Քրիստոսէ Յիսուսէ. եւ ի Հռովմայական թղթին ասէ, Ըստ մարմնոյ՝ որ է ի վերայ ամենայնի Աստուած աւրհնեալ յաւիտեանս։

Այս է ճշմարիտ միութիւն Աստուածութեան եւ մարդկութեան անբաժանաբար, եւ ոչ երկուութիւն բաժանաբար հակառակ միմեանց, որոշելով զախտականն յանախտականէն՝ ըստ անջատման ի միմեանց չար աղանդոյն Քաղկեդոնի, որ զԵրրորդութիւնն դաւանեալ չորրորդութիւն խոստովանին ըստ անիծեալ տումարին Լեւոնի, եւ Բ բնութիւնս խոստովանեալ ասեն, ա՛յլ որ յԱստուծոյ, եւ ա՛յլ որ ի Մարիամայ, ա՛յլ աստուածութիւնն, եւ ա՛յլ մարդկութիւնն, յատուկք եւ զանազանք ի միմեանց։ Վասն որոյ նզովեալ խոստովանութիւնն ինքեամբք հանդերձ։

Իսկ մեք խոստովանիմք զմարմինն զախտական եւ զցանկական զմեռոտ եւ զմաշական բնութիւնս մեր, խառնեալ զանախտականն ընդ ախտա-



կանիս եւ արարեալ անախտական, անմեռն ընդ մեռոտս եւ արարեալ զմեռոտն՝ անմեռ. միաւորեալ Աստուած Բանն ընդ մարդկութեանս անախտաբար, եւ անորիշ՝ միշտ Աստուած եւ մարդ, եւ ոչ երկուութիւն, այլ միութիւն հանապազորդ։ Այսպէս գրաւեալք եղիցուք խոստովանութեամբ, եւ կարգեալ դիցուք ճառս յաճախս եւ առաւելս ըստ կարգի խոստովանութեանս մերում, զոր ես Յովհաննէս Հայոց հայրապետս կարգեցի ձեզ կէտ սահմանադրութեան, միութիւն խոստովանելով աստուածութեանն եւ մարդկութեանն անապականաբար, վասն որոյ բարիընկալ հաճութեամբ զայս խոստովանութիւն ընկալեալ հաճեցան հայրապետքըն Ասորոց, եւ ընկալեալ ողջոյն գնացին խաղաղութեամբ յաշխարհն իւրեանց, փառաւորելով զԱստուած յաւիտեանս, ամէն։

Արդ կէտ եղեալ սահման կարգեսցուք մերովք հաւատովքս, սկիզբն առեալ քակելով զապականութիւն խորհրդոյ բնութեանց, որով փրկագործութիւնս կատարի, այսինքն է մարմնոյ եւ արեան Տեառն, եւ քակեսցուք այսպէս զապականացուն յանապականէն, զխմոր եւ զջուր յայսմհետէ արտաքս ընկեսցուք ի սուրբ եւ ի կենսատու խորհրդոյն, զի մի յայս նայելով առաջնորդացն, որք գայցեն զկնի մեր, դարձեալ ապականութեամբքն խոտորեսցին անկանել յերկաբնակն Քաղկեդոնի, եւ այսու խոտորեցուսցեն զվիճակս Հայոց, որպէս երբեմն ի ձեռն Եզրի սփռեալ տարածեցաւ, զոր Տէր հրամայեաց մեզ քակել զորոմն բարկութեան նորին։

Զոր ի սաստկանալ ամբարշտութեան հերձուածոյն, որ յԵզրէ տարածեցաւ ընդ բոլոր աշխարհս Հայոց արուեստ կործանման աղանդոյն նորա, զխմոր եւ զջուր յաստուածային խորհրդոյն ո-

րոշեսցուք, զպատճառս ապականութեան մարմնոյն Քրիստոսի եւ զանջատման ի Բանէն Աստուծոյ· լիցուք վրիժառուք յաստուածային պէտս յանապականութեան։ Յայսմհետէ կէտ եղեալ մի ոք իշխեսցէ խառնել խմոր եւ ջուր յանապական խորհուրդ մարմնոյ եւ արեան Տեառն· զի նոյն ինքն անապական հացիւն ամրացեալ լինի Սուրբ Խորհուրդն, զի մի եւս բազմացեալ լիցի աղանդ երկաբնակ խոստովանութեանն։

Աստանօր ծածկեալ կորուսցուք անյիշատակ զխմոր եւ զջուր բառնալով յաշխարհէս Հայոց, զի թերեւս կործանեսցի աղանդ ապականութեան հերձուածոյն Քաղկեդոնի, եւ անապականութեամբ կատարեսցի Սուրբ Խորհուրդն Տէրունական։

Այս կանոն եւ գիր եղիցի խոստովանութեան հաւատոյս մերոյ, եւ այս եղիցի աւանդ ամենեցուն մեզ Հայաստանեայցս։ Եթէ եպիսկոպոս, կամ երէց կամ կրօնաւոր, խմորով խորհուրդ կատարեսցէ, այնպիսին ի մեզէ նզովս ընկալցի, եւ կրեսցէ պատուհաս սաստիկ եւ անհնարին։

Արդ զայս հնարեսցուք հիմն եւ պարիսպ ամրութեան ընդդէմ հերձուածոյն Քաղկեդոնի։

Իսկ այժմ կէտ եղեալ ի բաց խզեսցուք ըզխորհուրդ երկաբնակացն, որք ապականեալ գոլ ասեն զանապական մարմինն տէրունական։ Եւ արդ անապական հացիւն հրամայեմք կատարել զփրկագործ մեղսաքաւիչ խորհուրդն, եւ հիմն արկեալ ճառս յօրինեսցուք, եւ հնարեսցուք վկայս հաստապատճառս եւ բազմաբանս, ընտիր բաղդատութեամբ, եւ մարգարէափակ ամրապնդեալ գրեսցուք պատճէնս հաւատոյ յաւանդութիւն խոստովանութեան վիճակիս մերոյ, եւ ծածկեալ ի բաց կորուսցուք զբնութիւն խառնուածոյն ապականու-



թեանց, եւ ճառաբանեալ անապականաբար խօսեսցուք ընդդէմ այնոցիկ, առ ի մոռանալ զխառնումն ապականութեան, անյիշատակաբար որոշեալ, եւ սեպհականեսցի կրօնս Հայոց, եւ կործանեսցի չար աղանդն նոցա։

Նաեւ զՊահս Առաջաւորացն ի սուրբ Պահս Քառասնորդացն կարգեսցուք, եւ զՇաբաթ եւ ըզԿիւրակէ Քառասնորդաց Պահոցն ի պայծառութիւն ուրախութեան կարգեսցուք, ի ճաշակումն պարարտութեան կերակրոց որովայնամոլից արտաքնոցն եւ նոցին նմանիցն, եւ ոչ կարգեալ ուխտաւորաց եկեղեցւոյ։

Զի թէպէտեւ ցայս վայր ծոմացեալ միապէս յարաձգաբար ասի աւարտումն Սուրբ Պահոցն, զոր հաստատեալ եղեալ Սուրբ Առաքելոցն յոբելինիւ հիմնացուցեալ, ՅԺԸ Հարցն, աւուրս ԽԹ օր պահոցն· սակայն յաճախեալ քաղկեդոնական աղանդն այսպէս հնարեսցուք, կապեալ կնքեսցուք զառաջաւորս պահոցն, Ե օրեայ աւուրբք ընդ պահս Սուրբ Պասեքին, անբաժանելի եւ անորիշ յօրինելով, ցանկ հաստատելով, եւ խորահիմն, հաստայատակ, լայնապարիսպ ամրափակեալ քառասնօրեայ պահօք, Ե աւրեայ առաջաւորաւքն։ Եւ զշաբաթ, եւ զկիրակէ որոշեսցուք յուրախութիւն ճաշակման զաւշոտացն, զի թերեւս հնարեսցին ի հնազանդութիւն խոստովանութեան մերոյ, զի այսու ածցուք զբռամբ զարտաքինսն եւ զանհաւան ազգս մեր։

Դարձեալ յաւրինաւոր սուրբ Զատկին ի մեծի Հինգշաբաթոջն, ո՛չ հրամայեմք հաղորդել ժողովրդեան մարմնոյն եւ արեան Տեառն, զի մի քաղկեդոնական ախտիւն շաղախեալ կործանեսցին յուղիղ հաւատոց անտի, զի պէս պէս ախտիւք խայծեալք յայսոյն չարէ, եւ մի՛ անմաքրապէս հպեալք

մերձեցին ի մարմինն Տեառն, ոչ խոստովանեալք գյանցանս անձանց իւրեանց, երախայապէս առեալ զմարմին որդւոյն Աստուծոյ հաղորդիցին անմաքուր, սատանայապատիր եւ որովայնամոլ ըստ քաղկեդոնական հաւատոյ, որք ասեն, սուրբ մարմինն մերձենալով ի շրթունս մեր, մերժէ զանաւրէնութիւնս մեր։ Եւ մանաւանդ զճաշակումն կերակրոց անխտրապէս զկնի հաղորդելոյ նոցա ի մարմնոյ եւ յարենէ Տեառն, եւ ապականեցին զըլխովին զամենայն պահս քառասնորդացն։ Եւ դարձեալ զի մի խափան լիցի ազատութեան Զատկին, այսինքն աւր աւետաբեր յարութեանն, յորում պատմի զենումն գառինն անարատի եռաւրեայ յարութեամբն, զի ի մեծ հինգշաբաթին նուիրի մարմին եւ արիւն Որդւոյն Աստուծոյ մեզ ի փրկագործութիւն, եւ տպաւորէ զպատկեր հացին ինքեամբ, եւ անուանէ զնա հաց կենաց, եւ կոչէ մարմին իւր եւ արիւն, եւ իւր ընտրելոցն տայ զինքն կերակուր, եւ աշակերտաւքն մեզ պատմիչ լինի, եւ առ յապա աւրինակ, եւ հնոյն կատարումն, եւ նորոյս սկիզբն, պատուիրէ երկոտասանիցն ասելով. զա՛յս արարէք առ իմոյ յիշատակի. եւ յաւրհնելն ճաշակէ ինքն Աստուածորդին, եւ ինքեամբ կերակրէ զերջանիկ աշակերտսն, եւ մատնչին առեալ արտաքս ելանէ։

Ի դարձողաց հաւատացեալ ժողովրդոց, որ ի Տէր Յիսուս Քրիստոս, ոչ հպեալ յայս խորհուրդ կենաց առ ի ճաշակել, եւ ո՛չ ի լուր պատմութեան երախայիցն խորհրդոյ ուրուք ի գռեհականացն հասեալ եւ հասու եղեալ այսմ խորհրդոյ մեծի Զատկին։ Յայս աւրինակ եւ մեք տրոհեալ որոշեմք զժողովուրդն ի սուրբ խորհրդոյ մեծի հինգշաբաթին, զի թէպէտ եւ փրկագործութեան կատարի



խորհուրդն, այլ ազատութիւն երախայիցն չեւ եւս է կատարեալ. բայց ի թարգմանութեան նստելով քահանայիցն պատմիչ լինելով ժողովրդեանն, եւ հրաւիրելոցն զազատութիւն խոստանալով, իբրեւ Աստուածորդին իւրայոցն, նոյնպէս եւ քահանայն իւրոյ հաւտին։ Եւ դարձեալ եւս, զի թիւ պահոց պասեքին չեւ եւս կատարեալ, եւ լուծումն ազատութեան չեւ եւս եղեալ է ի ծառայութենէ մեղսածին ախտիցն, յորում լինի թողութիւն ծառայից, գեւղից եւ պարտուց, զի Տէր մեր Յիսուս Քրիստոս չեւ եւս խաչեալ եւ զմահ լուծեալ եւ անարգեալ, եւ ոչ ի գերեզմանի եդեալ, եւ ոչ եռաւրեայ զյարութիւնն ի մեզ ցուցեալ, եւ ոչ զաւետիս յարութեանն ընկալեալ ուրուք յումեքէ. զայս ամենայն ի հինգշաբաթոջն. ոչ գտանեմք այսպէս եղեալ, այլ ասեմք ի Տեառնէ պատմիչ լինելով դեռ զկնի այնր ամենայնիւ, եւ ի հին Զատկին զփրկագործ խորհուրդն կատարեմք, եւ մեք Քրիստոսի մարմնովն սպասաւորեալք յաւրինակ Տեառն մերոյ Փրկչին իւրով աշակերտաւքն, որպէս եւ այժմ վերադիտողին միայն հրամայեմք քահանայիւք հաղորդել ահաւոր խորհրդոյն եւ զգռեհիկսն արտաքս ելանել։

Նա եւ ոչ զոք ի դպրաց կամ ի մանկանց ուսումնասիրաց հրամայեմք կալ յեկեղեցւոջ սակս վկայութիւն տալոյ, զի զատեալ որոշեսցուք ամենայն կարգաւք յերկաբնակ աղանդոյն Քաղկեդոնի։ Քանզի նոքա անխտրապէս եւ անխոստովանաբար ոչ լեալ մաքուր, մերձենան յահաւոր խորհուրդն, իբրեւ ոչինչ համարելով, համարձակութիւն ետուն եւ մերոյ վիճակիս յոր սոսկալի եւ ահաւոր է մատչել երախայից, զի այսպէսն ոչ է բաժակ անմահութեան, այլ բաժակ այրման։ Իսկ մեք նախ

քան զսոսկալի խորհուրդն, երախայիցն պարգեւս շնորհեմք, եւ զազատութիւն խոստանամք, մուծանեմք ընդ դուռն արքունական պողոտային, եւ հրաւիրեմք յառագաստն լուսոյ ասելով, Այս դուռն Տեառն է, եւ արդարք մտանեն ընդ սա· եւ յայնմ աւուր խորհրդոյ մարմնոյ արեան Տեառն սքողեալ պատրուակեմք զնոսա, եւ զերախայս զգուշացուցանեմք հրաժարելով ի նոցանէ, եւ ի խոստովանութիւն ուղղութեանց մերոց վերաբերիլ վարժեմք, եւ զերախայս եւ զպասքեալ սիրտս նոցա զովացուցեալ սփոփեմք· եւ նուիրեալ հրաւիրեմք զնոսա յուրախութեանն աւր աւետեաց, եւ զազատութիւն կենացն անվախճանից, որ է նոր արքայութեան սկիզբն, եւ տեսչութիւն էական փառացն եւ նկարագիր լուսոյն յաւիտենից, յորում ազատեալքն փրկագործեալ ցնծան։ Անդանաւր աւարտումըն յոբեղինին, եւ ազատութիւն ծառայից, գիւղից, եւ պարտուց· իսկ աստ ազատութիւն երախայից, մերձումն ի սուրբ առագաստ, եւ հաղորդել ճաշակման ահաւոր խորհրդոյն, եւ բազմել յերկնաւոր փեսային հարսանիսն, եւ երանաւետեալք ի փառս Աստուծոյ։

Արդ՝ այս աւուր յարութեան ճաշակի զառն զենեալ, որ է նոր զատիկ աւետեաց յարութեան համասփռական, տիեզերատարած եւ լուսասփիւռ, հրեշտակաքարոզ եւ առաքելաբարբառ պատմի աւետաբեր երրաւրեայ յարութիւնն։ Աստանաւր արձակումն կապելոց ոգւոց ի յանդընդական բանդէն, եւ ուրախացեալք անմահական ճաշակաւն հոգեւոր կերակրոց հանդերձ մարմնովն, Տէր մեր Յիսուս Քրիստոս ինքեամբ ճաշակէ զմաքրեալսն՝ հանդիպմամբ ի մարմնի· եւ արբեալք լինէին յուրախութեան լուսոյ անմահ բաժակին եւ լցեալ լինէին



անսպառ փառաւք կենաց անմահ անեղին, զի ի հանդէպ արարչին սուրբ ոգւոցն, որք յԱդամայն ի փառս Աստուածորդւոյն ճաշակեալք լինէին, եւ անգրաւական կենացն հանդիպեալք մնային, դասագրեալք ընդ անմարմնոցն երամս, եւ ազատեալք ի վերինն Երուսաղէմ։ Սոյնպէս եւ երախայիցն զայս աւրինակ դնելով, զի որպէս ոգւոցն հանդիպեալ մարմնացեալ Բանին անճառ փառաւքն ճաշակեալ եղեն եւ ազատեալք ի բանդէն կապանաց։

Ըստ նմին աւրինակի եւ երախայիցն յաւուր սուրբ յարութեանն, հանդէպ սուրբ աւետեաց հրեշտակին քարոզման եւ լուծման դառն դժոխոց, ի կապանաց լուծումն հրամայեմք, եւ ի Քրիստոս ճաշակումն հաղորդելոյ մարմնոյ եւ արեան փրկչին մերոյ· զի աստանաւր հանդիպելովն ի Քրիստոս բոլորովիմբ հոգիացեալ՝ ոչ եւս կոչին երախայք, այլ հոյլք աստուածաբոյլք, եւ տունկք աստուածածաղիկք, եւ ճրագունք յարալուցեալք, յորս Հոգին սուրբ հանապազ բուրէ ի նոսա։ Զի աստանաւր լուծումն երախայութեան, եւ մուծանիլ յերկնաւետեալ առագաստն, եւ երկնաւոր փեսային փեսաւէրք, իբր տղայացեալք արդարութեամբ ի կատարեալ գութ եկեալք։ Եւ մանկունք հարսանեաց լցեալք պայծառ խորհրդովք հոգիացեալք, եւ ի ճաշ մտեալ ընդ անմահ փեսային, ճաշակեն ի լուսոյ հարսանեացն, եւ լինին անմահացեալք· զի այսուհետեւ ոչ եւս երախայացեալք, այլ քրիստոսաւետեալք, եւ աստուածաբարբառ կրթեալք յաւետաբեր քարոզութիւնն՝ աւրհնել զեկեալ փեսայն, եւ առագաստի երգել երգս, եւ յերգելն, աղաղակելըն է ա՛յս· Աւրհնեալ որ եկիր յանուն Տեառն, աւրհնեալ որ գալոցդ ես, եւ Այսաւր է զոր արար Տէր, եկայք ցնծասցուք եւ ուրախասցուք ի սմա,

զի եւ նոր արարած ի Քրիստոս կոչեցաւ։ Վասն այսորիկ ոչ հրամայեմք երախայացեալ ժողովրդոցըն յաւուր մեծի հինգշաբաթոջ հաղորդել մարմնոյ եւ արեան Որդւոյն Աստուծոյ, զի կարկեալ փակեսցի աղանդ երկաբնակացն, եւ կազմիչ հաղորդելոյ ի սուրբ խորհուրդն եղիցի յաւուր յարութեանն, եւ աւետիք հրեշտակին, եւ ընթացումն կանանցն ի ցնծութիւն։

Իսկ զնուիրական աւուրսն ի սուրբ քառասնորդսն կատարեալ յօբեղինին, այսինքն զշաբաթ եւ զկիրակէ, յուրախութիւն պայծառութեան ի կրթոց կերակուրս հրամայեմք լուծանել զաւշոտացն եւ որովայնամոլիցն, եւ այդու ընդդէմ հերձուածողացն ցանկս պարսպեմք եւ չրջափակեմք զպարսպեալ առագաստն, զի մի սպրդեալ մուծցի ի ներքս չար աղանդն հերձուածոյն Քաղկեդոնի, որ սփռեալ տարածեալ էր ընդ բոլոր Հայք, եւ կանոն կարգեմք այսպէս. Զձու եւ զձուկն եւ զձէթ եւ զթան եւ զեւղ եւ զպանիր եւ զգինի միաճաշակ կերակուր կարգեսցուք։ Արդ՝ եթէ ոք յայս աւրէ հետէ եւ առ յապա ժամանակ զայս ամենայն բաժանէ ի միմեանց, նզովեալ եղիցի։

Ահաւասիկ զայս գրեցաք կանոնս, ես Յովհաննէս Հայոց կաթուղիկոս(*), ամենայն եպիսկոպոսաւք եւ քահանայիւք, եւ ուխտի մանկամբք եկեղեցւոյ սրբոյ(*)։

Ո՛վ անհեթեթ զգայարան. այդ իսկ Նեստորի անիծելոյ աղանդն է, զի Բարսեղ Կեսարացին զձուկըն զազան ասէ, եւ առաքեալն վկայէ այլ մարմին է ձկանց։ Արդ առաքեալ մարմին ասէ, եւ հերձուածողն ջուր։ Արդ՝ ի՞ւ իցէ ջուր, զի կենդանի է, եւ

------

(*) 'Ի լուսանցսն.



ահա յաւդք եւ ոսկերք, սիրտ եւ աղիք եւ ամենայն որ ինչ կենդանւոյ է։ Ա՛ղէ քննեա՛ խորհրդիւ ի ձկունս եւ ի գազանս որ ի ցամաքի են, առիւծ, ինծ, արջ, վիշապ, որ է աւձ. գիրք ասեն սիկղ եւ հիդրայն՝ ծովայինք, սիկղն՝ չուն ասի երեքգլխի, եւ հիդրայն չար քան զնա, եւ զիւրեանց որդիսն ոչ ուտեն, իսկ ձուկն զմերձաւորս իւր ուտէ. եւ զի՞արդ իցէ ջուր։ Կան եւ հաւք ջրայինք եւ անասունք, եւ ո՛վ իցէ որ առանց ջրոյ սնանի։ Եկ առ ձէթ. գիրք զեւղ եւ զձէթ մի ասեն. Եսայի ասէ՝ Փայտ եւղոյն, եւ Դաւիթ՝ ծերութիւն իմ ի ձէթ պարարտութեան։ Ե՛րթ առ աւետարանագիրն որ ասէ վասն կուսանաց, թէ՝ Ձէթ ոչ առին, եւ դարձեալ թէ՝ Տո՛ւք մեզ յեւղոյդ ձերմէ, եւ ահա յայտ է թէ եւղ եւ ձէթ մի են։ Եւ Ադամ ոչ եթէ պանիր եկեր եւ ել ի դրախտէն։

Գիրք ասեն թէ՝ Արբեցողն չա՛ր է քան զդիւահար, եւ առաքեալ ասէ, Մի՛ արբենայք գինւով, յորում զեղխութիւն է։ Զի յորժամ կերակուր ուտեմք եւ լնումք, ի նմին կամք, իսկ իբրեւ գինւով լնումք, զայլ խորհուրդ խորհիմք։ Եւ եթէ ոք ըզկիրակէ իբրեւ զուրբաթ պահէ անհնարին մեղք են, եւ որք յուրբաթու եւ ի չորեքշաբաթոջ յիշատակ առնեն մարտիրոսաց՝ մեղք են։ Զի եթէ կարգ էր, ապա Զատիկ յուրբաթուն պարտ էր առնել, զի Քրիստոս Աստուած մեր յուրբաթուն խաչեցաւ եւ ընթերցուածք եւ սաղմոսք եւ աւետարանք՝ այն աւուրն չա՛տ են, եւ ամենայն մարդիկ յայնմ աւուր ազատեցան ի ծառայութենէ մեղաց. եւ դրախտն յայնմ աւուր բացաւ աւազակին, եւ ամենայն կարգ եկեղեցւոյ զայն ուրբաթ պահել հրամայեն, եւ զայլ ուրբաթսն ի Զատկէն մինչեւ ցՊենտեկոստն ուտել։ Եւ որ զծնունդն յառաջ քան զՅայտնութիւնն առ-

նեն, մեծ մեղք են· եւ յայտ յԱւետարանէ անտի է, որ ասէ· եւ Յիսուսի Քրիստոսի ծնունդն էր ա՛յսպէս· եւ ի սոյն դէմս աւրինակի փակեալ կայ գիր ընթերցուածովն, զորս կարգեալ են ուղղափառացն սրբոց: Մի՛տ դիր խոստովանութեանն՝ որ նախ քան զմեզ հայրապետք: Այս աւանդ կացցէ ի վիճակիս մերում, եւ այս մատենագիր եղիցի ամենայն Հայաստանեայց, որք ընդ ձեռամբ մերով հաւանեալ կան ի պահեստի:

Ահաւասիկ ես Յովհաննէս Հայոց կաթուղիկոս, գրեցի իմով ձեռամբ զայս կանոնս, հաստատութեամբ սուրբ հաւատոյ, յընդունելութիւն ուղղափառաց, ի պայծառութիւն ուղղակարգ եկեղեցւոյ, յընդունելութիւն հաւատացելոց, եւ ի գովութիւն բարեբանութեան համագոյ Երրորդութեանն՝ ամէն:

Դարձեալ հաստատութեամբ հիմնարկելով հրրաման տամ մեծի փիլիսոփայիս Արշարունեաց քորեպիսկոպոսի, զի զառաջաւորսն, ընդ սուրբ պահրս քառասնեկին, մեկնումն արասցէ, որ ախեալ կնքեսցաւ ի մէնջ Ե աւրեայ առաջաւոր պահոցն, եւ պասեքին Բ շաբաթս լուծեալ բարեկենդան կոչին, եւ անխտրաբար յամենայն կերակրոց: Արդ՝ ձեռնարկու լեր, սիրելիդ Աստուծոյ, քաջդ յիմաստակս, եւ նախընտիրդ ի վարդապետս Հայոց, կարկինդ Յունաց, եւ դադարեցուցիչդ աղանդոյն Քաղկեդոնի, եւ կորուսիչ ապականաբնակ հերձուածոյն Նեստորի անիծելոյ· բռնահարեա՛ զկամացն Աստուծոյ իբրեւ հանդիսի նահատակ, կոչեա՛ քեզ ի թիկունս աւգնականութեան զմարմնացեալն. ի մէնջ ճշմարիտ Աստուած Յիսուս Քրիստոս, առաջնորդ ունելով զՀայր արարիչ եւ անեղ անքնին յարարածոց, որպէս զի Հոգւովն սրբով, որ է ուղեկից, սկզբնեալ ընթերցուածոց մեկնումն արարեալ բանաստեղծես-



ցես, որպէս զի թարգմանեսցես զամենայն կարգ ընթերցարանիս մերոյ, մանաւանդ զխորհրդածութեան ընթերցուածսն չորից յարմարմանցն, որ զանց առնէ զպասեքին եւ սկզբնեալ առաջաւորաւըն հանդերձ:

Իսկ դու ինքնին աշխատելով մատենագրեսցես, եւ ի լուր ականջաց բերելով տգիտաց ծանուսցես զայս իր խորհրդոյ, որ զանազանեալ աստուածասքանչ խորհուրդ Տեառն բարձրելոյ· եւ ընդ միոյ սակաւուդ վարձս ընկալցիս յԱստուծոյ մերմէ, բիւրապատիկ հազարաւորեալ, բիւրաբաշխ եւ մշտալցոյց· եւ յանզրաւ ուրախութեան երախտաւորեալ, ծաղկաւէտ չահաւորեալ, փառաւք վայելելով բերկրեսջիր ի Քրիստոս Յիսուս, յահեղ փառաց յայտնութեան նորա, որում փառք յաւիտեանս ամէն:



## ՁԹ

## ՍՏԵՓԱՆՈՍԻ ՍԻՒՆԵԱՑ ԵՊԻՍԿՈՊՈՍԻ, ՄԵԾԻ ԻՄԱՍՏԱՍԻՐԻ, ՊԱՏԱՍԽԱՆԻ ԹՂԹՈՅՆ ԱՆՏԻՈՔՈՒ ԵՊԻՍԿՈՊՈՍԻ, ԶՈՐ ՎԱՍՆ ՀԱՒԱՏՈՅ ԳՐԵԱԼՆ ԷՐ

*Գերաբունւոյ, առաւել իմաստութեամբ Աստուածային գիտութեանն, որ իւրով աստուածային արարչական ողորմութեամբն զամենայն անձն կամի զի կեցցեն, եւ ի գիտութիւն ճշմարտութեան եկեսցեն։ Ուսեալ է ձեր ի Տեառնէ սիրել զՏէր եւ զընկերն իբրեւ զանձն, զոր մանաւանդ հոգ տարեալ էիք վասն Աբեթեան բնակչաց Հայաստան աշխարհիս, որ ի վերայ մեր եղեւ հեղումն արեան առաքելոցն Բարթողոմէոսի եւ Թադէոսի, որ վասն այսմ աշխարհի լուսաւորութեան աղաւթս արարին գալ ի հաւատս ճշմարիտս, որ եւ զնոյն Սուկաւեանքն, որ են վկայք Քրիստոսի երեք հարիւր եւ վաթսուն եւ հինգ, ամաւք յառաջ, ըստ Հոգւոյն սրբոյ ազդմանն ասէին· Աստուած տեսցէ իւր մշակ զաւրագոյն քան զմեզ, որպէս եղեւ իսկ։*

*Որպէս ի գալն Անակայ ի Հայք, աւթեւան եղեւ ի վկայարանի սրբոյ առաքելոյն Թադէոսի, եւ ի ննջելն ընդ կնոջն իւրում եղեւ ընծայումն յղութեան մերոյ Լուսաւորչին, եւ ըստ շնորհաց Հոգ-*

------

*Բնագիր Ա· էջ 323 - 334։ Հմմտ· եւ լրացում ԺԹ· էջ 673 - 675։ Ի· թղ· 250բ – 267ա։*



*ւոյն սրբոյ որդի սուրբ առաքելոյն Թադէոսի, եւ փոխանորդեաց զնորին առաքելական աթոռն երիցըս երանելին Գրիգորիոս, մեծն պարթեւ(ս) Պալհաւ՝ Արշակունի յազգէ, գերատեսակ փառաւք զարդարեալ, որ եւ եղեւ ծնաւղ մեր ըստ Աւետարանին եւ եբաց մեզ զդուռն լուսոյ ճշմարիտ Աստուածգիտութեան, որ եւ նորին ճգնողական աղաւթիւքն անարատ եւ ուղիղ մնաց հաւատս մեր, եւ ոչ ուստեք յաղթեաց բռնութիւն հերձուածողացն, ոչ հայրապետ ոք կարաց դնել նոր կարգ ինչ եւ ոչ թագաւոր, եւ ոչ յայլ ումեքէ լուաք աւտար ձայն ի սակաւ հաւտիկս եւ փոքր փարախիկս, անկոխելի եղեալ ի գայլոց ըստ երանելոյ Աստուածաբանի, զի մեք զոր ինչ լուաք եւ ուսաք ի մերոյ Լուսաւորչէն, զնոյն պահեցաք եւ պահեմք հաստատուն եւ ուղղափառ հաւատով, եւ այր զարամբ ելանելով ի յանձանց ոչինչ յաւելաք, զոր եւ լսեմք զձէնջ եթէ բազում ինչ ասէք զմէնջ ոչ լինել ի հաւատս ուղիղս։*

*Ըստ գրոց սակաւ բանիւք ցուցից քեզ ըստ գրեցելումն թէ իմաստնոյն մի բան բաւական է, եւ որ հակառակելն կամի մեք զԴաւթայն ածեմք ըզմտաւ թէ՝ Ի հակառակելն անզգամին լո՛ւռ եղէ, եւ՝ Ոչ բացցէ զբերան իւր։ Նա եւ առաջին սուրբ հաւատոյս մերոյ խոստովանութիւն, որ ի Հայր եւ յՈրդի եւ ի սուրբ Հոգին, ա՛յս է։*

*Խոստովանիմք զՀայր անսկիզբն եւ անժամանակ, եւ զՈրդին Բան եւ ծնունդ Հաւր անժամանակ եւ անսկիզբն ծնունդ· եւ զՀոգին սուրբ ելողութիւն ի Հաւրէ, եւ ընդ Հաւր անսկիզբն Երրեակ Միութիւն, թուով եւ անձամբ եւ անուամբ որիշ, իսկ աստուածութեամբ եւ փառաւք մի, հարթ հաւասար, անբարժանելի միութիւն, մինն ի յերիսն*

եւ երեքն ի մի Աստուածութիւն· եւ մինն ի յերիցըն Բանն Հաւր, որ յառաջ քան զյաւիտեանսն ծնեալն ի Հաւրէ, վասն հաշտեցուցանելոյ զարարածս ընդ Հաւր, իջեալ յերկնից աւետեաւք հրեշտակապետին, եկեալ ի սուրբ եւ յանարատ կոյսն՝ մարմնանայ ճշմարտապէս եւ եղանի Աստուած եւ մարդ, եւ որպէս էր ճշմարիտ Աստուած նոյնպէս եղեւ եւ ճշմարտապէս մարդ, մինն յերկուց բնութեանց՝ անշփոթ եւ անբարժանելի, թէպէտեւ մարմնացեալ, այլ ի Հաւրէ անմեկնելի, զամենայն մարդկային կիրս կրեալ բաց ի մեղաց, քաղցեալ, այլ զհինգ հազարսն կերակրեալ, այլ եւ յագեցուցիչ է տիեզերաց։ Ծարաւեալ, այլ ասէր· Եթէ ոք ծարաւի իցէ՝ եկեսցէ առ իս եւ արբցէ։ Վաստակեալ, այլ ասէ, Եկայք առ իս ամենայն աշխատեալք եւ բեռնաւորք· եւ ես հանգուցից զձեզ։

Եւ զի՞նչ ասացից· ընդ նմին զբարձրութիւն աստուածութեանն ախտակիր եղեալ անչարչարելի Աստուածութեամբն։ Չարչարեալ չարչարելի մարդկութեամբն, առեալ չարչարելի մարմին, եւ ի չարչարելոյն չարչարեալ անչարչարելին· ինքն չարչարելի, եւ ինքն անչարչարելի· զի իւր ինքեան էր մարմինն որ չարչարէր· եւ այսպէս բնութիւն աստուածութեանն անչարչարելի, բայց ինքն Աստուած միացեալ էր ընդ չարչարական մարմինն իւր, ոչ չարչարելի աստուածութիւնն, բայց չարչարակից լինի մարդկութեան եւ զչարչարանսն իւր համարի, եւ ինքն մնայ առանց չարչարանաց անմահ՝ զի ինքն է կենդանութիւն, եւ կենդանութիւն ոչ մեռանի ըստ Պետրոսի(1)· եթէ Քրիստոսի չարչարելն մարմնով։ Արդ ըստ այսմ բանի Յուդա՝

------

(1) Ընթ. Պաւղոսի։



աստուածավաճառ, եւ Հրեայք՝ աստուածասպանք, եւ խաչն՝ Աստուծոյ խաչ, եւ մեք՝ Աստուծոյ արեամբն փրկեալք։ Եւ առ սուրբ սեղանն զհացն եւ զբաժակն ճշմարտապէս խոստովանիմք մարմին եւ արիւն Որդւոյն Աստուծոյ։ Այսքան առ այս բաւական լիցի։

Դարձեալ ասէք եթէ զԱւետիսն ի մարտի ի քսան եւ հինգն ոչ կատարէք, եւ ոչ զԾնունդն ի դեկտեմբերի ի քսան եւ հինգն։ Աղաչեմ զի ուսուսցես մեզ, թէ յո՞ր գիրս կայ, յառաքելո՞ց, թէ յուղղափառ վարդապետա՞ց· կամ ո՞րով պատճառանաւք եղեալ էք զայդոսիկ յայդմ տեղւոջ։ Եթէ զԱրտեմոնին ասէք՝ ո՛չ ընդունիմք· զի մեք յԵրուսաղէմէ գիտեմք զսկիզբն հաւատոյ, եւ առաքեալքըն յԵրուսաղէմ կարգեցին զկանոնսն, եւ Յակոբոս Տեառն եղբայրն յԵրուսաղէմ կարգեաց զընթերցուածն, եւ Կիւրեղ հայրապետն զնոյն դաւանեաց։ Բայց որպէս ասացի ձեզ մտերմաբար սիրով, ցուցէ՛ք մեզ ի գրոց, եւ մի իշխանաբար հպարտութեամբ։ Այլ մեք ի ձեր գրոց գիտեմք զի զկնի ԼԳ ամաց վերանալոյն Քրիստոսի, ապա աշակերտեցաւ Արտեմոն Յովհաննու ամիսս եւթն, եւ ելեալ ի նմանէ նորաձեւ կարգս դնէր ընդ հակառակս ինչ Աւետարանչին։ Վասն որոյ եւ ասէր իսկ յիւրում առաքելական թղթին, թէ առ ի մէնջ ելին, այլ ոչ էին նոքա ի մէնջ, զի թէ ի մէնջ էին՝ առ մեզ էին մնացեալ։ Եւ դարձեալ թէ՝ Արդէն իսկ նեռինք բազումք եկեալ են· զայս զԱրտեմոնէ ասէր եւ զնորին նմանեաց։

Արդ միթէ կարէ՞ք ասել, եթէ Յակոբոս տգէտ էր ծննդեանն Քրիստոսի, որ առաջին եպիսկոպոս

*նա էր յԵրուսաղէմ, եւ ոչ մեկնէր ի տաճարէն, որոյ ծունկքն իբրեւ զուղտու էին խստացեալ յանդադար աղաւթիցն եւ ի տքնութենէն։ Եւ նա Տիբէթ ամսեանն՝ ի քսան եւ մինն տաւնէր, որ ըստ Հոռոմին ի յունուարի (ի) վեցն, եւ այլ առաքեալքըն ի նմանէ ուսեալք տաւնէին զաւր ծննդեանն եւ զմկրտութեանն ի միում աւուր, որ է վեց Յունուարի, որպէս եւ ի կանոնսն իւրեանց իսկ գրեալ կայ։ Եւ զի ինքն Յակոբոս ընդ Յովսեփայ էր ի մտանելն յաշխարհագիրն, եւ ինքն էր սպասաւոր ծննդեանն Քրիստոսի յայրին, որ եւ ընդ նմա իսկ փախչէր յԵգիպտոս, եւ ընդ նմա դառնայր, եւ ընդ նմին շրջէր զամենայն աւուրս որչափ եւ եկաց Փրկիչն յաշխարհի, եւ գիտէր ստուգապէս զաւրն եւ զամիս ծննդեան նորա, եւ զմկրտութեանն, եւ կարգէր եւ հաստատէր զընթերցուածն ի միում աւուր, եւ ինքն տաւնէր ի վեցն յունուարի։ Իսկ անիծեալն Արտեմոն, որ ոչ ծննդեանն էր սպասաւոր եւ ոչ մկրտութեանն եւ ոչ խաչելութեանն, եւ ոչ ինքն ծնեալ իսկ էր յայնմ ժամանակի, նա ո՞ւստի գիտէր զաւր ծննդեանն Տեառն կամ զմկըրտութեանն։*

*Արդ եթէ առաքելոցն հրամանաւ էր գրեալ, ցուցէք մեզ. եւ եթէ յանձնէ, ոչ ընդունիմք, զի ոչ է հաճոյ Աստուծոյ։ Զի՞նչ կարգ է այն զառաքելոցն եւ զՅակոբայն թողուլ, եւ զձերդ, որ յԱրտեմոնայ է սահմանեալ եւ յամպարշտէն Յուստիանոսէ՝ զայդ ընդունել, եւ զհաւատոյ հիմն, որ ի սրբոցն է հաստատեալ, զայն ընկեցիկ առնել։ Առ այսոքիկ դուք գիտասջիք։ Թէ Արտեմոն ընդունելի է, տաւն ընդէ՞ր ոչ կատարէք նմա՝ որպէս եւ Յակոբայ, եւ ընդէ՞ր զամենայն սրբոց անուանս դնեն քրիստոնեայք զաւակաց իւրեանց, բայց յաղագս նորա չա-*



*րափառութեանն՝ ոչ ոք Արտեմոն անուն դնէ որդւոյ իւրում. մանաւանդ զի ընդ հակառակս գնաց առաքելոյն Յակոբայ եւ աւետարանչին Յովհաննու։*

*Դարձեալ՝ յաւուրս մեծի Թագաւորին Կոստանդիանոսի նուազեցան հերձուածք յերկրէ, բայց յաւուրս որդւոյ նորա դարձեալ զօրացան, եւ ըսկսան արտեմոնականքն վերստին նորոգել զաղանդն իւրեանց, որպէս երանելին Կիւրեղ գրեալ է՝ թէ յայլ քաղաք ծնունդ առնեն։ Վասնզի երանելին Կիւրեղ յիւրում ժամանակին անշարժ պահեաց յԵրուսաղէմ զկարգն, զոր եդեալ էր Յակովբ եղբայր Տեառն։ Քանզի ոչ որպէս ոմանք կարծեն եթէ Կիւրեղ հաստատեաց զգիր ընթերցուածոցն, եւ ի նմանէ են սկզբմունք տաւնից, այլ անցեալ էին ժամանակ ի ծննդենէն Քրիստոսի մինչեւ ցԿիւրեղ ամք ՄԻԴ[?] այլ այնչափ ժամանակք առանց աստուածավայելուչ տօնից եւ յիշատակա՞ց էին եկեղեցիք, քաւ լիցի, ոչ այնպէս անարգէին եկեղեցիք. այլ նախ ի Յակովբայ եւ յայլ առաքելոցն կարգեցան. բայց Կիւրեղ զերեխայից ընթերցուածն զութուտասն մեկնութեամբ գրեաց եւ յաւելեաց։ Եւ զյիշատակս մարտիրոսաց զանազանեաց, այլ ոչ ի Կիւրեղ[է] էին սկզբմունք ընթերցուածոյս, եւ ոչ յՈրոգինէ, որպէս ոմանք կարծեն. այլ ի Յակովբայ եղբօր Տեառն։ Իսկ երանելին Կիւրեղ գտեալ հաստատուն զՅակովբայն, նորոգեաց յիւրում վիճակին, եւ Երուսաղէմացիքն անշարժ կացին մինչեւ յաւուրս Յուստիանոսի կայսեր, որպէս գրեալ է յԵրուսաղէմացւոց թղթին. զոր փոքր ի շատէ նշանակեսցուք մեք աստ, որ յԵրուսաղէմ բնակեալ եմք, զոր տեսաք զսքանչելիս պատմեմք ձեզ, որ ի Հայսդ էք։*

*Զի յերեք հարիւր եւ յերեսուն եւ չորս ամին,*

[ի] Թագաւորութեան Յուստիանոսի կայսերն, ըսկսաւ սատանայ մարտնչել ընդ ճշմարտութեան· փոփոխեցին զհաւատս եւ այլայլեցին զկարգ տօնիցն, զոր եդեալ էր Յակովբոս եղբայր Տեառն։ Քանզի մտեալ առաջի Թագաւորին հրէայ ոմն Հերետիկոս, գրգռէր զԹագաւորն վասն աւուրն Տեառնընդառաջին· Թէ չէ՛ պարտ Թոյլ տալ Երուսաղէմացւոցն, արտաքոյ եկեղեցական կարգի զօր ծնընդեանն եւ զքառասնորդացն կատարել, այլ որպէս ամենայն երկիրս Հ[ո]ռովմոց տօնէ, պարտ է եւ նոցա նոյնպէս կատարել։

Յայնժամ Թագաւորն ունկնդիր եղեւ նմա, վաղվաղակի գրեաց Թագաւորասաստ հրամանաւ Թուղթ յԵրուսաղէմ, առ Յոստոս հայրապետ քաղաքին, եւ առ կղերիկոս եկեղեցւոյն, եթէ զՏեառնընդառաջն ըստ ծնընդեանն արարէք ի Փետրուարի ամսոյ յերկուսն, եւ մի՛ ըստ յայտնութեան ի ԺԴ։

Յայնժամ հայրապետ քաղաքին հանդերձ քահանայիւքն եւ ժողովրդովքն գոչէին առ Աստուած· եւ յանկարծակի նշան յերկնից երեւեալ առաջի զօրականաց Թագաւորին, եւ ի սիւնն որ ի սուրբն Սիովն, ուր բազմութիւնք էին ժողովեալ, ջուր սաստիկ բղխեալ առ ի յանդիմանել զհրամանս անօրէն Թագաւորին· եւ ամենեցուն տեսեալ՝ փառաւոր առնէին զԱստուած։ Այս առ Յոստոսիւ հայրապետիւ եղեւ։

Ապա դարձեալ առ Մակարու հայրապետիւ՝ ի միւս ամին զօրս սաստիկս առաքեաց Թագաւորն առ ի կատարել զչար խորհուրդս իւր, եւ սատակել հրամայէր զայնոսիկ, որք ոչ հնազանդէին հրամանաց նորա։

Յայնժամ միաբանեալ բազմութիւն քաղաքին, (եւ) հոգւով սրբով ետուն ի մահ զանձինս, եւ զօրա-



ցըն կամեցեալ կատարել զհրամանս Թագաւորին արկանել ի սուր զքաղաքն, եւ յանդէն յանկարծակի երեւեալ ահեղակերպ եւ հրաշալի նշան։ Սուրբ կոյսն Մարիամ երեւեալ, ունելով ի գիրկս իւր զմանուկն Յիսուս, տպաւորեցաւ ի նմին սեանն ուստի ջուրն բղխեաց, եւ ի վերայ աջոյ ձեռին իւրոյ ունէր խաչ մի ծիրանաթեւ։ Եւ տեսին առհասարակ արդարք եւ մեղաւորք, եւ բժշկեցան բազում ախտաժէտք։

Բայց առաջին նշան սքանչելեացն ի վերայ Հայոց է երեւեալ։ Կին մի անդամալոյծ ի Մոկաց երկրէն Սողոմի անուն, քսանեւչորս ամ էր զի կարկամեալ կեար, եւ ի լինել հրաշիցն նախ նա առաջի բազմութեան յարուցեալ գնայր, եւ կաքաւէր ոտիւքն եւ աւրհնէր զԱստուած։ Եւ զօրացն տեսեալ սքանչացան, եւ դարձան անդրէն եւ պատմեցին Թագաւորին զեղեալ սքանչելիսն Աստուծոյ։

Եւ լուեալ Թագաւորին լռեաց ի չար խորհրդոցն· եւ ի միւսում ամին սուրբն Սիմէովն երեւեցաւ ի նմին սեանն, ունելով զՅիսուս ի գիրկն, ի Փետրուարի ԺԴ։ Զայս յԵրուսաղէմացւոց Թղթին գտաք։ Այս ամենայն եղեւ ի ժամանակս Յուստիանոսի, որ էր յետոյ ուղղափառ Թագաւորացն՝ Զենոնի եւ Անաստասայ։

Դարձեալ Կիւրեղ Երուսաղեմացի տրտունջ բառնայ եւ ասէ· Թէ յայլ քաղաքս ծնունդ առնեն· յայտ առնէ եթէ Երուսաղեմացիքն յայսմ կարգի էին, որ Յակոբայ առաքելոյ էր եդեալ, եւ զայս ասէր Կիւրեղ զգուշացուցանելով, այլ ինքն ոչ ընկալաւ։ Եւ եթէ ծնունդն յայնմ աւուր էր, նա զիարդ իշխէր զԴաւթի եւ զՅակովբայ տաւնն կատարել։

Դարձեալ ոմանք ի ձէնջ ասեն ցմեզ Թէ, զի՞նչ

*է որ երեսնամեայ այր մկրտէք, եւ դարձեալ զկնի ութ աւուր թլփատութեան տաւն կատարէք նմա։ Ծաղու եւ կատականաց արժանի են բանքդ, զի թէ մեք զծնեալն եւ զմկրտեալն ի միում աւուր տաւն կատարեմք, եւ թլփատեմք զծնեալն զկնի ութ աւուր, դուք ընդէ՞ր ի վեցն յունուարի մկրտէք, եւ յետ Ի եւ Է աւուր ի փետրուարի Բ ի տաճարն ածէք, եւ զերեխայի կարգս տայք նմա ի գիրկսն Սիմէոնի։ Արդ մեք կատարեմք զծնունդն եւ զմկրտութիւնն ի միում աւուր, զի ըստ երեսուն ամի շրջաբերութեանն դարձեալ ի յունուարի ի վեցն հանդիպեցաւ մկրտութիւնն, եւ ըստ ծննդեանն համարեմք, եւ ութաւրեայ զթլփատութիւնն առնեմք, որպէս եւ զքառասնաւրեայ գալն ի տաճարն։ Վասն զի զբովանդակ զաւրինացն զամենայն կատարեալ ասեմք Քրիստոսի, քանզի ինքն է տուիչ աւրինացըն, որպէս Լուսաւորիչն մեր սուրբն Գրիգոր ասէ, թէ Աւուրք ութ համարեալ թլփատի՝ յառաջ քան զարուսեակ որդին՝ աւետեաւք խոստացեալ զաւակն Աբրահամու, զոր եւ մեծն Պաւղոս ասէր. թէ Քրիստոսի սպասաւոր թլփատութեանն լինել, առ ի հաստատուն առնելոյ զաւետիս հարցն։ Եւ եթէ այդպէս է, որ մեք զերեսնամեայ մկրտեալն թլփատեմք, դուք զերկոտասանաւրեայ տղայ ըստ ձերոյ աւրինաց ծննդոց ընդէ՛ր մկրտէք. զի աւետարանիչն յետ երեսուն ամի ասէ։*

*Արդ եթէ ըստ գրոց կամիք առնել, լուռ լերուք մինչեւ ցերեսուն ամն, եւ ապա տաւնեցէք զմկրտութիւն, կամ արարէք ըստ կարգի այսպիսի։ Ի քսանեւհինգն դեկտեմբերի զծնունդն ձերով Արտեմոնադիր կանոնովդ, եւ զկնի ութ աւուր զթըլփատութիւնն, եւ ի փետրուարի յերկուքն զքառասնաւրեայ գալն ի տաճարն, եւ յետ երեսուն ամի*



*զմկրտութիւնն. եւ ապա յետ երից ամաց զգալուստըն յԵրուսաղէմ ի կամաւոր չարչարանսն, ապա զթաղումն եւ զյարութիւնն, եւ այսպէս մոռացեալ ձեր զերախտիսն Աստուծոյ ի վայր հոսեալ յուղիղ հաւատոյս։ Բայց մեք զտէրունական տաւնս ի միում աւուր տաւնեմք, որպէս զծնունդն եւ զմկըրտութիւնն. եւ եթէ ի կիւրակէ դիպի, ապա եւ զյարութիւնն. եւ չէ ինչ հակառակ միմեանց. զի տէրունական տաւնք են, որպէս եւ այլակերպութիւն փրկչին յարութեանն հանդիպեցաւ, եւ ի նմին միում աւուր տաւնեմք։*

*Դարձեալ ասէք եւ վասն կուսական աւետեացն, եթէ մեք ոչ տաւնեմք, այո՛, տաւնեմք եւ կարի քաջ. որպէս զծնունդն եւ զմկրտութիւնն ի միում աւուր, նոյնպէս զյարութիւնն եւ զաւետիսն, եւ եղեւ այսպէս։ Զի յապրիելի յերեքն լրումն է տէրունական չարչարանացն, եւ ի չորսն խաչելութիւն, եւ ի հինգն թաղումն, եւ ի վեցն յարութիւն։*

*Արդ նոյն հրեշտակն, որ յապրիելի ի վեցն, զաւետիսն ետ կուսին, նոյն դարձեալ յապրիելի ի վեցն զաւետիս յարութեաննն։ Յաղագս որոյ ի փառըս Աստուածածնին զմեծացուսցէքն ի յարութեան աւուր խորհրդաբար ասեմք։ Այլ թէ ընդէ՞ր ոչ կարգեաց Յակոբոս յընթերցուածին տաւն աւետեացն, նաեւ ոչ Կիւրղի փոյթ եղեալ։ Զի բազում անգամ դիպէր ի սուրբ պասեք չարչարանացն յապրիելի ի վեցն, վասն այսորիկ բազում անգամ յամենայն կիւրակէի հրամայեցին ընդ յարութեան տաւնել զաւետիսն։ Բայց եթէ եւ տաւնէաք յաղուհացսն, ոչինչ վնաս էր, զի տէրունական տաւն է, այլ զի սրբոցն երկուցեալ ի լուծանելոյ զպահսն, ո՛չ կարգեցին. եւ որ յետոյ կարգեցաւ յԱրտեմոնէ եւ ի Յոբնաղէ եւ ի Մարկիանոսէ եւ Յուստիանոսէ, զայն*

ոչ ընկալաք, զի մեք զոր ինչ լուաք ի սուրբ հարցըն եւ յուղղափառ վարդապետացն զնոյն պահեցաք եւ պահեմք ճշմարիտ հաւատովք։ Եւ այր զարամբ ելանելով յանձանց ոչինչ յաւելաք որպէս Թագաւորքն ձեր եւ հայրապետքն, որք վասն իւրեանց յիշատակի սնափառութեամբ իւրս իւրս ջանացան յանձանց կարգել հակառակ սուրբ հաւատոյս. որպէս Մարկիանոս նախանձեալ ընդ սրբոյն Կոստանդիանոսի եւ երկուց Թէոդոսացն, եւ ընդ Զենոնի եւ Անաստասայ բարեպաշտ Թագաւորացն, զորս ընդունիմք եւ տաւն կատարեմք նոցա, նոյնպէս եւ դուք, որ վասն աւգտի եկեղեցւոյ եւ ուղղափառ հաւատոյ արարին ժողովս։ Բայց որք զանազան փառաց զհետ ընթացան, զնոսա ոչ դուք ընդունիք, եւ ոչ մեք։ Արդ Կոստանդիանոս վասն Արիոսի արար զժողովն. որ արարած ասէր զՈրդի եւ ոչ ի բնութենէ Հաւր, այլ ստացական եւ ի ներքըս ածական։ Եւ մեծն Թէոդոս վասն Մակեդոնի, որ զՀոգին սուրբ նուաստ ասէր քան զՀայր եւ զՈրդի։ Եւ միւս Թէոդոսն վասն Նեստորի, որ ըզՄարիամ՝ Աստուածածին ոչ ասէր, եւ առ ծննդեանըն երկուս բնութիւնս եւ երկուս որդիս ասելով, զմինն յԱստուծոյ Հաւրէ, եւ զմինն ի Մարիամայ։

Արդ սոքա վասն այսր հերձուածողաց արարին ժողովս, եւ բազում կարգս ուղղափառս եւ կանոնս կարգեալ յաւրինեցին։ Իսկ Մարկիանոս վասն ո՞յր հերձուածողի արար ժողովս, եւ զո՞ր կանոնս գրեաց, եթէ ոչ վասն հակառակի եւ յիշատակի (վասն) իւրոյ անուանն, եւ գեր ի վերոյ կամեցաւ լինել սրբոյն Կոստանդիանոսի եւ Թէոդոսացն, վասըն որոյ եւ կրկին քան զնոսայն արար ժողով, որ զ Ո եւ զ Լ եւ Զ (չ)եպիսկոպոսաց երեսպաշտից եւ ոչ Քրիստոսասիրաց, եւ չփոթումն մեծ արար



յեկեղեցի Աստուծոյ։ Վասն որոյ եւ զառաջին սուրբ հարսն եւ զգլխաւորս սուրբ ժողովոյն խոտեաց եւ զյոռիսն մեծարեաց, եւ նոքա վասն պատուի Թագաւորին նզովեցին զմեծն Դիոսկորոս, որ (յառաջին) յերկրորդ սուրբ ժողովն ամենեցուն գլխաւոր էր, եւ զՄարկոսի աւետարանչի ունէր զաթոռն, եւ զսուրբն Պետրոս Անտիոքացի հանդերձ նորին սարկաւագաւքն սպանին սրով, եւ այլ բազում սուրբք փախստականք եղեն ի ժողովոյն, որք միաբան աղաղակէին թէ այդ Նեստորի աղանդն է, զի նա զկոյսն՝ Աստուածածին ոչ ասէր, զերկուս որդիս ի ներքս ածելով. զոր եւ ճարտարիմացութեամբ Ցոբնաղի ի մէջ կացեալ զդառն դեղ խաբէութեանն ծածկեաց. երկուս բնութիւնս ասելով ի խաչին. զմինն Աստուածութեանն տալով եւ զմինն մարդկութեանն։ Զնեստոր նզովեաց, եւ ինքն զնոյն դաւանեաց՝ զփառաց զհետ ընթացեալ։ Եւ զսուրբն Յուլիոս Աղիկառնացին, եւ զԱնատոլիս, եւ զՍտեփանոս, եւ զՏիմոթէոս, հանդերձ այլ հայրապետաւքն նզովեաց։

Այս ամենայն ի չարափառ հայրապետացն եւ ի սնոտի փառասէր Թագաւորացն եղեւ, որ մինչեւ ցդահեկանս եւ ցլումայսն զիւրեանց պատկերսն եւ զանունսն կարգէին, զոր եւ թշուառականն այն Կաղանդէոս, զմահն իւր անփոյթ արարեալ, ի տարեգլուխս եւ ի խաղս տայր դնել զանունն իւր։ Արդ վասն այս սնոտի պարծանացս նախանձեալ ընդ միմեանս, եւ առ սակաւ սակաւ համարձակեցան ձեռն արկանել ի սուրբ հաւատս, եւ զառաջին սըրբոցն եղծանել զսահմանս ճշմարիտս եւ զիւրեանցն հաստատել։ Վասն որոյ զայս ամենայն տեսեալ մեր, եւ յարեցեալ յամենաԹագաւորն Քրիստոս, եւ յառաջին սուրբ կանոնս, (եւ) ի բաց կացաք ի

բազմադիր կանոնացդ։

Արդ նախ եւ առաջին մեծն Կոստանդիանոս փոյթ յանձին կալաւ ի սուրբ ժողովն Նիկիա. նախ յառաջին գլուխ կանոնացն գրել հրամայեաց բառնալ զներքինիսն յեկեղեցւոյն Քրիստոսի, զոր առաջին անաստուած թագաւորքն, վասն իւրեանց զարշելի ախտիցն, որ ի պատերազմունս ոչ ժուժէին պիղծ ցանկութեանն, զնոսա հնարեցան առնել, վասն զի քուրմքն, որ զկուռսն պաշտէին, ոչ տային զազրանալ յարուամոլութիւն զոր սոքա առնեն, զի եղծումն լինէր ի բնութիւն մարդկութեանս. զախտս զայս առաւել խոտեցին եւ անարգեցին հեթանոսք։ Իսկ սատանայի ի մէջ արկեալ, ուսոյց կրտել(2), որպէս եւ առ սկայիւքն զարուագիտութիւնն եւ ի Սոդոմ եւ Գոմոր, նոյնպէս եւ աստ ուսոյց կտրել եւ չէզոք առնել ասելով, թէ դա չէ ոք, այս ոչ այր է եւ ոչ կին, եւ զախտ ցանկութեան իւրեանց անխտիր կատարեալ անցուցին ընդ նոսա իբրեւ ընդ կանայս, զոր ի սուրբ ժողովն Նիկիա յառաջին գլուխ կանովնացն նախ գրեցին զայս. Եթէ ոք կրճատեսցի կամայ կամ ակամայ, կամ յաւազաց կամ ի բժշկաց կամ յայլ դիպուածոյ իմեքէ, մի՛ իշխեսցէ գալ ի կարգ քահանայութեան, եւ եթէ յանդգնեսցի, նզովեալ եղիցի։

Եւ զայս ոչ ի յանձանց սահման եդեալ, այլ ուսեալ ի մեծ մարգարէէն եւ յօրինադրէն Մովսիսէ, որ յԱստուծոյ աւրէնսդրեալ գրեաց. Թէ Մի մատուսցես Աստուծոյ զմալեկանն, եւ մի զկրճատականն, եւ մի՛ զմիորձին եւ մի որ բնաւ սուքն է։ Եւ դարձեալ ասէ, թէ մի եղիցի ի ձեզ ամլութիւն եւ մի անսերմնութիւն, զի ի նզովս կարգեալ

------

(2) Տպ. կտրել։



է այն զոր եւ դուք քաջ գիտէք, եւ ի մէնջ չէ ի ծածուկ եթէ կուրտք յախտ ցանկութեան քան զուղտս առաւել մոլեկանք են։ Զի ջերմութիւն ախտին ի բնութենէ եռայ եւ ոչ կարէ ելանել, եւ նա զաւրէն աւձի ունի, որ մինչեւ ի ջերմանալ աւուրն յար ի գազանութեանն կայ. եւ ի ցրտին աւուրսն կղուեալ իբրեւ զմեռեալ լինի։ Սոյնպէս եւ սոքա զցայգ եւ զցերեկ այրեցեալք ի պիղծ ախտէն անհանգիստ կան։ Եւ դուք ընդդէմ դարձեալ աւրինադրին Մովսիսի եւ մեծին Կոստանդիանոսի եւ սուրբ ժողովոյն Նիկիա, դարձեալ զայսպիսի պիղծս յեկեղեցի մուծանէք, զոր եթէ նոքա չեն արժանի հաղորդութեան, զսոսա պատրիարգունս եւ քահանայս կացուցանէք, մանաւանդ եթէ բնաւ ժառանգաւորս եկեղեցւոյ կարգէք զնոսա, զոր եթէ բնաւ չեն արժանի կոխել զսեամս եկեղեցւոյ Քրիստոսի։

Արդ մեք զայսպիսի չարիք եւ զյանդգնութիւնս տեսանելով ի ձեզ, ասացաք եթէ բնաւ չունիք առաջնորդ, եւ ամենայն ինչ ձեր ի հիմանէ խախուտ թուեցան, զի հիմն հաւատոյ քահանայութիւնն է, եւ մինչ հիմն չլինի, շինուածն յո՞յր վերայ հաստատի։ Արդ մեր հիմունք առաքեալքն են, եւ ի նոսա կուրտ ոչ գոյր։ Յայսմ ամենայնէ սրտաբեկ եղաք ի ձէնջ, եւ ձեզ այլ ոչ դիցուք միտ, այլ զկարգս եւ զկանոնս զոր ուսաք, բնաւ այլ ոչ յաւելաք։

Լսեմք դարձեալ եթէ ասէք զմէնջ եթէ մեք զխաչեցարն Որդւոյ վասն անարգանաց ասեմք. (եթէ մեք զխաչեցարն Որդւոյ՝ վասն անարգանաց ասեմք), եւ դուք զուրանալն զովե՞ստ համարիք։ Արդ մեք ոչ ասեմք վասն անարգանաց, այլ վասն առաւել պատւոյ եւ պարծանաց։ Եւ ասէք դարձեալ

ցմեզ եթէ յումմէ՞ ուսայք, զոր բազում ինչ ունէի ասել, եթէ բերան ի բերան էր, բայց արդ սակաւուք ցուցից ձեզ ըստ գրեցելումն. Նախ առէք ընթերցիք զձեր ժամանակագիրն, զոր Սոկրատն կոչէք, եթէ յառաջնումն ձայնիւ ո՞չ նուագէին ըզՍուրբ Աստուածն խաչեցարիւն յեկեղեցւոյ եկեղեցի երթալով՝ զոր երանելոյն Ոսկեբերանի, ընթերցեալ զգիրս Որոգինէի, կարգէր յիւրում ժամանակին։ Եւ Թէոփիլեանքն արգելուին զնա ասելով, եթէ զՈրոգինէին խորհի։ Եւ ի ժողովն Եփեսոսի Կիւրեղ Աղեքսանդրացի ընդդէմ Նոցա ասաց ձայնիւ. Միածին Որդի եւ Բանդ Աստուած, եւ անմահ էութիւն, որ յանձն առեր մարմնանալ ի սուրբ Աստուածածնէն եւ ի միշտ կուսէն, անփոփոխելիդ մարդ եղեալ եւ խաչեցար Քրիստոս Աստուած. եւ որ ի կարգին է ասացեալն։ Վասն զի զՍուրբ Աստուած խաչեցարիւն ի Հոգւոյն ազդմանէ կատարեցին. զսրբասացութիւնս զայս եւ Ասորիք ստոյգ ունին ընդ մեզ մինչեւ ցայսաւր։

Զայս Դէոսկորոս ասաց, որ էր գլուխ յերկրորդ ժողովին Եփեսոսի. եւ զՓղաբիանոս եւ զԵւտիքէս արտաքսեաց Նզովիւք։ Դարձեալ յառաջինսն երթիցուք։ Գրեալ է Նեքտառիոս Հռովմայեցի, թէ չեղեւ հնար Յովսեփայ իջուցանել զՏէրն ի խաչէն, զի ի փորուածոյ ձեռաց փրկչին փայլատակունք հատանէին, եւ Նորա ոչ ժուժկալեալ ճառագայթիցըն, զձեռս ի վեր տարածելով ասէր աղաւթիւք արտասուելով, Սուրբ Աստուած, սուրբ եւ հզաւր, սուրբ եւ անմահ, որ խաչեցար վասն մեր, ողորմեա մեզ։ Եւ ի ձեռն այսր ճշմարիտ խոստովանութեան համարձակեալ, եւ առեալ ջուր ցանեալ իջուցանէր, եւ պատեալ սուրբ կտաւովք թաղեաց։

Իսկ ի ժամանակս առաքելոցն յաւուր չորեքշաբաթու եւ ուրբաթի սկսեալ ի ժամ պատարագին նախ զայս ասէին։ Եւ ապա ի փոխման Աստուածածնին ազդ եղեւ առաքելոյն Թովմայի ի Հոգւոյն սրբոյ, եւ ասացեալ զՓառաւորեալն զաղաւթսն, զոր եւ այլ առաքեալքն միաբանեալ եւ զկնի Սուրբ Աստուածին եդեալ՝ զՓառաւորեալն զմիշտ կոյսն, որ է ստոյգ վկայ խաչեցարին, Որդւոյ առընթեր բարեխաւս կալով մայր Նորին։ Դարձեալ քննեսցուք եթէ այսմ չհաւանիք, եւ տեսցուք թէ զերեք սուրբ եւ զմի Տէրն՝ Երրորդութեա՞նն ասացին Սերովբէքն, թէ Որդւոյ միայն։ Ասէ մարգարէն, տեսի զՏէր Նստեալ յաթոռ բարձր եւ սերովբէքն ասէին զերեք սուրբն եւ զմի Տէր։ Մի տէր ասացին, իբրեւ ի մի երեսաց եւ ոչ Տեարք։ Եւ դարձեալ իբրեւ ի միոջէ բերանոյ. Ո՛վ երթիցէ առ այն ժողովուրդն, եւ դարձեալ. Լի են երկինք եւ երկիր փառաւք Նորա. եւ այս միոյ երեսաց է, եւ զայս որդւոյ ետես Եսայիաս։ Վկայէ մեզ աւետարանիչն Յովհաննէս, զի ասէ. եթէ՝ Ետես զփառս Նորա եւ խաւսեցաւ վասն Նորա։ Արդ՝ աթոռ բարձր եւ վերացեալ խաչն է, Նոր սեղան, եւ սերովբէքն սրբասացք, զոր եւ այժմ պարեն շուրջ զսեղանովն յաներեւոյթս՝ աղաղակեն եւ ասեն. Սո՛ւրբ, սո՛ւրբ, սո՛ւրբ, Տէր զաւրութեանց, լի են երկինք եւ երկիր փառաւք քո, աւրհնութիւն ի բարձունս, աւրհնեալ որ երկիր եւ գալոց ես անուամբ Տեառն, աւրհնութիւն ի բարձունս։ Տե՛ս թէ ո՛յր ասացին զերեք սուրբն կամ զերեք աւրհնութիւնն, Երրորդութեա՞նն, թէ որ եկն եւ գալոց է։ Արդ դուք եւ մեք զերեք սուրբն եւ զերեք աւրհնութիւնն՝ Որդւոյ միայն ասեմք։ Եւ դարձեալ ի Փառք ի բարձունսն, երեք անգամ որդւոյ ասաց ժողովն Եփեսոսի, զԱւրհնեալ Տէր, ուսո՛ ինձ զարդարութիւնս քո.

*եւ ի կիւրակէ զկնի աւետարանին երեք անգամ ասելով, Ոչ ղաղարեցից Քրիստոս աւրհնել զքեզ, եւ այս որդւոյ միայն է։*

*Արդ եթէ կամիցիս ցուցից քեզ զԱստուածն եւ զհզաւրն։ Եւ եթէ երեք են սրբասացութիւնն վասն էր յաւելումք, Սուրբ Աստուած, որ յառաջ քան զյաւիտեանս ի Հաւրէն, եւ ի կուսէն ծնեալ եւ խաչեալ եւ թաղեալ անքակ աստուածութեամբն եւ անբաժանելի մարմնաւորութեամբն· մինչեւ ի մտածութիւնս անգամ· սուրբ եւ հզաւր· զի թէպէտ եւ տեսաք ի տկարութիւնս մեր խոնարհեալ, այլ հզաւրեղապէս մեղաց յաղթեալ եւ զդժոխս աւերեալ· սուրբ եւ անմահ· զի թէպէտ եւ կամաւորաբար կրեաց զմահ, այլ անմահ էր։ Եւ եթէ խաչեցարն դժուար թուի ումեք, մեք գիտեմք որ անդունդք սարսեն յորժամ ոք զխաչեցարն յիշէ, եւ եթէ դուք ոչ կամիք հաւանիլ այսմ, մեք այլապէս ասեմք, Սուրբ Աստուած, որ ապտակեցար, եւ թուք ընկալար, եւ գանեցար, եւ գեղարդեամբքն խոցեցար, եւ վասն մեր հեղեր զարիւն քո սուրբ, եւ մեք քո արեամբդ ազատեցաք, ողորմեա՛ մեզ։ Եւ չէ ինչ պարսաւանք զաւրհանապազ զայս ասել։ Զոր աւրինակ որդի թագաւորի երթայ ի վերայ ապստամբ ծառայի իւրոյ, որ զիշխանութիւն նորա գերեալ էր, եւ զնախարարսն բանդարգել արարեալ, եւ նա երթեալ ի վերայ նորա յաղթեաց նմա, եւ զորս ընդ ձեռամբ նորա էին եհան, եւ զնա սպան, եւ ինքն վէրս առեալ եւ արեամբ թաթաւեալ, եւ գերիքն առաջի կացեալ ամենայն աւուր աղաղակէին, եւ ասէին՝ թէ Մեք քո արեամբդ եմք ազատեալք, որ վասն մեր խոցեցար, ողորմեա՛ մեզ։ Արդ ասա ինձ նախատի՞նս համարէր թագաւորն որդւոյ իւրում թէ պարծանս։*



*Արդ զի՞արդ ամաւթ համարիմք զկամաւոր խոցումն նորա, որ վասն մեր զսպիսն ա՛ռ, եւ դեռ եւս ունի առ Հաւր, առ ի յանդիմանութիւն Հրէիցն եւ յերախտիս հաւատացելոց, զի թէ Աստուծոյ արեամբն եմք գնեալք, մեք զնորա խաչելութիւնն մեզ պարծանս համարիմք։ Իսկ այդ ո՛չ է ճշմարիտ յայտնապէս։ Գիտեմք զի Նեստոր կազմէ ձերոյ խոստովանութեամբդ, զոր նա ի կոյսն թերահաւատէր, եւ ուրանայր զՄարիամ՝ Աստուածածին ոչ ասելով· թուի մեզ ասել ձեզ՝ եթէ չէր խաչըն Աստուծոյ այլ սոսկ մարդոյ, արդ եթէ այդ այդպէս է, ապա եւ Նեստոր չէ ինչ աւելի մեղուցեալ քան զձեզ· եւ վասն այսորիկ զԴէոսկորոս եւ զՊետրոս արտաքսեաց Մարկիանոս, որ զխաչեցարն ասէին։ Եւ մեք ի Սարակինոսացն(3) վասն խաչեցարիդ եմք զատեալք, զի նոքա Բան Աստուծոյ եւ հոգի կոչեն զՔրիստոս, եւ զտիեզերական դատաստան նորա ասեն առնել, եւ զՄարիամ լուսոյ մայր խոստովանին եւ Կոյս անարատ, բայց Աստուածածին ոչ· եւ յաղագս այնորիկ գերիմք եւ սրախողխողք լինիմք ի նոցանէ, զի ասեն ցմեզ, թէ Աստուած ասէք զայն, որ ի Հրէիցն խաչեցաւ, եւ նորա փայտին երկիր պագանէք, վասն որոյ եւ փայտապաշտ կոչեն զմեզ։*

*Դարձեալ ասէք ցմեզ եթէ Երրորդութեանն ասէք դուք զխաչեցարն· զի՞արդ ոչ գիտեմք եթէ զամենայն փառաբանութիւն՝ զոր ինչ որդւոյ ասեմք, զայն Հաւր եւ Հոգւոյն արժան է ասել, բաց ի խաչեցարէն, զսուրբն եւ զհզաւրն եւ զանմահն եւ զփառսն եւ զերիս երկրպագութիւնս Հաւր եւ*

------

(3) *չառաժինոսացն որ են տաճիկք* (*Ժթ.* *էջ* 683*բ*։ *Ի*, *թղ.* 265*ա*)։

Որդւոյ եւ Հոգւոյն սրբոյ բաց ի խաչէն։ Իսկ եթէ Որդւոյ միայն ասեմք եւ նորա խաչին՝ զերիս սրբասացութիւնս եւ զերիս երկրպագութիւնն, ասա՛ ինձ վնա՞ս է թէ ոչ· եւ այսպէս· Սուրբ Աստուած որ ծնար ի կուսէն որպէս զԱստուած, Սուրբ եւ հզաւր որ զդժոխս աւերեցեր, Սուրբ եւ անմահ որ ի մահու անմահ մնացեր, եւ զմեզ քո խաչիւդ եւ արեամբդ ազատեցեր, ողորմեա՛ մեզ։ Արդ՝ եթէ վնաս է զայդ ասել, դուք ձեզէն տեսէք։

Այլ վասն Առաջաւորի պահոցն զմեզ զի՞ հայհոյէք(4)։ Առէք զգիրս մերոյ Լուսաւորչին եւ ընթերցէք· զի նա է մեր լուսաւորութեան աւուրք առաջինք, զնա եմք պահել ծոմաջան եւ անսուաղ մինչեւ ցանաասունս անգամ։ Զի յորժամ ել նա ի վիրապէն, ետես զաշխարհս մեր զամենայն դիւամոլեալ· եւ ամենեքեան անկեալ առ ոտս նորա լային, մինչեւ ինքն ընդ նոսին յարտասուս եղեալ, եւ զհինգ աւրն անսուաղ պահեաց ինքն հանդերձ թագաւորաւն եւ ամենեքումբք, եւ ապա սկսաւ ի վարդապետութիւն աւուրս վաթսուն· եւ դեռ չէին մկրտեալք, եւ իբրեւ մկրտեցան ամենեքեան ի միասին, վասն յիշատակի մերոյ լուսաւորութեանըն կրկին անգամ պահեցաք եւ պահեմք մինչեւ ցայժմ։ Եւ ապա զկնի զքառասներորդ զպահսն հրամայեաց պահել, որպէս Իսրայեղեանքն այն, զելիցն զփրկութիւնն ի փարաւոնէ, կամ զՆինուէացւոցն՝ որ դարձան եւ ապրեցան։

Արդ մինչ առաջին մեք զայս պահեցաք, դուք Սեղբեստրոսի եւ Կոստանդիանոսի տաւն կատարէիք, եւ Կոստանդիանոս զիւր լուսաւորութեան աւուրսն պահէր, եւ տաւն Գրիգորի եւ Տրդատայ

------

(4) հարցանէք (ժԹ, էջ 684ա)։



տաւնէր· քառասուս ու չորս ամ Հռովմ եւ Եգիպտոս պահեցին ընդ մեզ եւ ընդ ձեզ, եւ մինչեւ ցայժմ Ասորիք պինդ պահեն։ Իսկ անաւրէնն Մարկիանոս զսրբոյն Կոստանդիանոսի զլուսաւորութեան աւուրցն զպահսն եբարձ, եւ պանրուտոյս կարգեաց հակառակ այնմ, եւ փոխանակ յայնմ շաբաթու պանիր ուտելոյ, զքառասներորդ պահսն զամենայն ապականեաց, ձուկն եւ ձէթ եւ գինի անխտիր ուտելոյ եւ ըմպելոյ· զոր մեք եւ ամենայն սուրբ գիրք ա՛ղ եւ հաց կոչեն, եւ Պաւղոս զձուկն՝ միս ասէ, եւ մարգարէն զգինին՝ արիւն, եւ աւետարանիչն զձէթն՝ իւղ։ Միւսն ասէ, Իւղ ի լապտերս նոցա· եւ դարձեալ ասէ· Զէթ ամանաւք ընդ ինքեանս ոչ բարձին· եւ Ղուկաս(*) ասէ, թէ Տուք մեզ յիւղոյդ ձերմէ։ Յայտ է յայսցանէ, թէ ձէթ եւ իւղ մի են· եւ վասն ձկան Պաւղոս ասէ, Միս մարդկան եւ միս ձկան, եւ միս անասնոյ, եւ միս թռչնոյ· եւ մարգարէն ասէ վասն գինւոյ, եթէ Զարիւն խաղողոյ արբ գինի· եւ դարձեալ, թէ Լուասցէ յարեան խաղողոյ զպատմուճան իւր։ Եւ վասն ձկան Ջուր զի՞ ասէք, միթէ ոսկր մեծ եւ արիւն չունի՞ քան զամենայն կենդանի· կամ ո՞ր գազան է քան զնա ապականիչ, վասն զի սիգղն չուն է երեքգլխեան ի ծովու գազան, եւ զիւր ծնունդն ոչ ուտէ, բայց ձուկըն ուտէ։ Եւ մեծն Բարսեղ գազան ասէ զձուկն եւ զմարդ կլանէ։

Եւ արդ զայս չփոթումն եւ զպղտորմունս Մարկիանոս արար։ (Իսկ մեր պահք աղ եւ հաց միայն է, այլ ոչ լուր ընկոյզ, ո՛չ չամիչ, ո՛չ գինի, ո՛չ

------

(*) Այսպէս յօր·

*քացախ, եւ զամենայն ինչ ի բերոյ որթոյ մինչեւ
ցքին անգամ ոչ ճաշակել)։ Արդ դուք ձեզէն ըն-
տրեցէք զարժանն, եւ մի՛ ակն առնոյք ի Քաղկեդո-
նէ, զի մի ընդ նոսին ժառանգիցէք զանվախճան
տանջանսն։*

Զմեղապարտ գրողս եւ ստացող լուսաւոր տառիս զԹումաս, եւ
զծնաւղսն իմ, յիշեցէք աղաւթիւք ի Քրիստոս Աստուած, ո՞վ
դասք ուղղափառաց:





Ղ

## ՊԱՏՃԷՆ ԹՂԹՈՅՆ ՄԵԾԻ ՀԱՅՐԱՊԵՏԻՆ ԿՈՍՏԱՆԴԻՆՈՒՊՕԼՍԻ ՓՈՏԱՑ ԱՌ ԱՇՈՏ ԻՇԽԱՆԱՑ ԻՇԽԱՆ

*[Ք]աջայայտդ բարեպաշտութեամբ, հզօրա-
գոյնդ ճոխութեամբ, բարձրագոյնդ ի համասեռս,
Աշոտ իշխանդ Հայոց Մեծաց, շնորհիւ Աստուծոյ
Փոտ գլուխ եպիսկոպոսաց Նոր Հռոմայ եւ պատ-
րիարգ հանուրց։*

*Սիրելի, եւ քաղցր, եւ վեհագոյն է սիրողու-
թեանցն շաղկապ, եւ վայելչագոյն պայծառացեալ
միշտ վայելչանայ յորս ունակացեալ գտանի։ Վաս-
նորոյ եւ բնաւորեցաւ յազգս մարդկան առ յար-
դարել զկենցաղավարութիւնս նոցա ըստ իւրաքան-
չիւր պիտոյից։ Սա բազում անգամ զանջատեալսն
ի մարդկանէս վերստին ի միասին հաւաքէ, եւ որ
մարմնական խորհրդածութեամբ բաժանեալք էին՝
վերստին կապէ ի միասին (հաւաքէ, եւ որ մար-
մնական խորհրդածութեամբ բաժանեալք էին՝ վե-
րստին կապէ ի միասին) պատկանաւորաբար։ Այլ
եւ զտարաբնակսն բազում անգամ եւ զանծանօթա-
գոյնսն ի բացէ, ի ձեռն գրոյ եւ բանի այնքան ա-
ռատացուցանէ ի նա զսիրոյն խորհուրդ, մինչ զի
առաւելագոյն քան զորս հանդիպութեամբ պատկե-
րացն եւ հակասութեանց հաստատեն զսիրոյն կա-*

-------

Բնագիր ԻԲ, էջ 521բ - 525ա։ Հմմտ. Ա, էջ 279 - 282։

պակցութիւն։ Նաեւ աստուածային եւ բարձրագոյն սիրոյն կացուցանէ հաղորդս։ Ուստի եւ բղխումն ամենայն բարութեանցն հոյլ ի նորայոց ստացեալ ունի զհանճար եւ զգիտութիւն։

Զայսոսիկ եւ մեր խոկացեալ ըստ աստուածային դրութեանցն, որ մեզ աւանդեցաւ, ի սոյն զմիտս մեր ճեպելով յաճախագոյն եւ ընդարձակագոյն սիրելութեան կապակցութիւն ի ձեռն թղթոյս մեր ծանուսցի խորհրդականութեանդ քո. յորմէ թուի ինձ ոչ ումեք գոլ պատշաճագոյն առ ի վերջանալ, որք միտս ունին յայսպիսի զանազան շահաւորութիւնս, զոր սիրոյն գոյացուցանէ ներգործութիւն, զոր եւ առ յոգնաճոխութիւնդ քո բանըս մեր յեղանակի։ Վասնզի չիք ինչ շահաւորագոյն եւ քաղցրագոյն էիցս՝ քան զսիրոյն հաստատութիւն։ Ըստ որում երբեմն եւ ի քո թուղթսն, որ առ մեզ սէր բացատրեցեր ի բարձրագոյն որ ի քեզ խորհրդոց, ճշմարիտ սիրոյդ զոր ունիս առ մեզ յերկուց ներգործեալ, ի հանճարեղ մտաց, եւ քաջատոհմ մարմնոյդ, յոր խորհեալ ըստ իւրաքանչիւրոցդ, եւ որ ի սոյն պատկանի խորհուրդ։ Ճեպեցի զմիտս իմ հաստատուն արձանացուցանելով, որ ի մեզ սիրոյն կապակցութիւն, առ ի նշանակ որոց լաւագոյն խորհրդոց յինքեանս կրեն զբարուք նախանձն, ոչ ըստ իմոյ այժմ ունակացեալս բանի, այլ եւ որք զկնի մեր կամին պայծառանալ աստուածային եւ մարդկային սիրոյ կապակցութեամբ՝ տպաւորելով զսոյն օրինակ եւ նոցա բարձրագոյն եւ մնացաւորականագոյն, որոց միտս ունին։

Այլ վասն տրտմութեանն, որ ի ձեզ կրեցաւ ըստ վտանգաւոր մերոց պատահմանցն, եւ դարձեալ ուրախութեանցն, եւ վերստին դառնալն մեր



յարքայական քաղաքս, որպէս ինչ թերեւս առ պատահմունսն մեր է իմանալ, քան թէ Աստուծոյ տեսչութիւնք անհետազօտելիք մեզ։ Երբեմն խրատել, եւ երբեմն մխիթարել, զի մի ոք վհատեալ ի մարդկանէ երկմտիցէ ի հատուցմանց արդարադատըն Աստուծոյ, բարւոյն ասեմ եւ չարին։ Եւ վասն զի թուղթն երբեմն ժամանեալ առ մեզ զնոյն վասըն մեր ունէր հոգաբարձութիւն, ուստի եւ զմտաց քոց ծանեաք զբարեխոհութիւն, եւ զպատուիրանին որ ի քեզ պահպանութիւն, խնդալ ընդ խնդացողս, եւ տրտմիլ ընդ տրտմեալսն։ Այլ զմեզ պահպանեաց զօրութիւն բարձրելոյն՝ ի վտանգաւոր տաժանմանց անփորձ մնալով, որպէս եւ ինքն կամեցաւ։ Նաեւ վտանգքն մեր նուազագոյնք էին քան զպարտուցն առաւելութիւն զոր ունէաք։ Ըստ որում ոչ վայելչաբար ըստ Աստուծոյ տնօրինեցաք ի ցնդելի, եւ ի լքանոտ յայսց զբաղելով առօրեայ կենցաղս։

Իսկ զարդեան զհոգեւորական քաղաքավարութիւն ըստ վերադարձութեանս, որ ի վերին տեսչութենէն առատապարգեւք յամենայնի եւ անարգելք ըստ վերնական հպաւորութեանն, որ մեզ հաւատացաւ աստուածապարգեւ սուրբ թագաւորացն խնամակալութեանցն, զոր ծանուցեալ քոյդ մեծութեանդ խոկացայ, զքոյդ ճոխութիւնդ եւ հանճարեղութիւնսդ, յիւրաքանչիւրսն գոլ տեղի, յուրախութիւնսն ասեմ եւ ի տրտմութիւնսն։ Եւ արդ վայել է զբարձրագոյն եւ զօգտա[կա]րագոյն խորհրդոցն բուռն հարկանել, այսինքն զհաւատոցն ստորոգել զհաստատութիւն, առ ի նախախնամել զեկեղեցի ձեր սուրբ, եւ ուղղել որ ի դմա սղալանք, վարդապետական ուղիղ դաստիարակութեամբ։

Եւ արդ, ով արմատ բարի, եւ վեհագոյն յա-

մենայնի, ծանուցեալ մեր զճշմարտութիւն հաւատոյն, քարոզել հարկ ի վերայ կա մեզ ընդհանուր, եւ ոչ կալ մնալ հարցողացն։ Այսպէս եւ ոչ քոյդ մեծութիւն ազատ եւ արտաքոյ հարկաւորութեան մնայ, առինքնութեան հաւատոյն ճշմարտութեան, մինչ զի հասարակաց աշակերտեալք ճշմարտութեանն՝ զվայելչականն Աստուծոյ մատուսցուք ըզփառաբանութիւն, մի գոլով մարմին եկեղեցւոյ Աստուծոյ։

Եւ վասն զի Թուղթք մեր նախ վաղ ուրեմն գրեցան յաշխարհն ձեր, ոչ ի մարդկանէ յայնոսիկ հարկաւորեալք, կամ հարկաւ սնափառական խորհրդոց գնաց զկնի, այլ ի նոյն ինքն ի Քրիստոսէ Աստուծոյ ընկալեալ հրաման՝ առ ի միաւորութիւն անբիծ հաւատոցն խոստովանութեամբ· ոչ ըստ մտաց մերոց ինչ վարդապետեալ զնորաձայնութիւնն, քան եթէ զսրբոց առաքելոցն վարդապետութիւն, միջնորդութեամբ ճշմարիտ վարդապետացն, եւ սրբոց ժողովոցն մեծարելոց։

Ուստի եւ մեք փոյթ յանձին ունիմք վարդապետելով ձեզ զճշմարտութիւնն, մանաւանդ իմացեալ զաշխարհդ ձեր ի վերնական շնորհացն պահպանեալ, եւ լծակից եղեալ հանրական սբ· եկեղեցւոյ [յ]ամենայնի, բայց ի միոյն որ է այս։ Քանզի ընդդէմ Աստուծոյ եւ հակառակ ճշմարտութեան զչորրորդ ժողովն սահմանեցէք, որ հաստատեաց զանկումն եւ զտարամերժումն Նեստորի, եւ զբարձումըն զարշելի նորա խոստովանութեանն։ Ով ոք արդեաւք ոչ իմասցի եթէ ոչ ընդունողքն զժողովն Քաղկեդոնի անզգամք են, միտս ունելով հանգոյն այնոցիկ, որք զՏէրն մեր եւ զՓրկիչն պախարակէին հայհոյելովն, զի հալածականն առնէր զդեւսն· զի չիք ինչ որոշումն ընդ գլխաւորսն դիւաց եւ



ընդ այնոսիկ՝ որք հայհոյեն, զորս հալածական զդեւսն առնէր ի մարդկանէ։ Արդ վասնզի սուրբ ժողովս այս նզովեաց զՆեստոր եւ արտաքս ընկեց հանդերձ հետեւողօքն իւրովք, ով ոք թերեւս անգիտասցի սատանայի գոլ զՆեստոր սպասաւոր, որ թշնամանեաց զժողովն Սուրբ, որ յԵփեսոս գումարեցան, որ եւ զոմանս մոլորեցոյց ի նոցանէ զկնի իւր։

Արդ քանզի չորրորդ ժողովս երրորդիս միաբանեաց, զիա՞րդ յանձին ունիք հայհոյել եւ չարահամբաւել։ Եւ արդ վասնզի հաստատագոյն ունիմք զգիտութիւնն Աստուծոյ գոլ մեծութեանդ ձեր ի վերնական զօրութեանցն պահպանեալք, եւ ժողովուրդ Աստուծոյ ազգդ ձեր, եւ արտաքոյ անվայելուչ կարծեաց· արդ՝ վասնզի ժամանեցին առ մեզ վասն ասացելոյս ի մէնջ անընդունակ պատճառք ի ձէնջ ի ձեռն գրոյ, եւ արդ յորժամ ի միջոյ բարձցի կարծիքս այս, եւ չորրորդ սւինհոդոսն ի թիւ երից ժողովոցն ի ձէնջ խոստովանեալ փառաւորեսցի, այնուհետեւ բարձեալ գտանի ամենայն որ ըստ ձեզ անուղղայ կարծիք։

Վասն զի Հռոմն առաջին այսպէս պատուէ ըզժողովն չորրորդ, ըստ որում եւ մեք զերիս ժողովսն յառաջագոյն քան զսա եղեալ։ Սապէս պատուակցութեամբ ընդունի եւ մեծ Աթոռն Աղեկսանդրի, եւ Աթոռն Երուսաղէմի, եւ ոչ կրեն հակառակութիւն վասն ժողով[ոյ]ս այսմիկ սրբոյ։ Այլ եւ ժողովք հետեւեալք սմին, այսինքն չորրորդին, հինգերորդ եւ վեցերորդ եւ եւթներորդ։ Արդ ով ոք իշխեսցէ ընդդէմ կալ հաւատոյն, որ սփռեալն եւ տարածեալն է ընդ ոլորտս երկրի, վասն որոյ Տէրն այսպէս ասէ, թէ դրունք դժոխոց զնա մի յաղթահարեսցեն։ Ապա ուրեմն ոչ է պարտ հետե-

ւել զուր բանից, որք անուամբ միայն են որիչ ի դերաքրիստոսէն, որք արբուցանեն զդեղն մահացու եւ ապականիչ հոգւոցն, որոշելով ի վարդապետութենէն Սուրբ Հոգւոյն եւ ի նշանաց տուելոց։ Եւ կամ զի՞րդ ոչ ասի դարձեալ եթէ որք հիւանդութեամբ մտաց իւրեանց պատարագեն զՏէր մեր Յիսուս Քրիստոս զԱստուածն եւ զմարդն, այսինքն յաստուածային եւ ի մարդկային բնութենէն, եւ զկնի Տեառն տնտեսութեանն մի ասեն բնութիւն, զի որք զայսն բարբանջեն, այնպիսիքն ուրացան զերկաքանչիւր զբնութիւնսն։ Զի եթէ մինն զայն զբնութիւնն զոր ասեն՝ սոսկ ասեն, ապաքէն զմիւսն ուրացան։ Եւ եթէ յերկուց պարզագունից խառնեալ, յայտ է եթէ ոչ մինն եկաց մնաց յիւրայութեանն, այլ իւրաքանչիւրքն դատարկացան։

Արդ զիարդ թերեւս ասիցեն, եթէ այս խառնեալ որ ինքն բնութիւնս, որ ի Հայր եւ ի Հոգին Սուրբ յատկացեալ է, եթէ նորին հակառակն է։ Արդ եթէ ասիցեն եթէ ոչ է յատկացեալ, հայհոյութիւն նոցա եղիցի ի վերայ գլխոց իւրեանց, զի բնութիւն Հօր իմանի խառնեալ։ Իսկ եթէ յատկացեալ ասիցեն, իմանի Որդի ոչ ունել զբնութիւն Հօր։ Արդ որ զայդ համարձակին ասել, քաջայայտ է թէ յորպիսի հրաւիրին տեղի։ Եւ ով ոք բաւականասցի առ ի զբաւանդակն պատմել զորքանութիւն այսպիսեաց բանից զհանդէսս ի ձեռն գրոց. զոր եւ Հոգին Սուրբ ի ձեռն չորրորդ ժողովոյն բացայայտեաց, որոց հետեւիցին, իսկ նշանակք հաւատարմագոյնք առ ի հաստատութիւն հաւատոյն, եւ ի խորտակումն հակառակորդաց, եւ յեղծումն խաւարային նոցա խորհրդոցն։

Դարձեալ զի թէ Թուղթս մեր առ ոմն,ի հասարակականաց մարդկան էր, թերեւս յոլովագու-



նից էր պէտք բանից առ ի բացայայտել զճշմարտութիւնն։ Այլ քոյդ մեծութեան եւ հանճարեղ իմաստիցդ, եւ ցանկացողիդ ճշմարտութեանն, եւ սիրոյն կապակցութեանն ախորժողի, բաւական ուրեմն են ասացեալքս, մանաւանդ զի բազում անգամ գրեցաք յառաջնորդդ ձեր եւ քահանայապետդ յոլովակի բանիւք, զոր եւ այժմ դարձեալ աղաչեմք զքոյդ մեծութիւն հաստատել ի ձեռն սրբոց ժողովոցն յամբիծ հաւատն, եւ ոչ խոտորիլ ի թագաւորական շաւղացն, այլ ընդ նոցայն գնալ ուղիղ ճանապարհ։ Զի որ(ք) համարձակի(ն) ասել ի Քրիստոս մի բնութիւն, ածէ ի վերայ անձին իւրոյ զԵւտիքեայ դատապարտութիւնն, եւ զհաւատն զոր ունին Սալսահիկք, բազմագլուխ գոլ եւ ոչ մի ունել գլուխ. Նաեւ Մանեա եւս լինի ձայնակից։ Դարձեալ եթէ այլ ոք խոստովանեսցի ոչ որոշեալս եւ ոչ յատկացեալս երկուս բնութիւնս, այլ յերկուս անձնաւորութիւնս, այնպիսին Նեստորին է արժանաւոր պատժոց։ Վասն որոյ եկեղեցի Աստուծոյ հերքեալ զերկաքանչիւրսն մերժեաց, լուծանելով զնոցա չարափառութիւնն յիւրոց աստուածային յարկաց, եւ խոստովանելով մի դէմ Տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի՝ երկուս անուանելով բնութիւնս յատուկս անշփոթս, հակառակս սահմանելով ընդդէմ որոց զկիրսն եւ զչարչարանսն աստուածութեանն դնեն։

Արդ մի հեղգասցիս, ով վսեմագոյնդ, ուսուցանել զժողովուրդդ Քրիստոսի եւ ածել ի ճշմարիտ խոստովանութիւն հաւատոյ, զի չիք ինչ հաճոյագոյն Աստուծոյ քան զճշմարտութեամբ ճանաչել զնա, եւ ուղղակի խոստովանութեամբ փառաւորել։ Այսոքիկ ի մէնջ գծագրեցան առ քոյդ աստուածապարգեւ պետութիւն. ոչ յաճախագոյն բա-

նից կարօտացեալ քոյդ հանճարեղութիւնդ, այլ միայն զի առ հանուրսն ծանուցանել զիրին ճշմարտութիւնն: Իսկ թէ պէտք իցեն յոլովութեան բանից, եւ ոչ յայնոսիկ հեղգամք, յայլ վասնորոյ քոյդ դարձեալ գրեաց առ մեծ ճոխութիւնդ հոգ յանձին բերեալ: Վասնորոյ յաշխարհէդ քո ուղեւորին արքայական քաղաքս, եւ առ սուրբ Թագաւորութիւնս խնամել ըստ պատահման պիտոյից, ոչ երբեք անփոյթ առնեմ: Զայսոսիկ բնաւորական եւ ազգակից հասարակաց, զոր ունիմք զբնութիւնն, ըստ որում ստեղծագործեցաք յարարչէն: Եւ զմեծութիւնդ քո հարկաւորաբար կրելով ի միասին գլխնդիր· այլ եւ Թագաւորութիւնս ըստ իւրում բարեկարգութեանս յաւէտ եւս ունի զնախախնամութիւնս· վասնորոյ բանս է:

Արդ այս ամենայն սուգապէս բանիւ, եւ աներկբայ խորհրդով ի մէ[ն]ջ գրեցաւ առ քոյդ պատուականութիւնդ: Ըստ որում եւ ի քէն յուսամք ստուգապէս, եւ ճշմարիտ խորհրդածութեամբ հանդիպիլ հաւատով, եւ սիրով ծառայել յամենակալի, եւ մտերմաբար սիրոյն կապակցութեամբ ըստ հանճարեղ քո մտացդ պայծառաբար միշտ վայելչացուցանել առ մեզ: Իսկ զխնամակալութիւնն իբրեւ զհայր եւս առաւել բարձրագոյն մնալ, առ որ սիրելի է քոյդ մեծութիւնն, որ եւ զնուաճեալսդ ընդ ձեռամբ քո խնամէ մեծ Թագաւորութիւնս, անմոռաց կրելով ի միտս զքո հնազանդութեան սպասաւորութիւնն, որ մերձ կացուցանեն զքեզ սուրբ Թագաւորութեանս, եւ բարձրագոյն իշխանութեանս Աստուծոյ տուեցելոյ, անխախտաբար, եւ անդրդուելի գոլով, ոչ երբեք կրելով ի միտս քո յանվայելչական կարծեացն, այլ եւ սիրով առաւելեալ եւ հաստատեալ. եւ ոչ երբեք



խոտորեալ, որով եւս քան [զ]եւս հանդիպիս ճոխութեան, նախ յԱստուծոյ, պահպանական շնորհիւն ամրացեալ ի թշնամեաց, եւ յորոգայթից պահպանեալ պատահմանցն, զկնի եւ յորթոտոքսաց սուրբ Թագաւորացն, զերկաքանչիւրսն ժառանգելով, զայժմուս եւ զհանդերձեալսն, ի ներկայումսդ ասեմ եւ յապառնիսն, բարեխօսութեամբ փառաւորելոյ Տիրուհւոյն եւ Աստուածածնին, հանդերձ ամենայն սրբովք:

Առաքեցաք քաջատոհմութեան եւ մեծանձնութեանդ քո յիշատակ օրհնութեան ի պաշտպանեալ աստուածընկալ պատուական խաչէս:



# ՂԱ

## ՊԱՏԱՍԽԱՆԻ ԹՂԹՈՅՆ ՓՈՏԱՅ· ԳՐԵԱԼ ՍԱՀԱԿԱՅ ՀԱՅՈՑ ՎԱՐԴԱՊԵՏԻ, ՀՐԱՄԱՆԱՒ ԱՇՈՏԱՅ ՀԱՅՈՑ ԻՇԽԱՆԱՑ ԻՇԽԱՆԻ

*Քահանայապետ զգաւնացեալ պարկեշտ եւ առաքինասէր, որ ի Քրիստոս վարուք, Փոտ, վերադիտող Թագաւորական մեծ քաղաքիդ, Նոր Հռոմայ պատրիարգ, Աշոտ իշխանաց իշխան Հայոց Մեծաց։*

*Զգիր հանճարեղ խոհականութեանդ ձերոյ, ո՜վ Աստուածարեալդ, ընթերցայ, եւ յոյժ ուրախութեամբ բարեբանեցի զերկնաւորն զՔրիստոս, զփրկիչն մեր եւ զկեցուցիչ յաւէտ կենդանութեամբ, զսրբութիւնդ ձեր տեսանելով պաշտպանեալ, այլ եւ զնախնականդ առ միմեանս զսիրոյն կապակցութիւնս, զորս ներբողական բանիւ յիշատակեալ էիք։ Շնորհ բազում ունիմ եւ կալայց ձերում սրբութեանդ, այլ ես ստորերկրայս, որ միշտ ի խոնարհ ունիմ աշխարհական խորհրդածութեամբ ըմբռնեալ եւ ի նիւթականիս ցանկ, անվարժ գոլով առ տեսութիւն երկնային գեղեցկութեանն եւ պայծառութեան արուսեկին, վասն բնաբար ունելով զ՚ի վայր նկատումնն այլ քոյդ մաքրատեսակ առաքինասէր անձն, հետեւեալ քննութեանց աստուածային գրութեանցն, եւ պատուի-*

------

*Բնագիր Ա· էջ 283 - 294։ Հմմտ· Ժէ· էջ 530 - 545։ ԻԱ· էջ 704ա - 717բ։*



*րանին որ մեզն աւանդեցաւ, եթէ՝ Յայսմ ծանիցեն իմ գոլ աշակերտք եթէ զմիմեանս սիրեսջիք։ Յիրաւի այսքան յորդորական եւ հանճարեղ բանիւք առ սիրոյն դաստիարակես կապակցութիւն, զոր եթէ ոչ ունիցիմք, ամենայն ձեւ պատկերին չրջեալ փոխեցաւ, նաեւ առանց աշխատութեան ամբարին սորայս առաքինութեան մասունք, որոյ դրուատիքն ոչ ի մարդկանէ, եւ ոչ ի ձեռն մարդոյ, այլ ի նոյն ինքն ահաւոր զաւրութեանցն։ Սէր զԱստուած իմացեալ, որում ոչինչ յէիցս համեմատի, այնմ բարձրութեան, եւ անզուգական շնորհացըն գոլ հաղորդ սիրոյն ունակութեամբ· եւ երանի թէ հաւատով եւս գոյր կապել զկապակցութիւն խոստովանութեան սուրբ եւ ճշմարիտ հաւատոյս, եւ ի միասին պայծառանալ, եւ միակրաւն ի տան Աստուծոյ բնակել։*

*Այլ վասն զի ոմանք հետեցին սուրբ եւ ճըշմարիտ ուղիղ խոստովանութեանն, աւանդեալ ի սրբոց առաքելոցն եւ զարգացեալ յերից սրբոց ժողովոցն, զոր գումարեցին երջանիկ եւ սուրբ Թագաւորքն ի լուծումն Արիոսի եւ Մակեդոնի եւ Նեստորիանոսի աղանդոյն, աստուածային ամբիծ հաւատոյն լինել վրէժխնդիր, զոր ոչ հանգոյն նոցա Մարկիանոս խորհեցաւ· այլ Թագաւորասաստ հրամանաւ գումարեաց զչորրորդ ժողովն ի կնոջէն իւրմէ Պողքերէ հրապուրեալ, որ երբեմն ջատագովըն էր Նեստորի· յորոց ոմանք յերկիւղէ եւ այլք ակնառութեամբ Թագաւորին հաւաքեցան, զոր ոչ է այժմ ըստ երկայնութեան բանից ասել, մանաւանդ թէ մասն ինչ ծանուցանել քոյդ սրբութեան՝ ոչ զանխուլ ի մէնջ գոլ զպատճառս ժողովոյն։ Եւ վասըն զի ի թղթի աստ նախակարգեալ էր քոյդ սըրբութեան զչորրորդ ժողովոյն յիշատակ, եւ ի թիւ*

*երից սրբոց ժողովոցն կարգեալ, եւ զնոյն եւ ի մէնջ խնդրեալ զընդունելութիւն, զոր ոչ ընկալան հարքն մեր եւ վարդապետքն, ծանուցեալք զնոցա աւտարաձայնութիւնս, եւ զլուծումն սահմանաց ժողովոցն, զոր աւանդեցին ընդհանուր մի Տէր եւ Որդի զՔրիստոս քարոզելով աշխարհի, միացեալ յերկուց բնութեանցն անշփոթ եւ անքակ միաւորութեամբ, զոր սոքա յերկուս բաժանեցին բնութիւնս եւ ներգործութիւնս եւ կամս, Նեստորական մոլորութեանցն հետեւեալք։ Բայց զոր միաւորեալ ասացին, եւ այնու զպարզամիտսն հրապուրելով ի բաց լինել ինքեանց ի Նեստորական աւանդիցն, զոր եւ առընթեր բանիս կարգեսցուք զսահմանս երկաքանչիւր դաւանութեանցն, զՆեստորին ասեմ եւ զՔաղկեդոնին հանդերձ Լեւոնական տումարիւն, յորոյ վերայ կառոյցն իսկ ժողովն Քաղկեդոնի զսահմանս աւտարոտիս եւ խորթաբարոյս իւրոյ խոստովանութեանն։*

*Գրէ Նեստոր յիւրում գլխաւորագոյն տրամաբանութեան հաւատոյն բանի այսպէս· Ես անփոփոխելի եւ անայլայլելի բանին Աստուծոյ երկու բնութիւնս խոստովանիմ· Աստուած ճշմարիտ յԱստուծոյ ճշմարտէ, եւ մարդ կատարեալ ի զաւակէ Դաւթի եւ Աբրահամու։ Գրէ Լեւոն յիւրում տումարին· Աստուած խոստովանիմ ըստ այնմ ըստ որում ի սկզբանէ էր Բանն, եւ Բանն էր առ Աստուած եւ Աստուած էր Բանն· եւ մարդ խոստովանիմ ըստ այնմ ըստ որում՝ Մարմին եղեւ եւ տաղաւարեաց ի մեզ։*

*Գրէ Նեստոր· Ոչ բանն Աստուած հանդերձեցաւ պատանաւք ի Յովսեփայ, այլ մարմինն ի Յովսեփայ։ Գրէ Լեւոն Մինն փայլէր նշանագործութեամբ, եւ միւսն ընդ չարչարանաւքն ստորանկեալ։*



*Գրէ Նեստոր· Բանն մարմին եղեւ եւ տաղաւարեցաւ ի մեզ։ Գրէ Լեւոն, Իմաստուն շինողին իւր տուն· զի Բանն մարմին եղեւ եւ տաղաւարեաց ի մեզ։*

*Գրէ Նեստոր· Զերկակսն առ Քրիստոս որոշեմ բնութիւն, զի կրկնակ ահա բնութեամբ, իսկ արժանաւորութեամբ մի։ Գրէ Լեւոն, քաղցնուլն, (եւ) ծարաւելն, վաստակելն, ննջելն, խոստովանաբար է մարդոյ, այլ ի հինգ հացէ զհինգ հազարսն կերակրեալ եւ յագեցուցեալ, եւ Սամարուհւոյն զկենդանական ջուրն շնորհեալ, եւ ի վերայ մկանանց ծովուն ճեմելն, եւ զկոհակս այտմանց ծովուն վերասաստելով մրրկին խաղաղացուցանել, աներկբայապէս է Աստուծոյ։*

*Տեսեր, ո՛վ սիրելութիւն, զհամաձայնութիւնդ Նեստորի ընդ Լեւոնի, առ բնութեանցն զանազանութիւն եւ ներգործութեանցն յատկութիւնս։ Արդ՝ զի՞նչ աստանաւր իմասցուք, որ ստիպիմ ի քոյդ սրբութենէդ ընդունել զժողովն Քաղկեդոնի։ Տեառն մերոյ ասացեալ է, Որ սիրէ զհայր կամ զմայր առաւել քան զիս, չէ ինձ արժանի։ Արդ ո՛չ կարեմք զՔաղկեդոն սիրել զբաժանողն յերկուս զմի Քրիստոսն, եւ զՔրիստոս ատել, որ իւրովն փրկեաց ըզմեզ պատուական արեամբն։*

*Յիշատակեցից դարձեալ նոյն ինչ եւ ի Քաղկեդոնական սահմանացն հաւատոյ, եւ առընթեր զսրբոյն Կիւրղի, եւ տեսցուք թէ ունի՞ն ինչ առ միմեանս զհամեմատութիւնս։ Գրէ ժողովն Քաղկեդոնի, եթէ՝ Ոչ եբարձ զբնութեանցն զանազանութիւնս վասն միանալոյն· այլ առաւել ողջ պահեաց զյատկութիւն երկաքանչիւրոցն բնութեան։ Գրէ սուրբն Կիւրեղ յառաջնում թղթոյն Սիւնկի-*

սոսի. Մի ասեմք Որդի որպէս եւ հարքն ասացին, մի (է) բնութիւն բանին մարմնացելոյ։ Արդ՝ զի՞նչ հաղորդութիւն կայցէ Քաղկեդոնի ընդ Կիւրղի, զի զոր նա մի բնութիւն միաւորեալ յերկուցն սահմանեաց ըստ սուրբ ժողովոյն Եփեսոսի, Քաղկեդոն յերկուս բնութիւնս որոշեալ սահմանեաց։ Եւ վասըն զի ոչ ի թղթի աստ փոյթ զսրբոց վարդապետացն եւ զհարցն ընթերցաք զպիտառութիւնս, եւ ոչ մեք կարգեցաք՝ յորոց ունէաք զբազումս. այլ միայն ըստ քոյին խնդրոյս, ո՛վ սիրելութիւն, կարգեմք զպատասխանիսս։

Արդ՝ վասն զի գրեցաւ ի քոյդ սրբութենէդ առ մեզ, եթէ՝ Որք մի ասեն ի Քրիստոս բնութիւն՝ Եւտիքեանք են, եւ զնորայն ընկալցին զհատուցումըն. աստանաւր ո՛չ ուղիղ դատեցար, վասն զի ամպարիշտն այն Եւտիքէս մի բնութիւն ի Քրիստոս ըստ փոփոխմանն ասաց, տալով աւրինակ այսպիսի ինչ. Որպէս անգործ ոսկի ի պատկեր ի ձեռն գործաւորութեանն երկաթեայ ձեւացեալ, եւ զնկարագրութիւնն միայն յերկաթոյն ընկալեալ յինքն, այլ ոչ ի նիւթոյ երկաթոյն ընկալեալ յինքն, այսպէս եւ ոչ Տեառն մերոյ յԱստուածածին կուսէն Մարիամայ բնութիւն մարդկային ինչ ընկալեալ, այլ մնալով յորովայնի կուսին փոփոխումն միայն աստուածային բնութեանն ի մարդկութիւն գործեաց։ Տեսե՞ր զամպարիշտ մտացն զչարաչար խորհուրդն եւ զդաւաճանող խորամանկութիւնն, թէ յո՞րպիսի հայհոյութեան յանդունդս գլորեցաւ։ Արդ զի՞արդ հաւանեալ քո ամենակատար գիտութիւնդ ի մեզ յարել զայդպիսի աւտարոտի խորհուրդ զրաբանութեան առ ի չարահամբաւել զմեզ, որ ոչ վայել է քո սրբութեանդ, զոմն նզովեալ եւ յաստուածային ընկեցեալ յարկացն ի մեզ յա-



րելով։ Վասնորոյ եւ ասեմք, եթէ որք այդպիսի խորհրդածութեամբ ասեն ի Քրիստոս մի բնութիւն, եւ կամ ընդունին զնորա վարդապետութիւնըն, ընդ նովին նզովիւք փակեալ մնասցեն յաւիտեանս ժամանակաց։

Եւ արդ՝ ընդարձակագոյն բանիւ ասասցուք զմեր դաւանութիւն, ըստ որում Մի ասեմք ի Քրիստոս բնութիւն, որ եւ ամենեցուն քաջայայտ է։ Ապաքէն մի բնութիւն յերկուս դէմս իմանի եւ ասի. քանզի է՛ որ ըստ պարզութեան է մի՛ որ ոչն է յաւդական, որպէս Գաբրիէլ եւ Միքայէլ. եւ է՛ որ ըստ յաւդաւորութեանն է մի, որպէս Ադամ եւ Նոյ։ Արդ եթէ ըստ այնմ ասէաք ի Քրիստոս մի բնութիւն ըստ որում պարզն է, ոչ էր ի դէպ ասել նմա Աստուած մարդացեալ։ Իսկ եթէ ըստ այնմ ասասցուք, ըստ որում յաւդականն մի բնութիւն, ոչ լինի բարձումն Աստուածային կամ մարդկային բնութեանն։ Արդ եղիցի մեզ աւրինակ մարդս. որպէս ի վերայ սորա ասի որ ինչ անկ է մարմնոյ, եւ որ ինչ մարթ է հոգւոյ։ Բայց մարդն ոչ ասի երկու բնութիւնք՝ այլ մի։ Իսկ եթէ ոք ընդդէմ եկեալ երկուս ասիցէ բնութիւն Քրիստոսի, երիս լինի հաստատեալ. երկուք մարդկային եւ մի աստուածային։ Արդ զո՞ր յերիցն զմինն կամին բառնալ՝ երկուսն ասելով ըստ այսմ բնութեան, զի եթէ զմարմինն, այնպիսին Եւտիքեան է։ Իսկ եթէ զհոգին մարդկային, Ապողինարիտ է։ Իսկ եթէ զԱստուածայինն, նման է Հրէիցն որք ասէին՝ դու մարդ ես, եւ զանձն քո Աստուած առնես։

Եւ արդ ի հանդիսի անցուցաք զոր ասեմքս մի բնութիւն ըստ միաւորութեանն երկուց ան-

շփոթ բնութեանցն։ Եւ վասն զի յորժամ զմարդոյն զգոյացութիւնն ի կիր առնու աստուածային պատմութիւնն, երբեմն զհոգին յիշէ միայն՝ ասելովն՝ ի պատկեր Աստուծոյ արար զմարդն, եւ երբեմն զմարմինն միայն՝ ասելովն, Հող էիր եւ ի հող դարձցիս· եւ այն՝ վասն երկուց բնութեանցն ըզմիաւորութիւն ունելոյ։ Դարձեալ զի երբեմն զհոգին յիշելով, զմարմինն նշանակէ, եւ զմարմինն յիշելով զհոգին նշանակէ· որպէս յորժամ ասէ, Մի հոգայք վասն հոգւոց ձերոց թէ զինչ ուտիցեն կամ զի՞նչ զգեցցին· զհոգիսն յիշելով, զմարմինն նշանակեաց։ Եւ դարձեալ ասէ· Ո՞չ գիտէք թէ մարմինք ձեր տաճար են Աստուծոյ· զմարմինսն յիշելով զհոգիսն նշանակէ· զի ի հոգիսն բնակէ Աստուած։ Դարձեալ ասէ· Եւթանասուն եւ հինգ ոգի մտին յԵգիպտոս· զհոգիսն յիշելով զբոլոր մարդիկսն նշանակեաց։ Եւ դարձեալ թէ, Առ քեզ ամենայն մարմին եկեսցէ· զմարմինսն յիշելով, զբոլոր մարդիկն նշանակեաց։

Այսպիսի աւրինակաւ գիրք սուրբք եւ ի վերայ Քրիստոսի Աստուծոյ միաւորեալ բնութեանցն ասեն, որպէս յորժամ գրէ առաքեալն, Քրիստոսիւ եղեւ ամենայն որ ինչ յերկինս, եւ որ ինչ յերկրի, զաստուածութիւնն միայն նշանակելով։ Դարձեալ գրէ ասելով· Մի է միջնորդ Աստուծոյ եւ մարդկան, մարդ Յիսուս Քրիստոս, զմարդկութիւնըն նշանակելով։ Եւ այսոքիկ եւ վասն յերկուց բնութեանցն անորիշ զմիաւորութիւնն ունելոյ։ Դարձեալ զի զաստուածութիւնն յիշելով՝ զմարդկութիւնն նշանակէ, եւ զմարդկութիւնն յիշելով՝ զԱստուածութիւնն նշանակէ, որպէս Յովհաննէս ասէ· Որ էրն ի սկզբանէ զորմէ լուաքն, որում ականատեսն իսկ եղաք, եւ ձեռք մեր շաւշափեցին



ի վերայ Բանին կենաց· զտեսեալն եւ զշաւշափեալն ասելով, զաստուածութիւնն նշանակեաց, զի առ Հաւր, եւ ընդ Հաւր Բանն էր· եւ շաւշափեալն մարմինն։ Դարձեալ ասէ, Ոչ ոք ել յերկինս՝ եթէ ոչ որ էջն յերկնից որդին մարդոյ որ էն յերկինս· զորդին մարդոյ յիշելով՝ զՈրդին Աստուծոյ նշանակեաց։ Զայս ամենայն գործէ անճառ միաւորութիւնն։

Արդ՝ ոչ ի վերայ սոսկ մարդոյ ասեմք, որ ինչ ի ծննդենէն մինչեւ ցհամբարձումն, եւ ոչ ի վերայ մերկ աստուածութեանն, զի մերկ Աստուած ոչ տեսանի, եւ ոչ շաւշափի, եւ սոսկ մարդ ոչ կարէ ասել թէ՝ Յառաջ քան զլինելն Աբրահամու եմ ես։ Եւ ոչ եթէ զփառսն՝ զոր ունէի յառաջ քան զլինելն աշխարհի։ Այլ ասեմ զայսոսիկ ի վերայ Բանին մարմնացելոյ, որովք հետեւին նմա երկուք նշանակութիւնքն, այլ ոչ որոշին կիրքն եւ ներգործութիւնքն երկուց բնութեանցն, զի յորժամ որոշեմք զբնութիւնսն, գան ընդ նոսա եւ երկաքանչիւրքն յատուկքն բնաւորաբարք ըստ Նեստորի մոլորութեանն։

Դարձեալ վասն որոյ գրեաց սրբութիւնդ քո թէ՝ Հիւանդամիտք են, որ զկնի պատարագելոյն զփրկիչն մեր Յիսուս Քրիստոս եւ ականատեսք լինելոյ, մի ասեն բնութիւն։ Մեք յորժամ մատուցանեմք զպատարագն կենսաբեր, ոչ իբրեւ լոկոյ իմն մարդոյ մարմին եւ արիւն գոլ ասեմք, զի լոկ մարմինն կենդանութիւն տալ ոչ կարէ, որպէս ասաց Փրկիչն թէ՝ Մարմին ինչ ոչ աւգնէ, հոգին է կենդանարար։ Այսու իմանի թէ է կենդանարար, որպէս փրկիչն ասաց, թէ՝ Որպէս առաքեաց զիս կենդանին Հայր, կենդանի եմ ես վասն Հաւր, եւ Որ ուտէն զիս եւ նա կեցցէ վասն իմ։ Իմաստու-

*թեամբ նայեսցուք ի խորհուրդ բանիս, վասն զի ի Հաւրէ առաքեալ Բա՛նն է, եւ կերեալ յերկրի մարմինն։ Արդ եթէ բաժանեալ են բնութիւնքն որպէս ասէք, յայտ է եթէ ճաշակողքն զԲանն ուտեն, զկենդանի զառաքեալն ի Հաւրէ, ըստ որում ասացն թէ՝ Որ ուտեն զիս, զոր սարսափելի է իմանալ. իսկ եթէ զմարմինն ուտեն, եւ մարմինն կենդանարար է, յայտ է թէ միաւորեալ է ընդ առաքեցելոյն ի Հաւրէ, եւ ոչ ունի բաժանումն։*

*Դարձեալ ոչ փոքր ինչ հիացայ վասն որոյ գրեցէք ի թղթի աստ, եթէ յորժամ խառնումն ասիցէք ի վերայ Քրիստոսի երկուց բնութեանցն, յայտ է թէ եւ ոչ մինն եկաց մնաց յիւրութեանն, այլ լուծեալք ի միմեանց դատարկացան. զի եթէ այս խառնեալ բնութիւնս ի Քրիստոս, որ ի Հաւրէ եւ ի Հոգւոյն սրբոյ է, յայտ է թէ Հաւր եւ Հոգւոյն բնութիւնն զխառնումն ունի ընկալեալ։ Իսկ եթէ յատկացեալ է Որդւոյ բնութիւնն առանձնաւորութեամբ եւ խառնեալ, յայտ է թէ ոչ ունի Որդի զՀաւր բնութիւն։ Լի են բանքս աղտեղութեամբ, զի եթէ ապականութեան խառնումն ասէաք ի վերայ Քրիստոսի բնութեանցն, որպէս ջուր ընդ գինի խառնեալ եւ երկոքին ի միմեանց լուծեալ, եւ կամ որպէս այլասեռ հրահալքն, զոսկին ասեմ եւ զարծաթն, եւ ի միմեանց ապականեալք, թե՛րեւս ի դէպ էր զոր ասէիրդ։ Իսկ եթէ արտաքոյ սորին է զոր ասեմք, զի խառնումն Բանին Աստուծոյ ընդ իւրոյ մարմնոյն, որպէս լոյս ընդ աւդ՝ կամ հուր ընդ ոսկի՝ կամ հոգի ընդ մարմին, անփոփոխք եւ անանջատք գոլով, ուրեմն ի զուր չարահամբաւէք զմեզ՝ պախարակելով զճշմարտութիւնն։ Սմին եւ մեծ եւ հռչակաւոր հռետորն Աստուածաբան վկայէ ասելով. Ո՛վ նոր խառնմանս, ո՛վ սքանչելի խառնուածոյս, արդարեւ նոր իսկ է աստուածութեանն ընդ մարդկութեանն խառնումն եւ սքանչելի խառնուած անեղի ընդ եղականի։*



*Դարձեալ նոր իմն գրէ երանելիս. քանզի մաքուր զնորա զաստուածութիւնն բերել ոչ է հնար, որ ի լինելութեան եւ յապականութեան է բնութիւնս, վասն այնորիկ եւ զանխառնելիսն խառնէ։ Գրէ եւ սքանչելագործ այրն Աստուծոյ եւ հաւատարիմ ծառայն սուրբն Գրիգոր՝ Լուսաւորիչն Հայոց. Ա՛յս է ճշմարիտ խոստովանութիւն, խոնարհեցաւ եւ խառնեաց զաստուածութիւնն ընդ մարդկութեանս, եւ զանմեռն ընդ մեռոտս։ Եւ դարձեալ ասէ. Կորոյս զչարն եւ պարտաւորեաց զմեղս աստուածախառն մարմնովն։ Եւ դարձեալ ասէ, Խառնեաց միացոյց զմարմինն ընդ աստուածութեանն։*

*Տեսէ՞ր, ո՛վ պատուական գլուխ, ո՛րպէս վկայեաց յաստուածազանիցն խառնումն եւ անշփոթ միաւորութեանն բնութեանցն որ ի Քրիստոս, ըստ որում եւ բազումս ունէի առ այս գրել, այլ քոյոյդ կատարելութեանդ բաւական համարեցաք ըստ իմաստնոյն խրատու՝ թէ տրամամիտն պատճառաւն բաւականասցի։*

*Դարձեալ խնդրելի է, թէ ընդէ՛ր սուրբ հարքն, երկուք այսմ վարեցան ձայնիւք, երբեմն խառնումն ասելով, եւ երբեմն միաւորութիւն։ Այլ վասն զի խառնումն ոչ ունի բաժանումն, եւ միաւորութիւնն ոչ ունի քակտումն, վասն այսորիկ երկոքումբքս այսոքիւք վարեցան բանիւք։ Քանզի որպէս որոշմունքն ոչ ունին խառնումն, այսպէս եւ ոչ խառնումն՝ ասի բաժանումն։ Եւ որպէս երկուութիւնն զմիութիւնն բառնայ, այսպէս եւ միաւորութիւնն բառնայ զերկուութիւնն. զի եթէ ոչ էր խառնեալ անշփոթաբար ընդ մարմնոյն, ընդէ՛ր*

ասեն՝ Մարմնացաւ։ Եւ եթէ ոչ էր միաւորեալ ընդ մարդկութեանն, զի՛արդ ասեն՝ Մարդացաւ, զի մարմնանալ եւ մարդանալ անմարմին էութեանն ասի, զի մարդն ոչ (եւս) կարէ այլազգ լինել, քան եթէ մարմնով։

Նաեւ այլ եւս իմն հրաշալի ընթերցաք ի թղթի աստ, եթէ ժողովն Քաղկեդոնի մի դէմս եւ երկուս բնութիւնս վասն այսորիկ ասաց ի Քրիստոս, զի մի ի Բանն Աստուած ընթասցին չարչարանքն։ Ծաղու ուրեմն արժանաւոր են բանք նոցա թերահաւատութեանցն։ Վասն զի զնոյն զայս բան եւ պիղծն Նեստոր ախտացաւ, այսպէս ասելով ընդդէմ մեծին Կիւրղի։ Եթէ յորժամ ասիցես բնութեամբ զմիութիւնն՝ ապա ի Բանն իսկ ընթանան վիշտքն։ Իսկ երանելին Կիւրեղ այսպէս պատասխանեաց· Եթէ վնասեսցի ուրեք բնութիւն մարդոյ կամ անդամ ինչ յանդամոց, կամ կուրասցի ակն, կամ հարցի այլ ինչ անդամ երկաթով, կամ ժանեաւք գազանի, խեղեսցի՛ն արդե՛ւք եւ ոգիքն։ Եւ ո՛չ, ասէ, երբեք։ Արդ՝ եթէ զսա միացոյց Աստուած ի մարմնի միաւորութեամբ բնութեանն, եւ առանց վշտանալոյ եւ խեղութեան եկաց մնաց յիւրում բնութեանն, վշտանա՛յր արդեւք Բանն Աստուած յիւրում բնութեանն, զխաչէն ասեմ եւ զամենայն վշտացն։

Գրէ դարձեալ եւ նոյն ինքն Կիւրեղ՝ Որպէս հրացեալ ոսկին եւ կռանահարեալ նիւթ ոսկւոյն ընդունի զկռանահարութիւնն, այլ ոչ եւ ընդ նմա միաւորեալ հուրն, սակայն ոչ որոշի եւ ոչ բաժանի յիւրում նիւթոյն· այլ յերեւել ոսկւոյն երեւի եւ հուրն, եւ յազդել հրոյն, ազդէ եւ ոսկին, եւ գտանին ամենեւիմբ մի, թէպէտ եւ ժամանակաւք գըտանին յարեալ ի միմեանս։ Այսպէս եւ աստուա-



ծութիւնն ընդ մարմնոյն իւրոյ, մանաւանդ թէ առաւել քան զայս։ Այլ եւ զայս եւս ծանիցէ քոյդ խոհականութիւն· վասն զի աւրինակն մասն ինչ նմանէ զճշմարտութիւնն։ Զի եթէ բովանդակ ճըշմարտութիւնն յաւրինակին գտանէր, նաեւ ոչ էր այնուհետեւ աւրինակն, այլ նոյն ինքն ճշմարտութիւնն վասն որոյ աւրինակն։

Ասասցուք դարձեալ ընդդէմ միւս եւս անընդրող բանիցն զոր ասեն, որպէս ընթերցաք, զըբնութիւնսն բաժանեալ եւ զդէմսն միաւորեալ անտեղի խորհրդով։ Զի եթէ բնութեանցն միաւորութիւն խառնակումն է, որպէս ասեն, ուրեմն(1) եւ դիմացն պարտի լինել, զոր մինն ասեն· վասն զի Առաքեալն երկուս դէմս գրէ, Որ ի կերպարանս Աստուծոյ էր, զկերպարանս ծառայի առ, կերպ եւ կերպ ասաց։ Արդ զո՞ր յերկուցն ախորժեն բառնալ դիմաց, ըստ որում մինն ասեն· զի թէ զաստուածութեանն, զՍաբելի ախտն ախտանան, իսկ եթէ զմարդկութեանն, զի՞նչ այն որ ի ճշմարիտ կերպարանս մարդոյ զՏէրն տեսանէին։ Արդ՝ կամ եղիցի դէմն ըստ միաւորութեանն մի՝ արտաքոյ չփոթման, որպէս էն ճշմարտութեամբ, այսպէս եւ բնութեանն միաւորութիւն մի՝ անչփոթաբար, եւ կամ բաժանելով զբնութիւնսն, բաժանեալ իմասցի եւ դէմքն, զի եւ ոչ ուրեք երբեք իմացողացն իմանի եւ ասի երկուք կատարեալ անձնաւորութիւնք ի մի դէմ· այլ իմացեալք թէ աստ երկուսն ասելով բնութիւնս եւ ներգործութիւնս եւ կամս, երկուս եւ զդէմսն եւս ասելով, երկու որդիք իմանին կատարեալք զանազանեալք ըստ Նեստորի չարափառութեանն· մինն ի Հաւրէ բնութեամբ Որդի,

------

(1) Տպ· որումն։

*եւ միւսն ի մաւրէ, շնորհիւ յարելութիւն եւ ճոխութիւն պատւոյ միայն ընկալեալ մարմնոյն ի Բանէն Աստուծոյ. որով իմանի Քրիստոս ինքն իւր Տէր եւ իւր ծառայ, այսինքն աստուածութեամբն՝ Տէր, եւ մարդկութեամբն՝ ծառայ։*

*Արդ զի՞րդ կամ ո՞րպէս երկրպագեն ծառային ընդ Տեառնն, եւ պաշտեն զարարածն ընդ արարչին, լուծանելով զսահմանս հաւատոյ սուրբ Երրորդութեանն՝ յոր մկրտեցանն, եւ կամ պախարակեն զայն, որ գնեացն զնոսա իւրով պատուական արեամբն։ Եւ վասն զի ընդ հմտագոյն եւ կատարելագոյն սրբութեանդ քո է բանս, բաւական զասացեալս վարկանիմք, եւ զայս միայն կամիմք ծանուցանել հեզահայեաց քոյդ տեսողութեան, եթէ յիսկզբան մերոյ սքանչելագործ Հաւրն եւ նախաշաւր վարդապետին Լուսաւորչին մերոյ սրբոյն Գրիգորի ուղղակի սահմանադրութեան ամբիծ հաւատոյն, որովք աշակերտեացն զՀայաստան աշխարհս, հանելով յաղջամղջին խաւարէ կռապաշտութեանն ի լոյս Աստուածգիտութեան, նշանագործ եւ հրաշալի զաւրութեամբքն, զոր կատարէր բազմաւրինակ հրաշագործութեամբքն, որ ոչ անհմուտ զքոյդ վարկանիմ ճոխութիւն, ոչ կարաց երբեք ուրեք մտանել հերձուած յաշխարհս Հայոց, այլ ի նմին ամբիծ հաւատս հաստատեալք անշարժ եւ անփոփոխք կացին մնացին, զոր շինեաց սուրբն այն ի վերայ առաքելական վիմին, զոր ոչ կարաց երբեք դրունք դժոխոց յաղթահարել՝ ըստ բանին Տեառն, մինչեւ ցայսաւր ժամանակիս, ոչ խոտորեալ յաջ կամ յահեակ, ուստի եւ ոչ պէտք եղեն նորաձայն վարդապետութեանց եւ ժողովոց՝ ի տեղիս տեղիս գունակ գունակ, որոց գիտեմք առ ի նորաձեւութեան կարգաց եւ սահմանաց հաւատոյ, որ կարգե-*



*ցաւ ազդեցութեամբ սուրբ Հոգւոյն, ընդ որ այժմ առաջի կայ անցանել դուզնաքեայ բանիւ՝ առ ի բացայայտել զոր ուսաք ի Քրիստոս փրկողն մեր զբարիոք դաւանութիւնն։*

*Եղիցի յԵւտիքիանոսացն յաւէտ բացակայութեամբ պիղծ յաղանդոյն լինել հեռաւորագոյն, որով կարծէք զմեզ չարահամբաւել։*

*Խոստովանիմք զՈրդին Աստուծոյ զԲանն Աստուած զէակից Հաւր եւ փառակից սուրբ Հոգւոյն, խոնարհեալ կամաւ Հաւր եւ սուրբ Հոգւոյն, բնակելով յորովայնի Աստուածածնին եւ միշտ կուսին, առեալ կատարելապէս զմերս բնութիւն, զհոգի եւ զմարմին եւ զմիտս, ոչ փոփոխելով զմարմինն յանմարմնութիւն, եւ ոչ Բանն Աստուած փոփոխեալ յանփոփոխելի յիւրմէ բնութենէն, այլ միաւորեալ ի մարմնի անշփոթապէս եւ անբաժանաբար, կրելով կամաւորաբար զամենայն կիրս մարդկայինս՝ բայց ի մեղաց, սուրբ եւ միաւորեալ իւրով մարմնովն, ըստ որում աւետարանականքն պատմեն ճշմարտապատում ճառքն. Նորա իւր գոլով բարձրագոյնք կրիցն եւ խոնարհագոյնքն, իւրացուցանելով զմարմինն եւ որ ինչ մարմնոյն, սովիմբ անշփոթ եւ անքակ մարմնով, խոստովանիմք զՈրդին Աստուծոյ զՔրիստոս կամաւորաբար չարչարեալ եւ մեռեալ, եւ իշխանաբար յերիր աւուր յարուցեալ։ Քրիստոս մեռաւ, ասէ, ըստ մեղաց մերոց, ըստ գրոց, եւ դարձեալ եթէ՝ Միայն ունի զանմահութիւն բնակեալ ի լոյս անմատոյց։ Մի Քրիստոս քարոզեաց աշխարհի եւ ոչ երկու, մինն մեռեալ եւ միւսն անմահ մնացեալ։ Զայս ինքն իսկ առաքեալն բացայայտեալ կնքէ. Մի է Տէր Յիսուս Քրիստոս որով ամենայն։ Եւ՝ Յանուն Յիսուսի Քրիստոսի ամենայն ծունր կրկնեսցի*

երկնաւորաց եւ երկրաւորաց եւ սանդարամետականաց։

Եւ եթէ՝ Յիսուս Քրիստոս երէկ եւ այսաւր նոյն ինքն է եւ յաւիտեանս։ Եւ՝ ոչ երկու բնութեանց բաժանեցելոց եւ չարընթացելոց, եւ զուգաճանապարհացելոց, իբրեւ հանգանակաւ բաշխել զբարձրագոյնսն։ Այլ միոյ Տեառն եւ փրկողի զմեզ Յիսուսի Քրիստոսի, իւրով անզուգական արեամբն զմերս դաւանելով փրկութիւն, զի մի՛ այլոյ պաշտաւնեայք լինիցիմք, եւ մի ասիցեմք թէ՝ ի բաց լեր ի մարմնոյդ, Բանդ Աստուած, զի երկրպագեցից քեզ· այլ ճշմարիտ աստուածապաշտք, ըստ որում միաւորեաց զհոգի եւ զմարմին եւ զմիտս, եւ եղեւ ճշմարիտ մարդ առանց փոփոխման եւ այլայլման, եւ ոչ զբեւեռումն որոշակի սոսկ մարդոյն ասացեալ ասեմ, ըստ բաժանմանն Նեստորի, եւ ոչ զդրախտն բանալ մերկ աստուածութեանն, զի եւ ոչ այլ ումն կախեալ զփայտէն, եւ այլոյ լեզուն որ զդրախտն աւազակին խոստանայ, այլ մի եւ նոյն ինքն մարմնացեալ եւ մարդացեալ Աստուածըն Բան, որպէս յորժամ ասաց, Որ ետես զիս՝ ետես զՀայր· եւ յայտ է թէ մարմնովն տեսաւորեցաւ աշխարհի, այլ ոչ յատուկ աստուածութեամբն։ Արդ՝ յայտ է թէ ոչ Հայր մարմին ունի, եւ ոչ զՈրդի մերկ աստուածութեամբն տեսին, այլ զհայրենի բնութիւնն, ի մայրենի բնութեանն միաւորեալ ցուցանէր աշխարհի։ Ըստ որում եւ Յովհաննէս վկայէ թէ՝ Որ էն առ Հաւր՝ երեւեցաւ մեզ· ըստ որում եւ Թումայի շաւշափեալ եւ զգինահարեալ կողն՝ անորոշաբար Տէ՛ր եւ Աստուած վերակոչեաց։ Որում եւ մեք հետեւեալք առաքելական ճշմարիտ վարդապետութեանն, խոստովանելով ըզՔրիստոս անչփոթ եւ անբաժանելի մարմնով, մի



Որդի եւ Տէ՛ր եւ փրկի՛չ եւ կեցուցիչ եւ ազատիչ զմեզ իւրով անապական մարմնով եւ արեամբն· փառաւորեալ ընդ Հաւր եւ ընդ Հոգւոյն սրբոյ, յամենայն յանսպառ յաւիտեանս։

Յաւէտ հեշտութեամբ ընկալայ, ո՛վ պատուական գլուխ եւ հայր սուրբ, զառ ի քէն գրեալսդ, անխախտելի կալ մնալ մեզ ի սպասաւորական հնազանդութեան, սուրբ եւ աստուածապարգեւ թագաւորութեանդ, ըստ աստուածային գրութեանցն որ մեզ աւանդեցաւ, յորմէ ոչ երբեք խոտորեալ, քան եթէ միշտ ի նոյն խոկալով հնազանդութեան եւ սպասաւորութեան խորհուրդս, ցանկ սպասելով ազդեցեալ ինչ ի մեզ հրամանի ինքնակալ թագաւորութեանդ, զորս անսայթաք եւ առանց հեղգալոյ զփոյթ յաւժարութեանն արդիւնաւորիմք խորհըրդով եւ իւր վերնական շնորհացն ազդեցութեամբ։ Այլ եւ զքոյդ պատուական սիրելութիւնդ անընդմիջաբար ի խորհուրդս իմ յաւէտաբար կրեմ, զսիրոյն կապակցութիւն ըստ արժանաւոր քոյդ մեծութեան, եւ պարկեշտ եւ նազելի եւ մաքուր վարուց, ըստ որում հայցեմ ի նուիրական եւ մշտահայց յըղունակ քո աղաւթս եւ զմեզ յիշատակել՝ հայցելով յապենիազն Աստուծոյ, զի եւ ի մեզ կանխեսցէ զառատապարգեւ շնորհացն իւրոց զողորմութիւն։ Եւ խաղաղութիւնն Աստուծոյ վերահովանասցի ձերում սրբութեանդ, պահպանելով անվրդով յամենայնի զքոյդ արժանաւոր եւ պարկեշտ գլխաւորութիւնդ։

Աւրհնութեանս զոր առաքեալ էիք յաստուածընկալ եւ յամենայաղթ նշանէդ, խոնարհ երկրպագութիւն մատուցի, եւ շնորհակալութիւն յաւէտ մտաւս եւ վայելչական ողջունիւս։

----------

## ՂԲ

## ԹՈՒՂԹ ԳԱԳԿԱՅ, ՎԱՍՊՈՒՐԱԿԱՆԻ ՀԱՅՈՑ ԹԱԳԱՒՈՐԻ, ԱՌ ԿԱՅՍՐՆ ՅՈՒՆԱՑ ՌՈՄԱՆՈՍ, ՎԱՍՆ ՀԱՒԱՏՈՅ

*Հովուապետի հանդարտի եւ զգաւնացելոյ, ցածուն եւ պատուական վարուք ի Տէր, գլուխ եպիսկոպոսաց Նոր Հռոմայ, պատրիարգի յընթանուրս, Գագիկ ի ծննդաբանութենէ Սենեքերիմայ, երկրպագող սուրբ խաչիդ, եւ ծառայ սուրբ հայրապետիդ, ի Տէր խնդալ։*

*Գրել առ սրբութիւնդ ձեր ղանդաղելի է, եւ չգրելն զրկանք մեծ, այլ յաւժարութիւնս ստիպեաց զերկոսեանն ի բաց բառնալ՝ զդանդաղումն եւ զզրկանս, զի չէ փոքր զրկանք մերժել հեռանալ ի սուրբ հայրապետական խնամարկութենէ, եւ յարդիւնաւոր աւրհնութեանց եւ սրբամատոյց աղաւթից։ Զնոյն համարձակութիւն առ ի գրել առ սուրբ եւ քրիստոսապսակեալ թագաւորն եւ զընդունելութիւնն առ սուրբ հայրապետդ ապաստան արարի, զոր յակն առեալ ձեր հեզաբար՝ զիս ծառայ սուրբ եւ բարձրագահ արքեպիսկոպոսիդ, եւ առաքելաժառանգ պատրիարգիդ, եւ սուրբ թագաւորիդ քրիստոսեան աթոռաժառանգ աւանդապահի, զի բնաբար ունէաք, աշխարհս Հայոց զհնազանդու-*

------

*Բնագիր Ա. էջ 295 - 301։ Հմմտ. Ժէ. էջ 547 - 555։*
*ԻԱ. 717բ - 725բ։*



*թիւն կայսերական աթոռոյդ, եւ հայրապետական գահակալութեանդ, որպէս ցուցանեն գիրք պատմագրացն։ Զի ոչ միայն սիրողաբար հարկս հարկանէաք կայսեր, այլ եւ առ սուրբ հաւատոյն միաւորութիւն խոստովանութեան հաղորդս եւ հաւասարս գտանէաք։*

*Որպէս եւ մեծն Առիստակէս, որդի մեծի սըրբոյն Գրիգորի, ի սուրբ ժողովին ՅԺԸ սուրբ հայրապետացն, որ ի Նիկիա Բիւթանացւոց ժողովեալք առ ի կործանումն Արիոսի մոլորութեանն։ Նոյնպէս եւ մեծն Ներսէս յերկրորդ ժողովին ՃԾ սուրբ հարցն որ ի Նոր Հռոմ, աճապարեալ փութացան վասն պիղծ կատաղեալ Մակեդոնի յամառութեանն։ Դարձեալ որք յԵփեսոս Ասիա ժողովեցան Մ սուրբ հարքն վասն Նեստորի յիմարութեանն, որ թէպէտ ոչ ոք էր ի մերմէ աշխարհէս անդր հասեալ, սակայն երանելոյն Կիւրղի եւ Պրոկղի եւ Ակակայ զգուշացուցանող թղթովք փութացան հասին առ մեծն Սահակ եւ երանելին Մաշդոց, եւ միաձայնութեամբ ի մի ուղղափառ խոստովանութիւն վերագրեցան ընդ սուրբ հայրապետսն՝ ժողովեալք յԵփեսոս ծովահայեաց։*

*Իսկ վասն չորրորդ ժողովոյն, որ ոչ զմիաձայնութիւն յանձին ունին վարդապետքս Հայոց՝ հաղորդել ընդ ժողովոյն ՈԼԶ եպիսկոպոսացն, հարցի յառաջնորդաց մերոց, թէ ընդէ՞ր, եւ վասն ո՞րոյ պատճառանաց, մեկուսի զոլով ի նոցանէ, եւ այնու պատճառանաւ ի հայրապետական եւ ի թագաւորական խնամարկութենէն եւ յընտանեբար գթասիրութենէն աւտարացեղութիւն ի մէջ արկեալ լինի, եւ այդր աղագաւ ոչ ուղղակի սուրբ հայրապետքն եւ սուրբ թագաւորքն զնայեցածսն առ աշխարհս Հայոց բացակարգեալ գլխաւորեն։*

*Պատասխանի տուեալ ասեն, Վասն զի ընդդէմ երից ժողովոցն գտաք զվարդապետութիւնն նոցա· եւ բացեալ զգիրս ամբաստան լինէին, ասելով թէ Նեստորաբար իմացմամբ սահմանեցին յետ անճառ միաւորութեան Բանին եւ մարմնոյն՝ երկու բնութիւնս բաժանաբար ի մի Տէր Յիսուս Քրիստոս խոստովանեցին, եւ երկուս կամս, եւ երկուս ներգործութիւնս, եւ զխաչն եւ զմահն մարդոյն միայնոյ սահմանեցին, եւ ոչ Աստուծոյ մարդ եղելոյ ի սուրբ կուսէն Աստուածածնէն, զոր ոչ աւանդեաց մեզ Լուսաւորիչն մեր սուրբն Գրիգոր հանդերձ այլաւք վարդապետաւք, զորս եդ Աստուած յեկեղեցւոջ, զոր սակաւ ինչ ի բազմաց գրեմ զասացեալս վարդապետաց մերոց ի գրոց սրբոց, նախ՝ վասն բնութեանցն միաւորութեանց, եւ ապա՝ վասն խաչի խորհրդոյ։*

*Գրէ Յուլիոս Հռոմայ հայրապետն առ Դիոնէսիոս այսպէս· Քանզի հարկ է զնոսա, որ երկուսըն ասեն բնութիւնս, զմին երկրպագելի, իսկ ըզմիւսն ո՛չ, յաստուածայինսն մկրտիլ, իսկ ի մարդկայինն ոչ մկրտիլ· իսկ եթէ ի մահ Տեառն մկրտեցաք, մի խոստովանիմք բնութիւն զանախտակիր աստուածութեանն եւ զախտակիր մարմնոյն, քանզի ի մահ նորա մկրտութիւն եւ ի մարմնոյն յարութիւն՝ (եւ) թողութիւն մեղաց տուեալ լինի։ Ասէ եւ Երինոս՝ հետեւողն առաքելոց· Որ եկն եւ մի բնութիւն Աստուծոյ եւ մարդոյն գործեաց, մեր ոչ կարացելոյ այլաւրինակաբար ինչ կցորդութիւն ընդունել զանապականութեանն, եթէ ոչ նորա էր եկեալ առ մեզ։ Ասէ եւ սուրբն Մելիտոս Անտիոքու եպիսկոպոս· Մի բնութիւն խոստովանիմք եւ երկու գոյացութիւնք, քանզի իմացեալ, եւ որպէս ճառեմք, զԱստուած Բանն, որ խաչեցեալ, որ Հաւրն*



*անապական Որդին՝ ի ձեռն անապական մահուանն իւրոյ, զառ ի մեզ զմահն խափանեաց։ Ուսուցանէ եւ Լուսաւորիչն մեր սուրբն Գրիգոր· Հաւատք ճշմարիտ այս են· խոնարհեցաւ աստուածութիւնն, եւ խառնեաց զմարդկութիւնն ընդ իւր աստուածութիւնն։ Եւ դարձեալ ասէ· Խառնեաց միացոյց ընկղմեաց զմարմինն յաստուածութիւնն։ Եւ դարձեալ ասէ· Քանզի միացաւ ի մարմնի բնութեամբ, եւ խառնեաց զմարմինն ընդ իւր աստուածութեանն։ Եւ այլ յոլովագոյնս դնեն առաջի իմ ճառս վարդապետականս Յունաց եւ յԱղեքսանդրացւոց վարդապետաց։*

*Հարցի դարձեալ վարդապետացս մեր· եթէ ընդէ՞ր դուք զԽաչեցարդ յերիս սրբասացութիւնսն սահմանէք· թերեւս սուրբ Երրորդութեանն ախորժէք զխաչն կազմել, որով յիրաւի խորշին եւ մերժին ի մէնջ իմաստունքն Յունաց։ Պատասխանի ետուն եւ ասեն· Քա՛ւ, մի լիցի· ոչ Երրորդութեանն զփառաբանութիւնս զայս վերաձայնեմք, այլ Որդւոյ միայնոյ· որպէս զմարդանալն ի կուսէն Որդւոյ միայնոյ հաւատամք, ա՛յսպէս զխաչն եւ զմահն Որդւոյ խոստովանիմք։ Քանզի մեծն Եսայի՝ զՈրդի ետես նստեալ ի վերայ աթոռոյ բարձրացելոյ, եւ նմա սերովբէքն աղաղակէին զերիս սրբասացութիւնսն, որպէս աւետարանիչն Յովհաննէս վկայէ· Վասն այսորիկ, ասէ, Ոչ կարէին հաւատալ ի Յիսուս, զի գրեալ է, կուրացոյց զաչս նոցա եւ ապչեցոյց զմիտս նոցա· զայս ասաց Եսայի զի ետես զփառս նորա եւ խաւսեցաւ վասն նորա։ Եւ այսր աղագաւ երիս սրբասացութեամբ զՈրդի փառաւորեմք խաչին խորհրդով։*

*Եւ ասեն եթէ վարդապետքն Յունաց, վասն զի ոչ ախորժեն զմարմինն Քրիստոսի ի փառս Եր-*

րորդութեանն բարձրացուցանել, եւ ոչ զԱստուած ասեն խաչեալ վասն աշխարհի, այլ մարդ սոսկ, եւ յարելութեամբ առ Բանն մերձեցուցեալ, որպէս Նեստորի եւ Թէոդորիտի եւ Պաւղէ Սամուստացւոյ եւ այլոց հաճոյ թուի։ Վասն այսորիկ մերձեցուցանել հաճոյ համարին առ հերձուած, զոր ոչ ծանուցեալ մեր, եւ ցուցանեն ի գրոց սրբոց այսպէս, առ բնութեանցն միաւորութիւն, որով ոչ սոսկ մարդ զխաչեալն խոստովանիմք, այլ Աստուած մարդ լեալ։ Եւ մատուցին առաջի իմ զիրս Սոկրատայ պատմագրի եկեղեցական շարածի, եւ ունէր յիշատակարան այսպէս. եթէ Յովհան Ոսկեբերան ընդդէմ Արիանոսացն կարգէ դասս պաշտաւնէից մի փառաբանութիւն եւ պատիւ տալով Հաւր եւ Որդւոյ եւ Հոգւոյն սրբոյ։ Իսկ յերեկոյս եւ ի վաղորդեան զերիս սրբասացութիւնսն միոյ անձնաւորութեանն սահմանեալ ի վերայ Որդւոյ ի կուսէ մարդ եղելոյ, որ խաչեցաւն վասն մեր, եւ երգէին Սո՛ւրբ Աստուած, սո՛ւրբ եւ հզաւր, սո՛ւրբ եւ անմահ, որ խաչեցա՛ր վասն մեր, ողորմեա՛ մեզ։ Եւ ասէ կարգեալ զայս յԻգնատիէ Անտիոքացւոյ. որ ասի լինել յեւթանասունն առաքելոցն։ Տեսանէ, ասէ, սուրբն Իգնատիոս զզաւրս երկնայինս՝ որ երիս սրբասացութեամբ զսուրբ Երրորդութիւնն փառաբանէին։ Զնոյն դարձեալ եւ ի վերայ Որդւոյ զերիս սրբասացութիւնն ընծայեցուցանէին։ Եւ սուրբ Լուսաւորիչն մեր ի կարգադրութեան սուրբ պատարագին զերիս սրբասացութիւնսն ի վերայ Որդւոյ կանոնեաց։

Զնոյն յարեն, եւ զառ ի վարդապետաց առաջնոց բանս առ ի հաւատարմութիւն իւրեանց աւանդեն մեզ։ Գրէ Յուլիոս Հռոմայ հայրապետն ի Պռոսդոկիոն թղթին. Որ միւս փառաբանութիւն ի



ներքս ածէ քան զՀայր եւ զՈրդի եւ զսուրբ Հոգին, եւ որ յաւելու միւս փառաբանութիւն քան զձայն սերովբէիցն, եւ որ զ'ի Մարիամայ մարմինըն ոչ խոստովանեսցին ներմարմին, Աստուած համագոյ Հաւր, եւ անախտակրին ախտակրութիւն. Նզովեա՛լ եղիցի։ Գրէ եւ Երինիոս՝ հետեւողն առաքելոց այսպէս. Որ ոք զատանէ զՅիսուս ի Քրիստոսէ, զոր եւ անչարչարելին ասեն, Բ անձինս յայտնեն, քանզի ոմն չարչարեցաւ, եւ ոմն անչարչարելի մնաց. ո՛չ մի, այլ երկու. բայց մի է ծնունդըն եւ չարչարեալն, եւ նոյն միածին Որդին Աստուծոյ, զոր ետ Հայր վասն անբաւ մարդասիրութեան իւրոյ աշխարհի։ Եւ դարձեալ Պաւղոս զայլ ոք ոչ գիտէ բայց զխաչեցեալն եւ զչարչարեալն եւ զմեռեալն եւ զյարուցեալն, զոր եւ մարդ իսկ ասէ։ Եւ Կիւրեղ Երուսաղէմի այսպէս ասէ. Ոչ եթէ մարդ ոք էր դուզնաքեայ որ չարչարեցաւն, այլ Աստուած որ մարմին զգեցաւ։

Արդ՝ եթէ մի է Քրիստոս, եւ ոչ երկու, ապա Աստուած է որ խաչեցաւն, եւ ոչ մարդ սոսկ. յաւէտ յիրաւի՛ փառաբանեմք երիս սրբասացութեամբըն որ խաչեցաւն վասն մեր։ Եւ Գրիգոր սքանչելագործ այսպէս ասէ. Ոչ եթէ այլ ոք է որ խաչեցաւն եւ այլ որ ոչ խաչեցաւն. եւ որ ոչ խոստովանի զառանց չարչարանաց Բանն իւրով մարմնովն չարչարեալ. Նզովեա՛լ եղիցի. Եւ Գրիգոր Նազազացի Աստուածաբան ասէ. Որ ոչ խոստովանեսցի զխաչելեալն գոլ Աստուած, Նզովեսցի, եւ կարգեսցի ընդ աստուածասպանսն։ Ի վերայ բերէ նոյն եւ ասէ. Յի՞մ մերժէք ի լինելոյ Աստուած ճշմարիտ զայն, որ ի կուսէն՝ Աստուած ճշմարիտ եւ չարչար-

*եալ· զի եթէ ոչ է Աստուած, որ ի կուսէն, եւ ա՛յլ ոմն է եւ այլ, ապա մինն միւսումն տէր հանդիպանայ եւ միւսն ծառայ, եւ արդ տեսցուք թէ ո՞վ է տէր եւ ո՛վ ծառայ։*

*Գրեալ է թէ՝ Հանէր Յիսուս զգիշերն ի գլուխ յաղաւթսն Աստուծոյ, որ մերձ ի խաչելն արդեւք մարմին Բանին առ ինքն Բանն աղաւթէր ի միում դիմի եւ անձնաւորութեան, զի մի՛ մատնեսցի խաչին, եւ մի դէմն՝ նոյն դէմի ծառայ եւ Տէր յարմարի, եւ ինքն զինքն աղաչեսցէ, քանզի ահա խոստովանութիւն ժողովոյն յայտ է, մի դէմ եւ մի անձն եւ Բ բնութիւն, բաժանաբար անհաղորդս ի միմեանց ունել Քրիստոսի։ Բայց արդ՝ զի՞արդ մի դէմ եւ մի անձն ապտակի եւ խաչի եւ Բ բնութիւն։ Արդ՝ զանձն եւ զդէմն, որո՞ւմ բնութեան պարտ է խոստովանել, աստուածութեա՞նն, եթէ մարդկութեա՞նն։ Զայս հարցեալ վարդապետքս մեր ի տարակոյս արկին զիս։*

*Դարձեալ ասէ Գրիգոր Աստուածաբան· Աստուած խաչեալ եւ երկիր շարժեալ, եւ դարձեալ պարտ էր արարչին չարչարակից լինել արարածոցըս։ Դարձեալ ասէ· Կարաւտացաք Աստուծոյ մարդանալոյ եւ մեռանելոյ։ Եւ դարձեալ ասէ, Արիւն Աստուծոյ եւ չարչարանս եւ մահ։ Այսպէս եւ Աթանաս Աղեքսանդրացի ասէ ի խաչին բանի այսպէս, ԶՊիղատոս այպանելոյ ինչ էր, այլ հաւատալոյ, եթէ ոչ զդատեալն գոլ Աստուած։ Եւ այլ անթիւ յոլովք գրոց եդին առաջի իմ, զոր աւելորդ համարեցայ երկարաբանել ի թղթի աստ, զի ոչ յուսուցանել կամ ի վարդապետել ձեզ առաջի արկի, զոր ինչ գրեցիդ, այլ քննել եւ ի միտ առնուլ զերկպառակութիւն՝ որ ի մէջ երկո՛ցունց ազգացս հաստատեալ կայ։*



*Ասեն դարձեալ· թէ նոքա ասեն, թէ երից սրբասացութեամբ ո՛չ վայել է փառս տալ միոյ անձնաւորութեան, բայց միայն սուրբ Երրորդութեանն, եւ Քրիստոս մի է յԵրրորդութենէն, եւ Երրորդութեանն միայն յարմարական գոլ սրբասացութիւնքն։ Ապա ուրեմն այլ է Քրիստոս եւ այլ Բանն Աստուած, եթէ այդպէս է, ապա ո՛չ՝ Մի Տէր Յիսուս Քրիստոս, որով ամենայն արարաւ, եւ ո՛չ Բանն մարմին եղեւ, եւ ո՛չ ԶՏէրն փառաց ի խաչ հանին, այլ զմարմինն Տեառն փառաց, եւ ո՛չ փառացն եւ զաւրութեանն անուն Քրիստոս, այլ կամ յատուկ Բանն Տէր փառաց, եւ ըստ բնութեանն սոսկ Աստուածութիւնն խաչեալ եւ չարչարեալ, եւ կամ սոսկ մարդն Տէր փառաց եւ Քրիստոս որ խաչեցաւն վասն մեր, եւ նմա կրկնեսցի ամենայն ծունր երկնաւորաց եւ երկրաւորաց, ապա եւ ամենայն մարդիկ երկրպագեալ եղիցին, եւ յաւելցի ա՛յլ փառաբանութիւն, որով փառաբանի խաչելեալն, եւ ա՛յլ որով փառաբանի Բանն յԵրրորդութենէն, որ ոչ ունի հաղորդութիւն բնութեամբ առ Բանն։*

*Դարձեալ համառաւտեն զբանն ասելով, թէ ոչ միայն մեք Հայք ոչ ընկալաք զսահման չորրորդ ժողովոյն, այլ նախ ինքեանք յինքեանս բաժանեալ այպանեցին զխոստովանութիւնն։ Աղեքսանդրացիքըն յինքեանս բաժանեցան եւ ընդդէմ կացին ժողովոյն· Դիոսկորոս եւ Պետրոս եւ Տիմոթէոս եւ Անատոլիս, եւ այլք յոլովագոյնք, եւ Երուսաղէմացիքն՝ թէպէտ եւ առ փոքր մի ունկնդիր եղեն Յոբնաղի, այլ յետոյ եւ նոքա քամահեալ յետս ընկեցին զսահման ժողովոյն, մինչեւ յաւուրս Յուստինոսի կայսեր, որ թագաւորասաստ հրամանաւ հաւանեալ հնազանդեցոյց։ Անտիոք Ասորւոց*

եւ որք ընդ նոքաւք՝ նոյնպէս եւ նոքա մերժեալ յետս ընկեցին զժողովն, մինչեւ ցայսաւր ժամանակի։

Հայք եւ Վիրք եւ Աղուանք միաձայն խոստովանութեամբ, ի ժամանակս Բաբգէնի Հայոց կաթուղիկոսի, ժողովեալ ի սուրբ կաթուղիկէն Հայոց, ընդ որս Գաբրիէլ Վրաց կաթուղիկոս, եւ ընդդէմ ժողովոյն միախորհ եղին ընդդիմակս, մինչեւ ցԿիւրիոն Վրաց կաթուղիկոս։ Զենոն կայսր Յունաց քամահեալ զժողովն Հենոտիկոն թղթովն, յաւժարագոյն զբոլոր թագաւորութիւնն Հռովմայեցւոց միաւորեաց ի բաց կալ ի սահմանէ ժողովոյն, եւ սահմանեալ շինեաց ի վերայ ԲԺ գլխոցն Կիւրղի Աղեքսանդրացւոյ վարդապետութեանն, յորոյ աւուրս Ակակ Կոստանդնուպաւլսի հայրապետն խնդրեաց ի Պետրոսէ Աղեքսանդրացւոյ զուսումն ուղղափառութեան, որ եւ ընկալեալ ի նմանէ, զոր ինչ եւ խնդրեաց՝ Ժ թղթովք եւ Ժ պատասխանաւք։ Անաստաս եւ Յուստիանոս եւ Յուստինոս կայսերք, եւ նոքա ի բաց բարձին զաւանդութիւն տումարին Լեւոնի եւ զկանոն ժողովոյն։ Ագաթոն Հռոմայ հայրապետ եւ Մաքսիմոս Կոստանդնուպաւլսի մոնազն, որ ծայրատեալ ի ձեռս եւ յոտս լուծին զնա ի կենաց որպէս զընդդիմակ ժողովոյն, զի հակառակս լեալ միմեանց յաւելլին ի սահման հաւատոյն ըստ իւրեանց մտացն հաճութեան, եւ ապա ի վերայ սպանմանն Մաքսիմոսի ընկալան ըզյաւելադրութիւնն։ Արդ եթէ ուղղակի խորհեցաւ Մաքսիմոս, ի զուր եղեւ ի մահ դատապարտեալ, եւ գտանին պարտականք արեան սպանելոյն. եւ եթէ ոչ բարիոք իմացաւ, ընդէ՞ր ապա զոչ ուղղագոյնսն յետոյ ի զղջումն եկեալ յանձն առին եւ տեղի ետուն քաջ ախորժելով։

Արդ բազում անգամ գրեալ է իմ ի թղթի աստ, ոչ փորձողականս կամ վիճողականս, այլ պատմողական, եւ ցանկացող կապակցութեան սիրոյ, եւ ծառայական հարկատրութեան առ բարեպաշտ թագաւորդ եւ առ սուրբ հայրապետսդ հաւատարմացուցանել, եթէ արդե՞ւք հնարաւորել ի բաց բառնալ զկրճիմն որ կայ ի միջի ըստ առաքելոյն Պաւղոսի, զցանկն քակել եւ զմիջնորմն յատակել, եւ զերկոսինն հաստատել ի մի նոր մարդ, յոր կոչեցաք ծննդեամբ սուրբ աւազանին։ Եւ յայնժամ կատարեսցին ասացեալք փրկչին ի կտակի աւուր նորոյ ուխտի, յորժամ տնտեսաբար ընդ Հաւր միակամութեամբ աղերսէր. Որպէս ես ի քեզ Հայր եւ դու յիս, կամիմ զի եւ սոքա ի մեզ եղիցին։ Ես ի սոսա եւ դու յիս, կամիմ զի եւ սոքա ի մեզ եղիցին։ Ես ի սոսա եւ դու յիս, զի եղիցին կատարեալք ի մի. եւ ոչ վասն սոցա միայն աղաչեմ, այլ եւ վասն ամենայն հաւատացելոց բանիւ սոցա յիս։



## ՂԳ

### ՏԵԱՌՆ ԽԱՉԿԱՑ ՀԱՅՈՑ ԿԱԹՈՒՂԻԿՈՍԻ, ԲԱՆ ԽՈՍՏՈՎԱՆՈՒԹԵԱՆ, ՊԱՏԱՍԽԱՆԻ ՅՈՒՆԱՑ ԳՐՈՅՆ՝ ԶՈՐ ԱՐՁԱԿԵԱԼ ԷՐ ԱՌ ՆԱ ՄԵՏՐՈՊՈԼԻՏՆ ՄԵԼԻՏԻՆՈՅ։

### *Ի ԼՈՒՍԱՆՑՍՆ՝* ԹՈՒՂԹ ՍԱՄՈՒԷԼԻ ԿԱՄՐՋԱՁՈՐԵՑՈՅ ՀԱՅՈՑ ՓԻԼԻՍՈՓԱՅԻ, ՊԱՏԱՍԽԱՆԻ ԹՂԹՈՅՆ ԹԷՈԴՈՐՈՍԻ ՄԵՏՐՈՊՈԼՏԻ ՄԵԼԻՏԻՆՈՅ, ԳՐԵԱԼ ՀՐԱՄԱՆԱՒ ԽԱՉԿԱՑ ՀԱՅՈՑ ԿԱԹՈՒՂԻԿՈՍԻ

*Բերաւ գիր ողջունաբեր առլցեալ իմաստայեղձ քննութեամբ, եւ բազմահանճար խոհականութեամբ։ Գիր մեղադրական եւ հաւատաբանութեան եւ հրաւիրականի ի ձերմէ Սրբութենէդ։ Սիրելի եղբայր եւ պատուական գլուխ եպիսկոպոսաց, Տէր Թէոդորոս մետրոպոլիտ մայրաքաղաքիդ Մելիտինոյ, առ մեզ Հայաստանեայս՝ ի հայրապետական Աթոռ սրբոյն Գրիգորի, եւ սրբոց առաքելոցն Բարդուղիմէոսի եւ Թադէոսի, առ իմ նուաստութիւնս, որ շնորհաւքն Աստուծոյ եմ տեղապահ առաքելական աթոռոյս, նոցին աշակերտ եւ որդի կրտսեր, ողորմութեամբն Աստուծոյ Կաթուղիկոս Հայոց Մեծաց։*

*Ընթերցեալ վերահասու եղաք բովանդակ գրելոցս ի սմա եւ յո՛յժ ուրախացաք ընդ ձեր բա-*

------

*Բնագիր Ա․ էջ* 302 - 322։



*րեմտութիւնդ, որ տիրաբար մտաւք կամիք, զի ամենեքեան կեցցեն, եւ ի գիտութիւն ճշմարտութեան եկեսցեն. զի իբրեւ զքաջ հովիւ զհետ ընթացեալ որպէս մոլորելոց, հրաւիրեալ էք զմեզ թղթովս ընդ այլ հեթանոսս ի կաթուղիկէ եկեղեցի՝ ի հաւատս ճշմարիտս՝ եւ առ ի գաւազանն երկաթի որ մանրէ զաշխարհս։ Բարի է հրաւէրդ, եղբայր սիրելի, բայց անագան է յոյժ. այլք նախ քան զքեզ եւ քան զբազումս հասին առ մեզ հրաւիրակք ի սուրբ Հոգւոյն, առաքեալք եւ մարգարէք եւ աւետարանիչք, եւ նոցուն աշակերտք հրաւիրեցին զմեզ կանխաւ, եւ մուծին ի հարսանիսն երկնաւոր առ փեսայն Քրիստոս՝ յեկեղեցիս Աստուծոյ կենդանւոյ, ի հաւատս ամբիծս եւ անարատս, եւ ի գաւազանն, որ յառաջ քան զարեւ բուսաւ յանեղ լուսոյն, եւ յարմատոյն Դաւթի դարձեալ շառաւիղեաց ի վեր քան զբնութիւնս Քրիստոս Թագաւորն, նա հովուէ զմեզ յեկեղեցւոջն իւրում, եւ հովուեսցէ մինչեւ յաւիտեան։*

*Այլ եւ յերկաթի գաւազանէն մեք ոչ եմք ապստամբք, այլ ընդ նովաւ եմք նուաճեալք, եւ զաւրութիւն մեծ գաւազանին, զոր կոչես երկաթի, է՛ ազգս Հայոց, եւ սովաւ վանէ զաշխարհս։ Բայց դու ոչ բարիոք գործես, զի ոչ միայն ի մետասաներորդ ժամուն, ըստ աւետարանին, այլ ընդ երեկըս կամ թէ ի մէջ գիշերի տաս զհրաւէրդ, որ թէ եւ փութասցուք ի կոչդ քո հասանել, ոչ ժամանեմք յաւթեւանսն. զի մերձեալ է ժամանակ դատաստանին, եւ դատաւորն առ դուրս հասեալ կայ, այսուհետեւ հանդիսից եւ քրտանց, եւ ոչ հրաւիրման է ժամանակ։ Դադարեա՛, ո՛վ սիրելի, յայդմ խնդրոյ, թո՛ղ զմեզ եւ երթ լե՛ր աւետարանիչ քարոզ եւ հրաւիրակ այնոցիկ, որ ոչ ճանաչեն զԱստուած, եւ*

ոչ հնազանդին աւետարանին փառաց Տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի, զի զբարեացն առցես զհատուցումն, եւ մի՛ ջանար շինել ի վերայ այլոյ հիման, զի մի՛ անվարձ մնասցես։

Վասն զի մեք վաղ ուրեմն ընկալաք զլոյս գիտութեան սրբոյ Երրորդութեանն, եւ հաւատովք Որդւոյն Աստուծոյ կնքեցաք ի մի յոյս կոչման մերոյ, միով հոգւով ի Քրիստոս միացեալ, միոյ Աստուծոյ ընծայեցաք յորդեգրութիւն ի ձեռըն սրբոյն Գրիգորի, որ իբրեւ զարեգակն ծագեալ յարեւմտից, առաքելաջան հանդիսիւ լուսաւորեաց զարեւելեայս Երրորդութեանն ճառագայթիւք. յինքն լցեալ զպակասութիւնն նեղութեանցըն Քրիստոսի։ Երկնաւոր նահատակութեամբն ետ զձայն իւր ընդ ծագս երկրի. եւ զորոտումն բանին կենաց ի մեզ հնչեցուցեալ՝ տեղալով զանձրեւ քաղցրութեան Հոգւոյն սրբոյ, ելոյծ զամպարշտութեանն կռապաշտութիւն՝ զչար ձմեռն, եւ փարատեաց զխաւարն մեղացն, ծագեաց ի մեզ զքաղցր ճառագայթ տիեզերածաւալն լուսոյ աւետարանին, եւ ետ մեզ պարգեւ զպաշար ճանապարհին կենաց, զքաղցրուսոյց վարդապետութեանն իւրոյ զբանսն, որ միաբանի առաքելոց եւ մարգարէից եւ ամենայն տիեզերախաւս վարդապետաց եկեղեցւոյ սրբոյ. նա շինեաց զեկեղեցի Հայաստանեաց ի վերայ հիման առաքելոց եւ մարգարէից, եւ լցոյց աստուածեղէն կրաւնիւք առաւել եւս քան զայլոց ազգաց հաւատացելոց։ Բազում ինչ աւանդութիւնս եւ կրաւնս աստուածայինս առաքելաբար հրաման ետ պահել իւրում եկեղեցւոյ, ինքն գոլով վկայ ճշմարիտ՝ խոստովանող, եւ առաքեալ եւ աւետարանիչ Միածնին, առ ի նմանէ՝ լուսաւորեալ մեք։ Ընկալաք դարձեալ զնոյն հաւատ առաքելական ի



սուրբ հարցն երեք հարիւր եւ տասն եւ ութիցն որ ի Նիկիա, ի ձեռն սրբոյն Արիստակէսի նորին որդւոյ, զոր ունիմք առանց յաւելման եւ պակասութեան։ Նոյնպէս եւ զՃ եւ Ծ սրբոց հարցն, որ ի Կոստանդնուպաւլիս, ի ձեռն սրբոյն Ներսէսի, եւ զերկու հարիւրոցն որ յԵփեսոս՝ ի ձեռն աշակերտացն սրբոյն Սահակայ եւ Մեսրոպայ։ Զայս երից սրբոց ժողովոց խոստովանութիւն եւ զհաւատ ընդունիմք եւ քարոզեմք, հաւասար սրբոյն Գրիգորի եւ սրբոց առաքելոցն հրեղէն լեզուացն աստուածախաւսութեան։ Եւ աւելի քան զայս, որ առաքս, թէ եւ հրեշտակ յերկնից աւետարանեսցէ, նզովե՛մք եւ ի բաց բառնամք։

Դուք եղբայրասէր մտաւք ջանայք վասն միութեան եկեղեցւոյ եւ կապակցութեան հոգեւոր սիրոյ եւ միաբանութեան առ միմեանս. վասն այնորիկ շատ ջանիւ եւ մեղադրութեամբ յայտնեալ էիք ի թղթի աստ զամենայն սրտից ձերոց զծածուկս։ Ուսուցանելով զմեզ մի ըստ միոջէ, թէ որպէս հովիւքն առաջինք եղեն քարոզք եւ աւետարանիչք, մշակք քաջք, որ սերմանեցին ընդ տիեզերս զբանն կենաց եւ լցին անուշահոտ պտղովք զտիեզերս ամենայն՝ ջնջելով զգայթակղութիւն թշնամւոյն յերկրէ, հաստատեցին զտիեզերս ի հաւատս ճշմարիտս։ Թուեալ էիք ի թղթի աստ եւ զազգս հեթանոսաց, ըզԹուրքս, զԱլանս, զՃիկս, զԼախուարտս եւ զայլս նման սոցա, եւ վկայեալ էիք թէ ամենեքեան սոքա ի մի բերան փառաւոր առնեն զԱստուած յեկեղեցւոջ, հնազանդեալք ընդ երկաթի գաւազանաւն, որ է տէրութիւն Հռոմոց, եւ ոչ ոք հերձաւ ի կաթուղիկէ եկեղեցւոյ։ Հոգացեալ էիք եւ զմեզ զՀայաստանեայսս, որպէս աւտարս գոլով յեկեղեցւոյ Աստուծոյ, ախմարս եւ

տգէտս բանիւ եւ իմաստութեամբ, եւ մեղադրեալ՝ թէ զարատաւորն ոչ ճանաչէք, զի ոմանք յառաջնոցն անտի սերմանեցին ի ձեզ զորոմն չարին, զրպարտելով զհարսն մեր ի բանս սուտս՝ զոր ոչ նոցա. եւ վասն այնր ոչ ընդունիք զժողովն Քաղկեդոնի, հաւանեալք Դիոսկորոսի, որ մի բնութիւն ասաց զՔրիստոս: Եւ յայտնի աստուածաբանական արտաճառութեամբ իմաստասիրեալ էիք մեզ ըզխորհուրդ բոլոր անաւրէնութեան Աստուածն Բանի, թէ ո՞րպէս անմարմին Բանն մարմնացաւ առանց սերման ի կուսէն եւ ի Հոգւոյն սրբոյ, եւ ընդ ամենայն կիրս բնութեանս մերոյ անցանելով իւրով մարմնովն, յանձն էառ կամաւորութեամբ ըզխաչն. եւ թաղեցաւ, յարեաւ եւ համբարձաւ, նստաւ ընդ աջմէ Հաւր, գալոց է միւսանգամ դատել զաշխարհս. եւ թէ կերպարանակից լինելոց է մարմին խոնարհութեանս մերոյ նմանութեան մարմնոյ փառաց նորա՝ ըստ Պաւղոսի ձայնին: Զի զայս եկն ցուցանել, առեալ յապականացու մարմնոյս, զգեցուցեալ աստուածութեանն եւ ցուցեալ զսա անապական եւ անմահ: Զայսոսիկ յայտնապէս մեզ ատենաբանեալ:

Գրեալ էիք դարձեալ, եթէ երկու բնութիւն խոստովանիմք ի վերայ միոյ Քրիստոսի, որպէս ասաց ժողովն Քաղկեդոնի, եւ հաստատեաց զհաւատըս առաքելական, եւ մեզ մեղադրեալ էիք թէ, Դիոսկորոս որ ընկեցիկ եղեւ ի ժողովոյն Քաղկեդոնի, մոլորեցոյց զձեզ ի բանս սուտս, զրպարտելով զժողովն Քաղկեդոնի, այլ նոքա ուղղապէս խորհեցան ի վերայ այսր ամենայնի: Առ իս գրեալ էիք ցաւակցաբար, թէ ի բա՛ց կաց ի Հայաստանեայց գրոց եւ ի ձայնից, ապաշխարութեամբ եւ զղջմամբ գրէ՛ առ կայսր եւ պատրիարգն ի Թա-



գաւորեալ քաղաքն, եւ միացի՛ր ի սուրբ հաւատս, եւ կեցցես: Արդ ըստ ամենայն գրելոց առ ի քէն, եղբա՛յր սիրելի, հարկաւորիմ պատասխանի առնել քեզ կարճ ի կարճոյ համառաւտ բանիւ, ոչ ճարտարութեամբ եւ սնոտի փիլիսոփայութեամբ, զի մի՛ ընդունայն լիցի խաչին խորհուրդն, որ խափանեաց զիմաստութիւն աշխարհիս, եւ յիմարութեամբ քարոզութեանն ապրեցուցանել զհաւատացեալս. զի հաւատ քրիստոնէից ոչ իմաստութեամբ մարդկան է, այլ աստուածային հոգւովն շնորհիւ վերաձայնաբար քարոզի ընդ տիեզերս աշխարհալուր աւետիք:

Արդ թէպէտ եւ ոչ իցեմք հմուտ եւ տեղեակ պղատոնական պերճաբանութեամբ բարձրայունակ վարժից եւ կրթութեանց, սակս ոչ ունելոյ նմա հաղորդութիւն ընդ աւետարանին, մեք Հայաստանեայքս, նուազ եւ փոքունք, աղքատք եւ տգէտք արհեստից եւ մակացութեանց, այլ սակայն շնորհիւ զաւրութեամբ Հոգւոյն սրբոյ լիով ունիմք յանձինս զվարդապետութիւն սրբոց առաքելոցն եւ մարգարէից, հանդերձ կենսաբեր աւետարանաւն Քրիստոսի, զսուրբ եւ զտիեզերական երից ժողովոցն զխոստովանութիւն եւ զհաւատս, զվարդապետութիւն սրբոյն Գրիգորի, որ է սիւն եւ հաստատութիւն ճշմարտութեան. զաստուածաբանութիւն տիեզերախաւս երիցս երանեալ պայծառ եւ մեծ սրբոց հայրապետացն դասուց, զԴիոնէսիոսի եւ զԵրինիոսի հետեւողի առաքելոցն, զԿղեմայ եւ զմիւս Դիոնէսիոսի, զՊետրոսի վկայի, զԱթանասի սրբոյ եւ զԿիւրղի Աղեքսանդրացւոց հայրապետաց, զՄակարայ երանելոյ եւ զԿիւրղի եւ զՅովհաննու որ յԵրուսաղէմ, զսրբոյն Սեղբեստրոսի եւ զՅուլիայ երանելոյ, զԴամասոսի եւ զԿէլէստիանոսի

որք ի Հռոմ. զԵւսեբի ժամանակագրի որ ի Կեսարիա Պաղեստինացւոց, զԵւսեբի Եմեսու, զՍեբերիանոսի, եւ զԵփրեմի խորին ասորւոց, զԳրիգորի զսքանչելագործի որ ի Նիուկեսարու, զԳրիգորի աստուածաբանի Նազազացւոց, զսրբոյն Բարսղի եւ զԳրիգորի նորին եղբաւր, եւ սրբոյն Եպիփանու Կիպրացւոյ, զԱղեքսանդրի եւ զՅովհաննու ոսկեբերանի, զՆեքտառեայ եւ զՊրոկղի երանելոյ որ ի Կոստանդնուպաւլիս։

Սոքա են սիւնք հաւատոյ եւ լուսատուք տիեզերաց, աշտանակք կենդանիք՝ վերամբարձեալ ունելով զլոյս եւթնարփի շնորհացն ի պայծառութիւն եւ ի փառս սրբոյ եկեղեցւոյ, որք են կնիք հաւատոյ մերոյ եւ ճանապարհ խոստովանութեան մերոյ, ի Հայր եւ յՈրդի եւ ի Հոգին սուրբ, որք յայտ յանդիմանութեամբ վարդապետեալք ուսուցին մեզ սուրբ Հոգւովն վասն մշտնջենաւոր աստուածութեան Երրորդականութեանն, եւ զծածկեալ խորհուրդ տնաւրէնութեան Աստուածորդւոյն ընթանուր մեզ քարոզեալ, լուսաւորեցին զմեզ լուսով ճշմարտութեանն, եւ արտաքոյ աւանդութեան սոցա ո՛չ հարքն մեր եւ ոչ մեք ուսաք այլ ինչ նորաձայնութիւն հաւատոյ եւ կրաւնից, ո՛չ դու եւ ո՛չ այլ ոք ի մարդկանէ կարէ յայտնել, այլ որպէս ընկալաք զլոյս ուղղափառութեան հաւատոյ սոցա եւ կրաւնից՝ պահեմք հաւատով յանձինս մեր, աներկմիտ եւ անվրդով յեցեալ եւ հաստատեալ ի վէմըն կենդանի, որ է գլուխ անկեան Տէր մեր Յիսուս Քրիստոս։ Թէպէտ եւ հալածեալք յամենայն ազգաց, այլ ոչ երբեք լքեալք ի հաւատս, միշտ պատերազմ ունելով ընդ հեթանոսաց, Պարսից, Տաճկաց եւ բարբարոսաց, գերեալք, կողոպտեալք, նեղեալք, ձանձրացեալք յանաւրինաց յարուցելոց



ի վերայ մեր, այլ զաւրութեամբն Աստուծոյ հաստատուն է յոյս մեր կենդանի, եւ սիւն հաւատոց մերոց, որ ոչ երբեք շարժեցաւ ի հիմանէ նախաճառեալ սրբոց աստուածազգեստից հարցն, զորոց վերագրեցի զանուանսն, այլ վարդապետութեամբ նոցա, որ ի միջի մերում հաստատեալք ի հաւատս ճշմարիտս, փառաւորեմք զսուրբ Երրորդութիւնն յեկեղեցիս սրբոցն, ակն ունելով յուսոյն յաւիտենից։ Արդ, դու, եթէ աւտար ասես զմեզ յԱստուծոյ եկեղեցւոյ, նախ ասա՛ աւտար զսոսա զամենեսեան, զի սոքա են վարդապետք մեր եւ ուսուցիչք, եւ զայլ ոք ընաւ ոչ գիտեմք, եւ աւտար զսոսա ասելով, աւտարանաս եւ դու ի յուսոյն քումմէ։ Տե՛ս քաջ, մի՛ գուցէ զուր նախատես զժողովուրդ Աստուծոյ՝ զոր գնեաց արեամբ իւրով։

Գրեալ էիք, թէ Ուր քարոզեացն Պետրոս եւ այլ առաքեալքն, ոչ ոք երեւեցաւ անդ հերձուածող, եւ եթէ՝ դուք առ անգիտութեան մոլորեալք զարատաւորն ոչ ճանաչէք, որ զհաւատս պղտորեցին, եւ զրպարտէք զժողովն Քաղկեդոնի՝ հաւանեալք Դիոսկորոսի։ Սիրելի հաւատարիմ. ո՞ւր քարոզեաց Պետրոս եւ այլ առաքեալքն, ո՞չ ապաքէն ի Հրէաստանի, ի Սամարիա, յԵգիպտոս, յԱսորեստան, ի Միջագետս, յԱսիա, ի Յոյնս, եւ ի Հռովմ։ Արդ եթէ ոչ ոք գտաւ անդ հերձուածող, ասա ինձ, ո՞ւստի էիք սոքա։ Նախ եւ առաջին Սիմոն Սամարացի, Մենանդրոս, Կարպոկրատէս, Սատուռնիւղոս, Կերինթոս, Դովսիթէոս, Վաղէնտիանոս, Մարկիոն, պիղծն Արտեմոն, Կարդոն, Մանի անիծեալ, Մոնտանոս պիղծ, (Արտեմոն), Փոտինոս, Պաւղոս Սամուստացի, Սաբել Լիբէացի, Ապաւղինարէս Լաւոդիկեցի, Արիոս Աղեքսանդրացի, Եւնոմիոս, Ղուկիանոս, Նաւատիանոս Հռոմայեցի, Մակեդոն, Նեստորիոս,

Եւտիքէս Բիւզանդացի, ամենեքեան սոքա ո՞չ ապաքէն յառաջասացեալ աշխարհացդ էին՝ ուր քարոզեցին առաքեալքն։ Դու զի՞ ասես թէ ո՛չ ոք երեւեցաւ անդ հերձուածող։ Ոմանք ի սոցանէ եւ թագաւորեալ քաղաքիդ առաջնորդք իսկ էին եւ այլոց մայրաքաղաքաց ձերոց, որպէս Մակեդոն եւ Նեստոր եւ Պաւղոս Սամուստացի որ յԱնտիոք, որք յայտնապէս երեւեցան սերմն ժանդ, որդիք անաւրէնք, շառաւիղք չարին, եւ արմատ անիծից, զոր թոյնք մահաբեր աւձին բուսուցին, զի ոչ ասեմ եթէ առաքեալքն եղեն պատճառք կորստեան նոցա, այլ ի սերմանէ չարին ի մէջ ցորենոյն բուսաւ որոմն ընդ ամենայն աշխարհս, որք անշէջ հրոյն յաւիտենից գանձեալ կան, զորս երանելի հարքն մեծաւ աշխատութեամբ եւ քրտամբք վանեալ հերքեցին ի դարս իւրաքանչիւր։

Արդ թէպէտ եւ դուք ոչ զոք ընդունիք ի սոցանէ այլ նզովէք, բայց ի վիճակի ժառանգութեան սրբոյն Գրիգորի եւ ոչ երբեք երեւեցաւ յայլ աղանդից անտի, վասն զի փոքր իսկ է փարախս, սակայն ի գայլոց անկոխելի է զաւրութեամբ յուսոյն մերոյ Քրիստոսի Աստուծոյ։ Այլ դու որ ասես թէ՝ զարատաւորն ոչ ճանաչել, արատաւորք ո՛չ ապաքէն սոքա են զորոց գրեցի զանուանս։ Ճանաչեմք եւ նզովեմք զամենայն հերետիկոսս, զառաջինսն եւ զմիջինսն եւ զվերջինսն, զորոց զիւրաքանչիւր աղանդոց եւ զհայհոյութեանց ասել մի ըստ միոջէ, ոչ է ժամ։ Թողից քեզ որպէս գիտողի զամենայն, զի աւելորդ է զայսոսիկ գրել առ քո աստուածսիրութիւնդ։

Այլ որ Դիոսկորոսիւ ստէպ ստէպ թշնամանես զմեզ իրաւաբանելով, հարցանեմ զքեզ, ա՜սա՛ ինձ, ո՛վ է Դիոսկորոսն այն, ո՞չ ապաքէն հայրապետ քո



է, գլուխ եւ առաջնորդ երկրորդ ժողովոյն որ յԵփեսոս, զորոյ ոչ գիր խոստովանութեան, եւ ոչ սահման հաւատոց եւ ոչ այլ ինչ աւանդութիւն ունի աշխարհս Հայոց. միայն լսեմք թէ ոչ հաղորդեցաւ համախոհից անիծելոյն Նեստորի, եւ Փղաբիանոսի ասեմ եւ Թէոդորիտեանց եւ Յովհաննու Եգուացւոյ. եւ վասն այնորիկ աքսորեալ ընկեցին զնա Մարկիանոս եւ ժողովն. այնր աղագաւ ոչ նզովեմք զնա, այլ ընդունիմք զի չար ինչ զնա մեք ոչ գիտեմք։ Արդ նա եթէ արժանի հաւատարմութեան է, ընկալեալ լիցի. եւ եթէ աւտար ինչ խորհի, մեզ չէ ինչ փոյթ, վասն զի քո է։ Բայց վասն ոչ ընդունելոյ մեր զժողովն Քաղկեդոնի, զոր ասես դու սուրբ, եւ հաւասար երից ժողովոցն, զայդ ոչ ի Դիոսկորոսէ ուսաք մեք, այլ ի նոցունց սահմանադրութեանցն, եւ ի տոմարէն Լեւոնի Հռոմայեցւոյ, որ էր առիթ եւ պատճառ ժողովոյն Քաղկեդոնի, որք ոչ միաբանին խոստովանութեան առաջին սրբոց հարցն, զոր ընկալաք մեք։ Վասն զի իշխեցին ասել յետ անճառ միաւորութեան Աստուծոյ Բանին՝ երկու բնութիւնս եւ երկու ներգործութիւնս, եւ երկուս կամս, շինելով չարապէս ի վերայ հիման Նեստորի։ Գողանալով զպարզամիտսն, ասացին մի անձն եւ մի դէմ եւ երկու բնութիւնս, եւ առանձնապէս զկիրս նոցա, պատճառելով զանիծեալն Եւտիքէս, թէ նա ասաց մի բնութիւն. շփոթեալ խառնակութեամբ, յեղաշրջեալ ըզբանն ի մարմին, եւ Աստուածային բնութեամբն իւրով ախտակրեալ եւ մեռեալ, այնր աղագաւ հաստատեալ աւրինադրեցին ի Քաղկեդոնի հաւաքեալքն, երկու բնութեանց յայտարարութիւնք առ ի զԵւտիքէսն պապանձեցուցանել։

Ո՛վ վատթար յաղթութեանն, չարիւ զչար

*բժշկել կամելով, եւ Թիւրութեամբ զԹիւրութիւն
ուղղել, զի ասացին այսպէս, Թէ Խոստովանիմք մի
Տէր զՅիսուս Քրիստոս զՈրդին Միածին երկու
բնութիւնս անշփոթելիս, անխառնակելիս, անորո-
շելիս, անմեկնելիս ծանուցեալ։ Ոչ երբեք ի բաց
բառնալով զբնութեանցն զանազանութիւնսն յաղա-
գըս միաւորութեանն, այլ առաւել ամբողջ պահե-
լով զիւրութիւնն երկաքանչիւրոց բնութեանցն, ի
մի դէմ եւ յանձնաւորութիւն ենԹակացեալ։ Հա-
մաձայնաբար այսոցիկ գրէ Լեւոն յիւրում տոմա-
րին ասելով, Ապրելոց այսուհետեւ, եւ յատկու-
Թեամբ երկաքանչիւրոցն բնութեանց եւ ի մի դէմ
ճակցելոց, ամբարձաւ յաստուածութենէն նուաս-
տութիւնն, նոյնպէս եւ ի նուաստութենէն աստուա-
ծայինն։ Եւ դարձեալ Թէ ներգործէ իւրաքանչիւր
բնութիւնն միւսոյն հաղորդութեամբ, եւ որպէս ոչ
ի բաց բառնայ զծառային կերպ՝ Աստուծոյն կերպ,
այսպէս եւ ծառային կերպ՝ զԱստուծոյն կերպա-
րան ոչ բացաբառնայ. զներգործութիւն եւ զկերպն
յաւել ի սահման ժողովոյն։ Այսոքիկ ոչինչ ընդ-
հատ երեւին մեզ ի Նեստորի չար իմացմանցն,
զի եւ նա զբնութիւնսն խոստովանի անորոշելիս
եւ անխառնելիս ասելով. մի զանգցես զբնութիւնն
եւ մի դարձեալ զարժանաւորութիւնն այսր անդր
կորզիցես, զի անորիշ է չարայարութիւնն եւ ան-
խառն։ Ահա ասաց Նեստոր յայտնապէս բնութիւնս
անորոշելիս եւ չարայարութիւնս անխառն, որպէս
ասաց ժողովն եւ Լեւոն, եւ գտաւ համախորհ նոցա։*

*Արդ՝ զի՞ հարկաւորես զիս հաղորդել Նեստորի
անիծելոյ, զի եւ ես ոչ ուրանամ զբնութիւնն, որ-
պէս Եւտիքէս, եւ ոչ բարժանեմ՝ որպէս Նեստորիոս,
այլ մի բնութիւն ասեմ անշփոթելի։ Բայց միու-
Թիւն յորժամ ասեմ, ոչ փոփոխումն այնր բնու-*



*Թեան յայս, եւ ոչ այսր յայն, այլ միացեալ, մի՛
լեալ անճառապէս եւ ի վեր քան զբան, որպէս ա-
սաց սուրբն Յովհան Ոսկեբերան ի Մեկնութեան
Թղթին Փիլիպպեցւոց. Քանզի ըստ ճշմարտութեա-
նըն մարդ եղեւ եւ տնաւրինաբար Աստուծոյ Բա-
նըն, եւ անտեսանելին եղեւ տեսանելի՝ մնացեա՛լ
անյեղլի բնութեանն։ Արդ որք բարժանեն զբնու-
Թիւնսն յետ միաւորութեանն յայտնապէս երկուս
որդիս քարոզեն ըստ Նեստորի, եւ ոչ կարեն մը-
կրտել ի մահն Տեառն, որպէս ասաց երջանիկն
Կիւրեղ հայրապետն Աղեքսանդրացւոց առ Սեկուն-
դոս, Թէ յետ միաւորութեանն ոչ ի բաց հատա-
նեմք զբնութիւնսն եւ ոչ որոշեմք յերկուս, զի մի՛
երկուս որդիս ի ներքս ածցուք։ Եւ մեծն Յուլիոս
հայրապետն Հռոմայ վկայէ Թէ, Հարկ է զնոսա
որք երկուս ասեն բնութիւնս, զմինն երկրպագելի,
եւ զմինն ոչ, զմինն մարդկային, իսկ զմիւսն աս-
տուածային, եւ յաստուածայինսն մկրտել, իսկ ’ի
մարդկայինսն ոչ մկրտել։ Իսկ եԹէ ի մահն Տեառն
մկրտեցաք, որպէս ասաց առաքեալն, մի խոստո-
վանիմք բնութիւն անախտակիր աստուածութեանն
եւ ախտակիր մարմնոյն, զի այսպէս յԱստուած ի-
ցէ մկրտութիւնն մեր եւ ի մահն Տեառն կատար-
եալ։ Վասն այնորիկ ոչ հաւանիմք նորաձայնու-
Թեան ժողովոյն Քաղկեդոնի եւ տումարին Լեւոնի
ասելովն՝ երկու բնութիւնս ի մարմնացեալն Աս-
տուածն Բանն. այլ խոստովանիմք զՔրիստոս ոչ
Աստուած մերկ, եւ ոչ մարդ սոսկ, եւ ոչ Աստուած
եւ մարդ որոշեալ հակառակ, այլ Աստուած մար-
դացեալ, եւ որպէս Միածին ի Հաւրէ, նոյնպէս մի-
ածին ի մաւրէ, մի որդի. եւ որպէս մի որդի՝ մի*

Քրիստոս, եւ որպէս մի Քրիստոս՝ մի անձն, եւ որպէս մի անձն՝ մի դէմ, եւ որպէս մի դէմ՝ մի կամք, եւ որպէս մի կամք՝ մի ներգործութիւն, եւ որպէս մի ներգործութիւն՝ մի բնութիւն, որպէս եւ է մի բնութիւն։

Արդ եթէ բաժանես զբնութիւնն, բաժանին ընդ նմին եւ երկաքանչիւրքն, զի ոչ այլ ինչ է բնութիւն մարդկային, այլ կամք եւ ներգործութիւն, անձն եւ դէմ, որ է մարդ կատարեալ։ Իսկ եթէ այլ է բնութիւն մարմնոյն, եւ այլ է բնութիւն Բանին, այլ է կատարեալ մարդն, եւ այլ Աստուածն Բան, որպէս ասաց Նեստոր, զոր նզովեցին սուրբ հարքն ասելով, եթէ ասասցէ ոք մարդ կատարեալ զՔրիստոս բաժանելով, եւ զԱստուածըն Բան բաժանելով, եւ ոչ խոստովանեսցի մի Տէր զՅիսուս Քրիստոս, նզովեա՛լ եղիցի։ Եթէ այլ բնութիւն է մարմնոյն անխառնելի ի Բանն, ապա այլ է եւ կամք բնութեանն, ա՛յլ եւ ներգործութիւն կամացն, ա՛յլ է եւ անձնիշխանականն, որ իշխէ կամացն եւ ներգործէ, ա՛յլ է եւ դէմք իշխանական անձինն, որ է մարդ կատարեալ, արտաքոյ Բանին զաւրացեալ ի Բանէն, եւ զայս Նեստոր ասաց, զոր նզովեցին դարձեալ սուրբ հարքն ասելով. Եթէ ոք ասասցէ մարդ զաւրացեալ յԱստուծոյ Բանէն զՅիսուս, եւ ի Միածինն՝ փառս մերձեցեալ, որ արտաքս քան զնա իցէ, նզովեա՛լ եղիցի։

Ասէք, երկու բնութիւն ի Քրիստոս եւ անձն եւ դէմ մի. ասեմք եւ մեք, մի բնութիւն ի Քրիստոս. նոյնպէս եւ անձն, եւ դէմ մի։ Արդ եթէ չփոթես զբնութիւնն վասն միանալոյն, զի՞նչ արասցես եւ զդիմացն միութիւն, զի եւ դու ասես դէմ եւ անձն մի, եւ բնութիւնս երկու, զի մի չփոթեսցի, եւ թէ չփոթեալ է բնութիւնքն վասն միու-



թեանն, չփոթեալ է ըստ քեզ եւ կերպարանն վասըն միութեանն, զի ճշմարտապէս կերպարանն Աստուծոյ, կերպարան ծառայի եղեւ ըստ գրոց։ Եթէ բաժանես զբնութիւնսն զի մի չփոթեսցին, բաժանեա՛ դարձեալ եւ զդէմսն, զի մի ի բաց բարձցէ զծառային կերպ՝ Աստուծոյն կերպ ըստ Լեւոնի ասելոյն, եւ որ ասաց յայտնապէս երկուս դէմս, որպէս ասաց Նեստոր, զոր նզովեցին դարձեալ սուրբ հարքն ասելով, Եթէ ոք զմի Տէր Յիսուս Քրիստոս բաժանեսցէ յերկուս դէմս յետ միանալոյն, եւ միայն մերձաւորութիւն եւ պատիւ եւ ճոխութիւն տացէ նմա, եւ ոչ միութիւն բնութեամբ, նզովեա՛լ եղիցի։ Եթէ ոչ ի բաց բառնայ բնութեանցն զանազանութիւն վասն միանալոյն, այլ առաւել ամբողջ պահի իւրութիւն երկաքանչիւր բնութեանցն ըստ Քաղկեդոնի սահմանին, եւ ըստ Լեւոնի տումարին ասելոյն, ապրի իւրաքանչիւր բնութեանն յատկութիւն. ապա իւր առանձինն է մարդկային բնութեան յատկութիւն՝ յղանալ եւ ծնանել, սնանել եւ զարգանալ, ներգործել եւ կրել, չարչարել եւ մեռանել։ Արդ՝ եթէ ոչինչ յայսցանէ կրեաց Բանն զի ամբողջ պահեսցէ զիւրութիւն իւրոյ բնութեանն, ապա զիա՛րդ ասէք՝ յղանալ եւ ծնանիլ Աստուծոյ Բանին, սնանիլ եւ զարգանալ, ներգործել եւ կրել, չարչարել եւ մեռանել իւրով մարմնովն, զի այսոքիկ առանձին իւրութիւնք են մարդկային բնութեան, արտաքոյ Բանին բնութեան, զի բնութիւն Բանին առանձին՝ է անմարմնութիւն, անփոփոխութիւն, անայլայլութիւն, անախտութիւն, անմահութիւն։ Եւ եթէ պահեաց զիւրութիւն իւրոյ բնութեանն, ապա ոչինչ յայսցանէ կրեաց Բանն, այլ մարդ սոսկ ըստ ասացելոյդ կրեաց զայս ամենայն, եւ փրկեաց զմեզ. զայդ եւ ոչ Նեստոր իշ-

խեաց յանդգնել։

Արդ տես, սիրելի, զասացողսն երկու բնութիւնս այլ եւ այլս, եթէ ո՛րպէս ի հարկէ հաղորդին Նեստորի։ Վասն զի ասաց Լեւոն յայտնապէս յիւրում հաւատաբանութեանն այսպէս. Եւ է՛ իմաստութիւն շինողին իւր տանն, Բանն մարմին եղեւ, եւ տաղաւարեաց ի մեզ. ա՛յս է յայսմ ի մարմնի զոր էառ ի մարդոյ, եւ զոր Հոգւով կենդանութեան բանականի անձնաւորեաց։ Տաղաւարիլ ասաց Լեւոն ի Մարիամայն մարդ զԱստուածն Բան, ա՛յլ գոլով քան զ՚ի կուսէն ծնիցեալ Փրկիչն Քրիստոս Տէր։ Գրէ եւ Նեստոր նման սմին ասելով. Խոստովանեա՛, ասէ, զբագինն ա՛յլ ներբնակեցելումն չարայարել։ Թո՛ղ Աստուծոյ Բանին չարայարել ի բագին յընտանի, մի՛ զբնակեալն Աստուած յիւրմէն մերկացուցանես բագնէ, եւ մի՛ զբագինն ի բնակեցելոյն աւտարացուցանես յաստուածութենէն։ Եւ դարձեալ գրէ՝ Բանն մարմին եղեւ, եւ տաղաւարեաց ի մեզ. քանզի տաղաւար ընկալաւ Բանն զմարդկութիւնս։

Գրէ եւ Պաւղոս Սամոստացի հանգոյն սմին ասելով Բնակեաց իմաստութիւնն ի մարդն որպէս հնար գոյ բնակել անմարմին ի մարմնի։ Այսպէս բնակէ, որպէս զի մի ի Դաւթայն աւծեալ աւտար իցէ իմաստութիւնն. եւ մի իմաստութիւնն ի յայլում այսպէս բնակեսցէ։ Եւ դարձեալ թէ՝ ի միում տան իշխանապէս բնակէ, քանզի եւ ի մարգարէսն էր, այլ առաւելապէս ի Քրիստոսի՝ որպէս ի բագնի Աստուծոյ։ Ահա ասացին Նեստոր եւ Պաւղոսն Սամոստացի բագին եւ բնակիչ, տուն, եւ զիմաստութիւնն շինող, եւ զԲանն տաղաւարեալ յիւրում մարմնին, որպէս ասացն Լեւոն, եւ գտաւ համախորհ եւ միաձայն Նեստորի եւ Պաւղոսի Սամոստացւոյ. քանզի տուն ասաց զ՚ի Մարիամայ առեալն, բնակել զԱստուած Բանն ի տանն աւրինադրէ, որպէս Թուեցաւ հերձուածողացն առաջնոց, զի մի Աստուած բանն զոր կոչեաց իմաստութիւն, Թափեալ զինքն գտանիցի վասն մեր, ըստ առաքելոյ ասելոյն, եւ մի տուեալ վասն մեր ի Հաւրէ ըստ գերազանցութեանն սիրոյ. Զի այնպէս սիրեաց Աստուած զաշխարհս, ասէ աւետարանիչն, մինչեւ զորդին իւր միածին ետ, այլ եւ զի մի Տէրն փառաց, այլ Տեառն փառաց տուն ասասցի ի խաչ ելեալ։ Քանզի եթէ տուն իւր շինեաց ըստ Լեւոնի ասելոյն, եւ յայնժամ բնակեաց ի մարմնի, ամենայն ի Մարիամայ մարդ՝ Աստուծոյ բանն՝ արտաքոյ ի շինեցելոյ տանէ, մինչ զի իննամսեայ ժամանակաւ զնա շինեսցէ, ա՛յլ գոլով քան զ՚ի կուսէ ծնեալն։ Ապա ուրեմն ոչ յղացաւ անճառաբար յարգանդի Աստուածն Բան, եւ ոչ մնաց Աստուածածինն կոյս։ Քանզի ո՛չ Բանն բնութեամբ ծնաւ, այլ զտաղաւար բանին, եւ ըստ այսմ (զ)իմանի Քրիստոս ինքն իւր տէր, եւ իւր ծառայ. բագին եւ բնակարան, տուն եւ որ շինէ զտունն, տաղաւար եւ որ բնակէ ի տաղաւարին։

Բայց ոչ այսպէս ուսուցին մեզ աստուածային գրութիւնքն, այլ զինքն զԲանն մարմին եղեալ քարոզեն, մնալով Աստուած անփոփոխելի, տաղաւարեալ կամ բնակեալ ի մեզ ի մարդկութեան։ Քանզի բնակեցայց, ասէ, ի նոսա, եւ գնացից. եւ Բնակել զՔրիստոս ի սիրտս մեր, աղաւթէ երանելին Պաւղոս. եւ Աստուծոյ միայն բնակել ի մարդկան։ Իսկ Քրիստոս՝ իւր ոչ տուն եւ ոչ բնակիչ ասի յաստուածային գիրս։ Թէպէտ եւ ուրեք մարդկային վարի ձայնիւ վասն հաւատարմութեան, զի մի երեւոյթ կարծիցի մարմնաւորութեան իւրոյ խոր-

հուրդ։ Քանզի մնալով Աստուած եղեւ անյեղապէս եւ անխառնակաբար մարդ, եւ նոյնագոյգ Հաւր եւ Հոգւոյն սրբոյ՝ եւ յորժամ եղեւն ըստ մեզ։ Իսկ մարմնաւորութեան եւ ծնելութեան նորա խորհուրդ անճառելի է եւ անիմանալի ամենեցուն, որպէս միայն գիտէ ինքն միածինն Աստուած ըստ իւրումն Հաւր եւ Հոգւոյն սրբոյ. զի թէպէտ եւ զմարմին իւր ասաց տաճար յաւետարանին իւր, իբրեւ աւծեալ տնաւրինաբար հոգւով սրբով՝ ունելով յանձին զՀայր եւ զՀոգին սուրբ, զի եւ մեք զնա ընդունելով՝ մարմին նորա լիցուք, ի մեզ բնակեցուցանելով զՀայր եւ զՀոգին սուրբ. զի Անդամք եմք մարմնոյ նորա, եւ ի լրութենէ նորա մեք ամենեքեան առաք, եւ բնակութիւն նորա եղեաք։ Այլ ոչ եթէ ուրոյն առանձնապէս արտաքոյ աստուածային էութեանն ասաց տաճար գոլ զմարմինն, իբր զի բնակից է ինքն ա՛յլ յայլում, որ զմարմինն իւր, ասէր, հաց կենաց յերկնից իջեալ եւ աշխարհի կեանս տայ։ Այլ ինքն Աստուած Բանն մարմնացեալ, որպէս մեղք կոչեցաւ վասն մեր՝ որ զիմն եբարձ զմեղս, եւ անէծք՝ որ զիմն ելոյծ զանէծսն. եւ ծա՛ռայ՝ որ զիսն ազատեաց. Նաեւ տաճար զինքն ասաց տնաւրինաբար վասն իմ, միաւրեա քակեալ, եւ երեք աւրեա յարուցեալ, եւ մնացեալ յաւիտեան, զի եւ ես զնա առընկալայց, եւ տաճարացայց նովաւ Հաւր եւ Հոգւոյն սրբոյ, զի ոչ այլ էր զոր քակեցին, եւ ոչ այլ որ յարոյց զքակեալն, այլ ինքն Աստուած Բանն մարմնով իւրով կատարեաց զամենայն, զի որ խաչեցաւն եւ թաղեցաւ, այն է որ յարեաւն։ Ոչ այլ ոք եւ այլ՝ ինքն Աստուած եւ ինքն մարդ. նոյն ինքն ճշմարտապէս մեռեալ որպէս մարդ, եւ միշտ կենդանի որպէս Աստուած, որպէս ասաց սուրբն Եպիփան



եպիսկոպոս Կիպրացւոցն ի գիրն հա՛ւատոյ. եթէ ինքն Աստուած եւ ինքն մարդ, ոչ շփոթութիւն գործելով՝ զերկոսինն ի միասին խառնելովն, ոչ գոյութեամբ, այլ ի մի զաւրացուցեալ զերկրայինըն ընդ Աստուածութեանն, եւ ի մի աստուածութիւն զաւրացեալ. եւ մի աստուածմիութիւն ժողովեաց։ Ոչ երկու քրիստոսք եւ ոչ երկու որդիք, ոչ այլ ոք եւ այլ, ի նոյն մարմին հոգեւորական, ի նոյն աստուածութիւն անհասանելի, չարչարեալն ոչ ապականեալ, անապականելին՝ անապականելի, անապականութիւն ամենայն։ Աստուած Տէր նըստեալ ընդ աջմէ Հաւր։

Արդ ըստ այսմ ամենայնի, իմաստութիւնն Աստուծոյ, որ շինեաց իւր տուն, եւ բնակեաց ի նմա, ո՛չ ըստ ասելոյն Լեւոնի, Բանն շինեաց տուն զմարմինն եւ տաղաւարեաց ի նմա, այլ ինքնին մարմնացեալն Աստուած շինեաց իւր տուն հոգեկան զմեզ՝ ի նա հաւատացեալքս, եւ բնակեաց ի մեզ, վասն այսորիկ եւ զկամաւորն համբերեաց թափումն, անթափին զբնութիւն իբրեւ զԱստուած, եւ զաղքատութիւնս մեր զամենայն իւր արարեալ, զի մեք փարթամասցուք ի ձեռն ի նա հաւատոցըն, եւ բնակութիւն նմա եղիցուք սրբով մկրտութեամբըն. սակս որոյ եւ ընդ մեզ է մինչեւ ի սպառել յաւիտենիս։ Զի նա է ճշմարիտ Աստուած եւ կեանք յաւիտենականք, որ եւ ի սիրտս հաւատացելոց բնակէ հանդերձ Հարբն եւ սուրբ Հոգւովն։ Քանզի մի է Միածինն Աստուծոյ, որպէս Աստուած, եւ անդրանիկ ի մէջ եղբարց բազմաց. ըստ որում եղեւ մարդ տնաւրինաբար գոլով, եւ այսպէս ըստ բնութեան Աստուած՝ եւ մարդովն մարդ։

Արդ թէպէտ եւ հարքն առաջինք ի մարտս հերձուածողացն յիշեցին ուրեք բնութեան հետս,

միայն վասն հաստատելոյ զտնաւրէնութիւնն, եթէ ճշմարտապէս մարդ եղեւ Աստուծոյ Բանն եւ մարմնով իւրով կրեաց զամենայն. այլ ոչ ուրեք սահման հաւատոյ զբնութիւնսն կարգեցին երբեք. իսկ ժողովն Քաղկեդոնի, հաւանեալք Լեւոնի, յայտնապէս կարգեցին սահման հաւատոյ երկուս բնութիւնս առանձնացեալս, եւ չփոթեցին եւ բարժանեցին զեկեղեցիս տիեզերաց: Ինքեանք իսկ պարտաւորեցին զանձինս, զի ասացին յԵփեսոսի երկրորդ ժողովն. Եթէ ոք ասէ ի վերայ միոյ Քրիստոսի երկուս բնութիւնս, նզովեա՛լ եղիցի: Եւ նոքին, դարձեալ ի Քաղկեդոնի, նզովեցին զայնոսիկ, որք ոչ ասեն ի վերայ Քրիստոսի երկուս բնութիւնս, զոր ոչ ընդունիմք զսահմանադրութիւն հաւատոյ նոցա, եւ ոչ ասեմք երկուս բնութիւնս զանազանաբարս ի Քրիստոս. այլ մի խոստովանիմք բնութիւն Բանին մարմնացելոյ, ոչ չփոթեալ եւ ոչ անխառն մնացեալ, այլ եւ խառնեալ եւ միացեալ բնութեամբ, անչփոթաբար եւ անբաժանաբար, որ ի վեր է քան զմիտս: Ոչ երկուս բնութիւնս աստուածութեանն եւ մարդկութեանն, եւ ոչ չփոթումն, այլ միութիւն անչփոթաբար: Վասն զի առ Աստուածն Բան միացաւ, եւ նորին փառաց եւ բնութեան գտաւ հաղորդ, որպէս անձինն եւ կերպարանին: Ոչ իբր ոմն առ ոմն համապատուաբար լծակցեալ, այլ իբրեւ քնար իմն ընդ քնարահարաւ եղեալ առ նորայն յարմարեցաւ շարժութիւն կամաց. եւ կամ որպէս լոյս ճրագի յարեգական միացեալ ճառագայթից, առանց ի բաց բառնալոյ ոչինչ կարէ գիւրն ներգործել ճառագայթիցն զանազանութիւն. այսպէս եւ մարդկային էութիւնն ընդ աստուածայնոյն միացեալ անիբացբառնալի, ոչինչ առանձնապէս գիւրն ներգործէ զաւրութիւն:



Քանզի յաղթէ զաւրաւորագոյնն տկարագունին, ընդ ինքեան զնա միաւորելով եւ աստուածացուցանելով, որպէս ասաց Գրիգոր Աստուածաբան ի ճառին որ յաղագս Որդւոյ. եթէ՝ խառնեցաւ ընդ Աստուածութեանն եւ եղեւ մի, վեհագունին յաղթելով: Եւ դարձեալ ի Զատկի ճառին ասէ, Որպէս աւծելոյ Աստուածութեամբն, եւ եղելոյ որպէս որ էաւծն, եւ համարձակիմ ասել զոյգ Աստուած:

Յետ այսպիսի անճառ եւ անհաս միաւորութեան, ո՛չ ոք իշխէ երկու բնութիւն ի ներքս խառնել իմաստս, զի մի որոշիցէ յերկուս դէմս եւ յերկուս որդիս ըստ Նեստորի, այլ միայն զի մարմին յառաջն եւ մարմնացեալ յերկրորդումս կատարեալ ի կատարելումն, եւ ի մի կատարեալ կենդանի, որպէս ասաց սուրբն Բարսեղ առ Ապողինարէս: Քանզի Բանն մարմնացեալ եւ միացեալ, նոյնպէս մարմինն աստուածացեալ եւ ոչ փոփոխեալ յանմարմնութիւն, որպէս ասաց սուրբն Սեբերիանոս. զի թէպէտ եւ ծածկեցաւ, ասէ, մարմինն աստուածութեամբն եւ ներկաւ անմահ արմատովն, եւ եղեւ ամենեւին անմահութիւն, չկորոյս զնկարագիր մարմնոյն, այլ կայ եւ մնայ նկարագիր մարմնոյն, ներկեալ եւ ընկղմեալ ի կենաց անտի: Քանզի յորովայնի կուսին, զանփոփոխելի լուսոյն ճառագայթ, զփոփոխականաւն փայլատակեաց զնիւթով, եւ կայծակ իմն անշուշտ նոյնակերպ հրաշաբուսեալ գլխաւորիւր ըմբռնել զնա լուսոյն անապականութեան յանհարսնացեալ յարգանդին: Սակս որոյ մի դէմ եւ անձնաւորութիւն միով էականութեամբ, եւ մի է նորա բնութիւն, ըստ որում Աստուածածին ծնաւղն, եւ ծնեալն ի նմանէ Աստուած մարմնացեալ, եւ նոյն բնութիւն Հաւր եւ մարմնացելոյ Որդւոյն: Քանզի բնութիւն Բանին

կերպացաւ բնութիւն մարմնոյն, եւ եղեւ բնութիւն Աստուծոյ՝ մնալով մարմին անապական, եւ մնաց Երրորդութիւնն պարզ եւ անչարադիր, զի մի է յԵրրորդութենէն մարմնացեալ Բանն, եւ մի է նորա բնութիւն. զի Երրորդութիւնն պարզ է, եւ առանց ի բազմաց գոյացեալ, եւ ոչ ոք յԵրրորդութենէն ծառայ եւ աւտար, որպէս ասէ Աստուածաբանն, եւ մարմնացեալ Բանն ընդ Հաւր եւ ընդ Հոգւոյ Թուեալ երեք անձինս ասի եւ մի բնութիւն, ապա ոչ ուրեմն ի Քրիստոս բնութեանց զանազանութիւնք, այլ մի է բնութիւն Բանին մարմնացելոյ, որպէս եւ խոստովանիմք մեք, ուսեալք ի սուրբ գրոց եւ ի վարդապետաց եկեղեցւոյ։

Քանզի երանելի առաքեալն Պաւղոս, զմարմնացեալն Աստուածն Բան հանդերձ իւրովն մարմնով Քրիստոս անուանեաց, եւ Աստուծոյ զաւրութիւն եւ իմաստութիւն զնա քարոզեաց ընդ երկնաւս, եւ զնա ասաց ի խաչ ելեալն։ Մեք քարոզեցաք, ասէ, զխաչելեալն Քրիստոս. զնա, ասաց, ի Հրէից ըստ մարմնոյ՝ Քրիստոս՝ ի վերայ ամենայնի Աստուած աւրհնեալ յաւիտեանս, եւ զնոյն՝ մեռեալ վասն մեր, Քրիստոս մեռաւ վասն մեղաց մերոց. զնա ասաց մեծատուն երկնաւոր, եւ զնոյն աղքատ վասն մեր։ Վասն ձեր աղքատացաւ ասէ, մեծատունն երկնաւոր։ Զնա, ասաց, Որդի Աստուծոյ, եւ զնոյն եղեալ ի կնոջէ։ Առաքեաց, ասէ, Աստուած զՈրդին իւր որ եղեւ ի կնոջէ։ Զնա, ասաց, իջեալ ի ստորինս, եւ զնոյն ելեալ գեր ի վերոյ երկնի. Որ էջն, ասէ, նոյն է, եւ որ ելն ի վերոյ քան զերկինս։ Զնա, ասաց, անդրանիկ արարածոց, եւ զնոյն հաստիչ բոլորից։ Նովաւ, ասէ, հաստատեցան որ ինչ յերկինս եւ որ ինչ յերկրի։ Զնա, ասաց, կերպարան Աստուծոյ եւ զինքն Թափեալ ի կերպ ծառայի.



Հնազանդեալ մահու խաչի, եւ զնոյն բարձրացեալ, Առեալ անուն, որ ի վեր է քան զամենայն անուն, որ է Աստուած, եւ Ամենայն ծունր կրկնեսցի Թափեցելումն վասն մեր, եւ Ամենայն լեզու խոստովանի, Թէ Տէր է Յիսուս Քրիստոս ի փառս Աստուծոյ Հաւր։ Զնա, ասաց, Որդի, որով Հայր խաւսեցաւ ժառանգ ամենայնի եւ զյաւիտեանս արարող. եւ նորա մահուամբն, ասաց, հաշտել մեզ ընդ Աստուծոյ. Հաշտեցարուք, ասէ, ընդ Աստուծոյ՝ մահուամբ Որդւոյ նորա։ Զնա, ասաց ճառագայթ փառաց եւ նկարագիր էութեան նորա, եւ զնոյն Անդրանիկ ի մէջ եղբարց բազմաց։ Զնա, ասաց, Աստուած՝ աթոռ ունելով ընդ Հաւր յաւիտեան, եւ զնոյն Աւծեալ ի Հաւրէ. Աւծ զքեզ, ասէ, Աստուած քո իւղով ուրախութեան։ Զնա, ասաց, Ամենայնի Տէր, իբրեւ Որդի երկրպագեալ ի հրեշտակաց, եւ զնոյն Բուռն հարեալ զզաւակէն Աբրահամու, եւ հաւասարեալ մեզ արեան եւ մարմնոյ։ Զնա, ասաց, Կրող զամենայն բանիւ զաւրութեան իւրոյ՝ սրբութիւն մեղաց մերոց արարեալ, եւ զնոյն՝ Առաքեալ եւ քահանայապետ խոստովանութեան մերոյ, եւ զինքն մատուցեալ պատարագ։ Զնա, ասաց, Յարուցեալ ի Հաւրէ եւ ամբարձեալ, եւ զնոյն զինքն յարուցանէ եւ համբառնայ, Յարեաւ, ասէ, Քրիստոս ի մեռելոց փառաւք Հաւր, եւ Թէ՝ Համբարձաւ փառաւք։ Զնա, ասաց, Միջնորդ Աստուծոյ եւ մարդկան, մարդ ասաց զնա, եւ զնոյն Յայտնեալ փառաւք Աստուած եւ փրկիչ. Յայտնութեան, ասէ, փառաց մեծին Աստուծոյ եւ փրկչին Յիսուսի Քրիստոսի։

Արդ՝ ո՞ւր են բնութեանցն զանազանութիւնքըն ըստ սահմանի ժողովոյն Քաղկեդոնի եւ Լեւոնի, զի ահա մի է եւ նոյն, եւ ոչ այլ ոք եւ այլ՝

որ կրեաց զայս, այլ ինքն մարդացեալ Բանն Աստուած որ է Քրիստոս։ Ինքն զաւրութիւն ասի Աստուծոյ եւ իմաստութիւն, եւ ի խաչ ելեալ, եւ ոչինչ յայտնի բնութեանց զանազանութիւնք, այլ ինքն ի վերայ ամենայնի Աստուած ասի, եւ մեռեալ վասն մեղաց մերոց։ Ինքն մեծատուն եւ վասն մեր աղքատացեալ, Որդի Աստուծոյ, եւ եղեալ ի կնոջէ, անդրանիկ արարածոց եւ հաստիչ բոլորից, ի կերպարանի Աստուծոյ, եւ թափեալ ի կերպ ծառայի։ Որդի եւ ժառանգ, եւ յաւիտեանցն արարող. եւ իւրով մահուամբն զմեզ հաշտեցուցեալ, բացածագումն էութեանն Հաւր, եւ անդրանիկ ի մէջ եղբարց բազմաց։ Ընդ Հաւր յաթոռ Աստուած յաւիտենական եւ ածեալ ի Հաւրէ, կրող զամենայն բանիւ զաւրութեամբ, եւ առաքեալ եւ քահանայապետ եւ պատարագ։ Ամենայնի Տէր, իբրեւ Որդի, եւ երկրպագեալ ի հրեշտակաց, եւ հաւասարեալ մեզ արեան եւ մարմնոյ, միջնորդ Աստուծոյ եւ մարդկան մարդ, եւ յայտնեալ փառաւք Աստուած մեծ եւ փրկիչ։ Ապա ուրեմն մի է բնութիւն Բանին մարմնացելոյ, եւ իւրոյ Աստուծոյ Բանին են աստուածավայելուչքն եւ մարդկայինքն, որպէս առաքեալ յայտնեաց, եւ ստուգագոյնս գիտէ Պաւղոս քան զԼեւոն։ Պաւղոս զՔրիստոս զոր յինքեան ունէր խաւսող. այլ եւ աւետարանիչն Յովհաննէս զ’ի սկզբանէ Աստուած Բանն, առ Աստուած՝ որով ամենայն, մարմին լեալ քարոզեաց՝ մնալով Աստուած անփոփոխելի։ Քանզի եղեալ անդրանիկ ի մէջ եղբարց, եւ տեսեալ յասացելոցն վկայէ, փառըս ունելով իբրեւ զՄիածնի առ ի Հաւրէ, լի շնորհաւք եւ ճշմարտութեամբ. եւ զէն ի սկզբանէ Աստուած Բանն կենաց՝ տեսաք, ասէ, աչաւք, եւ վկայէ զտեսեալն եւ զշաւշափեալն ձեռաւք՝ ճշմա-



րիտ Աստուած եւ կեանք յաւիտենականք։

Ըստ ասացելոցս մի է բնութիւն Բանին մարմնացելոյ, եւ ինքն Աստուած Բանն մարմնով իւրով կրեաց զամենայն, եւ ոչ բարժանեցաւ ի բնութիւնս այլ եւ այլս, որպէս ասաց ժողովն եւ Լեւոն. այլ եւ աստուածափառ նախամարգարէն, զ’ի փայտէ կախեալն, կեանս կոչեաց. Տեսանիցէք ասէ ըզկեանս ձեր կախեալ առաջի աչաց ձերոց։ Սերովբէից տեսանող մարգարէն Եսայի, Աստուած, ասաց, զ’ի կուսէ յղացեալն եւ ծնեալն եւ յերկրի երեւեալն, եւ ոչ յայտնեաց բնութիւնս, այլ թէ՝ Ահա Աստուած մեր հատուցանէ զդատաստան, ինքնին եկեսցէ եւ փրկեսցէ. եւ թէ՝ Ահա Աստուած, ահա Տէր գայ զաւրութեամբ, եւ բազուկն տէրութեամբըն։ Եւ զնոյն ասաց, Այր մի ի հարուածս, վիրաւորեցաւ վասն մեղաց մերոց, եւ թէ՝ Ահա կոյս յղասցի եւ ծնցի որդի, եւ կոչեսցեն զանուն նորա ընդ մեզ Աստուած. եւ թէ՝ Կոչեսցի անուն նորա մեծի խորհրդոյ հրեշտակ, Աստուած հզաւր։ Եւ Երեմիա մարգարէ. զԱստուած ընդ որում ոչ համարիցի այլ, որ եգիտ զճանապարհս իմաստութեան, զնա յերկրի երեւեալ, ասէ, եւ ընդ մարդկան շրջեալ։ Եւ Դաւիթ զերեւեալն մեզ Աստուած խոստովանի եւ Տէր, ասելով. Տէր Աստուած մեր երեւեցաւ մեզ։ Ահա առաքեալք եւ մարգարէք եւ աւետարանիչք մի ասացին զմարմնացեալ Բանն Աստուած, միով բնութեամբ, կամաւք եւ զաւրութեամբ, եւ նմա ետուն զբարձրագոյն եւ զխոնարհագոյն զձայնսն, որպէս միոյ Աստուծոյ մարմնացելոյ, եւ հետս բնութեանց ոչ յայտնեցին, զի մի է բնութիւն Բանին մարմնացելոյ։ Եւ ահա սնոտի երեւեցաւ Լեւոնի աստուածաբանութիւնն, որ այլ եւ այլ զոմն իմաստաբանէ։

Այլ եւ երանելի հարքն, որք ի Նիկիա, զ'ի գոյութենէ Հաւր Աստուածն յԱստուծոյ, զլոյսն ի լուսոյ, որով արար զամենայն, զնա՝ վասն մեր մարդկան, ստորիջեալ եւ մարմնացեալ եւ մարդացեալ եւ ախտակրեալ եւ յարուցեալ ասացին, որպէս առաքեալք եւ մարգարէք եւ աւետարանիչք ասացին. եւ ոչ ետուն երկաքանչիւր բնութեանցն զայն ինչ, զոր ժողովն եւ Լեւոն ասացին. այլ յայտնապէս զլոյսն ի լուսոյ, զԱստուածն ճշմարիտ՝ յԱստուծոյ ճշմարտէ, մարդացեալ եւ մարմնացեալ, խաչեալ եւ թաղեալ եւ յարուցեալ ասացին. եւ զնոյն Աստուած անփոփոխելի եւ անայլայլելի ընդ Հաւր եւ ընդ սուրբ Հոգւոյն իւրով մարմնովըն: Եւ արդ՝ ըստ այսմ ամենայնի հետեւելով մեր աստուածային գրոց, Աստուած մարմնացեալ՝ զծնեալն յԱստուածածնէ կուսէ խոստովանիմք, ըզնոյն ներգործաւղ եւ զնոյն կրաւղ՝ ըստ մեզ կենցաղավարութեամբ՝ զաւետարանական զձայնս, վասըն զի ներգործէ Աստուած որպէս եւ կրէ տնաւրինաբար, եւ սակայն յաստուածայինսն մարդկայնովն, վասն զի աստուածացաւ, եւ ի մարդկայինսըն աստուածայնովն, զի ո՛չ ըստ բնութեան կամ յախտից: Ճշմարտապէս մարդկայնովն աստուածայինքն, վասն զի տեսաք ճշմարտապէս աստուածայնովն մարդկայինք, վասն զի փրկեցաք. որպէս մարդկայնովն հրաշագործեալ Աստուածն Բանի, աստուածայնովն տնաւրինեալ հրաշագործի, ըստ այսմիկ եւ աստուածայինքն մարդկայնովն, եւ մարդկայինքն աստուածայնով անխտրապէս առգրեցան: Վասն զի զնոյն զմերս չողացուցեալ Աստուածութեամբըն սպեղանի վիրաց մերոց առնէր:

Արդ այսպէս իմանամք ի վերայ ամենայնի կրիցն, ճշմարտապէս զիւրաքանչիւր ոք ի մերոցս



կրեաց, զքաղցն, զծարաւն, զվաստակն, զտքնութիւնն, զերկիւղն, զանգիտութիւնն, զտրտմութիւնն, զարտասուսն, զհոգսն, ճշմարտապէս եւ ոչ կարծեաւք, անապական եւ աստուածախառն մարմնովն. ո՛չ զճշմարտութիւնն ստուեր համարիմք ի մերմէս երկնչելով ապականելի կրից, զի ոչ հարկաւորաբար, այլ ինքնիշխան կամաւորութեամբ կրեաց: Քանզի Աստուած էր բովանդակն ի խնդիր ելեալ մեզ մահացելոցս, եւ որ զմեզն ապականէին, ի ձեռն առեալ այլանմանս սոքաւք վարեցաւ, վասն զի աճեաց կատարեալս զմեզ առնելով: Կարաւտացաւ, զկարաւտութիւն ի մէնջ ի բաց բառնալով. արտասուեաց, եւ եհատ զարտաւսր յամենայն երեսաց. անգիտացաւ, զի ի մեզ դարձուսցէ զյառաջգիտութեան զշնորհսն. երկեաւ, աներկիւղս զմեզ առ ի կոխել զաւձս եւ զկարիճս յորդորելով. մեռաւ, եւ մահուամբըն զմահ մեռոյց: Քանզի մեռաւ անմահականն, եւ տակաւին անմահ ի նմին մեռելութեանն մնաց: Վասն այսորիկ զխորհուրդ խաչին, Հրէից գայթակղութիւն եւ հեթանոսաց յիմարութիւն, ասաց Պաւղոս: Զի թէ երեւեալն ի վերայ երկրի Աստուած ո՛չ է, ոչ եւս գայթակղեցաւ Հրէայն, եւ եթէ մեռեալն անմահ ի նմին մեռելութեանն ոչ մնաց, ապա ոչ յիմարի հեթանոսն:

Արդ՝ ասեմք կրեալ հաստատապէս, ոչ զայլոյ ուրուք զկիրս, այլ զմերս. վասն զի ճշմարտապէս մարդ եղեւ ասեմք: Դարձեալ գեր ի վերոյ մնացեալ կրիցն վասն զի Աստուած էր: Ոչ զանգիտեմք յայսցանէ, վասն զի ոչ յաղթահարի ի կրից անապական եւ աստուածախառն մարմինն, այլ յաղթութեան զէնս զնոսա մեզ յաւրինէ, ոչ յիմս հայելով ճշգրտեմ զնորայսն, քանզի ես ոչ ի կուսէ եւ ի Հոգւոյն սրբոյ ծնայ, այլ ի սերմանէ առն եւ ի

ցանկութենէ կնոջ, եւ ոչ միացեալ ի Բանն եղէ մարմին Աստուծոյ, եւ ոչ անպարտական մահու, որպէս Նորայն, այլ մարմին եմ մեղաց ընդ մահուամբ գրաւեալ· այնր աղագաւ յապականութիւն ի վայր քարշեալ հարկաւորապէս զիմն կրեմ կիրս, եւ պատժապարտ լեալ մահու մեռանիմ:

Այլ Նա ի Հոգւոյն սրբոյ եւ ի զաւրութենէ բարձրելոյն անապականաբար յարգանդի Կուսին յղացաւ, ուր նախ տիրեաց մեզ ապականութիւն, անդր կանխաւ ժամանեալ զապականութեանն քակեաց զհիմն, սկիզբն ծննդեան ունելով ոչ սերմն ապականացու այլ զՀոգին սուրբ, եւ զզաւրութիւն բարձրելոյն, զդատապարտեալ եւ զապականացուն ի կուսէն առեալ մարմին մարդկային՝ ճշմարտապէս անընդմիջաբար ինքեան միացոյց, որպէս լոյս ընդ արեգակն· եղեալ երկնաւոր հաց, առիթ անապականութեան աշխարհի, եւ աղբիւր անմահութեան, լուծեալ զապականութեան բնութիւն, ծնաւ ի կուսէ, ոչ ըստ ապականեալ բնութեան ծնաւղին, այլ ըստ զաւրութեան ծնեցելոյն բնութեան, եւ քակտեցան աւրէնքն բնութեան: Վասն զի . . . . . . առմանգ անտեսեալ, եւ Աստուածածին կոյս բարեբանեալ, մանուկ ընդ մաւր եղեալ, եւ Աստուած ընդ մեզ քարոզեալ: Եւ ըստ այսմ ստուգապէս Աստուածածին ծնաւղն, եւ ծնեալն անապական եւ անմահ, որ ելոյծ զապականութեան բնութիւն, եւ շիջոյց զխայթոց մահու: Վասն որոյ եւ զմարմինն իւր ասաց Հաց կենաց իջեալ յերկնից, մի՝ զինքն ցուցանելով իւրով մարմնովն յերկնից՝ որպէս Աստուած, եւ ի կուսէն՝ որպէս որդի մարդոյ: Երկրորդ Ադամ, եւ տէր երկնից, որ զսուրբ եւ զանմեղ մարմինն իւր, զոր ասաց հաց կենաց երկնաւոր, եւ աշխարհի կենաց պատճառ, զա՛յն որպէս



անիծից եւ մեղաց պատժապարտ եւ մահու պարտական, կամաւորապէս եւ տնաւրինաբար ընդ ապականութեան արկեալ կրիւք, թո՛յլ ետ յինքն ձգել զհրացեալ նետս չարին, զի շիջուսցէ իւրով ապականալոյծ կրաւորութեամբն, եւ ընդ ամենայնս մեր ճանապարհորդեալ հոգեկան եւ մարմնականս, յամենայն խորամս չարին ընթացեալ՝ ցանկ արկեաց, իւրով մարմնովն սպանեալ զթշնամութիւն, եւ դատապարտեալ զմեղս ի մարմնի: Ելոյծ զբռնութիւն մահու, անպարտական իւրով մահուամբն մարմնովն ազատ ի մեղաց· եղեալ անդրանիկ ի մեռելոց, առաջին պտուղ ննջեցելոց, նստաւ ընդ աջմէ զաւրութեան ի բարձունս: Այսպէս ըստ բնութեանն Աստուած գոլով եւ մարմնովն: Ա՛յս են կիրք մարմնացելոյ Բանին, զոր կրեաց ոչ այլ ոք եւ այլ բնութիւն, այլ ինքն մարմնացեալ Բանն Աստուած մարմնով իւրով կրեաց զամենայն կամաւորութեամբ, եւ ազատեաց զմեզ յապականութենէ մահու եւ մեղաց, որպէս Աստուած սուրբ, հզաւր եւ անմահ, զոր միշտ խոստովանեալ փառաւորէ եկեղեցի Աստուծոյ, զի Աստուծով լիցի մեզ փրկութիւն, եւ մի՛ յուսասցուք ի մարդ, այլ յԱստուած՝ որ կենդանի առնէ զամենայն:

Վասն զի սրբութիւն մեղաց մերոց արարեալ, եւ պատուական արեամբն իւրով զմեզ փրկեալ, միշտնջենաւոր նստաւ ընդ աջմէ Աստուծոյ· Աստուած մարմնացեալ մերով բնութեամբս, կամաւք եւ զաւրութեամբ եւ էականութեամբ, եւ միշտ նոյնագոյ Հաւր եւ Հոգւոյն սրբոյ, վասն զի մի՛ է բնութիւն սուրբ Երրորդութեանն երից անձնա-

ւորութեանց ցոյցք, եւ մի յերից անձնաւորութեանցն մարմնացեալ Բանն Աստուած՝ որ է Քրիստոս, եւ մի՛ է նորա բնութիւն։ Այս է մեր հաւատ։ Զայս վարդապետեալ ուսուցին մեզ գիրք սուրբք՝ սուրբ Հոգւովն, եւ ունիմք, եւ պահեմք յանձինս մեր, մինչեւ հասցուք առ այն՝ յոր հաւատացաքն։

Դո՛ւ, եղբայր սիրելի եւ պատուական, զբարեկամութիւն սիրոյ խաղաղութեան, եւ զգութ եղբայրական խնամոց կալցիս ընդ մեզ, որպէս մեք ընդ քեզ, եւ այլ ինչ աւելի ի մէնջ մի՛ պահանջեր, զի աւելի ինչ քան զոր գրեցաքդ, այլ ինչ ոչ կարեմք առնել, որպէս Աստուած վկայէ, զի ոչ եթէ միայն մեք ոչ հաղորդիմք ժողովոյն Քաղկեդոնի, այլ առաւել եւս քան զազգսն, զոր քո ի թղթի աստ գրեալ էիր, են եւ այլ եւս բազմութիւնք ազգաց, որք ոչ ընդունին զժողովն Քաղկեդոնի, որպիսիք ամենայն Հայք, Աղուանք, Լփինք, Կազփք, Ծիղբք, Ասորեստանեայք՝ որք են Յակոբիկ, ամենայն Եգիպտոս, Եթիոպա մեծ, Արաբիա, Արապինար, եւ ամենայն աշխարհն Հնդկաց, ամենեքեան սոքա ոչ ընդունին զժողովն Քաղկեդոնի, այլ ընդ մեզ մի բնութիւն ասեն Բանին մարմնացելոյ. Թէպէտ եւ ունին ինչ բաժանմունս եւ կրաւնս իւրաքանչիւր։

Այլ մեք ոչ եթէ ապաստամբ ինչ եմք կամ անհնազանդ առ կայսր եւ պատրիարգ, այլ սիրով հնազանդութեամբ մտերմաբար ծառայեմք, մեք եւ թագաւորք եւ իշխանք աշխարհիս մերոյ։ Եւ նոքա ի մէնջ չեն երբեք պահանջել զայն ինչ, զոր չեմք ձեռնահաս առնել։ Վասն զի ո՛վ ոք ոչ գիտէ թէ այս Շ ամ է բարժանմանս մերոյ, աւելի կամ պակաս, եւ բազում անգամ թագաւորքն առաջինք,



հայրապետք եւ իմաստասէրք եւ վարդապետք ջան եղեալ մեծաւ պնդութեամբ հոգ տարան եւ ոչ կարացին զմիանգամ քակեալն վերստին շինել։ Մեք զի՞նչ կարասցուք առնել, փոքունքս եւ նուաղքս եւ երեկոյացեալքս եւ տգէտքս, հասեալքս ի դուռն դատաստանի։ Եւ եթէ վասն է՞ր այս այսպէս գործեցաւ, եւ կամ է՞ր ետ Աստուած թոյլ այսմ մեծի բարժանմանս լինել, այլ թողլի է գիտողին զամենայն, որպէս եւ զայլսն անքննելեաց նորա դատաստանաց, եւ միայն զայս ասել ըստ առաքելոյ. Ո՛վ խորք մեծութեան եւ իմաստութեան եւ զաւրութեանն Աստուծոյ, զի առանց քննելոյ են դատաստանք նորա, եւ առանց զննելոյ են ճանապարհք նորա։ Քանզի ո՛ գիտաց զմիտս Տեառն, կամ ո՛ եղեւ նմա խորհրդակից. զի ի նմանէ եւ նովաւ, ի նոյն ամենայն, նմա փառք յաւիտեանս ամէն։

Զմեղապարտ գրողս զԹումաս եւ զծնաւղսն իմ յիշեցէք աղաւթիւք ի Քրիստոս Աստուած, ո՞վ դասք ուղղափառաց։



## ՂԴ

## ՊԱՏԱՍԽԱՆԻ ԹՂԹՈՅՆ ՄԵՏՐՈՊՈԼՏԻՆ ՍԵԲԱՍՏԻՈՅ, ԳՐԵԱԼ ՀՐԱՄԱՆԱՒ ՏԵԱՌՆ ԽԱՉԿԱՅ ՀԱՅՈՑ ԿԱԹՈՂԻԿՈՍԻ։

*Աստուածային, վեհագոյն քան զմիտս, երկնաձիր եւ անբաղդատելի խաղաղութեանն արժանացեալ բանականքս ի ծագման Բանին Աստուծոյ, եւ նմին յարահետեւեալքս յոյժ դժուարիմք ընդ խռովութիւն, ո՛չ միայն ընդ մեծագոյն իրի՝ այլ եւ ընդ դուզնաքեայ ինչ խնդիր, մանաւանդ որ առաւել ի թշնամութիւն ածէ ըստ հաւատոցն բաժանման բան, որ այժմ ի գրեալս ձեր ծանեաք, ո՛վ պատուական գլուխ եպիսկոպոսաց եւ մետրոպոլիտ մեծ վիճակիդ Սեբաստիոյ։ Բայց քանզի սաստելն ոչ է մեծ, դիւրին է յոյժ վատթարագունացըն, որպէս ասէ Գրիգոր Նաձիանձու, բայց ցածութեան եւ զգաստութեան բանս բարբառել՝ է արանց իմաստասիրաց եւ կատարելոց՝ վասն այսորիկ եւ մեք ո՛չ թշնամութեան բանս հակառակ թշնամանացն ձերոց գրեմք, զի ո՛չ մեք եւ ո՛չ եկեղեցիքն Աստուծոյ ունիմք այնպիսի սովորութիւն, որպէս ասէ Պօղոս երանելին։*

*Արդ քանզի ի սկիզբն թղթոյս ձերոյ եւ զկնի բազում անգամ՝ եռետիկոս զմեզ յեղանակեալ էիք,*

------

*Բնագիր ԺԲ, էջ 202 - 243։*



*եւ իսկ եւ իսկ երկուց բնութեանց զանազանութիւնս, զկնի որոյ երկու կամս եւ երկու ներգործութիւնս խոստովանեալ էիք Քրիստոսի, եւ որ սարսափելին է՝ քարոզութեամբ առաքելոցն եւ առաջին վարդապետաց ասացեալ, իբրեւ պղնձոյ շուրջ եդեալ զխաբէութիւն արծաթոյ՝ յա՛յտ արարէք ի նոցունց յառաքելոցն քարոզութենէ եւ յաւետարանչացն աւետարանութենէ եւ ի հարցն վարդապետութենէ՝ մարմնացեալ Բանին երկու բնութիւնս եւ երկու կամս՝ եւ հնազանդիմք իբրեւ ուղիղ բանի ։ Այս թէ պաճուճանս միայն դնէք զանուանս նոցա, զօրէն ռամկի թագաւոր կերպարանեալ, (զի մի ասացից առիւծենեաւն կերպարանեալ զկենդանին զայն , կամ զարծուովն զանց արարեալ զճային առասպել առ այլոց հաւուցն գեղեցկութեամբ) ո՞չ ապաքէն խաբէութիւն է առ տգէտս, ո՛վ իմաստունդ յայսոսիկ։ Իսկ որոց աչք ի գլուխ, եւ միտք յիմաստութեան, եւ կատարեալ հասակաւ, եւ կիրթ ճաշակելեօք՝ նոցա կարողութիւն է ընտրութիւն առնել ի մէջ բարւոյ եւ չարի։ Սակս այսորիկ եւ մեք զհաւատոյս մերոյ ըզբարեպաշտութիւն յայտնի քարոզեմք եւ գրեմք ի նամակի աստ։ Զի ի վերայ լերին բարձու հրամայեցաւ բարձրացուցանել զբարբառն հաւատոց, եւ ի Տեառնէ հրամայեցաւ՝ զ՚ի յունկանէ լուեալն ի վերայ տանեաց բարձրութեան ասել եւ քարոզել։*

*Արդ թէպէտ եւ յոլորտս հիւսիսական աշխարհիս բնակեալ եմք, ուր սառնասառոյց ցրտութեան օդոցն շնչմունք, եւ ըստ մասին սառուցեալ յառաջագոյն անգիտութեան խաւարաւն ոգւոց մերոց՝ անճաճանչ ի ծագմանէ աւետարանական լուսոյն մնացաք հարուստ ամս եւ ժամանակս՝ սակայն յորժամ այց արար մեզ ի բարձանց Արեգակն ար-*

դարութեան ի ձեռն քաջաձայն առաքինութեան եւ չարչարանաց ամեներջանկին Գրիգորի, Լուսաւորչին սրբոյ, եւ խոստովանողին Քրիստոսի, որ աստուածաստատ հարուածովք եւ աստուածահրաշ ընքանչելեօք դարձոյց յանգիտութենէ յաստուածգիտութիւն ճշմարտութեան զազգս եւ զթագաւորութիւնս Հայաստանեայց։ Յորմէ ուսաք զԵրրորդութիւնն սուրբ խոստովանել եռանձնեայ դիմօք եւ մի զօրութեամբ եւ փառօք եւ աստուածութեամբ երկրպագեալ, համագոյական Հօր՝ զՈրդին եւ զՀոգին սուրբ խոստովանեալ, եւ զնոյն մինն յԵրրորդութենէն, միածին Աստուած յԱստուծոյ, լոյս ի լուսոյ, որ է պատկեր աներեւութին Աստուծոյ, լոյս փառաց եւ նկարագիր էութեան Հօր, իջեալ յորովայն սրբոյ կուսին Մարիամու կամօք Հօր եւ հովանաւորութեամբ սուրբ Հոգւոյն՝ շրջաստեղծեաց ինքեան մարմին միաւորութեամբ Աստուածութեանն, ծնեալ ի Կուսէն աստուածախառն մարմնով, յառաջ եկեալ անճառաբար եւ առանց աղտոյ, ի փրկութիւն մեզ եւ ամենեցուն, որք կարդան զանուն նորա։

Զոր եւ սուրբ Սիւնհոդոսն Նիկիոյ, որ ի ձեռն Կոստանդիանոսի՝ ՅԺԸ հարանցն սակս Արիոսի չարափառութեանն ժողովեալք, ընդ որս եւ մերն Ռստակէս, որդի սրբոյն Գրիգորի, զնոյն ասացեալ եւ քարոզեալ ծագաց տիեզերաց, նոցին դաւանութեանն ձայնակցեալ։ Եւ երկրորդ ժողովն ՃԾ հարցըն, որ ի Կոստանդնուպոլիս, ի ձեռն բարեպաշտ Թագաւորին Թէոդոսի, ընդդէմ Մակեդոնի հոգեմարտ հայհոյչին. ընդ որս եւ սուրբ Հայրապետն Հայոց Ներսէս։ Սոցա սակի եւ միաբարբառ է եւ երրորդ ժողովն յԵփեսոս Մ հարանցն, ի ձեռն Թէոդոսի Փոքուն բարեյաղթ Թագաւորի ժողովեալ,



ի յանդիմանութիւն եւ յեղծումն մարդադաւան աղանդիցն Նեստորի. ընդ որս միաբանեաց Թղթովք եւ սուրբն Սահակ հայրապետն Հայոց եւ Մեսրոպ երանելի վարդապետն մեր։

Ի սոցանէ ուսեալք՝ զսոցայն խոստովանիմք հաւատ, յոր դաւանէաքն, եւ ուսաք եւ մկրտեցաք. եւ պահեմք զգեղեցիկ աւանդութիւն հայրենատուր ժառանգութեանցն. եւ իբրեւ զգոյն ի մարմնի՝ անջնջելի մնայ ի սիրտս եւ յոգիս մեր։

Այլ զի մի՛ երկայնագոյն բանիւ ցնդեսցուք իբրեւ զջուրս ընդ դաշտս տարածեալ եւ ոչ պընդեալ խողովակաւ՝ հարցանեմք իբրեւ ընդ աշակերտս Առաքելոցն եւ սուրբ հարանցն։ Ո՞ւր արդեօք ի սոցանէ գրեցաւ կամ քարոզեցաւ՝ բաժանեալ բնութեամբ եւ բաժանեալ կամօք Քրիստոս. զի՞րդ ասէք բաժանեալ բնութիւն աստուածախառն մարմնոյն, որ ո՛չ ի սերմանէ, այլ ի սրբոյ Հոգւոյն նիւթեցաւ եւ ի բարձանցն ծագմանէն, եւ ի ծնանելն, որպէս ասաց Գաբրիէլ՝ սուրբ կոչեցեալ եւ Որդի Բարձրելոյն։

Ո՞ր բնութիւն է Որդի Բարձրելոյն, կամ զո՞ր բնութիւն ասէք Փրկիչ եւ Օծեա՛լ եւ Տէր, որպէս ասաց հրեշտակն առ հովիւսն. ո՛չ երկու բնութեամբ, զորոյ զփառսն, ասէ, տեսաք, իբրեւ զմիածնի առ ի Հօրէ։ Ո՞ւմ արդեօք զփառսն հայրենի ասէք, մարմնո՞յն եթէ Աստուածութեանն։ Եւ յերեւել Երրորդութեանն ի Յորդանան գետ ի մկըրտութիւն Որդւոյ, յորում Հոգին սուրբ ի նմանութիւն աղաւնւոյ գայ ի վերայ նորա, եւ ձայն հայրենի ի յայտնութիւն տիեզերաց եկեալ, «Դա է Որդի իմ սիրելի», յանդգնեցի՞ս արդեօք եւ ըստ բնութեանցն բաժանել զբարբառն հայրենի։ Եւ նոյն ձայն ի լերինն, ի ծագման փառացն Տեառն՝ որո՞յ

*բնութեան արդեօք ասաց Որդի եւ Սիրելի։ Եւ յորժամ զսահման սիրոյն Աստուծոյ առ աշխարհս յայտնէ աստուածաբան Աւետարանիչն, ո՞չ ապաքէն ասէ, թէ «զմիածինն ետ»․ եւ ո՞ւր արդեօք ետ՝ եթէ ոչ ի խաչն եւ ի մահ։ Արդ բաժանեա՛ զՄիածինն, թէ ո՞ր արդեօք բնութիւն էր, ով քաջ, որ տուաւ ի Հօրէ։*

*Զոր բացափայլ լուսաւորութեամբ նոյն ինքն Աւետարանիչն, վասն անբաժանելի եւ անճառ միաւորութեանն, երբեմն զմարդկութիւնն աստուածութիւն անուանէ, եւ երբեմն զաստուածութիւնն մարդ եւ որդի մարդոյ կոչէ․ քանզի «Յերկինս, ասէ, ո՛չ ոք ել, եթէ ոչ՝ որ էջն յերկնից Որդի մարդոյ, որ էն յերկինս»։ Եւ յորժամ զայս ասաց Տէրն՝ ո՛չ յերկինս էր մարմնովն, եւ ո՛չ կանխաւ յերկնէ իջեալ մարմին, որպէս Եւտիքեայ թուեցաւ, այլ զաստուածութիւնն կոչեաց որդի մարդոյ՝ «Եւ տեսանիցէք զորդի մարդոյ, զի ելանիցէ ուր էր զառաջինն»․ եւ զիա՞րդ նախ քան զմարդանալն զորդին մարդոյ յերկինս ասիցէ։ Բաժանեա՛ աստանօր զբնութիւնն, ո՛վ նոր աւետարանիչդ․ ո՞չ ապաքէն նոյն ինքն միածինն ի Հօրէ եւ կուսածինն ի մօրէ անորոշաբար ասաց, եթէ «Խնդրէք զիս սպանանել, մարդ՝ որ զճշմարտութիւն ընդ ձեզ խօսեցայ, զոր ուսայ ի Հօրէ իմմէ»։ Եւ յորժամ ինքն զաստուածութենէ իւրմէ հարցանէր՝ «Զորդւոյ մարդոյ զի՞նչ ասէք»՝ եւ յայտ առնէ խոստովանութեամբ պատասխանին Պետրոսի, զի Որդի Աստուծոյ դաւանեաց։ Եւ մեկնէ բերան ոսկի Յովհան, եթէ զաստուածութիւնն կոչէ որդի մարդոյ, եւ զվերագոյն գրեալսդ ի վկայութիւն բերէ, եթէ ո՛րպէս բազում անգամ ասէ զաստուածութիւնն որդի մարդոյ։*



*Զայսքան բազմապատիկ եւ հզօրագոյն բացերեւութեամբ զխորհուրդ միաւորութեան մարմնացելոյ Բանին Աստուծոյ թողեալ՝ յերկուս պատառէք զմիաւորութեան պատմուճանն, զանազանեալ բնութեամբ եւ կամօք, զոր ոչ գրեցին եւ ոչ քարոզեցին Առաքեալքն։*

*Որո՞վ բնութեամբ ըստ մարմնոյ զՔրիստոսն Պօղոս Աստուած ի վերայ ամենայնի ասէ, կամ ո՞ր կերպարանի եւ բնութեան ամենայն ծունր կրկնի․ մարմնո՞յն եթէ աստուածութեանն։ Բաժանեա՛ երկու բնութեանն եւ երկուս երկրպագութիւնս․ (քանզի ոչ իշխէք ասել երկուս երկրպագութիւնս, թէպէտ եւ յոյժ էք բաժանասէրք, եւ եթէ ասէք զմի եւ զնոյն զերկրպագութեանն՝ զերկրպագութիւնն բաժանէք, եւ օտար ոմն Աստուած ի ներս ածէք)։ Այլ որպէս մի երկրպագութիւն խոստովանիք՝ հարկ է ձեզ եւ ակամայ, թէպէտեւ ոչ կամիք՝ միութիւն խոստովանել Տնօրինեցելոյն․ քանզի ոչ երկրպագի մարդկային բնութիւն ըստ աստուածութեան, եւ ոչ իսկ վայել է երկնաւորացն երկիր պագանել երկրային բնութեան․ ընդ որս եւ հասարակաց բնութիւն ամենայն մարդկութեանս երկրպագի յաղագս մեզ բնութենակից լինելոյ։*

*Ո՛վ անբանութեանս, մանաւանդ եթէ անգիտ մոլորութեանս․ պարտ է ձեզ ի մէջ երկուցն բնութեանց ա՛յլ եւս բնութիւն խնդրել՝ զի ճողոպրիցիք ի հայհոյութենէ, (կամ յե՛ւս մեծագոյն հայհոյութիւն անկանիցիք)։ Արդ զայս կնքէ մեծն Կիւրեղ յեօթներորդ գլուխ երկոտասան գլխոցն․ «Եթէ ոք ոչ, ասէ, միով երկրպագութեամբ եւ փառաւորութեամբ պատուեսցէ զԷմմանուէլն՝ նզովեա՛լ եղիցի»։ «Բարձրացուցանել, ասէ Պօղոս, եւ անուն շնորհել գեր ի վերոյ քան զամենայն անուն մար-*

մնոյ»․ եւ զի՞նչ իցէ գեր ի վերոյ անունն, եթէ ոչ՝ Աստուած։ Եւ զիա՞րդ ոք յանդգնի ասել երկուս Աստուածս։ Քանզի Բանն եւ յառաջ իսկ ունէր զաստուածութեանն անուն, եւ զի զկնի անճառ միաւորութեանն եւ խառնելոյ զանխառնելի բնութիւնսն՝ եւ զառեալ մարմինն աստուածացոյց եւ եղեւ ըստ բնութեան առողին եւ ըստ զօրութեան, որպէս Գրիգոր աստուածաբան ասէ․ եւ դարձեալ յայլում ճառի՝ եթէ «Զաստուածային պատկերն ընդ մարդկային կերպարանն խառնեաց, եւ ծանեաւ տունն Իսրայէլի, թէ Տէր եւ օծեալ զնա Աստուած արար»․ զոր մեկնեալ իւր նոյն ինքն Աստուածաբանն, յոր դուքն պարծիք – ի մերն պարծանք՝ եթէ Օծեալ եւ Քրիստոս կոչեցաւ, ո՛չ զօրութեամբ ըստ այլոց օծելոց, այլ մերձաւորութեամբ բովանդակ Օծողին, որոյ գո՛րծ էր՝ մարդոյն լինել օծեալ եւ առնել Աստուած զօծեալն։

Բաժանեա՛ արդ զօծեալդ անուն յերկուս բնութիւնս, եւ ցո՛յց զմիջոց երկուց Աստուծոց ըստ երկու բնութեանց։ Եւ զի ոչ կարես՝ պարտ է քեզ խոստովանել՝ մի Տէր, մի Քրիստոս, մի Աստուած, եւ մի բնութիւն։

Եկ շրջեցուցից զքեզ եւ ընդ այլ բանսն Աստուածաբանին։ Յորժամ ասէ, թէ «Ոչ միայն զաստուածութիւնն ասեմ կատարեալ, այլ եւ զմարմինըն օծեալ յաստուածութենէն եւ եղեալ՝ որպէս որ էօծն․ եւ համարձակիմ ասել մի Աստուած»՝ զի՞նչ զայս իմանաս, ո՛վ բնութիւնասէրդ, եւ զիա՞րդ ըզմի Աստուածն յերկուս բնութիւնս բաժանես։ «Եկեալ՝ Աստուած հանդերձ առեցելովն, մի յերկուց ընդդիմակցացն, ի մարմնոյ ասեմ եւ հոգւոյ, յորոց մին աստուածացոյց եւ միւսն աստուածացաւ»․ զաստուածացեալն զիա՞րդ իշխես օտար բնու-



թիւն ասել։ Զի՞նչ իցէ նորաձեւութիւն բնութեանցըն ըստ աստուածաբանին, եթէ ոչ՝ միութիւն․ քանզի Աստուած մարդ լինի․ ո՛չ՝ որ ինչ էրն՝ փոխեցաւ, այլ զոր ինչ ոչն էր՝ էառ․ զի տարեալ լիցի անտանելին միջնորդաւ հոգւոյն օծութեանն, միջնորդելով եւ մարմնոյն թանձրագունի։

Աստանօր պարտ է զարմանալ․ միջոց ասաց զմարդկային հոգին՝ մարմնոյն եւ աստուածութեանն խառնման։ Ո՞չ ահա յայտ է, եթէ բաժանումըն առնես բնութեանցն՝ ո՛չ միայն երկու, այլ եւ երիս բնութիւնս հարկ լինի քեզ խոստովանել, միջոցն յաւելլովն․ եւ եթէ բառնաս՝ ոչ լինի խառնումըն երկուցն եւ ոչ Աստուած մարդ լինի․ եւ ամենեքեան զրկեալք ի փրկութենէն։ Տեսանե՞ս ո՛ւր արդեօք բաժանումնդ քո վարէ զքեզ։ Նա ի նոյն ճառի ոչ միայն խառնմամբ զաստուածային բնութիւնն ընդ մարդկային բնութեան ասէ, այլ եւ ընդ մահկանացուին զանմահն, եւ ընդ չարչարելին զանչարչարելին եւ ընդ անպատուութեանն՝ որ քան զամենայն պատիւս գերագոյն է։

Եւ Աթանաս ի թղթին Ապողինարի մի բնութիւն ասաց Աստուծոյ Բանին մարմնացելոյ։ Զնոյն եւ հետեւող նորին Կիւրեղ, յորժամ եհարց զնա Սեկունդոս եպիսկոպոս, եթէ պարտ է երկո՞ւս բնութիւնս իմանալ Բանին մարմնացելոյ եթէ մի՝ եւ նա գրով պատասխանի առնէ, եթէ «Յետ միաւորութեանն ոչ անջատեմք զբնութիւնս ի միմեանց, ո՛չ յերկուս որդիս հատանեմք զմինն եւ զանբաժանելին, այլ միաւորեմք․ որպէս եւ սուրբ հարքն ասացին մի բնութիւն մարմնացելոյ Աստուծոյ Բանին»։ Եւ դարձեալ յերկրորդ թղթին, որ առ Սեկունդոս՝ «Այլ ասեն,– ասէ, հակառակորդքն եթէ մի բնութիւն է մարմնացելոյ Բանին Աստու-

*ծոյ՝ հարկ է ամենայնի շփոթումն ընդունիլ եւ խառնակումն, որպէս ծախեցելոյ եւ ի ներքս գողացելոյ մարդկայնոյ բնութեանն. եւ անգիտացան զուղիղսն թիւրել, թէ ըստ ճշմարտութեան ասէ մի բնութիւն մարմնացելոյ Բանին Աստուծոյ»: Դարձեալ սուրբն Կիւրեղ առ Լէգէոս քահանայ «Եթէ ասեմք, ասէ, մի բնութիւն խոստովանել եթէ մարմնոյ հոգեւորի եւ իմանալւոյ՝ եւ ոչ մեկուսին ի միմեանց միաւորեալքն. այլ է մի որդի այնուհետեւ եւ մի բնութիւն նորա»: Եւ դարձեալ գրէ առ Թէոդոս թագաւորն. «Թէպէտ ի զանազանից եւ յաննմանից եկեալ առ միմեանս բնութիւնքն՝ մի Քրիստոս, եւ մի Որդի, եւ մի բնութիւն հանդերձ առեցելովն»: Զնոյն գրէ եւ առ Ակակ Մելտինոյ եպիսկոպոսն, հետեւող սուրբ հարանցն. «Ամենայն ուստեք աստուածայնոց ի սուրբ կուսէն ասեն առնուլ զմարմին Աստուծոյ Բանին, որ է մի եւ միայն Որդի եւ մի Տէր Յիսուս Քրիստոս. յերկուց բնութեանց ասեմք միաւորեալ յետ միաւորութեանն՝ որպէս ի բաց բարձելոյ յերկուս հատման. եւ մի գոլ հաւատամք զՈրդւոյ բնութիւնն»:*

*Եւ սուրբն Բարսեղ ի ճառի ծննդեանն Քրիստոսի ասէ. «Աստուած ի մարմնում ո՛չ առածոյ գործովք, որպէս ի ձեռն մարգարէից, այլ բուսակից ինքեան եւ միաւորեալ ներկայացուցանելով զմարդն: Եւ զի՛նչ օրինակ ի մարմնումն աստուածութեան. – որպէս հուր յերկաթում, ո՛չ փոխարկաբար այլ փոխատրաբար. քանզի ո՛չ եթէ արտաքըս ինչ յիւրմէ ընթանայ հուր առ երկաթ, այլ մնալով ըստ բնութեանն ի տեղւոջ՝ փոխատրէ ի նմա յիւրմէ զօրութենէն, որ ոչ նուազէ փոխատրութեամբ. եւ զբոլորն լնու զընդունողն: Ըստ այսմ եւ աստուածային Բանն ոչ շարժի յիւրմէ եւ*



*բնակեաց ի մեզ, եւ ոչ յեղումն ինչ կրեաց, եւ Բանըն մարմին եղեւ: Եւ զի՞րդ, ասեն, ի մարմնական տկարութենէ ոչ լցաւ Աստուածն Բան. ասեմ՝ եթէ ոչ հուրն ի յատկութենէ երկաթոյն առնու ինչ. սեաւ է երկաթ եւ ցուրտ. բայց սակայն հրացեալ՝ զհրոյ կերպարան զգենու. եւ ինքն պայծառանալով՝ ոչ սեւացուցանէ զհուր. քանզի եւ ոչ ստեղծականիս այս հրոյ հանգիտաբար տայցես ազդել Աստուածութեանն»:*

*Զնոյն եւ Աթանաս ի ծննդեան ճառին. «Ուղղորդապէս եւ մեք խոստովանեսցուք՝ յանապական մարմնի զտնօրէնութիւնն. քանզի մարմին եղեւ Բանն բնութեամբ եւ միացաւ ի նմա անորոշաբար ի մի. եւ Տէր մեր եւ Փրկիչ Յիսուս Քրիստոս միով բնութեամբ եղեւ մարդ ի յարգանդի Կուսին: Մարգարէից տառիցն ունկն դիցուք. զի անապական ցուցին միով բնութեամբ: Ոչ ուրանամ զբնութիւնն եւ ոչ բաժանեմ. այլ միութիւն ասեմ անշփոթաբար ըստ Պրոկղի յայնմ ճառի, որոյ սկիզբն է «Կուսական է տօնս, ասէ, կոչեաց զմեզ ի միասին այսր սուրբ եւ Աստուածածին կոյսն Մարիամ անաղտ կուսութեան բաժակն, բանաւոր դրախտն երկրորդ Ադամայ, գործարան միաւորութեան բնութեանցն, սարսափելի տնօրէնութեանն ոստայն, յորում անճառաբար անկաւ միաւորութեանն պատմուճան: Նա անապականաբար ծնաւ, եւ դրօքն փակելովք անխափան ի ներքս եմուտ. զորոյ զմիութիւն բնութեանցն Թովմաս աղաղակեաց՝ «Տէր իմ եւ Աստուած իմ»: Եւ յետ այլոց ասէ, եթէ «Բնութեամբ անչարչարելին եղեւ գթութեամբ բազմաչարչարելի»: Եւ դարձեալ ասէ. «Գթասէրն Աստուած եկն, որ միշտ մերձն էր, եւ ետ փրկանս զիւր արիւնն եւ գնեաց զաշխարհս ի նզովից օրի-*

նացն· որ գնեաց զմեզ՝ ո՛չ է սոսկ մարդ, ո՛վ Հրէայդ»։ Եւ դարձեալ՝ «Եթէ այլ ոք է Քրիստոս եւ այլ ոք Աստուած Բանն՝ ո՛չ եւս Երրորդութիւն»։ Մի՛ պատառեր զտնօրէնութեանն պատմուճան զ՚ի վերուստ անկեալն, մի՛ աշակերտիր Արիոսի, վասն զի նա ամբարշտելովն զբնութիւնսն հատանէ։ Դու զմիաւորութիւնն մի՛ բաժաներ, զի մի՛ բաժանեսցիս յԱստուծոյ։

Եւ Եպիփան յեօթն եւ տասներորդ սաղմոսին ասէ· «Քանզի միածին Որդին Աստուծոյ մարդացաւ, եւ եղեւ որդի Դաւթի ճշմարիտ, եւ անշփոթ մնացեալ բնութեանցն եւ անքակ լեալ միաւորութեանն»։ Եւ դարձեալ նոյն Եպիփան ի Պարունակախօսն ասէ· «Ինքն Աստուած՝ ինքն մարդ· ոչ շըփոթեալ միութեամբն, այլ զերկոսին ի միասին խառնեալ, զերկրայինն ընդ Աստուածութեան»։

Տե՛ս, զանճառ միաւորութիւն Բանին եւ մարմնոյն ի մի զօրութիւն զօրացոյց, ի մի աստուածութիւն ժողովեաց, մի զոլ Տէր, մի Քրիստոս· ո՛չ երկու քրիստոսք եւ ո՛չ երկու աստուածք ի նոյն մարմին հոգեւոր, ի նոյն աստուածութիւն անհասանելի։ Որպէս Գրիգոր Աստուածաբան սրբոյն Բարսղի պատասխանի առնէ ի հարցմանն վասն բնութեանցն զանազանութեան· «Եթէ զանազանութիւն՝ ասէ, աննմանութիւն, եւ եթէ աննմանութիւն՝ ո՛չ պարզութիւն, եւ եթէ ոչ պարզութիւն՝ ի բազմաց դրութիւն, որ լինի բազում դրութիւն»։ Այլ զի ճշմարտութիւնն մի է եւ ո՛չ բազում բնութեամբ, ասէ Աստուածաբանն, իսկ ի բազումս բաժանելն՝ ստութիւն։

Յոր ոչ կարացեալ հասանել չար ախոյեանն Ապողինարէս ի ձեռն անհաւատութեան՝ երկու կատարեալ ասէ ի մի մարմին։ Եւ սուրբն Կիւրեղ



պատասխանի առնէ, եթէ «Երկուց գոյութեանցն կատարելոց միաւորութիւն»։ Եւ դարձեալ Ապողինարէս՝ եթէ «Երկու կատարեալ ի մի կատարեալ կենդանի լինել ո՛չ կարէ»։ Եւ դարձեալ սուրբն Բարսեղ՝ «Ի մարդկանէ անկարելի, իսկ առ ի յԱստուծոյ կարելի· որպէս ի Կուսէն ծնանելն, եւ ի վերայ ծովուն գնալն, որպէս դրօքն փակելովք մարմին թանձրամած, հաստատեալ ի մսոյ եւ յոսկերաց՝ մտանելն։ Արդ զոր օրինակ այս կարելի է Աստուծոյ՝ նոյնպէս եւ այն· քանզի Աստուծոյ է եւ աստուածային է ամենայն բնութիւն եւ կիրք եւ ներգործութիւն եւ կամք»։

Այսոքիկ յաղագս երկուց բնութեանց ընդդիմասացութիւնք բաւականասցին ի սուրբ հարանցն՝ եթէ կամեսջիք ախորժելով լսել ի բաց թողլով զհակառակելն։ Արդ տեսցուք եւ որ յաղագս կամացն, զոր դուք առնուք զասացեալսն ի սրբոյն Կիւրղէ, եթէ «Յորժամ կամէր՝ թոյլ տայր մարմնոյն կրել զիւրսն», որ անհնարին է այս լինել ի միում անձին։ Եթէ հարկաւորապէս դնէք երկաքանչիւր բնութեանցն կամել եւ գործել զիւրն՝ ապա ոչ էր աստուածացեալ բոլորն, այլ տակաւին եւս թշնամութիւն ի մարմնի։ «Զի յորժամ առնէաք, ասէ, զկամս մարմնոյ եւ մտաց՝ եւ էաք արդարեւ որդիք բարկութեան»· որ եւ ո՛չ Պօղոսի ծառայական բնութեանն հաւասար էր, որ փոփոխմամբ զմիտս Քրիստոսի ունէր։ Իսկ եթէ աստուածացեալ ասէք զբոլորն, եւ ի մեր փրկութիւն տնօրինաբար միով իշխանականաւ թողացուցանէր մարմնովն կրել զանանգոսնելի կիրսն՝ յայտ է, եթէ զաստուածային միայն յայտ առնէք զկամսն, վեհագունութեամբ յաղթողն ամենայնի։ Արդ եւ յաղագս այսորիկ գիտասցուք զսուրբ հարանցն

ասացեալսն։

Ասէ յաղթող սպառազէնն Քրիստոսի Աթանաս ի ճառին որ ի Յայտնութիւն Փրկչին· «Վասն այսորիկ եկն Բանն Աստուած վասն առաջնոյ մարդոյն ի կենդանութիւն մարդոյն, ի բաց բարձումն անիրաւ թշնամւոյն մեր· ծնաւ ի կնոջէ՝ զառաջին ստեղծուածն զմարդկային կերպարանս ինքեամբ հաստատել· ցուցաւ մարմնոյ առանց մարմնական կամաց եւ խորհրդոց մարդկայնոց, ի պատկեր նորոգութեան, ի կամս աստուածութեան· վասն զի եւ բնութիւն բոլոր Բանին ցուցմամբ կերպիւ մարդկայնոյ մարմնոյ»։

Գրէ եւ եպիսկոպոսն Հռոմայ Ոնորիոս· «Զի եթէ էր ծնուցեալ՝ ոչ արդեօք զՏէրն փառաց ի խաչ հանէին»· որ եւ յայտնի է, եթէ աստուածութեանն ոչ է հնար ի խաչ ելանել եւ ոչ զչարչարանաց մարդկայնոց զփորձ առնուլ, եթէ եւ զայսոսիկ կրէր վասն անճառելի միաւորութեան մարմնոյն եւ աստուածային բնութեանն։ Վասն որոյ մի կամք խոստովանիմք Տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի· քանզի կամք այլ եւ այլք հակառակ ոչ եղեն ի Փրկիչն մեր· վասն զի ի վեր քան զօրէնս մարդկութեան ծնուցեալ եղեւ։

Եւ Գրիգոր Աստուածաբան զկամացն այսպէս գրէ· «ԶՓրկչին ասելն՝ Ոչ զի զկամս իմ արարից· զի եթէ ոչ ի ստորինս իջելոյն յինքենէ այսոքիկ ասացեալ լինէին՝ ասէաք արդեօք, իբր ի մարդոյ տպաւորեալ զԲանն, որ ըստ Փրկչին իմանան· քանզի նորա կամելն ոչ ընդդէմ Աստուծոյ է, այլ յԱստուծոյ բովանդակն· այլ ըստ մեզ՝ իբրեւ մարդկային ախորժակացս ոչ ամենայն իրօք զհետ երթայ աստուածայնոյն»։ Տեսանե՞ս, զի որոշեալ կամըս Փրկիչն զհասարակաց մարդկութենէս ասաց եւ



ոչ զիւրոյ մարմնոյն։

Այլ եթէ զհրաժարումն բաժակին ասես, եւ եթէ «Ոչ իմ կամքս, այլ քոյդ զօրասցին կամք»՝ եւ զայս ի նոյն գլուխ Եօթնեկին ի տասներորդ գըլխոցն մեկնէ Աստուածաբանն· «Իբրեւ ոչ եթէ կարողութիւն իցէ, ասէ, եւ կամ թէ ոչ կարողութիւն՝ զայն անգիտանալ ի դէպ էր, եւ ոչ կամացն հակառակ ի ներքս ածել կամս· այլ զի առողին է բանս այս, որ էջն եւ որ առաւն»։

Տե՛ս զմիաւորութիւն առողին, եւ որ առաւն, Բանին ասեմ եւ մարմնոյն։ Ասա՛, ո՛վ անբան սպասաւոր Բանին, իբրեւ ոչ եթէ առանձին ինչ իցեն Որդւոյ կամք քան թէ Հօր, այլ որպէս թէ ոչ իցեն, բանս է· զի եղիցի այնպիսի իմն ժողովումն։

«Ոչ զի արարից զկամս իմ, զի եւ ոչ են իսկ իմն ի քումմէդ բաժանեալ, այլ հաւասարակից իմ եւ քո են, որպէս մի աստուածութիւն՝ նոյնպէս եւ կամք»։ Տեսե՞ր որպէս կորոյս զմարմնոյն կամս եւ ընդ մի աստուածութիւն Հօր եւ Որդւոյ միաւորեաց։

Ոչ կարես բաժանել, ո՛չ բնութեամբ եւ ո՛չ կամօք, որպէս ահա ցուցաւ· քանզի մի է երեւելին եւ աներեւոյթն, անժամանակն եւ ընդ ժամանակաւն, եւ ո՛չ այլ ոք եւ այլ մի լիցի· վասն զի երկոքին ի մի խառնելովն, Աստուծոյ մարդանալովըն, եւ մարդոյն աստուածանալովն բազում անգամ յեղանակէ Աստուածաբանն զաստուածանալն մարդոյն, զի մի՛ հետք իսկ երեւեսցին բնութեան եւ կամացն զանազանութեան։

Եւ Գրիգոր Նիւսացին յերկրորդ գիրսն, որ ընդդէմ Եւնոմիոսի՝ «Զի մեք, ասէ, զմարմինն, ո-

րով չարչարանս ընկալաւ՝ ընդ աստուածային բնութեանն խառնեալ ասեմք, արարեալ ի ձեռն միաւորութեանն՝ զոր ինչ է առողին բնութիւն»։ Նա եւ առ Թէոփիլոս Աղեքսանդրու եպիսկոպոսապետն գրէ, եթէ «Ամենայն ինչ, որ տկար եւ ապականացու բնութիւն էր՝ խառնեալ ընդ աստուածութեանն էր միշտ»։

Եւ մեծն Բարսեղ յերրորդ սաղմոսի մեկնութեանն ասէ. «Կարողակից արարեալ զհողեղէն մարմինն աստուածութեանն՝ ի մի զօրութիւն զօրացոյց եւ ի մի աստուածութիւն ժողովեաց»։

Եւ Դիոնէսիոս Պօղոսի աշակերտն, որ եւ Փրկչին տեսլեան արժանաւոր եղեալ՝ գրէ առ Գայիոս ասպնջական Առաքելոցն. «Զառ ի Թաքնութենէ գերագունին ի մերս երեւոյթ մարդկօրէն լինելոյ գալն Թագունեաց եւ երեւելոյն, զի եւ աստուածականագոյն ասացից զերեւելն մարմնով։ Եւ այս խորհուրդ Յիսուսի անյայտ է ո՛չ միայն բանի կամ մտաց՝ հպել ի խորհուրդն նորա, այլ եւ ճառելովն անճառելի մնայ եւ գիտելովն անգիտելի. ո՛չ մարդ էր Քրիստոս եւ ո՛չ որպէս ոչ մարդ. այլ որպէս ի մարդկանէ, անդր եւս քան զմարդիկ. եւ ապա ո՛չ ըստ Աստուծոյ զաստուածայինսն ներգործել եւ ո՛չ զմարդկայինսն ըստ մարդոյ. այլ այրացելոյ Աստուծոյ նոր իմն զաստուածային ներգործութիւնսն ի մեզ կենցաղավարեալ»։

Այլ եթէ գրեալ է՝ «Ո՛չ եկի զկամս իմ առնել, այլ զկամս առաքչին Հօր», եւ «Ո՛չ որպէս ես կամիմ, այլ որպէս դուդ»՝ ո՛չ այսոքիկ այլ եւ այլ կամս ցուցանեն, այլ այս ըստ ասացելոյ մարդկայնոյս եւ ըստ տնօրինեցելոյն վասն մեր ասացան, զոր եւ յօրինակ բարի Վարդապետն մեր՝ զի զհետ շաւղաց նորա հետեւեսցուք, եւ ո՛չ ըստ իւրաքան-



չիւր կամաց. այլ յամենայնի յաւէտ Տեառն նախապատուեսցին կամք։ Եւ այսոքիկ՝ զանճառ միաւորութիւն եւ զաստուածանալն մարմնով։

Ահա՛ յայտ եղեւ մի կամս Քրիստոսի աստուածային, եւ միւսն հասարակաց մարդկան ասէ եւ Քրիստոսին՝ բոլոր աստուածային։ Ասասցուք այսուհետեւ եւ յաղագս ներգործութեանցն, վկայութեամբ սուրբ հարցն։

Ասէ Աթանաս ի չորրորդ ճառին, որ առ Արիոս. «Եւ Բանն զմարմնոյն դարձեալ ունէր զտկարութիւն, որպէս զիւրսն. զի նորա է մարմինն գործակից աստուածութեան գործոց, զի նովաւ լինէր, զի Աստուծոյ մարմին էր»։ Եւ յետ սուղ ինչ բանի ասէ. «Քանզի եթէ Աստուծոյ Բանին գործք ոչ ի ձեռն մարմնոյն էր եղեալ՝ ո՛չ արդեօք աստուածացեալ մարդն»։ Եւ յետ այլոց՝ «Քանզի զգործն Հօր ի ձեռն մարմնոյն գործէր»։ Եւ դարձեալ նոյնըն գրէ առ Դեղբիոս եպիսկոպոս եւ խոստովանող. «Քանզի ձեռն ձգեալ յարոյց՝ որ ի ջերմութենէն էր ըմբռնեալ. եւ ձայն արձակեալ յարոյց զՂազար»։

Եւ Գրիգոր Նիւսիոյ յերկրորդ ճառին, որ ընդդէմ Եւնոմիոսի՝ «Քանզի եւ ներգործելն, ասէ, որպէս եւ ճշմարիտ Աստուծոյ ի ձեռն իւրոյ մարմնոյն՝ ամենեցուն, որպէս ձայնին կամ գործոյն մարդկօրէն եկեալ յառաջ. իսկ ի ներքուստ ծածկեալ իմացեալ լինի աստուածութիւնն»։

Եւ գրէ եպիսկոպոսն Հռոմայ Յուլիոս. «Եւ ոչ մի ինչ անջատումն, ասէ, Բանին եւ մարմնոյն նորա բերիւր յաստուածային կիրս. այլ է մի անձնաւորութիւն, մի ներգործութիւն, եւ մի դէմք, բոլորովին Աստուած եւ բոլորովին մարդ, նոյն ինքն Յիսուս Քրիստոս»։

Եւ Յովհան Ոսկեբերան ի ճառին, յորում ի

լերին աղօթէր Յիսուս՝ ասէ· «Միով զօրութեամբ եւ միով ներգործութեամբ զբազմատեսակ ախտս բժշկեաց»։ Եւ յետ սակաւուց ասէ· «Զի զզանազան սքանչելիսն ի ձեռն միոյ ներգործութեան լնլով»։

Եւ Կիւրեղ Աղեքսանդրացի ըստ Մատթէոս աւետարանին մեկնութեանն ասէ, թէ «Ընդ իւր միաւորեաց զմարմինն, ո՛չ որպէս ասեն՝ որ ընդ Հօր եւ ի Հօրէ Աստուած Բանն, որպէս եւ յիւրսն կազմեալ մարմնոյ ներգործութիւնս բնաւորականսըն, զկերպ մարմնոյն ողջ պահելով վասն ծնանելոյն ի մարմնոյն· եւ լցոյց աստուածավայելուչ ներգործութեամբք, եւ յիւրն հանէ փառս»։ Դարձեալ՝ «Զերկուս կոյրսն բժշկէ մերձաւորութեամբ ձեռինն եւ լուսաւորէ աստուածագործ զօրութեամբ· լի գոլ զիւր մարմինն ցուցանէ, որպէս զոքանչին Պետրոսի ձեռն ի վերայ եդեալ՝ առժամայն բժշկէր, եւ պարտէր զնոսա վասն պատճառին իւրոյ բնութեանն, աստուածութեան ասեմ, միազօր ցուցեալ զիւր մարմնոյն ներգործութիւնսըն»։ Եւ դարձեալ՝ «Կարող գոլ զամենայնն բանիւ ներգործել՝ վարի եւ թքովն· զի ծանիցուք, եթէ մարմին նորա զամենայն լնլով զներգործութիւնս կենդանարար բանին· եւ լուսաւորութեան առիթ լինի ի ձեռն սուղ ինչ մերձաւորութեանն· քանզի մարմին էր լուսոյ ճշմարտի»։

Որպէս մեծ ախոյեանն ուղղափառաց ի գիրս Պարապմանցն յայտ առնէ Կիւրեղ՝ «Աստուածային, ասէ, գոլ ասեմք զմարմինն Քրիստոսի, վասն զի Աստուծոյ մարմին է եւ անճառելի փառօք զարդարեալ, անապական, սուրբ եւ կենդանարար»։ Եւ ի գիրս Գանձուցն՝ «Միաւորելով զկիրսն անբաժանաբար՝ թոյլ տայ ինքեան, ասէ, որպէս մարդ, եղեալ ընդ մարդկան՝ եւ քաղցնուլ եւ ծարաւել եւ



զայլսն կրել, զոր ինչ ասենն յաղագս նորա»։

Տեսանե՞ս, զի ոչ հարկաւորք ասին, այլ կամաւորք եւ ըստ թողացուցանելոյ կրել զանանգոսնելի կիրսն վասն ճշմարտելոյ զմարմինն եւ լուծանելոյ ի մէնջ զդատապարտութիւնն· «Քանզի ծառայեաց ճշմարտապէս իւրով մարմնովն, որպէս ծննդեանն, նոյնպէս եւ ախտից մերոց, ասէ Աստուածաբանն, յաղագս մերոյ ազատութեան եւ ամենեցուն, զորս զերծոյց ի մեղաց զըմբռնեալքս»։ Եւ դարձեալ՝ եթէ «Ի կերպարանս լինելով ծառայի ընդ ծառայակիցս եւ ընդ ծառայս, եւ կերպարանէ զօտարին՝ յինքեան բերելով զիս հանդերձ իմովքն· զի ինքեամբ ծախեսցէ զչարութիւն, իբրեւ զմոմ՝ հուր, կամ իբրեւ զգոլորշի երկրի՝ արեգակն, զի ես հաղորդեցայց նորայոցն յաղագս խառնմանն։ Այս է խորհուրդ միաւորական կրիցն Քրիստոսի – յաղագս բժշկելոյ զմեզ եւ ոչ բաժանեալ բնութիւն ցուցանելոյ· որպէս մեղք լեալ ասացաւ եւ նզովք, եւ ոչ եթէ յայնոսիկ փոխեցաւ Տէրն – մի՛ լիցի –, այլ վասն զանօրէնութիւնս մեր առնլոյ եւ զմեղս մեր բառնալոյ, այլ ո՛չ ինքն ախտացաւ։ Փորձեցաւ ըստ մեզ, այլ առանց մեղաց· քանզի «Լոյսն, որպէս աստուածաբան Աւետարանիչն ասէ, ի խաւարի անդ լուսաւորէ, եւ խաւար նմա ոչ եղեւ հասու», որպէս Ադամայ յառաջնումն եւ որք յԱդամայ։

Զի՞նչ ասէք· բաւակա՞ն են (են) ասացեալքս առ ի յայտնի կացուցանել զճշմարտութիւնն՝ եթէ պիտոյ է, որպէս ի ծանրալուր ականջս՝ բազում անգամ զնոյն ասել։ Եւ արդ, աղէ, լո՛ւր դու զպիտառութիւն առածոց սուրբ հարանցն սակս անապականութեան մարմնոյն Քրիստոսի, զոր նախ Երինոս, Առաջելոցն հետեւող՝ արտադրէ զանապա-

կանութիւն խոստովանութեան մերոյ եւ տարագրէ զապականութիւն հայհոյութեան ձերոյ· «Ընդունայնք եւ սնոտիք են, ասէ, ամենեւին, որ զամենայն տնօրէնութիւն անարգեն զԱստուծոյ եւ ըզմարմնոյս փրկութիւն ուրանան եւ զվերստին ծընունդ նորա անպատուեն՝ ոչ գոլ ընդունական ասելով զնա անապականութեան։ Եւ եթէ ոչ ապրեցաւ սա՝ եւ ոչ Տէր արեամբն իւրով ուրեմն փըրկեաց, ոչ բաժակն փրկութեան գոհութեան՝ հասարակութիւն արեան նորա, եւ ոչ հացն, զոր բեկանեմք՝ հասարակութիւն մարմնոյ նորա· քանզի արիւն ոչ եղիցի՝ բայց եթէ յերակաց եւ ի մարմնոյ գոյացութենէ, զոր ճշմարտապէս եղեալ Բանն Աստուծոյ՝ արեամբն իւրով փրկեաց զմեզ»։

Արդ ահա ցուցաւ ասացելովքս՝ որք ապականութեամբ կամ օտար բնութեամբ զտէրունական մարմինն հայհոյեն՝ ուրացեալ եւ օտարացեալ են ի փրկութենէն· եւ զխորհրդական հացն եւ զգոհութեան բաժակն ոչ ի կեանս ինքեանց, այլ յապականութիւն ընդունին· զի թէպէտ եւ Ադամ զանմեղանչական մարմինն եւ զանդատապարտականն ի դատապարտութիւն եւ յապականութիւն մահու իջոյց՝ այլ Քրիստոս զսա անապական եւ փրկանակ մահու եցոյց, իշխանութիւն ունելով յերկրի թողուլ զմեղս, որպէս յերանելւոյն Աթանասի ասացեալ է ի բանին որ զԱպողինարէ։

Եւ դարձեալ ի նոյն ճառէ՝ եթէ «Որպէս ոչ կարաց մահ ածել զինքեամբ զմարդկային զոգին Քրիստոսի՝ եւ ոչ դարձեալ ապականութիւն գոռոզաբար յափշտակեաց զմարմինն Քրիստոսի զօրութեամբ յապականութիւն· զի եւ այսպէս ապականացու իմանալն ամբարշտութիւն է»։ Եւ դարձեալ ի չորրորդ ճառի գրոցն ասէ նոյն Աթանաս, եթէ



«Այն, որ եկն նորոգել իւրով մարմնով զմարմինս մահկանացուս՝ ոչ ըմբռնեցաւ յապականութենէ, այլ եւ զհզօրն կապեաց»։ Եւ յետ այլոց՝ «Եթէ զմեղս աշխարհիս ասաց բառնալ Յովհաննէս, գառն գոլով Աստուծոյ զիա՞րդ ասեն ոմանք ի մոլորելոցն, եթէ ապականացու էր մարմինն Քրիստոսի· քանզի մայր ապականութեան մեղք են»։

Եւ սրբոյն Եպիփանու ի Պարունակախօսն ասացեալ է, եթէ «Ամենայն ինչ կարողութիւն է Աստուծոյ, եւ զապականեալն փոխել յանապականութիւն· եւ մի՛ ոք զարմասցի, ասէ, քանզի զայս եկն ի ցուցանել, եւ եցոյց առնել յապականելի մարմնոյն եւ զգեցուցեալ աստուածութեանն եւ ցուցեալ անապականելի· քանզի ի՞ւ յանդիմանէ զԱստուած· – եւ յանդիմանէ՝ որ ոչ խոստովանի զտնօրէնութեան խորհուրդն, այլ ուրանայ· – որ ոչ հաւատայ զմիաւորութիւն բնութեանն, այլ բաժանէ յԱստուած ուրոյն եւ ի մարդ ուրոյն, յանապական եւ յապականացու, յանմահ եւ ի մահկանացու եւ յայլ եւս յայսպիսիս»։

Այլ մեք տակաւին եւս յաղագս անապականութեան աստուածային մարմնոյն եւ այլ եւս ճեպեսցուք ասել ի հարցն սրբոց· քանզի ուր իցէ լոյս՝ սքօղեսցի անդ ամենեւին խաւար· սապէս եւ յանապականութենէ առ ընթեր եղելոյ փախնու ապականութիւն, ըստ ասելոյ սրբոյն Կիւրղի ի գիրս Պարապմանցն։

Եւ դարձեալ՝ եթէ «Ոչն գիտողի զմեղս՝ իւրացուցանելով ընդ մեղօք՝ խափանել զմեղս»։ Եւ դարձեալ՝ եթէ «Մարմինն, որ ի մէնջ առաւ՝ ընդ Բանին միաւորեալ՝ անապականութիւն էր եւ փառաւորեալ»։ Եւ նախ քան զԿիւրեղ՝ վարդապետն նորա Աթանաս, ի թղթին որ առ Եպիկտիմոն

եպիսկոպոս Աթենացւոց՝ ասէ· «Բանն, որ ի մարմնին էր՝ ի վեր էր քան զբնութիւն մահկանացու մարմնոյ՝ արար զմարմին իւր անմահ եւ անապական, եւ լռեցոյց եւ ջնջեաց ի մարմնոյն զբնական մահն եւ զապականութիւն»։

Ո՞ւր են ցոյցք անջատեալ բնութեան, ո՛վ անջատող։ Տե՛ս եւ որ զհետ այսոցիկ· «Վասն զի եղեւ, ասէ, անապական մարմինն մահկանացու, եւ յաղթահարեցաւ մահ ի բնութեան մարմնոյն մահկանացուի»։ Եւ դարձեալ զկնի սորին՝ եթէ «Մարմնանալն Քրիստոսի, ասէ, յանամուսնութենէ եւ առանց մեղաց· վասն այսորիկ ոչ գտաւ ապականութիւն ի մարմին նորա»։ Եւ դարձեալ նոյն ի նոյն թղթին՝ եթէ «Ոչ կարէ մահ բնակել ընդ կեանս, եւ ոչ ապականութիւն ընդ անապականութեան»։

Տեսե՞ր զանբաժանելի միաւորութիւնն, ո՛վ բաժանասէրդ, ի հարցն երանելեաց, որ ո՛չ բնութեան զանազանութիւն, եւ ո՛չ կրից, եւ ո՛չ ներգործութեան, եւ ո՛չ կամաց՝ ո՛չ ինչ ի ներքս բերեն։ Հաւատովք խոստովանեալ եւ երկրպագեալ, եւ ոչ քննեալ։ Ապա եթէ քննեսցես՝ ընդդէմ այսոցիկ ասա՛ արդ զմի դէմն, զոր ասես կեղծաւորելով՝ եւ զերկուս բնութիւնսն։

Եւ նախ յԱռաքելոյն սկսանիմք զայս ներդիմեալ· «Որ ի կերպարանս Աստուծոյ էր՝ ասէ, զկերպարանս ծառայի էառ»· կերպ եւ կերպ ասէ, որ է դէմ եւ դէմ, աստուածայնոյն ասեմ եւ մարդկայնոյն։ Արդ սահմանեա՛ զերկոսեան, կամ՝ յերկուութեան զերկաքանչիւրսն, որ լինի ըստ խոստովանութեանդ քո՝ - եւ ասեմ ըստ քննութեան՝ ո՛չ միայն երկու բնութիւնք, այլ եւ երկու որդիք ըստ Նեստորի· (եւ ո՞ւր արդեօք դնիցես զ«Բանն մարմին եղեւ» եւ զ«Ընդ մեզ Աստուած» ասացեալ զէմմանուէլն,) - եւ կամ՝ միութիւն անշփոթելի յերկաքանչիւրոցն հաւատա ըստ հաւատոյ կաթողիկէ Եկեղեցւոյ անճառելի խոստովանութեամբ· քանզի յառման կերպին Աստուծոյ զմարդկային կերպն՝ եղեւ առողին զօրութեամբ եւ բնութեամբ։ Եւ զի մեծամեծքն այնոքիկ եւ սիւնքն եւ գլխաւորք Եկեղեցւոյ զերկոսին մեզ ուսուցին, առնլով կերպին զկերպն՝ զանշփոթութիւնն, եւ եղելութեամբ անեղ Բանին մարմին՝ զանքակ միաւորութիւնն եւ զմի բնութիւն· զոր աստուածային օրէնքըն թագաւորական ճանապարհ գիտելով՝ հրամայեն մեզ ոչ խոտորել յաջ կամ յահեակ, ո՛չ միաւորութեամբ յեղումն կամ շփոթումն կամ ի բաց բարձումն ասել ի միոյն զմիւսն, եւ ոչ անյեղութեամբն եւ անշփոթութեամբն կամ մարմնաւորութեանն ճշմարտութեամբ՝ քակտումն բնութեանց ասել եւ բաժանմանն Արիոսի· զոր եւ աստանօր, որպէս եւ ասացի վերագոյն՝ պահել պարտ է գեղեցկապէս զերկոցունց չարեացն զմիջոց· եւ ոչ ի ձեռն անշփոթութեան օտար բնութիւն ի ներքըս բերել ի համագոյ սրբոյ Երրորդութեանն, կամ միաւորութեամբն ուրանալ, որպէս զԵւտիքէսըն· կամ զՀոգւոյն՝ իբրեւ զԱպողինարէս· կամ յեղումն ասել աստուածութեանն ի մարմին, իբրեւ զՊանդուրացիսն· կամ ոչ առնուլ զմարմինն կատարեալ բնութեամբ, այլ յերկնից բերեալ, իբրեւ զայլ ոմն Եւտիքէս· կամ հակառակ այսմիկ՝ ի Մարիամայ առնուլ սկիզբն աստուածութեանն, իբրեւ զՓոտինոս· կամ յարեգական դնել զմարմինն կամ յօդս ցնդել, իբրեւ զՄարկեղոս։ Թողում ասել զբազմութիւն աղանդոց, ուրացելոց զտնօրէնութեանն ճշմարտութիւն, որք յաչաղելով զփրկութիւնն զամենակատար՝ մի բնութիւն ասացին այս-

*պէս ամբարշտաբար. զորս տարագրեմք իբրեւ ըղգրոց ինչ առեղծուածս եւ ոչ միոյ բանի արժանաւոր եւ գարշելի։*

*Այսոքիւկ բաւականապէս ի նանիր գայթակղելոցն ի մեզ լուծցին կարծիք՝ զմի բնութիւն Եւտիքեայն ասելով, զորս նզովեմք եւ օտար վարկանիմք յԱստուծոյ եւ յընդհանրական Եկեղեցւոյ. եւ լո՛ւր լիցի խոստովանութիւն հաւատոյս մերոյ ամենեցուն, որք կամին ուղիղ լսել։ Այլ զի՞նչ պէտք այսոցիկ ամենեցուն ընդդիմադրութեանց, եթէ ոչ չեղեալ էիք յաւելորդ խնդիրս եւ յընդունայն վիճաբանութիւնս։ Քանզի թողեալ զհաւատալն եւ զարժանաւորութիւն զօրութեան հաւատոյն՝ բանին եւ քննութեան մատնեցիք զձեզ եւ ընդունայն արարիք զԽաչն Քրիստոսի. քանզի «Հաւատք յայժմու ժամանակիս լրումն բանին է, ասէ, զոր ասացն՝ «Այլ մեզ յո՛չ յայլ ինչ պարծեալ, բայց միայն ի Խաչն Քրիստոսի»։*

*Ճեպեսցուք ճառել յաղագս անճառ չարչարանաց մարմնացելոյ Բանին Աստուծոյ, զոր Պօղոս, յաղագս անծանօթ լինելոյ՝ զՏէր փառաց խաչեալ ասէ, եւ՝ փոխանակ ուրախութեան հայրենի ծոցոյն, որ նմա առաջի կայր՝ յանձն առնուլ ասէ նմա ըղխաչն եւ արհամարհել զամօթ։ Եւ Աստուածաբանն ի պասեքի ճառին՝ «Աստուած խաչեալ, ասէ, եւ արեգակն խաւարեալ. զի ընդ Արարչին պարտ էր եւ արարածոցս չարչարիլ». եւ դարձեալ՝ եթէ «Կարօտացաք Աստուծոյ մարմնանալոյ եւ մեռանելոյ»։ Եւ դարձեալ՝ «Արիւն Աստուծոյ եւ չարչարանս լըսելով եւ մահ՝ մի՛ ուրեք անկցիս ի վայր անաստուածաբար, որպէս Աստուծոյ ջատագով։*

*Տե՛ս, ո՛չ ես, այլ ամենայն եկեղեցւոյ վարդապետն անաստուածածանօթութիւն ասէ ոչ խոստո-*



*վանողացն Աստուծոյ զարիւն եւ զչարչարանսն եւ զմահն.*

*Եւ նոյն աստուածաբանն ի բանին որ զԲարսղէ, ի Յաղթեցայ գիրսն՝ «Զի՞նչ քան զայս հրաշափառագոյն, ասէ՝ զԱստուած խաչեալ տեսանելով եւ զնոյն՝ ընդ աւազակսն, եւ ի մերձ անցողացն ծաղր լեալ անըմբռնելւոյն, եւ քան զկրել ինչ ախտս բարձրագունին»։*

*Արդ զո՞ր ասէք բնութիւն՝ Աստուած անըմբռնելի։*

*Եւ բերանն ոսկի Յովհան ասէ, եթէ «Առ ըղբնութիւն մարդկութեանս մերոյ եւ ետ զաստուածութիւն իւր եւ ընտանեցոյց իւր զչարչարելիս մեր, զի շնորհեսցէ մեզ զիւր անչարչարական աստուածութիւնն եւ ըստ եկամուտ մահուն՝ զանմահութիւն պարգեւեսցէ մեզ։ Քանզի զմարդոյն չարչարանս ինքն ստացաւ, ոչ ի բնութենէ փոփոխելով, այլ կամօք զայս ընտանեցոյց իւր»։ Հարցանէ դարձեալ ի նոյն ճառի, որ է եօթներորդ ի խաչելութեան գրոցն, եթէ «Վասն որո՞յ պատճառի իւր առնիցէ զչարչարանս մարդկան. վասն զի կամեցաւ չարչարանօք զչարչարանս բժշկել եւ մահու զմահ խափանել։ Վասն որոյ նմանութեամբ նմանութեան կամեցաւ կռուել»։ Եւ յետ սակաւուց՝ «Քանզի ոչ եթէ զականատես բնութիւնն բեւեռեցին, այլ որ ի նմա էր Աստուած՝ ի նա արկին ձեռս. քանզի երեւելական բնութեամբն իւր ընտանեցոյց զչարչարանսն՝ Աստուծոյ ասին չարչարանքն»։ Որպէս եւ յայլ գիրս ասէ նոյն Յովհան, եթէ «Զաստուածեղէն գլուխն մերթ կոփէին եւ մերթ փշեղէն պսակօքն թշնամանէին եւ մերթ եղեգամբ ծեծէին». եւ ո՛չ երբեք մարդկային բնութիւն յայտնէ, այլ զմի եւ զնոյն Աստուած եւ զնոյն մարդ։ Զոր կատարելա-*

պէս ուսուցանէ մեծ եւ տիեզերական վարդապետն Աթանաս՝ զնոյն Աստուած եւ զնոյն մարդ, եւ բնութեանց ինչ խնդիր ոչ առնէ· «Զնոյն որդի Աստուծոյ, զնոյն եւ որդի մարդոյ· զնոյն յերկնից, զնոյն յերկրէ· զնոյն չարչարելի, զնոյն անչարչարելի· ո՛չ զայլ ոք եւ այլ եւ այլ»։

Տե՛ս, ո՛չ իմ են բանքս, այլ Աթանասի ընդդէմ Պօղոսի Սամոստացւոյ· ո՛չ երկուս դէմս, ո՛չ անձնաւորութիւնս, ո՛չ երկրպագութիւնս երկուս։ Զի՞նչ պէտք են խնդրել եւ բանակռուի լինել· հաւատալն է օգտակար եւ պաշտելն եւ երկրպագել լռութեամբ։ Գիտեմ զնա Աստուած ճշմարտապէս յերկնից· գիտեմ զնա որդի Դաւթի ըստ մարմնոյ, մարդ յերկրէ չարչարելի· եւ ոչ խնդրեմ, եթէ զի՛արդ անչարչարելի եւ զի՛արդ չարչարելի, եւ զի՛արդ Աստուած եւ զի՛արդ մարդ· մի՛ գուցէ զզիարդն խուզելով եւ զեղանակն խնդրելով՝ անկայց ի բարութեանցն, որ առաջի կայ մեզ։ Քանզի միայն հաւատալն պարտ է եւ ի վերուստ հայցել եւ ո՛չ ի մարմնոյ եւ յարենէ։

Եւ մեծն Եպիփան ի ՃԺԹ սաղմոսին մեկնութեան յայտնի ասէ զմիանալ բնութեանցն եւ զչարչարանացն «Անբարժանելի յաստուածային էութեանն արարեալ զմիանալն· այլ թողացուցանէր նմա չարչարիլ՝ մարդկան չահաւորելով զփրկութիւն, եւ քանզի դիւրին էր նմա անմահ զնոյն գործել զբնութիւնն, զոր էառ։ Այլ քանզի փրկութիւն էր տիեզերաց չարչարիլն՝ թողացուցանէր զախտանալն, որով զանմահութիւն եւ զանապականութիւն շնորհեսցէ ազգի մարդկան»։

Իսկ Կիւրեղ Երուսաղեմացի, որ զառաքելականն ունէր զպատիւ եւ զշնորհս՝ այսպէս ասէ ի խաչելութեան ճառին, ի գիրսն որ Կոչումն՛ Ընծայութեան կոչի· «Եւ զի՞ զարմացեալ ես, եթէ աշխարհս ամենայն փրկեցաւ· զի ո՛չ եթէ դուզնաքեայ մարդ ոք էր, այլ Որդի Աստուծոյ միածին, որ եկն եւ մեռաւ վասն մեղաց մերոց»։ Յետ սակաւուց՝ «Իսկ արդ անասուն զառնն զփրկութիւն տայր ժողովրդեան»։ Եւ դարձեալ ի նոյն ճառի՝ «Եկն եհաս ժամ, զի փառաւորեսցի որդի մարդոյ· զի փառաւորեալ էր փառօք յառաջ քան զարարածս եւ փառաւորեալ էր յառաջ իբրեւ զԱստուած, բայց այժմ առաւել փառաւորեցաւ, զի զհամբերութեան պսակն Խաչին յանձն իւր էառ»։ Եւ դարձեալ զնոյն կրկնելով ասէ· «Զէ՛ր ինչ ամաչեցեալ յերկանցն, զի զփրկութիւն բարձեալ բերէր ամենայն արարածոց· զի ո՛չ եթէ մարդ ոք էր դուզնաքեայ, որ չարչարեցաւն, այլ Աստուած էր, որ զմարմին զգեցաւ եւ զհամբերութեան պսակն էառ եւ ճգնութեամբ պատերազմէր։ Եւ յողբալն իւրում Երեմիա ասէ· «Ոգի երեսաց մերոց Տէր Քրիստոս՝ որ ըմբռնեցաւ յապականութեան մերում»։ Միթէ ե՞ս ինչ բան գիտութեան խօսիմ· ահաւասիկ վկայէ, եթէ Տէր Քրիստոս ի մարդկանէ ըմբռնեցաւ։ «Վա՛յ անձանց նոցա, ասէ Եսայի, զի ասացին՝ կապեսցուք զարդարն»։ Քանզի Եսայի սղոցեցաւ եւ Երեմիա ի գուբ ընկեցաւ՝ սակայն բժշկեցան վէրք Հրէիցն, զի փոքրագոյնք էին· իսկ իբրեւ յԱստուած ինքն գըլխովին յանցեան, որ եկն մարդկութեամբ՝ արդարեւ վա՛յ է անձանց նոցա։ Եւ այլք եկեալ՝ ընդ երեսս թքանէին այնորիկ, որ թքովն իւրով զ'ի ծնէ կոյրն բժշկեաց։ Եւ թերեւս ասիցէ ոք, թէ Որ զՂազար ձայնիւ արձակեաց ի կապանաց մահու՝ զանձն իւր ո՞չ կարէր լուծանել։ Զսոյն մարգարէն զարմացեալ՝ ասէ· «Ո՞ հաւատաց ի լուր մեր»· անհաւա՛տ են գործքս՝ եթէ Աստուած եւ Որդի Աստու-

ծոյ, բազուկ Հօր՝ զայս համբերել հաւանեսցի։ Արդ նա ինքն Աստուած էր իսկ, եւ ի վերայ մարդկան անցից յանձն առնոյր. զի ապա մարդիկ ի վերայ մարդկան չարչարեսցին։ Այլ զինուորքն շուրջ եկեալ զնովաւ՝ խաղ առնէին զնա. եւ լինէր խաղ Տէրըն երկնից, որպէս ասէ մարգարէն. «Հայեցան յիս եւ շարժեցին զգլուխս իւրեանց»։

Տեսանե՞ս, զի ո՛չ բնութեանց ինչ զանազանութիւն ասացին, այլ զնոյն ինքն զԱստուած ասացին ի խաչն եւ ի չարչարանս եւ զնոյն յո՛յժ պարծանօք։

Բայց որովհետեւ մտաք մեք ի բուրաստան ծաղկանց աստուածային գրոց՝ եկ շրջեաց դու եւ յայլ ծաղիկս աստուածազարդ բանիցն, զի առցես զհոտ անուշութեան հոտոյ չարչարանացն Տեառն մերոյ եւ Աստուծոյ, եւ մի՛ մեռցիս ի հոտ մահու անհաւատութեան կամ թերահաւատութեան։ Եւ լո՛ւր վայելչազարդ բանիցն Եւսեբեայ Եմեսացւոց եպիսկոպոսի՝ «Երիս ժամս թաքեաւ լոյս արեգականն, ասէ, մինչդեռ Արեգակն արդարութեան էր ի Խաչին ի չարչարանս. աւազակքն ընդ նմա խաչեցան։ Իրք կարեւորք, զի ուսցիս, թէ ո՛րպէս մարդիկ մեռանին, եւ ո՛րպէս Աստուած։ Որք ընդ բնութեան կարեօք էին՝ նոցա բարձքն խորտակեցան, զի ըստ բնութեանն նոյնպէս եւ զմահն կրեսցեն. իսկ որ իշխանութիւն ունէր դնել զանձն եւ առնուլ՝ որպէս ի կուսէն կամաւ եւ ոչ ակամայ առ զմարմինն՝ նոյնպէս եւ ի խաչին կամաւ եւ ոչ ակամայ արար որոշումն հոգւոյն ի մարմնոյն»։

Իսկ Դիոնիսիոս Արիսպագացին, ի հակաճառին որ ընդ Պօղոսի Սամոստացւոյ՝ ասէ. «Զոր ասացն Երեմիա, եթէ Ունելով կալան զիմ՜ թշնամիք իմ որպէս ճնճղուկ». - զի որպէս ճնճղուկն ոչ ինչ



հատուցանէ՝ որք ունին զնա՝ նոյնպէս եւ Քրիստոս որդի Աստուծոյ, մինչ խաչեցին՝ ոչ ինչ հատոյց ըստ գործս նոցա։ Պիղատոս չարչարէր, եւ ծառայն կռփահարէր, եւ Կայիափայ թքանէր ընդ երեսս նորա, ժողովուրդն հայհոյէր. զոր Եսայիաս ասէ. «Զթիկունս իմ ետու ի հարուածս եւ զերեսս իմ ոչ դարձուցի յամօթոյ ընդ երեսս թքանելոյ»։ Ո՞վ արդեօք իցէ սա. բայց միայն Աստուած, որ եթուք յերկիր եւ արար կաւ եւ եդ ի վերայ աչաց կուրին, եւ բացաւ. ընդ աւազակսն խաչեցաւ եւ բեւեռեաց զմեղս մեր ընդ խաչափայտն, եւ սպան զմահ եւ զսատանայ. զի զմեզ ողորմութեամբ եւ շնորհօք յարքայութիւն իւր ձգեսցէ։ Ո՞վ նոր զարմանացս, որ եղեւ առ սուրբ Խաչին։ Զինուորքն եւ զպատմուճանս նորա ոչ պատառեցին. ի՛սկ հերետիկոսքն զՈրդին Աստուծոյ պատառել կամին եւ բաժանել յերկուս զայն, որ անքննելին է եւ անբաժանելին Քրիստոս»։ Եւ յետ սակաւուց՝ «Նա ետ նոցա զմանանայն, եւ նոքա ետուն նմա լեղի. նա ետ նոցա մեղր, եւ նոքա ետուն նմա քացախ, եւ ի վերայ խաչին կախեցին զայն, որ զոչընչէ կախեաց զերկիրս, որ է կեանք ամենայն կենդանեաց, եւ գոչմամբ ի Խաչին ետ զհոգի իւր Բանն Աստուած, որ կամաւորութեամբ եկն ի մահ»։

Իսկ բերանն ոսկի Յովհան, ի մեկնութեան աւետարանին, յորժամ զչարչարանս եւ զճաղանսն պատմէ, զորս ի Խաչին կրեաց Բանն Աստուած՝ եթէ «Վասն այնորիկ, ասէ, ի բազմաժողով տօնին եւ ի մէջ բազմամբոխ ռամիկ ժողովրդեանն ընթեռնումք զայս ամենայն՝ զի մի՛ ասիցեն հեթանոսք, եթէ «Զմեծամեծսն եւ զպայծառագոյնսն, այսինքն զնշանսն եւ զսքանչելիսն, ընթեռնոյք առաջի ժողովրդեանն, եւ զնախատինսն թաքուցա-

նէք»։ Յորժամ բնաւին ամենայն ժողովուրդն ի մի վայր իցէ՝ յայնժամ մեծաձայն բարբառով ամենայնն քարոզի, եւ յորժամայն ընթեռնու եւ քարոզի՝ յայնժամ հաւատարիմ եղեւ, թէ Քրիստոս Աստուած է· եւ հանդերձ այլովք եւ այսու եւս առնու երկրպագութիւն»։

Այսքան եւ քան զսոյնս բազմապատիկ եւ բիւրապատիկ են ասացուածք ի սուրբ հարանցն, որք պարծանօք քարոզեն Աստուած զխաչեալն· եւ դու թշնամանես։ Եթէ խաչեալ զնա ասեմ, երիցս սրբասացութեամբ եւ երեքկին տիրական անուամբ – Աստուած ընդ արարածի, եւ հզօր ընդ տկարութեան, եւ անմահ ի մահու, – որպէս վերագոյն ճառեալքդ հարցն սրբոց ուսուցին, եթէ զցանկ հարցն ոչ էիք պատառեալ եւ բաժանեալ զմի Տէրն եւ զՔրիստոս եւ զԱստուած ի զանազանութիւնս՝ ոչ աշխատութեամբ ընդդէմ ամրութիւն ցանկոյ եւ փականս պիտոյ էր դնել· զի եւ վասն ախտից դեղք։

Արդ ըստ հինգ պատառմանցդ քոց, – զոր բաժանեցեր զբնութիւնն Աստուծոյ, զկամսն, եւ զներգործութիւն, եւ իշխեցեր ապականացու ասել ըզմարմին Աստուծոյ Բանին, եւ ոչ Աստուած խաչեալ վասն աշխարհի՝ – ի հինգ գլուխս որոշեցեր զարձանագրութիւնս բանիս, ըստ հնգագլխեան գըրոց Մովսիսի եւ ըստ հնգից զգայութեանց քոց, որով ափշեալդ ես· ես ըստ հնգից ողորկաքար վիմացն Դաւթի հարի զճակատ քո պարսիւք Հոգւոյն եւ զօրութեամբ բազկի Տեառն, զի այլ մի՛ յանդգնեսցիս նախատել զճակատ Աստուծոյ կենդանւոյ։ Եւ զգրեալսն կատարեցաք՝ ի բերանոյ երկուց վկայից հաստատել ամենայն բանի։ Ընկա՛լ զվկայսն երիս եւ արժանի հաւատարմութեան տնօրէնու-



թեան Տեառն քարոզք՝ զորս եդ Աստուած յեկեղեցւոջ։ Եւ եթէ զամենայն բանս սոցա, որ յաղագս տնօրէնութեանն Քրիստոսի, կամիք լսել՝ բազում քարտիսի եւ մագաղաթի պէտք են· բայց սակաւք ի բազմացն մեզ բաւականասցին։

Այլ զի զԴիոսկորոս եւ զՊետրոս թշնամանս դնէք, իբր նոցա աշակերտս գոլ զմեզ՝ եւ ե՞րբ արդեօք բանիւք նոցա մարտ եդաք ընդ ձեզ եւ ընդ ժողովն Քաղկեդոնի եւ ընդ տումարն Լեւոնի· յորոց ոչ երբեք գիր ընկալաք հաւատոյ, այլ միայն ՝ թէ ոչ հաւանեցան ժողովոյն որ ի Քաղկեդոն, որպէս եւ այլ աշխարհք, քաղաքք եւ ազգք բազումք։ Մեք ո՛չ միայն զի նոքօք եւ ի ձեռն նոցա բան դնեմք ընդդէմ բաժանողացդ, այլ եւ ո՛չ ազգական եւ սեռն ընտանի եւ ուսուցիչ վարդապետօք մերովք· այլ որպէս ընդ Հրէայսն ո՛չ աւետարանական եւ առաքելական վարդապետութեամբք վիճեմք, այլ ի նոցունց մարգարէիցն հաւանեցուցանեմք՝ սոյնպէս եւ ընդ ձեզ՝ ի վարդապետաց ձերոց եւ որ յաշխարհ ձեր պայծառացան՝ բանադիր լինիմք յոգնազան եւ բազմապատիկ պիտառութեամբք, զի առաւել երեւելի եւ նշանաւոր յաղթութիւնն լիցի ամենայն հերձուածողաց եւ պիղծ աւանդիցն։

Երբեմն գրելոցն անհմտութեամբ եւ երբեմն յաչաղանօք թիւրելով զճշմարտութիւնն կամ բռնադատելով՝ ոչ պակասեաց պատճառ՝ առնուլ ի Գրոց սրբոց եւ հաւատարիմ առնել զչարն կերպարանօք բարւոյ տգիտաց եւ պարզամտաց։ Որով եւ դուք մանաւանդ, սեղանակապուտք եղեալ գրոցն, եւ գողացեալք զմիտս գրելոցն, եւ բարեաւն վա-

րեցեալ առ չարն՝ եւ զփափագումն մարդկան գողանայք զանազան օրինակօք. երբեմն բազմութեամբ սահմանէք զհաւատ, եւ երբեմն մեծութեամբ, ա՛յնքան, մինչ զի Աստուծոյ ձայն ձեզ առնել՝ «Իմ է ոսկի եւ իմ է արծաթ». որ հեռի է յիսկզբանէ հաւատոյն եւ ի գալստենէ Փրկչին. զի մայր տառապելապետ եւ աշակերտս տգէտս եւ աղքատս եւ նուաղունս թուով՝ զի զէսն իմն խափանեսցէ. որպէս զի մի՛ պարծեսցի ամենայն մարմին առաջի Աստուծոյ։ Եւ եթէ բազմութեամբ կամ մեծութեամբ հաւատ սահմանի՝ խուժքն Պարսից եւ դուժքն Տաճկաց եւ եւս անդր, որք ի ծայր եզերաց տիեզերաց՝ բազումք եւ փարթամք են քան զձեզ. այլ հեռի է այս յայնմանէ, թէ «Մի՛ երկնչիր հօտ փոքրիկ», եւ «Երանի՛ աղքատաց հոգւով», որովք այդոքիկ հաւատարիմ լինիցին մեզ։

Զտէրունեան եւ զաստուածախառն մարմին եւ զաստուածացեալ ծառայական եւ արարածական բնութիւն օտարացուցանէք ի Բանէն, եւ զքանդակեալն կամ զգրեալ պատկերն ի նիւթս ոմանս՝ պաշտէք աստուածարելաբար այնքան բազմութեամբ եւ պաշտօնասիրութեամբ՝ մինչ զի եւ յանծանօթս եւ որք ոչ են մեզ՝ յանուն եկեալ ձգիք, զի իւրաքանչիւր ոք առանձին է քուրմ եւ տօն. եւ յաճախագոյն ընդ նիւթ գալով տգիտաց, ո՛չ է զգուշագոյն։ Եւ յայտ առնէ Աստուածաբանն յաստուածաբանութեան ճառին. «Են ոմանք, ասէ, որք պատկեր սիրելեացն արարին. եւ որք զկնի եկին՝ անգիտացան զպատճառն եւ սովորութիւն կալեալ՝ Աստուած պաշտեցին. վասն որոյ Մովսէս խրատէ օրինօքն զԻսրայէլ, թէ «Մի՛ արասցես նմանութիւն ինչ եւ պատկեր», եւ յԵրկրորդ օրէնսն խրատէ, թէ «Յորժամ երեւեցաւ Աստուած՝ նմանութիւն ինչ ո՛չ տեսաք». եւ զհրեշտակաց լինելութենէ ինչ ո՛չ ճառեաց վասն նորին պատճառի։ Եւ հրեշտակք որդի եւ պատկեր Աստուծոյ ո՛չ կոչեցան իբրեւ զմարդ յաղագս սորին խորհրդոյ, զի մի՛ ի բազում պաշտամանցն մոլորութիւն լինիցի ի մարդիկ»։



Իսկ եթէ ի Պեննադայ քաղաքի, ի խառնուրդս Յար եւ Դան աղբերացն Յորդանանու զարարեալ պատկեր Փրկչին ի տեառատես կնոջէն յիշեցես՝ նոյն, որ պատմեաց զպատմութիւնն զայն՝ Եւսեբի յեկեղեցական չարածին ասէ, եթէ «Զեն ինչ զարմանք, զի հեթանոսաբարոյ մարդիկ ըստ հեթանոսական սովորութեանն արարին զայն»։ Եւ եթէ ասիցես զանձեռագործ պատկերն, զոր Փրկիչն Աբգարու շնորհեաց՝ մեզ ո՛չ մարթի ձեռագործի օրինակ առնուլ, որպէս եւ ո՛չ փոխանակ անեղին Աստուծոյ եղական աստուած։ Այլ փառաւորեմք եւ երկրպագեմք զանեղն Աստուած եւ զանձեռագործ պատկեր Փրկչին։

Եւ զի հենգնելով գրեալ էիք, եթէ Զխաչն կնքէք եւ երկիր պագանէք։ – Եւ վասն զի Քրիստոս մկրտեցաւ, մի երկիր պագանէք, որով զմեզ սրբեաց եւ զջուրսն, մկրտեաց եւ զփայտն, յորում բեւեռեցաւ՝ ջրով եւ արեամբ ի կողէն հոսեցելով՝ վասն որոյ եւ մեք, ըստ այնմ օրինակի, ջրով եւ գինւով մկրտեմք, ի խորհրդական օրինակէն ուսեալք, որով սրբագնագործի հանդերձ աղօթիւք եւ ընթերցմամբ առաքելականաց եւ աւետարանականաց գրոց։ Որովհետեւ ոչ համարիք սրբութիւն՝ ընդէ՞ր եւ դուք մկրտիք կամ ընկղմիք. ընդէ՞ր եւ զխորհրդեան բաժակն ձեր մկրտէք ջրով կամ ապականէք. եթէ մկրտութիւնդ ոչ է սրբութիւն՝ ընդէ՞ր վարիցէք ընդ անօթս խաչին, զոր դրոշմէք, որպէս եւ առնէք իսկ, եւ յորժամ զերախայսն ձեր

*քրիստոնէայս կամիցիք առնել՝ փոխանակ ջրոյն մկրտելոյ նոյնպէս առնիցէք· զի ասացի՞ց ինչ եւ ծաղրականս այլ եւ ամօթալիս· – ընդէ՞ր եւ զխոր-հըրդական բաժակն ձեր մկրտէք ջրով, զօրէն կըր-պակաւորացն՝ խաբէութեամբ ժանտացուցանելով զանապական եւ զսեռն զուրախացուցիչն սրտից մարդկան, զոր մեծն Դաւիթ կոչէր զբաժակի այ-նորիկ զօրութիւն իբրեւ անապակաւ արբեալ· զո-րոյ զհետ երթեալ՝ ասէ «Զողորմութիւն Տեառն եւ ի տանն Աստուծոյ զերկայնակեցութիւն»· զոր ո՛չ այլ ինչ իմանամք՝ այլ զՀոգւոյն սրբոյ զընդունե-լութիւն կամ զերկուց կտակաց, հնոյն ասեմ եւ նորոյս, արբումն զօրութեամբ հոգւոյն եւ մտաց, եւ կամ խորհրդական բաժակին սեռնութեան եւ անխառնութեան խորհուրդ, ի ձեռն որոյ իմա-նամք զանայլայլութիւն գերաբուն շնորհին։ Եւ յայսցանէ, իբրեւ ընտանեգոյն եւ հարազատ տա-րացուցիւ՝ զմի եւ զանայլայլութիւն արտաքոյ բնութեան մարմնացեալ Բանին, զոր խոստովանե-լով յետ անճառ միաւորութեան՝ օտար բնութեամբ կամ ապականութեամբ ո՛չ յարբումն բերկրութեան հաւատոյ ունակութեան զօրանայ, այլ ըստ ործկա-ցելոցն նողկտութեան ժայթքեալ արտաքս հոսի։*

*Եւ զի՞նչ ասէք վասն խորհրդական բաժակին, զոր յաւետարանսն գրեալ է՝ «բաժակ օրհնել եւ տալ աշակերտացն»· եւ ջրոյ ինչ յիշատակ ո՛չ գոյ· եւ «ի բերոյ որթոյ» ասաց ըմպել· զի որթն գինի բերէ եւ ոչ ջուր։ Զոր Յովհան, ի նոյն բանի մեկ-նութեան՝ հերձուածողս ասէ զայնոսիկ, որ զջուրն ի սուրբ խորհուրդն ի կիր արկանեն։ Բայց թէ զի ի կողէն կենաց ջուր եւ արիւն կայլակացեալ՝ Կիւ-րեղ ի Կոչումն Ընծայութեան գիրսն՝ զջուրն ի մկրտութեան խորհուրդն մեկնէ եւ զարիւնն սակս*



*վկայիցն ըստ վկայութեանն Քրիստոսի։*

*Հարցանեմ դարձեալ այլ ինչ մեծագոյն, որ փոքրագոյն թուեցաւ յաչս ձեր· զքահանայութիւնն, որ բարձր է պատուով ըստ նմանութեան քահա-նայապետին Քրիստոսի՝ զիա՞րդ համարձակեցայք կանանց տալ· եւ զի՞նչ ասեմ՝ կանանց – զի այն ըս-տեղծուած Աստուծոյ է, – այլ չէզոքացն, զոր դուք ստեղծիք իբրեւ զիշակէս, արտաքոյ սահմանաց եւ ստեղծուածոց Աստուծոյ· զորոց մարգարէն ասէ, եթէ զձեռին գործի արկեր ի վերայ նորա՝ պղծեալ է· եւ կանոնական սահմանն արտաքոյ եկեղեցւոյ հրամայէ առնել զայնպիսիսն ընդ այնպիսիսն հա-մարեալ։ Եւ բերանն ոսկի Յովհան, ի մեկնութեան Մատթէոսի աւետարանին, յայնմ բանի որ ասէ, ե-թէ «Են ներքինիք, որք զանձինս իւրեանց արա-րին ներքինիս», եւ ի Գաղատացւոց թղթին մեկ-նութեան բանին՝ «Երանի՛, թէ մօտակտուր իսկ լի-նէին»՝ յորժամ սաստկութեամբ այպանէ զնոսա, եւ զարմանայ, եթէ ուստի՛ այնպիսի անօրէն օրէնք եմուտ յազգս Հռոմայեցւոց· եւ այն՝ զի ոչ ի մա-սին քահանայութեան էին յայնժամ, այլ ի զինուո-րաց եւ յաշխարհականաց կարգի։ Արդ ձեզէն տուք զիրաւն· արժա՞ն է զայնպիսիսն ի գլուխ եկեղեցւոյ եւ բաշխիչ շնորհաց կացուցանել։ Աւա՛ղ զընդունող շնորհաց անշնորհութեանն, որք տգիտաբար եւ սո-վորութեամբ մոլորին։*

*Մեծ է յեկեղեցւոջ օրէնքն խոստովանութեան ա՛յնքան, մինչ զի հաւասար է աղբերն մկրտու-թեան՝ ապաշաւանք արտասուօք լեալ, զոր ի կա-թողիկէական թուղթսն ասէ, թէ օրէնք եկեղեցւոյ ուսուցանեն մեզ՝ «Խոստովա՛ն լերուք միմեանց զմեղս, եւ աղօ՛թս արարէք ի վերայ միմեանց, որ-պէս զի բժշկեսջիք», եւ «Ասա՛ դու նախ զանօրէնու-*

*թիւնս քո, զի արդարասցիս»· եւ «Ասացի ինձէն պատմել զմեղս իմ, եւ դու թողցես զանօրէնութիւնս իմ»։*

*Զի՞րդ զայսոսիկ ապախտ արարեր եւ այլ օրէնս անօրէնութեամբ եդեր ազգիդ քո ոչ յայտնել զյանցանս քահանային, եւ անխտիր մատչել ի մարմին եւ յարիւն Տեառն, զոր Պօղոս բարձրաձայն աղաղակէ· «Փորձեսցէ՛ մարդ զանձն իւր, ապա ի հացէ անտի կերիցէ եւ ի բաժակէն արբցէ»· որ է խոստովանութեամբ քննութիւն քահանային զպատշաճն իւրաքանչիւր ումեք որոշել զտեղին։*

*Իսկ զի՞նչ վասն վարսաւոր գիսուցդ ասիցէք, զոր իբրեւ սահման քրիստոնէութեան զայդոսիկ ունիք· տեսէք զգրեալսն Պօղոսի ի թղթին Կորընթացւոց, զի ասէ· «Այր եթէ գիսաւոր է՝ անարգանք են նմա»։ Եւ Յովհան ի նոյն բանի մեկնութեան ասէ, եթէ «Զծածկելն յայնժամ արգելու՝ յորժամ աղօթիցէ· իսկ վարս ունել՝ միշտ հրաժարեցոյց»· եւ այլ բազումս հրաժարելիս ասէ· բայց ձեզ չէ ինչ փոյթ զգրելոցն· զի ո՛չ միայն դուք յանցանէք, այլ եւ զոչ յանցուցեալսն Սարակինոսս անուանէք վասն ոչ զգէսս ունելոյ։*

*Այլ զի՞նչ գրեմք վասն «գտանելոյդ զմեզ ի կորստենէ եւ դարձուցանելոյդ իբրեւ ի մոլորութենէ· որպէս որք զճշմարտութիւնն ստութիւն իմանան, կամ զլոյսն՝ խաւար, եւ զքաղցրն՝ դառն»՝ – զի մի՛ զմարգարէական վա՛յ-ն ասացից։ Եւ երկիր ի հաստատութեան իւրում շուրջ գալ թուի թմբրելոցն եւ արբեցելոցն, իսկ շուրջ եղելոցն՝ կալ մնալ հաստատուն։*

*Արդ եթէ իցես քաջ ումն Թէոփիլոս՝ ծանիցես զհաստատութիւն մերոյ ուղղափառութեանս եւ աշակերտեսցիս ո՛չ հնութեան սովորութեանն, այլ*



*նորոգ ճշմարտութեանս, եւ խոստովանեսցիս զմի եւ զնոյն Բանն Աստուծոյ յէութենէ Հօր, որ էն առ Աստուած եւ է Աստուած, որպէս միացուցիչ նիւթոյ ի բովս, եւ կամ իբրեւ մակարդ ինչ կաթին՝ յորովայնի Կուսին մածոյց իւր մարմին ճշմարիտ ի կուսական յարենէ, եւ ո՛չ ըստ ինքեան ինչ ենթակայացեալ մարմին, այլ աստուածային շարառութեամբն շարժեցաւ մարմինն ի գոլ մարմին, եւ բնութեամբ անկերպացաւ բնութիւն մարմնոյն եւ եղեւ բնութիւն Աստուծոյ։ Զի նովաւ էառ սկիզբն՝ գոլ բնութեան յապականացուէն սկսեալ· եւ վասն այսորիկ՝ անապական մարմին։ Զի որպէս արեգակն ընդմիջաբար հանդէտ ընթացեալ՝ անապականութիւն յղութեանն ի բաց փախուցեալ զխաւար ապականութեան՝ եւ առեալ եղեւ այն, որ ինչ առողին է բնութիւն, նոյնպէս եւ կամք առեցելոյն եւ որ ինչ զհետ երթայ բնութեանն։ Իբրեւ ճառագայթք ճրագի, արեգականն հասեալ պայծառութեան առանց ի բաց բարձեցելոյ՝ ոչ ուրեք մնաց իւր անձնաւորութիւն, այլ հզօրագունին յաղթեալ, յինքն փոխարկեալ զաղօտագունին զլոյս, եւ ոչ ինչ ընտրութիւն կամ միջոց կամ տեսութիւն ճառագայթիցն մնաց· այսպէս ո՛չ մարմնական բնութեան կամ կամաց կամ ներգործութեանց թիւ մնաց ի մարմնացեալ Աստուծոյ Բանին առնելոյ· քանզի բոլորն աստուածային կամք եւ ներգործութիւն ասի· զի մնաց Երրորդութիւնն պարզ եւ անզանազանապէս անխառն ի նիւթականացս։ Եւ այսպէս ի կուսէն ծագեաց լոյսն ներշրջմամբն, որ յաշխարհի· ել նա ի կառս խաչին Աստուած մարդացեալ, ընլով զգրեալսն, եթէ «Ելեր դու ի կառս քո· հեծելութիւնդ քո փրկեաց զաշխարհս ամենայն», եւ ի խաչէ անտի ինքնիշխանական ձայնիւ արձակեաց*

զոգին մարդկային, որով էջն ի դժոխս ներքինս փրկել զ'ի նմա գերեալ հոգիսն. եւ նոյն աստուախառն մարմնովն յարուցեալ՝ երեւեցաւ իւրոց ընտրելոց աշակերտացն քառասնօրեայ ժամանակաւ. եւ յայտ յանդիման նոցա ի Ձիթաստանեաց լեռնէն ամպաչու գնացիւք հրեշտակացն դասուք վերացաւ, ել նա ի բարձունս վերինս եւ նստաւ ընդ աջմէ մեծութեան Աստուծոյ Հօր, որպէս ետես նախավկայն Ստեփանոս եւ զկնի՝ անօթն ընտրութեան Պօղոս: Եւ եկեսցէ դարձեալ հանդերձ փառաւոր իւրով գալստեամբն՝ դատել զկենդանիս եւ զմեռեալս, ո՛չ եւս իբրեւ զմարմին, այլ եւ ոչ անմարմին, որովք ինքն գիտէ բանիւք աստուածատեսակագոյն մարմնով, զի տեսցի յայնցանէ, որ խոցեցինն, եւ կացցէ մնասցէ Աստուած արտաքոյ թանձրութեան. զի ո՛չ եւս իբրեւ զցօղ ի վերայ գեղման իջանէ, ըստ առաջին գալստեանն, այլ գայ ահեղակերպ, լուսածագ, գեր ի վերոյ ճառագայթիւք վեհագունեան, նորասքանչ, սքանչելի երեւմամբ, որպէս ինքն Փրկիչն ասէ, եթէ «Եկեսցէ որդի մարդոյ փառօք Հօր եւ ամենայն հրեշտակք ընդ նմա», եւ Դանիէլ ասէ եթէ «Տեսանէի ընդ ամպըս երկնից իբրեւ որդի մարդոյ՝ զի գայր»:

Արդ դու խոստովանեսցի՞ս մի եւ անբաժանելի բնութիւն զեկեալն եւ զգալոցն յանուն Տեառն, եւ զերծցի՞ս ի բաժանմանէ բաժանողաց սրբոյն եւ յառաջահետեւող հրոյն. արդեօք սակայն սիւնհոդոսացն լիցի՞ս կաճառակից, եւ ընդ մեզ երկրպագեսցե՞ս Երրորդութեանն, եւ փառաւորեսցե՞ս զՈրդի եւ զՀայր հանդերձ Հոգւովն սրբով, որ է օրհնեալ յաւիտեանս: Ամէն:

---------



## ՂԵ

### ԹՈՒՂԹ ԱՄԵՆԱՇՆՈՐՀ ՎԱՐԴԱՊԵՏԻՆ ԳՐԻԳՈՐԻ ՆԱՐԵԿԱՑՒՈՅ, ԶՈՐ ԳՐԵԱՑ Ի ՀՈՅԱԿԱՊ ԵՒ ՅԱԿԱՆԱՒՈՐ ՈՒԽՏՆ ԿՃԱՒԱՅ, ՎԱՍՆ ԿԱՐԾԵԱՑՆ ԱՆԻԾԵԼՈՑ ԹՈՆՐԱԿԵԱՆՑ ՅԱՆԵՍԻ ԵՒ ՅԱՄՐԵՍԻ, ՈՐ ԵԿՆ ԶԳԵՍՏԻՒ ՈՉԽԱՐԱՑ, ԵՒ Ի ՆԵՐՔՈՅ ԳԱՅԼ ՅԱՓՇՏԱԿՈՂ, ՈՐ ԵՒ Ի ՊՏՂՈՅ ԾԱՆՈՒՑԱՒ ԱՄԵՆԻՑ, ԶՈՐ ԼՈՒԵԱԼ ՍՈՒՐԲ ՎԱՐԴԱՊԵՏԻՆ՝ ԳՐԵԱՑ ՍԱԿՍ ԱԶԱՏՈՒԹԵԱՆ Ի ԶԱՐ ԿԱՐԾԵԱՑՆ:

Տէր Հայր, զոր գրեմս, իբր չհաւատալի համբաւ չար տեղեկութեամբ, զի թէպէտ եւ յորոց լուանն հաւատարիմք կարծէին, եւ չէր ինչ խէթ չարեաց քինիւ, ոչ այլ իմն ունի կերպարան հակաճառութեան, քանզի լուայ թէ յանյիշելի ամենազազիր մծղնէութիւն աղանդաւորութեան անիծելոց Թոնրակեանցդ ի միջի ձերում բարեխորհիցդ յիշատակի, եւ հիացայ՝ զարմացայ՝ ընդ այդպիսի անյարմար երեսս բանի, Աստուծոյ ատելեացդ՝ որ ասեն զձէնջ ասել առաւել զայդ գիտնական անուն Մուշեղայդ, թէ տեղեկացեալ եմք ի մերմէ առաքեալ թղթաբերէ, որ չեն նոքա աւտար յառաքելաւանդ դաւանութենէ, եւ ըղձալ բաղձալ մեծաւ փափագանաւք հաւասարիլ մասին նոցա, եւ խառնիլ

------

Բնագիր Ա· էջ 498 - 502: Հմմտ. ԻԴ, էջ 59 - 64, 133 - 119.

*յարեան ընդ կոտորեալսն ի սրոյ՝ վրիժախնդիր հեթանոս ամիրայի Ապլվարդայ, որ արդարեւ՝ գաւազան սրտմտութեան ի ձեռին Տեառն Յիսուսի։ Եւ թէ յո՞ր գիրս հրամայէ նզովել զոք, եւ զերջանիկ Տեառն մերոյ զԱնանիայի զզարմանագիծ հակաճառութիւն նամակին, զրաբանականս ասել կամ անպատեհս, կամ ոչ Աստուծով խաւսեցեալ։ Արդ եթէ այդոքիկ ազդեցան ի ձէնջ, թողում ասել թէ հաւանեցան, եւ անխայեմ գրել թէ ճաշակեցան, ապա գլխաւորեցաւ առ ձեզ նախագրեալն, թէ Կերակուրք նոցա ընդիրք զազրացան։ Բազում ինչ աստուածային եւ առաքելական ամենայն ինչ ուրացեալ է ի նոցանէ, եւ խափանեալ յաստուածային կարգաց։*

*Ա.– Ձեռնադրութիւնն՝ զոր առաքեալքն ի Քրիստոսէ ընկալան։*

*Բ.– Եւ հաղորդութիւն մարմնոյ նորա՝ զոր ասաց առաքեալ. եթէ զհացն հաղորդութեան ճաշակելով, զնոյն ինքն զԱստուած միացեալ ի մարմընի ընդունիմք եւ ճաշակեմք, զոր Սմբատ հասարակաց կերակուր զսարսափելին վարդապետեաց։*

*Գ.– Եւ զծնունդն հոգեւոր երկանցն, որ ի ջրոյ եւ ի հոգւոյ, ծանուցեալ թէ որդիս Աստուծոյ գործէ, ջուր ինչ լուալեաց զնոյն նոցին ուսոյց։*

*Դ.– Եւ զաւրհնաբանեալ զաւր կիւրակէին, յորում արար զլոյսն առաջին եւ կատարեաց զլոյսն յարութեան իւրոյ ի նմին, եւ զլոյսն կենարար գալստեանն նովաւ տնաւրինեաց, զայն պատկեր պաշտելի աւուր ընդ այլոցն զուգաթուեալ նոցին թարգմանեաց։ Արդ զո՞րս յայսցանէ զնոսա գիտեմք խափանեալս, ոչ առաքելական կամ աստուածականս։*

*Ե.– Զծնրադրութեանն խորհրդական պաղա–*



*տանս՝ զոր ինքն արարիչն ամենայնի խոնարհեալ կրկնեաց։*

*Զ.– Թէ զաւազանն ուրացեալ ի նոցանէ, յորում ինքն Քրիստոս մկրտեցաւ։*

*Է.– Թէ զհաղորդութիւն անմահութեան զոր ինքն բոլորից Տէրն ճաշակեաց։*

*Ը.– Թէ զմծղնէական անխտիր պղծութիւնն, զոր Տէրն զհայեցուածն արգելեալ խոտեաց։*

*Թ.– Թէ զնչանն երկրպագեալ զոր Աստուածն մարդացեալ յուսն իւր բարձեալ կրեաց իբր ըզփառս ինքեան եւ զիշխանութիւն։*

*Ժ.– Թէ զմարդապաշտ ուրացութիւնն, որ զա՛րշելի է եւ անիծեալ քան զկռապաշտութիւն։*

*ԺԱ.– Թէ զինքնաձեռն քամահանաց քահանայութիւնն՝ որ սատանայի է նմանութիւն։*

*ԺԲ.– Թէ զպսակին ամուսնութեան անգոսնութիւն, զոր Տէրն ինքեան սքանչելեաւք եւ մարբն իւրով Աստուածածնաւ յարգեաց եւ պատուեաց, ըզպսակն անգոսնեն, եւ զոր սիրով մերձենան յիրեարս՝ կատարեալ սէր համարին եւ յԱստուծոյ, եւ հաճոյ Քրիստոսի. թէ՝ Աստուած սէ՛ր է եւ զսիրով միաւորիլն կամի եւ ոչ զպսակ։*

*ԺԳ.– Թէ զերախայրեացն կատակերգական երգիծանութիւնն, զոր Աբէլ, եւ Նոյ, եւ Աբրահամ, եւ Դաւիթ, եւ Սողոմոն, եւ Եղիայ՝ աստուածային բարկութեանն ցուցին հաշտարարութիւն։*

*ԺԴ.– Թէ որ զգլխաւոր աղանդին իւրեանց զարշութեանն յանդգնեալ Քրիստոս անուանեն, զոր Քրիստոս կանխաւ վկայեաց թէ յարիցեն սուտ քրիստոսք եւ սուտ մարգարէք, եւ ա՛յս է ասելն մարգարէին, թէ՝ Խորհեցաւ անզգամն ի սրտի իւրում թէ ոչ իցէ Աստուած։ Արդ այդոքիկ են քննաւղիդ Մուշեղայ անխոտոր հաւատոյ առաքելականքն։*

Արդ՝ զայսոսիկ հաւրեղբայրն մեր եւ վարդապետ, մեծաւ քննութեամբ խնդիրս արարեալ իբրեւ զԱստուծոյ ջատագով, եւ անդստին իբր զիմաստուն նախամարտիկ տապալեաց զառասպելաբան հայհոյութիւն անաւրինելոցն Թոնրակեանցն, թէ ոչ մեք զանունն պղծոցն ի համբաւուց սակաւ ինչ ի լրոյ գիտէաք։ Արդ զի՞նչ պարգեւս ընդրութեան տեսեալ ի զարշելին Կումբրիկոս, եւ կամ յիշատակ բարւոյ ի Սիմոն, եւ կամ յոյս ակնկալութեան ի Ներոն, որոց նոցա են աշակերտեալք, որ զերախտիսըն անպատում բարեգործին չարչարանացն մոռացեալ, զնոսա կարդան ապաւէն՝ որ զնոցանէն ստացեալ։ Որք են չարք չանց, եւ գումարք գողոց, եւ գունդք գայլոց, եւ դասք դիւաց, եւ ազինք աւազակաց, եւ կոյտք կերչաց, եւ բոյլք բարբարոսաց, եւ խումբք խաչահանուաց, եւ ժողովք չարաց, եւ արք արեանց, եւ երամք թունաւոր աւձից, եւ վտառք մարդադէմ գազանաց, եւ կաճառք կախարդասարաս աղանդաւորաց, եւ ոչ միայն եկեղեցականաց, այլ եւ հեթանոսաց են անգոսնելիք։

Քանզի եւ այն հզաւր այր՝ խնդրող վրիժուց նախատանացն Քրիստոսի, որ զանիծեալ զնախնիս նոցա խայտառակամահ սատակեաց, զայս ինչ ասէր ցերկրորդն Յամրէսի, թէ՝ Քրիստոս յերիր աւուր յարեաւ, արդ մինչ դու զքեզ Քրիստոս անուանես, սպանանեմ զքեզ եւ թաղեմ, եւ դու զկնի Լ աւուր կենդանացիր, ես գիտեմ թէ Քրիստոս իցես, թէպէտ այնքան աւուրբք բազմաւք յետոյ յարիցես։ Արդ նա մերձ էր եւ դրացի դառնացողացն մոլեգնութեան, եւ զայն լուր ի բազմաց ճառողաց կրթեալ էր, եւ Քրիստոսի ճշմարիտ յարութեանն ամենեւին հաւատայր, եւ զնոցայն այպն արարեալ իբր զարժանիս հենգնելոյ եթող յիշատակ բանից



գովելեաց, քանզի եւ զայն Աստուած եւ ոչ երկրային խորհուրդ տնկեաց, հրամայեալ տնտեսեաց, նովաւ, չարաւ զչարսն խրատեալ եւ կամ սատակեալ, որպէս զվիշապն ահագին հնդկային ետ կերակուր, եւ զՀրէայսն Քաղդէացւովքն խրատեաց, եւ զխաչահանուսն Տիտոսիւ եւ Վեսպասիանոսիւ եւ Ադրիանոսիւ դատեալ խորտակեաց։ Եւ զԵգիպտականացն ազգ Կիւրոսիւ կործանեալ կրկին կշտամբեաց, եւ մեծահեծան հարուածոց ասի նոյն ինքն Բելիար կախեալ ի տաճարին հրամանաց ահաւորին։ Արդ դեւքն Աստուած գիտացին զՄիածինն եւ դատաւոր ամենայնի դաւանեցին, եւ պիղծն Սըմբատ կրկին Սիմոն, իւրոցն դառնարմատ եւ որոմնաբոյս աշակերտացն զինքն ետ երկրպագել, որպէս մոգն այն Սամարացի, եւ Մոնտանոս, եւ Պիւթագորաս, անգրական եւ հեթանոսային իմաստասէր։

Արդ ամենեւին նուազս ի յոքունց եւ սակաւս ի բազմաց գծագրեցի, եւ մնամ լսել ի բանից ձերոց· քանզի առաջի է Տէրունական կանոնի սահման, Եւ ի բանից քոց արդարասցիս, եւ ի բանից քոց պարտաւորեսցիս։ Այլ եթէ ընդ գրաբանութիւն նոցին զարմանայք, գիտեմք եւ զսատանայ սաղմոս ասացեալ յաւր փորձութեան ամենափրկչին։ Եւ արդ՝ եթէ ոչ անէծս կրկինս եւ նզովս բազմապատիկս ոչ արձանացուցանէք սկզբնահաւրն նոցա Սմբատայ եւ մեռելոց նոցա, եւ կախարդական կրաւնից նոցա եւ դաւանութեան նոցա, եւ զոր բարին կերպարանին կրկին կղկղանըս գրէք եւ առաւել ուրացութիւն վարկանիք, եւ յիմ նամակիդ ոչ նշանակէք, որով զձեզ անարատ յարմար է առնել, եւ զգայթակղութեանն խէթ տարագրել, եւ գիտէք եւ իմանայք եթէ վասն ձեր բարւոյ եւ խաղաղութեան եւ սիրոյ գրեցի եւ հոգացայ, զի մի՛ ամրոցդ այդ

ապաստանի ի պահողաց դորին նենգեսցի։

Ապա դուք ձեզէն պատուականութեան ձերում մատն եղէք, զի այդ Մուշեղ՝ վարդապե՛տ զինքն գրէ, պարտ է ախոյեան լինել ընդդէմ հակառակորդին, եւ զխրամն հատեալ կարկատել, եւ զթերին պատսպարել, եւ խաւարելոյն լո՛յս եւ աղ եւ խրատիչ լինել ըստ աստուածային կանոնին։ Ապա թէ լոյսդ կարծեալ ի դմա խաւար է ստուգապէս, աւձահար թովիչ է, եւ անիմաստ դեղատու, զի գիտութիւն ոչ աւժանդակեալ մատամբն Աստուծոյ, ձա՛յն է անընդրական անյարմարապէս ազդեցեալ եւ պատգամ է նենգական խափանիչ խաղաղութեան։ Եւ արդ ո՞ւր գիտութիւն դորա ասելդ թէ՝ յո՞ր գրոց ունին նզովել զոք։ Պաւղոս եւ զհրեշտակն աւտարի ոչ խորհող, նզովեաւ, եւ զնոյն կրկնեալ ոչ պատկառեաց, եւ Դաւիթ զխոտորեալսն ինքնանէծ կշտամբութեամբ ստորագրեաց։ Եւ Տէրն զբնաւ ահեկանացն դասալքութիւնն ասէ, Երթայք յինէն անիծեալք. եւ զհերձուածողական չարափառութիւնն ի նուազ դաւանութեանն, որ զկնի աւետարանին կանոնեալ պաշտի, կրկին նզովեալ ի սուրբ ժողովոյն Նիկիայ՝ ընկալաք եւ ուսաք, եւ դարձուած թղթոցն պատասխանեաց Պետրոսի եւ Ակակայ(1), զորոշեալսն ի Քաղկեդոնականացն, նզովական բանիցն խրատեաց, եւ Կիւրղի Աղեքսանդրացւոյ գլուխք նզովականացն հատուածոց ընդդէմ Նեստորի, եւ հենոտիկոն թուղթն Զենոնի կայսեր՝ որ նզովէ յանուանէ զբնաւ հերձուածողսն։ Զի թէ որ ի մասնէ ունի թերութիւն՝ պատուիրանաւ պարտիմք նզովել, որչափ առաւել զբազմահերձուած ժողովոյն զդասս, որ կտրեալ են ի Քրիստո-

------

(1) Տպ. ի Սահակայ։



սէ, եւ կապեալ միացեալ ընդ սատանայի։

Եւ արդ, Տէր Հայր, մի՛ դժուարիք ընդ բանս գրոյդ, եւ զանխարդախ սէրդ ատելութիւն վարկանիք, զի սէրն Քրիստոսի ստիպէ զմեզ յայսոսիկ, եւ կամիմք զձեզ ամբիծս լինել, եւ զհաւրն Անանիայի զլիագիտութեամբ զմատեանսն, որ ընդդէմ հերձուածողացն հոգս տարեալ գրեաց, եւ դուք գրել հրամայեցէք։



## ՂԶ

## ՏԵԱՌՆ ԳԷՈՐԳԵԱՅ ՀԱՅՈՑ ՎԵՐԱԴԻՏՈՂԻ ԵՒ ՀՈԳԵՇՆՈՐՀ ՓԻԼԻՍՈՓԱՅԻ, ՊԱՏԱՍԽԱՆԻ ԹՂԹՈՅՆ ՅՈՎՀԱՆՆԻՍԻ ԱՍՈՐՒՈՑ ՊԱՏՐԻԱՐԳԻ

*Զաւ ի յԱստուածուստ պարգեւեալ Տեառն Յովհաննու Ասորւոց հովուապետի եւ մեծապատիւ պատրիարգի զգիծ սիրոյ եւ զնամակ ողջունի վերծանեայ նուաստ ծառայս Աստուծոյ Տէր Գէորգ Հայոց վերադիտող, եւ զարծարծումն սիրոյ տեսեալ զուարթացեալ բերկրեցան միտք իմ, եւ աւրհնեցի զբարեխնամն Աստուած, որ ոչ պակասեցուցանէ զողորմութիւն գթութեան երկիւղածաց իւրոց, այլ միշտ հեղու որպէս ցաւղ վաղորդեան, եւ իբրեւ գլոյս արեգական, որով սրբեալ պայծառանան անձինք ի նա հաւատացելոց, եւ բերկրին բոլոր բանակք բանականաց, եւ կատարին կամք սիրոյ արարչին յարարածս, որ եւ զձերդ չարժէ բորբոքումն սիրոյ առ ի հաստատութիւն հաւատոյ եւ լրումն կամաց կենարարին, որ ասացն թէ Սիրեցէք զմիմեանս, որպէս ես սիրեցի, եւ դարձեալ եթէ՝ Որ սիրէ զիս զպատուիրանս իմ պահեսցէ։ Եւ պատուիրանք նորա այն իսկ են, զի զմիմեանց հոգասցեն անդամքն հոգեւոր սիրով եւ հաւանութեամբ՝ մինչեւ հասցուք ամենեքեան ի չափ հասակի կատարմանն Քրիստոսի Որդւոյն Աստուծոյ,*

------

*Բնագիր Ա· էջ* 335 - 357։



*որ ել ի Հաւրէ կամաւք եւ հաճութեամբ ծնաւղին, միածին Բանն Աստուծոյ, որ եկն սերմանել ի սիրտըս որդւոց մարդկան զգիտութիւն Հաւր, որպէս ասէրն թէ Ծանուցի զանուն քո մարդկան։*

*Արդ զաւ ի բարի սերմանողէն սերմանեալ սերմանս սուրբ հաւատոյ յանդաստանս հոգւոց ձերոց զուղիղ խոստովանութիւն սրբոյ Երրորդութեան, զլի եւ զանթերի զաւանդ սրբոց հարցն եւ վարդապետացն ձերոց՝ պատուեմք եւ ընդունիմք։ Իսկ ի վերայ եկամուտ կարգացդ եւ աւտարախորհ թերի կատարմանցդ յոյժ հեծեմք տրտմագին, զոր ոչ ի սրբոյն Եփրեմէ, եւ ոչ ի նորին նմանողաց ուղղափառ վարդապետաց, եւ ոչ ի կանոնական հրամանաց առաքելոց եւ սրբոց հարցն ընկալեալ ունիք, այլ յոմանց չարափառաց եւ ապականչաց զգեղեցիկ սերմանց սուրբ հաւատոյ, որք ջանացան մտանել եւ եղծանել զգեղեցկութիւն հարսինդ Աստուծոյ եկեղեցւոյդ Ասորւոց, որք թէպէտեւ ոչ զաւրեցին գլխոյ ուղիղ խոստովանութեանդ, սակայն աւելորդ եւ անպատուական կարգաւքդ ոչ թողին գոլ գեղեցիկս՝ զոր ծանեաք զարդարապէսն ի ձերոց գրութեանցս։*

*Զի գրեալ էիք յաղագս խմորելոյ եւ աղելոյ եւ համեմելոյ եւ ձիթելոյ զկեցուցիչ մարմին Որդւոյն Աստուծոյ, եւ յիշեալ զստեղծուածն առաջին մարդոյն հող յերկրէ, եւ ըստ ստեղծմանն Ադամայ ի չորից նիւթոց ասէք կատարել զմարմինըն Քրիստոսի, եւ արկանել ի խորհուրդ ջրոյն՝ ջուր, եւ ի խորհուրդ հողոյն՝ ալեւր, եւ ի խորհուրդ աւդոյն՝ խմոր, եւ ի խորհուրդ հրոյն՝ աղ· եւ առնէք մարմին մարդոյ մահկանացուի եւ ոչ*

Աստուծոյ անմահին, զի ապականելով խմորով եւ ձիթով եւ աղիւ աւրինակ մարմնոյն Քրիստոսի, ծածկապէս ցուցանէք կրել զապականութիւն մարմնոյն Աստուծոյ. վասն զի խմորունն ոչ կարէ գոլ հաց կենդանական, որպէս ցուցանէ երանելին Աստուածաբան ի ճառին որ յաղագս Պասեքին, թէ Աստուստ բարձումն խմորոյն եւթնաւրեայ՝ զի խորհրդականագոյն է թուոցն եւ աշխարհիս այսորիկ քաջայարմար. այսինքն ի հնմէն եւ ի քացախուտ չարութենէն, որ են մեղք առիթ մահու եւ ապականութեան, զոր անպատշաճ է յարել ի մարմինն Քրիստոսի, զի զմեղս ոչ արար, եւ Ոչ գտաւ նենգութիւն ի բերան նորա. թէ ո՛վ ի ձէնջ յանդիմանեսցէ զիս վասն մեղաց, եւ եթէ, Գայ իշխան աշխարհիս այսորիկ եւ յիս ինչ ոչ գտանէ։ Եւ ուր ոչ մեղք, զի՞րդ եւ ապականութիւն, զի սկիզբն ապականութեան մեղք են, եւ որ ի վերոյ քան զմեղս, արտաքոյ ապականութեանց. զի ապականութիւն ոչ ի բնութենէ՝ այլ յայլայլութենէ բնութեանցն, զոր եբարձ ի բնութենէ արարիչն, զոր դու խմորոյ խառնուածովդ ասես ախտակրել մարմնոյն Քրիստոսի, եւ առնուս այսոցիկ վկայ զբան աւետարանին թէ, Նմանեցաւ արքայութիւն երկնից խմորոյ։

Արդ եթէ զաւրինակ արքայութեան կամ զընթացից աւետարանին առցես ի խորհուրդ մարմնոյն Քրիստոսի, ոչ պարտիս անտես առնել եւ զայլսն, զի նմանեցաւ եւ ուռկանի եւ գանձի ծածկելոյ եւ մարգարտի եւ մանանեխի, առցես եւ ի սոցանէ, զի եւ այսոցիկ նմանեցաւ։ Եւ զի ասէք, թէ պարտ է աղ արկանել, զի ասաց Տէրն առաքելոցն թէ, դուք էք աղ երկրի, եւ թէ պատուիրեաց Մովսէս ընդ զոհսն աղ խառնել, զի ի հնումն զբաղարջն



ձիթով աճառէին, եւ յաշտանակսն ձէթ արկանէին, եւ աղաւնին տերեւ ձիթենւոյ եբեր։ Ո՛հ մեծի մըտակուրութեանդ, ասել թէ աղաւնին տերեւ ձիթենւոյ եբեր, մեզ պարտ է ի Քրիստոսի մարմինն ձէթ արկանել, եւ կամ ասել թէ արժան է ձէթ արկանել, զի ի հնումն զբաղարջն ձիթով աճառէին, եւ կամ իմանալդ, թէ Յոբ ասաց, թէ Ուտիցի՞ հաց առանց աղի, պարտ է աղ արկանել։ Եւ զի՞նչ այսոքիկ խորհուրդ մարմնոյն Քրիստոսի, ճրագ, տերեւ, եւ կամ ոստ ձիթենւոյ, եւ կամ հրէական զոհիցն աղն, եւ կամ բաղարջին ձէթն, որք են մանկանց անմտաց իմացուածք եւ ապշելոց իմացմունք, թողեալ զճշմարիտ Բանն, որ առեալ զհացն ասաց, Ա՛յս է մարմին իմ. ի զատկին մեծին երեկոյին, յորում ամենայն աւելորդքն հետակորոյսք, եւ միայն բաղարջաւ եւ դառնճաւ կերակրեալք. եւ ի սեղանոյ անտի առեալ զբաղարջն ետ եւ ասէ. Զայս արարէք։

Իսկ եթէ ասէք, զառեալ հացն խմորուն լինել, յաղագս ժամանակին եւ իշխանութեանն ասէք բարձեալ զտաւնսն եւ խափանեալ զաւրէնսն։ Արդ եթէ ըստ ձերում կարծեացդ խափանեալ էին տաւնքն, եւ բարձեալ էին աւրէնքն, զի՞արդ ինքն Տէրն ասէր, Մի՛ համարիք եթէ եկի լուծանել զաւրէնս, այլ լնուլ. զի զո՞ր ոչ լուծանէր զլուծեալն, կամ զո՞ր լնոյր զոր ոչ գոյին, կամ զի՞արդ ասէր ցՀրէայսն, թէ Յաթոռն Մովսէսի նստան դպիրքն եւ փարիսեցիքն. եւ եթէ ոչ իշխանութիւնք, զի՞արդ եւ աթոռք, եւ եթէ ոչ գոյին տաւնք, զի՞արդ եւ ինքեանք Հրեայքն իսկ ասէին, թէ Մի՛ ի տաւնի աստ, զի մի՛ խռովութիւն լիցի ժողովրդեանս. եւ եթէ ոչ գոյին տաւնք, զի՞արդ եւ Պիղատոս ինքըն ասէր ցՀրէայսն, թէ է ձեր սովորութիւն արձակել ձեզ զմի ոք ի տաւնի աստ. եւ եթէ խա-

*փանեալ էին աւրէնքն, զի՞արդ ասէր դարձեալ, եթէ Առէք ի ձեզ, եւ ըստ ձերում աւրինաց դատեցարուք· եւ եթէ խափանեալ էին տաւնքն, զի՞արդ աւետարանիչն Յովհաննէս յոլովակի զտաւնից պատմէ· եթէ Տաւն էր Հրէից եւ ել Յիսուս յԵրուսաղէմ, եւ դարձեալ թէ, Իբրեւ տաւնն ընդմիջեցաւ· եւ դարձեալ թէ, Ի վերջնում աւուր մեծի տաւնին կայր Յիսուս· եւ դարձեալ զժամ չարչարանացն ցուցանելով ասէր, թէ՝ էր ուրբաթ մեծի զատկին, եւ դարձեալ զՀրէից ասէր, թէ Նոքա ոչ մտին յապարանսն զի ուտիցեն զզատիկն։*

*Իսկ եթէ վասն Հերովդի զիշխանութիւնն ունելոյ, որ ի հեթանոսաց էր, կարծես խափանեալ զաւրէնսն, այլ ոչ կեայր իբրեւ զհեթանոս, այլ իբրեւ զՀրեայ, եւ ոչ իբրեւ զհակառակ աւրինացն, այլ իբրեւ զյոյժ աւրինապահ, որ առ ի կարծել պահել զաւրէնսն, զկին եղբաւրն զկենդանւոյն առնոյր, զոր աւրէնքն յետ մահուն հրամայէին, եւ զանզաւակն մնացեալ· եւ վասն խառնելոյ զազգ տանն Իսրայեղի, բազում ազգահամար ազգին Հրէից այրեաց, զի թերեւս հնար լիցի առ անգիտութեան համարել ազգին նորա յազգ տանն Իսրայեղի։ Իսկ եթէ Պիղատոս ի հեթանոսաց, այլ եւ նա իբրեւ դատաւոր եւ հարկապահանջ, եւ ոչ իբրեւ հակառակ կամ լուծիչ, այլ պատուադիր եւս, եւ վկայ աւետարանիչն Յովհաննէս, որ ասէ, թէ Ի չարախաւսել զնմանէ Հրէից առ Պիղատոս ոչ մտին յապարանսն, մինչեւ Պիղատոս ել առ նոսա, եւ ոչ զնոսա ի ներքս առ ինքն տարաւ արհամարհելով զաւրէնսն, այլ ինքն աւրինապահացն հնազանդեցաւ, եւ ոչ յաղագս իշխանութեանն իւր հնազանդեցոյց, եւ դարձեալ ասելն, թէ Առէք ի ձեզ, եւ ըստ ձերոց աւրինաց դատեցարուք։ Եւ դարձեալ*



*Հրէայքն, որք ասէին թէ Մեք աւրէնս ունիմք ոչ սպանանել զոք։ Եւ արդ պարտ էր ձեզ, որպէս ասաց Տէր, քննել զգիրս սուրբս մտաւորութեամբ, թէ զոյին աւրէնքն եւ ոչ էին լուծեալ, կային եւ տաւնքն եւ ոչ էին խափանեալ, ըստ մարգարէութեանն Դանիէլի մինչեւ ցաւծեալն առաջնորդ, եւ իւր Տեառնն՝ որ ասաց, թէ Ամենայն աւրէնք եւ մարգարէք մինչեւ ցՅովհաննէս մարգարէացան։*

*Արդ ի մէջ բերցուք որ ինչ յաղագս հացին, զի ասէք եթէ բաղարջն՝ հաց ոչ ասի, եւ ոչ հացն՝ բաղարջ։ Գրէ երանելի աւետարանիչն Մատթէոս· թէ Յառաջնում աւուր բաղարջակերացն մատեան առ նա աշակերտքն եւ ասեն, ո՞ւր կամիս զի պատրաստեսցուք քեզ ուտել զզատիկն· եւ նա ասէ, Երթայք ի քաղաքն առ այս անուն· եւ իբրեւ պատրաստեցին, կայր բազմեալ երեկոյին երկոտասանիւքն հանդերձ, եւ մինչդեռ ուտէին ասէ ցնոսա, Մի ոմն ի ձէնջ մատնելոց է զիս։ Եւ վճարեալ զիրըս մատնչին, դարձեալ առնու եւ ասէ, թէ մինչդեռ ուտէին զյառաջասացեալ բաղարջն՝ կոչեաց հաց, զոր առեալ ետ նոցա։*

*Նոյնպէս եւ Մարկոս պատմէ· թէ յառաջնում աւուր բաղարջակերացն, յորում զզատիկն զենուին, ասեն ցնա աշակերտքն, Ո՞ւր կամիս երթիցուք պատրաստեսցուք զի կերիցես զզատիկն, եւ առաքեաց երկուս յաշակերտաց իւրոց, եւ իբրեւ երեկոյ եղեւ, գայ երկոտասանիւքն հանդերձ, եւ իբրեւ բազմեցաւ եւ դեռ ուտէին, ասէ, ամէն (ամէն) ասեմ ձեզ զի մի ոմն ի ձէնջ մատնելոց է զիս· եւ ապա վերստին առնու եւ ասէ, Եւ մինչդեռ ուտէին ա՛ռ Յիսուս հաց գոհացաւ, եբեկ եւ ետ նոցա եւ ասէ, այդ է մարմին իմ· եւ վասն այնորիկ կրկին յիշէ ա՛ւետարանիչն զուտելն, զի դու մի՛ այլազգ հաց*

կարծիցես, այլ զա՛յն ասէ հաց զբաղարջն, զոր ըստ աւրինացն ուտէին, եւ զայն իսկ առեալ ետ նոցա։

Իսկ Ղուկաս ասէ, թէ եկն աւր բաղարջակերացըն, եւ ապա ասէ, թէ Իբրեւ բազմեցան՝ ասէ ցաշակերտսն իւր, Ցանկանալով ցանկացայ զայս պասեք ուտել ընդ ձեզ· եւ ընկալեալ բաժակ գոհացաւ եւ ասէ, Առէք զայդ եւ բաժանեցէք ի ձեզ, այսուհետեւ, թէ ոչ եւս արբից ի բերոյ որթոյ, մինչեւ եկեսցէ արքայութիւնն երկնից։ Արդ յայտնապէս ցուցանէ աւետարանիչն զբաղարջն առեալ հաց, զոր ի պասեքին ուտէին ըստ աւրինացն· եւ զայն առեալ Տեառնն ասաց, Ա՛յս է մարմին իմ, եւ ապա թախանձանաւք ասէ, թէ Ոչ կերայց ի սմանէ։

Արդ պարտ է հաւատալ հաւատարիմ վարդապետացս այսոցիկ, որք ասեն զառեալ հացն բաղարջ, զոր յընթրիսն ուտէին, զի գրեալ է թէ, Յերկուց եւ յերից վկայից հաստատեսցի ամենայն բան, եւ ոչ հակառակասիրութեամբ ընդդէմ յառնել աւետարանչացն, որք զժամանակն եւ ըզժամն ճշգրիտ ցուցանեն զբաղարջակերացն, եւ իւր Տեառնն՝ որ ի սեղանոյն առեալ զառաջին եղեալ բաղարջն եւ ասէ, Ա՛յս է մարմին իմ։

Ապա թէ տկարանաս տակաւին մտաւքդ եւ ոչ հաւատաս գոլ զասացեալ հացն՝ բաղարջ, եւ խնդրես ցուցանել թէ, ո՞ւր կոչեցաւ բաղարջն հաց, ինքն Տէրն տացէ քեզ վկայութիւն, որ պատուիրեաց Մովսէսի եւ ասէ, թէ Մի՛ պակասեսցէ հաց ջերմ յերեսաց իմոց, որ եւ յո՛յժ տխմարաց յայտնի է թէ զբաղարջն կոչեաց՝ հաց ջերմ։ Եւ դարձեալ իւր Տեառնն յաւետարանին յորժամ մեղադրէին աշակերտացն վասն ի շաբաթու հասկ կորզելոյ՝ Հրէայքն, տայ նոցա պատասխանի· թէ Զիցէ՞ ընթերցեալ ձեր զոր արարն Դաւիթ յորժամ



քաղցեաւն, զի՞արդ եմուտ ի տաճարն Աստուծոյ, եւ զհացն զառաջաւորութեան եկեր, եւ ետ այնոցիկ որ ընդ նմայն էին· Ահաւասիկ յայտնի եւ հաստատուն վկայութիւն զի ի հնումն եւ ի նորումս զբաղարջն ասաց հաց։

Եւ արդ՝ չէ արժան ձեզ հակառակ կալ Աստուծոյ եւ աւետարանչացն, եւ յանդգնութեամբ ասել, թէ հացն խմորուն էր, եւ զի՞արդ կարէ ոք խմորուն ասել, զի այրն յորոյ տանն էր Հրեայ էր, եւ ոչ յաննշանից եւ ոչ աւրինազանց ոք, այլ յոյժ արդար էր, որպէս Ղուկաս ցուցանէ, եթէ Ահա այր մի Յովսէփ, որ էր Նախարար· Նախ զիշխանութիւնն՝ թէ չէր ի ռամկաց ոք, եւ ապա զարդարութիւնն՝ թէ Այր բարեգործ եւ արդար, եւ եթէ ասպնջականն այսպիսի ոք էր, եւ նոքա որ հիւրքն էին արք Հրեայք, եւ աւուրքն բաղարջակերաց, զի՞արդ յանդգնի ոք ասել խմորուն, եւ կամ ո ւստի բերէին զխմորունն։ Ապա թէ ասիցես ի քաղաքէն բերին, զի՞արդ արդեւք, զի բնակիչքն Հրեայք էին եւ աւրէնք այսպէս ունէին, որ մինչեւ ի ծակս մկանց խուզէին, եւ եթէ գտանէր առ ոք՝ քարկոծ լինէր ի ժողովրդենէն։

Իսկ եթէ ասես եթէ հեթանոսք էին՝ ի քաղաքին ո՛չ գոյր այլ ոք բայց միայն Պիղատոս եւ իւր զաւրականքն, եւ այն եկք, եւ գնալոյն սպասողք· եւ չէր ինչ փոյթ հացարարութեան, այլ առաւրեայ զպէտս վճարէին, եւ զայն գրեթէ ի Հրէիցն իսկ։ Ապա եթէ եգիտ յումեքէ խմորուն, զի ըստ քում կարծեացդ ասացից եւ ոչ ըստ ճշմարտութեանն, եւ զայն առեալ եկեր նախ ինքն ի մեծի երեկոյի զատկին, յորում առաւել պարտ էր զգուշանալ, եւ նա անց զաւրինաւքն եւ նոցա հարկ առնէր անցանել, թէ, Առէք կերայք այս է մարմին իմ, ապա

արդարացեալ գոյ մատնիչն զի զաւրինազանց մատնեաց, եւ ոչ մատնիչ իսկ, այլ նախանձախընդիր որպէս զԵղիայն. եւ Հրէայք՝ ոչ աստուածասպանք, այլ աստուածասէրք, զի զլուծիչ աւրինացն սպանին։ Եւ եթէ այդ այդպէս էր, Յովսէփ ոչ արդար՝ այլ յանցաւոր, զի զայնպիսին յաւուրս տաւնին ի տուն իւր ընդունէր, եւ ոչ լինէր վրէժխընդիր աւրինացն։ Այլ ոչ այսպէս. եւ վկայ աւետարանիչն, զի արդար կոչէ եւ յոյժ արդար, եւ Տէրն՝ զի եղուկ կոչէ զմատնիչն, թէ Վա՜յ մարդոյն այնմ յոյր ձեռն որդին մարդոյ մատնեսցի. եւ ցՀրեայսըն՝ սպանողս. Զի՞ ասէ խնդրէք զիս սպանանել, որ զճշմարտութիւնն ձեզ խաւսեցայ։

Ապա թէ քո ոչ է իմանալ զճշմարտութիւնն, ծառայ ես գրոյն, եւ կերակրիս անգործ կերակրով զաւրէն անբանից, եւ ասես հաց զխմորունն։ Հարցից զքեզ թէ անուն ի բնութենէ՞ է թէ յեղելութենէ՞։ Եւ գիտեմ զի ոչ կարես ասել յեղելութենէ զանուն, զի յետոյ քան զբնութիւն է եղելութիւն. որպէս մարդ բանաւոր ի բնութենէ անուն. իսկ եղելութեան՝ մարդ քարէ եւ մարդ փայտէ։ Այսպէս բնական անուն հաց բնութեամբ, բաղարջին հացդ է, որպէս զանգործ ցորեան իսկ հաց անուանեն, եւ ոչ եղելութեան խմորոյն, զի խմոր եղելութիւն է, եւ այլայլութիւն եւ ապականութիւն բնութեան, զի ոչ ի բնութենէ եւ ոչ ի զաւրութենէ խմոր, այլ ի վատախառնութեանց, որք են ապականութիւն բնութեանց եւ զաւրութեանց, որ յոյժ հեռի են ի մարմնոյն Քրիստոսի։ Իսկ եթէ ասասցես ըստ յառաջասացեալ տարերցդ կատարել քեզ զմարմինն Քրիստոսի ի յալերէ եւ ի ջրոյ եւ ի խմորոյ եւ յաղէ, մի՛ անտես եղիցի քեզ եւ որակութիւնք տարերցդ, այլ առցես չորս այլս այլա-



նմանս եւ խառնեսցես յայդոսիկ, զի կատարեալ եղիցի ըստ քեզ մարմինն Քրիստոսի։

Իսկ եթէ ասես ըստ պատահման զորակութիւնսն, եւ ոչ այլս առանձնականս, ապա աւելորդ եղիցի քեզ եւ ի խորհուրդ հրոյ՝ աղն, եւ ի խորհուրդ աւդոյ՝ խմորն, զի հուրն եւ աւդ նուրբք են եւ մերձ յորակութիւնսն, եւ բաւական լիցի քեզ ալեւր եւ ջուր ի խորհուրդ հողոյն եւ ի խորհուրդ ջրոյն, ապա թէ ոչ եւ ըստ չորիցն արասցես մարմին Քրիստոսի, առցես եւ ըստ այլ որակութեանցն այլանմանս, եւ միաւորեսցես զոչ միաւորեալսն, ապա արկցես եւ զձէթն քո, զի նշանակ է սիրոյն, եւ արասցես ոչ մարմին Աստուծոյ եւ կեցուցչի, այլ մարմին մարդոյ մահկանացուի եւ ոչ Աստուծոյ անապականի։

Արդ արժան է հաւատացելոց եւ ճշմարիտ քրիստոնէից՝ ոչ մարդկեղէն մտաւք լինել արարիչ մարմնոյն Քրիստոսի, թէ Ադամ ի չորից էր ըստեղծեալ, զոր եւ ոչ պարզ զիւրաքանչիւրսն ցուցանել, զի Մովսէս հող միայն ասէ առեալ, թէ Ա՛ռ Տէր Աստուած հող յերկրէ, եւ զայլսն լռեաց։ Այլ արժան է հաւատալ աւետարանչացն, որք ստուգապէս զժամանակն եւ զաւուրսն եւ զժամն ցուցանեն։ Զժամանակն թէ յետ զարնանային հասարակաւորութեանն յառաջնում ամսեան ի չորեքտասաներորդ լուսնին, յորում զգառն զենուին, եւ զաւուրսըն բաղարջակերացն, եւ զժամն զերեկոյ պասեքին, եւ զտաւնն Հրէից, եւ զինքեանս զՀրէայսն, յորում կարի անմարթ էր այլազունակ հացի ի խնդիր լինել եւ լուծանել զաւրէնսն, զոր ոչ խաչահանունքն յանդգնէին այսպէս, թո՛ղ թէ արք արդարք, զոր բաւական համարեալ թողցուք։

Եկեսցուք ի գրպարտեալն ի ձէնջ ի բանն

Պաւղոսի թէ Հինն անց ասաց, ապա ո՛ւր մնաց քո բաղարջն, որ ոչ նորեցաւ։ Խնդրեմ թէ ո՞ւր մնաց, եւ արդ դու ասացե՞ր թէ ուր մնաց քո աղն, որ ի հնումն ընդ զոհսն, զոր դու առեալ ի Քրիստոսի մարմինն խառնես եւ ասես, թէպէտ ոչ յայտնի, թէ Քրիստոսի մարմինն անհամ անկատար էր, եւ ես կատարեալ առնեմ. եւ կամ ո՞ւր մնաց քո ձէթն՝ որ ի հնումն. եւ կամ ո՞ւր մնաց քո Հրէական անխտիր խառնակութիւնքդ ազգայնուց։ Եւ արդ զի յոյժ թանձրամիտ ես՝ սիրով ըստ քեզ զիջեալ մեկնեցից զբանն։ Գիտեն գիրք սովորութեամբ՝ հին զմեղսն կոչել, վասն զմեզ հնացուցանելոյ, եւ այսպէս յոլովակի մարդ հին, եւ Ադամ հին զմե՛ղսն կոչէին, որպէս ասէր նոյն ինքն առաքեալ թէ Զայս գիտասջիք զի հին մարդ մեր խաչակից եղեւ նմա, նոյնպէս եւ աստ, որ ասէ, թէ Հինն անց, զիշխանութիւն եւ զծառայութիւն մեղացն ասէ, որպէս եւ ասէր իսկ թէ՝ շնորհք Աստուծոյ, զի էիք ծառայք մեղաց, եւ դարձեալ թէ՝ Ազատեալք ի մեղաց ծառայեցէք արդարութեանն։

Ապա եթէ ըստ աւրինացն իմանաս զբանն, ոչ ասաց անցանել նոցա, զոր աստուածային ձեռքն փորագրեցին, զորոյ Տէրն լնուլ ասաց զինքն եւ ոչ լուծանել, այլ անցանել ասաց առաքեալ զորս յաւրինացն, այսինքն է զշաբաթապահութիւնն, զթլփատութիւնն, զզոհքն, զճենճերքն, զխտրութիւն աւուրցըն, զառաւրեայ լուացմունսն, զծերոց եւ զդպրաց զմարդկային աւանդութիւնսն, զառոտն վրէժխնդրութիւնն, զակն ընդ ական եւ զատամն ընդ ատաման, այսոքիկ որ յաւրինացն՝ զոր ասէ անցանել, եւ ոչ զմեծամեծ պատուիրանսն՝ զսիրել զԱստուած եւ զընկերն, չսպանանելն, չգողանալն, չըշնալն, չերդնուլն, պատուել զծնաւղսն, եւ եթէ որք



զայսոսիկ պատուէին եւ պահէին՝ հրեայք, որք ոչն պահէին զայսոսիկ՝ հեթանոսք եւ Աստարտեայ երկըրպագուք։

Եկեսցուք արդ ի ջուրն, զոր խառնէք սուտ կարծեաւք յանապական արիւնն Քրիստոսի, եւ ասէք թէ աւետարանիչն Յովհաննէս յիշէ ի խաչին, թէ Ել ի կողից նորա արիւն եւ ջուր, եւ յեկեղեցիս յիշատակ մահուն կատարի, որպէս ասաց, թէ՝ զայս արարէք յիմ յիշատակ։ Ո՛հ անտեղի անբանութեանդ. արդ ասա ինձ, ո՞ւր ասաց թէ Զայս արարէք. ի խաչի՛ն եթէ ի վերնատան. կամ զոր առաքեալ ասաց թէ Զայս արարէք, միթէ՞ ջուր ասաց թէ զայս արարէք, եւ յաւետարանչացն ծածկեցաւ եւ քեզ միայն յայտնեցաւ, եւ Պաւղոս անգիտացա՞ւ, որ ասաց թէ Տէր Յիսուս Քրիստոս ի գիշերին յորում մատնէր ա՛ռ հաց գոհացաւ, նոյնպէս եւ զբաժակն եւ ասէ, ա՛յս է արիւն իմ։ Եւ կամ դու զո՞ր խորհուրդ կատարես յիշատակ մահուն Տեառն. զասացեա՞լն ի նմանէ ի վերնատանն զհացն եւ զբաժակն, թէ զոչ ասացեալսն ի խաչին զջուրն եւ զարիւն, զի ի խաչին չասաց թէ, զոր յիս տեսանէք զայս արարէք. եւ ի վերնատունն ուր ասաց՝ ջուր ոչ ա՛ռ, այլ զհացն առեալ մարմին իւր ասաց, եւ զբաժակն ի բերոյ որթոյ արիւն իւր։

Եւ դարձեալ զի զայդպիսի կարծիս բառնալ կամելով վերստին ասէ, թէ՝ Ոչ եւս արբից ի բերոյ որթոյ, զոր Բերանն ոսկի Յովհան Կոստանդինու եպիսկոպոսապետն մեկնէ, թէ Ասելովն ի բերոյ որթոյ զմիւս չար հերձուածն յանդիմանէ, որ ի սուրբ խորհուրդն ջուր ի կիր արկանեն, եւ Գրիգոր Նիւսացի եղբայր Բարսղի կրպակաւորս կոչէ զայնպիսիսն որ զջուրն խառնեն եւ ոչ խորհրդազգածս, եւ մեծ մարգարէն Եսայի ի վաղընջուց ամ-

*բաստանէ, թէ Վաճառականք ձեր խառնեն ջուր ընդ գինի։ Իսկ եթէ քեզ աւելի յայտնեցաւ քան աւետարանչացն եւ առաքելոցն եւ սրբոց հարցն, եւ թեթեւացար մտաւքդ եւ ընդ Պաւղոսի ի դրախտն մտեր, եւ անդ այսոքիկ քեզ աւանդեցաւ ի Տեառնէ, թէ պարտ է ի հացն խմոր եւ աղ եւ ձէթ խառնել եւ ի բաժակն ջուր, զի իմ մարմին՝ քացախեալ խմորն է, եւ արիւն՝ ջուրբ ապականեալ բաժակն, զոր յայնժամ ոչ կարացի ասել։*

*Արդ եթէ այսոքիկ քեզ յայտնեցան, եւ դու հասու եղեր անհաս խորհրդոցն Աստուծոյ, ո՛չ պարտի քեզ անգէտ լինել եւ այլոց բազմաց անճառելեաց Աստուծոյ։ Ասա՛ զի՞նչ զանազանութիւն է դատաստանաց Աստուծոյ, հետազաւտեա եւ զճանապարհս նորա զանհետազաւտելիսն, պատմեա՛ եւ զաւր գալստեանն, զի այդ ի նոցանէ ծածկեցաւ, ապա թէ այսոքիկ քեզ ո՛չ, եւ դու կամացդ քոց հետեւելով եւ ո՛չ Աստուծոյ, եւ կատարես զայն որ ի խաչին եւ ոչ զայն որ ի վերնատանն ասաց, եւ ասես զբաժակն ըստ խորհրդոյ ապականել, որպէս եւ զհացն, արդ դու լեր նախ գինուոր եւ առցես սուր, թերեւս եւ գեղարդ իսկ ըստ խորհրդոյ ժամանակին, եւ խոցեսցես խստութեամբ զՔրիստոս, եւ արկցես նախ ջուր ի սկին, եւ ապա զգինին, զի անդ այսպէս նախ ջուր, եւ ապա արիւն, թէ Ե՛լ ի կողից նորա ջուր եւ արիւն, եւ ապա որք ուտեն ի քաւութիւն կամ ի դատապարտութիւն, իսկ քեզ բոլորովին դատապարտութիւն, զի գինուոր՝ եւ ոչ քահանայ, անարգող զՔրիստոս՝ եւ ոչ պատուող։*

*Արդ ի մէջ առեալ զբան աւետարանչացն լուծցուք թէ ել ի կողիցն Տեառն ջուր եւ արիւն, ոչ զխորհուրդ ջրոյն տպաւորելով թէ, պարտ է ջուր արկանել, այլ պարտ է որ յիսն հաւատան՝*



*նախ մկրտել ջրով աւազանին, եւ ապա արեամբս կերակրել։ Եւ դարձեալ ցուցանելով յայտնապէս զմեռանելն մարմնով եւ կենդանի մնալ աստուածութեամբն, կշտամբելով զայնոսիկ ոյք ասենն կրել մարդկութեանն զչարչարանսն ոչ հաղորդեալ աստուածութեամբն, որոց եւ դու իսկ աշակերտիս խորհրդոցդ կատարմամբդ, զի ջուր արկանելով ոչ զմահ նորա պատուելով, այլ ապականացու զմարմին նորա խոստովանիս, որպէս եւ հացին խառնակութեամբ զմարմնոյն ապականութիւն, եւ այսպիսի կատարմունք ոչ ուղղափառի են, այլ մարդադաւան երկաբնակ խոստովանողի, որք ասեն մարդ լոկ չարչարեալ, եւ ոչ Աստուած չարչարակցեալ, զոր թէ տացուք, ոչ Ադամ փրկեալ եւ ոչ մեղք լուծեալ, եւ ոչ անէծք բարձեալ, եւ մեք անդրէն ի մեղս եւ յանհաւատութեան։*

*Այլ յաղագս ժողովոյն Խառանայ, զոր ասէիք թէ նոքա բաժակ միայն ածէին ի խորհուրդն, եւ քննեալ ոչ համարեցաք պատշաճ, այլ հրամայեցաք արկանել ջուր։ Արդ նոքա զայնոսիկ ոչ եթէ ի դոյզն ումեքէ էին ուսեալք, այլ ի սրբոյն Եփրեմէ, եւ յայլոց ուղղափառ վարդապետացն, եւ յաղագս հաւատարիմ եւ զգաստ վերակացուացն պահելով մինչեւ առ ձեզ, զոր դուք ձերով տգիտութեամբդ եւ զայն եւս եղծէք, քաղկեդոնականացն հետեւելով կատարմանց, զոր սերմանեաց ի ձեզ գիշերագող որոմնացանն այն, դարժան եւ դառնագոյն բղխմանց աղբիւրն Բարսումա, նախ եղեալ աշակերտ Նեստորի, եւ յաղագս այնորիկ հալածական յԱնտիոք եւ ի Հռոմ, եւ ի Հռոմայ յԵգիպտոս, եւ շրջեալ ընդ երկիր, եւ յածեալ ամբարտաւանութեամբ ընդ երեսս երկրի, հասեալ առկայյացաւ ի ձերում սահմանի, եւ անդէն հարեալ հողմով հեր-*

ձուածոյն իւրոյ զհաստատուն հիմն հաւատոյն եւ
կարգաց եւ կատարմանց եկեղեցւոյդ սրբոյ, եւ եղ-
ծեաց զաւանդութիւն վարդապետաց ձերոց, զոր
բազում աշխատութեամբ պահեալ, եւ մեծաւ ջանիւ
մինչեւ ի ժամանակս երանելի եպիսկոպոսին Աբ-
դիշոյ։ Եւ ապա յետ նորա անընդրողք ոմանք եւ
ուսումնատեացք զկնի միմեանց տողելով, ոչ զգու-
շացան գեղեցիկ զանձու եկեղեցւոյդ Ասորւոց եւ
կատարմանցդ որ ի դմա, այլ առ սակաւ սակաւ
դտաւ գողացեալ ի վնասակար գաղձուէ զանակոծ
զայլոյն զոր յառաջն յիշեցաք։

Եւ արդ դարձցուք առ հարցուածն ձեր, զոր
վասն խաչ աւրհնելոյ, զի ասէք թէ աշակերտացն
հրամայեաց մկրտել, եւ որդիս արքայութեանն լի-
նել, եւ առաքեալն Պաւղոս, թէ որք ի Քրիստոս
մկրտեցարուք զՔրիստոս զգեցեալ էք. արդ խաչ
եւ ժամահար զՔրիստո՞ս զգեցեալ են եւ կամ որ-
դիք արքայութեա՞ն են։ Արդ ասա, զո՞վ ասաց
Տէրն մկրտել, եւ կամ առաքեալ որո՞ց զՔրիստոս
զգենուլ. ո՞չ ապաքէն մարդկան մտաւորաց եւ բա-
նաւորաց, եւ ոչ անշունչ նիւթոց քարի կամ փայ-
տի։ Նոյնպէս եւ որդիք արքայութեան ասեմք
լինել ոչ զանշունչ նիւթս, այլ զորդիս մարդկան
որք ի ջրոյ եւ ի հոգւոյ ծնանին։

Այլ զխաչ, զի աւրհնեմք եւ հեղումք ի վերայ
ջուր եւ գինի, ոչ եթէ որդիս արքայութեան առ-
նեմք զքարն կամ զփայտն, այլ զաւրինակ խաչին
Քրիստոսի ի նմա տպաւորեմք, որպէս յայնժամ
սուրբ փայտն առիթ մահուն բեւեռելով ի նմա
Բանին Աստուծոյ, եւ բանալով զաղբեւրն կողի իւ-
րոյ, եհեղ ի վերայ նորա ջուր եւ արիւն ի մար-
մնոյ իւրոյ, եւ ապա անսուրբն սրբեցաւ, եւ պատ-
ճառն մահու եղեւ պատճառք կենաց, նոյնպէս եւ



մեք առնելով զաւրինակ խաչին Քրիստոսի, տպա-
ւորեմք ի նմա եւ զխորհուրդ նորա, զի մի՛ լոկ
քարի եւ փայտի լիցի երկրպագութիւն հաւատա-
ցելոց Աստուծոյ, եւ հեթանոսական եւ դիւական,
զի որք առանց խորհրդոյն Քրիստոսի ի նմա կա-
տարելոյ երկիր պագանեն, արդարեւ արարածոյ
երկիր պագանեն, եւ ոչ Աստուծոյ արարչի։ Եւ զի՞
անարժան թուի քեզ զմեռոնն ի խաչն մերձեցու-
ցանել, զի եթէ Քրիստոս ի խաչին բեւեռեցաւ եւ
ոչ անարժան համարեցաւ, այլ զնա սրբեաց եւ ետ
պահապան հաւատացելոց, զի՞նչ վնաս է թէ մեռոն
մերձեցուցանեմք ի խաչն։

Ապա թէ դու բաւական համարիս զմին խաչն
եւ զմին պատարագն, եւ ամենայն խաչաձեւքն
աւրհնեցան եւ պաշտելիք են, ապա եւ միանգամ
ասաց Քրիստոս, Այս է մարմին իմ, եղիցի քեզ
ամենայն հաց՝ մարմին Քրիստոսի։ Միանգամ ա-
սաց ցՊետրոս, դու ես վէմ, եւ ի վերայ այդր վի-
մի շինեցից զեկեղեցի իմ, եղիցի քեզ ամենայն
տուն՝ եկեղեցի։ Միանգամ ետ զիշխանութիւն ե-
րիցութեան առաքելոցն, եղիցին քեզ ամենեքեան
առանց ձեռնադրութեան երիցունք եւ եպիսկոպո-
սունք։ Եւ զի միանգամ պատարագեցաւ եւ սրբե-
ցաւ, եղիցին քեզ ամենայն զոհք հրէականք եւ հե-
թանոսականք՝ պատարագ։ Եւ զի միանգամ պատա-
րագեցաւ եւ սրբեաց զխաչն, եղիցին քեզ ամենայն
խաչաձեւք պաշտելիք, նախ կառք Եզեկիէլի եւ
չորք անիւքն որ ի նմա զի խաչաձեւք, եւ ապա
աշխարհս իսկ, զի չորեքկուսի, աւդ եւ տարերքս,
եւ մարդ իսկ զի խաչաձեւ։ Պաշտեսցին քեզ եւ
բազմութիւնք աստեղաց զի խաչաձեւք են, երկիր
պագցես եւ ձկանց եւ թռչնոց զի խաչաձեւք, պատ-
ուեսցուք եւ զնկարակերտ նիւթս աւդոց կամ հան-

*դերձից, զի նշան խաչին դրոշմեալ է։ Պաշտեսցին ի քէն եւ ազգ իշոց վայրենեաց եւ տնականաց, զի յայտնապէս զնշան խաչին կրեն ի վերայ թիկանց, եւ ապա եկեսցես յանտառս տնկոց վայրենեաց, եւ կամ տանց դարաստանաց, զի բազումք են խաչանմանք, եւ պաշտեսցես եւ պատուեսցես զնոսա ոչ իբրեւ զխաչ Քրիստոսի, այլ իբրեւ զկաղնին Արամազդայ։*

*Ապա եթէ ասիցես ի ձեռն արուեստաւորի ի ձեւանալն սրբել, ապա պաշտելի է նախ արուեստաւորն եւ ապա գործին, թէ ուրագ եւ եթէ այլ ինչ, եւ ապա յետոյ խաչն, եւ եթէ քո արուեստաւորն եւ արուեստն խաչ կատարէ պաշտելի եւ պատուելի, զի՞նչ վնաս է իմ յիշելն զԱստուած, որ յայնժամ ի վերայ խաչին, կամ յեղուլ ջուր յաւրինակ ջրոյն, եւ կամ գինի, յաւրինակ արեանն Քրիստոսի, եւ մեռոն յաւրինակ Քրիստոսի· եւ եթէ ես զայդոսիկ յառաքելոցն եւ ի կանոնաց ոչ ունիմ, եւ մեղադրելիք են, դու զաղելդ եւ զհամեմելդ կամ զձիթելդ զմարմինն Քրիստոսի, իբրեւ զփտեալ եւ զապականեալ վէր, յորո՞ց առաքելոց կամ յորո՞ց կանոնաց առեալ ունիս, եւ եթէ այդոքիկ քեզ արդարութիւն՝ եւ ինձ մեռոնելն զխաչն՝ ոչ մեղք։*

*Արդ եկեսցուք որ ինչ յաղագս սկզբան աւուր եւ երիցուցանելոյ զգիշեր քան զտիւ, եւ զխաւար քան զլոյս, եւ ասելոյ սկիզբն զերեկոյն· եւ ասէք թէ մեք ուսաք ի բանէն Քրիստոսի որ ասաց թէ, Որպէս եղեւ Յովնան ի փոր կիտին զերիս տիւս եւ զերիս գիշերս, նոյնպէս պարտ է լինել որդւոյ մարդոյ ի սիրտ երկրի զերիս տիւս եւ զերիս գիշերս։ Ահաւասիկ բերանդ քո կշտամբեալ յանդիմանեսցէ զքեզ, եւ բանդ քո հակառակ կայ քեզ· զբանդ յառաջ հանելով եւ ո՛չ իմանալով։ Զի զո՞ր ասաց*



*Տէրն առաջին, ո՞չ ապաքէն զտիւն քան զգիշերն, զոր քո այլ ընդ այլոյ առեալ վարդապետես ի վնաս անձինդ եւ ի կորուստ աշակերտելոցդ։ Իսկ եթէ ի սիրտ երկրի խնդրես նախ զայս ասա, թէ ինձ եւ քեզ չէ արժան Աստուծոյ քննիչ լինել եւ դատաւոր։ Թէ դու որպէս ասացեր, եղեր ի սիրտ երկրի զերիս տիւս եւ զերիս գիշերս թէ ոչ, զի Աստուծոյ միայն հաւատալ պարտ է եւ ոչ քննել, զի կամք նորա կատարեալք են եւ ոչ կարաւտին ումեք։*

*Ասաց Աստուած Նոյի հարիւր եւ քսան ամ յերկարել զջրհեղեղն, եւ ոչ յերկարեաց, այլ ի հարիւր ամին ա՛ծ, յորժամ զայն յաւգուտ դատեցաւ։ Ասաց Աբրահամու՝ պանդխտանալ զաւակի նորա ամս չորեքհարիւր, այլ յերկերիւր եւ ի հնգետասան ամին ելին յԵգիպտոսէ։ Սահմանեաց եւ ծառայութեան ժողովրդեանն ի Բաբելոն ամս եւթանասուն, այլ փութով ի հասարակել ամացն ելին։ Ասաց եւ աստ վասն մարմնոյն իւրոյ ի սիրտ երկրի լինել զերիս տիւս եւ զերիս գիշերս եւ եղեւ· զի ի հինգշաբաթին ետ զմարմինն աշակերտաց իւրոց· եւ ուրբաթն իւր գիշերաւն, եւ շաբաթն իւր գիշերաւն, եւ ի լուսանալ միաշաբաթին յարեաւ, եւ կատարեցան երեք աւուրքն որպէս ասաց Տէրն։ Իսկ եթէ անհաւատիս այսոցիկ եւ ասես պակաս զոլ զտիւն հինգշաբաթին, եւ ըստ քում զգիշերն դնելով սկի՛զբն ոչ կարես ցուցանել· զի զերեկոյն ուրբաթին եւ իւր տիւն· եւ երեկոյն շաբաթին եւ իւր տիւն, եւ երեկոյն միաշաբաթին եւ առաւաւտուն յարուցեալ, ահաւասիկ պակասեաց տիւն միաշաբաթին։ Թէ որպէս խնդրես եւ կատարես, արժան է քեզ զյարութիւն Տեառն երկշաբաթի ա-*

սել, եւ սուտ առնել զաւետարանիչսն, որք ընդ առաւաւտս եւ ընդ արեւագալն ասեն լինել յարութեանն։

Այլ պարտ է մեզ հաւատալ աւետարանչացն եւ սուրբ հոգեկիր հարցն, որք ասեն զյարութիւնն ի միաշաբաթւոջ եղեալ, եւ զերիս աւուրս կատարեալ։ Որպէս ասէ Եփրեմ զուրբաթն յերկուս բաժանեալ խաւարմամբն եւ կրկին լուսաւորելովն։ Եւ դարձեալ փութացուցանել ասէ Տեառն զյարութիւնն վասն տկարութեան աշակերտացն, զի Յուդա խեղդեցաւ, եւ Պետրոս ուրացաւ, թերեւս այլք կրելոց էին այսպիսիք, վասն այնորիկ կանխեաց զժամ յարութեանն։ Իսկ Յովհան Ոսկեբերան եւ այլք ի մեկնչացն ասեն զկանխագոյն յառնելն Տեառն, յաղագս հաւատարիմ ցուցանելոյ զյարութիւնն եւ առանց կարծեաց, զի մի յամելովն կարծիցեն գողանալ զմարմինն, եւ ժխտիցեն զմեծասքանչ զաւրութիւնն, վասն այնորիկ մինչ պահապանքն մերձ էին եւ զգոյշ ի պահպանութեանն, եւ կնիքն ի վէմըն նորոգ, եւ կանայքն տրտմեալք հանդէպ նըստէին, եւ հրեայքն խոկային լինել զյարութիւնն, արար վաղվաղակի զյարութիւնն իւր, զի առ հասարակ ամենեքեան եղիցին վկայք յարութեանն յառաջ քան զժամադրութեանն ժամանել ժամ, եւ պահապանք որք մերձ, եւ կանայք որք կանխագոյն տեսին, եւ հրեայքն՝ որք լուեալ ի պահապանացն արծաթ խոստանային տալ, եւ չարժել երկրին եւ թաւալեցուցանել վիմին, եւ աւետել հրեշտակին առ կանայսն, եւ երեւումն Տեառն, եւ ի Գալիլեա փութացուցանել զաշակերտսն, եւ անդ նոցա երեւեալ։

Արդ եթէ այսքան ամենայնք յառաջ քան զըկատարումն երից աւուրցն եղեւ, եւ քահանայա-



պետքն եւ դպիրքն ի մէջ այսչափ վկայից սըտացուցանել ջանային զյարութիւնն, եւ համբաւէին գողանալ աշակերտացն, որք եւ անձանց իւրեանց չէին բաւական յապահով լինել յերկիւղէն· զի՞նչ ապա հանդերձեալ էին ասել թէ յամելով, եւ յետ գնալոյ պահապանացն եղեալ էր այս վասն լինելոյ ի սիրտ երկրի։

Իսկ յաղագս սկզբան աւուր, թէ երեկոյն եթէ առաւաւտն, ոչ է արժան մեզ յանձն ապաստանել եւ ի մէնջ յառաջ բերել բան· այլ երթիցուք ի սկզբան արարչութեան եւ ի մեծ մարգարէն Մովսէս որ ասէ, Ի սկզբաննէ արար Աստուած զերկին եւ զերկիր։ Ահաւասիկ զերկինն վերին ասաց, որ է լոյս, քանզի հուր ասի, զի բնակեալքն ի նմա հրեղէնք որպէս ասէ մարգարէն, թէ Զպաշտաւնեայս իւր հուր կիզելոյ, եւ կայանս ունի՛ն ինքեանց զարփին վերին։ Ապաքէն ցուցաւ առաջին լոյսն եւ ոչ յետին· զի երկրորդս իւրին երկիր գոյացեալ եւ առագաստեալ աւդոյդ խտութեամբ միջոցն երկնի, երկրի ստուերք գործեցան ի վերայ արարածոց· վասն այսորիկ դարձեալ ասէ աստուածայինն Մովսէս թէ, Եղիցի լոյս։ Եւ եղեւ լոյսն թափանցիկ ի մէջ աւդոյ, եւ ստուերք տարերց չքաւորեցան· քանզի ոչ եթէ ի ստուերէ գոյացան արարածք, որպէս ոմանք բարբանջեն, այլ լուսով զարդարեցան· զի թէպէտ եւ ոչ էր գոյացեալ արեգակն մինչեւ ի չորրորդ աւրն, սակայն փոխանակ արեգական, հեղեալ լոյսն տարածանէր զճառագայթս իւր մինչեւ յերկոտասան ժամս տուընջեան, եւ ապա տեղի տուեալ ամփոփէր յեթերն վերին եւ յառաջ խաղացեալ ստուերացն գիշեր գործէր։

Վասն այսորիկ ասաց Մովսէս, թէ կոչեաց Աստուած զլոյսն տիւ, եւ զխաւարն գիշեր, եւ ոչ ասաց

աւր, մինչեւ ցլնուլ երկոտասան ժամու գիշերոյն, եւ վերաբերեաց առաւաւտուն զսկիզբն երկրորդ աւուրն, ապա ասաց աւր առաջին։ Արդ եթէ գիշերըն է սկիզբն աւուրն, ընդէ՞ր յետ երեկոյին անցանելոյ ոչ ասաց աւր երկրորդ, այլ մի· քանզի զկնի նորին ասաց թէ, արար զհաստատութիւն զերկինդ, որ երեւի եւ ամենեցուն յայտնի՝ թէ երկրորդին է ստեղծուած աւուր։ Բայց աստուածային բանն լռէ զաւուրդ անուն, մինչեւ ցկատարումն երկրորդ գիշերոյն, եւ սկիզբն երրորդ տուընջեանն, ապա ասաց զնա աւր երկրորդ։

Եւ յետ սորա պատմէ զժողովումն համատարած ջրոյն, եւ զերեւումն բուսոց եւ տնկոց, եւ զդաշտաց դալարաբերութիւն, եւ այսոքիկ երրորդ աւուր ստեղծուածք, զորոյ զանունն առընթեր ոչ դրոշմեաց մինչեւ ցժողովն երրորդ գիշերոյն, եւ ի մուտս չորրորդ տուընջեանն, ապա անուանէ զնա աւր երրորդ։ Եւ յետ սորին զեղելութիւն լուսաւորացդ թէ, Արար Աստուած զլուսաւորն մեծ յիշխանութիւն տուընջեան եւ զլուսաւորն փոքր յիշխանութիւն գիշերոյ, եւ զաստեղս, որ եւ յոյժ տըխմարաց է յայտնի՝ թէ ի չորրորդ աւուրն են գոյացեալ տարր լուսաւորացդ, զորոյ զանունն ոչ բացայայտեաց մինչեւ ցկատարումն չորրորդ երեկոյին եւ ի սկիզբն հինգերորդ տուընջեանն, ապա կոչէ աւր չորրորդ։ Եւ առ ետեղ պատմէ զեղելութիւն թռչնոց եւ ջրղաւղակ զեռնոց եւ զծովային կենդանեաց, եւ այս հինգերորդ աւուրն է գործ, զորոյ զանուն ոչ ակնարկեաց մինչեւ յաւարտումն հինգերորդ գիշերոյն սկզբան վեցերորդ աւուրն, ապա ասաց զնա աւր հինգերորդ։ Եւ աստանաւր ասէ զլինելութիւն գազանաց եւ սողնոց, եւ անասնոց կենդանաստեղծութիւն եւ զմարդն ըստ պատ-



կերի Աստուծոյ եղեալ։

Արդ ո՞ւմ ոչ է յայտնի ի վեցերորդին ստեղծեալ զմարդն ձեռամբ Աստուծոյ, սակայն ոչ ունի զանուն առընթեր տիւն, յորում վայրի եւ իշխանութիւն տուեալ ասի նախաստեղծ մարդոյն ի վերայ ամենայն երկրածին կենդանեացս, եւ ղաւղական զեռնոց եւ ջրաթռիչ թռչնոց, եւ ի վերայ հողածին տնկոց եւ մրգաբեր փայտից, եւ հասեալ առ երեկն, եւ զանց արար մինչեւ առաւաւտն սկիզբն եւթներորդի տուընջեանն, ապա ասաց զաւրն վեցերորդ ի հաւաքել գիշերային մասանց, եւ ի նմին վայրի ասէ, թէ կատարեցան երկինք եւ երկիր եւ ամենայն զարդ նոցա, եւ կատարեաց զամենայն զգործ իւր զոր արար· եւ հանգեաւ յաւուրն եւթներորդի յամենայն գործոց իւրոց, զոր սկսաւ առնել Աստուած։ Արդ ո՞ւր իցէ երիցութիւն գիշերոյն, ո՛վ իմաստունք յաւէտ եթէ յիմարք։

Եւ դարձեալ նոյն ինքն աստուածայինն Մովսէս ի պատուհասական հրամանին եւ ի համաջինջ նաւակոծութեանն գրէ թէ, Եղեւ անձրեւն զքառասուն տիւ եւ զքառասուն գիշեր· եւ աստանաւր ոչ փոխեաց զկարգն, թէպէտ եւ ոչ աստեղք երեւէին։ Եւ Աստուած յանցանել ջրհեղեղին ուխտադրէր Նոյի զանցեալ կարգսն, ասելով թէ Ցուրտ եւ տաւթ, ամառն եւ գարուն, զտիւ եւ զգիշեր մի՛ դադարեսցեն։ Եւ Մովսէս վասն տալոյ կտակի աւրինացն գրէ այսպէս· թէ, Եղեւ յետ քառասուն տուընջեան եւ քառասուն գիշերոյ, ետ ինձ Աստուած զերկոսին տախտակս քարեղէնս· եւ դարձեալ եթէ Զքառասուն տիւ եւ զքառասուն գիշեր հաց ոչ կերայ եւ ջուր ոչ արբի· եւ յայսոսիկ եւ մի գիշեր ոչ յառաջեաց քան զտիւ։

Իսկ Յովբայ մատենագրութեանն, թէ եկեալ

բարեկամքն նստէին շուրջ զնովաւ զինն տիւ եւ զինն գիշեր, եւ մարգարէն Դաւիթ իսկ զբան սաղմոսին, երանելով զայնոսիկ որ զաւրէնսն Տեառն խորհեսցին ի տուէ եւ ի գիշերի· եւ թէ Արար զարեգակն յիշխանութիւն տուընջեան եւ զլուսին իշխան գիշերոյ, եւ դարձեալ թէ, Ի տուէ կարդացի եւ ի գիշերի առաջի քո· եւ թէ՝ Արեգակն ի տուէ քեզ մի մեղիցէ եւ լուսինն ի գիշերի։ Իսկ համարձակախաւսն Եսայի աղաղակէ ի դիմաց Աստուծոյ եւ ասէ· Ես եմ Աստուած որ արարի զլոյս եւ հաստատեցի զխաւար· դարձեալ ի վերայ արդարացեալ ժողովրդեանն ասէ, Ոչ եղիցի քեզ արեգակն ի լոյս տուընջեան եւ ոչ լուսինն ի փայլումն գիշերոյ։ Իսկ նորագոյն մարգարէն Երեմիա՝ Տէր, Տէր զաւրութեանց որ ետ զարեգակն ի լոյս տուընջեան եւ զաստեղս եւ զլուսին ի լոյս գիշերի։

Դարձեալ թէ զլոյս տուընջեան ոչ հաստատեցի, ապա անարգեսցի պետութիւն զաւակին Դաւթի։ Եւ երջանիկ Մանկունքն զամենայն արարածըս յաւրհնաբանութիւն ածելով, նախ զերկինս եւ զերկնայինսն, եւ ապա խոնարհեալ ի ստորակայս, նախկին ասացին տիւ եւ ապա գիշեր· եւ դարձեալ լոյս եւ ապա խաւար։ Իսկ ի նորումս աւետարանիչքս յայտնի ցուցանեն սկիզբն աւուր զլոյս եւ ոչ խաւար։ Նախ Մատթէոս զի յետ մկրտութեան գրէ վասն Տեառն, թէ պահեալ զքառասուն տիւ եւ զքառասուն գիշեր ապա քաղցեաւ։ Իսկ Յովհաննէս զճանապարհորդութիւնսն՝ Եւ եղեւ նմա անցանել ընդ Սամարիա, եւ էր ժամ իբրեւ վեցերորդ, եւ Յիսուս վաստակեալ նստէր ի վերայ աղբերն։ Եւ դարձեալ նոյն ինքն Տէրն ասէր առ Թովմաս յորժամ երկնչէր ի Հրէաստան գնալոյն· թէ ո՞չ ապաքէն երկոտասան ժամ է աւուրն, որ գնայ ի



տուընջեան ոչ գայթակղի, իսկ որ գնայ ի գիշերի գայթակղի։

Եւ դարձեալ զժամ չարչարանացն Տեառն ասէ, թէ էր ուրբաթ զատկին եւ էր ժամ վեցերորդ, եւ հանին զնա ի խաչ· դարձեալ թէ՝ Ի վեցերորդ ժամուն խաւար եղեւ ի վերայ երկրի։ Որպէս դու կարծես, եւ երեկոյն է սկիզբն աւուրն, եւ ժամ խաւարին վեցերորդ էր աւրն, ապա զի՛արդ ի մէջ գիշերի խաւարն, կամ ո՞րպէս խաւարեցաւ արեգակն, զի ի մէջ գիշերի արեգակն ոչ երեւի եւ ոչ խաւարի։ Իսկ ի պատմել սրբոց աւետարանչացն զաւետիս Միածնին յարութեանն՝ յայտնապէս ցուցանեն զորոշումն աւուրն, զի ասէ Մատթէոս, թէ Յերեկոյին շաբաթին յորում լուսանայր միաշաբաթին, տե՛ս, զերեկոյն շաբաթին ասաց, եւ զլուսանալն միաշաբաթին։ Իսկ Մարկոս, եւս յայտնի, թէ Իբրեւ անց շաբաթն, պատրաստեցին խունկս եւ եւղս, եւ ընդ առաւաւտս միաշաբաթին գան ի գերեզմանն։ Նոյնպէս եւ Ղուկաս ասէ։

Իսկ Յովհաննէս յետ յարութեան ժամուն ըզգալն առ աշակերտսն դրաւքն փակելովք ասէ, թէ էր երեկոյ միաշաբաթւոյ աւուրն, եւ դրաւքն փակելովքն եկն, ուր էին ժողովեալ աշակերտքն, տե՛ս զի զերեկոյն միաշաբաթին ասաց, եւ ոչ երկշաբաթի։ Արդ՝ ո՛ւր իցէ երիցութիւն գիշերոյն յետ այսքան վկայից մարգարէից եւ աւետարանչաց։ Արդ անոպայ ասացին լեզուք ստախաւսացն, եւ ըմբերանեսցին հակառակամարտ խոհականութիւնք ընդդէմ սրբոյ Հոգւոյն եւ հրամանաց Աստուծոյ, որ ի հին եւ ի նոր կտակարանս ցուցանեն առ առաջին արարչութիւն զլոյս, եւ սկիզբն աւուրն զտիւն եւ գիշեր, եւ յաղագս այսորիկ այսչափ շատ լիցի։

Իսկ վասն հարցմանդ զմեզ թէ զծնունդ եւ զյայտնութիւն ի մի կատարէք, որպէս առաջին հարքն որք յառաջ քան զժողովն Քաղկեդոնի։ Արդ թէ այնոքիկ խոտելիք են, զոր նոքայն ուսուցին կամ կանոնեցին, արժան է քեզ եւ զուղիղ խոստովանութիւն, զոր ունիմ ի ժողովոյն Նիկիայ ՅԺԸ իցն, եւ կամ զՃԾ իցն, որ ի Կոստանդինուպաւլիս, եւ զՄ ոցն որ յԵփեսոս Թողուլ, եւ դաւանել ժողովոյն Քաղկեդոնի, եւ լինել մարդապաշտ փոխանակ աստուածապաշտի։ Իսկ զընութիւն կամ զսովորութիւն կամ զուսումն զոր ասես դու, ի վերայ արարածոց ասի, եւ ոչ ի վերայ արարչի։ Եւ զի՞րդ ոչ հաւատաս դու Գաբրիէլի, որ ասաց առ կոյսն թէ, Հոգի սուրբ եկեսցէ ի քեզ, եւ զաւրութիւն Բարձրելոյն հովանասցի ի քեզ. եւ թէ Որ ծնանելոցն է սուրբ է, եւ որդի Բարձրելոյն կոչեսցի. եւ դարձեալ առ Յովսէփ ասէ թէ, Մի երկնչիր առնուլ առ քեզ զՄարիամ կին քո, զի որ ի նմա ծնեալ է ի Հոգւոյն սրբոյ է։ Արդ՝ ոչ ասաց յղացեալ կամ ստեղծեալ, այլ թէ ծնեալ, վասն զի աստուածային էր գործն, եւ ոչ բնութեան կամ սովորութեան ծնունդ, զի թէ սովորութեան կամ բնութեան կիրք գոյին անդ, պարտ էր ասել հրեշտակին, թէ որ ի նմա սաղմն ստեղծանի, զի ի վեց աւրն սաղմն արիւնանայ եւ յետ քառասուն աւուր ապա գոյացեալ բոլոր անդամաւք մարմնոյն շնչանայ, որ է սովորութիւն բնութեան եւ ոչ աստուածային տընտեսութիւն։ Իսկ Քրիստոսի այսոքիկ ոչ այսպէս, այլ անդէն ընդ ասել հրեշտակապետին թէ Հոգի սուրբ եկեսցէ ի քեզ, բոլոր անդամաւք եւ շնչով գոյացեալ եղեւ Բանն Աստուած։

Այլ զի գրեալ էիք թէ ոչ թէ անգիտութեամբ եդան տաւնքս այս յեկեղեցիս Հոռոմոց եւ Յու-



նաց եւ Եգիպտացւոց եւ Ասորւոց, այլ ի կանոնաց եւ իմաստուն վարդապետաց։ Արդ ասացից քեզ թէ յորո՞ց վարդապետաց ընկալան Յոյնք, որոց յետոյ եւ դու աշակերտեցար։ Արտեմոն ոմն սուտանուն աշակերտ Յովհաննու աւետարանչի, ի վերայ գեղեցիկ սերման աւետարանչացն եւ առաքելոցն որոմն սերմանելով, որպէս ի սկզբանն բանսարկուն յԱդամ զյոյս աստուածանալոյն, եւ վասն այսորիկ դիւրալուր եղեալ որք ընկալան, ոչ վասն տաւնասիրութեան կամ առաւել փառս վարկանելոյ բաժանեցին զմի տաւնն յերիս, յԱւետիս եւ ի Ծնունդ եւ ի Մկրտութիւն, այլ վասն հեշտասիրութեան եւ որովայնամոլութեան։ Եւ վասն այսորիկ ասեն լինել զյղութիւն Եղիսաբեթի յեւթներորդ ամսեանն Թշրինի տասն, ի քաւութեան տաւնին, եւ սեպտեմբերի ի քսան եւ հինգն, եւ անտի մինչեւ ի քսան եւ հինգն մարտի թուեն ինն ամիս եւ հինգ աւր, եւ անդ ասեն զաւետիս կուսին, եւ անտի մինչեւ ի քսան եւ հինգն դեկտեմբերի ինն ամիս եւ հինգ աւր ժողովեն յղութեան կուսին եւ ծնունդ կատարեն, եւ յետ երկոտասան աւուր ի վեցն յունուարի յայտնութիւն։

Արդ՝ ոչ է արժան ճշմարիտ եւ ուղղափառ քրիստոնէից հաւանել խոտոր հերձուածոյն Արտեմոնի, որ հակառակաբար սրբոց աւետարանչացն ասաց զյղութիւն Եղիսաբեթի ի տասն Թշրին յաւուր քաւութեանն. որ յոյժ է անտեղի։ Զի զի՛արդ մարթ էր քահանայապետին յետ այնպիսի սոսկալի տեսլեան, եւ ի սրբութիւն սրբութեանցն մտանելոյ, ի կին իւր գնալ. զի ամենայն Իսրայեղ, յամենայն քաղաքաց Հրէաստանի եւ Գալիլիայ, վասն գլխաւոր տաւնիցն քաւութեան եւ տաղաւարահարաց յԵրուսաղէմ ժողովէին նուիրաւք եւ պատարա-

գաւք, եւ նուիրիչ ընծայից եւ պատարագացն ինքն Զաքարիա էր՝ զի՞րդ զամենայն արտաքս ընկեցեալ, առ կին իւր գնայր։ Զի թէ որդիքն Հեղեայ, յանխորհուրդ յաւուրսն յաղագս պղերգութեանն ի պաշտաւնն, այնպէս անբուժելի դատաստանաւ պատժեցան, զի՛նչ ակն ունէր կրել Զաքարիա, թէ ի քաւութենէ տաւնին, յորում միանգամ ի տարւոջն ի սրբութիւն սրբութեանցն մտանէր՝ յաւրինակ Քրիստոսի միանգամ պատարագին, յայսքան խորհրդական աւուրս խորհրդածուն ի կինն մերձ գնայր։

Եւ դարձեալ զեւթնաւրեայ տաղաւարահարացըն զպատարագս եւ զնուէրսն յաւրինակ եւթնաւրեայ աշխարհիս տաղաւարահարաց, եւ ի զաղթականութեանս թողեալ զայնպիսի նշանաւոր տաւն ի կինն իւր գնայր։ Հանդերձ այսու դարձեալ եւ տունն Զաքարիայ ոչ էր յԵրուսաղէմ, այլ ի լեռնակողմն վիճակին Յուդայ, որպէս վկայէ աւետարանիչն Ղուկաս, թէ Յաւուրսն յայնոսիկ յարուցեալ Մարիամ փութանակի գնաց ի լեռնակողմն քաղաք մի Յուդայ, եւ եմուտ ի տուն Զաքարիայ, եւ ետ ողջոյն Եղիսաբեթի. եւ դարձեալ ասէ, թէ Յետ կատարելոյ աւուրցն այնոցիկ գնաց ի տուն իւր Զաքարիա, եւ դարձեալ թէ Իբրեւ լցան աւուրք պաշտաման նորա։

Արդ՝ աւուրք պաշտաման կոչէ աւետարանիչն զքաւութեան տաւնն եւ զտաղաւարահարացն, զոր ի միասին տաւնէր ամենայն Իսրայել, յեւթներորդում ամսեան ի Թշրինի տասն սկսանէր աւր քաւութեանն եւ կատարէր ի հնգետասան նորին ամսոյ, եւ տաղաւարահարացն ի հնգետասան Թշրին ամսոյ սկսանէր, եւ կատարէր ի քսան եւ երկուսն նորին ամսոյ, եւ ապա արձակէր ժողովուրդն յիւ-



րաքանչիւր տունսն։ Վասն այսորիկ գրէ աւետարանիչն Ղուկաս, թէ յետ աւուրցն այնոսիկ, որ են երկոտասան աւուրք երկուց տաւնիցս այսոցիկ, ապա գնաց ի տուն իւր Զաքարիա, եւ եղեւ յղութիւն Եղիսաբեթի ի քսան երեքն Թշրին ամսոյ, որ լինի ի հոկտեմբերի յինն, եւ աստի մինչեւ յաւետիս կուսին ի նիսանի տասնեւհինգն, եւ յապրիելի յեւթն՝ վեց ամիս ըստ Գաբրիէլի ձայնին, մինչեւ ցծնունդ(1) յունուարի ի վեցն՝ ինն ամիս եւ հինգ աւր, ըստ անդրանկածնութեանն, եւ յորում աւուր քանիաւնութեան ամսոյն յունուարի ծնաւ, ի նոյն քանիաւնութեան ամսոյն եւ մկրտեցաւ ըստ վկայութեան Ղուկայ աւետարանչի, որ գրէ թէ, Ինքն Յիսուս էր ամաց իբրեւ երեսնից սկսեալ։

Արդ սկսեալ ասելով զերեսներորդ ամն ցուցանէ, յայտնապէս ի վեցն յունուարի լինել մըկրտութեանն, զի ըստ տոմարական արհեստի յետ քսան եւ ինն ամի անցանելոյ երեսներորդ զնոյն ունի հանդիպուած, որպէս սքանչելին Անդրէաս ցուցանէ, յերկերիւրեակ բոլորին յերրորդ կանոնին զաւր արարչութեանն, եւ տաւնել աւետեա՛ցն եւ զծննդեանն ամենայն ամի ըստ որքանութեան ամսոցն, զնիսան զտասն եւ զհինգն, եւ զապրիելի զեւթն, զյունուարի զվեցն, զմի եւ զնոյն պատկեր բերելով աւուրն։ Այսպէս եւ զծնունդն եւ զմկըրտութիւնն յորքանիս ամսոյն ծնաւ, ի նոյն եւ մկրտեցաւ ի Յորդանան ի Յովհաննէ, որ ի վերուստ վկայէ Հայր, Դա՛ է որդի իմ սիրելի, եւ Հոգին, աղաւնակերպ ի վերայ իջեալ փառակցին իւրոյ, ցուցանէր զգառն Աստուծոյ եւ բարձող մեղաց աշխարհի։ Վասն այսորիկ եւ եղբայր Տեառն Յա-

-------

(1) Տպ. ցնոյնդ։

կովբոս եւ Կիւրեղ աթոռակից նորա ի միում աւուր ի վեցն Յունուարի կանոնեցին զծնունդն եւ զմկրտութիւնն զի մի բաժանեսցի խորհուրդն ըսքանչելի։ Եւ վկայ հաւատարիմ Աստուածաբան՝ ի վարդապետութեան Երախայիցն ասացեալ, թէ Երիս ծնունդս գիտէ մեզ բանս, որ ի մարմնոյ եւ ի մկրտութենէ եւ յարութենէ, եւ զայս ամենայն ինքեամբ պատուեալ իմ Քրիստոս երեւի։

Եւ արդ տես զի՞արդ բաժանէ, զմին փչմամբ առաջնովն եւ կենդանականաւ, եւ զմիւսն մարմնանալովն եւ մկրտութեամբն, իսկ զմիւսն յարութեամբն՝ զոր ինքն սկսաւ։ Արդ առաջին ծնունդ Քրիստոսի ա՛յս է, յորովայնի կուսին ի Հոգւոյն սրբոյ, որ է փչումն առաջին եւ կենդանական, զի յասելն Գաբրիէլի, թէ Հոգին սուրբ եկեսցէ ի քեզ, յառաջեաց Բանն չարառեաց իւր մարմին, քանզի եւ ոչ ըստ բնութեան մարդկան եւ յառաջանալոյ առ սակաւ սակաւ ստեղծագործիւր մարմինն տէրունական, այլ իսկ եւ իսկ իբրեւ զքառասնաւրեայ գոյացեալ եղեւ, զոր ծնունդ առաջին կոչէ։ Եւ վըկայ Հրեշտակն, որ յառաջ քան զծնանելն ըստ երեւութի ի մարմնոյ ծնեալ ասաց, թէ Յովսէփ որդի Դաւթի մի՛ երկնչիր առնուլ առ քեզ ըզՄարիամ կին քո, զի որ ի նմա ծնեալ է ի Հոգւոյն սրբոյ է, որպէս եւ Բասիլ կեսարացի մեկնէ զբան Հրեշտակին, թէ վասն է՞ր ծնեալ ասաց եւ ոչ ստեղծեալ։ Իսկ երկրորդ ծնունդ՝ զմարմնանալն այսինքն զմարմնով յառաջ գալն ի կուսէն, եւ զմկրտութիւնն առանց բարժանման ասէ զայսոսիկ։

Արդ ամաչեսցէ Արտեմոն, յամա՛ւթ լիցի եւ ժողովն Քաղկեդոնի, զի ոչ կարեն ցուցանել առանձնական տաւն մկրտութեանն Քրիստոսի, ոչ ի Յակովբայ եղբաւրէ Տեառն եւ ոչ ի Կիւրղէ, եւ ոչ



գտանէ ոք յընթերցուածագիրն, զի թէպէտ եւ գըրեցին աւետարանք եւ առաքեալք, եւ պրակք առաքելոցն Ղուկասու զմկրտութիւնն Քրիստոսի, այլ ոչ հրաման սահմանեցին կատարելոյ որպէս ծննդեանն, վասն ի ծնունդն լինելոյ մկրտութեանն եւ ոչ բաժանելոյ։ Եւ վկայ մեծն Բարսեղիոս, որ ի Հաւատոց գիրն այսպէս ասէ, թէ Մեծքն եւ կարեւորագոյնքն քրիստոնէութեանս ոչ գրեցան, այլ աւանդութեամբ ունիմք ի կատարմանէ նոցա եւ յաւրինակէ. եւ ոյք են այսոքիկ՝ ընդ արեւելս յաղաւթս կալ, մկրտութիւնն, եւ իւղն սրբութեան, զոր միւռոն անուանեմք, ձեռնադրութիւնք ամենայն աշտիճանաց, եւ որ այլն։

Արդ գիտեմք թէ յայտնեցաւ ի մկրտութեանըն, բայց ի ծննդեանն ընդէ՞ր թաքեաւ. ո՛վ բարժանողք, ո՞չ ապաքէն ի ծննդեանն յայտնեցաւ երկնաւորաց եւ երկրաւորաց, ի յերկինս հրեշտակաց յայտնեցաւ, եւ ի հրեշտակացն հովուացն յայտնեցաւ, եւ յաստեղէն մոգուցն յայտնեցաւ, որ եւ անբանիցն յայտնեցաւ ի մսրի եւ ի քարայրի, եւ ա՛յս է տաւն ծննդեան եւ յայտնութեանն Քրիստոսի, ըստ բարձրաձայնութեան մեծին Գրիգորի Աստուածաբանի ի Ծննդեան ճառին, Այժմ, ասէ, Աստուծոյ յայտնութեանս տաւն, է, քանզի երեւեցաւ Աստուած՝ մարդ ծննդեամբ։ Եւ դարձեալ նոյն ինքն վերագրէ զճառն ի յայտնութեանն Քրիստոսի, եւ սկսանի ի ծնունդն թէ, Քրիստոս ծնեալ լինի եւ ի միում աւուր ասէ մկրտութեան ճառին, թէ Մըկրտութեան է աւրս, եւ պարտ է վաստակել, եւ ոչ ասաց թէ յայտնութեան է աւրս, թէպէտ է, զի զծնունդն գիտէ յայտնութիւն։ Եւ Բասիլիոս ի Քրիստոսի ծնունդն յիւրականն, եւ՛ս յայտնագոյն ասէ մերձ ի կատարումն ճառին, թէ Անուն դիցուք

տաւնիս մերոյ Աստուածայայտնութիւն։ Եւ արդ զի բազում են յայտնութիւնք ի հարցն սրբոց եւ ի վարդապետաց, բայց մեր զչափաւորութիւն սիրեալ դադարեսցուք զբանս։

Եկեսցուք յուղիղ խոստովանութիւնդ որով ընդ մեզ միաբանիք, եւ եղծեալ կարգաւքդ Քաղկեդոնականացն հետեւիք կատարմանց, յորմէ ոչ աւգուտ եւ փրկութիւն։ Զի զի՞նչ աւգուտ բերանով խոստովանել, եւ գործովք ուրանալ, զի հաւատք առանց գործոց մեռեալ են, որպէս եւ գործք առանց հաւատոց։ Եւ արդ պարտ է մեզ Երեմիական հոգւովն հառաչել ի վերայ անզգայ հիւանդութեանդ եւ անգիւտ կորստեանդ, զի երկնեաց երկիր եւ ծնաւ ազգ մի ողջոյն, զոր կորոյս տգիտութիւն, եւ հնացեալ սովորութիւն հին հերեսիոտացն։ Որոց իմաստունն անդուստ ի վերուստ աղաղակէր, թէ Հայեաց ի քեզ, մի գուցէ չաւիղ ուլուց իցէ երեւեալն. որում անընտրող եղեալ հետեւիք զընդարձակն գնալով պողոտայ բազմացդ ուղեկցութեամբ, զի բազումք են կոչեցեալք, եւ սակաւք ընտրեալք։ Զինչ աւգուտ է քեզ ի բազմութենէ ուլուցն, եւ կամ որ շահ ի բազմութենէ ճախակողմանցն։

Արդ ընդրեա՛ դու զսակաւութիւն ցորենոյ, եւ մի զյաճախութիւն յարդին, զնիւթ յաւիտենական հրոյն, զթեթեւացեալն հողմով ամբարտաւանութեամբ յունական յոխորտանաւքն, որք եւ արդարեւ են որդիք անհաւանութեան, որք զուղիղ խոստովանութիւն հաւատոյ առաքելոց եւ վարդապետաց սրբոց եղծին, եւ ոչ կացին յուխտին Տեառն. եւ ըստ պատուիրանացն Աստուծոյ ոչ կամեցան գնալ, այլ եղեալ իմաստունք ինքեանս, եւ յաչս անձանց խորհրդականք, ոչ հնազանդեցան Որդւոյ



ասաւղին թէ, Որ ոչ հաւատայ Որդւոյ, ոչ տեսցէ զկեանս, եթէ բարկութիւնն Աստուծոյ մնայ ի վերայ նորա։ Կարծեցեալք պատուել աւելի տաւնիւք եւ կատարմամբք, գտան անկեալք ընդ նզովիւք առաքելոյ, որ ասացն թէ ոք աւետարանեսցէ ձեզ աւելի քան զոր առէքն, նզովեա՛լ լիցի։

Արդ զի՛ քեզ եւ նոցայն աւրինակ տաւնից եւ կատարմանց, որ հզաւրապէս փախչիս ի մարդադաւան խոստովանութենէ նոցա, ընդէ՞ր կատարմամբ խորհրդոյդ հաղորդիս ապականեալ խառնուածով զանապական մարմինն Քրիստոսի, եւ մարդ մահկանացու ցուցանել զանմահն Աստուած, ապաստանել ի մարդ եւ ոչ յԱստուած, ուստի անէծք եւ ոչ աւրհնութիւն, զի գրեալ է թէ, Անիծեա՛լ որ եդ զյոյս իւր ի մարդ, որոց սպառնայ փողն տարսովնացի թէ Արհամարհեալ ուրուք զաւրէնսն Մովսէսի, առանց ողորմութեան երկու կամ երեք վկայիւք մեռանէր, իսկ որչափ սաստիկ պատժոց արժանի համարեսջիք զայն՝ որ զորդին Աստուծոյ առ ոտն եհար, եւ զարիւն նորոյ ուխտին խառնակ համարեցաւ, որով սրբեցաւ, եւ ըզՀոգին շնորհաց թշնամանեաց. եւ դարձեալ թէ, Իմ են վրէժխնդրութիւնք, ասէ, Տէր, եւ եթէ Ահ մեծ է անկանել ի ձեռս Աստուծոյ կենդանւոյ։ Երկիցուք, սիրելիք, աղաչեմ փութացարո՛ւք զերծանել յայնպիսի ահագին սպառնալեաց. զի թէ որ կամակից լինին՝ դատին ըստ Պաւղոսի, որչափ եւս որ առնեն զնոյն եւ յարգեն եւ պատուեն եւ ընդունին, որոց լիցի մեզ արտաքոյ լինել։ Եւ մարգարէն աղաղակէ, թէ որդն նոցա ոչ մեռանի, եւ հուր նոցա ոչ շիջցի, եւ եղիցին տեսիլ ամենայն մսեղեաց։

Այլ եղիցի ձեզ ամենեցուն հովուացդ եւ հաւ-

*տիցդ Տերամբ եւ կարողութեամբ նորա՝ փախչել ի նոցայոցն եւ ի մահացու եւ յաւտար արաւտէ, ի վայրի դալարուոջ բնակել, եւ ի ջուրս հանգստեան սնանել, ի վարս ուղիղս եւ ի գործս արդարութեան ըստ կամացն Աստուծոյ Հաւր մերոյ, եւ ի փառս միածնին. որով եւ ընդ որում Հաւր, եւ կենդանարարի Հոգւոյն սրբոյ, փառք պատիւ եւ իշխանութիւն, այժմ եւ միշտ, եւ յաւիտեանս յաւիտենից։*

Զմեղապարտ եւ զսուտանուն կրաւնաւորս, եւ ստացող լուսաւոր սուրբ տառիս զԹումաս, եւ զծնաւղսն իմ, յիշեցէք ի սուրբ եւ ի մեղսաքաւիչ պատարագին, վասն սիրոյն Քրիստոսի. եւ Քրիստոս Աստուած զձեզ յիշեսցէ:





# ՂԷ

## ԹՈՒՂԹ ՏԵԱՌՆ ԿՈՍՏԱՆԴԵԱՅ ԿԱԹՈՒՂԻԿՈՍԻՆ ՀԱՅՈՑ, ԶՈՐ ԳՐԵԱՑ ԱՌ ՀԵԹՈՒՄ ԹԱԳԱՒՈՐՆ Ի ՅԱՍՏՈՒԱԾԱՊԱՀ ԴՂԵԿԷՆ ՀՌՈՄԿԼԱՅԷ Ի ՄԱՅՐԱՔԱՂԱՔՆ ՍԻՍ։ ՊԱՏԱՍԽԱՆԻ ԹՂԹԻՆ ՈՐ Ի ՊԱՊԷՆ ՀՌՈՎՄԱՅ ԲԵՐԱՒ ԱՌ ԹԱԳԱՒՈՐՆ ՀԵԹՈՒՄ Ի ՁԵՌՆ ԼԻԿԱՏԻՆ, ՈՐ ԿՈՉԻ ՏԻՄԱՆՋ, Ի ԹՈՒԻՆ ՀԱՅՈՑ ՈՂԷ։ ԳՐԵՑԱՒ Ի ՁԵՌՆ ԱՐԴԻՒՆԱԿԱՆ ՎԱՐԴԱՊԵՏԻՆ ՎԱՐԴԱՆԱՅ ՅԱՐՄԱՐ ԻՐՍ ԱՅՍ։

*Քրիստոսապսակեալ սուրբ Թագաւորի ամենայն Հայոց Հեթմոյ ի Տէր խնդալ։*

*Յառաքեալ գրոյդ քո ծանեաք զքոյին հրաման, զոր հրամել էիք, քաղցր եւ կակղագոյն առնել պատասխանի Թղթին պապուն, եւ նորբատես առնդ Տիմանջիդ որ առաքեցաւ ի պապէն, գտանել զմեղ յետ ՌՄԽԸ ամի՝ ի գտանելոյս մերոյ ի տեառնէ, կարծեն զՀայոց եկեղեցին աղքատ ի գիտութենէ։*

*Եւ յայս գիրս գտաք ժԵ սխալ եւ անընդունակ բան խառնեալ ընդ ճշմարիտսն. է զոր իմա-*

------

*Բնագիր ԻԳ. էջ 946 - 954։ Հմմտ. Ա. էջ 503 -509։ ի. Թղ. 76բ - 81բ։*

*նալով եւ ի չար կամաց են գրել, եւ է զի չեն կարացել տեսանել զԹիւրն։*

*Առաջինն. գրեալ է թէ Հռովմայ աթոռն միայն ունի իշխանութիւն ի վերայ երկրի կապելոյ եւ արձակելոյ, եւ ծառայութիւն պարտին նմա ամենայն եկեղեցիք։ Զայս ընդէ՞ր ոչ իմացան, զի յորժամ ախտացան սուրբ առաքեալքն, թէ ո իցէ ի նոցանէ մեծ, սաստեաց տէրն եւ ասաց. թէ այդ հեթանոսաց եւ անհաւատից է բան, այլ ի ձեր միջիդ ոչ այդ լինի։ Եւ արդ դոքա լրբեալք սուտ կամին առնել զՏէրն։ Եւ Յովհաննէս աւետարանիչըն ասէ, թէ Տէր յետ յարութեան փչեաց յամէն առաքեալսն եւ ասաց. Առէք Հոգի սուրբ, եթէ զուրուք թողուցուք զմեղս թողեալ լիցի, եւ եթէ զուրուք ունիցիք՝ կալեալ լիցի։ Ապա ամէն առաքեալքն ունին իշխանութիւն կապելոյ եւ արձակելոյ։ Եւ յերկոտասան աթոռոցն զմին ետ Պետրոսի։ Երեք առաքեալ յերկոտասանիցն եւ երեք յեօթանասնիցն ի Հայք կան. եւ դոքա ամբարտաւան բարձրայօնութեամբ ասեն, թէ կապեմք ըզՀայք։ Պետրոս նախ ի Կեսարիա Փիլիպպեան հաստատեաց եկեղեցի եւ ապա յԱնտիոք եւ յետոյ Հռոմ, ընդէ՞ր եղեւ Հռոմ առաջին։ Թէ զՊետրոս ինքեանք ի Հռոմ սպանին, զՊետրոսի Աստուածն յԵրուսաղէմ խաչեցին. Երուսաղէմ ընդէ՞ր չէ հրամանատու ամենայն երկրի. զայս դոքա մեզ կուտան ասել. թէ ոչ Պետրոսի բանն յետ Քրիստոսի է մեզ. եւ դոցա վարքն եւ բանքն ի Պետրոսէ հեռի է։ Եւ մեք, վասն դաշանց ուխտի հարցն մերոց, դոցա չար ինչ չեմք հատուցել եւ զսխալն ողջացուցել եմք։*

*Երկրորդ սխալ։ Զհոգին ի Հօրէ եւ յՈրդւոյ ասեն, որ չփոթումն եւ պղտորումն առնէ մտաց*



*լսողին, եւ թէպէտ եւ ասեմք չկայ վնաս եւ ի գրոց ասեմք, բայց ախմարացն ցաւ տայ ի լսելն, լաւ չասելն է։ Զի մի է պատճառն Հայր, միոյն ծըննդեամբ եւ միոյն ելողութեամբ. եւ ապա պատշաճ է որ մի լինի պատճառն յատուկ եւ յստակ։ Եւ Հոգի Որդւոյ ասի, զի Որդւովն բաշխեցաւ պարգեւ Հոգւոյն, որպէս հայրենի բարիք։*

*Երրորդ սխալ երկու բնութիւն ասել զմարդ։ Որ թէպէտ եւ է երկու, հոգի եւ մարմին, այլ ոչ եկեղեցին եւ ոչ արտաքինքն են երկու բնութիւն ասել զմարդ, այլ մի բնութիւն. զի թէ առանձնանան, պակասեաց բնութիւնն, զի ոչ զհոգին է ասել մարդ, եւ ոչ զմարմինն, զի ի մի բնութիւն կապեաց զնա Արարիչն։*

*Չորրորդ սխալ է այս, որ ասեն թէ միշտ նոր ստեղծանին հոգիք, ապա սուտ է Մովսէս զի ասէ, Կատարեաց Աստուած զամենայն եւ հանգեաւ։ Եւ Նիւսացին Գրիգոր ասէ թէ հնգիցս բիւր՝ մինչ զսակաւն ասացի, ամենայն աւուր մարդ ծնանի. թէ նո՞յնքան հոգի ստեղծանէ Աստուած յաւուրն։ Այլ թէ ասեն թէեւ մարմինքն նոր ստեղծանին, սուտ են, զի ի ծնողացն ծնանին մարմինքն եւ ոչ նոր։ Եւ հոգիք ոչ յառաջ ասին ի ստեղծանիլ մարմնոյն եւ ոչ զկնի. եւ ոչ ի հօրէ եւ ի մօրէ կատարեալ(1) այլ անճառելի է վասն նմա բան, զի պատկեր է Աստուծոյ. քանզի որքան զկերպարան սկզբնատպին ունի պատկերն՝ ապա է պատկեր. զի թէ մեր հոգիս գիտելի էր, եւ Աստուած անգիտելի, սուտ էր բանն, թէ պատկեր է Աստուծոյ հոգին. այլ եւ յայս դոքա լրբին։*

*Հինգերորդ սխալ, Որ զՄարիամ կին եւ կոյս*

------

(1) *Գ. Թ.– կտրեալ,* (*էջ* 504)։

է գրեալ, եւ ոչ Աստուածածին, որ յայտնապէս Նեստորին է այս։

Վեցերորդ սխալ եւ մեծ։ Եղեւ, ասէ, կատարեալ աստուածութիւն հաւասար Հօր։ Զի ի վերայ Աստուծոյ Բանին եղեալ ասելն՝ Արիոսին է։ Զի աստուածութիւնն Որդւոյ ոչ է եղելութեամբ։

Եօթներորդ սխալ։ Եղեւ, ասեն, մարդ, որով փոքր է քան զՀայր։ Եղեւն ասի մարդկութեանն, իսկ փոքրն քան զՀայրն, մեծ վնաս է։ Զի պակասն քան զՀայրն՝ չէ Աստուած։ Ապա ոչ կարաց ի փառս Հօրն ածել զմարմինն, ըստ նոցա կարծեացն ոչ աստուածացաւ։

Եւ թէպէտ եւ ինքն ասաց, Հայր իմ մեծ է քան զիս, չասաց թէ ես փոքր եմ քան զՀայր, եւ մեծն պատճառին միայն է· զի նա ի Հօրէ՝ եւ ոչ Հայր ի նմանէ։ Եւ այն առ անհաւատ հրէայսն ասացաւ, որ հակառակ կարծէին զնա Հօր։ Զփառսն ի Հայր վերաբերէ, եւ ասէ հակառակն փառս անձին իւրոյ խնդրէ, իսկ որ խնդրէ զփառս առաքչին իւրոյ, նա ճշմարիտ է, եւ ի Հօր փառաւորիլն ինքն փառաւորէր, զի Որդի էր մեծութեան նորա։ Այլ որպէս դոքա յանդգնին, պակասեաց Որդի մարդեղութեամբըն։ Մի՞ թէ զեն եղեւ նմա ըստ ճշմարտութեան, եւ ըստ մեզ փարթամութիւն եղեւ Որդւոյ մարդեղութիւն նորա, եւ յաճախեաց փառաբանութիւն նորա եւ Հօր եւ Հոգւոյն Սրբոյ· զի որքան անմարմին էր, երկնայինքն միայն փառաւորէին զնա, իսկ մարդեղութեամբն ամենայն ազգք եւ լեզուք, զի մեր փրկութիւն է փառք նորա։

Ութերորդ սխալ։ Երկու բնութիւն եւ երկու կամք Քրիստոսի ասեն, զի յառաջ զմարդն երկու բնութիւն ասացին, եւ արդ զՔրիստոս երկու բնութիւն ասեն, որ ըստ իւրեանց անմտութեան երեք



պարտ է ասել։ Եւ թէպէտ զայն սխալմամբ ասեն գրեալ, սակայն երկու բնութիւն ասելն, զԱստուածածինն մարդածին ցուցանէ, եւ զսուրբ խորհուրդն՝ մարդոյ միս եւ արիւն· այլ եւ յԵրրորդութիւնն մուծանէ երկու բնութիւն, եւ երկու կամք, որ է մեծ մեղք։

Իններորդ սխալն, զոր գրեալն էր՝ թէ զարդարսն միայն եհան ի դժոխոց, եւ եկեղեցի գոչէ թէ աւերեաց, քակեաց զդժոխսն· եւ ազատեաց ըզհոգիսն։ Զի թագաւորն արարածոց երթեալ ի բանդըն կալանաւո՞ր մնայր անդ· եւ ո՞ւմ ասէ մարգարէն թէ Դարձցին մեղաւորք անդէն ի դժոխս։ Եւ զի՞նչ է դժոխքն, եթէ ոչ իշխանութիւն սատանայի ի վերայ հոգւոցն, յորմէ ընկեաց զնա Տէրն։ Եւ թէ ի տեղւոջ, ասեն, ոչ հակառակիմք, սակայն աւերեաց զնա Տէրն, եւ յաւերն ո՛չ ոք բնակէ։ Եւ թէ մնացին ոք անդ, յայտ է թէ յայնմհետէ եւ յաւիտեան անդ տանեն զհոգիս մեղուցելոցն դեւքըն· զոր մի լիցի մեզ ասել։

Տասներորդ սխալ, թէ ի յարութեան առաւել փառաւորեցաւ մարմինն Տեառն· եւ յայտ է ասող բանիդ, թէ վասն վարձու չարչարանացն փառաւորեցաւ յետ յարութեան։ Այլ մեք խոստովանիմք թէ ընդ յղանալ Բանին յարգանդ կուսին եւ ի խառնիլն ընդ մարմնոյն փառաւորեցաւ, եւ այլ ոչ յաւելաւ նմա փառք· զի փառք մարմնոյն աստուածանալն է։ Զի աստուածացաւ եւ աստուածացեալ ծնաւ, ըստ որում Աստուածածին է ծնողն· ապա այլ ի՞նչ մնաց նմա ի փառաց։

Մետասաներորդ· որ զմկրտութիւն յերկուս են հատեալ· քահանայն մկրտէ եւ եպիսկոպոսն մեռոնէ եւ հոգի տայ։ Եւ թէ այդպէս է որ քահանայն հոգի չկարէ տալ, ապա զիա՞րդ զհացն եւ զգինին,

մարմին եւ արիւն Աստուծոյ գործէ, կոչելով գՀոգին Սուրբ. ո՞չ ապաքէն մի եւ նոյն խորհուրդ. զախտի ծնունդն՝ անդամ Քրիստոսի, եւ զբոյսն հողոյ՝ մարմին եւ արիւն Աստուծոյ առնելն, նոյն Հոգւովն, որ զկոյսն մաքրեաց, եւ զՅորդանան սրբեաց. եւ զիա՞րդ կարէ թողութիւն տալ խոստովանողացն քահանայն Հոգւովն Սրբով։

Երկոտասաներորդ սխալ, զոր մոռացեալ են յեօթն քահանայագործութենէն, զմիւռոն օրհնելն, որ է յատուկ գործ եպիսկոպոսի։ Զի որպէս քահանայն քան զսարկաւագն վեհագոյն աստիճան ունի, եւ եպիսկոպոսն երկոքումբք գործովքն, զոր գործէ, վեհագոյն գտանի քան զքահանայն. քահանայ օրհնէ, եւ միւռոն կատարէ երկնաւոր խորհրդովն, որով օծանին ամենայն շնորհընդունակ աշտիճանք եւ սպասք եկեղեցւոյ։

Երեքտասաներորդ սխալն անընդունակն բան։ Որ զերրորդ եւ զչորրորդ եւ զեւս աւելի ամուսնութիւն օրինաւորք են գրեալ եւ անդատապարտք։ Եւ զիա՞րդ իցէ անօրինութիւն օրինաւոր. Աստուած ասաց եղիցին երկոքեան ի մարմին մի. եւ Տիմանջ լիկատն ասաց. թէ հինգն եւ վեցն ի մարմին մի։ ԳՃԺԸ հայրապետքն զերկրորդն ընդ խղճանօք դնեն. եւ Իննուսունց(2) պապն Հռոմայ Փռանգայ զերեքն եւ զչորսն եւ զեւս աւելին առանց խղճի մտացն եթող, զոր այլ սուրբ հարքն եւ մեծն Աթանաս, որ հոգւովն սրբով վարէին, պնդեցին չլինել քրիստոնէից բողանոց եւ առանց լծոյ թողեալք. եւ դոքա զայդ ասեն. բանդ յայդ եկեալ է, որ ով կամի դոցա լսէ եւ որ ո՛չ նոցա, որովք Աստուած խօսէր։

------

(2) իմա՛ Իննովկենտիոս։



Չորեքտասաներորդ սխալ ասեն՝ մինչեւ յօրն դատաստանի առնուլ զվարձս արդարոցն, որք դասին ընդ հրեշտակս. եւ անապաշխար մեռելոցն ի ներքոյ տանջանացն մտանել եւ չարչարիլ, զոր կոչեն բիրկաթուր։ Ապա Քրիստոս յի՞նչ է գալոց ի դատաստան, երբ ի գալստեան նորա վճարեալ է ամենայն ինչ. եւ ի՞նչ նմանէ այս եւ իրաւունք, մարմնով արդարանալ կամ մեղանչել, եւ առանց մարմնոյ փառաւորիլ հոգւոյն կամ տանջիլ։ Այլ մեք զնախամաքրիլն այսպէս ասեմք եւ զնախահանգչիլն, թէ խոստովանութեամբ կատարեալ հոգիքն, թէ արդարք թէ մեղուցեալք ի միում տեղւոջ կան. մեղուցեալքն տանջին միայն վախելով եւ տրտմութեամբ, զի գիտեն զինքեանս, եւ արդարանան խորհրդով եկեղեցւոյ, եւ քաւին եւ սրբին յիշատակօք յետնոցն եւ աղօթիւք եւ պատարագօք, եւ համարեալ է երկիւղն եւ տրտմութիւնն նոցա տանջանք, եւ արդարոցն խնդութիւն յուսով առաջիկայ երանութեան, եւ վստահութիւն զոր ունին առ Աստուած, այն համարեալ է նոցա հանգիստ. զի իմացականն հոգւոցն է, ճանաչեն որոց արժանի են, եւ խնդան եւ տրտմին անդ ուր կանն։ Այլ զկատարեալ փոխարէնն ոչ ունին. զոր օրինակ թէ իցեն տասն այր ի տան միում արգելածք, ի ժամ երեկոյին հինգն ի նոցանէ ակն ունին վաղիւն պըսակի, եւ հինգն հատման գլխոյ. ոչ միապէս նոքա զգիշերն անցուցանեն։ Այլ խնդութեան եւ տանջանաց վախճան գալուստն է երկրորդ եւ յասելն Տեառն երթիցեն նոքա տանջեալք, եւ արդարքն պսակեալք։ Բայց ասացեալ են եւ ազգ մի այլ, զոր չէ ընդունած, թէ բուն արդարքն Ռ ամաւ յառաջ յառնեն քան զանապաշխար մեղուցեալսն, եւ այն աւելի պատիւ է նոցա։

*Հնգետասաներորդ սխալ, որ գրեալ են թէ այնք, որք ընդ հրեշտակս դասեալք են, եւ որք ի բրկատորն, միապէս փառաւորին. եւ անհաւատքն եւ մահու չափ մեղուցեալքն ի միում տանջանս կացցեն: Եւ մեք ասեմք, թէ չափ եւ համար ոչ գոյ զանազանութեան փառաց արդարոցն, ըստ բազմատեսակ առաքինութեանցն, զոր Տէրն հրամայեաց, ի տան Հօր իմոյ օթեւանք բազում են. եւ Պօղոս ասէ՝ այլ փառք արեգականն է եւ այլ փառք լուսնի. եւ աստղ քան զաստղ առաւել է փառօք. վասն զանազան հատուցմանն ասէ զայս, զամենաճառագայթ երանութիւնն, զոր առնուցուն ըստ գործոց իւրեանց: Նմանապէս եւ տանջանացն է որոշումն եւ զանազանութիւն, ոմանց հուր եւ խաւար, կիսոց դժոխք եւ կիսոց յատակ դժոխոց, ոմանց որդն եւ հուր, եւ ոմանց սառնամանիք եւ տարտարոս. եւ կէսք սակաւ տանջեալք, եւ կէսք ոչ տանջեալք, եւ ոչ պսակեալք, եւ դոքա երկուք միայն են ի ստուգել:*

*Իսկ մահու չափ մեղք, մեք ասեմք թէ այն է՝ որ արտաքոյ օրինացն առնէ ինչ մի եւ ասէ, թէ այս փոքր է չապաշխարեմ. եւ ոչ խոստովանի եւ ոչ ապաշխարէ. Թուի թէ այդ Փռանգաց եկեղեցականք են, որ լոյծ կենօք կան եւ ապաշխարութեան փոյթ բնաւ ոչ առնեն: Թող երթան զիւրեանց գերանն հանեն եւ ապա հային մեզ:*

*Եւ եթէ այս բանիցս կարկատանս սկսանին յօդել, նա չպակասէ մեզ Աստուծոյ ողորմութեամբըն ճշմարտութիւնն՝ զոր ընդդէմ տամք նոցա: Դուք՝ զոր պատշաճ համարիք, հասկացուցէք ի պատասխանւոյս զիւրեանց, եւ զինչ այլ ասեն, դուք գրեցէք ի մեզ: Թող բերեն առ մեզ զՊետրոս առաքելոյն դաւանութիւն, եւ զՍեղբեստրոսին եւ*



*զԿեղեստիանոսին եւ զՅուլիոսին եւ զայսպիսեաց աստուածազգեաց արանց եւ առաջնորդաց զխոստովանութիւն: Եւ թէ չընդունիմք, յԱստուծոյ առնումք զբանադրութիւնն, եւ ի նոցունց: Ապա զդոցա արուեստակեալ առասպելսն ոչ ընդունիմք, այլ եւ արհամարհեմք, եւ չիշխեն ի վերայ մեր ամենեւին: Եւ թէ յայս սակս տրամիս, թէ ի դաշանց հարցն մերոց քակտիմք, նա վասն դոցա չելնեմք յաշխարհականացն սիրոյ, եւ յաղօթելոյ վասն նոցա ոչ պակասիմք, վասն դաշանց հարցն մերոց սրբոց, եւ խաղաղութիւն կալցուք ընդ Աստուծոյ, եւ ընդ սուրբ եւ ընդ ամբիծ հաւատս նորա, եւ ի գառնազգեցիկ գայլոցդ զգուշասցուք, որ ընդ Աստուծոյ եւ ընդ այնպիսի թագաւորին իւրեանց չմորեալ, կամին եւ ընդ մեզ չմորիլ: Եթէ ընդ քեզ հաւատ հարցանեն, դու ասա, թէ ես զիմ առաջնորդացն ունիմ հաւատ եւ զիմ եկեղեցւոյն, եւ նոցա պարտիմ համարս տալ եւ ոչ ձեզ: Ո եւ Ի զաւառ են ի Հայք, են որ աւեր են եւ են որ ի ծառայութեան կան. եթէ կու ցաւին ընդ Հայոց, թող գան ազատեն. եւ խօսին ընդ Հայոց վարդապետարանսն, որ ոչ բլայթով եւ խաբէութեամբ ուսուցանեն եւ ուսանին՝ որպէս դոքա, այլ ճշմարտութեամբ եւ հիմամբք առաջնոցն, եւ ապա գան առ մեզ եթէ կարեն զնոսա փոխել: Մեք պատրաստ եմք, որ ոչ թողումք զճշմարտութիւնն, յօժարելով զկնի բազմաց ի կորուստ երթալ. թէ ոչ՝ թող յեսան(3) առնեն եւ յղրկեն թէ որպէս խոստովանին Հայք: Ողջ լեր կրկին թագաւորել, թագաւոր աստուածասէր:*

------

(3) *իսաւն* (*Ա. էջ* 509):

---------

# ՅԻՇԱՏԱԿԱՐԱՆ

------

Շնորհք մեծապէս եւ երկրպագութիւն ամենասուրբ Աստուածն Հոգւոյ՝ ի փառս Հաւր եւ Որդւոյ, ամէն։ Որ անբաժանելի գոլով բազմամասնապէս բաժանէ շնորհս ըստ չափոյ ընդունողաց մեծամեծացն եւ փոքունց, ոչ առ մեծսն խնայելով իբր գլացմամբ, եւ ոչ առ նուաստսն յաճախ քան զարժանն ի վատնումն զձիրսն տալով, զորս ունաւղքն բանականապէս իւրաքանչիւր զիւրն ճանաչէ զչափ։ Յորոց ի բնաւիցն յոքունց եւ իմս նուաստութիւն, որ եւ փոքու մասին անարժան գոլով Թովմաս ոմն անուն, տարաշխարիկ եղեալ ի հայրենի տեղւոյ իմոյ, յերբեմն ի վաղնջուց ամաց հայրապետական աթոռոյ ճոխութեամբ փառաւորեցելոյ, ի նշանաւորն ասեմ դղեկէ Հոռոմկլայէն վասն իմոլ մեղաց, նախ քան զվեց ամ գրութեան տառիս ի ձեռս Տաճկաց մատնեցելոյ, յորմէ ամաւ եւ կիսով նախ քան զառնուլն պատահեաց ինձ ելանել եւ գալ յաշխարհս Կիլիկիոյ, յուսով տեսութեան սուրբ գերեզմանին Քրիստոսի. զոր վարկանիմ թէ եւ ոչ ըստ իմոյ արժանեաց, այլ վասն անչափ խնամոցն Տեառն դիպեցաւ այս, ոչ տեսանել ի ժամանակի պաշարման դղեկին զանհանդուրժելի նեղութիւնն, որոյ եւ լուրն պակուցանէ զամենայն լսաւղս.

------

Բնագիր Ա. էջ 537 - 538։



Ուր եւ բազումք մանաւանդ բնաւքն սննդակիցք իմ եւ ազգայինք ի պէս պէս մահս, եւ ի գերութիւն վարեցան մեծ թշուառութեամբ, արտաքս քարշեալք ի մայրենի գրկաց պանծալի դղեկին, զորոյ յիշատակ երջանկութեանն, եւ զայժմու թըշուառութեան, որպէս ի դէպ է հարազատ զաւակի առ սիրելի ծնաւղսն, եւ ոչ առանց արտասուաց բերեմ։ Վասն զի գերեալ եղեւ եւ Աջ սրբոյն Գրիգորի եւ հռչակաւոր Նշանն սուրբ Վանկոյի, առ ոտն ընկեցեալ նշխարք ոսկերաց սրբոց վկայիցն։ Նա եւ աստուածաբնակ եւ երկնանման չքեղաշուք եւ գերապայծառ սուրբ տաճարսն, զսրբոյն Գրիգորի ասեմ եւ Տիրամաւրն սրբուհւոյ Աստուածածնին, եւ յանուն Որդւոյ նորա սուրբ Փրկչին, կոխան եղեւ եւ աւթարան անհաւատիցն։ Այլ զիմ անարժանութիւն ի վեր քան զիս պատահեալ շնորհի քահանայութեան, եւ ուղիղ դատմամբ յոյժ պակաս գտանելով զիս ի վայելչականացն, գործնականացն ասեմ եւ տեսականաց լաւագոյն մասանց հարկաւորաց այսր աստիճանի, գրեթէ անպատշաճիւք լցեալ, եւ մեծապէս ընդ այսր զանձն իմ պարսաւեմ. Այլ սուղ ինչ եւ զայս ոչ անմասն ի բարեաց ծանեայ զճանաչելն զանձին նուաստութիւն։

Եւ թէ չէ իրաւ, գոնէ ի սակաւուց ինչ ձեռնհաս գտելոց մասանց բարեաց պղերգանալ բարձրամիտ խոկմամբ, այլ ըստ չափոյ կարողութեան ժրանալ, եւ այսու մտածութեամբ, իբր թէ ի հոգեւոր զբաղանս տրուպ անձինս եւ ի սփոփանս սգապատ ոգւոյս, մանաւանդ վասն առ ի Քրիստոս յուսոյն, ձեռնարկեցի գրել զսրբոց հարցն պէս պէս եւ զանազան ԹՂԹՈՑ զ ԳԻՐՍ, որք վասն ուղիղ հաւատոյ ի Քրիստոս խոստովանութեան ի զանազան ժամանակս հանդիսացեալք, եւ վասն աւգտի

զկնի եկելոցն յիշատակ թողեալ։ Որոց աստուածասէրն կամաց եւ ես անարժանս եւ տկարս հետեւող եղեալ՝ խոշոր եւ անարուեստ գրով ձաբռտեցի զսուրբ մատեանս հաւաքեալ Թղթոցս· յիշատակ բարեաց մնալ մեղաւոր անձին խոշոր գրչիս Թովմայի։ Եւս եւ իմոց ի Քրիստոս հանգուցեալ ծնաւղացն, եւ հաւրեղբարցն՝ սրով խողխողելոց, եւ այլոց եւս տոհմակցացն, ի վերայ պահպանութեան եւ զգուշութեան նախայիշեցեալ Կլային եւ այլոց . . . . . . յլի ողբերգելի առման բերդին . . . . . . անդ սպանելոց, եւ այլոց գերի վարելոց, եւ ի բանդի խոստովանութեամբ ի Քրիստոս վճարելոց, եւ ոմանց դեռ եւս ի բանտի կապելոց։ Յաղագս որոյ յոտս սրբոցդ եւ իմաստնոց անկեալ, պատահելոցդ ասեմ սուրբ մատենիս, եւ աւգտեցելոց ինչ ի խոշոր աշխատութենէս . . . . . . . . . *)։

------

*) Պակասի վերջ յիշատակարանիս։

-----------

Առումն Հռոմկլայի ի Սուլտանէն Եգիպտոսի եւ գերութիւն Ստեփանոսի Կաթուղիկոսի Հռոմկլայեցւոյն եղեւ յամի Տեառն 1292 յորում եւ ծռազատիկն էր. եւ զի վեց ամաւ յետոյ դնէ գրիչն Թովմաս զթուական գրութեան, յայտնի է թէ յամի Տեառն 1298, եւ հայոց ՉԽԷ ընդօրինակեալ է ԳԻՐՔՍ ԹՂԹՈՑ, հաւանաբար ի Սիս, զի յիշէ զաշխարհն Կիլիկիոյ առանց անուան քաղաքի կամ վանաց:

----------



## ԾԱՆՕԹՈՒԹԻՒՆՆԵՐ

------

Աւելորդ չհամարեցինք հակիրճ ծանօթութիւններ տալ Թուղթերէն ոմանց մասին՝ յօգուտ ընթերցողաց։

Ա.– Երուսաղէմի Մակար Հայրապետը պաշտօնավարած է 324 - 333 թուականներուն։ Թուղթը ուղղուած է Հայոց Տէր Վրթանէս Եպիսկոպոսապետին, որ կը պաշտօնավարէր 333 - 341 տարիներուն։ Ըստ այսմ Մակարի պատրիարքութեան վերջին իսկ Վրթանէսի կաթողիկոսութեան առաջին տարին գրուած է այն։

Բ.– Կիւրեղ Եպիսկոպոս, Պատրիարք Աղեքսանդրիոյ, 412 - 444, գրած է այս Թուղթը Նեստորին, պատրիարք Կ. Պոլսոյ 428ին, նախ քան Եփեսոսի Ժողովին գումարումը։

Գ.– Կելեստինոս եպիսկոպոս Հռոմայ, 422 - 432, գրած է այս Թուղթը Նեստորին։ Թղթոց Գիրքին մէջ վերջաւորութիւնը թերի է։ Քննական հրատարակութիւնը առինք Սիոն Ամսագրէն, 1964, էջ 256 - 257։

Դ.– Եզնիկ Վրդ. Կողբացի, Եփեսոսի Ժողովէն յետոյ, Կ. Պոլսէն, Մաշտոց Վարդապետին գրած է Թուղթ մը, որ դժբախտաբար լման չէ հասած մեզի։ Այդ Թուղթէն երկու հատուածներ դրինք այստեղ՝ առնելով Կնիք Հաւատոյ Ժողովածոյէն (էջ 51 եւ 130)։

Ե.– Պրոկղի Թուղթը լման չէ հասած մեզի։ Սկիզբի էջը խառնուած է Եզնիկի գրութեան հետ։

Ը.– Այս Թուղթին համար մասամբ հետեւեցանք Եղիշէ Եպս. Դուրեանի օրինակին, որ կը պարունակէր քանի մը սրբագրութիւններ։

Ժ.– Այս Թուղթին հեղինակն է Պետրոս Եպս. Անտիոքայ (475 - 488) ինչպէս ցոյց տուած ենք ժամանակին առանձին յօդուածով։

ԺԱ.– Աղեքսանդրիոյ Պատրիարք Պետրոսի (482 - 490) եւ Կ. Պոլսոյ Պատրիարք Ակակի (471 - 489) միջեւ տեղի ունեցած Թղթակցութեան առաջին նամակն է այս, որուն յաջորդեցին ութ Թուղթեր եւս (ԺԲ, ԺԴ, ԺԶ, ԺԸ, Ի, ԻԳ, ԻԶ, ԻԸ)։

ԺԳ.– Առաջին Թուղթ Ակակ պատրիարքէն առ Պետրոս պատրիարք։ Ասոր յաջորդող նամակներն են, թիւ ԺԵ, ԺԷ, ԺԹ, ԻԱ, ԻԲ, ԻԴ, ԻԷ։

ԻԵ.– Պետրոս եւ Ակակ Պատրիարքներու Թըղթակցութեան արդիւնքը եղաւ Զենոն Թագաւորին հրատարակած Միաւորութեան Գիրը (Հենոտիկոն) որ արձակուեցաւ 482 թուին։

ԻԹ.– Յովհան Մանդակունի Կաթողիկոսը պաշտօնավարած է 478 - 490։

Լ.– Ապացոյց կոչուած այս գրութեան հեղինակը ոչ թէ Հայոց Յովհաննէս եպիսկոպոսապետն է, այլ Աղեքսանդրիոյ (496 - 505) ինչպէս պարզած ենք կանխաւ։

ԼԱ.– Անաստաս Թագաւոր (491 - 518) այս Թուղթը գրած է 506 թուին։

ԼԲ.– Հայոց Բաբգէն կաթողիկոսին (490 - 516) կողմէ գրուած է 506ին։

ԼԳ.– Բաբգէն կաթողիկոսի երկրորդ Թուղթն է՝ ղրկուած Պարսկաստանի ուղղափառներուն՝ նախորդէն շուրջ երկու տարի ետքը։



ԼԴ.– Այս գրութեան հեղինակն է Մովսէս Քերդողահայր։ Վերնագիրն է "Յաղագս Միոյ Բնութեան Բանին Մարմնացելոյ"։

ԼԵ.– Ուղղափառ Ասորիներու կողմէ ղրկուած այս Թուղթը ուղղուած է Հայոց Ներսէս Բ. Բագրեւանդացի կաթողիկոսին, որ պաշտօնավարած է 548 - 557 թուականներուն։

ԼԶ.– Ասորիներու Թուղթին պատասխանը գրուած է 551 թուին։

ԼԷ, ԼԸ, ԼԹ, Խ, Թուղթերուն հեղինակն է ուղղափառ Ասորիներու եպիսկոպոս Աբդիսոն. նամակները ուղղուած են Հայոց Ներսէս Կաթողիկոսին։

ԽԲ.– Ներսէս Կաթողիկոսի ջանքերով Հայոց աշխարհը Միաբանութեան Ուխտ մը կը հաստատէ, 555ին, հոգեւորական դասին եւ աշխարհական իշխաններու մասնակցութեամբ։ Ուխտագիրը կը վերջանայ սա վսեմ յայտարարութեամբ. "Կնքեցաք առաջին սրտիւք մերովք յուսովն Քրիստոսի Աստուծոյ մերոյ, եւ ապա մատանեաւք մերովք"։

ԽԴ.– Այս Թուղթը կը պատկանի Յովհաննէս Բ. Գաբեղեան Կաթողիկոսին, որ եղած է Հայոց Հովուապետը 557 - 574 տարիներուն։ Գրութեան թուականը կը համարուի շուրջ 565։

ԽԵ.– Գաբեղեանի այս Թուղթը նախորդին հետ նոյն թուականին գրուած կը նկատուի։

ԽԶ.– Այս գրութիւնն ալ Գաբեղեանի գրչին արդիւնքը կը համարուի։

ԽԷ.– Այս Թուղթը կը պակսի Թղթոց Գիրքին մէջ։ Հեղինակն է Եղիվարդեցի Մովսէս Կաթողիկոսը, որ պաշտօնավարած է երեք տասնեակ տարիներ, 570 - 604։ Եղիվարդեցին հարկադրուած է գըրելու այս Թուղթը իր ծերութեան օրերուն՝ շուրջ 600 թուին։

*ԽԸ.- Այս Թուղթն ալ կը պակսի Թղթոց Գիրքին մէջ։*

*ԽԹ.- Այս գրութիւնը չկայ Թղթոց Գիրքին մէջ։*

*ԾԲ.- Բացառիկ կարեւորութեամբ Թուղթ մըն է։ Գրողն է Սահակ՝ Համազասպի որդի։*

*ԾԳ.- Մովսէս՝ Եպիսկոպոսն էր Հայաստանի Գուգարաց նահանգի մայրաքաղաք Ցուրտաւի։ Թղթոց Գիրքը կը պարունակէ իր կողմէ 605 - 608 թուականներուն գրուած 6 նամակներ (ԾԳ, ԾԵ, ԾԹ, ԿԳ, ԿԹ, ՀԵ)։*

*ԾԴ.- Վրթանէս Քերթող կաթողիկոսական Տեղապահ եղաւ 604 - 607 շրջանին։ Թղթոց Գիրքին մէջ կան իր կողմէ գրուած 5 Թուղթեր եւս, որոնք են թիւ ԾԷ, Կ, ԿԱ, ԿԲ, ԿԴ։*

*ԿԶ.- Պարսից Խոսրով Պարուեզ թագաւորը իշխեց 590 - 628 տարիներուն։ Անոր իշխանութեան տասնեւեօթներորդ տարին, ուրեմն 607ին գրուած է այս ձեռնարկը։*

*ԿԷ.- Բիւզանդիոնի Մօրիկ Կայսրը թագաւորեց 582 - 602 տարիներուն։*

*Հ.- Թուղթիս հեղինակն է նորընտիր կաթողիկոս Աբրահամ Աղբաթանեցի, որ պաշտօնավարեց 9 տարի (607 - 615)։ Իրեն կը պատկանին յաջորդ ՀԱ, ՀԷ, ՀԹ եւ ՁԱ Թուղթերը։*

*ՀԲ.- Կիւրիոն Վրաց Կաթողիկոս ձեռնադրըուած է 598 թուին։ Իրեն կը պատկանին ՀԲ, ՀԴ, ՀԸ, եւ Ձ Թուղթերը։*

*ՀԳ.- Սմբատ Բագրատունի, իբրեւ Վրկան Մարզպան, կարեւոր դեր կը խաղայ այս միջոցին։ Իրեն կը պատկանի յաջորդ ՀԶ Թուղթն ալ։*

*ՁԲ.- Ըստ վերնագրին կը պատկանի Վրթանէս Քերթողի։ Ներքին նշաններ չկան՝ նոյնը հաստատող։*



*ՁԳ.- Այս Խոստովանութիւնը աւելցուցինք Թղթոց Գիրքին մէջ՝ առնելով Ս. Յ. թիւ 154ա Ձեռագրէն (էջ ՄՂԷ)։*

*ՁԴ.- Կոմիտաս Կաթողիկոս (615 - 628) Պարսկաստան գացած է 615 թուին եւ Խոսրով թագաւորէն ստացած է իր պաշտօնին հաստատումը։ Տեղւոյն եպիսկոպոսներուն խնդրանքով գրած է այս Թուղթը, որուն Նախերգութիւնը կը պակսի Թղթոց Գիրքին մէջ։ Սոյն Թուղթը տպուած է Արարատի մէջ ալ 1896ին (էջ 531 - 536)։ Երկու օրինակները զիրար կը սրբագրեն եւ կը լրացնեն շատ մը տեղեր։*

*ՁԵ.- Այս Թուղթը Կ. Պոլսէն Հայաստան բերած է Ստեփանոս Սիւնեցին 728 թուին։ Թուղթին հեղինակն է Կ. Պոլսոյ Յունաց պատրիարքը Գերմանոս (715 - 730)։*

*ՁԷ.- Յովհաննէս Օձնեցի Կաթողիկոսին վերագրուած այս գրութիւնը անհարազատ կը համարուի։*

*ՁԸ.- Գրութեանս խորագիրը զայն կը վերագրէ Հայոց Յովհաննէս Իմաստասէր Կաթողիկոսին, որ սակայն երկբայական կը համարուի ընդհանրապէս։*

*ՁԹ.- Սիւնեաց Ստեփանոս եպիսկոպոսին վերագրուած այս Թուղթը կեղծ է ըստ Կարապետ Եպիսկոպոսին (Հմմտ. Կնիք Հաւատոյ, էջ CIII - CIV)։*

*Ղ.- Այս Թուղթին հեղինակն է Կ. Պոլսոյ Յունաց անուանի պատրիարքը Փոտ (858 - 867, 878 - 886)։ Գրութեան թուականն է շուրջ 878։*

*ՂԲ.- Թուղթիս Հեղինակն է Վասպուրականի թագաւորը Գագիկ (914 - 943)։ Գիրը ուղղուած է*

*Բիւզանդիոնի կայսր Ռոմանոս Առաջինին, որ կը պաշտօնավարէր 920 - 944 թուականներուն։*

*ՂԳ.– Մելիտինէի Թէոդորոս Յոյն Մետրոպոլիտին ղրկած Գիրին դէմ Հայոց կողմէ գրուած այս պատասխանին թուականն է շուրջ 986։*

*ՂԴ.– Այս Թուղթը չկայ Թղթոց Գիրքին մէջ։ Առինք Ստեփանոս Ասողիկի Պատմութենէն (Բ. Տպ. Պետերբուրգ, 1885, էջ 202 - 243)։*

*ՂԵ.– Պատմական մեծ արժէքով Թուղթ մը, որ գրուած է Ժ. Դարու վերջերը։*

*Դիտ.– Կ՚արժէ ընդգծել Գր. Նարեկացիի յայտարարութիւնը.– "Մեք զանուն պղծոցն ի համբաւուց սակաւ ինչ ի լրոյ գիտէաք" – յատկապէս անոնց համար, որոնք կը կարծեն թէ Ս. Գր. Նարեկացի կը հետեւէր Թոնդրակեցւոց պիղծ աղանդին։*

*ՂԶ.– Գէորգ Լոռեցի, իբրեւ Հայոց Վերադիտող (1069 - 1072) այս Թուղթով կը պատասխանէ Ասորւոց Անտիոքի պատրիարք Յովհաննէս Բարշուշանի (1064 - 1073) ղրկած Թուղթին։*





# ՑԱՆԿ ՅԱՏՈՒԿ ԱՆՈՒԱՆՑ

----------

## Ա

## Բ

## Գ

## Դ







## Ե

## Ջ



## Է



## Թ







## Ի

## Լ



## Խ







## Ծ



## Կ

## Հ

## Ձ



## Ղ



## Ճ

## Մ

## Յ

Ն

## Շ



## Ո

Պ

## Ջ



## Ռ



## Ս

## Վ

## Տ







## Ց



## Փ

---------

## ԹՈՒԱԿԱՆՔ

---------

| | |
|---|---|
| 334 | էջ 499 |
| 435 | » 40 |
| 506 | » 146, 149 |
| 555 | » 199 |
| 556 | » 204 |
| 595 | » 146 |
| 726 | » 478 |
| 1078 | » 413 |
| 1248 | » 657 |

------------

## ՎԵՐՋ